ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՄՁԲ.

VICTOR CHAPOT

# ԵՓՐԱՏԻ ՍԱՀՄԱՆԱԳԼՈՒԽԸ ՊՈՄՊԵՈՍԻ ԺԱՄԱՆԱԿԷՆ ՄԻՆՉԵՒ ԱՐԱԲԱՑՒՈՑ ԱՇԽԱՐՀԱԿԱԼՈՒԹԻՒՆԸ

ԹԱՐԳՄԱՆԵՑ

Հ. Յ. ՏԱՇԵԱՆ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1960



VICTOR CHAPOT

# LA FRONTIERE DE L'EUPHRATE DE POMPEE A LA CONQUETE ARABE

ÜBERSETZT VON

P. J. DASHIAN



WIEN
MECHITHARISTEN-BUCHDRUCKEREI
1960

VICTOR CHAPOT

# ԵՓՐԱՏԻ ՍԱՀՄԱՆԱԳԼՈՒԽԸ ՊՈՄՊԷՈՍԻ ԺԱՄԱՆԱԿԷՆ ՄԻՆՉԵՒ ԱՐԱԲԱՑՒՈՑ ԱՇԽԱՐՀԱԿԱԼՈՒԹԻՒՆԸ

ԹԱՐԳՄԱՆԵՑ

Հ. Յ. ՏԱՇԵԱՆ





ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1960

# ԱԶԴ

Հայաստանի սահմանամերձ երկիրներու հռոմէական — բիւզանդական տիրապետութիւնը խոր ազդեցութիւն ունեցած է հայ քաղաքականութեան վրայ, որոշ պարագաներու մէջ դժուարութիւններու դուռ բանալով, բայց աւելի ստէպ ոյժ տալով անոր հարաւարեւելքի դրացիէն սպառնացող վտանգներուն դիմադրելու: Հ. Յ. Տաշեան այս տեսակէտներէ դիտելով **V. Chapot**ի ներկայ մենագրութիւնը, հայ պատմութեան լուսաբանութեան համար շահեկան համարած է զայն եւ թարգմանած:

Իր մահուանէն (1933) տարիներ ետք միայն *Հանդէս Ամսօրեայի* մէջ սկսաւ հրատարակուիլ այդ երկը ընդհատումներով (1947–1960)*:

Այժմ այդ երկար յօդուածաշարքը՝ ստուար հատորի մը մէջ ամփոփուած՝ լոյս կը տեսնէ, հետաքրքրուող բանասէրներուն անկէ օգտուելը դիւրացնելու դիտումով:

---

* Հ. Ա. 1947, թ. 8–9, 10–12, 1948, թ. 1–2, 3–6, 7–8, 9–12, 1950, թ. 1–3, 4–6, 10–12, 1951, թ. 1–2, 3–7, 8–10, 1957, թ. 3–10, 1958, թ. 1–4, 10, 11–12, 1959, թ. 1–12, 1960, թ. 1–3:

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

Մ ա ս Ն Գ.

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

Ներկայ աշխատասիրութիւնս՝ ինքնին կը գուշակուի, յառաջ եկած է ընդարձակ չափով մ'այն գաղափարէն, որմէ ծնունդ առած է Ռընէ Կանյայի գեղեցիկ մատեանը՝ «Ափրիկէի հռոմէական բանակը[1]». բայց նիւթին սահմանագծումն ու տարածութեան դասաւորութիւնը հոս զգալապէս տարբեր են՝ պատմական եւ աշխարհագրական կարգի պատճառներով:

Պր. Կանյա կրնար իր երկասիրութեան մէջ հիւսել Պետութեան ժամանակ Ափրիկէի մէջ մղուած պատերազմաց լիակատար պատմութիւնը, որովհետեւ այս պատերազմները ի վերջոյ ոստիկանական պարզ գործողութիւններ էին, եւ ծանրակշիռ ապստամբութիւնները ցանցառ էին ու կարճատեւ: Բայց Արեւելեան սահմանագլխին վրայ կռիւները չափազանց յաճախադէպ էին եւ այլեւայլ ժամանակամիջոցներու մէջ, նոյն իսկ գրեթէ անընդհատ: Այս ամէնը պէտք

[1] René Cagnat, l'Armée romaine d'Afrique. — Հռենոսի եւ Դանուբի սահմանագլուխներն ալ նոյն իրաւամբ ուշադրութիւն կը գրաւեն. պատերազմական հետազօտութիւններն երթալով կը բազմանան, եւ ի հարկէ օր մը համադրութեան մը պիտի յանգին:

եղաւ բոլորովին մէկդի թողուլ, որպէս զի խափանարար չըլլայ այսպիսի հակայածաւոր նիւթ մը՝ զոր բաց աստի շատ ալ դժուարին է նկարագրել:

Միւս կողմանէ հրաժարած եմ ամէն տեսակ անձնագրութենէ (prosopographie, դիմագրութիւն). Հետաղօտութեանց այս ճիւղն այժմ Գերմանիոյ մէջ շատ աւելի ընդարձակ ծաւալով կը մշակուի բազմաթիւ աշխատակցաց կողմանէ, եւ ասոնց լիակատար արդեանց հրատարակութիւնը շատ պիտի չուշանայ: Ուստի յաջորդ էջերուն մէջ չի գըտնուիր Ասորւոց աշխարհի նախարակներուն անուանագիրը այնպէս՝ ինչպէս թոյլ կուտային մեր պատմագրութեան ներքեւ եղած յիշատակարանները կազմել: Ասոնք զինուորական գործակալներ էին, որովհետեւ կը հրամայէին իրենց բաժնին զօրաց ուստի այն աստիճանաւորաց մէկ ցանկը յօրինելը գործէս դուրս եկամուտ բան մը չէր ըլլար, բայց նաեւ մեր խնդրին մէջ միայն երկրորդական արժէք մը կ'ունենար, եւ նոյնը հաստատելու հարկաւոր քննարանութիւնքը կանխապէս իսկ անօգուտ կրկնութիւն մը կ'ըլլային:

Ընդհակառակն պատշաճ տեսայ որոշիչ նկարագիրները յիշատակել այն ազգերուն՝ որ Պետութեան այս արեւելեան նահանգները կը բնակէին եւ անոնց՝ որոնց դէմ կ'ոգորէին հռոմէական զօրութիւնները այս կողմանէ: Ասի կնճռոտութիւն մըն է որուն ուրիշ տեղ չենք հանդիպիր, եւ որ պատճառն էր Հռո-

մայեցւոց ռազմագիտութեան մէջ մուծուած խո՛րին կերպարանափոխութեանց։ Այս ճըշմարիտ ազգանկար միւսէո՛նը գննել ու մեկնել՝ ա՛յս էր մեր ձեռնարկած ուսումնասիրութեան պահանջած մեկնակէտը։

Ուրիշ խնդիր մ՚ալ ինքնաբերաբար կը ծագի Ասիոյ՝ բայց ո՛չ Ափրիկէի մէջ. այն վայրկենէն որ Հռոմ վճռեց այս վերջին ցամաքին վրայ ոտք դնել՝ իւր տիրապետութեան սահմանները գծուած էին նոյն իսկ բնութենէն. բայց Արեւելից մէջ՝ մինչեւ ո՞ւր երթալու էր։ Ո՞ւր կը սկսէր անբանաւոր եւ անխոհեմ իշխանասիրութիւնը։ Ասի ամէնէն փափուկ խնդիրներէն էր, որուն բազմապիսի լուծումներ կրնային տրուիլ. լուծման բազմաթիւ փորձեր ալ եղան. ասոնց ո՞րը նախընտրելի էր։ Արդ այս քաղաքականութեան եւ անոր մէջ տեսնուած տատամսոտ վարանաց վերլուծութիւնը տեսակ մ՚իմաստասիրութիւն է մեր նիւթին։

Սակայն էական հատածը կը վերաբերի աշխարհագրական բանակադրութեան, եւ ասո՛ր գերակշիռ կարեւորութիւն մը տուած եմ։ Ասորւոց աշխարհի պաշտպանութիւնն ամէնէն աւելի ամրաշինութեան վրայ յեցած էր, եւ եթէ Միջագետաց հին քաղաքներուն աւերակաց վիճակը շատ քիչ անգամ թոյլ կու տայ գոհացուցիչ կերպով վերակազմութիւններ յօրինելու, գոնէ այլեւայլ հեղինակաց, որ ականատես ու արժանահաւատ վկաներ են, մատակարարած տեղեկութիւնները մա-

սամբ այս թերայթը կը լրացընեն: Եփրատէ մերձակայ գրեթէ ամէն քաղաքներն ու աւաններն ամրոցներ էին, որոնք կրնային ժամանակ մը դիմադրել այնպիսի ազգի մը յարձակման դէմ, որ դարերով պաշարմանց մէջ անյաջողակ մնաց, եւ այսպէս սպասել փութով խնդրուած գնդերու օգնութեանն, որոնց սակաւաթիւ քանակը պիտի համակշռուէր անոնց դիւրաշարժութեամբը:

Թերեւս իմ պարզաբանութեանց մէջ այլեւայլ մասեր անհամաչափ երեւան: Որոշած եմ՝ համառօտաբան ըլլալ այն բերդերուն մասին, որոնք նշանակուած ու նկարագրուած են իմ նախորդներէս. ընդհակառակն՝ ընդարձակօրէն գործածած եմ ուղեգրական իմ ծանօթագրութիւններս, երբ ասոնք անծանօթի մը մասին էին: Գրքի մը հեղինակը, որ նպատակ չունի պարզ յուշարար մ՚ըլլալ, ստիպուած է հաւասարակշռութեան դէմ այս մասնական թերութիւնը յանձն առնուլ:

Մեզի աւելի նուազ ծանօթ են Ասորական զինուորական կազմակերպութեան վարչական մանրամասնութիւնները քան թէ անոնց ընդհանուր նկարագիրը: Այս երկիրս արձանագրութեանց կողմանէ աղքատ է եւ եղածները լակոնական են: Փորագրութեան համար գործածուած քարն անպիտան ըլլալով՝ քանդակելու համար ստիպուած էին ստուարատառ նշանագիրներ ընտրել. ամենադոյզն յիշատակարանը չափով մը մեծածաւալ երեւ-

նէր կը բռնէր: Անոր համար անկարելի է Ասորւոց աշխարհի բանակներուն, անոնց բանակատեղերուն ու տեղափոխութեանց, բանակակենաց, զինուորական վարժոցներու, զինուորներու պաշտամանց եւ նմանեաց մասին սփռելու այն լոյսը, զոր այնպէս յորդառատ կը պարզեն այս ամէն կէտերուն մասին Ափրիկեան անհամար արձանագրութիւնները: Անոր հակառակը հոս տարեգիրները կը վխտան, եւ որովհետեւ անոնք մանաւորապէս հետաքրքրութիւն կը ցուցնեն պատերազմական իրաց՝ մեծապէս կը համզանակեն մարտակարգութեան եւ սպառազինութեան ուսումնասիրութեան:

Իմ առաջին գաղափարս էր արեւելեան սահմանագլուխն իր ամբողջական ընդարձակութեամբն առնուլ՝ Կարմիր ծովէն մինչեւ Սեւ ծով: Սակայն առաջնակարգ պատճառ մը ստիպեց բոլորովին ուրիշ որոշման մը գալու. այսինքն «Արաբական Նահանգ»ին (Provincia Arabia) լոյս տեսնել սկսած այն հրատարակութիւնն, ուր Բրիւնով եւ Դոմաշեւսկի (Brünnov եւ von Domaszewski) ձեռնարկած են ի մի ամփոփելու այն ամէնը՝ զոր կրնանք թէ՛ ուղղակի դիտութեամբ եւ թէ՛ հնոց վկայութեամբք՝ Արեւելից սահմանագլխին (limes) այս հարաւային բաժնին մասին: Աղդարնակչութիւնն այս տեղ միշտ աւելի վաչկատուն եղած է եւ աւելի անօսր՝ քան հիւսիսակողման մէջ. ուստի ամրութիւնները՝ կործանուելէն ետքն ալ՝ տակա-

ւին ճանաչելի են հողին երեսին վրայ․ հիմերը սովորաբար խաթարուած չեն։ Արդ պարզ փոխառութիւն մ՚այն հրատարակութենէն կարելի չէր, համառօտ ծայրաքաղութիւն մ՚ալ նոյնչափ դժուարին էր որչափ սակաւարժէք։ Միեւնոյն ժամանակ ջնջել պէտք էր նաեւ Արաբիոյ յետսակողման աշխարհը․ դարձեալ Պաղեստինի մէջ Հռոմ միայն ներքին կարգի կնճռոտութիւնները լուծելու պէտք ունէր․ արտաքին քաղաքականութիւնը հոս տեսնելիք բան մը չունի։

Եւ դարձեալ, նոյն իսկ Արաբիոյ մէջ, կանուխէն կարգադրուած էին սահմանագլխոց խնդիրները, կամ ձեռք առնուած նախազգուշութիւնները բաւական էին, եւ կամ տեղերու բնութիւնն իսկ որ եւ է ծանր վտանգ մը կը խափանէր․ բայց սաստիկ յարձակումներն ալ չկատարուեցան Կեղեսուրի (Coele-Syria, Խոռին Ասորիք) հարաւակողմը։ Վերջինս ալ քիչ անգամ վտանգ կը սպառնար։ Այս նկատմամբ կը շատանամ միակ դիտողութեամբ մը, որ ինծի շատ ծանրակշիռ կ՚երեւայ․ եթէ Պրոկոպեայ «Վասն Շինութեանց» գիրքը ծայրէ ծայր կարդանք՝ կը համոզուինք թէ Յուստինիանոս բռնադատուած չէր բերդերը բարեկարգարել, վերանորոգել ու բազմացընել՝ բայց եթէ հիւսիսակողման մէջ այն գծէն վեր, որ կ՚անցնի ճիշդ Անտիոքի եւ Քաղկիսի մօտէն։ Գոնէ հոն իսկ ձեռնարկութիւնը հսկայածաւալ եղաւ եւ արդիւնաշատ, եւ ի վերջոյ կը պա-

քունակէ Եփրատայ ամբողջ բարձրադիր աւազանը, աշխարհագրական ճշմարիտ միաւնականութիւն մը՝ որմէ մեր նիւթն ալ իր միութիւնը կը ստանայ. Կիրկեսիոն, Հռոմայեցւոց վերջին բերդը (φρούριον ἔσχατον), կը ցուցնէ այն կէտը, ուր մեր ուսումնասիրութիւնը դադրելու է։

Այս մեծ երակին սահմանակից էին գլխաւոր աշխարհները, եւ ասոնց իւրաքանչիւրին բոլորովին տարբեր խնդիրներ կը ծնուցանէր։ Հայաստան, այս միաձոյլ լեռնաշխարհը, որ դրեթէ ամբողջովին վերին Եփրատայ հիւսիսակողմը կ՚իյնար, կը պատսպարէր ինքնուրոյն ազգ մը, ըմբոստ ամէն ձուլման դէմ եւ կեդրոնացած, իբրեւ ինքն իր մէջ ամփոփուած։ Բազմատեսակ վարչական կերպեր կրնային իրեն վերապահուած ըլլալ, հողային ամբողջութիւն՝ սահմանակից երկու մեծ պետութեանց միոյն կամ միւսին գերիշխանութեան ներքեւ կամ առանց գերիշխանութեան, միացում մէկին կամ միւսին հետ, կամ վերջապէս բաժանում Պարսից եւ Հռոմայեցւոց միջեւ։ Ընդհակառակն Միջագետք՝ պարփակուած Եփրատի կիսօղակին մէջ՝ ընդարձակ դաշտավայր մըն էր, ուր պէսպէս ազգեր զիրար կ՚արմկէին ու իրարու կը պատառէին, ամէնէն աւելի անցուղարձի երկիր մը՝ որ առաջնակարգ բայց սակաւաթիւ ճամբաներով ակօսուած էր։ Հոս բան մը չկար՝ որ զինքն ինքնօրինութեան կանխասահմանէր. պէտք էր որ

երկու պետութեանց միոյն վերաբերէր, կամ անոնք միաբանէին՝ իրենց մէջ բաժնելու։ Վերջապէս Ասորիք, որ այլեւայլ մասերու մէջ բաւական նման էր Նախընթացին իւր բնական կազմութեամբը, իւր դրից կողմանէ բոլորովին տարբեր ճակատագիր մ'ունէր. ի հարկէ միջերկրական ակնակապճին մաս կը կազմէր. հոս որ եւ է բաժանում անհականալի էր։

Ա՛յս է ամէնը։ Ո՛չ. հիւսիսային Միջագետաց սահմանագծին ընթացքը միայն անբաւական պաշտպանութիւն մը կը մատակարարէր արեւելեան ասպատակի մը դէմ. ան կրնար իրեն ընտրել հիւսիսն ու արեւմուտքը՝ Հայաստան ու Ասորիք. եւ այս երկու աշխարհներն իրարմէ բաւական հեռու էին, այնպէս որ ասոնց իւրաքանչիւր զօրութեանց միաւորումը կրնար շատ ուշ միայն կատարուիլ՝ աղէտքին լիովին գլուխ ելլելէն ետքը։ Ուստի պէտք էր որ կէս-ճամբուն վրայ կազմակերպուէր օժանդակ պահեստի բանակ մը, արագ տրամադրելի եւ ի պատրաստի երկու ուղղութեամբն ալ շարժելու։ Երկրորդ գծի այս դերը կատարած է Կապպադովկիա. ուստի չեմ կրնար զինքն անտես ընել. Գամիրք ի բնէ դէպ ի արեւելք ուղղուած էր՝ փոխանակ դէպ ի Եւրոպա դառնալու. իւր այս դիրքը հելլենական քաղաքակրթութեան զարգացումը հոն նուաղեցուցած ու դանդաղացուցած էր. քրիստոնէական շրջանին՝ Հայաստանի եկեղեցին քի-

շատ դուսար մըն է Կապպադովկիոյ եկեղեցւոյն. եւ երկու աշխարհացս յարաբերութիւններն առաջնոյն մէջ կը հակակշռէին ասորական ազդեցութեան դէմ: Սակայն եւ այնպէս այս միւս նահանգն իմ ուսումնասիրութեանս մէջ առանձին դիրք մը կը գրաւէ. ի բաց առեալ Մելիտինէ, Սամոսատ եւ անոնց յարակիցները, որոնք միայն Եփրատայ սահմանակից էին, Միացեալ Կապպադովկիան զմեզ կը հետաքրքրէ միայն իր շարժուն զինուորական աղբիւրներովը, իր ամրակայքերը՝ միայն իրենց պահակազօրքովը, իր ճամբաները միայն իբրեւ միջոցներ դէպ ի Պարսկական սահմանագլուխ զօրավիգն օգնականութիւններ հասցընելու. ուստի իր ռազմական պաշտպանողական դերը դանց կ'առնում՝ ի նկատի ունենալով միայն այն օժանդակութիւնը, որ իրմէ կ'առնուէր՝ բայց իր հողէն դուրս կը գործածուէր:

Ափրիկէի համար ժամանակագրական սահմաններն՝ առանց հակառակութիւն մը կարելի ըլլալու՝ ինքնին որոշուած էին Պր. Կայնայի եւ անոր շարունակողին՝ Պր. Դիհլի (Diehl) համար. իսկ իմ ընդունած սահմաններս՝ կը յուսամ թէ երկարօրէն պաշտպանելու պէտք պիտի չունենամ. որ եւ է վարանաց տեղիք չկար սկզբնակէտին նկատմամբ, իսկ աւարտած եմ Է. դարուն՝ երկու պատճառներու համար. արաբական աշխարհակալութենէն ետքը խորտակուած է «Եփրատեան միահոծ զանգուածը» (bloc)՝ եթէ

ներուի ինծի այսպիսի բացատրութիւն մը գործածելու. Հայաստանի պաշտպանութեան մասին տակաւին կ՚իշխեն ռազմագիտական նոյն տրամադրութիւնները. բայց Ասորիք անցած է մահմետականաց ձեռքը եւ սահմանագլուխը տեղափոխուած: Միւս կողմանէ յիշեալ թուականէն ա՛լ աւելի անդին չարունակելու համար՝ պէտք էր բիւզանդագէտ մասնագիտի մը ձեռնհասութիւնն ունենալ, որուն պաճուճեալ կերպարանք մ՚առնուլ երբեք չեմ ուզեր:

Կը յուսամ թէ այսպէս արդարացուցած ըլլամ նիւթի ըրած ընտրութիւնս եւ յօրինուածական այն ոճն՝ որուն հետեւեցայ: Սակայն այս նախաշաւիղ դիտողութիւններս լրացնել պէտք է քանի մը կէտերու նկատմամբ: Կ՚ենթադրեմ թէ հոս ընթերցողը չի սպասեր գտնել աղբերաց մասին ընդհանուր եւ մանրակրկիտ բանաքննութիւն մը. ասոնց մէկ մասը՝ յոյն ու լատին հեղինակներ՝ ա՛յնպէս չափազանց յորդառատ են որ այս կարգի քննութիւն մ՚ընել կարելի չէ հոս. միւսները՝ արեւելեան մատենագրութիւններէն փոխ առնուած՝ ծանօթ են ինծի միայն երկրորդ ձեռքէ անուղղակի: Յունական-հռոմէական եւ արեւելեան տարրերաց այս խառնուրդն ամէն քայլափոխի ուրիշ տեսակ յարատեւ խոչընդոտներ յարուցած է, կ՚ուզեմ ըսել յատուկ անուանց ուղղագրութեան դժուարութիւնները: Ասոնց տառադարձութիւնը միշտ փչալից է. այս օրս սովորութիւն

է ուրաքանչիւր երկրին հին լեզուին մէջ գործածուած ձեւերը տառօրէն պահել, ի բաց առեալ այն բառերն՝ որոնց թարգմանութիւնը սովորական եղած է արդի լեզուին մէջ: Բայց Ասորւոց եւ Միջագետայ մէջ ցեղերու եւ լեզուներու այլայլութիւնն ու իրարու մէջ սերտ կերպով թափանցումը տարօրինակօրէն կը կնճռոտեն խնդիրը. ուստի որ եւ է պարծանք մը չհամարեցայ՝ ամենախիստ ոճի մը հետեւելու այս մասին[2].

---

[2] Բայց աստի զատ աշխատութիւն մըն էր՝ նոյնը յանձն առնուլ ուզելը: Աշխարհագրական անունները մեծագոյն մասամբ հասած են մեզի այնպիսի յիշատակարաններէ, ուր բազմաթիւ տարբեր ընթերցուածները շատ դէպքերու մէջ պաշտօնական ճշմարիտ ուղղագրութիւնը աղաւաղած են. Պր. դը Լըսէր մօտերս ուսումնասիրած է «Հռոմայեցի ուղեցոյցներու համաձայնութիւնը». եւ մասնաւորապէս «Հռոմէական Ափրիկէի մէջ տեղւոյ անուանց այլաձեւութիւնները» (*C. Pallu de Lessert*, Syntaxe des routiers romains, եւ Déformations des noms de lieux dans l'Afrique romaine, լոյս տեսած՝ ի Mém. de la Soc. des ant. de Fr., LXV, 1904—1905, p. 115—138.) Ես Արեւելեան նահանգաց մէջ այս կարգի հետազօտութիւններ ընելու չեմ ձեռնարկած. պէտք էր նոյն չափով նկատի առնուլ *Notitia Dignitatum* (Տեղեկութիւնք աստիճանաց) մատեանը, ուր՝ օրինակի համար՝ քովէ քով կը կարդանք ձեւերս՝ *Amidae, Theodosiopoli, Constantina* (Or. XXXVI, 19, 20 եւ 22) *Sebastopolis* (XXXVIII, 36.) Ընդհանրապէս կ'երեւայ թէ հեղինակը կը վարանի ուղղական եւ ներգոյական («տեղական») ձեւերու մէջ՝ եւ յաճախ կարելի է զանազանել մէկը միւսէն. բայց ո՛րչափ բացառութիւններ կան: Եւ ինչո՞ւ են այսպիսի ձեւերը՝ *Yssiporto*, (castella) *Melitena, Trapezunta* (XXXVIII, 13, 34, 6, 9.) Փիւնիկէի մէջ մէկ կողմանէ կը գրուի (XXXII) Equites scutarii Illyriciani *Euhari* (19) եւ միւս կողմանէ (castellum) *Euhara* (4.) — (Թարգմանչիս համար խնդիրն աւելի պարզ էր, բնական էր որ հե—

միակ դիտումս եղած է պայծառ ըլլալ, եւ կարծեցի թէ այն հատուածութիւնն՝ որուն յատկապէս ուղղուած է մատեանս, կը ստիպէր նախապատուութիւն տալ լատին կամ յոյն ձեւերուն[3]:

Հռոմէական հատուածութեանց մասին ճառող գրքերուն մէջ կը հանդիպինք հիմնական եւ աւանդական սա ուսհմանադրումն ընելով սովորութեան՝ Դիոկղետիանոսէ յառաջ եւ Դիոկղետիանոսէ յետոյ: Ես հրաժարեցայ նիւթերու այսպիսի ընդհանուր բաժանում մ՚ընելէն: Ասորւոց աշխարհին մէջ իրերն այնպէս պարզ չեն. փոխանակ բարեշրջութեան կէտերուն՝ հոն միայն մանրամասնական եղանակաւորումներ կատարուած են՝ որոնք յառաջ կու գային պարագաներէն, որոնք աւելի զօրաւոր էին քան թէ կայսերաց բարեփոխական գաղափարները: Իւրաքանչիւր գլխու մէջ նշանակուած են ժամանակագրական զանազանութիւնները, եւ պիտի տեսնուի թէ նիւթին համեմատ՝ կարելի չէ զանոնք պէսպէս փոփոխել:

---

տեսած եմ Հայոց եւ գրայեաց անուանց ծանօթ հին Հայ ձեւերուն, իսկ ուր Հայ ձեւը չէր աւանդուած՝ նոյն ժամանակի հին յոյն կամ լատին ձեւերուն):

3 Կ՚աւելցնեմ թէ յաճախ խօսքին պարզութեան կամ նաեւ պէսպիսութեան համար չեմ զգուշացած՝ Բիւզանդեան շրջանի հեղինակաց պէս՝ գործածել Հռոմայեցիք կամ Հռոմէ բացատրութիւնը, նշանակելու համար Բիւզանդիոյ ինքնակալաց հպատակները: Ասի այն առաւելութիւնն ունի որ՝ այսպէս բացատրելէն ետքը՝ կը պատշաճի թէ՛ Վերին (Հռոմէական) եւ թէ՛ Ստորին (Բիւզանդեան) կայսրութեան:

Այս դիտողութեանս առանձին կարեւորութիւն մը կու տամ այն ամէն բանի նկատմամբ որ բանակին զօրացոյցներուն հետ կապ ունի։ Անշուշտ չենք կրնար ուրանալ մեծ բարեփոխութիւն այն նշանաւոր օգուտը, որ Դ. դարուն սկիզբը պաշտօնական եղաւ եւ որ պահեստի բանակը կը բաժնէր սահմանագլուխներուն գնդերէն։ Բայց այս բարեփոխութիւնն արդէն պատրաստուած էր նախընթաց դարուն եւ իրականին նաեւ մասամբ ի գլուխ հանուած էր։ Ուստի մեր ուսումնասիրութեան մէջ բոլորովին բացասօրէն իշխելու չէ նոյնը[1]։ Անկէ կախուած է լեգէոններու մանրացումը, ինչպէս նաեւ հեծելազօրու (equites) գնդերու ծագումը. եւ ոչինչ կ'արժէ հոս օտարացեղ տարրերաց դերակշռութեան մէջ, եւ առանց ազդեցութեան մնացած է հին օժանդակ (auxilia) զօրաց վաշտերու (cohortes) եւ թեւերու (alae, առաջք) բնութեան եւ կազմութեան նկատմամբ, եւ ես հարկաւոր համարեցայ այս պէսպէս գնդերու տեւականութիւնը ցուցընել, որոնք այնպէս երկայն ժամանակ պահուած են իրենց բանակատեղիներու մէջ։ Զուտ զինուորական տեսակէտով դուքսը (dux) ըստ բաւականին կը յիշեցնէ Նա-

---

[1] Սեպտիմեանց տիրանալը՝ իր ունեցած հետեւութեամբքն՝ այս պատմութեան մէջ շատ աւելի վճռական վայրկեան մը կ'երեւայ ինձի. բայց ասի ինքն իրեն ընդհանուր զոհացուցիչ բաժանում մը չի ընծայեցներ։

հանգի նուիրակը (legatus provinciae), *եւ վերջապէս* զօրաց մագիստրիանոսը (magister militum, *Զօրավար զօրաց*)՝ *որ Պարսկական պատերազմին կ՚առաջնորդէր* դաստակազօրաց (comitatenses) *կամ* պալատական օժանդակազօրաց (auxilia palatina) *ա՛յնպէս չէր տարբերեր Գ. դարու զօրապետէ մը, որ՝ ըլլա՛ր կեսար կամ հիւպատոս՝ միեւնոյն նպատակաւ իր գլխաւոր զօրութիւնները կ՚առնուր Դանուբի լեգէոններէն: Վերջապէս Դ. դարու զինուորական կազմակերպութիւնը տակաւին կը պահէ հնոյն հետ իր կապերը, որոնք յետոյ ի հարկէ պիտի տկարանային, եթէ ոչ խզուէին: Վասն զի Յուստինիանոս ժամանակ, որչափ որ կրնանք այս մասին դատաստան մ՚ընել, զօրակարգական բոլոր միութիւնները կ՚երեւայ թէ ձուլուած են* թուոյ (numerus) *այնպիսի ընդարձակ ու այնպէս պարզ գաղափարին մէջ, որ այնուհետեւ միայն բացատրութիւն մըն է, որ կը նշանակէր իրարմէ բոլորովին տարբեր խմբերն ալ: Այս անժխտելի խառնակութեան մէջ փորձած եմ ժամանակագրական կարեւորագոյն բաժանումները պահել եւ չզոհել որ եւ է հակասութիւն մ՚որ մտադրութեան արժանի էր:*

*Ինծի կ՚երեւայ թէ ժամանակի այս բաժանումներն իւրաքանչիւր գլխու մէջ տակաւին աւելի դիւրաւ ընդունելի են ա՛յն գլխոց մէջ, որոնք շատ տկար զարգացումներ կը ցուցնեն, որովհետեւ Ճշգրիտ ու մանրամասն տե-*

*դեկութիւններ կը պակսին. այլեւայլ նիւթերու մասին միայն էջի կամ կէս էջի ատաղձ ունեցած եմ առջեւս. զատոնք բաժնելու պէտք մը չկար: Ասի ըրած ատենս՝ աչքի առջեւ ունիմ գլխաւորաբար այն գլուխը, որուն խորագիրն է՝ Բանակին վարչական եւ օրինական կառավարութիւնը, որուն մէջ շատ մը թերութիւններ պիտի նշմարուին. զօրաց քաղաքային վիճակին, խնայողութեան արկղներուն եւ զինուորական վարժարանաց մասին քան մը չունինք ըսելու՝ որ Արեւելքի յատուկ կամ անկէ ծանօթ ըլլար: Զարմանալի պիտի երեւայ նոյնպէս որ նոյն խորագրին ներքեւ զօրահանութեան վերաբերեալ տեղեկութիւնները չեն գտնուիր: Հասուն խորհըրդով կշռելէն ետքը՝ դերադաս համարեցայ զատոնք հիւսել զօրաց գնդերու նկարագրութեան մէջ, եւ կը յուսամ որ ա՛յն տպաւորութիւնն ազդած եմ թէ այս երկու գաղափարաց մէջ շատ անձուկ աղերս մը կայ:*

*Ամէնէն աւելի ես կը ցաւիմ որ մեր թերակատար տեղեկութեան պատճառաւ գիրքս* Հատընտիր խնդրոց (quaestiones selectae) *ժողովածոյքի մը անյօդ երեւոյթ մ'առած է. սակայն պատմութիւնն ալ արձանագիտական հնախօսութեան կը նմանի. աւելի կ'արժէ վաւերական ծայրատեալ արձան մը քան թէ վերանորոգեալ գործ մը՝ կամայական յաւելուածոյ մասերով:*

*Քանի մը խօսք ալ հեղինակաց հրատա-*

բնակութեանց մասին, որոնք ամէնէն աւելի բազմաթիւ կոչմանցս մէջ յիշատակուած են։

Պլինիոս յիշուած է գրոց ու հատուածներու այն թուերով, որ նշանակուած են լուսանցքի վրայ Jan-Mayhoffի հրատարակութեան մէջ. նոյն ձեւով՝ Յովսեպոս ալ (հրտ. Niese)։ Պտղոմեայ համար գործածած եմ հրատարակութիւնը զոր հոգացած են Müller-Fischer։ Իսկ Պրոկոպեայ մասին՝ «Վանդ. Պարսկ. Գոթ.» եւ «Ծածուկ Պատմ.» գրքերը կոչում կ'ընեմ Hauryի հրատարակութեան համեմատ (գիրք, գլուխ, հատուած). բայց «վասն Շինութեանց» տակաւին լոյս տեսած չըլլալով Teubnerի գրավաճառանոցէն, կը գործածեմ Բոն (Bonn) քաղաքի հրատարակութիւնը։ Թէոփանէսի եւ Թէոփիլակտոսի Սիմոկատտայի համար՝ Բուրի (Boor) հրատարակութիւնը (գիրք, գլուխ, հատուած)։ Զաքարիա Հռետորի համար՝ Ահրէնսի եւ Կրիւգէրի գերմ. թարգմանութիւնը (Zacharias Rhetor, Die sogenannte Kirchengeschichte, in deutscher Übersetzung hrsg. von G. Ahrens u. G. Krüger, Leipzig 1899)։ Իսկ աշխարհագրական յուշարարաց մասին, Անտոնինեան Ուղեգրութիւնը կոչում եղած է Վեսսելինգի (Wesseling) թուարկութեան համեմատ, Ռաւէննացի աշխարհագրութիւնն եւ Հերոկլէսի Ուղեկցութիւնը (συνεκδημία) Partheyի թուարկութեանց համեմատ։

Յուլիանու համար ընդունած եմ Շպանհայմի (Spanheim) դիւրայարմար թարգմանութիւնը՝ զորոնք Հէրթլայն (Hertlein) ալ պահած է:

Ինքնին կը հասկցուի թէ «Պաուլի-Վ.» կը նշանակէ Պաուլի-Վեսովայի Հանրագիտարանը (Realencyclopädie, von P a u l y - W i s s o w a): Դիւրաւ կը ճանչցուին դարձեալ սովորական գործածուած համառօտութիւնները, ինչպէս՝ CIL (Հաւաքածոյ Լատինական արձանագրութեանց), CIG (Հաւաքածոյ Յունական արձանագրութեանց), BCH (Տեղեկագիր Հելլենական Թղթակցութեան) IGRRP (= Inscriptiones Graecae ad res Romanas pertinentes, Յունական արձանագրութիւնք Հռոմէական իրաց վերաբերեալ), եւ նմանները:

---



# ՄԱՍՆ Ա.

## ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԵՒ ԱԶԳԱԳՐԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԳԻՏԵԼԻՔՆԵՐ

## ԳԼՈՒԽ Ա.

### Երկիրն ու բնակիչները:

### § 1. Ընդհանուր տեսութիւն մ'աշխարհին:

*Ընդհանուր գծերով միայն կ'ուզեմ յիշատակել աշխարհագրական գլխաւոր նկարագիրները այլեւայլ գօտիներուն, որոնք մատենիս մէջ քննութեան առնուած խնդրոյն հետ կապ ունին:*

*Կովկասի լեռնաշղթային ստորոտը հարաւակողմը կը տարածուի երկայն տափարակ մը, որուն մէջ՝ իրարու հակադարձ՝ կը հոսին Կուր (հնոց Կիւրոս կոչածը) եւ Ռիոն (հնոց՝ Փասիս) գետերը: Այս հովտին եւ Միջագետաց դաշտավայրին մէջտեղ լեռնակղզւոյ մը պէս կը բարձրանայ Հայկական անհարթ լեռնաշխարհը[1]. Եւ բաղկացած է*

---

[1] *Տեսն.* H. F. B. Lynch, Armenia, Travels and studies, London 1901, *Հտր. Ա. Ռուսական գաւառները: Հտր. Բ. Տաճկական գաւառները: — Էապէս ուղեգրական յիշատակներ են ասոնք, եւ նաեւ Հայաստանն իր ամբողջ ընդարձակութեամբը չեն բովանդակեր. բայց հոս կը գտնենք՝ բաց ի լուսանկարչական տեսարաններէ (երբեմն քիչ մը շատ փափկացած)՝ նաեւ երկու գլուխներ ընդհանուր աշխարհագրութեան՝*

հարաւ կը խոնարհի սաստիկ զառիթափ լեռնորմերով, որոնք դժուարաւ մատչելի են. ասոր հակառակ ամբողջ ասիական ցամաքին վրայ գետնին ծալքերուն ընդհանուր ուղղութեան պատճառաւ՝ դիւրաւ մատչելի է այն հովիտներէն, որոնք զինքը կը կապեն Փոքուն Ասիոյ եւ հիւսիսային Իրանի հետ: Ուստի Հայաստան դէպ ի արեւմուտք կը կցուի Կապադովկիոյ հետ, դէպ ի արեւելք՝ Ատրպատական Մարաստանի հետ:

Վերջին հանդիպագօտիներն, որոնց մէջէն Վերին Տիգրիս իւր անկողինը փորած է, քիչ մը դուրս կարկառած են Միջագետաց վրայ. բայց արդէն Բիրէջիկ, Ուրֆա, Մարտին ու Մծբին տեղերուն գծէն դէպ ի հարաւ կը սկսի ընդարձակածաւալ դաշտավայրը՝ երկրորդական կազմութեամբ, թեթեւ ելեւէջներով. աւելի անդին կը սկսին Բաբելաստանի կաւային տափաստանները, հարթաստաններն ու ապառաժուտները, եւ վերջապէս ջրատական մեծ սկահող դաշտը Բաղդադէն մինչեւ Պարսից ծոցը:

Ասորիքի մէջ բնակելի եւ մշակուած գօտին տեղ մ'այ 200 կիլոմետրի տկար լայնութեան չափը չ'անցնիր. ծովեզերեայ նեղ շերտը միայն երկու բացուածքներ ունի, մէկ կողմանէ դէպ ի Հալէպ, եւ միւս կողմանէ Հաւրանի ընդարձակ լաւայի հոսանաց ու Դամասկոսի դաշտին մէջտեղ: Ծովափին ուղղութեամբ կ'ընթանայ լեռնաշղթայ մը հիւսիսէն հարաւ, ի սկզբան թերթաքա–

բային Ամանոսով (ամէնէն շատ 2000 մետր բարձր)․ յետոյ կրաքարային Լիբանանով (որուն գագաթները մինչեւ 3000 մետր կը բարձրանան [2])։ Աւելի հարաւ՝ Պաղեստինի մէջ բարձրութիւնը կը նուազի, եւ վերջին անգամ մ՚ալ կ՚աճի Սինայի խմբին մէջ։ Անտիոքէն մինչեւ Ակաբայի ծոցը ծովեզերեայ այս լեռնաշղթան, որ ա՛յնպէս նեղ ու անձուկ է, տակաւին վերէն վար երկայնքին երկուքի կտրուած է Յորդանանի, Լէւոնդէսի եւ Որոնտէսի հովիտներով։ Ասոր ետեւը դէպ ի արեւելք կը տարածուի աւազուտ մեծ անապատը՝ Սաֆայէն մինչեւ Եփրատի ափերը։

Այն երկու գետերն, որ միանալով Եփրատը կը կազմեն, Սեւ-ջուրն (տճկ․ Կարա-Սու) ու Արածանին (տճկ․ Մուրատ-սու), կրկին հոսանքներ են՝ որոնք լաւայի խարակներու միջէն կը դահավիժին։ Աւելի հեռուն ջրոյ հոսանքն իրեն ճամբայ մը բացած է հայկական Տաւրոսի հանդիպադօտիները կտրելով եւ նախալերանց կաւճային բլուրներու մէջէն։ Իբր 300 քարավազ սահանքներէ կ՚անցնի գետը միայն 150 կիլոմետր երկայնութեան գնացքին մէջ, եւ իւր անկողինը տեղ տեղ կ՚անձկանայ մինչեւ 30 մետր միայն լայնութեան հասնելով։ Նորանշան ոլորապտոյտ շրջաններ կ՚ընէ եւ կը

2 Լիբանանի մասին աշխարհագրական յօդուածներ հրատարակեց մօտերս P. L. Lammens արաբերէն El-Machriq թերթին մէջ, որ Բէյրութ լոյս կը տեսնէ (1903 եւ 1904)։

չրջապատի ապառաժուտ բարձանց բոլորտիքը՝ որոնք աւերակներով պսակուած են. Ջրվէժներու շարքէն ետքն առաջին անգամ հովիտը կ՚ընդարձակի Շամչատի մօտերը, դարձեալ կը գոգանայ կրաքարային լեռնորմերու մէջ, եւ վերջապէս Բիրէջիկի առջեւ (որ կը նշանակէ՝ Բացուածք) վերջնականապէս դուրս կ՚ելլէ լեռներէն, եւ այնուհետեւ մինչեւ իր բերանը նաւարկելի է։ Միջագետքէն իրեն հասնող օժանդակ գետերն աննշան են եւ այնպիսի անկանոն ջրաքանակով որ շատերը տօթախառն եղանակին կը ցամքին։ Վարը կրկին պիտի վերադառնանք Եփրատայ՝ առթիւ այն բերդերուն, որոնք իր մերձավայրից վրայ կը հսկէին։ Տիգրիս ալ միեւնոյն նկարագիրը կը ցուցնէ՝ լեռնագետ մինչեւ Մոսուլ, անկէ անդին՝ նաւարկելի։

Ի բաց առեալ Ասորական ծովեզերքն, որ միջերկրական կլիմայի անուշութիւնն ու հաւասարութիւնը կը վայելէ, մնացեալ բոլոր աշխարհը՝ նաեւ լեռնանիստ Հայաստանը[3] կը տառապի օդի չորութենէն ու ա–

[3] Այսօր փոխարէն հայկական ձմեռներուն սեպհական նկարագիրն է ձեան տարապայման առատութիւնն եւ յանկարծահաս բքայոյզ ձիւնաբքերը։ Ասիկէ այն միամիտ զրոյցը՝ զոր Ստրաբոն կը պատմէ (ԺԱ, 14, 4, էջ 528 C). Թէ Խորձեանի եւ Կամբիսանի (Կամբիւսինէ՝ Յունաց) մէջ ձեան հիւսերէ երբեմն յանկարծակի կը բռնուին կարաւանները լեռնանցքներու եւ կիրճերու մէջ. ուստի ուղեւորներն երկայն գաւազաններ կ՚առնուն, որով ձեան մէջ ծակ մը կը բանան ուսկից շունչ կ՚առնուն եւ ուրիշ ճամբորդներուն իրենց ձիւնաթաղ ըլլալը կը ցուցնեն։

ժառուան տօթէն, արեւմտեան անձրեւաբեր հովերուն ընդհանրապէս խափանուելովը: Ռազմական որեւէ արշաւանք՝ որ քիչ մ՚երկարատեւ ըլլար, կարելի չէր շարունակել այս աշխարհներուն մէջ, որոնք բարեխառնութեան այսպիսի փոփոխութեանց ենթակայ էին. ամէն պատերազմ՝ որ մեծամեծ ծախքերով եւ պատկառելի ուժերով ձեռնարկել կը փորձուէր, կը դատապարտէր զօրքերը դառն նեղութեանց: Երկու պատերազմողներն ալ քանի մ՚անգամ ասոր հաստատութեան դժնդակ փորձն առին: Հայաստանի մէջ գործողութիւնները գրեթէ անկարելի էին ձմեռը. եւ մեզի կ՚աւանդուի թէ Պարսիկներն սկզբունք ըրած էին ձմեռուան եղանակին պատերազմի մը չձեռնարկել. սակայն հոս ալ միշտ ցաւալի բացառութիւններ կ՚ըլլային:

## § 2. Սահմանագլուխն եւ իւր փոփոխութիւնները:

Մեր նիւթին համար կարեւորը միայն երկրին բնական գծերը չեն. պէտք է ճշգրտօրէն սահմանել մեր քննութեանց աշխարհագրական դաշտը, եւ հետեւաբար նշանակել այն յարափոփոխութիւնները՝ զորոնք կրեց Ասորիքի, Միջագետաց եւ Հայաստանի քաղաքական քարտէսը:

Առաջին անգամ Ասորիքն էր որ հռոմէական օրինաց ներքեւ ինկաւ [4]: Պոմպէոս կապտելով վերջին Սելեւկեանը՝ 64ին Ն. Ք. ստեղծեց համանուն նահանգը [5], բայց նոյնը հատակոտոր բաժնեց ստորակարգեալ իշխանութեանց եւ անկախ քաղաքներու [6]. որովհետեւ պետութեան հետ միացումը տակաւին պատրաստուած չէր՝ ինչպէս եղած էր Փոքրն Ասիոյ մէջ՝ դիւանագիտական եւ զինուորական յաճախադէպ միջամտութիւններով: Հռոմայեցիք յունական քաղաքներու մէջ ազնուապետական կառավարութիւնը հաստատեցին պահպանեցին կամ զօրացուցին. բայց թափառական կամ նուազ հլու ժողովուրդները թողուցին իշխանապետներու ներքեւ, որոնք պատասխանատու հարկատուներ էին եւ պարտք ունէին իրենց հպատակներն առաջնորդել տանիլ դէպ ի զուտ հռոմէական վարչութիւնը, եւ որոնք յետոյ պիտի անհետանային: Հոս մանրամասն չեմ նկարագրեր թէ ի՛նչ փուլերէ անցնելով այս ամէն իշխանութիւնները դանդաղօրէն՝ բայց ի վերջոյ լիակատար կերպով կլլուեցան [7]:

---

4 Wright, Palestine Exploration Fund, 1895, p. 67 ff.; E. Schürer, Gesch. d. jüdischen Volkes im Zeitalter Jesu Christi, 3.—4. Aufl., Leipzig I (1901) շատ տեղ.

5 Պղուտարքոս, Պոմպ. 39. Ապպիանոս, Ասոր. 49, Միհր. 106:

6 Ապպիանոս, Ասոր. 50:

7 Ասոնք կրնան տեսնուիլ իմ յօդուածիս մէջ Provincia՝ Հնութեանց Բառարանին մէջ (Dictionn. des antiq.):

Նոյնպէս առաջին օրէն իսկ Հռոմայեցիք նոխարար ձեռք դրած էին արտաքին յարաբերութեանց վրայ, եւ կուսակալը՝ գոնէ իբրեւ զինուորական պետ՝ բացարձակ իշխանութիւն ունէր ամէն տեղ: Անկախութեան այն ստուերն ալ՝ որ Յուդայաստանի թողուած էր «գործակալաց» վարչութեան ժամանակ, անհետացաւ առաջին իսկ ապստամբութենէն ետքը եւ անոր յաջորդող զսպման ատեն: Այս դէպքերէն նոր նահանգ մ'ելաւ՝ Յուդայաստան (Judaea) կամ Պաղեստինեան Ասորիք (Syria Palestina)[8]: Միեւնոյն ժամանակները Վեսպասիանոս աւելի հիւսիս ալ ազդու միջոցներ ձեռք կ'առնուր՝ Հռոմայեցւոց դիրքը զօրացընելու համար:

Գամիրաց վերջին արքայն[9] Արքեղայոս, որ հիւանդ ու տկարամիտ էր, Աւգոստոսէ ընդունած էր գործակալի մը խնամակալութիւնը[10]. իրեն յաջորդող արքայ մը չեղաւ: Տիբերիոս նոյն թագաւորութիւնն արդէն 18ին Յ. Ք. նահանգի մը կազմակերպեց, որ աւելի անուանական փոփոխութիւն մըն էր քան թէ իրական. որովհետեւ պաշտօնները կը վարէր միայն գործակալն, որ հարկաւորութեան ատեն՝ զինուորական օգնութիւն կը ստանար Ասորւոց կուսակալէն[11]: Իրա-

---

8 Աւր. Վիկտոր, Կես. 9. Համա. 9:
9 Համա. D. Vaglieri, Cappadocia, ի բառագիրս De Raggiero, Dizion.
10 Գիոն. Կասիոս, ԼԷ, 17:
11 Տակիտոս, Տարեգիրք Բ., 42, 56. ԺԲ., 49:

կանութեան մէջ այս օգնականութիւնը կրնար պակսիլ. նոյն մօտ ժամանակները Պաղեստինի դէպքերն ասորական լեգէոններն իրենց գրաւած էին: Ուստի Վեսպասիանոս 70ին Յ. Ք. գործակալի տեղ դրաւ հիւպատոսական նուիրակ մը՝ բազմաձեռն գնդերու գլխաւորութեամբ[12]:

Երկու նահանգներուս կցորդութիւնը բացարձակ ընելու համար կը մնար միայն բառնալ Կոմագինեայ փոքրիկ թագաւորութիւնը: Արդէն անգամ մը՝ 17էն 38 Յ. Ք. ժամանակաւորապէս Ասորիքի հետ ձուլուած, 72ին նորէն միացուեցաւ եւ վերջնական եղաւ[13]: Այս վայրկենէս հռոմէական զօրութիւնը կը հաստատուէր աւելի անձուկ կերպով Եփրատայ մեծ կորագծին ամբողջ բոլորտիքը: Բայց տակաւին շատ սպառնալից չէր. որովհետեւ Կապադովկիա բաւական տարիներու տեւողութեամբ կցուեցաւ Գաղատիոյ հետ, որով վարչական գործունէութեան կեդրոնը աւելի յետսակողմը փոխադրուած էր[14]: Սակայն արդէն նշանակուած էր այն կէտին ուղղութիւնն, որով պիտի շարժէր յառաջխաղացութիւնը, դէպ ի Հայաստան ու Միջագետք, եւ այս երկու աշխարհներուն համերաշխութիւնը:

---

12 Անդ, ԺԳ, 8. Սուետոնիոս, Վեսպ., 8:

13 Humann u. Puchstein, Reise in Kleinasien und Nordsyrien, Berlin 1890, p. 279 ff.

14 F. Cumont, ի Bull. de l'Acad. r. de Belgique, 1905, p. 197—224.

Նոր քայլ մը դէպ ի յառաջ առաւ Տրայանոս. Նախ եւ յառաջ հարաւակողմը յաւելուածական յենակէտ մ'առաւ, որպէս զի անհանգիստ չըլլայ, եւ Ասորւոց Նուիրակին ձեռօք գրաւեց Պետրայի (Ապառաժ Արաբիոյ) Նաբատացւոց թագաւորութիւնը: Արաբիա նահանգը (105/6 Յ. Ք.) յատուկ կուսակալ մ'ընդունեցաւ եւ սեպհական պահակազօրք. միացումն այնպէս դիւրաւ կատարուեցաւ[15] որ Ադրիանոս որ եւ է երկմտութիւն չունեցաւ՝ յետոյ զանի վաւերացընելու: Յետոյ Տրայանոս ձեռնարկեց Պարթեւաց դէմ իր ահեղ պատերազմին: Ասի իր իշխանութեան վերջերը պատահեցաւ. որով իր կատարած գրաւումները, զորոնք իր յաջորդները մէկդի թողուցին, միայն աննշան տեւողութիւն մ'ունեցան, բայց ատոր փոխարէն շատ ընդարձակածաւալ էին եւ երեք նահանգներ կը կազմէին. սակայն չենք ալ կրնար ճշգրտօրէն որոշել ո՛չ դիրքն եւ ո՛չ տարածութիւնն այն Ասորեստան նահանգին, զոր դրամները չեն յիշատակեր[16]:

---

[15] Այս աշխարհիս միայն Ասորւոց հետ՝ Միջագետքն ի բաց առեալ՝ ունեցած յարաբերութիւններն ակներեւ են. Ասորիքի եւ Արաբիոյ միջեւ շատ անգամ սահմանագլխոյ փոփոխութիւններ կատարուեցան, որոնք լաւ կերպով չեն լուսաւորուած եւ որոնց պատճառները բնաւ չենք գիտեր (հմմտ. Clermont-Ganneau, Étud. d'arch. orient. II, 1897, p. 83—92):

[16] Դրամներէն ոմանք ունին ընթերցուածս *Armenia et Mesopotamia in potestatem P. R. redactae* («Հայաստան եւ Միջագետք գրաւեալ ընդ իշխանութեամբ Ժողովրդեան Հռոմայեցւոց», տես

Իրմէ ետքը միթութիւն կը պատէ Միջագետաց դէպքերուն վրայ: Պէտք է ընդունիլ Մարքարտի եւ Ռաուլինսընի հետ թէ Լ. Վերոսի պատերազմին (162—165 Յ. Ք.) արդիւնքն եղաւ՝ Հռոմէական հնազանդութեան ենթարկել արեւմտեան Միջագետքը մինչեւ Խաբուր գետ: Արդեամբք այլ այս կարծեաց ապացոյց մըն են Ռոհայի եւ Կաչկարի այլեւայլ դրամները, որոնց աջակողմը դրոշմուած կ'երեւան Ինքնակալաց կիսադէմները[17].

---

Eckhel, D. N. V. VI, p. 438): Բայց Եւտրոպիոս, Ը., 3, 1 կը գրէ «Մինչեւ ի սահմանս Հնդկաց խաղաց եւ ցծովն կարմիր, եւ անդ երիս նահանգս արար՝ զՀայաստան, զԱսորեստան եւ զՄիջագետս (Armeniam, Assyriam, Mesopotamiam). — անդ՝ Ը, 6, 2 «Նահանգս երիս ի բաց եթող (Ադրիանոս) զորս Տրայանոս յաւել, եւ յԱսորեստանէ, ի Միջագետաց եւ ի Հայաստանէ յետս զզօրսն կոչեաց եւ սահման պետութեան զԵփրատ լինել կամեցաւ»: Ռուփ., Հմտ. 14 երկու անգամ այս երեքն ալ կ'անուանէ: Բայց Սպարտիանոս (Ադրիան, Ա, 21, 11—12, հրա. Պետեր) չի յիշեր Ասորեստանը: Միով բանիւ այս Ասորեստան (Assyria) քիչ մը կասկածելի է:

[17] Կաչկարի (Կարխայի) դրամներ՝ Մարկ. Աւրելիանոսի, Լ. Վերոսի եւ Կոմոդոսի պատկերներով (Mionnet, V, p. 593—594): — Ռոհայի դրամներ՝ Կոմոդոսի պատկերով (անդ՝ Յաւելուած, Ը, էջ 399): — Միոնէ հրատարակած է նոյնպէս Անթեմուսիայի՝ Ռոհայստանի ուրիշ մէկ քաղաքին, դրամը (Յաւ. Ը, էջ 389)՝ որ Դոմետիանոսի անունը կը կրէ, ուստի նոյն իսկ Տրայիանու պատերազմէն յառաջ (!): Սակայն այսօր այս դրամը Սիկիլեան կտոր մը կը համարին՝ որ սխալ ստեղծուած էր: Վերջապէս՝ յիշատակած ըլլալու համար՝ մատնանիշ կ'ընեմ կտոր մ'ալ որ կը կրէ Արգարու անունը եւ ΔΡΙΑΝΟΣ (անդ, Ե, էջ 613). Ինքնին կը հետեւէր ասկէ՝ վերջինս լրացնել [A]ΔΡΙΑΝΟΣ (Ադրիանոս). սակայն Էքհէլ (D. N. V, էջ 512) ամբողջ ընթերցուածը շատ տարակուսական կը համարէր:

բայց եւ այնպէս ասկէ նոր նահանգ մը յառաջ չեկաւ. տեղական իշխանները դահաղուրկ չեղան: Բայց գոնէ Սեպտիմոս Սեւերոս գլուխ հանեց վերջնապէս միացումը, ինչպէս կ'ապացուցանէ պարթեւական լեգէոնները կազմուիլը: Պարթեւ արքայք սաստկապէս մաքառեցան այս աշխարհաքաղնին համար. Վաղարշ եւ Արտաւան ամէն քար շարժեցին Ոսրոհայաստանը ետ առնելու համար, եւ Կարակալլա անընդհատ տագնապ կրեց ասկէ. բայց վերջն ի վերջոյ Հռոմայեցիք տիրեցին:

Գ. դարուն գրեթէ մշտատեւ ճակատավայր մըն է[18]: Մեր աղբիւրները փոքր են, ու քիչ պայծառ, եւ աղօտաբար տեսնել կուտան աւելի կատարուած իրողութեանց վիճակը քան թէ իրաւականը: Վաղերիանոսէն՝ Ոսրհայաստան առած են Պարսիկները. բայց Ոդենաթոս՝ արտաքսեց այս արքայիկն, որ Պետութեան մէջ կը գրաւէ դիրք մ'որ իրմէ յառաջ չունէր նախորդ մը, զանոնք կը մերժէ անկէ եւ կը հալածէ մինչեւ Տիգրոն[19]. եւ այս օրինակին հետեւեցաւ յետոյ Կարոս[20]: Սակայն այս յանդգնական արշաւանքներն առանց արդեանց կը մնան.

18 Յուլի. անդ կը գրէ «չորիցս թողան եւ չորիցս յետս առան Միջագետք» (quater amissa, quater recepta Mesopotamia est).

19 Եւտրոպիոս, Թ, 8, 2. Թ, 10. Որոսիոս, Է, 22, 7 եւ 12. Պողղիոն, Գաղղիեն. (ԺԳ, 12 1). Բռնաւորք (ԺԳ. 15, 3):

20 Վոպիսկոս, Կարոս (Է, 8, 1):

որովհետեւ Գաղերիանու պատերազմական գործողութիւններէն ետքը սահմանները կը մնան Խաբուր գետի երկայնքը. հռոմէական ճոխսիրութիւնն այնուհետեւ նպատակ ա՛լ այնչափ չունէր Պարսից մայրաքաղաքը հասնելու, այլ կ՚աշխատէր իւր ստացուածքներն աճեցընել աւելի դէպ ի հիւսիս:

Պետութեան հետ կը միացընէ Տիգրիսէն անդին եղող ազինքը (gentes trans Tigridem) զորոնք սակայն Յովիանոս յետոյ ստիպուեցաւ (363ին) մեծաւ մասամբ ետ դարձընել, Յուլիանոս աղիտալի արշաւանքէն ետքը: Երկայն վիճաբանութիւններէ ետքը[21] այն մասք թէ ո՛ւր դնելու է այս «ազինք» եւ թէ ի՛նչպէս միաբանելու է Պետրոս Պատրիկիոսը[22]՝ Ամմիանոսի հետ[23], յանգեցան գիտունք մեկնութեան մը՝ որ ստոյգ կ՚երեւայ[24]: Բառացի պէտք չէ հասկընալ այս Անդրտիգրիտացիք (Transtigritanae) բացատրութիւնը. որովհետեւ այս ազգերէն գոնէ մին՝ Զաւդէք («Զաբդիկենէ» հնոց, Հայոց նաեւ «Ծաւդէք»)՝ Վերին Տիգրիսի հարաւային եւ արեւմտեան կողմն էր: Բաց աստի Պետրոս Պատրիկիոս անհեթեթ սխալ

---

21 Տես մանաւանդ Rawlinson, Persia, p. 129 ff.

22 Հմմտ. De Boor, Excerpt. de legat. Roman., p. 4, l. 6 եւ շար.:

23 ԻԵ, 7, 9:

24 Հմմտ. Hübschmann, ի „Indogerm. Forsch." XVI (1904), p. 219, 220, n. 1, 3.

մը կը գործէ նոյն գետն իբր սահմանագլուխ կոչելով. դարձեալ մի առ մի չի թուեր ամէն գաւառները՝ զորոնք Դիոկղետիանոս ձեռք ձգեց (Ծոփք Մեծ, Հանձիթ, Անգեղ-տուն, Ծոփք Փոքր, Արզն, Մոկք, Կորդիք, Զաւդէք, Ռէհիմենա). որոնք Եփրատէն կը տարածուէին մինչեւ Կորդուաց աշխարհը. իսկ Ամիանոս սոսկ հակառակ կը յիշէ միայն անոնք՝ զորոնք Յովիանոս ետ դարձուց. — վերջին հինգ յիշուած երկիրները՝ որոնք ամէնքն ալ Նիմփիոսի եւ Կորդուաց աշխարհի մէջտեղ կ'իյնային, — մինչդեռ այս ինքնակալը պահեց արեւմտեան կողմն եղածները՝ որոնք Նիմփիոսի եւ Եփրատի մէջտեղ կ'իյնային եւ հիւսիսակողմն ալ Արածանիէն (կամ «Մաւրատ-սու» գետէն) անդին կ'անցնէին: Միւս կողմանէ Տիգրիսէն անդին սահմանագլուխը նոյն 363 տարին Սինգարայէն յետս կոյս ընկրկեցաւ դէպ ի նոր գիծ մը՝ որ կ'անցնէր Դարայի եւ Մծբնի մէջէն եւ Նիմփիոս գետն երկարաձգելով:

Անկէ վերջը Միջագետաց մէջ փոփոխութիւն մը չեղաւ:

Հայաստանի մէջ փոփոխութիւններն աւելի սակաւաթիւ էին: Հռոմայեցիք դարերով Արածանիէն եւ Գայլ ու Վոհ գետերէն անդին միայն դիւանագիտական պատճառախնդիր կնճռոտող քաղաքագիտութիւն մը գործադրեցին: Բայց վերջապէս Դ. դարու

վերջին տարիները[25], բարեկամական բաժանում մը կատարուեցաւ իրենց եւ Պարսից մէջ. Հռոմայեցիք ընդունեցան Հայկական Թագաւորութեան իբր հինգերորդ մասը՝ ամէնէն աւելի արեւմտեան բաժինը։ Յետոյ 591ին բիւզանդական Հայաստանը քանի մը գաւառներով ալ աճեցաւ, որոնք Մաւրիկ կայսեր թողուեցան ի փոխարէն այն աջակցութեան՝ զոր ընձեռած էր Սասանեանց գահուն մէկ մրցակցին։ Յոյն աղբիւրները տարտամ են այս նոր սահմանագծման մասին. Հայկական աղբերաց քննադատութիւնը կատարած է Հիւբշման[26], որուն եզրակացութիւններն ու սահմանագիծը կ'ընդունիմ՝ անձնական ձեռնհասութիւն մ'այս մասին չունենալով։ Այս վերջինս կը տեսնուի այն քարտէսներուն միոյն վրայ, զոր այս պատմական տեսութեանս կը կցեմ (Պտկ. 1—2). որպէս զի աւելի ակներեւ կերպով կարենամ նշանակել դարերու ընթացքին մէջ Արեւելքի սահմանագլխին կրած փոփոխութիւնները։

---

[25] Հիւբշման (անդ, էջ 221, ծն. 3) կը յիշէ առաջարկուած այլեւայլ թուականները. բայց տարբերութիւնը չնչին է. ամէնէն հաւանական է 387 տարին (այսպէս՝ Բաւմգարտնէր՝ Պաւլի–Վ. հանրագիտարանին «Հայաստան» յօդուածին մէջ)։ Պրոկոպիոս (Վան Շին. Գ, 1, էջ 246) կը յիշէ իբր թէ «Թէոդոս (Բ.) որդի Արկադեայ» կատարած ըլլայ նոյնը, որ անընդունելի է (Հիւբշման, անդ, էջ 222, ծ. 2)։

[26] Անդ, էջ 228 եւն։ Այս սահմանագիծը մեծ հաւանականութիւն ունի. մեր օրերս ալ միեւնոյնն է հեռագրական գիծը՝ որ Տփղիսը Դաւրէժի հետ կը կապէ՝ Երեւանէն անցնելով։

## § 3. Սահմանագծոյն բնակիչները։

Այն ազգերը՝ որոնք Կաւկասէն մինչեւ Հրէաստան կը տարածուէին կամ իրարու կը խառնուէին, մեր հետաքրքրութիւնը կը զարթուցանեն երկու տեսակէտով. Հռոմ եւ Բիւզանդիոն ասոնց քով փոխնիփոխ մերթ իբր թշնամիներ եւ մերթ իբր օգնականներ կը գտնէին. ուստի աւելորդ չէ գիտնալ ինչ որ ասոնց մասին մեզի աւանդուած է։ Այս տեղեկութիւնները հատուկտոր են, գունաւորուած կողմնակալութեամբ, եւ կասկածելի են թէ զրոյցներու կը վստահին՝ երբ ազգային հեղինակներէ կը քաղեն — մանաւանդ Հայաստանի համար, — եւ կամ թէ նեղ ու գծուծ տեսութիւն մը կ'արտայայտեն՝ երբ Բիւզանդացիներէն կը ծագին։ Տեղեկութիւնները կը սկսին ծաւալիլ միայն Հասարակապետութեան վերջը, Արեւելքի պատերազմներուն առթիւ։ Յաճախ բաւական ալ չեն որ կարենանք ցեղերու տեղերը ճշգրտօրէն սահմանել, եւ կը ցուցնեն թէ անոնց յորջորջանքները փոփոխութիւններ կրած են։

Սակայն եւ այնպէս գրեթէ միշտ միեւնոյն ազգերն են, զորոնք կը գտնենք Ա. դարէն Ն. Ք. սկսեալ մինչեւ մահմետական աշխարհակալութիւնը։ Վիրք, Աղուանք, Հայք, Հրեայք եւ Արաբացիք են որ այս պատմութեան եօթը դարերը կը շահագրգռեն, եւ որովհետեւ ասոնք առանց էական փոփոխութեանց պահած են իրենց ազգագրական նկարագրաց մեծագոյն մասը, կրնանք մի առ մի

աչքէ անցընել՝ առանց վտանգի տարաժամանակութեանց։

Կովկասի եւ Հայաստանի մէջ կը տարածուի աշխարհ մը, որ այսօր՝ առաջին տեսութեամբ՝ ա՛յնպէս կ'երեւայ թէ որոշ միութիւն մ'ունի, յորմէ հետէ ռուսական տիրապետութիւնը զինքը լիովին գրաւած է։ Յաջորդաբար ձգձգուած Արեւելքի եւ Արեւմուտքի մէջ՝ կը պարունակէր բազմաթիւ գաւառներ եւ զանազան ազգեր։ Վրաստան, որ բերրի երկիր մըն էր, առատօրէն ոռոգուած եւ շատ բազմամարդ, հաղորդակցութեան ճամբաներ չունէր․ իր տեղագրութիւնը՝ Հայաստանէն աւելի նուազ փեռեկտած, այնու ամենայնիւ զինքը կ'անջատէր տուրեւառիկ երթեւեկութեան մեծ պողոտաներէն, եւ ասով կ'ապահովցընէր զինքը պատառ պատառ ըլլալէն[27]։ Այն զանազան ցեղերը, որ հոն կ'ապրէին եւ որոնք Կովկասի բարբարոսաց հինահարութեանց ենթակայ էին, ի սկզբան անդ ոգորման մէջ էին նաեւ Հայոց հետ, որոնց գերիշխանութեան ներքեւ ինկան եւ որոնք բռնաբար կը տիրէին։ Այս դրութիւնը[28] շարունակուեցաւ իբր

---

[27] Անդրկովկասի մէջ մղուած պատերազմներու պատմութեանց մէջ յաճախ կը յիշուի ճամբաներու դժուարութիւնը․ տես Պրոկոպիոս, Պարսկ․ Պատ․, Ա, 12, 12 եւն։

[28] Այս ամբաստանութիւնը կ'ընեն միայն բնիկ հեղինակները․ հմմտ․ B r o s s e t, Hist. de la Géorgie etc., trad. du géorgien. St. Pétersbourg, I (1849), p. 53 ff., եւ տես՝ Additions et éclaircissements, 1851, p. 81 ff.

վաթսուն տարի, մինչեւ իբր 55 տարին Յ. Ք.: Միեւնոյն ատեն Հռոմէական ազդեցութիւնը սպրդած մտած էր արեւմտեան մասին մէջ[29], մինչդեռ Պարսիկներն ալ՝ Ատրպատականէն գալով՝ ներս կը թափանցէին միւս ծայրէն: Երկիրը երբեք այս երկու հակառակորդացս մէկուն կամ միւսին միահամուռ ամբողջութեամբ չհպատակեցաւ[30], բայց բաժանման գիծը գրեթէ միշտ երերուն ու անորոշ բան մըն էր:

Այս աշխարհիս մէջ արեւմուտքէն արեւելք կարգաւ կը գտնուէին ազգերս՝ Կողքիսացիք, Վիրք եւ Աղուանք:

Առաջինները կ՚երեւայ թէ կը բնակէին գլխաւորաբար Սեւ ծովու եզերքը՝ Դիոսկուրիասի եւ Ապսարոսի մէջտեղ. հոս կը գտնեն ասոնց տեղը՝ Սկիւլաքս եւ անկէ ետքը — թերեւս անոր հետեւելով — Ստրաբոն, Պոմպոնիոս Մելա, Պլինիոս եւ Պտղոմէոս: Միայն Արիանոս (իւր «Շրջանաւութիւն» երկին մէջ) Կողքիսի անունը կը տարածէ մինչեւ Տրապիզոնի կողմերը: Հռոմէացիք շատ երկար ժամանակ այս ծովակողմերը կը պահէին միայն ծովային կայաններ եւ քանի մ՚ամրոցներ: Ասոնց բարքերը պարզ էին եւ

---

[29] Մեզի ծանօթ է 3000 հռոմայեցի զօրաց պահակագունդ մը, որ հոն զետեղուած էր (Յովսեպոս, Պատմ. Հր., Բ, 367):

[30] Եւ ո՛չ իսկ Լազաստանի պատերազմի տարիներուն՝ Յուստինիանու ատեն, որովհետեւ միշտ հռոմէական բանակ մը հոն բանակած էր, նոյնպէս երբ Պարսիկները Պետրան կը գրաւէին:

կ'ապրէին գլխաւորաբար սեւ ցորենով, կը մշակէին բերրի հող մը եւ հաւանօրէն պաճարաբուծութեամբ ալ կը զբաղէին, որովհետեւ Արիանոս անոնց ցեղերուն մէջ՝ որոնց բաժնուած էր ժողովուրդը, կը յիշէ նաեւ Ἡνίοχοι (կառավարք, կառապանք) ցեղ մը[31]: Կը յիշատակէ նաեւ Լազերը[32], որոնք ընդհանրապէս Փասիսի հիւսիսակողմը հաստատուած էին, եւ որոնց անունը ի վերջոյ սկսաւ գործածուիլ Կողքիսի բոլոր բնակիչներուն համար[33]: Իրենց մայրաքաղաքն էր Արքէոպոլիս՝ սեպուղիղ ապառաժի մը վրայ շինուած յիշեալ գետին ափը[34]:

Անոնց արքայն քրիստոնէութեան դարձաւ միայն Յուստինիանու օրով[35], եւ սակայն Բիւզանդիոնի հետ գործունեայ յարաբերութիւններ ունէր, որոնց կը վերագրէին այս խիզախ ու սէգ ազգին բարձր քաղաքակրթութիւնն ու բարգաւաճումը[36]: Կայսերմէ կ'առնուր իւր արքունի իշխանու—

31 Յաւ. Յովսեպոս, անդ:

32 Λάζοι՝ Պտղոմ., Ե, 9, 4· Λαζοί՝ Պրոկոպ., Պատմ. Պրս., Բ, 15, 1—2· Պատմ. Գոթ., Դ, 1, 8 եւ 10· Lazi՝ Պլինիոս, Բն. Պատմ., 2· Զ, 12· Յորդան, Իրք Գէթ. 88:

33 Պրոկոպ., Պատմ. Պրս., Բ, 17, 1—2: Երկու անուններս ալ իրարու տեղ խառն կը գործածէ եւ կ'աւելցնէ թէ Լազ նոր անունն է (Պատմ. Գոթ., Դ, 1, 8· Պատմ. Պրս., Ա, 11, 28)· Ագաթիաս (Բ, 9, 2)· նոյնպէս կը միացնէ երկուքն ալ:

34 Պրոկոպ., Պատմ. Պրս., Դ, 14, 1—3· Ագաթ. Գ, 5—8, 17:

35 Մագաղաս, ԺԷ, էջ 440 (Բոն.):

36 Ագաթիաս, Գ, 3, 2:

*թիւնը. իր հպատակներն՝ որ ազատ էին ամէն հարկերէ եւ զինուորական պարտաւորութենէ, կը դիմադրէին գլխաւորաբար Հոնաց չուրին դէմ:*

*Ծովով վաճառականութիւն կ՚ընէին Պոնտոսի հետ՝ կաշեղէններ ու գերիներ փոխանակելով աղի ու ցորենի փոխարէն*[37]*: Զ. դարուն Բիւզանդիոնի թոյլատրած կեղեքումները ժամանակ մը վարանեցուցին ժողովուրդս թէ որուն նախամեծարութիւն ընծայելու է. բայց քրիստոնէական կրօնքը կ՚արգիլէր իրեն տեւական համակրութիւն մ՚ունենալ Պարսկաստանի հանդէպ*[38]*:*

*Բազմաթիւ երկրորդական ազգերուն մէջ՝ որոնք աւելի կամ նուազ չափով Լազերէն կախուած էին, բազմաթիւ անուններ կը յիշեն Պրոկոպիոս եւ Ագաթիաս*[39]*, յաճախ մէկէն միւսն արդէն այլակերպած ձեւերով, Ապսարք, Աթինացիք, Բրուգացիք, Սագիդք, Ապսիլացիք, Մոսկացիք, Միսիմիացիք: Այս հեղինակները կը շարունակեն պարզ անուանակոչութիւններն եւ տարտամ նկարագրութիւնները աւելցնելով, ուր կը յիշեն կարգաւ ընդարձակ ամայութիւններ, հոսանքներ, եւ անտառներ, գահավէժներ, անմատ-*

---

37 Պրոկոպ., *Պարսկ. Պատ.*, Բ, 15, 5:
38 *Անգ.*, Բ, 15. 28, 26. Ագաթ., Գ, 5:
39 Պրոկոպ., *Պարսկ. Գոթ.*, Դ, 1, 8 ff. 2՝ *յաճախ*. Ագաթ., Գ, 7, 2:

չէլի լեռներ եւ քաջարքեր գաւառներ, իւրաքանչիւր ազգի համար ըսելով թէ նախընթացէն «անդին» կը բնակի: Լազիստանի հարաւարեւելեան մասին մէջ կը բնակէին, Ճանացիք, որոնց վրայ Բիւզանդիոն անխոհեմաբար փորձեց ուղղակի գերիշխանութիւն մը հաստատել՝ առանց Լազերու միջնորդութեան [40]:

Դէպ ի աւելի արեւելք՝ արդի Վրաստանի մէջ կը բնակէին Վիրք [41]. իրենց կալուածքները կը սկսէին Սարապանի լեռնանցքէն՝ որ Կուրի հովտէն կը տանի Ռիոնի հովիտը: Պէ՞տք ենք հաւատալ թէ ասոնք, թէպէտ եւ ծովէն հեռու էին, շատ աւելի քաղաքակիրթ էին քան Կողքիսացիքն, հետեւութեամբ հռոմէական ազդեցութեան՝ որ Տրայիանոսէ սկսեալ մինչեւ Յուլիանոս՝ աւելի իրական էր հոն: Կ'աւանդուի նաեւ թէ իրենց երկիրը՝ որ քաջարքեր էր ցորենի, ձիթոյ եւ գինւոյ, շատ բազմամարդ էր [42], որ կը մեկնուի կլի-

---

[40] Պրոկոպ., Պատմ. Պրս., Ա, 15, 19—25. Բ, 3, 39. ասոնք Հայոց դրացի են՝ կ'ըսէ (Շին., Գ, 6, էջ 257—258). ուրիշ տեղ մը կը գրէ (անդ, Գ, էջ 260) «Տրապիզոն անդր քան զՃանս»: Ակներեւ է որ ակնարկուած երկիրս հայկական լեռնաշխարհին արեւմտեան մէկ մասն է:

[41] Ստրաբոն, ԺԱ, 2, 18 եւն, էջ 499 C եւն. Պտղոմէոս, Ե, 10. Պլինիոս, Բն. Պատմ., Զ, 12, 29. Եւտրոպիոս, Ը, 14. Սոզոմենոս, Պատմ. Եկեղ., Բ, 7. Սոկրատ, Պատմ. Եկեղ., Ա, 26:

[42] Սոզոմենոս (անդ) կ'ըսէ թէ շատ բազմամարդ եւ շատ պատերազմասէր ազգ մըն էր:

մայրն առողջութեամբը[43]։ Այլեւայլ տառա-կարգութիւններ ունէին՝ ազատք (ազնուականք), քահանայք, զինուորք, գերիք[44]։ Ե. դարէն ետքը պարսիկ ազդեցութիւնը գերիշխող եղաւ իրենց մէջ[45]։

Դէպ ի արեւելք երկու անցքերը կը տանէին Աղուանից աշխարհը, զորոնք բացած էին Արագոս եւ Կուր գետերու հոսանքները. մին կ՚անցնէր Կամբէճ գաւառէն, միւսը՝ կը պաշտպանէին երկու շատ մօտ դղեակները Հարմոզիկա եւ Սեւմարա (Σεύμαρα) կամ Սեւսամարա (Σευσάμαρα)[46]. Աղուանից աշխարհն արեւելքէն կը սահմանուէր Կասպից ծովով, որ նաեւ Աղուանից ծով կը կոչուէր հարաւակողման մէջ. երկիրը՝ ձիերու արօտավայր մըն էր, բայց նաեւ մշակութեան — ոռոգման միջոցաւ — եւ նոյն իսկ անտառներու աշխարհ մը[47]։ Աղուանք չէին հպատակած՝ ո՛չ Մարաց, ո՛չ Աքեմենեանց եւ ո՛չ Մակեդոնացւոց։ Արեւմտեանց հետ առաջին

---

43 Յաւակման կանուխէն քրիստոնէութեան դարձու, հաւանօրէն իրր 324—325 տարին. տես A. Palmieri, La chiesa Georgiana e le sue origini (ի „Bessarione“, IX, 1900, p. 433—457; 2 ser., VI, 1901—1902, p. 218—228, 397—403; II, 188—204, 233—234). — Նոյն՝ La conversione officiale degl' Iberi al christianismo, saggio storico (ի „Oriens Christianus“, II, 1902, p. 130—150; III, 1903, p. 148—172).

44 Ստրաբոն, ԺԱ, 3, 6, էջ 501 C։

45 Պրոկոպիոս Պ. Պ., Ա, 10։

46 Ստրաբոն, անդ. հմմտ. «Աղուանից քաղաքի» (᾽Αλβάνιαι πύλαι), Պտղոմէոս՝ Ե, 8, 9. 11, 4։

47 Հմմտ. Tomaschek, Albani, Albania (Հանրագիտ. Պաուլի–Վ.)։

անգամ լուրջ շփում ունեցան Պոմպէոսի ատեն 65ին, երբ Միհրդատայ կողմնակից եղան[48]: Այն ատեն իրենց տոհմերը միակ պետի մը ներքեւ միացած էին: Թէպէտ եւ Պտղոմէոս Աղուանից աշխարհի մէջ քաղաքներու երկայն ցանկ մը կը դնէ, որոնց ամէնուն ալ հետքը կորսուած է, սակայն հազիւ թէ փորձուինք հաւատք ընծայելու Պղուտարքոսի թուերուն, որուն համեմատ Պոմպէոս իւր դիմացը գտաւ 60·000 հետեւակազօր եւ 12·000 հեծեալ[49]: Այս ազգին ալ՝ ինչպէս Լազերուն՝ միտումները կը տատանէին Հռոմայեցւոց եւ Պարթեւաց, Պարսից եւ Բիւզանդացւոց մէջ: Սակայն աւելի յօժարութեամբ կը նմանէին Արշակունեաց քաղաքական հաստատութեանց:

Աղուանք եւ Վիրք մանաւանդ շատ յարգուած հետեւակազօրք մը կը կազմէին[50], որ շատ օգտակար օժանդակութիւն մըն էր լեռ-

---

[48] Հռոմէական զօրավարին քարտուղարը Թէոփանէս ծանօթացուց այս երկիրը· իւր ծանօթագրութիւնները գործածած է Ստրաբոն (անդ), Պլինիոս (Բն· Պատմ·, Զ, 29, 39)· յաւելլու է՝ Ապպիանոս, Միհրդ· 103· Դիոն Կասիոս, ԼԶ, 54· Պղուտարքոս, Պոմպ·, 34 եւ Անտ· 34:

[49] Անդ: Այս մանրամասնութեան արժէքն ունի յաջորդն ալ· (35) «Կ'ըսուի թէ Ամազոնները կ'օգնէին բարբարոսաց, որոնք կատարելապէս պարտուեցան: — Այսչափ զօրաբաժին հանուած է երկրորդ ապստամբութեան ատեն ալ· Պոմպէոս գործք ունեցած կ'ըլլայ նախ 40·000 Աղուանից հետ, «որոնց մէջ մեծ նախճիր գործեց» (34) կ'ըսուի (!):

[50] Տակիտոս, Տարեգր·, Զ, 34· Սակայն Ստրաբոն ալ (ԺԱ, 14, 9, էջ 550 C) կը նշանակէ «սպառազէն» (κατάφρακτοι զրահաւոր) Աղուանները:

նային պատերազմի մը գործողութեանց ատեն, եւ որ անհաւասար կը մնար միայն լեգէոնականաց հանդէպ. վերջինքս այս առաջին պատերազմներու ժամանակ իրենց դէմ ունէին միջակ սպառազինութիւն մը, այն թեթեւ արգելքը՝ զոր հարուածոց դէմ կը դնէին անասնոց մորթերը, որոնցմով անոնք պաշտպանուած էին: Պղուտարքոս արձագանգ կ'ըլլայ Վրաց մասին աւելի նպաստաւոր կարծիքի մը. սակայն նաեւ Աղուանից արդէն ծանօթ էին ռազմագիտական քանի մը գաղտնիքներ. Պոմպէոս մեծ դժուարութեամբ միայն կրցաւ գետն անցնիլ. բարբարոսներն անոր ափն ամրացուցած էին ծառի կոճղներու ցցապատնէշով մը:

Այսպէս ըսելու համար՝ ճամբաներ չկային հին Անդրկովկասի մէջ[51]: Այլեւայլ աշխարհներ հազիւ մատչելի կը համարուէին. հետաքրքրական է Պրոկոպիոսի Ճանիացւոց մասին պատմածը կարդալ[52]: Անոնք, կ'ըսէ, անկախ կ'ապրէին, նոյն իսկ առանց կազմակերպեալ կառավարութեան, իբրեւ աստուածներ կը պաշտէին անտառներն ու անասունները. իրենց ապրուստը կը հայթայթէին գողութեամբ ու աւազակութեամբ, չկարենալով մշակել առապարին ու անբեր

---

[51] Ստրաբոն, ԺԱ, 13, 4, էջ 524 C: ʼιδ ὀρῶν καὶ ἀνοδιῶν (ընդ լերինս եւ ընդ անկոխ տեղիս). Պրոկոպիոս, Ծածուկ Պատմ. 2, 26 δύσοδός τε γάρ... ἡ Λαζική ἐστι καὶ ὅλως κρημνώδης. (զի Լազիկէ անցնաց է եւ լի գահաւանդակօք):

[52] Վասն Շին., Գ., 6, էջ 257—258:

Հողը, եւ մշտատեւ ձմեռուան մը տակ տառապելով: Առաջին անգամ Յուստինիանոս զասոնք այս անհամբոյր մենութենէն ազատած կ'ըլլայ, կտրել տալով բոլոր ծառերն որ անցուդարձը կ'արգելէին, ճամբաներ բանալով նոյն իսկ հեծելազօրու գնդերուն համար[53], այս հեռաւոր երկրին մէջ շինեց դղեակներ (castella), ուր հռոմայեցի պահակազօրքեր կը բնակէին: Սակայն նկարագրութեան այս պատկերին մէջ ապահովապէս այլեւայլ չափազանցութիւններ կան:

Նաեւ հին Հայաստանի մասին պատմուածներուն մէջ քիչ բան չկայ որ զմեզ կը զարմացնէ: Ի՞նչպէս կրնար այս լեռնաշատ աշխարհն[54] ընտիր հեծելազունդներ մատա-

---

[53] Դարձեալ Պրոկոպիոսի համեմատ՝ պարսիկ պետ մ'ալ նման ձեռնարկ մը գլուխ հանած է բոլորովին մերձաւոր գաւառի մը մէջ. «Անտարակոյս տեղիք կայ զարմանալու այս ջանաէր ազգին անխոնջ համբերութեան վրայ, որ ճանապարհ հարթեց Վրաստանի ու Կողքիսի մէջ, որոնք յառաջ լի էին անտառներով, ապառաժներով եւ գահաւանդներով, այնպէս որ հազիւ ամէնէն դիւրաթեք մարդ մը կրնար անցք մը գտնել, եւ ուր Պարսիկներն այնուհետեւ դիւրութեամբ կրցան անցընել ձիերն ու փիղեր» (Պատմ. Գոթ., Ե, 13, 5):

[54] Ամբողջ աշխարհը կազմուած է իրարու յաջորդող հովիտներէ, որոնք ընդհանրապէս նեղ են ու բարձրաւանդակ կողերով. դաշտերը ցանցառ են, եւ մանաւանդ սակաւածաւալ: Բովանդակ արեւմտեան բաժնէն, որ միակն է որ երբեմն հռոմէական հնազանդութեան ներքեւ մնաց, միայն երկու դաշտեր կրնան յիշուիլ, Կարնոյ դաշտը՝ որ շատ անկանոն է եւ միայն երկու հովիտներու լայնացումն է, եւ Երզնկայի երկայն դաշտը, որուն լայնութիւնը տեղ մ'ալ տասը քիլոմեթրը չ'անցնիր. Համմ. Wilh. Strecker, Beiträge zur Geogr. von Hocharmenien ի Zeitschrift der Ges. für Erdkunde zu Berlin IV, 1869,

կարարել, որոնք մինչեւ անգամ Պարթեւաց հեծելազօրուն հետ կը մրցէին։ Մտադրութեան արժանի կէտ մըն էր որ Անտոնիոս յոյս դրած էր այն 10·000 հեծելոց վրայ, զորոնք Արտաւազդ խոստացած էր խաւրել, եւ որոնց չգալովը՝ Անտոնիոս մեծ տագնապի մէջ ինկաւ [55]։ Ղուկուղղոսի դէմ Տիգրան կը բերէր «55·000 ձիեր, որոնց 17·000ը զրահապատ էին»՝ ինչպէս անոնց հեծեալները, որոնք նիզակ կը գործածէին [56]։ Զ· դարուն վերջը Մաւրիկ կայսեր օրով ալ նոյն հռչակն ունէր. ինքնակալը հրամայեց ամբողջը զօրահան ընել եւ իբրեւ երկրին վրայ դրուած կանխիկ հարկ կը պահանջէր եւ կը պատրաստուէր Թրակիա խաւրել [57]։

---

p. 145—156, *Տիտ. Գ—Դ։ Ռէկլիւ հովիտներու անբաւ քաւեզ մը կը կոչէ* (Reclus, Nouv. Géogr. univ. Paris, IX, 1884, p. 326) *եւ Լինչ կը կրկնէ նոյն բացատրութիւնը* (*Բ, էջ* 395)*։ Աւելցընելու է Ստրաբոնի* (*ԺԱ,* 14, 15, *էջ* 532 C) *Տիգրանի համար պատմածը թէ «Նախ պատանդ էր Պարթեւաց քով, յետոյ անոնցմէ վերադարձաւ՝ որոնք իբր վարձք առին* Հայաստանի եօթանասուն հովիտները (*Λαβόντων μισθὸν ἑβδομήκοντα αὐλῶνας τῆς Ἀρμενίας*)*. Հովիտ մը կրնայ կամայականօրէն հատուածներու բաժնուիլ, բայց մնացածին այս թիւը լաւ կերպով կը պատկերացնէ երկրին կերպարանակազմութիւնը։ Ստրաբոն կը յաւելու* (*ԺԲ,* 12, 4, *էջ* 522) *թէ հոն «լեռնականներու անսահման փոքրիկ ցեղեր կային, որոնք կ'ապրէին մեծաւ մասամբ աւարառութեամբք ու աւազակութեամբք»։*

[55] *Պղուտարքոս, Անտ.*, 50։

[56] *Անդ, Ղուկ.* 26, 28. *հմմտ.* 31։ *Արտաւազդ Հայոց թագաւորը Կրասոսի բերաւ* 6000 *հեծեալներ եւ խոստացաւ տալ* 10·000 *ալ* (*Պղուտ., Կրաս.* 19)։

[57] Frédéric Macler, Hist. d'Héraclios par l'évêque Sébéos, trad. etc., Paris 1904, p. 35—37, 54 (*հայ բնագիր՝* 47—48, 51—52 *եւն*)։

Սակայն երկրին կազմութիւնը լաւ չէր յարմարէր այս գնդերուն ազատ շարժմանց։ Ղուկուղլոս ասոր փորձն առաւ, երբ աշնան գիշերահաւասարութենէն անմիջապէս ետքը «Ձիեր ա՛լ խմելու ջուր չէին գտներ սառուցապատ գետերէն, եւ սառոյցն որ անոնց սմբակներու տակ կը խորտակուէր, իր սուր բեկորներովը կը կտրէր անոնց ջիղերն ու մրունքները։ Երկիրն՝ որ գրեթէ ամէն կողմ անտառապատ էր, միայն նեղ շաւիղներ ունէր, ուստի զինուորները չէին կրնար քալել առանց ձեան մէջ թաթխելու. գիշերները կ՚անցընէին խոնաւ ու տղմոտ տեղեր»[58]. այն տեղ՝ ուր դաշտ մը կը պարզուէր, թանձրախիտ եղեգնուտներ զանի կը ծածկէին[59]։

Բայց Հայաստան չափազանց նպաստաւոր էր ձիաբուծութեան համար, ճիշդ ինչպէս հիւսիսակողման Ատրպատական Մարաստանը, որ իրեն շարունակութիւնն էր եւ իրեն կը նմանէր[60]։ Ուստի բնակիչները բնականաբար գաղափար յղացան այն աղբիւրէն օգտուիլ, ո՛չ միայն տնտեսական կենաց այլ նաեւ զինուորական պաշտպանութեան համար. յատկապէս «Կոմիսենէ» (Κωμισηνή) եւ «Որքիստենէ» (Ὀρχιστηνή) գա-

58 Պղուտարքոս, Ղուկուղ. 32։

59 Մակլէր, Թրգմ. Սեբէոսի, էջ 31, 143 (հայ բն., էջ 26)։

60 Ստրաբոն, ԺԱ, 13, 7, էջ 525 C. 14, 9, էջ 529 C։

61 Ստրաբոն, ԺԱ, 14, 4, էջ 528 C։

ւառները պատերազմիկ նժոյգներու մեծ քանակութիւն մը կը մատակարարէին[61]: Բաց աստի եկամուտ մը առանալ կարելի էր այս հեծելազօրը վարձու տալով, զոր օտար բանակները կը վարձէին պատերազմի ուրիշ ասպարէզի մը վրայ գործածելու համար:

Բաց աստի Պարթեւաց ազդեցութիւնն, որոնք յանդուգն ձիաւորներ էին, անտարակոյս մեծապէս նպաստեց Հայոց զինուորական հաստատութիւնները կազմակերպելու, որոնք կ'երեւայ թէ անոնցմէ առած են նաեւ իրենց տարազն եւ իրենց սպառազինութիւնը[62], ինչպէս իրենց լեզուին մէջ՝ որ թրակեան էր ծագմամբ, մուծած են բազմաթիւ երանեան բառեր[63]:

---

62. Պատկերազարդ յիշատակարան մը չկայ որ նոյնը մեզի ցուցընէ: Զենք կրնար վստահիլ Հայաստանի այն պայմանադրական անձնաւորման՝ որ պատկերացած է Հռոմի մէկ խորաքանդակին վրայ. (P. Bienkowski, De simulacris barbararum gentium apud Romanos, Cracoviae 1900, p. 61, 64—66, fig. 54). Աւգոստոսի ժամանակէն ցանցառ դրամներ կը ներկայացընեն հայ պատերազմիկ մը յոտին, նիզակ բռնած, բայց կ'երեւայ թէ մերկ: Ցեռսակողմը՝ աղեղն պատկանդարանի (corytus) մէջ (E. Gabrici, ի Studi e materiali Միլանի, տպ. Փլորենտիա, II, 1902, p. 151, fig. 4—5). Հայոց զրահաւորաց մասին հմմտ. Սալլուստոս, Պատմ. Մնաց., 64—66 (Maurenbrecher, I, p. 181—182) «եւ զհետ գային հեծեալք սպառազէնք, ... եւ ձիոց նման սպառազինութիւնք էին... որք յառաջին խաղային, հեծեալք զրահապատք, համակ երկաթի կերպարանօք» եւն (equites catafracti, ... equis paria operimenta erant... equites catafracti, ferrea omni specie...).

63 Հոս իրողութիւն մը կայ, որուն չէ յատակօրէն անդրադարձած Մարքարտ, վասն զի Հայոց ազգային տարազը նկարագրելէն յառաջ, որ կը բաղկանար եր—

Հազիւ կրնանք հաւատալ թէ այս գաւառներուս մէջ՝ որ այսօր ա՛յնպէս ինկած են, մարտայարդարութիւնն ու ռազմագիտութիւնն այնպիսի ղարգացման հասած էին, որուն բացարձակ եւ միաբան վկայութիւններ կ'ընծայեն պատերազմաց նկարագրու–

---

կայն պարեգօտէ մը՝ որ կը յիշեցնէր ողբերգակ դերասաններու պճղնաւոր պատմուճանը (ԺԱ, 14, 12, էջ 530 C) կը գրէ այսպէս. «Մարաց սովորութեանց մեծագոյն մասը կը գտնուի նաեւ Հայոց քով, յայտնապէս երկու աշխարհներուն նմանութեան պատճառաւ։ Կը կարծեն թէ Մարք եղան Հայոց առաջին կրթիչները, ինչպէս եղած էին Պարսից ալ. որովհետեւ երկայն պարեգօտը, խոյրը (κίδαρις, tiara), թաղեայ արտախուրակը (πίλεος, pileus) թեզանաւոր պատմուճանը (χειριδωταὶ κιτῶνες,) manicatae tunicae) եւ անդրավարտիք (ἀναξυρίδες, anaxyrides sine braccae, շալվար) լաւ են միայն ցուրտ երկիրներուն համար: Պարսիկները զասոնք ընդունեցան իբր աւելի վեհաշուք հանդերձներ, եւ հրաժարեցան իրենց կարճ ու թեթեւ զգեստներէն» (ԺԱ, 13, 9, էջ 525 C)։ Ընդհակառակն այս տարազը կը յարմարէր ցրտոյ ու տօթի այն տարապայման բարեխառնութեանց՝ զոր Երանի ժողովուրդները ալ նոյնչափ կը ճանչնային՝ որչափ Հայերը։ Աւոր աւելի իրաւամբ կրնար հակադրուիլ Միջագետաց կլիման. բայց Ոս–հայաստանի իշխաններուն համար Գ. դարուն դրոշմուած այլեւայլ դրամներ (Victor Langlois, Numismatique de l'Arménie dans l'antiquité, Paris 1859, pl. VI, n. 6—9) նաեւ այս երկրիս մէջ նոյն արեւելեան զգեստին գործածութիւնը կը ցուցնեն. երկայն պատմուճան եւ լայն անդրավարտիկ՝ որ պճեղներուն քով խորշխորշան է։ — Տարազի այս խնդրոյն մասին. հին աւանդութիւնը միակերպ չէ. Ցուստինոսի քով (ԽԱ, 1—2) կը կարդանք «Պարթեւները սկիւթացի աքսորականներ են, ինչպէս կը նշանակէ իրենց անունը սկիւթարէն լեզուաւ. իրենց երկրին մեծագոյն մասը շատ տաք է եւ շատ պաղ։ Ցառաջ շատ տարբեր յատուկ զգեստ մ'ունէին. բայց յետոյ ընդունեցան Մարաց թափանցիկ ու թեթեւ տարազը. իրենց զէնքերը Սկիւթացւոց զէնքերն են»։

թիւնները։ Կորդուաց աշխարհին մէջ, որ Վերին Տիգրիսի սահմանակից էր, բնակիչները «հռչակաւոր էին իբրեւ ճարտարապետներ, անհամեմատելի զինուորական ճարտարագէտներ, հռչակ մը՝ որուն համար Տիգրան զանոնք իբրեւ նոյնպիսի կը գործածէր[64]»։ Այս արքայն իրեն հետ կը տանէր ռահվիրաներ՝ ճամբաներ բանալու, կամուրջներ ձգելու, գետեր մաքրելու, անտառներ կտրելու եւ ուրիշ կարեւոր գործեր կատարելու համար,՝ ասոնք թուով 35.000 էին եւ բանակին վերջապահաց մէջ դասուած[65]»։

Պղուտարքոսէն կ՚իմանանք դարձեալ թէ Հայոց դիւրին էր Անդրկաւկասի ամէն ազգերուն վրայ գլխաւորութիւն մը ձեռք ձգել ու պահել եւ զանոնք գործածել նոյնպէս իբրեւ օգնականներ իրենց սեպհական օգտին համար։ Յետոյ պիտի տեսնենք այն քաղաքականութիւնը, զոր այս երկրիս նկատմամբ գործադրեցին երկու ախոյանակից մեծ պետութիւնները, եւ այն համաձայնութիւնները՝ զորոնք նոյն խնդրոյն նկատմամբ կռեցին։ Քիչ մ՚անթափանցելի կը մնան Հայոց զգացումները հանդէպ Արեւմտեանց կամ Պար-

---

64 Ստրաբոն, ԺԶ, 1, 24, էջ 747 C։

65 Պղուտարքոս, Ղուկուղ. 26։ — Մծբնի մէջ Տիգրանայ Գուրաս եղբայրն իր քովը ունէր Կալլիմաքոս անուն անձ մը, որուն իրականին թողուցած էին իշխանութիւնն իր զինուորական քաջափորձութեան եւ մեքենայագիտ ճարտարութեան համար (անդ, 32)։ Անունէն կրնայ հետեւցուիլ թէ Հայաստանի ծառայութեան մէջ մտած յոյն վարձկան մ՚ըլլայ։

ակց։ Այն ընթացքին՝ որով վարուեցան Յունաց հանդէպ, գիրենք վերջնոցս աւելի ըրած էին [66]։ Քինախնդրութիւնները կ'երեւայ թէ երկայն ատեն տեւեցին. Զ. դարու վերջը, Պարսկաստանի դահուն թիկնածուաց մրցակցական պայքարներու ատեն Հայք ալ՝ ինչպէս կը պատմէ իրենց պատմագիրներէն մին Յովհ. Մամիկոնեան, կողմնակից եղան Խոսրովայ, եւ խուրեցին 30.000 հոգի՝ որոնք պիտի միանային 70.000 Բիւզանդացւոց հետ. բայց միայն Հայք եղան որ յաղթութիւնը տարին, որովհետեւ Յոյնք իրենց արժանապատուութենէ վար համարեցան Հայոց հետ միալու. ուստի քակտեցան անջատեցան եւ թշնամւոյն չհասան [67]։

Ի սկզբան թէ՛ Հռոմայեցիք եւ թէ՛ Պարթեւք հաւասարապէս կ'աշխատէին գլխաւոր (նախարարական) տանց պետերը սիրաշահիլ. բայց յետոյ կ'երեւայ թէ Հայաստան նուազ ազնուապետական եղած էր. գոնէ պարսկական իշխանութեան ներքին նախարարք կանոնաւորապէս դուրս կը թողուին Տէրութեան գործքերէն։ Ասոր փոխարէն անոնք կը շարունակեն իշխել բանակին վրայ, յատկապէս հեծելոց առնուտէրական (աւատական) գնդեր կազմել։ Սեբէոս կը հաղորդէ գանգատանաց թղթի մը պատճէնը՝ զոր Մաւրիկ կայսրը գրել տուած խուրած

[66] Փաւստ., Ղուկաս. 21։

[67] V. Langlois, Historiens de l'Arménie, I, p. 363—364.

էր Պարսից թագաւորին հայ նախարարներու եւ անոնց գնդերուն դէմ. «Ազգ մի խոտոր եւ անհնազանդ են, ասէ, կան ի մէջի մերում եւ պղտորեն: Բայց ե՛կ, ասէ, ես զիմս ժողովեմ եւ ի Թրակէ գումարեմ. եւ դու զքոյդ ժողովէ եւ հրամայէ յԱրեւելս տանել: Զի եթէ մեռանին՝ թշնամիք մեռանին. եւ եթէ սպանանեն՝ զթշնամիս սպանանեն. եւ մեք կեցցուք խաղաղութեամբ: Զի եթէ դոքա յերկրի իւրեանց լինիցին, մեզ հանգչել ոչ լինի[68]»:

Պէտք է ընդունիլ թէ Հայաստանի թագաւորաց դիրքը շատ դժուարին էր: Ամմիանոս Մարկեղոս[69] կը ներկայացնէ մեզի Արշակ արքայն՝ Տիրանի որդին՝ իբրեւ հաւատարիմ Հռոմայեցւոց, ընդդէմ պարսկական ամէն թելադրութեանց: Մովսէս Խորենացի[70] ընդհակառակն զինքն իբր բիւզանդական կայսրութեան արհամարհող կը նկարագրէ: Այս երկու վճիռներուն մէջ ալ ճըշմարտութեան մաս մը տեսնելու ենք: Կրնար ոմանց քով համարուիլ իբր Հռոմայեցւոց համակրող, եւ ուրիշ տեղեր կասկածուիլ թէ պարսկասէր ըլլայ[71]: Այս արքայք իրենք զիրենք սաստիկ նեղուած կը զգային, տագնապալից ճզճզուած ըլլալով թէ՛ մէկ եւ թէ՛

---

[68] Macler, անդ, p. 30—31 (Հայ բնագիր՝ Պետերբ. 1879, էջ 45—46):

[69] Ամ. Մարկեղ. Ի, 11, 1:

[70] Մ. Խոր. Գ, ժԹ:

[71] Weber, Die katholische Kirche in Armenien, p. 242.

մէկալ կողմանէ. կ'ամուսնանային մերթ յունական իշխանուհիներու հետ եւ մերթ պարսիկ տիկնանց հետ, եւ երկու ցեղերուս այս ազգախառն խնամութիւնները փոփոխակի կարգաւ կը նպաստէին իրենց միտութեամբք այս եւ այն կողմ տատանելու, եւ ասով իրենց համբաւին հակասական երեւոյթ մը կու տային: Անխոհեմ կ'ըլլար ամբողջ հայ ազգը դատել իր արքայից վարմունքէն, որոնք ընդհանրապէս կ'ընդունուէին՝ եթէ ո՛չ կը տրուէին՝ երկու պետութեանց միոյն կողմանէ ընդդէմ միւս կողմին[72]: Անո՛ր համար որ Հռոմէական զէնքերը զՏրդատ Հայաստանի գահուն վրայ դրած էին, վերջինս Գ. դարու վերջին իր յաճախակի արշաւանքները կատարեց մինչեւ Տիգրոնի կողմերը[73]:

Կրօնքն ալ առանց ազդեցութեան չմնաց Հայոց արտաքին յարաբերութեանց վրայ. Տրդատ՝ քրիստոնէութեան դառնալով Ս.

---

72 Միհրդատ՝ Վրաց արքային եղբայրը (Տակիտ., Տար., ԺԲ, 44) այս միակ պատճառաւ հաստատուն բարեկամ մնաց Հռոմայեցւոց: Զուտ անձնական համակրութիւններ կրնային յառաջ գալ նաեւ իշխանին յատուկ կրթութենէն. այսպէս նշանաւոր եռանդ մը տեսնուեցաւ Պարթեւաց մեծ տանուտեառ մը (աւատառուի) քով՝ Ազատ (Իզատէս) արքային Ադիաբենեայ եւ Կորդուաց աշխարհին, Կղաւդիոսի օրով. եւ Ազատ Հռոմէացւոց զինուորական դրութեան մեծ հիացող մըն էր (Յովսեպոս, Տար. Հր., Ի, 70): Իր հինգ որդիները Հռոմ խրկած էր նոյն դրութիւնը սորվելու եւ անոր թափանցելու:

73 Մ. Խոր., Բ, ՀԲ (վերջը). Ագաթանգեղոս, 55 (Հայ բնագիր Վենետ. 1835, էջ 99—100). Լակտանտիոս, Վասն մահ. հալածչ., 9 (Lactant., de mort. pers.):

Գրիգորի Լուսաւորչի ձեռօք, քրիստոնէութիւնը պարտաւորիչ ըրաւ իր հպատակաց հրով ու սրով. սաստիկ դժգոհութիւն մը ծագեցաւ անկէ շատերուն քով[74], զոր Պարսիկք ալ աւելի գրգռեցին, եւ արդիւնքն եղաւ հուղկահարական պատերազմ մը հռոմէական սահմաններուն վրայ[75]: Բայց քրիստոնէական հոսանքն աւելի զօրաւոր մնաց Հայաստանի մէջ. եւ այսպէս երբ Յուլիանոս «Ուրացող» իր պարսկական պատերազմին համար այս կողմանէ օգնութիւն խնդրեց, խուլ ընդդիմութեան հանդիպեցաւ[76]:

Եարմուկի ճակատամարտին մէջ, որով Ասորիք Արաբացւոց ձեռքն ինկաւ, բիւզանդեան բանակին մէջ հայ զօրաբաժին մ'ալ կար. ասոր ձեռնթափութիւնն է՛ր որ՝ մահմետական հեղինակի մը համեմատ՝ Յունաց պարտութեան պատճառ եղաւ[77]: Վիրք հաւատարիմ մնացին քրիստոնէական կողման. բայց Հայոց մեծագոյն մասը յօժարակամ հնազանդեցաւ տիրապետութեան «արքային

---

[74] Մ. Խոր., Գ, ը. Բուզանդ, Գ, ի. Ագաթանգեղ., 110—132 (տես հայ բնագիր, էջ 579 եւն եւն)։

[75] Յուլիանոս, ճառ Ա, 19 A։

[76] Նոյն, Թուղթ, 67: Կը գրէ Արշակայ. «Գիտեմ թէ խորամանկ ես, յոռի զինուոր եւ անձնապարծ, եւ ներկայ իրերը զայս կ'ապացուցանեն. որովհետեւ ծածուկ ապստամբ կը հայթայթես հասարակաց օգտի թշնամւոյ մը, եւ թէ պատերազմին ելքին կը սպասես՝ զքեզ որոշելէն յառաջ...»։

[77] Հմմտ. Macler, Sébéos, p. 96 (հայ բնագիր էջ 106)։

Իսմայէլի»՝ ինչպէս զայն կ՚անուանէին[78]: Սակայն այս տիրապետութիւնն ապահովեալ էր եւ անխուսափելի. ուստի չենք կրնար չափազանց քննադատել Հայերը թէ ինչու իրաց այս վախճանը փութացուցին:

Հայաստանի եւ յատուկ մտօք Ասորւոց աշխարհին մէջ ժամանակ մը գոյութիւն ունէին երկու մանրակերտ վեհապետութիւններ, Կոմագինեայ եւ Ուռհայաստանի տէրութիւնները: Առաջնոյն հելլենասիրութիւնն աշխարհածանօթ էր[79]: Շատ քիչ անձինք ա՛յնպէս դիւրախաբ էին հաւատալու այն դաւին՝ զոր իբր թէ Կեսեննիոս Պետոս (Caesennius Poetus)՝ Վեսպասիանու օրով՝ կըրցաւ երեւան հանել. երկիրը պարզապէս ու լիովին պետութեան հետ միացընելու համար պատրուակ մը պէտք էր[80]: Բոլորովին նոյն-

---

[78] Տամի 651 կամ 653. Macler, անդ, p. 132—134 (Հայ բնագիր, էջ 138). Արտաքսցի իշխանը Հայոց կ՚ըսէ. «Հեծեալ կալէք յաշխարհիդ ԺՌ. հազար... եւ զհեծեալսն յԱսորիս ոչ խնդրեմ, բայց այլուր եւ հրամայեմ՝ պատրաստ լիցին ի գործ»:

[79] Միայն քաղաքային պատերազմաց ժամանակ՝ Անտոնինեայ արշաւանաց ատեն՝ Անտիոքոս արքային փախստական Պարթեւաց ապաստան տուաւ. սակայն նաեւ յօժարակամ գտնուեցաւ ինքզինքն այս սպառնաքէն սրբելու՝ Հռոմայեցիներէն խաղաղութիւն գնելով: Հմմտ. v. Gardthausen, Augustus und seine Zeit, Leipzig, I, 1 (1891), p. 237.

[80] Դիոն Կաս., 42, 11. Յովսեպոս, Պ. Հր., Է, 219—243: Վերջին արքայն կամակար ժամանակցած էր Երուսաղէմի պաշարման. բայց առի արդեւք մը չեղաւ որ իւր զահընկեցութիւնը հռչակուի (72ին). չ՚երեւար թէ դիմադրած ըլլայ սաստ. արձանագրութիւն մը՝ որ նորերս Բալբէք գտնուեցաւ (Th. Mommsen, ի Sitzungsbericht d. Berliner Akad., 1903,

պէս չեղաւ Ուռհայաստանի մասին. Եփրատ կը սահմանէր նոյն երկիրն արեւմուտքէն. եւ Աբգարներու հարստութիւնն կրնար ինք զինքը քիչ մ'ապահով զգալ այս սահմանագլխոյն ետեւը: Այս իշխաններն ասով քանի մ'անգամ երկդիմի դեր մը խաղացին Հռոմայեցւոց եւ Պարթեւաց միջեւ[81]. երբ Տրայանոս ահագին բանակով մը կը մերձենար՝ այս արքաներէն մին բոլորովին ալ անտարբեր մնաց[82]: Նոյն իսկ Սեպտիմոս Սեւերոս թողուց որ այս թագաւորութիւնն իւր գոյութիւնը շարունակէ[83]. երբ անվստահութիւն ունենային ասոր մասին՝ կը գոհանային յատուկ գործակալներ կարգելով անոր վրայ[84]: Թագաւորները միացեղ ազգի մը չէին իշխեր հոն. ազգաբնակութեան գլխաւոր բնախաւը նաբատացի էր, բայց ազգագրական այլեւայլ տարրեր հոն իրարու կը խառնուէին:

---

p. 817—824) կը տեղեկացընէ թէ նոյն իսկ պարզ հարիւրապետ մը պատուէր ստացաւ՝ երթալու փնտռելու գտնելու անոր երկու որդիները, որոնք Հռոմ կոչուած էին՝ այն տեղ իրենց հօր պէս իբր պարզ անհատներ բնակելու:

81 Դիոն Կաս., Խ, 20: Gutschmid, Gotarzes (ի Kleine Schriften, III, 1892, p. 86).

82 Դիոն Կաս., ԿԸ, 21: Նոյնը պատկերացած կը գտնենք հիւպատական զարդարանք (ornamenta consularia) զգեցած՝ իբրեւ ձեռակալ իշխան եւ բարեկամ ինքնակալի, որուն կողքին կեցած է, Բէնէվէնտի յաղթական կամարին խորաքանդակներուն միոյն վրայ (տես „Westdeutsche Zeitschrift“, XIV, 1895, Տխտ. Ե, պատկ. 1):

83 Eckhel, D. N. V., III, p. 511, 516. Ցետոյ անհետ եղաւ:

84 CIL, II, 4135; XII, 1856.

Նոյնը կրնանք ըսել Խորին Ասորւոց եւ Պաղեստինի բազմաթիւ իշխանութեանց մասին, որոնք ուշ կամ կանուխ կլլուեցան Ա. դարուն Յ. Ք. ընթացքին մէջ[85] եւ մեծաւ մասամբ երկիս աշխարհագրական սահմաններէն դուրս կը մնան: Քիչ մը նշանաւոր քաղաքները կը պարունակէին հռոմայեցի քաղաքացիներ կամ վաստակաւոր զինուորներ՝ որոնք բանակին մէջ երկար ատեն ծառայելով հռոմայացած (հռոմայեցւոյ իրաւունք ստացած) էին, Յոյն՝ որոնք սերունդ էին այս երկիրը փոխադրուած Մակեդոնացւոց, կամ բնիկներ՝ որոնք Սելեւկեանց ատեն հելլենացած էին: Այս երկու խմբերը՝ որոնք նախնաբար բոլորովին հեթանոս էին եւ յետոյ քրիստոնեայ եղած, եւ իրարու հետ գրեթէ հաւասարաչափ քանակութեամբ էին, առաջին երեք դարերուն մէջ յաճախ կը ներկայացընէին Ասորիքի տիրող ու գերիշխան ազգը:

Պէտք է մէկդի դնել Հրեաները, որոնք երկայն ժամանակ միաձոյլ հոծ կորիզ մը կը կազմէին Պաղեստինի մէջ, բայց յետոյ ցանուցիր սփռեցան Ադրիանու օրով իրենց ապստամբութենէն ետքը[86]: Բաւական թիւ մը մնաց Ասորիքի այլեւայլ տեղերը. բայց աւելին Միջագետք գաղթեց՝ արդէն այն առաջին հալածանքին ժամանակ՝ որ յաջորդեց Տիտոսի

---

85 Տես իմ յօդուածս Provincia ի բառագիրս՝ Dictionn. des ant. gr. et rom., հրտ. Daremberg-Saglio-Pattier (1906).

86 Եւսեբիոս, Պատմ. Եկեղ. Դ, 6:

պատերազմին. եւ ամէն առիթ ձեռք կ'առնուին՝ ցուցընելու իրենց թշնամութիւնը Հռոմայեցւոց դէմ[87]: Շատ կանուխէն՝ հասարակապետութեան ժամանակէն ի վեր՝ գաղտնի մեքենայութիւններ լարած էին Պարթեւաց հետ ի միասին[88], որոնք հռոմէական սաստկարուն տիրող զօրութեան հանդէպ՝ իրենց իբրեւ բարեկամներ կ'երեւային: Պարթեւ դաշնաւորութիւնն իրենց աչքին անչափ կախարդանք մ'ազդեց, որ նաեւ այլեւայլ պատրանքներէ ետքն ալ տակաւին չարունակեց հմայել[89]: Չվարանեցան՝ Տրայանոսի արեւելեան պատերազմին ատեն՝ լայնածաւալ ապստամբութիւն մը յարուցանել, որ կը տարածուէր մինչեւ նաեւ Միջագետք, զոր սակայն ինքնակալական տեղակալը Լուսիոս Կուիտոս (Lusius Quietus) ծայրայեղ խստութեամբ սանձեց[90]: Այս երկրիս մէջ բազմախուռն յաճախութեամբ կը գտնէին Ս. Գրոց յիշատակները. Ագրիպպաս Ա. ար-

---

87 Հմմտ. J. Salvador, Hist. de la domin. rom. en Judée. Paris 1847, II, p. 530.

88 James Darmesteter. Les Parthes à Jérusalem (ի Journ. Asiatique, 1894, II, p. 43—54).

89 Բակուր անգամ մը միջամտից Անտիգոնոսի զօրավիգն օգնական կանգնելով ընդդէմ Հերովդէսի՝ որուն պաշտպան էին Հռոմայեցիք (Յովսեպոս, Պ. Հր. Ա, 248 եւն). բայց Վաղարշ 70ին մերժեց ձեռնտու ըլլալ Հրէից ընդդէմ Վեսպասիանոսի, որուն առաջարկեց իւր օգնութիւնը՝ թէեւ առանց յաջողութեան:

90 Եւսեբիոս, Եկեղ. Պատմ. Դ, 2. Որոսիոս, Է. Դիոն Կաս. ԿԸ, 22. J. Derenbourg, Essai sur l'hist. et la géogr. de la Palestine, Paris 1867, p. 404.

քային իր դեսպաններովը[91] Կալիգուլայի կը յիշեցընէր թէ Հրեայք Անդր-Եփրատի ամէն բազմամարդ քաղաքներուն մէջ կը գտնուէին։ Յետոյ աւելի ալ յոռի եղան իրերը։ Եթէ Պարթեւները այս ազգին համար ամենեւին չէին ուզեր իրենց սահմաններէն դուրս իրենք զիրենք վտանգի մէջ դնել, սակայն ատոր փոխարէն համակրալից ընդունելութիւն մ'ըրին հրէական պատերազմին զոհերուն։ Ի միջի այլոց Մծբին քաղաքը տարագրելոց մեծ բազմութիւն մ'ընդունեցաւ։

Անտարակոյս Հրէից խուլ հնարից հետեւութեամբն էր որ, ինչպէս որ կը պատմէ Յեսուայ Սիւնակեցի անուամբ ներկայացող ժամանակագրութեան անանուն հեղինակը, Միջագետաց մէջ քաղաքական կարծիքն ընդհանրապէս աննպաստ էր Հռոմայեցւոց․ գոնէ իրենց մատնութեամբն էր որ Կոստանդիա քաղաքը քիչ մնաց պիտի առնուէր՝ Անաստաս կայսեր օրով[92]։ Զ․ եւ Է․ դարուն ատոնք ոխերիմ եւ կանոնաւոր հակառակորդներ են։ Յամի 530 Պարսից արքային ապաւինող 30.000 Սամարացիներն են, զորոնք կայսրն իրենց ապստամբութենէն ետքը պատժած էր, որ դրդուեցին Կաւատ արքային վեր-

---

[91] Փիլոն, Պատգ. առ Կայիոս, 36, էջ 587 հրտ. Mangey։

[92] Chronique de Josué le Stylite, écrite vers l'an 515, texte et trad. par l'abbé Paulin Martin, Leipzig 1876 (ի Abh. für die Kunde des Morgenlandes, herausgegeben von der Deutschen morgenländischen Gesellschaft, VI, 1), p. 59.

սկսելու պատերազմը, «խոստանալով իրեն մատնել տալ Ս. Տեղիքն՝ ուր բազմաթիւ իշխանական ընծաներ կը գտնուէին եւ մեծաքանակ ոսկի ու արծաթ եւ անհամար պատուական քարեր[93]»: Յետոյ Խոսրով արքայ հետեւեցաւ այս խորհրդին. այն ատեն Անտիոքի Հրեայք քրիստոնէից դէմ շարժում մը յառաջ բերին. սպաննեցին նոյն մայրաքաղաքին պատրիարքն ու հազարաւոր քրիստոնեայներ[94]: Փոկաս ասոնց դէմ գնդեր խաւրեց, որոնք խստօրէն զսպեցին. բայց ասով անոնք աւելի կատաղօրէն զայրացան. երբ՝ Հերակլի օրով՝ Պարսիկները մինչեւ Յորդանան հասան եւ Պաղեստինն այրացաւեր ըրին, Հրեայք անոնցմէ՝ իւրաքանչիւրն իւր կարողութեան չափով՝ գնեցին քրիստոնեաներն, որպէս զի անձամբ մեռցնեն իրենց դարչելի քրիստոնեայ գերիները[95]: Սակայն

---

93 Սադաղաս, ԺԸ, էջ 455 (Բոն):

94 Թէոփանէս, 301, 1. Զոնարաս, ԺԴ, 14, 31 (հրտ. Büttner-Wobst). Նուտիքէս, Տարեգր. Բ, 212, 219. Կեդրենոս, Ա, էջ 712 (Բոն):

95 Կեդրենոս, Ա, 715. սրբազրական բնագիրներն ալ շատ նման բան մը կը պատմեն. հմմտ. dom H. Leclercq, Les Martyrs. Paris 1905, IV, p. 207: — Խոսրով՝ որ կը բաղձար քրիստոնէից ալ համակրութիւնը վաստկիլ, աշխարհակալութենէ մ'ետքը՝ որուն համար կը յուսար թէ վերջնական ըլլար, շատ ճարպիկութեամբ շահագործեց այս փոխադարձ ատելութիւնը. տես Angelo Pernice, l'Imperatore Eraclio (ի Publicazioni del R. Instit. di studi superiori in Firenze, 1905, p. 74): Հրեայք անխոհեմ գտնուեցան Պարսկաստանի գահակալական կռիւներու մէջ խառնուելու: Մեհոդ (Մահրուդ)՝ Խոսրովի Բ. տեղակալը սրէ անցընել տուաւ բազմաթիւ անձինքներ անոնցմէ՝ որոնք յիշեալ իշխանին դէմ

այս չմեղադրութիւնն ունէին թէ Փոկաս ուղած է զիրենք բռնի քրիստոնեայ ընել[96]: Ուստի դիւրաւ կը հասկցուի թէ երբ վստահացան թէ Արաբացւոց քով շատ աւելի մեծ ազատականութիւն պիտի գտնեն, յօժարակամ ձեռնտու եղան նոր աշխարհակալներու կողման[97]:

Արաբացիներու մասին՝ իրենց Ասորիքի տիրելէն յառաջ՝ գրեթէ տեղեկութիւն մը չենք ստանար իրենց սեպհական պատմագրութենէն[98]. եւ Հռոմայեցւոց եւ Բիւզանդացւոց հետ իրենց յարաբերութեանց վերաբերեալ տեղեկութիւնները հաղորդուած են մեզի միայն դասական լեզուներով գրող մատենագիրներէն[99]:

---

ձեռնտու եղած էին Վահրամայ: Հրեայք չափազանց շատցած էին Պարսկաստանի մէջ եւ մեծ հարստութիւն ձեռք ձգած՝ կ'ըսէ Թէոփիլակտոս Սիմոկատտա (Ե, 7, 9). որ այս «անհաւատարիմ, անհանգիստ, ամբարտաւան, նախանձոտ ու անհաշտ» ազգին պատմութիւնը կը գրուատէ:

[96] Հերակլ արգիլած էր իրենց բնակիլ Երուսաղեմի մէջ եւ անոր բոլոր շրջակայքին երեք մղոն շրջանակի մը մէջ (Թէոփանէս, 328):

[97] Մակլէր, Սեբէոս, էջ 68 (հայ բն. էջ 81). «Ցայնժամ ապա ամենայն երկիրն Պաղեստինացւոց կամաւք հնազանդեցան ի ծառայութիւն արքային Պարսից, մանաւանդ մնացորդք ազգին Հեբրայեցւոց»: Նոյնը կը հաստատեն մահմետական հեղինակները. հմմտ. J. de Goeje, Mém. d'hist. et de géogr. orient, Nr. 2: Mém. sur la conquête de la Syrie (Բ. Տպ.), հրատ. Leide 1900, p. 9 եւ 103.

[98] A. P. Caussin de Perceval, Essai sur l'hist. des Arabes avant l'islamisme, Paris 1847—1848. հմմտ. Հտր. Բ, էջ 189—258:

[99] Առձեռն չունէի մատեանս՝ G. Rothstein, Die Dynastie der Lahmiden in Al-Hira, 1899: Իսկ

Արաբացիք բաւական դժուարութիւններ պատճառած են Հռոմէական տիրականութեան՝ երբ տակաւին չէին եղած այն կարեւոր գործօնը կեդրոններու արտաքին ու զինուորական քաղաքականութեան մէջ։ Այն մեծ անապատն որ ցռկանաձեւ կը մտնէ Եփրատի եւ Պաղեստինի մէջտեղ, անորոշ սահմաններ ունի, որոնք եղանակներուն համեմատ կը հեռանան ու կը մօտենան մշտակայ բնակութեանց կեդրոններուն հանդէպ։ Այս եզրներուն վրայ անդադար կը բանակէին ու կը տեղափոխուէին հեծելոց խմբեր, որոնք աւարառութեամբ կը պարապէին՝ եւ որմէ կ'ապրէին։ Նաբատեան ծագմամբ Արաբացիք բռնած էին այն ամէն երկրաբաժինները, որոնք՝ ցածադետին (ghôr) տափարակին արեւելակողմը՝ կրնային օգտիլ գործածուիլ անասնաբուծութեան կամ մշակութեան համար։

Բազմաթիւ դարերով անշարժուն կեցած էին իրենց սովորութեանց եւ իրենց աւան-

---

Օդդօ Վէբէր (Otto Weber, Arabien vor dem Islam, ի „Der alte Orient", III, 1, 1901), շատ համառօտ է հռոմէական շրջանին համար. աւելի կը դրադի Երջանիկ Արաբիոյ մասին, եւ կը նշանակէ հետաքրքրական իրողութիւն մը, զոր օգտակար է մերձեցընել մեր վերն ըսածին, այսինքն թէ Հռոմէական ազդեցութիւն էր որ երկայն ժամանակ արգելք եղաւ քրիստոնէութեան տարածման Արաբիոյ մէջ (անդ՝ էջ 34—35)։ Հմմտ. Սրբագրական բնագիրներ Leclercqի քով (անդ, էջ 156 եւն)։ Իսկ այս շրջանին վախճանին եւ Մահմետի դերի մասին անոր ամէն աշխատասիրութեանց արդիւնքները համառօտիւ երկրորդած է Pernice (անդ, էջ 246—265)։

դութեանց մէջ, եւ Դիոդորի Սիկիլիացւոյ այս մասին գրածն երկայն ժամանակ պահեց ամբողջովին իր արժէքը, այսինքն թէ՝ Ազգ մը զիրենք նուաճած չէ, վասն զի որեւէ հաստատուն բնակութիւն մը չունին՝ զոր կարելի ըլլայ գրաւել ու պահել. կը գոհանան ազատ օդով ἔχουσι... τὸν βίον ὑπαίθριον «բացօթեայ կեանք մ'ունին»). իրենց հայրենիք անուանածը՝ ամայութիւնն է. կը խորշին գետերու եւ աղբերակներու մօտ ագանիլ, վախնալով որ ասի հրապոյր մը չըլլայ թշնամեաց իրենց մօտենալուն: Արգիլուած է իրենց քով սերմանել ու տնկել. տուն մը շինողը մահուամբ կը պատժուի, որովհետեւ մարդ մ'որ այսպիսի դիւրութեանց կ'ենթարկուի՝ պէտք է որ տիրոջ մը հպատակի, եթէ չ'ուզեր որ այն ամէնը կողոպտուի առնուի իրմէ: Իրենց մէջ կան խաշնադարմաններ, որոնք ուղտ ու ոչխար կը բուծանեն. ուրիշները ծովեզերք կու գան Երջանիկ Արաբիոյ անուշունքը վաճառելու: Շատ նախանձախնդիր են իրենց ազատութեան, եւ երբ հակառակորդի մը մերձենալը կ'իմանան՝ անապատ կը մտնեն, որուն երաշտութիւնն անանցանելի կ'ընէ ուրիշներուն համար, եւ իրենց պատուարի տեղ է (ταύτῃ χρώμενοι ὀχυρώματι, զայն իբր ամրութիւն գործածելով): Իրենց կաւային ու կակուղ հողին մէջ ընդարձակ ու խորունկ սորեր կը փորեն եւ կը թողուն որ անձրեւի ջրերը հոն խորասուզին. ասոնց նեղ բերանը կը խնուն, որ միա-

կերպ հողին վրայ կը նշմարուի միայն աննշմարելի նշանով մը՝ որ իրենց միայն ծանօթ է։ Եղոմէի կողմը, որ ամենամերձաւոր գեղէն երկու օրուան ճամբայ հեռու է, ցեղ մը ստորերկրեայ թաքստոց մ՚ունէր, ուր կը բնակէին ծերերը, կանայք ու տղաք, երբ արք վաճառականութեան կ՚երթային[100]։

Թէպէտ եւ անձրեւները ցանցառ են, եւ մարախներուն արշաւանքները յաճախադէպ, ցորենն առատօրէն կը բուսնէր՝ ինչպէս այսօր ալ՝ Հաւրանի դաշտին մէջ[101]։ Բայց տափաստանի թափառականները հունձքերը կ՚աւարէին հազիւ թէ հասունցած ըլլային. կը թաքչէին անձաւներու մէջ՝ որոնք քարաժայռերու սեմոց կամ կողին վրայ կը բացուէին, զորոնք նոյն աշխարհին կրաքարներուն մէջ փորած պեղած էին ընդհատահոս ջրերը[102]։ Երբ այս աւազակութիւնն բուն

---

[100] Դիոդ. ԺԹ, 94—95. յաւել՝ Բ, 48, 54։ Սակայն Դիոդոր կը հաստատէ նաեւ թէ ցեղերէն ոմանք, թէեւ սակաւաթիւ, սկսած էին մշակութեան եւ ասորի հարկատուներուն կենաց պայմանին նման կեանք մ՚ունէին, ի բաց առեալ բնակութիւնը։

[101] Համմ. G. Rindfleisch, Die Landschaft Hauran in römischer Zeit und in der Gegenwart (ի Zeitschrift d. Deutsch. Palest. Ver. XXI, 1898, p. 1—46).

[102] Հերովդէս Գալիլիոյ մէջ առանց դէմ ստիպուած էր կանոնաւոր արշաւանքներ կատարել, զինուորները վար կ՚իջեցնէին մեծ արկղներով մինչեւ քարայրներուն բերնին հաւասար, եւ այս տեղ բնաջինջ կ՚ընէին յելուզակները մի առ մի (Յովսեպոս, Տար. Հր. ԺԴ, 122 եւն. Պ. Հր. Ա, 310 եւն)։ Ստրաբոն կը գրէ (ԺԶ, 2, 18, էջ 755 C). Լիբանանի լեռները կը բնակին միայն Իտուրացիք եւ Արաբացիք, ամէնքն ալ յելուզակ. դաշտին մէջ կը բնակին երկրագործ—

իրենց Արաբացւոց գործը չէր, կը պաշտպանէին անով զբաղող ապատամարտական գունդերը[103]: Ասոնք էին իրենց հաստատական ժողովուրդները. Վեսպասիանոս Հրէից դէմ մղած իր պատերազմին մէջ ունէր «նշանաւոր գունդ մ'Արաբացւոց, որ Հրէից դէմ դրացեաց մէջ սովորական այս ատելութեամբ տոգորուած վառուած էին[104]»:

Անտիգոնոս՝ Աղեքսանդրի ծրագիրը յառաջ վարելով՝ զուր փորձ գործած էր զանոնք նուաճելու. աւելի նուազ յաջողակ էին անոնք հռոմէական զինուորական զօրութեան դէմ դիմադրաւելու[105], եւ այն ատե-

---

ները, որոնք պէտք ունին որ մերթ այս եւ մերթ այն զիրենք պաշտպանէ անոնց դէմ: Սամիտի լեռնականները ամրացուած որջեր ունին՝ որ Լիբանանի հին ամրոցներուն կը նմանին: Այս յանդուգն աւազակները կը թաքչէին նոյն իսկ ծովափին անձաւներուն մէջ, եւ անկէ կ'երթային Բիբլոս, Սիդոն եւ Բերիտոս աւերելու: Բասոս օժանդակ զինուորներ զօրական ըրած էր, շրջակայից ցեղապետներէն, որոնք «անառիկ դիրքերու տէարք» էին (տես վարը): Դամասկոսի երկրին մէջ այս անհագին քարայրներէն մին կրնար մինչեւ 1000 հոգի առնուլ (ԺԶ, 2, 20, էջ 756 C). եւ Յովսեպոս՝ Վեսպասիանու դէմ մղած պատերազմին մէջ՝ ամրացնել տուաւ՝ իբրեւ ճշմարիտ ամրոցներ՝ Գեննասարէթ լճին մօտ եղած ապառաժուտ կողմերը (Պ. Հր., Բ, 573): Սիմոն հետեւեցաւ այս օրինակին. եւ այս քարանձաւներէն մին ապաւինեցաւ Յովսեպոս՝ Հռոմայեցւոց անձնատուր ըլլալէ յառաջ (անդ, Գ., 341):

[103] Յովսեպոս, Հ. Հ., ԺԶ, 271:

[104] Տակիտոս, Պատմ. Ե, 1:

[105] Աֆրանիոս (Afranius)՝ Պոմպէոսի կողմանէ՝ նուաճեց բոլոր Արաբացիները՝ որ Ամանոսի կողմերն էին (τοὺς περὶ Ἀμανοῦ Ἄραβας. Ստրաբոն՝ Ժ, 5; Հար. Բ, էջ 311 Բոն քրէի.). անոնք որ ամէնէն հիւսիսակողմն էին եւ Ասորիքէն Կիլիկիա անցնելու նեղ

նէն սկսան գործադրել խորամանկ քաղաքագիտութիւն մ'որ երկայն ատեն յաջողեցաւ ալ։ Հռոմ Ասորիքի մէջ նախ պահած էր բազմաթիւ մանր իշխանութիւններ. ինքը Հռոմ աղմկած էր քաղաքային պատերազմներով. արդէն դիւրին էր Նաբատացի պետերուն խաբեպատիր ոճով միջամտել Արեւելքի բոլոր մեքենայութեանց եւ օգտուիլ ամէն տեսակ կռիւներէ՝ իրենց օժանդակութիւնը վարձահատոյց ընել տալու համար կամ դրացեաց վրայ ասպատակելով աւարելու։ Այն ատեն կախուած էին՝ աւելի կամ նուազ անուանապէս. միայն՝ Թագաւորէ մը, որուն մայրաքաղաքն էր Պետրա։ Այս Թագաւորը 50.000 մարտիկներ Հիւրկանոսի տրամադրութեան ներքեւ դրաւ Արիստաբուղոսի դէմ[106] իր յաջորդներէն մին փախստական Հերովդէսի ապահով ապաստան տուաւ[107]։ Այս ժամանակ արդէն կային Արաբացիներ, որ Պարթեւաց ոճով սպառազինուած էին, որոնց դաշնակից կ'ըլլային յօժարակամ[108]։ Այս պետերէն մին՝ Ալքաւդոնիոս[109], «որ

---

անցքը կը դրաւէին (անդ, Ժ, 23. էջ 374)։ Յաւել՝ Պղուտարքոս, Պոմպ. 30։ Երբ Պոմպէոս անձամբ բանակ մ'առաջնորդեց հասցուց Պետրայի առջեւ, Նաբատացւոց Թագաւորը զարհուրած՝ հնազանդիլ յանձն առաւ (անդ, 41)։

106 Գէորգ Սինկեղոս, Ժամանակագր., էջ 562 (հրտ. Բոն քղ.)։

107 Անդ, էջ 577։

108 Կիկերոն, Թուղթ առ ընտ., Գ, 8. Ը, 10. առ Ատտ. Ե, 10 (վերջը)։

109 Ստրաբոն կ'անուանէ զայն Ալքէդամոս (Alchaedamos, ԺԶ, 2, 10, էջ 752 C)։

մինչդ պատրաստ էր աւելի հզօրին կողմն անցնելու», անոնց կողմնակից եղաւ Կրասսոսի դէմ[110], յետոյ վարձքով Կեկիլիոս Բասսոս ապստամբին թեր ելաւ[111]։ Կասիոսի հանդէպ չարունակեցին նոյն ծամածուռ քաղաքականութիւնը[112]։ Մալքոս օգնեց Բակուրի․ սոր համար Վենտիդիոս զինքը պատժեց ծանր տուգանքներ դնելով[113]։

Այս խորամանկ ժողովուրդը շուտով նշմարած էր այն օգուտները, զոր իրեն կ՚ընծայէին Ասորիքի մէջ գործադրուած նոր վարչութիւնը եւ հռոմէական Հասարակապետութեան ներքին խռովութիւնները։ Էռնէստ Ռընան[114]՝ յենլով անուանակոչու–

---

110 Դիոն Կաս., ԺԱ, 20։

111 Անդ, ԽԷ, 27։

112 Ի սկզբան կեղծեցին թէ պիտի գան իրեն հետ միանան, բայց յետոյ դաւաճանեցին։ Դոլաբէլլայի ուղղած մէկ նամակին մէջ կ՚երեւայ թէ Կասիոս կը գանգատէր թէ իր այս թանկագին դաշնակիցները հրապուրելով մոլորցուցին. տես Քարիսիոս, էջ 123[13] = հրտ. Keil, C. Cassius in epistula quam ad Dolabellam scripsit: Arabi mirifico animo erga nos fuerunt inquit (Կ. Կասիոս առ Դոլաբէլլա գրած թղթին մէջ կ՚ըսէ՝ Արաբացիք մեզի հանդէպ հիացական ոգւով լի էին)։

113 Դիոն Կաս. ԽԸ, 41։

114 Ernest Renan, Sur quelques noms arabes qui figurent dans les inscriptions grecques de l'Auranitide (ի Journ. As. 1882, I, p. 1—22). Գաղթականութեան այս շարժումը, կ՚ըսէ Ռընէ Դիւ-սօ (René Dussaud, Les Arabes en Syrie avant l'Islam, Paris 1907, p. 4, 7, 10, 14) շատ աւելի հին է, եւ հռոմէական ժամանակի պարագաները միայն աւելի նպաստաւորած եղած են ասոր։ «Հռոմայեցիք ամուր պահակներ հաստատեցին անապատին բոլոր սահմանաց երկայնութեամբ, ո՛չ թէ որպէս զի արգիլեն թափառականներուն Ասորիք մտնելը, այլ որպէս

թեանց տուած հիմանց վրայ՝ ապացուցած է թէ նոյն իսկ բնիկ արամէական կեդրոններու մէջ, ինչպէս էին Եմեսա, Պալմիրա, Դամասկոս, կը սկսի մղել ու խուժել արաբերէն լեզուն եւ ասի «կը համապատասխանէ միեւնոյն ատեն երեւան գալուն բազմաթիւ արաբացի էմիրներու Ասորիքի քաղաքներուն մէջ այն ժամանակէն ի վեր որ հռոմէական իշխանութիւնը սկսաւ հաստատուիլ նոյն երկրին մէջ»: Այն ատեն երեւան կու գայ Սալակինոսաց անունը: Անոնց դէմ պաշտպանուելու համար կ'երեւայ թէ Հերովդէս ամրացեալ պահակավայրերու գիծ մը կազմակերպեց արեւելեան սահմանագլխին վրայ, որոնց կը հրամայէին տեղապահ իշխաններ (ἔπαρχοι): Սակայն ասորական բոլոր փոքրիկ թագաւորութիւններն անհետացան: Տրայիանոս ձուլեց նաեւ Նաբատական թագաւորութիւնն եւ անկէ կազմեց Արաբիա նահանգը: Պետութիւնն ալ իր կողմէն բերդերու շարք մը կառոյց՝ իր տիրապետութեան սահմանները նշանակելով: Այս դրութիւնը, որուն իմաստուն ու խոհեմ տրամադրութիւնը կը յուշընեն արդի մնացած նշխարները, կրնար բաւել այս երկրին անդորրութիւնը պահելու. այս կողմանէ Արաբիա նշանաւոր նմանու-

---

դի անոնց գաղթականութիւնները կանոնաւորեն»: Անժխտելի են այս թափանցումն, երկրագործական կեանքի այս անցումը. միայն կը վախնամ թէ Դիւսոյ սար թուական կարեւորութիւնը ստուարացուցած ՀԸԱյ:

թիւններ ունէր Ափրիկէի հետ։ Բայց ճշմարիտ դժուարութիւններն այս կէտին մէջ չէին։ Հռոմայեցւոց փառասէր քաղաքականութիւնն էր որ ինքնին աւելի պիտի գրգռէր Արաբացւոց ժառանգական աւարառու յափըշտակութեան բնազդը։

Միջագետք ազգերու միւսէոն մըն էր. Ջրարբի ցանցառ մասերուն մէջ ծնած էին քաղաքներ, ուր կ'ապրէին յոյն, հրեայ, ասորի, բաբելացի եւն վաճառականներ։ Արաբացիք այն տեղեր չէին բնակիր եւ հազիւ թէ կ'երեւային ալ. բայց իրենց էին ընդարձակ տարածութիւններ, ինչպէս անոնք՝ զորոնք իբրեւ ականատես (de visu) կը նկարագրէ Ամմիանոս Մարկեղոս[115], մղոններ ու մղոններ «հարթ հաւասար ու երաշտին երկիր մը, ուր խմելու բան մը չի գտնուիր՝ բայց եթէ աղտաղտին ու ժանդահոտ ջուր մը, եւ ուտելու՝ բայց միայն դառն խոտեղէններ, ուր ուրիշ սնունդ չի կրնար հայթայթուիլ, ան ալ քիչ առողջարար, բայց եթէ ուղտեր եւ ուրիշ գրաստներ մորթելով»։

Եփրատի անդիէն մտնելով այս հարթավայրերը՝ հռոմայեցի բանակները բռնացան տիրեցին ո՛չ այնչափ պարթեւական երկրի որչափ արաբական հողի վրայ։ Բայց այս տեղ դիւրին չէր գործադրել Պետրայի պետութեան մասին ընդունուած լուծումը։ Միջագետք որչափ ալ անպտուղ ամուլ ըլլար՝ չէր ներկայացըներ այս անանցանելի անա-

115 Ամ. Մարկեղ. ԻԵ, 8, 6։

պատը, որ կը սկսէր Մեռեալ ծովու արեւելակողմը հարիւրերորդ մղոնէն սկսեալ: Դժբախտաբար Արշակունիք ստիպուած էին դիմագրել հռոմէական արշաւանաց: Տեղերու բնութեամբն իսկ իրականօրէն մեծ ինքնօրէնութիւն վայելելով՝ Արաբացիք չէին կրնար չէզոք մնալ երկու հակառակորդներուն մէջտեղ եւ ո՛չ ալ վերջնականապէս միանալ անոնցմէ մէկուն շահերուն[116]: Ուստի աշխարհագրական եւ պատմական հանգամանքներն ամէնէն աւելի հանգամանակած են կազմելու ցեղային նկարագիրն այս «վնասակար ազգին» (*natio pernicisiosa*), ինչպէս կ՚անուանէ Ամմիանոս, որ կենդանի գծերով նկարագրած է զանոնք[117]: Կիսամերկ մարդիկներ են, կ՚ըսէ, գունաւոր սաւանով մը կը պատէր զիրենք մինչեւ մէջքը. ամէն տեղ կը դիմէին՝ ըլլա՛յ խաղաղութեան ատեն ըլլա՛յ պատերազմի՝ հեծած իրենց արագաշարժ ձիերու կամ իրենց վտիտ ուղտերու վրայ. ոչ ոք կառք մը կը վարէ, եւ ոչ ծառեր կը տնկէ կամ արտեր կը մշակէ: Մշտատեւ կը թափառին ընդարձակ անջրպետներու մէջ, առանց երդի, առանց հաստատուն օրինաց.

---

[116] Ամ. Մարկ. ԺԴ, 4, 1. Saraceni ... nec amici nobis umquam nec hostes optandi (Սարակինոսներն երբեք ցանկալի չեն ո՛չ բարեկամ մեզի եւ ո՛չ թշնամի): Նոյնպէս կ՚ըսէ Թէոփիլակտոս Սիմոկատտա (Գ, 17, 7) «Սարակինոսաց նենգաւոր ազգը սովորութիւն ունի երկու կողմերուն մէկէն միւսին անցնիլ. ո՛չ հաստատամտութիւն կայ եւ ոչ պատուաւորութիւն»:

[117] Ամմ. Մարկել. ԺԴ, անդ:

իրենց կեանքը միշտ փախստեայ է (vita est illis semper in fuga)։ Իրենց վարձկան կանայք, յաճախ ժամանակաւոր ամուսնացած, այստեղ կը կարգուէին, այն տեղ կը ծնանէին, եւ ուրիշ տեղ մ՚ալ իրենց զաւակները կը սնուցանէին։ Կ՚ապրէին որսով, կաթով, խոտեղէններով եւ որսացած թռչուններով․ բայց ցորեն ու գինի իրենց քով ընդհանրապէս չէին գործածուէր[118]։

Այս ցեղին մարտիկներուն պատկերը ներկայացուած կը գտնենք Շապուհի խորաքանդակներուն միայն վրայ, որ՝ Ֆլանտէնի տուած շատ բանաւոր մեկնութեան համեմատ[119], Շապհոյ Ա․ արքայի Վաղերիանու վրայ կատարած յաղթութեանց հետ կապ ունի։ Հոն կը տեսնենք ուղտեր, որոնց կ՚ընկերանան բազմաթիւ բարձրահասակ մարդիկ, որոշ սեմական նկարագրով, կրելով գլխոյ ծածկոյթ մը՝ որուն նիւթն անորոշ է, կիսագնդաձեւ գտակի ձեւով, որուն ներքեւէն կ՚անցնի ծոծրակապան մը[120]։ Կրնանք

---

118 Դարձեալ կը համեմատէ զանոնք յափշտակիչ թռչուններուն հետ, եւ կը յաւելու թէ աւելի ընդարձակօրէն խօսած է անոնց բարուց մասին իր այն գրքերուն մէջ՝ որոնք Մարկոսի Աւրելիանոսի նուիրուած էին, եւ որոնք այսօր կորսուած են։

119 Flandin et Coste, Perse ancienne, I, pl. LI D.

120 Եթէ այս ծոծրակապան կարծուածը հերաց գէսք չըլլան՝ զոր հին ատեն Արաբացիք կը թողուին որ աճի։ Պղինիոս, Բն. Պատմ. Զ, 162 ...intonso crine, barba abraditur praeter quam in superiore labro (Հերը խուզելով, մօրուքը կ՚ածիլուէր՝ ի բաց առեալ վերին շրթին վրայ)։

մասամբ օգտուիլ նաեւ Ասորիքի կուսակալին՝ Մ. Էմիլիոս Սկաւրոսի դրամներէն Ա. դարուն Ն. Ք.։ Ասոնց մէկ մասը կը յիշատակէ Արեթասի՝ Պետրայի Նաբաթեան արքային հպատակութիւնը։ Ծունկի վրայ է, աղաչանաց կերպարանօք, ուղտի մը փո-ղափոկ պախուցէն բռնած։ Ուղտը՝ դրամներուն պէսպիսութեանց համաձայն՝ կա՛մ համետ մը կը կրէ կամ այն բարձրակառոյց թամբը, ուստի Արաբացիք շատ բարձրէն կ՚արձակէին իրենց նետերը[121]։

Սասանեանց դաշնակայութիւնը, որոնք աւելի յանդուգն ու աւելի յարատեւող էին քան թէ պարթեւ արքաները, պէտք է կարծել թէ այն արդիւնքն ունեցաւ որ Վրանաբնակներն աւելի խիզախեցան, որովհետեւ իրենց աւարառութեանց առիթները շատցան։ Նոյնպէս կ՚երեւայ թէ այն ատեն Հարաւի ցեղերը հռոմէական հողի վրայ նոր գաղթականութիւն մը սկսած ըլլան՝ շնորհիւ վարչական այն խառնաշփոթութեան, որ Գ. դարու յատկանիշն է Պետութեան համար։ Այս ժամանակէն ի վեր՝ «ներողամիտ գիջողութեան մը հետեւանօք, զոր թերեւս պարագաները կը թելադրէին, կը տեսնենք որ նախ կղզեացեալ քանի մը ցեղեր կը հաստատուէին պահականոցներու գծէն ներս, գլխաւորաբար

---

121 Ապպիանոս, Ասոր. 32. Borghesi, Œuvres. II, p. 185; E. Babelon, Les Monnaies de la République romaine, Paris I (1885), p. 119—121.

Բոստրայի եւ Դամասկոսի բաժնին մէջ։ Այս ցեղերն իրենց գլուխ ունէին իրենց ազգային շէյխերը, որոնք Հռոմէական վարչութենէն նոյն իշխանութիւնը կ'առնուէին, քիչ շատ այնպէս՝ ինչպէս էին բերբերական Ափրիկէի մէջ մաւրիտանացի իշխանները. վարչականօրէն ասոնց «ցեղապետ» (φύλαρχος, phylarchus) տիտղոսը կը տրուէր[122]։ Կամաց կամաց բազմացան արաբական այս միջնափակ վիճակները, այն ատեն զանոնք զինուորօրէն կազմակերպեցին, եւ նահանգներու համեմատ բաժնեցին. ժամանակ մը կային ցեղապետներ Պաղեստինի եւ Արաբիոյ[123]»։ Սակայն ուրիշները՝ որ շատ աւելի բազմաթիւ էին, սահմանագլուխներէն դուրս մնացին, «պատերազմաց աւարաց պատրաստական» (ad furta bellorum adpo-

---

[122] Ստրաբոն (ԺԶ, 2, 10, էջ 753 C) կը յիշէ Վրանաբնակաց ցեղապետները՝ Ա. դարուն. բայց այս տիտղոսն շատ աւելի անպայմանագոյն արձանագրութեանց մէջ նորէն երեւան կու գայ։ Յայտնի է թէ միջանկեալ ժամանակի մէջ ալ գործածական մնաց եւ կամ համազօր բառ մը կը գործածուէր։ Այսպէս մէկն էր Սոյեդոս Մալաքոս (Soaidos Malachos) «արօտականաց զօրավարը» (στρατηγὸς νομάδων), զոր կը յիշատակէ Բատանիոյ յիշատակարան մը (Waddington, Inscr. de Syrie, 2196), անտարակոյս Ադրիանոս կայսեր ժամանակէն։ Զինուորական այս տիտղոսը չ'արգելուր Վադինգտոնի հետ մտածելու թէ իրականին այս Վաչկատուն արօտականները (νόμαδες) խաշնարածներ էին կամ իրենց հաշուին եւ կամ անապատին ոչ շատ մօտ հաստատուած երկրագործներուն հաշուին. Հմմտ. 2112, 2203, 2512։

[123] L. Duchesne, Mélanges de Rome, XVI (1896), p. 113 = Autonomies ecclésiastiques, Églises séparées, Paris 1896 (Բ. Տպ. 1905), էջ 336 եւն.

siti)՝ ինչպէս կը բացատրէ Ամմիանոս, եւ որոնք իրենք զիրենք աւելի տուողին վարձու կը վաճառէին: Պարսից Շապուհ արքայն մեծ դժուարութիւններէ ետքը՝ զանոնք իրեն կողմ ձգած էր. Կոստանդիոս յաջողեցաւ զանոնք անկէ խլել[124], իսկ Յուլիանոսի իրենք ինքնին առաջարկեցին սատարել, որ եւ ընդունուեցաւ[125]:

Արաբական հզօր տէրութիւն մը կազմուած էր, մայրաքաղաք ունենալով Հիրա՝ հին Բաբելոնի հարաւակողմը, միակ ընտանիքի օգտին: Կը ճանչնար Պարսից գերիշխանութիւնը, բայց այս ձեռնարկու ստորակարգեալները կը միջամտէին երբեմն նոյն իսկ Իրանեան պետութեան ներքին գործոց: Անոնք էին որ ըստ ամենայն երեւութին, եւ մոգերու կամաց հակառակ, Յազկերտէն ետքը (իբր 418ին) Իրանի վրայ թագաւորեցուցին Հայաստանի հին արքայն Վռամ (Յունաց Βαραράνης, Իրան. Բահրամ՝ Վահրամ), որ Միջագետաց Արաբներուն մէջ սնած էր եւ անոնց սովորութիւնները պահած[126]. ասի իր պատերազմաց մէջ զինակից ունէր «անհամար օգնական Սարակինոսեր[127]»: Այս վաչկատունները սահմանագլխի հռոմէական

124 Հմմտ. Յուլիանոս, ճառ Ա, 21 B. «... քու պատգամագնացութիւններդ դարձած ըլլալով Թշնամեաց՝ արար աւազակաց դէմ»:

125 Ամ. Մարկել. ԻԴ, 3, 8. 5, 1: — Rawlinson, History of Persia, London 1876, p. 146:

126 Noeldeke, Tabari, p. 98, n. 1—3: Մասուդի, Բ, 191: Միրխոնդ, 323—328:

127 Թէոփանէս, Ժամանակագրական, 85, 31:

դուքսերուն մշտապէս շունչ առնուլ չէին տար. Անաստաս կայսեր օրով յաճախ ասպատակներ կ'ընէին Եփրատացւոց աշխարհին (Եփրատեսիա) մէջ եւ մինչեւ Գաղեատին[128], ուրիշ ասպատակութիւններ յաջորդեցին Յուստինոսի ատեն[129]։ Բիւզանդեան տարեգրողները, երբ ասոնց յեղուզակութիւնները կը նշանակեն, սովորաբար կ'աւելցնեն թէ հռոմէական պետ մ'ալ դիմացնին ելաւ եւ յաղթեց[130]։ Պատրանք մը կ'ըլլար այս յաղթութեանց կարեւորութիւն տալը. թեթեւընթաց հեծելախմբերը՝ առաջին յառաջապահ ընդհարումին իսկ՝ կը սրանային ու կը պրծէին, քանի մ'օր ետքը յեղակարծ կրկին դառնալու համար։ Այլեւայլ յատուկ ժամանակագրութիւններ աւելի ճշգրտօրէն կը նշանակեն ասոնց պատճառած աւեր ապականութիւններն իրենց ժամանելուն[131]։

---

128 Անդ, 141։

129 Մաղաղաս, ԺԷ, էջ 423. Կեդրենոս, Ա, էջ 639։

130 Եւստաթ. Եպիփան, Հատուած. գլ. 36 (հրատ. Müller, ի FHG, IV, p. 142). Թէոփանէս, 141։

131 Այսպէս Յեսուայ Սիւնակեցի կոչուած ժամանակագրութիւնը՝ էջ 53. «Նոյեմբեր 26ին (502 տարին) Նայաման (Naaman)՝ Արաբացւոց թագաւորը՝ հարաւէն մտաւ Հաւրանի երկիրը եւ հասաւ, նոյն իսկ մինչեւ Ռուհա, աւերելով ու աւարելով ամէն ինչ իւր ճամբուն վրայ, ամէն գիւղերէ նախիրներ տանելով եւ գերիներ առնլով։ Կ'ըսուի թէ մինչեւ 18.500 հոգի գերութեան վարեց, առանց հաշուելու կոտորել տուածները։ Այգեկութքի ժամանակին ընտրեց, որովհետեւ այն ատեն նոյն իսկ քաղաքներու բնակիչները դուրս ելած էին խաղողի կութքի համար»։ — Ինծի քիչ մը կասկածելի կ'երեւայ այնպէս ճշգրտաբանօրէն նշանակուած ժամանակը թէպէտ եւ հրատարակիչը

Աշխատաւոր բան մըն էր որ Հռոմէացիք ուզեցին կանուխէն ասոնց նկատմամբ դաշնակցութեան դրութիւն մը փորձել։ Սեմական արձանագրութեանց եւ արեւելեան բնագիրներու համեմատ կ'երեւայ կայսերական կառավարութիւնը Դ. դարուն ժամանակ մ'իրեն դաշնակից ունէր Ամորկեսոս անուն մէկը, որ «արքայ ամենայն Արաբացւոց» էր եւ միւս կողմանէ Պարսից արքայէն կ'առնուր իր իշխանութեան տուչութիւնը։ Ուստի Հռոմայեցիք Հիրայի իշխաններու հետ համաձայնութեան մը յանգած ըլլալու են՝ Ասորի սահմանագլխոց ոստիկանութիւնն ապահովելու համար. անկէ՝ այն պարսկական նկարագիրն այլեւայլ զարդարանաց որ սահմանագրութեանն (limes) աւերակներուն մէջ կը տեսնուին[132], յատկապէս Մշատտայի պալատին մէջ, որ ո՛չ թէ Ղասանեան իշխանի մը՝ այլ նոյն ժամանակի Լախմեան իշխողի մը գործն է[133]։ Այս ամէնը տարօրինակ փորձ մըն էր, առուտուր մը՝ ուր Հիրայէն ա՛յնչափ հեռու Հռոմէացիք չէին կրնար չխաբուիլ։

Ի՞նչ անցաւ դարձաւ յաջորդ ժամանակին մէջ։ Չենք գիտեր. միայն հետքեր ունինք երկայնաձիգ բանակցութեանց։

---

տարակոյս մը չէ յայտնած այս մասին. Ասորիքի մէջ նոյեմբերի կատարուած այցելութիւն մը կ'ենթադրէ թէ եղանակը չափազանց անտգանած ըլլայ։

[132] Dussaud, Les Arabes en Syrie, p. 32—8։

[133] Այսպէս Dussaud, անդ, էջ 54, համաձայն՝ Clermont-Ganneauի հետ։

Արդեամբք ալ նկատի առնելու է այն բազմաթիւ դեսպանութիւնները, զորոնք Հռոմայեցիք Արաբացւոց խաւրեցին Ե. դարու վերջին տարիները եւ Զ. դարուն սկիզբը։ Այս մասին ընդհանուր տեսութիւն մ'ունինք Նոննոսի՝ որդւոյ Աբրահամու՝ պատմութեան մնացած շատ կարճ հատակոտորներէն[134]։ Արդէն աստ հաւր՝ Անաստաս կայսեր օրով՝ նման պատուիրակութեան պաշտօն մ'առած էր՝ Արեթաս ցեղապետին քով, որուն որդին այրացաւեր կ'ընէր Պաղեստինն ու Փիւնիկէն, եւ որուն հետ խաղաղութեան դաշինք մը կռել կ'ուզէին։ Այս վաչկատուններ խնամութեան կապեր ունէին նոյն իսկ խորագոյն Արաբիոյ (Նէջէդ) արօտականաց հետ, որոնք երբեմն մինչեւ Հռոմէական սահմանները կը դիմագրաւէին։

Այս դրութիւնն անկայուն համարելով՝ Յուստինիանոս փորձեց հակառակ դրութիւն մը, եւ փոխանակ շարունակելու՝ իր նախորդներուն պէս՝ ցեղի մը պետին այս կամ այն զաւառին վրայ ձեռք ձգած ճոխութիւնը վաւերացընել[135], ստեղծեց արաբական-

134 Փոտ. Մատենադ., պատճէն 3 (տե Müller, FHG, IV, p. 178—180)։

135 Այսպէս 473ին Լեւոն կայսրը հաստատեց այն դիրքը՝ զոր ձեռք ձգած էր Ամորկեսոս արաբացին (Պարսից հողէն եկած) գրաւելով Յոտաբէ կղզին՝ Ակաբայի մօտ, ուսկից վտարած էր տասանորդի Հռոմէացի հարկաժողովները։ Կայսրը զինքն իբրեւ անոր ստացիչ հաստատեց, եւ մինչեւ անգամ իշխանութիւն շնորհեց անոր ուրիշ աւաններու վրայ եւ զանի պաշտօնապէս Ապառաժ Արաբիոյ ցեղապետներէն մին ըրաւ (Հմմտ. Մաղքոս Փիղադելփ., FHG, IV, p. 112—113)։

հռոմէական տէրութիւն մը, որպէս զի հակամէտ կշիռ մ'ըլլայ Հիրայի արաբական-պարսկական տէրութեան դէմ[136]: Այսպիսով 531ին ընդհանրական ցեղապետ մ'եղաւ՝ Ղասանեանց (Ghassanides) տան պետը[137], որուն իշխանութիւնը կը գործադրուէր հին Ասորիքի արեւելեան ամէն նահանգներուն Սարակինոսաց վրայ եւ կը տարածուէր անապատին մէջ: Պաշտօն ունէր սանձել Հիրացիներն ու անոնց անձնուած պետը Ալամունդար: Իրօք ալ կը տեսնենք որ այս երկու ցեղապետներն անձնական պայքար մը կը մղեն «պողոտայ» (strata) կոչուած կողման մը համար, որ Պալմիւրայի հարաւակողմը արօտավայրներու դաշտ մըն էր[138]: Բայց երկու ինքնակալները չէին կրնար իրենք զիրենք

---

նոյն աղբիւրէն կը տեսնենք թէ Թէոդոսի օրով Պարսիկք եւ Հռոմէացիք ի սկզբան միաբանած էին՝ այնուհետեւ այլ եւս չպաշտպանել իրենց իւրաքանչիւրին տիրապետութեանց մէջ զետեղուած Սարակինոսներն, եթէ ասոնք խառնակութիւն մը պատճառել ուզէին: Այս հնարագիտութեան, որ համառօտիւ չէզոքութիւն մըն էր, Յուստինիանոս փոխանակեց ուրիշ մը, որ կը կայանար յայնմ՝ Սարակինոսաց երկու խմբերը քանդել մէկը միւսին ձեռօք:

136 Ի սկզբան փորձած էր արծաթի զօրութեամբ Հիրացիներուն չէզոքութիւնն իրեն ապահովցընել, Սասանեանց դէմ պատերազմին ծագելու պարագային. բայց անոնք իրենց խոստումը չպահեցին: Աւելի յաջող ալ չեղաւ այն ձեռնարկը Եէմէնի մէջ Հիմեարացւոց տեղ՝ որ Պարսից ստորակարգեալ էին, Աքսումի Եթովպացիները փոխանակել. հմմտ. Pernice, անդ, էջ 244:

137 Պրոկոպիոս, Պ. Պ., Ա., 17, 47 եւն: Արեթաս նոյն իսկ արքայական աստիճան ստացաւ (հմմտ. Noeldeke, ի Abh. Berl. Akad. 1887) եւ պատրիկի տիտղոս (Թէոփանէս, 240, 14):

138 Պրոկոպիոս, անդ, Բ, 1, 6:

անվթար հանել այս կռուէն, որ իրենց փոխադարձ տրտունջները կը սաստկացընէր։ Պրոկոպիոս բացարձակապէս կ՚երկբայի թէ Յուստինիանոս այս նոր կարգադրութիւնն արդիւնագործ ըլլայ. «Այսու հանդերձ, կ՚ըսէ, Ալամունդար նուազ վնաս չհասցուց Հռոմայեցւոց, կա՛մ որովհետեւ Արեթաս ձախողութիւն ունեցաւ եւ կա՛մ որովհետեւ ամէն անգամուն շուտով մը ձեռնթափ եղաւ, ճիշդը չի գիտցուիր. Ալամունդար՝ որ շատ ծերացաւ, մշտապէս այրացաւեր ըրաւ Արեւելքն առանց ընդդիմութեան հանդիպելու[139]»։

Ճիշդն ըսելով Վրանաբնակաց երկու խմբերու մէջ թշնամութեան ամենածանր շարժառիթ մը կար, կրօնից տարբերութիւնը։ Հիրացիք հեթանոս էին. ընդհակառակն Ղասանեանց հպատակներուն մէջ շատ մեծ թիւ մը քրիստոնէական դաւանութեան անցած էր[140]։ Ասոնց քով դարձերը սկսան

[139] Անդ, հմմտ. Ա., 19, 10 եւն։ Սակայն ինքն ալ կը նշանակէ ուրիշ պարագայ մը (Բ, 28, 12—14), այն թէ Ալամունդար եւ Արեթաս պատերազմ մղեցին իրարու դէմ իրենց ամէն ոյժերով, բայց միայն առանձինն, առանց օգնութեան ո՛չ Հռոմայեցւոց եւ ո՛չ Պարսից։ Արեթաս ի փախուստ դարձուց իւր հակառակորդը մեծ կորուստներ պատճառելով անոր, եւ մազ մնաց որ Ալամունդարի երկու որդիք կենդանի իւր ձեռքն իյնային։

[140] Բայց ոչ ամէնքը, ինչպէս կը կարծէ Duchesne (անդ)։, De Goeje (անդ, 6—7). կը համարի թէ Ասորիք աշխարհակալութեան ատեն կողմայեանց մէջ, որոնք բիւզանդական դրօշին ներքեւ կը կռուէին, կէսէն աւելին հեթանոս էին. իրօք ալ մահմետական բանակը կ՚ուզէր անոնց վրայ յարձակիլ այն օրն որ կը պատրաստուէին մատուցանել զոհ մը՝ զոր Թէոփանէս εἰδολοθυσία (կռոց զոհ) կը կոչէ (էջ 335, 16)։

78

Դ. դարուն[141]. անապատի այս գաւառներուն վրայ անապատական միայնակեացները մեծ ազդեցութիւն կը գործէին[142]: Երկու կողմն ալ մոլեռանդութիւնը սաստիկ բորբոքեալ էր, ինչպէս վառ էին համոզումները: Եթէ պէտք ենք Պրոկոպիոսի հաւատալ[143], Պարսկաստանի հպատակ Սարակինոսներն Արեւմուտքի իրենց հակառակորդաց գոնէ դադարի ժամանակ մը կը շնորհէին ամառուան արեւակայքին յաջորդող երկու ամիսները: Այս ժամանակամիջոցը վերապահուած էր կրօնական զոհերուն եւ կ՚անցնէր առանց ասպատակ մ՚ընելու օտար հողի վրայ: Յետոյ կորսուածին տեղը կրկին կը լեցընէին:

Դժուարին է Սարակինոսաց այս երկու խմբերուն մէջ համեմատութիւն մ՚ընել[144]: Գոնէ Արեւմուտքի Սարակինոսները շատ դէշ

---

[141] Սոկրատ, Պատմ. Եկեղ., Դ, 36. Ռուփինոս, Պատմ. Եկեղ., Բ, 6:

[142] Duchesneի յիշատակած իրողութեանց վրայ աւելցընելու է Ս. Սաբայի հետաքրքրական օրինակը (J. B. Cotelier, Eccl. graec. monum. Paris, III, 1686; Sabae vita per Cyrill. Scythapolit. § 12, p. 235—236). անապատականն իւր ճգնարանին մէջ անցնող Սարակինոսաց այցելութիւնը կ՚ընդունէր եւ ուտելիք կը փոխանակէր անոնց հետ:

[143] Պրոկոպ., Պ. Պ., Բ, 16, 18:

[144] Եւագր (Ե, 20) կ՚ըսէ թէ Մաւրիկ կայսեր օրով արաբական-բիւզանդական պետը մերժեց Եփրատն անցնիլ, վախնալով որ չստիպուի պատերազմիլ միւս Սարակինոսներուն դէմ որոնք Պարսից բանակին մէջն էին, «որովհետեւ իրենց ձիերուն անհաւատալի արագութիւնն է պատճառ որ երբեք չեն կրնար յաղթուիլ իրենց ազգէն ուրիշներէն»: Պարագային համեմատ պատճառաբանութիւն մը, ինչպէս կ՚երեւայ թէ կը մտածէ Եւագր ալ:

համբաւ մ՚ունէին: Արդէն Տակիտոս[145] կը նշանակէ թէ սոսնք պատրաստ էին ընկրկելով նահանջելու: Յուստինիանու օրով շատ անգամ հանդիպեցաւ որ թշնամւոյն առջեւէն խոյս տուին[146]: Յաղթութենէ մ՚ետքն ասոնց պետը վախնալով թէ Հռոմայեցիք չառնուն իրենց ձեռք ձգած աւարները, իր զօրքերով կը թողու հասարակաց բանակատեղը եւ մօտ տեղ մը կը մեկուսանայ[147]: Սակայն պիտի տեսնենք որ աւարառութեան եւ անկարգապահութեան ոգին ժամանակին զօրաց մէջ սովորական թերութիւն մըն էր. միայն թէ Արաբացիք բարձրագոյն աստիճանի մը կը հասցընէին նոյնը, ա՛յս է ամէնը: Հռոմայեցի զօրավարները անխորհուրդ էին զանոնք իրենց բանակներուն մէջ մուծանելով[148]. աւելի լաւ էր անոնց յանձնել առան-

---

145 Տակիտ., Տար. Ջ, 44: Եւ Հերովդէս իւր զօրաց կ՚ըսէ՝ Արաբացւոց դէմ յարձակիլ տալէն յառաջ՝ թէ վերջինքս մարդկան մէջ ամէնէն նենգաւորներն ու ամէնէն ամպարիշտներն են (Յովսեպոս, Գ. Հր., ԺԵ, 130. հմմտ. 134, 140 եւ 110):

146 Մալալաս, էջ 464. Պրոկոպիոս, Պ. Պ. Ա, 18, 36:

147 Պրոկոպ., Պ. Պ., Բ, 19, 26:

148 Բելիսար կ՚առաջարկէ որ զանոնք թողուն առանձին գործելու, որովհետեւ անատակ են պաշարում մ՚ընելու եւ շատ յարմար՝ դաշտօրայքն աւերելու մէջ (Պրոկոպ., Պ. Պ. Բ, 19, 12): Բաց աստի ո՛չ Բիւզանդացիք եւ ո՛չ Պարսիկք կը դիտէին իրենց այս պաշտպանեալներուն մէջ հաւատարմութեան զգացում զարթուցանելու. Հերակղ կայսրը Կապադովկիոյ սահմաններուն մօտ կը հանդիպի արաբացի յառաջապահ գնդի մը եւ կը պարտէ. այս փարձկանազօրուն հրամատարն իւր ազատութիւնը կը ստանայ այն պայմանաւ որ իւր մարդիկներով անցնի կայսերական բանակին մէջ (Գէորգ Պիսիդ., Արշաւ. Պրս., Բ, 225 եւն:

ձին յատուկ պաշտօն մը, ինչպիսի էր այն՝ զոր Մասուդի պատմագրին համաձայն՝ Հերակղ կայսերմէ ստացաւ Ոկայիդիր (Ocaidir) իշխանը, որ հրաման առած էր Մեդինայի կարաւանները նեղել[149]: Որչափ ալ Արաբացիք լաւ յարաբերութիւններ ունէին միայնակեցաց հետ, սակայն կը կողոպտէին վանքերը, եւ Ս. Սաբայի վարքէն կը ճանչնանք Կ. Պոլսոյ վարչութեան ուղղուած խնդրագիր մը՝ ամուր դղեակ մը կառուցանելու անապատին մէջ, մենաստանները պաշտպանելու համար՝ Սարակինոսաց յարձակմանց դէմ (διὰ τὴν τῶν Σαρακηνῶν ἐπιδρομήν)[150].

Անտարակոյս Փարանկաստանի հպատակ Սարակինոսներն ալ ամենեւին տարբերութիւն չունէին քրիստոնեայ ազգակիցներէն: Անոնք ալ ունէին այն կարեւոր արուեստը վայրկենաբար երեւան գալու այն տեղն ուր իրենց չէր սպասուեր. անբարեկարգ հրոսներ կը կազմէին, ուր կանայք ալ արանց կը խառնուէին եւ անոնց պէս քաջաբար կը կռուէին[151]: Մէջերնէն ոմանք զրահ մը զգեցած էին, որ թոյլ կու տար իրենց նիզակով ի մերձուստ կռուելու. ուրիշներն աղեղնաձիգ կ'ըլլային: Անհմուտ էին քաղաքապաշարման արուեստին. Դամասկոսի պաշարումը տեւեց վեց ամիս[152]:

---

149 De Goeje, անդ, էջ 12:

150 Անդ, 72, էջ 343. հմմտ. 73 եւ 83, էջ 347 եւ 359:

151 De Goeje, անդ, էջ 117:

152 Անդ, էջ 82:

Բիւզանդացւոց զինուորական ստորադասութիւնը չէր որ Ասորիքի ճակատագիրը վճռեց: Նախ դրամի պարզ խնդիր մըն էր․ Եդոմէի անապատին պահպանութիւնը յանձնուած էր Սարակինոսաց՝ դրամական նպաստի մը փոխարէն, զոր սակայն չուտով դադրեցան անոնց հատուցանելէ[153]: Վարձկան զինուորներն երբ իրենց բողոքը կը ներկայացընէին կայսերական գանձապահին, փոխարէնը թշնամանք կը լսէին՝ «Մեր ինքնակալը հազիւ կը գտնէ իր զինուորաց վճարելու․ բան մը չունի շներուն տալու»: Այն ատեն քրիստոնեայ Սարակինոսները պարզ հանդիսատես մնացին․ նոյն իսկ շատերը միացան մահմետականաց հետ, որոնց պետը բարեբաստիկ գաղափարն ունեցած էր արգիլելու իր մարդկանց անօգուտ կոտորածներն ու աւերումները: Այսպէսով բնիկներուն գործակցութիւնը ստացաւ, որ շատ թանկագին էր՝ իր պաշարը հայթայթելու համար[154]:

Աւելցընենք թէ արիւնակցութեան գաղափարը, որ հիմն է ցեղին, երթալով կ'ընդարձակուէր․ երկայն ժամանակ իրարու կապած էր միայն ընտանիքի մ'անդամները․ բայց քիչ մ'ետքը պիտի համախմբէր՝ Մահմետի կոչին վրայ՝ դրեթէ ամբողջ ազգը[155]: Սակայն չեմ կրնար այս գաղափարն ընդար-

---

153 Կեդրենոս, Ա, էջ 751․ Թէոփանէս, 325, 23:
154 De Goeje, էջ 24, 82, 86:
155 Pernice, անդ, էջ 246:

ձակօրէն պարզել՝ առանց մեր նիւթէն շեղելու:

## § 4. Հիւսիսի տիրապետողները:

Այն ազգերուն քով, որոնք անվերջ պայքարներու ենթակայ երկիրները կը բնակէին, պատշաճ է որ նշանակենք զանոնք ալ, որոնք այլեւայլ ժամանակներ դրսէն այն տեղերը ներս խուժեցին հրոսելով, եւ այնպէս զարհուրեցուցին երկու ոխերիմները, մինչեւ՝ այս նոր վտանգին դէմ՝ մէջերնին վաղանցուկ միութիւն մը կազմեցին: Առաջին գծին մէջ կ'անուանեմ Ալանները[156]: Ասոնք բազմաթիւ ցեղեր կը կազմէին, որոնք ամբողջ Հարաւային Ռուսաստանի մէջ կը թափառէին, Կասպից ծովէն մինչեւ Տանայիս, ուր յաջորդած էին Սարմատներուն, նախ եւ յառաջ Մազքութք (Μασσαγέται, Massagetae) անուամբ[157]:

Առաջին անգամ Պոմպէոս բախեցաւ Մազքթաց՝ Միհրդատայ դէմ մղած պատերազմին ժամանակ, եւ վանեց զանոնք դէպ ի Կասպից ծով: Յետոյ անոնց ընդհարեցաւ Վենտիդիոս՝ Անտոնիոսի նուիրակը[158]: Տի-

---

156 Հմմտ. Tomaschek, Alani (Պաւլի–Վ.):

157 Գոնէ այսպէս կ'ըսէ Ամմիանոս Մարկեղոս (ԻԳ, 5, 16) «զՄազքութս (Massagetas), զոր այժմ Ալանս (Halanos) կոչեմք»: ԼԱ, 2, 128 «զԱլանս... հինք՝ Մազքութս...»: Յամենայն դէպս միւս անունն ատոնց կը տրուի արդէն Ա. դարուն (Լուկան., Փարս., Ը, 183՝ duros aeterni Martis Alanos):

158 Ամ. Մարկ., ԻԳ, 5, 16:

բերիոսի օրով ասոնք Հռոմայեցւոց ծառայութիւն մատուցին. Հռոմի շահուն ի նպաստ Վիրք եւ Աղուանք ազատ անցք տուին Ալաններու, որոնք եկան այրացաւեր ասպատակեցին Հայաստանն ու Պարթեւաց երկիրը[159]։ Ներոն ասոնց դէմ արշաւանք մը ծրագրած էր. յետոյ կրկին եկան աւարելու Սարմատանն ու Հայաստան. Վեսպասիանոս մերժեց օգնել Վաղարշի, եւ Հայոց Տրդատ արքայն քիչ մնաց հեղձամահ պիտի ըլլար անոնց միայն լարաձգովը (lasso). Հազիւ ժամանակ ունեցաւ սրով կտրելու պարանը[160]։ Ադրիանոսի վերջին տարիները կը սպառնային նոյն իսկ Կապպադովկիոյ. այս ժամանակ գրեց Արիանոս իւր «Ճակատամարտութիւն ընդդէմ Ալանաց» (ἔκταξις κατ' Ἀλανῶν) գիրքը։ Կովկասը կտրելով կ'անցնէին Դարիալի կրճէն (Կովկասեան Դրունք՝ Portae Caucasiae)[161], կամ նաեւ Կասպից ծովուն արեւմտեան ծովափէն, ուր թերեւս փնտռելու է Կասպից Դրունք (Portae Caspiae) Երէց Պղինեայ[162]։

Արեւելագէտներու եւ ազգագիրներու թողլու ենք զանազանել զասոնք Հոներէն, որոնց անունը պատմութեան մէջ աւելի ուշ կ'երեւայ, եւ որոշել այն զանազան ցեղերուն

---

159 Յովսեպոս, Տ. Հ., ԺԸ, 97—98։
160 Նոյն, Պ. Հ., Է, 245—250։
161 Պղինիոս, Բն. Պատմ., Զ, 30, 40. «Սարմատական Դրունք» (Σαρματικαὶ Πύλαι) կոչուած Պտղոմեայ քով՝ Ե, 9։
162 Տես վարը՝ տեղագր. վերջը։

մէջէն՝ որոնք այս վերջին անունը կը կրէին, այսպէս՝ «Հիւսիսի Հոնք, զորոնք Պարսիկք Թուրք կը կոչեն[163]», Սպիտակ Հոնք կամ Հեփթաղք[164], Սաբիրք կամ Խազարք[165]: Աւելի յստակ բան մ'ալ չենք գիտեր Costobocae կոչուածներուն մասին[166]. եւ այս ամէն մանր ազինք գրեթէ իրարու հետ խառնուած են Ամ. Մարկեղինոսի սա միահաղոյն անուանակոչութեամբը Սկիւթացիք, որուն պարտական ենք անոնց երկրին ու բարուց ընդհանուր նկարագրութիւն մը[167]:

Ինչպէս կ'ըսէ՝ Ալանք կամաց կամաց իրենց անունը տուին դրացի ցեղերուն՝ որոնք շատ անգամ յաղթուած էին իրենցմէ, ինչպէս որ Պարսից անունը տարածուեցաւ Երանի բոլոր հարկատուներուն վրայ, եւ նման բան

---

163 Թէոփիլ. Սիմոկ., 7, 6, 9:

164 Հմմտ. Ed. Drouin, Mémoire sur les Huns Ephthalites, dans leurs rapports avec les rois perses Sassanides (ի Muséon, XIV, 1895, p. 73—84, 141—161, 232—247, 277—288). Պրոկոպիոս (Պ. Պ., Ա, 3, 4—5) այս մասին կ'ըսէ. «Սպիտակ Հոնաց անուամբ կը հասկցուին ասոնք. որովհետեւ սպիտակամորթ են եւ առանց տձեւութեան. գաղթական կեանք մը չեն անցըներ, եւ ցանցառ միայն ասպատակներ կ'ընեն, այլ մանաւանդ զէնք կ'առնուն իրենց սահմանագլուխները պաշտպանելու համար: Միապետական տէրութիւն մ'ունին, հիմնուած օրինաց վրայ եւ արդարութիւնը կը պահեն դաշանց մէջ՝ եթէ՛ իրենց մէջ եւ եթէ՛ օտարներուն հետ»: Այս նպաստաւոր գնահատութիւնն անկէ յառաջ կու գայ որ անոնք Բիւզանդացւոց ծառայութիւն կը մատուցանէին՝ Պարսից վրայ յարձակելով, մինչդեռ Բիւզանդացիք աւելի նուազ ենթակայ էին անոնց աւերմանց:

165 Tomaschek, Chazaroi (ի Պաուլի–Վ.):

166 Ամմ. Մարկեղ., ԻԲ, 8, 42:

167 Անդ, Յաւել.՝ ԼԱ, 2:

մ'ալ պատահած ըլլայ Հոնաց։ Բարբարոսները բոլոր այս խմբերը կը բնակէին, կամ մանաւանդ կը շարժէին, գլխաւորաբար Կասպից ծովուն արեւելքն ու արեւմուտքը[168]։ Հոնք, կ'ըսէ Ամմիանոս, անլուր գազանաբարոյութիւն մ'ունին եւ իրենց մէջ գազանական բան մը կայ։ Կարծես իրենց ձիերուն վրայ բեւեռուած կ'ապրին, որոնց թիկանց վրայ կը զբաղին իրենց ամէն գործերովը։ Իրենց պետերը թագաւորի տիտղոս չեն կրեր։ Թեթեւընթաց ըլլալով՝ միայն հրոսակամարտը (guérilla) գիտեն. քաջ նետաձիգ աղեղնաւորներ են, եւ կը գործածեն այնպիսի փքիներ՝ որոնց ծայրը շատ նրբաւարտ ոսկր ագուցուած է. բայց մօտէն ալ կը կռուին սրով եւ գալարուն փոկերով կը ջանան իրենց թշնամիները շաղապատել[169]։ Կը սնանին իրենց անդէոց կաթով եւ որսացած երէներով. չեն գիտեր մշակութիւն, որ զիրենք հողին պիտի կապէր, եւ անդադար կը տեղափոխուին, կանայքն ու տղաքը փոխադրելով սայլերով, որոնք կեղեւներով ծածկուած են եւ ուր իրենք ալ գիշերները կ'անցընեն։ Կը բանակին ճամբուն վրայ հանդիպած մարդա-

---

168 Հոներն այս ծովեզերեայց վրայ յաջորդած են Դահաց (Dahae) կամ Դայից (Daai, հմմտ. Tomaschek՝ նոյն անունները առ Պաւլի-Վ.) որ նոյն աշխարհները կը բնակէին եւ շատ յաջողակ հեծեալ աղեղնաւորներ էին, որոնց քով Անտիոքոս Գ. օգնականներ գտած էր Հռոմայեցւոց դէմ (Պողիւբ. Ե, 79)։

169 Ցանդգնական չըլլար այս նկարագրութեան մէջ գտնել այն լարաձիգը (lasso)՝ զոր Մեքսիկացիք կը գործածէին։

գետիններուն վրայ, իրենց անդրուվարները թոլորակաձեւ կը չարեն, պաղարեր ծառերը կը քաղեն ու յետոյ կը մեկնին՝ իրենց առջեւէն վարելով պաճարն ու դուարը: Ամէն բանէ աւելի պատերազմը կը սիրեն ու ձիավարութիւնը. երիտասարդներն՝ որոնք մանկութենէ վարժած են հեծնել, իրենց անարգանք կը համարին ոտքով քալելը: Եթէ Ամմիանոս հաւատանք, Ալանք քիչ մ'աւելի քաղաքակրթուած էին. աւելի նուազ անագորոյն, աւելի լաւ հագած, բայց միւս բաներով շատ նման Հոնաց. Թեթեւազէն ու դիւրաշարժ, քաջ որսորդներ ու աւարառուներ: Պատերազմասէր էին շատ, եւ իրենց սպաննած թշնամիներուն մորթը հանելով անով իրենց ձիերը կը սթարէին: Ամէնքն ալ ի ծնէ ազատ են[170]:

Կասպից Դրանց՝ ինչպէս նաեւ անդրկասպեան աշխարհաբաժնին պաշտպանութեան մէջ միայն Պարսք շահ ունէին եւ պէտք էին խնամ տանիլ. ընդհակառակն ամէն հրոսական արշաւանք որ Կովկասի կեդրոնէն կ'անցնէր՝ կը սպառնար երկու պետութեանց ալ: Ասով կը մեկնուի այն դաշինքը՝ զոր կը պատմէ կեղծ Յեսու Սիւնակեաց[171]. այս-

[170] Այս պատկերիս մէջ տարակուսական գծեր կան, առանց հաշուելու անելաբանութիւնները: Ամմիանոս կ'ըսէ թէ Ալանաց քով երանելի է որ ճակատի մը մէջ կ'իյնայ, եւ վատ՝ որ ծերութեամբ կամ արկածով մը կը մեռնի: Արդ նոյն կանխակալ կարծիքը կը վերագրէ նաեւ Պարթեւներուն (ԻԳ, 6, 44):

[171] Ժամանակագր., 9—11: Ըստ Թէոփանէսի (տես վարը) դաշինքս Թէոդոս Կրտսերի ժամանակէն էր:

լինքն թէ Պատերազմի մը պարագային Հռոմայեցիք եւ Պարսք իրարու պիտի օգնէին փոխադարձաբար զէնքով ու արծաթով։ Նաեւ առաջինները ասկէ օգուտ կը քաղէին, որովհետեւ Հոնք Ասորիքի մէջ վնասներ հասցուցին Արկադիոսի եւ Ոնորիոսի օրով։ Բայց մանաւանդ Պարսիկներն այս դաշանց վրայ անդադար կը յենուին. Ջենոնէն ոսկի առին փրկանաւորելու համար Պերոզ զօրավարն՝ զոր Հոները գերած էին։ Այն ատեն փորձեցին դաշնադրութիւնը խեղաթիւրել եւ անկէ հետեւցնել թէ Կ.Պոլսոյ ինքնակալները տարեկան ճշմարիտ հարկ մը վճարելու պարտական են[172]։ Կաւատ 496ին վայրապար դրամ պահանջեց Անաստասէ, որ միայն փոխատուութեան մը կ'ուզէր հաւանիլ[173]։ Ասոր հետեւութիւնը պատերազմ մ'եղաւ։ Յետոյ խաղաղութիւն առաջարկեց Յուստինիանոս այն պայմանաւ որ վերջինս արծաթ հանդանակէ պահպանելու համար Կասպից Դրունքն ընդդէմ Նոյն Մազքթաց[174]։ Բայց իրականութեան մէջ ո՛չ մէկ եւ ո՛չ միւս կողմը խնդիրն այս իմաստով կը նկատէր. ա՛յնչափ չէին մտածեր միասին զգուշութեամբ ան-

---

172 Ի՞նչ չափով իրաւացի էր այս պահանջումը։ Հազիւ թէ կարելի ըլլայ ըսել։ Կ'երեւայ թէ Նէօլդեքէ (Տաբարի, էջ 108, ծն. 2) կ'ընդունի անոնց իրաւունք ունենալը. Յեսուայ Միւնակեցի գործածած բացատրութիւնէն կը տեսնուի որ խնդիրն արդէն վիճելի էր իւր ժամանակը։

173 Յեսու, 23. Թէոփանէս, Ժամանակագրական, էջ 144, 21 եւն։

174 Պրոկոպիոս, Պ. Պ., Ա, 16, 4—8։

ճնապահ ըլլալ այն բարբարոս ազգերէն՝ որչափ զանոնք իրարու վրայ կամ հակառակորդին դէմ ձգել գրգռելով. Կաւատ Հեփթաղներ ունէր իւր բանակին մէջ. Խոսրով յետոյ զասոնք բնաջինջ ըրաւ օգնութեամբ Թուրքերու՝ որոնց ժամանակաւորապէս հարկ կը վճարէր[175] ։ Իսկ Ալանաց մասին՝ զորոնք պիտի ընկրկէին, Հռոմայեցիք զանոնք իրենց զօրաց մէջ մուծին[176]. եւ դրամական նպաստներու ուժով զեղծուցին հրապուրեցին Պարսից հին սորակարգեալները՝ Սաբիրական Հոները, որոնք սակայն քիչ ապահով եւ անկարգապահ ցեղ մըն էին[177] ։

Մեր գործը չէ այս խառնակ ու տխուր պատմութեան մանրամասնութեանց հետեւիլ. ասի հազիւ թէ մանրավիպական թեթեւ օգուտ մը կ՚ունենար՝ եթէ չնպաստէր պայծառօրէն երեւան հանելու երկու մեծ պետութեանց իրենց վախճանին մօտ գործածած քաղաքականութիւնը ։ Իրենք զիրենք կը փճացընէին ստանալու համար օգնութիւնն ազգի մը՝ ուրիշ ազգի մը դէմ, որուն վրայ յետոյ՝ իւր տոյժը հանելու համար՝ ահագին տուգանքներ կը դնէին ։

---

[175] Թէոփիլակտ. Սիմոկ., Գ, 6, 11 ։

[176] Զոսիմոս, Դ, 35, 2. Պակատ, Ներբողեան, 32. «Տեղեկութիւնք Աստիճ. Արեւմ., Զ, 31. comites Alani ։

[177] Ագաթիաս, Դ, 3, 3 ։

## ԳԼՈՒԽ Բ.

### Պարթեւք եւ Պարսք:

Գէորգ Ռաւլինսըն Պարթեւաց մասին իւր գիրքը գրած է[178], որպէս զի յետս պահանջէ անոնց այն տեղը՝ զոր պատմութիւնը պարտական է տալ, որ անոնց հանդէպ աւելի քիչ արդար վարմունք մ՚ունեցած է քան նոյն իսկ անոնց սոսկ Հռոմայեցիները: Պարթեւաստանն առանձին հակամէտ կշիռ մը կազմած է հռոմէական ամբողջ զօրութեան դէմ[179], եւ հինք անտես չեն ըրած այս երկուորու-

---

[178] George Rawlinson, The Sixth great oriental Monarchy, or the Geography, History and Antiquities of Parthia, London 1873. Հերմ. Շնայդերվիրթի գիրքը (J. Herm. Schneiderwirth, Die Parther, oder das neupersische Reich unter den Arsaciden nach griech.-röm. Quellen. Heiligenstadt, 1874.) ա՛յնչափ մեծայարգ չէ, որովհետեւ թանձրահոծ է եւ խառնիխուռն, եւ հեղինակն՝ որ գրեթէ երբեք իւր աղբիւրները ճշդըրտութեամբ չի յիշեր, կամաւ հրաժարած է այն աղբիւրներէն՝ զոր արեւելեան պատմագրութիւնն իրեն կրնար ընծայել:

[179] Fronto, Princip. hist., p. 315 (հրտ. Mai) կը գրէ Soli hominum Parthi adversus populum Romanum hostile nomen haud umquam contemnendum gesserunt (Միայն Պարթեւները հռոմէական ժողովրդեան դէմ թշնամի մարդկան հազիւ երբեք քամահելի անունը կրեցին): Յուստինոս, XLI, 1. soli ex omnibus gentibus non pares solum, verum etiam victores fuere (Ամէն ազգերէն՝ միայն ասոնք ոչ միայն հաւասար, այլ եւ յաղթող եղան):

թիւնը[180]: Կ'ըսեն թէ Պարթեւները հնութեան Թուրքերն եղած ըլլան: Այս գնահատութեամբ կ'ակնարկուի յայտնապէս անոնց կրթութեան պակասութիւնն ու բարուց բրտութիւնը: Բայց անոնք աւելի ներողամտութիւն ունէին քան Թուրքերը, աշխարհակալութեանց աւելի նուազ տենչանք, եւ աւելի քիչ հակամիտութիւն բացարձակ միահեծանութեան[181]:

Սէնտ-Կրուայի շատ հին երկասիրութիւնն[182] արդէն շատ ճիշդ գաղափար մը կու տայ անոնց քաղաքական վարչութեան վրայ, որ բոլորովին աւատական էր. «Արքայից արքայն» — Հռոմի նման — կը հրամայէր ցեղով ու կրօնքով տարբեր ազգերու: Իւրաքանչիւրն իւր ազգային պետը, ցեղապետ թէ տեղապետ, կը պահէր, որ իւր իշխանութեան տուչութիւնը կ'առնուր ար-

---

[180] Ճիշդը խօսելով՝ Յուստինոսն քիչ մը կը բռնազբօսէ. իրաւունք կ'ունենային պաշտպաններու թէ Գերմանացիք ամենադաժան արգելք մը չյարուցին, որովհետեւ կանուխէն եւ աւելի լիակատարօրէն հրաժարեցան զայն տապալելէն: Ո՞չ ապաքէն Տակիտոս (Գերմ., 37) կը գրէ. «Գերմանացւոց ազատութիւնն աւելի զարհուրելի է քան Արշակունեաց միապետութիւնը»: Եւ արդեամբք հնութեան հեղինակները նոյնն ա՛յնպէս տարամերժ կերպով չեն բացատրեր. այնպիսի ճշմարիտ հակակշիռ մ'եղած չէ իրը:

[181] Փաստը իշխանափոխութեան բացակայութիւնն իրաւամբ կը մեկնուի բացարձակ իշխանութեան պակասութեամբն, որ անհրաժեշտ է զինուորական մեծամեծ ձեռնարկութիւններն ի գլուխ հանելու համար (տես C. de La Berge, Essai sur le règne de Trajan. Paris 1877, cap. XIII):

[182] Sainte-Croix, ի Mém. de l'Acad. des Inscr. L, հմմտ. էջ 75:

քայլէն եւ պարտական էր անոր որոշեալ գօրաբաժին մը տալ պատերազմի առեն: Հետեւաբար պարթեւական բանակներուն մէջ ապահովապէս տարազի, սպառազինութեան եւ կարգապահութեան պէսպիսութիւն մը կար. այսպէս կը մեկնուի անհամաձայնութեան այն թեթեւ հետքերը՝ զորոնք կը նկատենք այն մասին խօսող հեղինակաց քով: «Պարթեւները, կ՚ըսէ Դիոն Կասիոս[183], Տիգրիսէն անդին կ՚ապրին՝ գրեթէ ամէն տեղ միջնաբերդերու եւ ամրոցներու մէջ, ունին նաեւ քանի մը քաղաքներ»: Արդ այս բերդերը գոյութիւն ունէին Եփրատի եւ Տիգրիսի հովիտներուն մէջ. որովհետեւ ասոնք ալ իրենց սահմանները (limes) կը պահպանէին, եւ այս մասին շատ նշանակալից է անոնց կայուններ[184] (mansiones) երկայն անուանացանկը: Բայց երկրին խորքը գոյութիւն ունեցած ըլլալու են միայն գիւղացւոց մեծ աւաններ՝ որոնք բնականապէս առանց պատուարներու էին:

Այս ամրոցներէն (ὀχυρώματα), Իսիդորի բացատրութիւնը գործածելով, դժբախտաբար մնացած չեն ո՛չ նիւթական հետքեր եւ ո՛չ վկայից նկարագրութիւններ: Միայն

---

[183] Դիոն Կաս. XL, 24:

[184] Զասոնք աւանդած է մեզի Իսիդոր Քարակացի (Χάραξ, Charax) որ իւր «Օթեւանք Պարթեւաց» (Σταθμοὶ Παρθικοί) գրած է Աւգոստոսի օրով, հմմտ. Müller, Geogr. Gr. Min. I, p. 244 ff. եւ (վարը) մեր Եզրակացութիւնը:

Հաւրա[185] չի բաւեր այս մասին մեզի տեղեկութիւն տալու համար։ Անկէ միացածը խառնամառն բան մ'ունի եւ մանաւանդ Սասանեանց ժամանակի նորոգութենէ մըն է՝ որ Սեպտիմոս Սեւերոսի վարած պաշարումներէն անագանագոյն է։ Միւս կողմանէ կը վկայուի թէ Պարթեւք ամենեւին չէին գիտեր վաղանցուկ բանակման մը համար աճապարանօք հաստատուած ղակիչի ճամբարները[186]։

Այն ակնարկը՝ զոր Հերոդեան կու տայ «պարսիկ» բանակին մասին այն վայրկենին՝ երբ Արտաշիր իբրեւ արքայից արքայ փոխանորդեց Արշակունի Արտաւանայ տեղը, նոյն չափով կը յարմարի նաեւ «պարթեւ» բանակներուն. որովհետեւ Սասանեանք միայն աւելի ուշ կրնային զինուորական բարեփոխութիւններ մուծանել։ «Այս բարբարոսները, վարձկան զինուորներ ամենեւին չունին՝ ինչպէս Հռոմայեցիք ունին, եւ խաղաղութեան ժամանակ երբեք չեն պահեր պատերազմի բոլորովին պատրաստ բանակներ։ Իշխանին առաջին հրամանին վրայ այն ամէնքն՝ որ զէնք կրելու տարիքն ունին, կը հաւաքուին անոր մօտ, երբեմն իրենց հետ առնելով իրենց կանայքն ալ. պատերազմէն երբ աւարտի՝ իւրաքանչիւրն անմիջապէս

185 Տես յետոյ վարը։

186 Դիոն. Կաս. Խ, 24: οὐδέποτε ...πλησίοι οὐδὲ τοῖς ἀσθενεστάτοις στρατοπεδεύονται,... διὰ τὸ μηδεμιᾷ ταφρείᾳ χρῆσθαι (երբեք... նաեւ տկարագոյններու մօտերը չեն բանակիր... որովհետեւ որեւէ ղակիչի ամրութիւն չեն գործածեր)։

իւր տունը կը դառնայ առանց արձակուրդի ապասելու, եւ իրենց հետ տարած աւարն իրենց միակ վարձքն է։ ...Դիւրին բան մը չէ վերահաւաքել այս զօրքերն՝ երբ անգամ մը ցրուած են։ Տեւական զօրագունդներ չկան, եւ երբ միացած են այս խմբերը՝ ո՛չ այնչափ ճշմարիտ բանակ մը կը կազմեն որչափ ամբոխ մը (ὄχλος μᾶλλον ἤ στρατός),[187] որ ո՛չ պարէն ունի եւ ոչ համբար՝ բայց միայն ինչ որ իւրաքանչիւրն իր հետ առած է իւր ապրուստին համար[188], եւ կազմուած է այնպիսի անձերէ՝ որոնք մեծ տհաճութեամբ թողուցած են իրենց երդերը, կանայքն ու տղաք»[189]։

Այս բազմութեան մէջ կային իրօք ծառաներ ու գերիներ[190], մանաւանդ երբ վեհապետն անձամբ կը վարէր պատերազմը. եւ

[187] Սակայն այս գնահատութեան մէջ եղած չափազանցութիւնը կը ցուցընէ Հռոմայեցւոց շատ բազմաթիւ դժբախտ պատերազմներուն պատմութիւնը։

[188] Յուլեան. Դիոն Կաս. ԽԱ, 15։ — Այն տեղ՝ ուր Հերոդիան ստորադասութիւն մը կը տեսնէ, պէտք ենք ընդհակառակը իբր կարեւոր առաւելութիւն մը ճանչնալ. Հռոմէական բանակներուն հետեւող ա՛յնպէս բազմահոյլ բանակաղխը շատ անգամ արգելք եղած են բաւական արագութեամբ նահանջ մ'ընելու՝ ուր անհրաժեշտ էր։

[189] Հերոդիանոս, Զ, 5, 3. 7, 1։

[190] Յուստինոս; ԽԱ. 2. «Իրենց բանակին մեծագոյն մասը կը կազմեն գերիները. ասոնց թիւն ամէն օր կ'աճի, որովհետեւ ոչ ոք զանոնք ազատ հրատարակել կարենալով՝ անոնց տղաքն ալ ծառայական վիճակի մէջ կը ծնանին։ Պարթեւները զանոնք կը սընուցանեն իրենց զաւակաց պէս, եւ շատ մտադիր են անոնց սորվեցնելու ձիավարութիւն ու նետաձգութիւնը։ Երբ Անտոնինոս յարձակեցաւ անոնց վրայ, 50.000 հեծելոց մէջ միայն 400 ազատորեար կար»։

Հետեւակաց փոքրիկ թիւ մը՝ որոնք ամէնէն տկար մարդիկներէն կ'ընտրուէին։ Բանակին գլխաւոր կորիզը հեծելազօրն էր[191]. «գրեթէ միակերպ հարթ (?) երկիրը շատ նպաստաւոր է ձիաբուծութեան եւ հեծելոց ազատ շարժմանց։ Երբ Պարթեւք արշաւանքի մը կ'երթան, հետերնին կը տանին իրենց բոլոր ձիերը, որպէս զի կարենան ձի փոխել, եւ թշնամւոյն վրայ խոյանալ յանկարծուստ եւ հեռուէն եւ կամ արագօրէն խուսել՝ մեծամեծ անջրպետներ կտրելով հեռանալով[192]»։

Մարտիկներուն մեծագոյն մասն աղեղնաւոր էին. «Իրենց զէնքերն ու ձիերը միայն պատերազմի համար չեն՝ ինչպէս Հռոմայեցւոց քով. արդէն առաջին մանկութենէն կը սորվին զանոնք գործածել[193]. կապարճքը

---

[191] Հետաքրքրական է մատնանիշ ընել թէ, Ամմիանոս Հոնաց մասին պատմածը, Յուստինոս աւելի հաստատութեամբ Պարթեւաց մասին կ'ըսէ (անդ, 3) թէ միշտ ձի հեծած են. ձիու վրայ պատերազմի կ'երթան, իրենց խնջոյքները կու տան, իրենց հրապարակական պաշտօնները կը կատարեն եւ առանձնական գործերը կը կարգադրեն, կը ճամբորդեն, դադար կ'առնուն, առեւտուր կ'ընեն, կը խօսակցին։ Բայց աղեղնաւորը հետիոտն է (գոնէ եթէ զինուորագրուած չէր աշխարհային բանակին մէջ)։

[192] Դիոն Կաս. Խ, 15. Ովրատ. Երգք, Բ, 13, 17—18. sagittas et celerem fugam Parthi (Պարթեւաց նետերը եւ արագ խուսափումը...)։ Իրենց նիզակաւորներն երբեմն ուղտ կը հեծնէին (Հերոդ. Դ. 14, 3)։ Թեթեւս խարբերէ (հատիչ զէնքերէ) աւելի անքոյթ ըլլալու համար՝ նոյն անասնոց բարձր հասակին պատճառաւ։

[193] Սենեկա, Թուղթ առ Լուկիլ. 36 (= Դ, 7) Si in Parthia natus esset, arcam infans statim tenderet (Եթէ Պարթեւաստան ծնած ըլլար, երեւ մանուկ իսկ աղեղն անմիջապէս պիտի լարէր)։

մինչ իրենց թիկանց վրայ են, եւ բոլոր ժամանակն՝ որ պատերազմով չեն զբաղիր, կ՚անցընեն որսով[194]: Առաջին Հռոմայեցիք որ շփում ունեցան Պարթեւաց հետ, խորին տպաւորութիւն զգացին: «Անկարելի է պըրծիլ անոնցմէ հետապնդումի ժամանակ եւ հասնիլ անոնց փախուստի ատեն: Անծանօթ նետեր ունին՝ որոնք կը հարուածեն ղէպ նախ քան տեսնելը զանոնք արձակող ձեռքը[195]»: Աւելցընենք որ Հռոմայեցիք սովորութիւն ունէին յաղթուիլ ամէն անգամ որ նոր թշնամւոյ մը կը բաղխէին:

Բայց զօրաշարժման մէջ դրուած այս որսորդները միայն թեթեւազէն հեծելազօրը կը կազմէին, բայց կար նաեւ սպառազէն այրուձին, սպառազինուած խարքերով (հատիչ զէնքերով), մանաւանդ տիգով, եւ զրահապատ պատենազէն էր: Այս նկատմամբ Հերոդիանոս անընդունելի կարծիք մը կը յայտնէ[196]. Սեպտիմոս Սեւերոս, կ՚ըսէ, ներեց այն զինուորաց՝ որոնք (Նիգերի դէմ կռուի բարձակողի մրցակցութեան ատեն) Տիգ-

---

194 Այս կողմանէ — եւ միայն այս տեսակէտով — կրնայինք Պարթեւները համեմատել Բուրերու հետ, որ պատերազմի կը կրթուին՝ առանց անոր մասին մտածելու՝ որսորդութեամբ եւ մէկ ագարակէ միւսն երթալու համար երկարատեւ ձիավարութեամբք: — Վեգետիոս կը գրուատէ (Գ, 27) Պարսից նետաձգութեան հմտութիւնը (peritiam sagittandi) Հոնաց եւ Ալանաց ձիավարութեան գիտութիւնը (equitandi scientiam) եւ Սարակինոսաց վազելու արագութիւնը (currendi velocitatem):

195 Պղուտարքոս, Կրաս. 18:

196 Հերոդիանոս, Գ, 4, 7—9:

բխէն անդին փախած էին, անոնք վերադարձան՝ իրենց ընդհանուր անյիշաչար Ներում շնորհուելէն ետքը: Շատեր անցած էին բարբարոսաց քով. այս ժամանակէն ետքն է որ այն ազգերը սորվեցան հաստատաբար պնդագոյն կռուելու Հռոմայեցւոց դէմ: Ցառաջագոյն ո՛չ սաղաւարտ կը կրէին եւ ոչ զրահ, այլ միայն թեթեւ եւ ծալիծալ ծածան ձորձիկներ[197]: Ոչ տէգ գիտէին գործածել եւ ո՛չ սուր...»: Դիոն[198] սոյն հատուածը կ'ըսէ. «Վահան չեն գործածեր. ձիու վրայ կը պատերազմին աղեղով ու նիզակով եւ ընդհանրապէս զրահավառ են»: Եւ Պղուտարքոս. «Իրենց սպառազէն (զրահաւոր) հեծելոց զէնքերը կը խորտակեն ամէն արգելք կամ տեղի չեն տար որեւէ հա-

[197] Արդեամբք ալ լայն ու խոշխոշան զգեստներ հագած է ընկողմանած պարթեւ զինուորը՝ զոր կը ներկայացընէ Լոֆտուսի փոքրիկ արձանիկը (Հմմտ. Ռաւլինսըն, Պարթեւստան, էջ 386). բայց անկից շատ ընդհանուր եզրակացութիւններ չհանենք: Դրամագիտական տիպերն այնպէս մանր են որ չի կրնար յատկանիշն որոշուիլ. երբեմն չենք գիտեր թէ փորագրողն ի՛նչ ուզած է ներկայացընել՝ Պարթեւ մը թէ Հայ մը (Babelon, Monn. de la Républ. rom. II, 1886, p. 77, n. 2, յաւել՝ էջ 72, թիւ 196 եւն). Միլանի Ս. Ամբրոսիոսի գանձատան մէջ կը պահուի պաստառ մը, որուն վրայ կը տեսնենք պարթեւական ոճով հագուած որսորդ մը՝ որ վագրի մը վրայ նետ կ'արձակէ (A. Venturi, Storia dell' arte italiana, Milano I, 1901, p. 383—385, fig. 352—353). Այս պաստառն՝ ո՛ր ժամանակէն ալ որ ըլլայ, ընդօրինակեալ պատճէն մը կ'ընծայէ շատ հին ծրագիր պատկերի մը, զոր կարելի է Պարթեւաց ժամանակին վերագրել:.

[198] Դիոն, Կաս. Խ, 15, Հմմտ. ԽԹ, 20:

գրուածի»[199]։ Իսկ արդ Պղուտարքոս կը գրէ Սեւերոսի գահակալութենէ յառաջ. եւ Դիոդորի պատմածն ալ կանխագոյն ժամանակի մը կը վերաբերի։

Այս զրահը կաշիէ եւ երկաթէ էր՝ Պղուտարքոսի ըսածին համաձայն[200] հաւանօրէն բուն պահպանակը քեմխատապատ (կաշեայ) էր եւ մետաղեայ զրուագ ունէր միայն այն տեղերն՝ որոնք հարուածոց աւելի զգայուն էին կամ անոնց ենթակայ։ Անշուշտ աւելաբանութիւն մը կայ Կրասոսի կռուերոյ պարտութեան պատմութեան մէջ՝ զոր Պղուտարքոս կ՚երկրորդէ. Սուրէն, կ՚ըսէ, առաջին կարգին ետեւը զետեղած էր բազմախուռն ամբոխը, եւ անոնց զինուց շողիւնը քողարկած՝ ծածկելով պատմուճաններով եւ մորթերով...։ Յանկարծ այս ծածկոյթները թօթափելով՝ Պարթեւները կարծես բոլորովին բոցի մէջ կ՚երեւային։ Միայն սաղաւարտներ եւ զրահներ կը տեսնուէին, եւ երիվարներ երկաթեայ ու պղնձի ասպազէնով պատեալ[201]»։

---

[199] Պղուտարքոս, Կրաս. 18. Համմտ. 24՝ ի սկզբան անդ կ՚ուզէին Հռոմայեցւոց վրայ յարձակիլ տէգերու հարուածներով. Ղուկուղղ. 28 «երկաթապատ հեծեալներ»։

[200] Պղուտ., Կրաս. 25։ Յուստինոս, անդ. Munimentum ipsis equisque loricae plumatae sunt, quae utrumque toto corpore tegunt (Թէ իրենք եւ թէ ձիերը հիւսկէն քեմխատեայ զրահակներ ունին, որ երկուքն ալ ամբողջ մարմնով կը ծածկեն)։

[201] Անդ, 23։ Այս նկարագրութիւնը նոյնչափ կասկածելի է որչափ միւսը (26) թէ նետերն այնպիսի ուժգնութեամբ կ՚արձակուէին որ երկու մարդէ մէկ անգամէն թափանցանց կ՚անցնէին։

Սակայն ի վերջոյ Պարթեւք զարհուրելի էին իբրեւ նետաձիգ աղեղնաւորներ։ «Իրենց երկինքը՝ որ չոր է եւ խոնաւութենէ ազատ՝ իրենց աղեղին մեծ կորովութիւն մը կու տար, եթէ ձմեռը չըլլար․ ուստի անոնք ալ այս եղանակին պատերազմի չէին երթար[202]։» Իբրեւ աղեղնաւորներ իրենց ունեցած սովորական մարզութենէն կը բղխէր իրենց ամբողջ ռազմագիտութիւնը․ սովորութիւն չունէին գիշերը յարձակելու[203], որովհետեւ նախամեծար կը համարէին հեռուէն կռուիլ եւ մթութիւնը կ'առաջասնէր նպատակները՝ որով նետն իր թիրախին չէր հասներ։ Նոյնպէս կը կասկածէին գիշերախառն յարձակումներ կրելէն․ անոր համար թշնամիէն շատ հեռու կը բանակէին բացօթեայ․ բայց ատոր հեծեալք շատ աւելի ժամանակի պէտք ունէին՝ հանդերձելու, կազմելու իրենք զիրենք քան թէ ոտանաւորները․ ձիերը կա-

202 Նոյնը կ'արժէ „Պարսից համար․ հմմտ․ Ա․ Մարկեղ․ ԺԷ, 5․ 8 (Շապհոյ թուղթը) «․․․երբ ձմեռն անցնի»։ Ձմեռուան ատեն պատերազմութիւններ (անդ, ԺԸ, 6, 4) կը տեսնուէին՝ գարնան մերձենալուն պէս (ԺԸ, 4, 1) չուելու համար։ Ձմեռ գալուն հոմայեցի եւ պարսիկ զօրաց ցրուիլը՝ Ագաթ․ (Գ, 4, 4 եւ Դ, 4, 2)։ Բայց կը հանդիպէր որ կը ստիպուէին արշաւանք մը շարունակել մինչեւ ձմեռուան մէջ (հմմտ․ Պղուտ․, Անտ․, 51) եւ կամ արշաւանքի մ'ենթարկուիլ այս եղանակին (այսպէս Շապուհ՝ Քիոնացւոց եւ Եւսենացւոց դէմ կռուելու ատեն․ Ա․ Մարկեղ․ ԺԶ, 9, 4)։ Սակայն կ'երեւայ թէ Պարսք ասոր մէջ ալ՝ ինչպէս ուրիշ շատ բաներու՝ աւելի յանդգնագոյն էին քան Պարթեւները․ Կաւատ պաշարեց Ամիդ քաղաքը խոր ձմերան մէջ (Պրոկոպ․, Պ․ Պ․ Ա․ 7, 3)։

203 Պղուտարքոս, Կրաս․ 29։

րելի չէ աճապարանօք թամբել ու սթարել: Ուստի կը վախնային որ յանկարծակիի գան, իսկ իրենց արագընթացութիւնը թոյլ կու տար որ ասոր հակառակ իրենք կարենան դիւրութեամբ յանպատրաստից հասնիլ թշնամւոյն վրան. եւ երբ այսպէս յեղակարծ կը մօտենային՝ բոլոր բարբարոս ազգերու պէս՝ աղաղակ կը բառնային վախցընելու համար[204]: Եալիսոս գետի ափանց վրայ Սուրէնի գնդերը հանդիպելով Կրասոսի որդւոյն զորաց՝ սոսկալի գոչիւն մը բարձրացուցին, «որովհետեւ Պարթեւները մարտի չեն գրգռեր երբեք փող հնչեցընելով. այլ սաստիկ շառաչիւն մը կը հնչեցընեն ամէն կողմանէ պղնձեայ հնչական անօթներու վրայ հարուածներ իջեցընելով կաշեպատ փոր մրճերով. այս գործիքները թանձրահնչիւն ու ահուելի ձայն մը կ՚արձակեն՝ գազանաց մռնչիւններու եւ որոտմանց թնդիւններու խառնուրդի մը պէս[205]»: Ճարպիկութեամբ մը՝ որ առակի կարգ անցած էր, վարժ էին նետեր արձակել՝ արձակերասան ձիարձակ փախչելու ատեն[206], եւ

---

[204] Յուստինոս՝ անդ. «Թմբուկը՝ ո՛չ թէ փող՝ ճակատամարտի նշանը կու տայ»:

[205] Պղուտարքոս, Կրաս. 23:

[206] Հերոդիանոս, Գ, 7, 8. Վիրգիլիոս, Մշակ. Գ, 31: Fidentemque fuga Parthum versisque sagittis (Պարթեւաց աներկիւղ փախուստ՝ յետսադարձ նետերով): Պարթեւները պատերազմի այն եղանակին հիմնադիրները եղած ըլլալու են, բայց ուրիշ ազգեր ալ ասոր նմանեցան. ըստ Ագաթիասի (Ե, 8, 3) Հոները այս ոճէն սովորաբար մեծ օգուտ կը քաղէին. «Երբեք թշնամին այնպիսի կորովութեամբ չեն վաներ՝ քան թէ երբ իրենք կը հալածուին, փախչելով

որպէս զի կապարճքն երբեք պարապ չըլլային՝ իրենց կը հետեւէին ուղտերու երամակներ՝ որ պահեստի նետեր բարձած կը բերէին[207]։

Պարթեւաց քով պատերազմի եղանակն անփոփոխ կայուն մնաց առաջին օրէն մինչեւ վերջին օրը։ Ղուկուղոս կը յորդորէր իր զօրքերը ձեռնամուխ ըլլալ թշնամւոյն հետ՝ «որ սովոր է հեռուէն կռուիլ»․ եւ կը յանձնարարէ նոյն իսկ խիստ գիրկընդխառն կռիւը՝ որպէս զի զրահաւորներն ազատ ըլլան իրենց նիզակները գործածելու, պէտք է «զարնել սրով անոնց սրունքներուն եւ զստերուն՝ որոնք անոնց միակ անպատսպար մասերն են[208]»։ Այնպէս կը կարծուէր թէ առաջին իսկ դիմադրութիւնն անոնց եռանդնալից աշխոյժը կը մարէր[209]։ Հերոդիանոս՝ Մակրինոսի իր զօրաց առջեւ խօսած քիչ մը ճոռոմաբան ճառը կ'երկրորդէ[210], որ է հե-

---

արձակած նետերը շատ աւելի հարեւէջ կը խոցեն, որովհետեւ ուժգնութեամբ արձակուելով՝ կը հարուածեն մարդիկն, որ իրենք ալ սաստկութեամբ յառաջ կը դիմեն։ Պրոկոպիոս (Պ. Պ. Ա. 1, 14) նոյն ճարպիկութիւնը կը վերագրէ իր ժամանակի բիւզանդական աղեղնաւորներուն։

[207] Գոնէ այսպէս էր Կրասոսի դէմ մղուած պատերազմին ժամանակ (Պղուտարքոս, Կրաս. 25)։

[208] Պղուտարքոս, Ղուկուղ. 28։

[209] Հերոդիանոս, Դ., 15, 6. Ղուկան., Փարս., Ը, 378—379... Parthoque sequente murus erit quodcumque potest obstare sagittae (Հետեւող Պարթեւին թումբ կ'ըլլայ՝ ով որ կրնայ նետի դիմանալ)։ Յուստինոս՝ անդ. «Երկայն չեն դիմանար թշնամւոյն առջեւ. բայց իրենց առաջին յարձակումը չափազանց ուժգին է. երբեմն փախուստ կը կեղծեն եւ կը վերադառնան ճիշդ երբ յաղթուած կը կարծուէին»։

[210] Հերոդեան. Դ, 14, 7։

տեւեալը· «Այս ամբոխին հակընդդէմ դնենք Հռոմէական բանակներուն կարգն ու կարգապահութիւնը: Բարբարոսները ճակատ յարդարել չգիտնալով յաճախ կը կորսնցընեն իրենց բազմաթիւ ըլլալուն առաւելութիւնը, որ միայն պատճառ կ'ըլլայ իրենց բանակին աղմկելով չփոթելու: Մեր քով կարգերը ճշդրտօրէն կը պահուին, շարժումները միակերպ՝ պատշաճօրէն կատարուած, ձեզի յաղթանակել պիտի տան եւ անոնց կործանում պիտի պատճառեն»: Հարկ էր Պարթեւները թաւալգլոր ընել իրենց երիվարներէն, որովհետեւ իրենց մեծ եւ երկրաքարշ պատմուճանները արգելք կ'ըլլային անոնց հետիոտն փախչելու: «Զրդյ նուազութեան դէմ հնարք հայթայթած են» կ'ըսէ Դիոն Կասիոս[211], սակայն դժբախտաբար աւելի յստակօրէն չի բացատրեր նոյնը:

Բոլորովին ճիշդ է թէ այս ազգը կը սիրէր աւելի արագահաս ու կարճ յարձակումը· զինքը չէր հրապուրեր տողուած յարդարուած ճակատ մը· Յուստինոսի համեմատ չէր գիտեր պատերազմիլ ճակատուած, սակայն ասոր ալ քիչ շատ պատրաստուած ըլլալու էր· ասոր մէկ նշանակն է զրահաւոր ըլլալը· բայց այն ատեն ալ կը նախադասէր շրջապատել ոսոխն եւ կը ջանար թշնամի բանակը որոգայթի մը մէջ ձգել: Իրեն սոսկում

---

211 Դիոն Կաս., Խ, 15: — Առնէք թերեւս Արաբաց հնարքներն են. տես վերը՝ էջ 60:

կ՚ազդէին երկարատեւ պատերազմները[212]. եւ քանի մ՚անգամ լքած, նաեւ գահընկէց ըրած են պատերազմասէր թագաւոր մը[213]։ Անկից էր անոնց քաղաքապաշարման դէմ ունեցած ընդհանուր քամահանքը[214]. անհրաժեշտ պէտք ունէին այլեւայլ ամրոցներու Միջագետաց մէջ, Եփրատի կամ Տիգրիսի ափանց վրայ. կ՚երեւայ թէ դասոնք կառուցանելու համար յոյն կամ հռոմայեցի ճարտարապետներ կը վարձէին[215]։

Հռոմայեցիք Պարթեւաց դէմ կամակար ամբաստանութիւն կ՚ընէին թէ նենգութեամբ կը դրժէին, բայց ասի դասական գանգատ մըն էր գրեթէ ամէն ազգերուն հանդէպ, տեսակ մը հասարակաց տեղիք՝ որուն բազմաթիւ հետքերը կը գտնենք մատենագրութեան մէջ[216]։ Պարսիկներն ալ այս ակնար-

---

[212] Տակիտոս, Տար., ԺԱ, 10 longinquam militiam aspernebant (կ՚արհամարհէին երկարաձիգ զինուորութիւնը)։

[213] Նաեւ «պատրաստ էին նոյնչափ յաւելու իրենց արքային վրայ՝ որչափ անոնց դաւելու» (անդ, Զ, 36)։

[214] Ղուկան., Փարս., Ը, 377—378. Non aries illis, non ulla est machina belli; Haud fossas implere valent... (Ոչ խոյ ունին, եւ ո՛չ պատերազմի մեքենայ մը. Հազիւ թէ պարկէնի փոսերը լեցընել կարենան)։ Յաւել՝ Յուստինոս, անդ։

[215] Ամ. Մարկել., ԻԴ, 5, 1:

[216] Հմմտ. Ովրատիոս, Թուղթք, Բ, 1, 112: Invenior Parthis mendacior (... գտնիլը՝ Պարթեւներէն աւելի ստախօս)։ Յուստինոս, ԽԱ, 3. Ingenia genti tumida, seditiosa, fraudulenta, procacia (Ազգին բոյն բարուց՝ երկչոտ, խռովայոյզ, խաբեբայ, ժպիրհ)։ Բայց կը դրուատէ անոնց հպարտ նկարագիրն ու սակաւապէտութիւնը։ Սակայն հին ազգերը կը սիրէին իրարու այսպիսի փաղաքշանքներ ընել։ Նիւթէս զուրս չելլելու համար՝ կը յիշեմ միայն Գամ-

կութենքէն աւելի զերծ չէին. իրենց ներշնչած երկիւղն ալ յայտնի պատճառ մըն էր։ Սասանեանց բանակին նկատմամբ մեր ունեցած տեղեկութիւնը թերակատար է. հին հեղինակները քիչ մ՚իրարու հակասական ընդհանուր ակնարկներ միայն կու տան[217]։ Ագաթանգեղոսի խօսքին նայելով[218]՝ Արշաւիր, նոր հարստութեան առաջին թագաւորը, պարթեւական դրութիւնը բեկանելով՝ մշտական բանակ մը ստեղծած ու պահած ըլլայ, կանոնաւոր վարձով, եւ հրամատարութեամբ զօրապետներու եւ սպայից՝ որոնք ստորադասներէն տարբեր էին։ Բայց հայ հե-

րաց մասին եղած վերտառութիւնը՝ զոր Լիւդոս օրինակած է (De magistr. III, 17).

*Καππαδόκαι φαῦ[λοι μὲν ἀεί·] ζώνης δὲ τυχόντες*
*φαυλότεροι· κέρδους δ᾽εἵνεκα φαυλότατοι·*
*ἢν δ᾽ἄρα δὶς καὶ τρὶς μεγάλης δράξωνται ἀπήνης,*
*δὴ ῥα τότ᾽ εἰς ὥρας φαυλεπιφαυλότεροι.*

[217] Իսկ նորագոյն պատմագիրները մինչեւ անգամ ժամանակաշրջաններն իրարու խառնակած են՝ որ ցաւալի է։ Այսպէս D i e u l a f o y (L'Art antique de la Perse, Paris, V, p. 140) Պարսից մասին կոչում կ՚ընէ Օվրատիոսէ, Վիրգիլիոսէ եւ Տակիտոսէ, որոնց գնահատութիւնները միայն Պարթեւաց կրնան վերաբերիլ։

[218] Ագաթանգեղոս, Գ, 12։ — [Այս կոչում եղած տեղն է յոյն թարգմանութեան համեմատ՝ հրտ. Լագարդ, էջ 10։ Համապատասխանող հայ բնագիրն այսպէս է՝ էջ 31. Արշաւիր «առ ինքն կոչէր զամենայն թագաւորս, եւ զկուսակալս, եւ զնախարարս, եւ զզօրավարս, եւ զպետս եւ զիշխանս իւրոյ տէրութեանն» եւն։ Յոյն Թրգմ. ամփոփած է այսպէս՝ «առ ինքն կոչէր զամենայն թագաւորս (τοὺς βασιλεῖς) եւ զկուսակալս (καὶ τοπαρχάς) եւ զզօրավարս (καὶ στρατηγοὺς) իւրոյ տէրութեանն։ Այս ակնարկներէն, որ հայերէնին մէջ աւելի ընդհանուր միտք ալ են, հանած կ՚երեւայ հեղինակը վերոյիշեալ հետեւութիւնը Արտաշրի բանակին մասին։]

ղինակները զգուշալի են. իսկ ասի կ՚երեւայ թէ չափազանցութիւն մը կ՚ընէ։ Լիւդոս[219] ալ անտարակոյս ասոր հակառակ չափազանցութեան մէջ կ՚իյնայ՝ ըսելով. «Պարսիկները չունին՝ Հռոմայեցւոց նման՝ որոշ սահմանուած եւ պատերազմի համար սովորութեամբ մարզուած գնդեր։ Ժամանակի պէտք ունին հաւաքելու համար բանակ մը եւ հայթայթելու հարկաւոր մթերքները պատերազմի մը տոկալու համար»։ Նէօլդէքէ[220] յօժարամէտ է միջին լուծում մը գտնելու որ աւելի բանաւոր է։ Յաճախ կը յիշուին «անձնապահ» գնդեր՝ զորոնք միայն իբրեւ մշտակայուն կրնանք ըմբռնել. դարձեալ սահմանապահի ամրոցներուն մէջ դրուած պահակազօրքերը չէին կրնար այն տեղերը խաւրուիլ միայն խուճապի ատեն. սակայն ամէն կերպով հաւանական է թէ անոնք անդադար արքային սպասու ծառայութեան մէջ էին[221]։ Գոնէ հաւանական է թէ այս տեւական գնդերը միայն Պարսիկներէն չէին զինուորակոչուեր. աւելի կը զինուորագրէին

---

[219] Լիւդոս, անդ, Գ, 34։

[220] Nöldecke, Tabari, Excurse, p. 442. Կ՚ըսէ թէ Լիւդոս հոս քիչ մը չափ հեռացած է իր դասական հեղինակներուն։ Բայց «Վասն Պաշտօնից» գրքոյ հեղինակը կը խօսի «Կեդրոս մարզպետին» հետեւելով։

[221] Սակայն հաշուի առնելու ենք թէ՝ Հռոմայեցւոց ազդեցիկ օրինակը՝ զոր Պարսք չէին արհամարհեր եւ թէ՝ Ամմիանու այս խօսքը (ԻԳ, 6, 14)՝ զոր Նէօլդէքէ անտես ըրած է «(Պարսկաստանի) մեծ նահանգները կը կառավարեն բդեաշխներ, այսինքն հեծելոց զօրավարներ (vitaxae, id est magistri equitum) եւ արքային սատրապները»։

անոնց համար դրացի բարբարոսներէն, թերեւս մեծաւ մասամբ Սկիւթացիներէն ու Սարմատներէն, զորոնք ալ հաշուի առնելու էր Սասանեան զօրութիւնը:

Այս ժամանակի պարթեւ բանակին մեծագոյն զանգուածը ծագած ըլլալու էր կրկին աւանդութենէն՝ որ ժառանգութիւն մնացած էր Աքեմենեաններէն ու Պարթեւներէն[222]: Աւատական կազմակերպութիւնը կը մնար, որ ամենեւին չէր թողուր վեհապետին՝ գործելու լիակատար ազատութիւն մը: Ստիպուած էր[223] մեծամեծ տանց վերապահել այլեւայլ պաշտօններ, եւ թերեւս այս սկզբունքը կը գործադրուէր ո՛չ միայն արքունեաց պատուաբեր պաշտօններուն միայն այլ նաեւ զինուորական բարձրագոյն հրամանատարութեանց: Բարձրագոյն ազնուականութեան գործն էր գումարել իւր ստորակարգեալ ազատները, եւ այս վերջինք ալ կը գումարէին՝ իրենց հպատակները, երբ պատերազմի մը պատրաստութիւն կ'ըլլար: Ժողովրդեան խուռն ամբոխը հետեւակազօրը կը՝ կազմէր կամ աղեղնաւորաց թեթեւազէն հեծելազօրը. աղեղնաւորը պատսպարուած

---

222 Ամմիանոս կը խօսի դարձեալ յատկապէս Պարթեւաստանի բնակչաց մասին. «Վայրագ են եւ պատերազմասէր. այնչափ հաճոյք կը զգան պատերազմելու որ մեծ բարերաստութիւն կը համարին պատերազմի մէջ մեռնիլ, եւ իբրեւ վատասիրտ ու անարի նախատական կ'ըլլան անոնք՝ որ իրենց օրերը կը կնքեն ուրիշ կերպով»:

223 Ըստ Պրոկոպեայ, Պ. Պ., Ա, 6, 13:

էր ոզորեայ (վայրի ուռենիէ)[224] մեծ վահանով մը, որ արդէն Աքեմենեանց ժամանակ կը գործածուէր, եւ զոր գետին կը վարսէր՝ երբ իր նետերը կ'արձակէր։ Անուշիրուանի զինուորական հրահանգները[225] կը սահմանեն թէ պէտք էր ունենալ՝ երկու աղեղն, չորս լար (աղեղան) եւ հարիւր վաթսուն փքին[226]։ Կ'երեւայ թէ նոր միապետութեան առեն թեթեւ հեծելազօրն իր կարեւորութիւնը կորսնցուցած էր. ա՛լ չէր խօսուիր այն անըմբռնելի հեծելազնդերուն վրայ՝ որոնք պարթեւ բանակներուն գլխաւոր ոյժը կը կազմէին. Ի հարկաւորութեան Պարսք կրնային փոխ առնուլ իրենց հնազանդած Արաբացւոց կամ Հայոց այրուձին[227]։

Ուրիշ աղբիւրներուն համեմատ դատելով[228]՝ ընդհանուր բանակն հաւատարիմ եւ միանգամայն նկարչագեղ պատկեր մը կը

---

224 Ամ. Մարկել., ԻԴ, 6, 8։

225 Dieulafoy, անդ։

226 Ամմիանոս արհամարհանօք կը խօսի այս հետեւակազօրուն վրայ եւ զանի գրեթէ կը չփոթէ ծառայից խմբին հետ՝ որ անոր կ'ընկերանար (ԻԳ, 6, 83). «Որովհետեւ սուսերամարտկաց (mirmillo) նման հագնուած հետեւակները հրամանի վրայ աղխարարձ զինուորներ (calones) կ'ըլլան, եւ այս ամբոխը միշտ կը հետեւի՝ իբրեւ մշտատեւ ծառայութեան սահմանուած, առանց երբեք վարձ առնելու եւ ո՛չ պարգեւներ»։

227 Ամ. Մարկել., ԻԴ, 2, 3. Զոսիմոս, Գ, 26, 27։

228 Հմմտ. Rawlinson, The Seventh great Monarchy, or History of ... Persia, London 1876, p. 648—655.

գծէ Հելլիոդոր Եմեսացի վիպագիրը[229] ա՛յն տեսարանին՝ զոր կը ներկայացընէր պարսիկ բանակը՝ երբ 400ին Յ. Ք.՝ իր չուելու ժամանակ։

Պարսիկները կու գային բարեկարգօրէն... Հեռուէն ոգանչելի կ'երեւային Պարսից զօրք միշտ սովորական եղած շքեղութիւնն ու պերճութիւնը. եւ արեւու ճառագայթներն երբ ուղղակի կ'իյնային անոնց զէնքերուն վրայ, որոնք ինքնին արդէն փայլուն էին, այնպիսի շողիւն մը կ'արձակէին՝ որուն աչքերը հազիւ կը դիմանային։ Իրենց աջ թեւը կը կազմէին Պարսք եւ Մարք, որոնց լաւագոյն սպառազինուածները գնդին գլուխն էին. ասոնց կը հետեւէին նետող աղեղնաւորները՝ մերկ ու անզէն, որպէս զի աւելի դիւրութեամբ կարենան արձակել իրենց նետերը։ Ձախ թեւը գրաւած էին Եգիպտացիք ու Աֆրիկեցիք, եւ այն բոլոր օտարականները՝ որ Պարսից թագաւորին վարձկան էին. Որոնդատէս (Oroondates սատրապը) կեդրոնին մէջ կը յառաջանար գերանդաւոր մեծաշուք կառքի մը վրայ եւ քաջախուռն ուղեկցութեամբ աջէն ու ձախէն՝ իր անձին ապահովութեան համար։ Իր առջեւէն կ'երթար իր սովորական հեծելազօրը՝ կուռ սպառազինուած ոտքէն մինչեւ գլուխ, որոնց քաջարութիւնն ու հաւատարմութիւնն իրեն ծանօթ էին։ Այս զօրաբանակը՝ որ այրձիաւոր էր (ընտրեալ

---

[229] Aethiopic, IX, 14.

անձինքներէ) եւ զօրընտիր (լաւագոյն գնդերէ ջոկուած), պարսիկ բանակին գլխաւոր ոյժն է միշտ[230]։ Կաշմբուռն մարդիկ պէտք են ասոնք ըլլալ, որ կարող ըլլան երկաթադամ սպառազինութեան մը ծանրութիւնը բառնալ, որով ծածկուած են գլխէն մինչեւ ոտք։ Այս սպառազէն զրահը կը շինուէր երկաթի կամ պղնձի կուռ շերտերէ, որոնք իրարու կը կռանուէին պատեաններու ձեւով (պատենազէնք), եւ որոնք մարմնոյն կը յանգչէին՝ առանց անոր շարժելու ազատութիւնը բառնալու[231]։ Այսպէս հանդերձեալ կազմեալ՝ իրենց ձիերուն վրայ կը մտնէին թշնամւոյն մէջ՝ աւելի նմանելով պղնձի արձաններու քան թէ պատերազմող մարդկան։ Վնասիչ միակ զէնք մ'ունէին՝ տէգը, որով երբեմն միեւնոյն հարուածով երեք հոգի թափանցանց կը զարնեն։

Կոստանդիանոս զինուէր, կը պատմէ Լիւզոս[232], թէ դիւրին չէ Պարսից յաղթել, բայց եթէ յանկարծահաս յարձակմամբ մը՝ որով անոնք յանկարծակիի գային։ Կեղսոս մարդագէտը գիրք մը գրած է, ուր կը բա-

230 Տես վարը՝ ծան. 238։

231 Ամ. Մարկ. ԻԴ, 1, 12. «Այս գնդերն երկաթապատ էին. մետաղի թանձր պատեաններ՝ լիովին յարմարցուած մարմնոյ յօդերուն՝ կը պատէին անոնց ամէն անդամները։ Գլուխնին ծածկուած էր սաղաւարտներով՝ որոնք մարդկան ձեւերուն համեմատ էին...։ Կրնային խոցուիլ միայն այն փոքրիկ բացուածքներէն՝ որ պատշաճեցուած էին աչքերուն եւ ռնգանց համար»։

232 Անդ, 33։

ցատրէ թէ Պարսք չեն պարտուիր՝ բայց եթէ յանկարծական նախայարձակմամբ մը՝ «Կեղսոս շատ պայծառ տեսութիւն մը չէր ցուցըներ՝ հաշուի մէջ առնելով միայն այն դանդաղութիւնն՝ որով այս ազգին մէջ բանակը շարժուն վիճակի մէջ կը դրուէր: Հռոմայեցւոց յարձակումը չէր կրնար յանկարծահաս ըլլալ եւ յեղակարծ[233]: Իրենք ալ՝ հասարակաց գործողութեան մը համար՝ միահամուռ հաւաքելու էին շատ տեղեր վայրավատին ցրուած մանրամանր պահակազօրքերը եւ պէտք էին կտրել անցնիլ կիսով չափ անապատ ընդարձակածաւալ դաշտ մը, մինչեւ որ կարենային հարուածել Սասանեանց պետութեան սիրտը: Միւս կողմանէ նոյն ինքն Կեղսոս՝ որմէ կոչում կ'ընէ Լիւսոս, յստակօրէն կ'ըսէ թէ պարսիկ ամբողջ ազգը սովոր է՝ պատրաստուիլ պատերազմի՝ Հռոմայեցւոց պէս, լեգէոններու Մարկոսի ձեւոք կազմակերպուելէն յառաջ. եւ Ամմիանոս յայտնի բառերով կը հաստատէ այն մշտնջենաւոր մարզումն՝ որուն կապուած էր զոնէ մէկ մասն այս ազգին, որ «հմուտ էր մարտից Արեաց» (ad pulveres Mar-

[233] Նոյնը կ'ապացուցանէ Յուլիանու օրինակը. «Իմացած էր թէ Պարսք (ինչպէս Պարթեւք) անզօր եւ անարժէք էին ձմեռուան ատեն, որովհետեւ ցրտի չէին տոկար եւ չէին համարձակեր այն ատեն՝ առածին համաձայն՝ ձեռքը ձորձէն հանել, մինչդեռ Հռոմայեցիք պատերազմելու պատրաստ են ամէն եղանակին. ուստի արշաւանքն սկսաւ անմիջապէս» (Սոկրատ, Պատմ. Եկեղ., Գ, 21, էջ 432 Migne): Բայց դժուարութիւնները սկսան՝ հազիւ թէ Միջագետաց ծայրը հասած:

tios erudita, *բառական «Հմուտ փոքեայ Արեայ»՝ այսինք Ճակատամարտի*)[234]:

*Այս* համակ երկաթի այրուձին (ferreus equitatus) *կը կազմէր՝ մարդիկ ու ձիեր միահամուռ՝ զանգուած մը՝ զոր դժուար էր խորտակել կամ ճեղքել, եւ որ՝ որոշ չափով մը՝ յետոյ օրինակ եղաւ Բիւզանդացւոց զրահապատներուն, որոնց վերջնական կազմակերպութիւնն աւելի նուազ հին ժամանակէ մըն է:*

*Այս գնդերուն չքեղափայլ երեւոյթին կը վկայէ նաեւ Ամմիանոս*[235]*, եւ անոնց պերճանքը, որմէ ընդհակառակն կը խորշէին Պարթեւները*[236]*, կը հաստատէ Զոսիմոս*[237]*, բայց ասի թերեւս միայն «Անմահից» գնդին*

---

234 *Ամ. Մարկեղ.*, ԺԹ, 1, 2: *«Զինուորական կրթութեամբ ու կարգապահութեամբ եւ շարունակեալ մարզանօք երկիւղալի բանակի եւ սպառազինութեան՝ որմէ յաճախ սոսկացինք, կամ մեծամեծ հրահանգութեամբք, կորովութեամբ կատարուած ձիավարութիւններ, ուր կը վաստակին ամբողջ ազնուականութիւնը եւ չքեղութիւնը»:*

235 *Անդ*, 84. *«Իրենցմէ շատերն այնպիսի զգեստներ կը կրեն՝ որ երփն երփն գոյներով կը փայլին, եւ թէպէտ եւ կուրծքն ու կողերը անկար թողլով՝ հովերու փչելէն կը ծածանին, բայց կօշկէն մինչեւ գագաթը չի տեսնուիր անպատսպար մաս մը, ապարանջաններ կը գործածեն եւ մանեակներ՝ ոսկեղէն ու գոհարներով, մանաւանդ մարգարտով՝ առատօրէն զարդարուած»:*

236 *Յուստինոս*, ԽԱ, 2:

237 *Զոսիմոս*, Գ, 25, 6: *Տիզբոն հասնելէն յառաջ՝ Յուլիանու զունդերը զարկին յաղթեցին Պարսից, որոնց բանակետեղին մէջ գտան ձոյլ արծաթէ անկողիններ ու սեղաններ, եւ մարդկան ու ձիոց դիակներուն վրայ խառնակոյտ մը ոսկեղէն ու արծաթեղէն զարդերու»:*

մէջ կը տիրէր, որ 1000 հեծեալներէ կը բաղկանար եւ որ աւելի յատկօրէն սեպհականուած էր Թագաւորի անձին[238]։

Հեղինակներուն տուած այս մանրամասնութիւններն աւելի կը լրացնեն ու կը լուսաւորեն խորաքանդակներու բազմաթիւ շարքեր։ Շապհոյ Ա. եւ Վաղերիանու ժամանակէն եղած Դարաբկերտի քանդակները[239] կը ներկայացնեն մարտիկներու պէսպէս խմբեր, երկայն պարեգօտներ հագած եւ գլուխնին այլեւայլ տեսակ սաղաւարտներ, որոնց ոմանք կը յիշեցնեն այսօրուան պարսիկ ներքինեաց լայնածաւալ գլխադիրները. ուրիշները՝ աւելի փռիւգեան խոյրը, առաջակողմին վրայ հանգրիճներով. երրորդ տեսակ մը կը մօտենայ փռիւգեան գտակին՝ բայց յաւելուած ունի ծոծրակակալ մը։ Խորաքանդակներու միոյն մէջ՝ որոնք Շապուհ արքայն կը ներկայացնեն[240], աչքի կը զարնեն աւագանւոյն զէնքերը. ոմանք նիզակներ ունին եւ կարճ լախտ մը. ուրիշները՝ երկսայրի սակուրներ, որոնց մին անցուած է մեղեխի մը ծայրին որ մարդուն հասակին չափ երկայն է[241]։ Այս յիշատա—

---

[238] Հմմտ. Սոկրատ, Է, 20, էջ 780 (Migne). Պրոկոպիոս, Պ. Պ., Ա, 14, 31. Թէոփանէս, 86, 7, 70՝ արքունի փաղանգին այրընտիր նետաձիգները (sagittarii) տիրեցին Ամդայ (Ամմ. Մարկել., ԺԹ, 5, 5)։

[239] Flandin եւ Coste, Perse ancienne, I, pl. XXXI bis.

[240] Անդ, Տախտ. XLIX A։

[241] Հմմտ. Ch. de Ujfalvy, L'Iconographie des Perses (ի l'Anthropologie, XI, 1900, 51—56, 193—224).

կարանները Սասանեան շրջանին սկզբէն են. իսկ նոյն շրջանին վերջերուն համար՝ ունինք Խոսրով Բ. Ապրուէզի քանդակներն ի Տախտ-ի-Բոստան[242]. Հոս արքայն կ'երեւայ զրահավառ, շատ երկայնարուն նիզակով մը եւ բոլորշի փոքրիկ վահանով. մէկ կողմը՝ ծանր կապարճք մը, երկայն սուր մը հետ՝ որ անտարակոյս երկաթի էր[243]: Երիվարը տեսակ մը վերտ զրահի վառապան ունի պարանոցին վերէն մինչեւ լանջաց ստորոտը: Սաղաւարտը կարելի կ'ընէ Ամմիանու մեկնաբանութիւնը ստուգել. սա «երկաթի գտակ մըն է, վրան պտկաձեւ մը, բոլորապատուած պսակով մ'որ երկշարեան մարգարտով զարդարուած է: Առջեւը նշաձեւ երկու ծակեր բացուած են աչքերուն համար այս ժապաւինազարդ գտակէն կ'իջնայ վերտազրահի պատեան մը, որ կը ծածկէ վիզն ու կ'իջնայ կը միանայ սպառազինութեան վերտերուն հետ[244]:

Պէտք է նոյն իսկ իրենց Պարսից տուած պատկերացումներով շատանալ. հռոմէական յիշատակարանաց վրայ տեսնուած պատկերացումները գերազանցօրէն պայմանադրական նկարագիր մ'ունին: Այսպէս Թէսաղոնիկէի յաղթութեան կամարին խորաքան-

---

242 Flandin-Coste, pl. XLVIII եւ L; Rawlinson, Seventh Monarchy, p. 613; de Morgan, Mission scientifique en Perse, Paris IV, 2 1897, p. 319, fig. 186; W. Jackson, Persia, Past and Present, New York, 1906, ch. XV.

243 Դը-Մորգան, անդ, էջ 321, պատկ. 188:

244 Անդ, էջ 320, պատկ. 187:

դակներուն վրայ իբր 300էն Յ. Ք.՝ Պարսիկները թեթեւ նիւթերէ լայնարձակ ձորձեր վրանին ձգած են կամ ճոխ զգեստներ հագած. իրենց զրահներէն ոչինչ կ՚երեւայ[245]։ Հաւանօրէն քանդակագործին գաղափարն եղած էր թշնամւոյն «մեղկութիւնը» չեշտել[246]։

Հելիոդորու բնագիրը կը յիշատակէ գերանդազէն կառքը՝ որուն վրայ բազմած վերին հրամատարը կը յառաջանար. պատերազմական կառքը սակայն կ՚երեւայ թէ անգործածական եղած էր[247]. կը յիշուին սկիւթական կառքեր այն բանակին մէջ՝ որ Սեւերոս Աղեքսանդրի արշաւանաց դիմադիր եղաւ[248], Սասանեան շրջանին բուն իսկ սկզբնաւորութեան առեն. վերջապէս Հերակղ ալ Նինուէի ճակատամարտէն ետքը գրաւեց քանի մը հատը[249]. բայց ասոնք թերեւս պարզապէս զինուորական աղխին մաս էին։

Այս բանակիս ներկայացուցած նորագոյն երեւոյթը՝ բաց ի սպառազէն հեծելազօրու տիրապետող ըլլալէն՝ փղերու գործածու-

---

245 K. F. Kinch, L'arc de triomphe de Salonique, publ. etc., Paris 1890, p. 20, 22

246 Քանդակիչն տեսարաններուն միայն մէջ մինչեւ անգամ ամազոններ մուծեր է (Տիտ. Դ, էջ 31)։ Հերոդիանու (տես վերը՝ էջ 92) տարտամ մէկ խօսքը բաւական չէ այս մտացածին նկարն արդարացընելու։

247 Հմմտ. Ռաւլինսըն, անդ, էջ 648, ծն. 4։

248 Լամպրիդիոս, Վարք Սեւերոսի, 56։

249 Թէոփանէս, 319, 7։

թիւնն է[250], որոնք պետութեան արեւելեան նահանգներէն կը բերուէին եւ յատկապէս Հնդկաստանէ։ Անոնց հանդիսաքայլ ու ծանրագնաց ընթացքը ներդաշնակ էր զրահապատ հեծելոց կեցուածքին. իրենց գլխաւոր օգտակարութիւնը կը կայանար յայտնապէս այն բարոյական ազդեցութեան մէջ[251]՝ զոր պէտք է որ յառաջ բերէին զանի տեսնելու չսովորած թշնամւոյն վրայ[252]. բայց իրենց ներկայութիւնը բաւական նեղութիւն կը պատճառէր լեռնոտ երկիրներուն մէջ, ուր անոնց համար ճամբայ բանալ պէտք էր բրիչով

---

250 Flandin-Coste, pl. L.

251 Սակայն վեհապետները յարմար կը գտնէին որսորդութեան ատեն փիղ գործածելը. հմմտ. այն խորաքանդակները՝ որ վիթերու եւ կինճերու որսորդութիւններ կը ներկայացնեն (Ռաւլինսըն, էջ 614—616. Դը-Մորգան, Տիտ. Լէ—ԼԸ)։

252 Հմմտ. Ամ. Մարկել. (որ յաճախ կը յիշատակէ նոյնը), ԻԴ, 6, 8. «փղեր՝ որ նման են շարժուն բլուրներու եւ որոնց վիթխարի մարմինները արդէն յաճախ ահ ազդած էին եւ մահ սպառնացած իրենց մօտեցողներուն»։ — ԻԴ, 1, 14. «Իրենց զարհուրելի երախները, իրենց ահեղ գոռումները եւ իրենց սփռած հոտը կը սարսափեցնէին մարդիկն ու աւելի՝ ձիերը»։ — ԻԵ, 3, 4՝ «Մեր մարդիկ չէին կրնար դիմանալ փղերու գոռոչումներուն ու ժանտահոտութեան». անդ, 11՝ «անոնց փղերը կը վախցընէին մարդիկն ու անասուններն իրենց անհեթեթ մարմիններովը ու իրենց յարածուն ցցունքներով». յաւել՝ ԻԵ՝ 6, 2։ — Երբեմն կը կատղէին եւ այն ատեն կը դառնային այն բանակին դէմ՝ որուն պիտի ծառայէին. ատոր համար ալ աւելի վերջապահ զօրաց մէջ կը դնէին զանոնք, եւ զանոնց վրայ հեծածները մեղեխաւոր դանակներ կը կրէին, զորոնք՝ երբ չէին կրնար այս անասունները զսպել՝ կը խոթէին վզին ու գլխին յօդակապին մէջ, որով վայրկենաբար կը սատկէին» (ԻԵ, 1, 15)։ Վահրամ հպարտութեամբ կ'ըսէ Հայոց թագաւորին (Macler, Sébéos, p. 20 = Հայ բնա-

ու տապարով[253]։ Եւ ասոնք դիւրախոցելի անասուններ էին, զորոնք կը նուաճէին՝ վիրաւորելով աչքերէն ու պատիճէն. ասոնց թիկանց վրայ զետեղուած մարդիկները չունէին այն ազատ յետախաղացութիւնն որ կարենային հարուածել յանդուգն զինուորներն, որոնք անասնոյն փորին տակ մտնելով կը կտրէին անոր կարթերը, կամ նաեւ այն փոկեզօտիները՝ որոնցմով հաստատուած էր իրենց վրայի բեռնաբարձը։ Փղերը երբ ի մահ վիրաւորուէին՝ խառնակութիւն կը ձգէին շարքերուն մէջ՝ ուր իրենց յաղթանդամ վիթխարի մարմինները ի կոր կը կործանէին եւ ինչպէս գրահապատները՝ ասոնք ալ նոյնպէս չէին կրնար ամենեւին ջուր մ'անցնիլ լողալով՝ թշնամւոյն հասնելու կամ անկէ խոյս տալու համար։

Ինչպէս որ իրենց նախորդ Պարթեւները՝ նոյնպէս Պարսիկներն ի սկզբան նշանաւոր էին իրենց անատակութեամբն ամրոցի մը պաշարումը յաջողութեամբ կատարելու. բայց կամաց կամաց՝ իրենց արեւմտեան ախոյեաններուն դէմ անդադար կռուելով այս

---

դիր՝ էջ 38 գրուած ո՛չ «Թագաւորին» այլ Մուշեղի եւ նախարարաց)՝ «Ցուցանեն ձեզ փիղս վառս, եւ ի վերայ՝ զաւրս սպառազինեալս քաջաց» եւն. եւ Պարսից «Թագաւորն մաղապուր պրծեալ սակաւուք ի փիղս եւ ի ձին ապաստան եղեալ» եւն (անդ, էջ 27. Մակլէր, էջ 6)։

[253] Հմմտ. Պատկանեան ի Journ. As. 1866, I, p. 114։ Այս մասին պարսիկ պաշտօնեայ մը կար որ զենդկապետ կը կոչուէր՝ որ պատերազմի փղերուն զինուորութեան գործոյն կառավարիչն էր։

տարապատութենէն ազատեցան: Սորվեցան դէպ ի պատուար ուղղաձիգ երկայն խըրրամ մը փորել, ուր կնխունագործ վահանի ներքեւ պատսպարուած՝ կը յառաջանային մինչեւ փոսի պարկէնը. Նոյնը կը լեցընէին եւ վրան կը զետեղէին շարժական աշտարակ մը՝ որ խոյ մը կը կրէր, որով կը խարխարէին պարիսպները: Հողագործական եւ պաճարաբոյծ ժողովուրդ մ՚ըլլալով՝ չէին վախնար բահ գործածելէն եւ այլեւայլ անգամ շրջապատնէշի գծեր շինեցին՝ պաշարեալները սովաբեկ ընելու համար:

Պարսք ալ սովորութիւնն ունէին հաստատապէս ամրացընել իրենց բանակետղերը[234], զորոնք կը պատէին հողով կամ աւազով լեցուած պարկերով[255]: Իրենց մնայուն ամրոցներուն շատերը նկարագրուած են: Օրինակի համար Զօսիմոս կը խօսի Բեսաբորայի (կամ Պերիսաբորայ) մասին, որ Եփրատի կղզիներուն մէկուն մէջը կ՚իյնար, Տիգրիսի շատ մօտ: Կրկին պարիսպ մը զայն կը պա-

---

234 Ամմ. Մարկել., ԺԹ, 3, 1. «...quae ingenti circumitu vallaverant muros (որոնք ընդարձակ շրջապատով կ՚ամրացընեն պարիսպները): Հմմտ. Վարդանայ վկայութեան պատմութիւնը Եղիշէի գրութեամբ (451ին)՝ «Պարսիկ զօրավարը Հայաստան մտաւ. անմիջապէս բանակ դրաւ եւ խրամ հատանել տուաւ. փոսեր փորեցին, պատուարներ կանգնեցին, ու ցցապատնէշներ վարսեցին, եւ ամրացան իբրեւ քաղաքի մը մէջ» (Հմմտ. Dom. H. Leclercq, Les Martyres, IV, 1905, p. 80, ըստ թարգմանութեան V. Langlois-ի. Յունկ.՝ Զաքարիա Հռետոր, Թ, 4, էջ 171, տող 24:

255 Վեգետիոս, Հմռ. Գ, 10 (վերջը). Պրոկոպիոս, Պ. Գ., Դ, 9, 2:

ուէր, կենդրոնը՝ գլխաւոր ներքնամրութիւնը դարձեալ շրջապատուած էր պատուարով մը բոլորակի մը հատածաձեւով, եւ ուր կը մտցուէր՝ բերդին ներսէն՝ մանուածապատ եւ դժուարագնաց ճամբով մը: Հիւսիսէն պաշտպանուած էր նոյն իսկ գետին անկողնէն, որուն վրայէն կը հայթայթէին պարէնի նպարակումը: Արեւելեան կողմը՝ փոքր խորունկ պարկէն մը, որ ցանկապատուած էր գերաններու փայտորմով մը եւ զօրացուած աշտարակներով, որոնք շինուած էին թրծուն աղիւսով՝ իրենց խարսխին վրայ կպրով զօդուած, իսկ վերին կէսին վրայ՝ դաճով շաղախուած[256]. Թեսադոնիկէի յաղթական

---

[256] Զօսիմոս, Գ, 17, 3—4: Գրեթէ նոյնը կ'ըսէ Ամմիանոս (ԻԴ, 2, 9). «... կղզւոյն բոլորակիքը շրջապատ դաշկէշ շինուած, ... քաղաքին մնացեալ կողմն պարիսպներն ալ պարփակուած բերդ մը կ'ընդգրկէին՝ որ հարթավայրին ընդհատող դեղրուկ լեռան մը վրան կանգնած է, եւ որուն միջավայրը դէպ ի վեր բարձրացած՝ բոլորշի շրջապատով՝ Արգողեան Վահանի (Argolici scuti) մը կերպարանքը կը ցուցընէր, միայն թէ հիւսիսակողմն այս բոլորակութենէն պակասը՝ յաւազոյն կը պաշտպանուէր Եփրատայ հոսանց մէջ կարկառած սուր խարակներով (proiectae cautes), որուն մէջ կը բարձրանային պարսպաց աշտարակները՝ շինուած կպրով ու թրծուն աղիւսներով (in qua excellebant minae murorum bitumine et coctilibus laterculis fabricatae). Այս վերջին պարագան Մայոզամալքայի համար նոյնպէս կը հաստատէ Լիբանիոս, ճառ., ԺԸ, 235, Բ, էջ 338 (հրտ. Förster). — Համմ. Զօսիմոս, Գ, 21, 2 Տիզբոնի մօտ՝ Բեսուքիս շատ նման բերդին համար. յաւել.՝ Ամմ. Մարկեղ., ԻԴ, 1, 2 (Թիլութա) եւ 2, 1 (Աքայքալա), բայց «անցանք երկրորդ օրը ուրիշ ամրոցներէ՝ որոնք պարիսպներուն հնութեան համար լքուած էին (Յուլիանոսէ) այրուած»:

կամարին խորաքանդակներէն մին նուի-
րուած է պատկերացընելու. Հեծելամարտ մը Միջագետաց քաղաքի մը դռներուն առջեւ. որուն պարիսպները սղոցատամներու ձեւով ժայռեւոր են[257]: Արդեօք հռոմէակա՞ն թէ պարսիկ քաղաք մ'ուզած է քանդակիչը նշանակել: Վերջին ենթադրութիւնն աւելի հաւանականութիւն կ'ընծայէ. Գաղերիանու համար աւելի փառք մըն էր թշնամի հողը կոխած երեւնալ: Սակայն պատկերացման ճշդրտութիւնը չի կրնար երաշխաւորուիլ:

Այսու հանդերձ կ'երեւայ թէ Յոյներ կամ Հռոմայեցիներ երբեմն երբեմն շինուածքներ կառուցած ըլլան Պարսից համար. ասոնք Արեւելեցիներէն շատ բարձր ճարտարապետներ կը համարուէին[258]: Վերջինքս այլեւայլ նորոգութիւններ կ'ընէին՝ կարճ կերպերով. այսպէս Միհրմահրով (Μερμερόης) գերաններով խնուլ տուաւ Լազիկէի մէջ Կուտատիսիոն բերդին[259] պարիսպներուն խրամատները, եւ աւելցուց դարձեալ փայտեայ պարիսպ մը[260]: Յոյները՝ որ ի բնէ վարձկան ոգի մ'ունէին, առանց խղճի խայթի Սասանեանց ծառայութեան մէջ կը մտնէին. կը պատմուի մինչեւ անգամ Վաղենտինիանոսի օրով (364—375) Շապուհ Տիգրանակերտը գրաւեց՝ շնոր-

---

[257] Kinch, Տխտ. Թ, էջ 45. Հմմտ. Տխտ. Ը, քանդակ Բ, վերէն:

[258] Նէօլդէքէ, Տաբարի, էջ 80, ծն. 1, էջ 82, ծն. 2:

[259] Պրոկոպ., Պ. Գ., Դ, 14, 50:

[260] Անդ, 16, 16:

հիւ գործակցութեան Յունաց, զորոնք նախընթաց պատերազմին մէջ գերի բռնած էր[261]:

Պարսից պատերազմական գործողութեանց վրայ լաւագոյն տեսութիւն մ'աւանդուած է մեզի Մօրիկի Ռազմագիտականին (Strategicon) ծանօթ մէկ էջին մէջ, որուն խորագիրն է բացորոշ՝ Πῶς δεῖ ἁρμόζεσθαι Πέρσαις (ի՞նչպէս պէտք է յարմարիլ Պարսից)[262]: Այս խորագիրն իսկ միայն իրաւունք կու տայ ինձի զանի ընդարձակօրէն վերլուծելու եւ Սասանեանց զինուորական հաստատութեանց մասին յամենալու:

Հեղինակը Պարսից համար կ'ըսէ. «Անոնք գէշ ազգ մըն են, կեղծաւոր, ստրկամիտ, բայց հայրենասէր, երկիւղած իրենց պետերուն, եւ համբերող պատերազմի վշտաց, բարեկարգ, առանց յանդգնութեան, տոկացող տօթի, նուաղութեան ու ծարաւի. զարհուրելի են պաշարմանց մէջ՝ եթէ՛ ընեն եւ եթէ՛ կրեն, եւ գիտեն իրենց սուգերը ծածկել այրական կերպարանաց ներքեւ: Երբ կը բանակցի՝ կը զգուշանայ պահանջելէ բաղձացածը, բայց կ'ընդունի՝ երբ տրուի: Այս մարդիկ հանդերձուած են զրահներով, աղեղներով եւ սրերով. յաջողակութեամբ կը գործածէ ամէն նետընկէց զէնք: Կը փա-

---

261 Պատկանեան, անդ, էջ 152:

262 Մաւրիկ, ԺԱ, 2, էջ 254—269 (Հրտ. Scheffer):

*կուին խրամներու մէջ*[263], *բայց առանց իրենց աղխը հոն զետեղելու, այնպէս որ կրնան անկէ խոյս տալ՝ զինուց բախտին համեմատ: Իրենց ձիերն արօտներու վրայ արածել չեն տար, այլ խարը մէկտեղ կը տանին*[264]:

*Ճակատներու մէջ իրենց զօրութիւններն կը բաժնեն երեք հաւասար մասերու*[265]. *միջոց (կենդրոն), աջ ու ձախ թեւեր կամ*

---

[263] Ἐν φοσσάτοις *(ի փոսս, ի պարկէնս փոսի). ասի քիչ մը ծիծաղելի կ'ընէ այն քննադատութիւնը՝ զոր Միհրան իւր մարդկան առջեւ կը պարզէ ըսելով. «Տեսէք Հռոմայեցւոց վախկոտութիւնն. չեն համարձակիր Պարսից դէմ ճակատ առ ճակատ չարուիլ առանց պաշտպանութեան խրամի մը» (Պրոկոպ., Պ. Պ. Ա*, 14, 15):

[264] *Յոհեմական է այս սովորութիւնը, Երուսաղէմի պաշարման ատեն Հրեայք երբ դուրս կը յարձակէին՝ կը գերէին ձիերը, զորոնք հռոմայեցի հեծեալները պախուցաթափ թողուցած էին արածուելու (Յովսեպոս, Պ. Հ., Զ*, 153): *Բայց պէտք մ'ալ չկայ Ռազմագիտականին դիտած այս խօսքին իմաստը ընդարձակել: Պարսք չէին կրնար հարկաւոր խարը հետերնին տանիլ ամբողջ պատերազմին համար. պէտք է որ մէջ ընդ մէջ նորոգէին իրենց մթերքները. արդ անոնց առջեւ ամենայն ինչ անապատ ընելով՝ առնեք այնու ամենայնիւ տաղնապի մէջ կ'իյնային: Հմմտ. դարձեալ* Ռազմագ., *Ե*, 1, *էջ* 136:

[265] Aussaresses (*ի* Rev. des étud. anc. VIII, 1906, p. 35) *մատնանիշ կ'ընէ իրաւամբ այն իրողութիւնը թէ այն ոճին գործադրութիւնը (որ կը նշանակուի դարձեալ ուրիշ տեղ ալ՝ Գ*, 6, 9) *կը վկայեն Թէոփիլոսի Սիմոկատտայի պատերազմաց նկարագրութիւնները: Լրացընելով անոր կոչումները՝ կրնանք աւելցընել թէ երկքառաջեան ճակատայարդարութիւնը սովորական էր Պարսից ու Բիւզանդացւոց (Թէոփ. Սիմոկ., Ա*, 9, 7. *Բ*, 3, 1. *Գ*, 7, 17: *Դ*, 9, 8):

առաջներ[266]։ Կեդրոնը կը բովանդակէ 400 կամ 500 այրընտիր մարտիկներ՝ իրենց զօրավիգներով։ Թագմի ճակատի լայնութիւնը հաստատուն չէ. բայց փոյթ ու խնամ կը տանին որ ամէն դասակի առաջին կամ երկրորդ կարգը դնեն լաւագոյն տարրները։ Աղխն ու կազմածները քիչ մ'ետեւ կը զետեղուին։ Թշնամութեանց սկսելուն՝ ամէնէն աւելի կը դիտեն նիզակաւորները, եւ զանոնք դժուարին տեղեր կը ձգեն, որպէս զի ասոնք չկարենան դիմադրել յարձակման ու նետերուն տեղատարափին՝ զոր կը թափեն։

Պարսիկները կը սիրեն պատերազմը յետաձգել՝ երբ գիտեն թէ թշնամին կը պատրաստուի. ընդհակառակը կը սիրեն զայն երկարել՝ մանաւանդ չնիկ ատեն ժամանակ, երբ արեւու տօթը թշնամւոյն աշխոյժը կը նուազեցնէ։ Իրենց յարձակումներն առանց յանդգնութեան կը կատարուին, բայց յաճախ կը կրկնեն նոյնը՝ կարճ պայմանաժամի մը մէջ։ Շարունակեալ ցուրտն իրենց աննպաստ է, ինչպէս որ անձրեւը կը թուլացնէ իրենց աղեղները[267], եւ նոյնպէս ամէն

---

[266] Բայց խորութեամբ ետեւէ ետեւ տողուած միակ գունդ մը կայ, մինչդեռ Աւարներն ու Թուրքերը կը բաժնէին իրենց զօրութիւնները թանձրահոծ խմբերու ետեւէ ետեւ (Թագմագ., Բ, 1, էջ 47)։

[267] Հմմտ. Հեղինակաց Պարթեւաց մասին նմանապէս ըսածը, վերը՝ էջ 97։ Ուստի կը յանձնարարէ որ՝ եթէ կարելի է՝ ճակատամարտի համար անձրեւի օր մ'ընտրուի (Ը, 2, էջ 120)։

խիտ առ խիտ հոծ փաղանգ հետեւակաց՝ միահարթ ու միաձեւ գետնի մը վրայ, որ կը դիւրինցընէ նիզակաւորաց շարժումները։ Իրենց դէմ կրնան գործածուիլ շուրջ պարուրելու շարժումներ թեւերուն վրայ՝ զորոնք առանձին կերպով չեն ծածկեր, եւ նաեւ յաճախ յանպատրաստից կատարել գիշերային յարձակումներ անոնց բանակադրութեանց դէմ, որովհետեւ այն ատեն իրենց վրանները խառնիխուռն ու առանց կարգի դրուած կ՚ըլլան։

Մեզի համար անծանօթ կը մնայ այս բանակին պարենաւորմանց խնդիրը[268]։ Գիտենք միայն թէ Սարակինոսաց ցեղապետն Ալամունդար, երբ կը ստիպէր Թագաւորը յարձակիլ տիրել պետութեան՝ անապատային Ասորիքի ճամբով, փոխանակ վարելու դէպ ի Ուռհայաստան, աւելցուց. «մի՛ վախնաք ջրոյ եւ ուտեստի պակասութենէն, եւ բանակին լաւագոյնս կ՚առաջնորդեմ[269]»։ Յաջորդ պատերազմին մէջ Պարսիկները կը յուսային տակաւին երկրին վրայ տոկալ մնալ, որովհետեւ Յերապոլսոյ մէջ գումարուած հռոմէական պետերուն խորհրդեան ժողովքին մէջ որոշուեցաւ՝ Բուզէսն արձակել տիրող բանակին ընտրելագոյն գնդովը՝ թշնամւոյն պաշարապինդ պարենաւորումն

---

[268] Տես վերը՝ Պարթեւաց համար, էջ 92, ծն. 188։

[269] Պրոկոպ., Պ. Պ., Ա, 17, 39։

արգիլելու համար[270]: Բայց որովհետեւ Խոսրով շատ մեծ հոգ ունէր Լազիկէն պահել՝ ամբաւ մթերքներ համբարած էր Պետրայի մէջ: Արդ երբ այս քաղաքն իրմէ առնուեցաւ ճարտարանօք մը՝ նաեւ հրդեհէն ետքը տակաւին մթերք ունէր զինելու հինգ անգամ աւելի թուով մարդիկ քան որ էր Հռոմայեցւոց պատերազմի հանածները, եւ պաշար՝ նոր բանակազօրը հինգ տարի ապրեցընելու. գտնուեցաւ մանաւանդ ցորեն ու աղած միս, ո՛չ գինի, բայց քացախ եւ ընդեղէններ՝ տեսակ մ'ըմպելի պատրաստելու համար[271]: Վերջապէս այս հատուկտոր տեղեկութիւնները կարծել կու տան թէ Սասանեանց հոգաբարձութիւնն ալ, Բիւզանդացւոց հոգաբարձութեան պէս՝ ինչպէս պիտի տեսնենք, շատ անկանոն եղանակ մը կը ցուցընէր: Նոյնպէս ուղտեր կը գործածէր իբրեւ պարենակիրներ, եւ մանաւանդ ջրոյ համար[272]:

---

270 Անդ, Բ, 6, 2 եւն: Երբ Խոսրով Ուռհայի առջեւ եկաւ, իրեն հետեւող Հոնաց ա՛յն հրամանը միայն տուաւ ըմբռնել ոչխարները, զորոնք շրջակայից հովիւներն պարիսպներու առջեւ քշած բերած էին՝ վստահանալով անոնց պաշտպանութեան զօրութեան վրայ: Միակ հօտ մը բռնուեցաւ, յետոյ մինակ մտաւ, արտաքս յարձակման մը եւ անոր հետեւող ճակատամարտի մը շնորհիւ (անդ, Բ, 26, 5—7): Երբ Թէոդոս խաղաղութեան համար կը բանակցէր Վռամի հետ (420ին)՝ Պարսից զօրքերը ուտեստի նուազութիւն կը կրէին (Սոկրատէս, Է, 20, էջ 780, Migne):

271 Պրոկոպիոս, Պ. Գ., Դ, 12, 17—20:

272 Համմ. Թէոփ. Սիմոկ., Բ, 2, 4:

Բէլիսարի մէկ ճառախօսութեան (adlocutio) մէջ կը գտնենք հետեւեալ վճիռը[273]. «Քաջութեամբ կը գերազանցէք Պարսիկները. միայն թէ անոնք ձեր վրայ ունին կարգապահութեան առաւելութիւնը եւ կը վստահին միայն ձեր անկարգութեան վրայ[274]»: Ասի ճիշդ կ'երեւայ: Եւ նախ, եթէ նաեւ Իրանի մէջ յաճախ տեղի ունեցան պալատի յեղափոխութիւններ, բանակները ատոնց սկզբնաւորութիւն չըրին երբեք, եւ իրենց հաւատարմութիւնը միշտ յարգանաց արժանի է[275]: Լաւ մտադիր ըլլալու է որ հոս կը խօսիմ այս զօրաց ազգային մասին նկատմամբ. այն օգնական գնդերը՝ զոր Սասանեանք ալ կը ճարէին՝ թէեւ աւելի նուազ թուով քան թէ Բիւզանդացիք, այս փորձուած հաւատարմութիւնը չունէին[276]: Պետրայի միջնաբերդին մէջ մնացած պարսիկ զինուորները՝ յարձակմամբ առնելէն ետքը՝

---

[273] Պրոկոպ., Պ. Պ., Ա, 14, 21:

[274] Հմմտ. Բելիսարի զինուորները՝ որ կը ցրուին ճակատէն յառաջ, որպէս զի թուզ ուտեն (Պ. Պ., Բ, 18, 18)::

[275] Յուլիանոսի ատեն Հռոմայեցի զինուորները ականէ մը մտած էին Մայոզամալքայի մէջ, սպաննելով իրենց հանդիպած պահակները, ազգին սովորութեան համաձայն արքային արդարութիւնն ու երջանկութիւնը գեղգեղաձայն երգերով դրուատելով (Ամմ. Մարկել., ԻԴ, 4, 23 ex usu moris gentici iustitiam felicitatemque regis sui canoribus vocibus extollentes).

[276] Եղրայի Եգիպտական Տօլեան պարունակած ակնարկը պարսիկ բանակին մէկ ապստամբութեան մասին, որ իբր Ողենաթի եւ Աւրեղիանու ժամանակին ըլլայ, անագանագոյն ընդմիջարկութիւն մըն է (A. v.

աւելի յանձն առին այրուիլ քան թէ անձնատուր ըլլալ[277]: Ընդհակառակն Սմդայ պաշարման ատեն Դոլոմացիք քակուեցան ցրուեցան՝ հազիւ թէ երբ գործը ձախողելու երեւոյթն սկսաւ առնուլ[278]:

Այս ոսոխները զարհուրելի էին նաեւ իրենց արհամարհութեամբ մահուան եւ պատերազմի արիւնալից հետեւութեանց հանդէպ այն համակերպութեամբը, զոր կ'ակնարկէ Ռազմագիտականը: Մարդու մը կեանքն առանց քով ոչինչ բան կ'արժէր. ասոր իբր ապացոյց կ'ուզեմ յիշել միայն այն հարեւանցի խնամքները՝ զոր կ'ընէին վտանգաւոր հիւանդութեամբ մը բռնուող գինուորին: «Զանի ուրիշները կը բաժնեն, եւ կենդանի ընկեցիկ կ'ընէին՝ անոր քով թողլով քիչ մը հաց, ջուր ու գաւազան մը, որպէս զի կարենայ սնունդ ունենալ եւ գազանաց դէմ ինք զինք պաշտպանել[279]»: Միայն վերադարձին խնամ կը տանէին արշաւանքի մը զոհերուն: Մեկնելու ատեն, կ'ըսէ Պրոկոպիոս[280], արքայն գահի վրայ բազմած կը դիտէր բանակին զօրահանդիսը

---

Gutschmid, Kleine Schriften, II, 1890, p. 211—284. Հմմտ. տող 38): Պարսիկ դնդերուն բացառիկ ապստամբութիւն մը Լազիկէի մէջ անկէ ծագեցաւ. որ Որմիզդ արքայն՝ պարտութեան մ'ի պատիժ՝ շնորհազուրկ ընել ուզեց Վահրամ զօրավարը (Թէոփ. 263. յաւ. Թէոփ. Սիմ., Գ, 18, էջ 147—149):

[277] Պրոկոպ., Պ. Գ., Դ, 12, 15 եւն:

[278] Անդ, 14, 42:

[279] Ագաթիաս, Բ, 10, 3:

[280] Պրոկոպ., Պ. Պ., Ա, 18, 52—54:

անցնիլը. իւրաքանչիւր զինուոր երբ կ'անցընէր՝ նետ մը կը ձգէր մեծ կողովներու մէջ, որոնք յետոյ կը կնքուէին։ Երբ զնդերը կը վերադառնային, իւրաքանչիւր ոք նետ մը կ'առնուր անկէ. ասով կը տեսնուէր պակսածներուն թիւը։ Հեփթաղաց մեծ փոսին մէջ կատարուած ճապաղիքէն[281] ետքը՝ այնպիսի փորձանքի մ'առջեւ առնելու համար արգիլուած էր հալածել հակառակորդն անոր երկիրներուն վրայ, եթէ նախ խուճապաւ փախչէր[282]։ Այս ռազմագիտական տեսակէտով թերեւս ընդունելի տրամադրութիւն մըն էր, բայց ասով աւելի ապահով էր թշնամւոյն քով մեռեալներ կամ վիրաւորներ չձգելու։

Պարսիկ զօրաց կարգապահութիւնը յառաջ կու գար ուրիշ զգացումէ մըն ալ. իրենց մէջ զօրավարին հանդէպ ունեցած յարումն ա՛յնպէս արմատացած էր որ անոր մահը զիրենք բոլորովին կը վհատեցնէր[283]։ Հռոմայեցիք գիտէին այս բանս. եւ Միհրմահրով ծեր հերոսը գաղափար մը յղացաւ նոյնը գործածել իբրեւ ռազմահնարք մը դժուարին կացութենէ մ'ազատելու համար։ Հիւանդ ձեւացաւ եւ յետոյ լուր հանել տուաւ թէ մեռած է. մատնիչները՝ որ թշնամիներէն վարձուած էին պարսիկ բանակէտը

---

281 Տես վարը՝ ռազմահնարից մասին։

282 Պրոկոպ., անդ, Ա, 4, 33։

283 Օրինակ՝ Լազիկեան պատերազմին մէջ անմիջապէս փախուստի դիմեցին (Պրոկոպ., Պ. Գ., Դ, 8, 35)։

լրտեսելու՝ կասկած չունեցան ատոր ստուգութեան մասին: Բիւզանդական բանակն ատոր վրայ թուլացաւ ամրութեան իր աշխատութեանց մէջ· եւ ժիրաժիր հսկողութեան մէջ: Եւ Միհրմահրով օգուտ քաղեց անկէ յանկարծակի յարձակում մը գործելով, որով թշնամին փախուստի խուճապեց[284]:

Սասանեանք շատ խիստ էին իրենց տեղակալաց նկատմամբ: Լազիկէի մէջ պարսիկ գնդերու ապստամբութեան մը պատճառն էր այն շնորհազրկութիւնը՝ որով Որմիզդ արքայ պատուհասեց Վահրամ զօրավարը՝ կրած մէկ պարտութեան հետեւութեամբ· զինուորները թեր ելան իրենց զօրապետին[285]: Խոսրով Բ. աւելի հեռուն կ'երթար· մահապարտ կը պատժէր յաղթուած զօրավարները[286]:

Շատ անկանոն բան մըն էր Երանեան իշխանաց անձամբ մասնակցութիւն ունենալը Կայսրութեան դէմ մղուած պատերազմներուն մէջ: Արշակունիք վարեցին քանի մ'արշաւանքներ, բայց յաճախ հրամանատարութիւնը կը թողուին Սուրէնի: Առնուազն կ'երեւայ թէ Կրասոսի յաղթող այն անձն՝ որ այսպէս կը յորջորջուի, արդէն նոյն աստիճանն ունէր՝ որ յետնագոյն ժամանակներուն մէջ կը նշանակուի իբր «երկրորդ վկնի արքայի[287]»: Ըսի թէ արեւելեան բա-

---

[284] Ագաթիաս, Բ, 9, 6:
[285] Տես վերը՝ ծն. 276:
[286] Նէօլտէքէ, Տաբարի, էջ 352, 356, 364:
[287] Պղուտարքոս, Կրաս., 23:

նակներուն մէջ գնդերը չտապ խուճապի կը մատնուէին՝ երբ պետը իր կեանքը տուժէր. քաղաքներուն մէջ Բակուրի գլուխը կը պտտցընէին՝ որպէս զի սրտաթափութիւնը աճեցընեն[288]. եւ երբ Արտաւանի որդին Որոդ մեռած կարծուեցաւ՝ անմիջապէս ճակատամարտին բախտն որոշուեցաւ ի նպաստ Հռոմայեցւոց[289]:

Արդ աւելի աղխտաբեր կ'ըլլային հետեւութիւնք՝ երբ նոյն ինքը վեհապետն իյնար քան թէ իրեն թելակալ դրած մէկ զօրավարը: Ուստի Պարսից կրօնական եւ քաղաքական օրինօք պարտաւորուած չէր թագաւորը մասնակցիլ կռիւներուն, եւ սովորաբար ալ բացակայ էին: Սակայն օր մը Շապուհ՝ Ամդայ առջեւ իր բանակին կրած անվերջ ձախողանքներէն սրտաբեկ՝ «պարզ զինուորի մը պէս նետուեցաւ խառնուրդին մէջ, բան մը որ մինչեւ այն ատեն տեսնուած չէր[290]»: Աչքի կը զարնէ որ ստորին կայսրութեան շրջանին մէջ ռազմագիտութեան տեսականագէտներն այնչափ մեծ պնդութեամբ կը կրկնեն թէ պետն անձամբ վտանգի մէջ մտնելու չէ. եթէ իյնայ՝ չփոթութիւն կը տիրէ շարքերուն մէջ[291]:

---

288 Դիոն Կաս., ԽԹ, 20:

289 Տակիտոս, Տար. Զ, 35: — Զ. դարուն վերջը Կոմմենտիոլոս յաղթեց Պարսից, «որոնք չէին համարձակեր դառնալ իրենց թագաւորին:

290 Ամմ. Մարկել., ԺԹ, 7, 8:

291 Մօրիկ, Ռազմագ., Բ, 15, էջ 70. Է, 1, էջ 136: — Եթէ Երուսաղէմի պաշարման մէջ «զինուորները կը թախանձէին զՏիտոս՝ իր ա՛յնպէս թան-

Պարսք ունեցած են քանի մ՚արտակարգ զօրապետներ, ինչպէս այն անվեհեր Միհրմահրով, որ կքած էր տարիներու բեռան տակ, հիւանդագին էր եւ ձի հեծնել չէր կրնար եւ դեսպակով կը տարուէր իր բանակին մէջ[292]: Բայց Խոսրոյները կամ անոնց նմանները՝ շատ աւելի քան հռոմէական Կեսարները՝ միշտ եթէ ո՛չ բուն ճակատավայրին վրայ, գոնէ մօտն էին: Ասով կ՚ապահովցընէին տեսութեանց աւելի մեծ միութիւն մը եւ աւելի ճիշդ հնազանդութիւն մը: Այս կէտին նկատմամբ երկու պետութեանց մէջ տարբերութիւն մը կայ՝ զոր պէտք էինք նշանակել:

Ասոր հակառակ քանի մը յայտանիշներ կան այն մասին թէ Խոսրով Ա. տրամադրութիւն ունեցած է — եւ թերեւս ուրիշներ ալ ունեցած էին — ներշնչուելու բիւզանդական օրինակէն՝ սահմանագլուխներու վարչութեան ու պահպանութեան համար իր ըրած հանճարեղ կարգադրութեանց համար[293]: Պրոկոպիոս խօսելով պարսիկ սատրճանաւորի մը վրայ՝ զոր Քանարանգ կը յորջորջէ[294],

---

կադին կեանքը վտանգի մէջ չդնել» (Յովսեպ., Պ. Հ., Ե, 87), պէտք ենք՝ կարծեմ՝ հոս տեսնել միայն նշան մ՚առանձին յարման անոր հանդէպ: Բայց տարբեր են իրերը հինգ դար ետքը, երբ զինուորները կը բանադատեն պետ մը՝ վերջապահ՝ գնդին մէջ քաշուելու (Թէոփիլ., Սիմոկ., Բ, 2, 10):

292 Աղաթիաս, Բ, 10. 2:

293 Նէօլդէքէ, Տապարի, էջ 160, ծն. 3:

294 Պրոկոպ., Պ. Պ., Ա, 5, 4 (հմմտ. Ա, 21, 15)· Քանարանգ (Χαναράγγης) սատրճան մըն է (որ Պարս–

կ՚աւելցընէ թէ սահմանագլուխ–գաւառի մը զօրաց հրամանատարն էր[295], ուստի հռոմէական դքսի (dux) նման բան մը։ Միւս կողմանէ կ՚երեւայ թէ Մենանդր՝ բնագրի մը մէջ՝ որուն մեկնութիւնն անստոյգ է, զուգակշռութիւն մը կը դնէ երկու պետութեանց պաշտօնակալաց մէջ՝ որոնք համապատասխան պաշտօն ունէին սահմաններու վրայ ոստիկանութիւն ընելու[296]։ Վերջապէս Թէոփիլակտոս Սիմոկատտա աշխարհաբանակի պետին հետ կը նոյնացընէ այն պարսիկ սպայն,

---

կաց քով զօրավար է = στρατηγός) որ Պարսից երկրին ծայրերը իշխանութիւն ունի երկրի մէջ՝ որ սահմանակից է Հեփթաղաց»։ Հայ հեղինակներն այս տիտղոսը կը բացատրեն մարզպան համազօր բառով (Journ. As., 1866, I, p. 114)։

295 Մենանդր, «Քաղուածք վասն պատուիրակ. Հռոմ.» (Excerpt. de legat. Roman., Migne, PGL, CXIII, p. 920 C = հրտ. De Borr, p. 216, l. 25—27). «Սահմանաց պաշտպան (προτίκτωρ· կոչուածը (եւ սա Հռոմայեցւոց քով կը նշանակէ՝ այս տեղ ցուցակագրուած աստիճանին համեմատ արքունի Հոգաբարձու = τὸν βασίλειον χροσκεπαστήν).

296 Անդ., Դ, 2, 2։ Որմիզդ... պատերազմի ինքնիշխան առաջնորդ կարգեց Փերուխան Պարսիկը (αὐτοκράτορα τοῦ πολέμου προεστήσατο Φερροχάνην τὸν Πέρσην) իսկ այս անունը մագիստրոսի աստիճանը կը ցուցընէ Հռոմոց լեզուաւ (τὸ δ᾿ ὄνομα τὴν τοῦ μαγίστρου ἀξίαν τῇ Ῥωμαϊκῇ ἐνσημαίνεται γλώττῃ.). Ճիշդ խօսելով՝ այս ամէնը բաւական երերուն է։ Արդեամբք Փերուխանի տեղ պէտք էր սպարապետը (նորաձեւ՝ սպահապետ, spahpat) բառը (Նէօլդէքէ, Տապարի, էջ 444) համեմատել բանակի պետի հետ, բացատրութիւն մը՝ զոր Պրոկոպիոս այլեւայլ տեղեր Պարս. Պատերազմ գրոց մէջ կը թարգմանէ Ἀσπέβεδος գրելով, բայց խնդիր է թէ՝ իրեն համար՝ անիկա մարդու յատուկ անուն մը չէ՞ր, եւ ո՛չ թէ պաշտօնի մը յայտարարը։ Մի եւ նոյն խորհրդածութիւնն ընել աւելի ալ անհրաժեշտ է Թէոփանէսի Ἀσπέτιος յորջորջմանց հա-

զոր Փերուխան կը յորջորջէ[297] եւ կ՚անուանէ Հայաստանի աշխարհաբանակին մէկ պետը՝ զոր Պարսից արքայն կ՚որոշէ։

Կը խոստովանիմ թէ ասոնք թերեւս բանագրօսիկ համեմատութիւններ ըլլան. յատկապէս Թէոփիլակտոս՝ որ զինուորական մը չէր, կրնար այս խնդիրներուն մէջ չափազանց պարզացման ոգի մը կրել։ Սակայն եւ այնպէս կը կարծեմ թէ հրամատարութեան այս խնդրին՝ ինչպէս շատ մ՚ուրիշ նիւթերու մէջ, ընդհանուր կերպով մը՝ փոխադարձ ազդեցութեան հետքեր գտած ըլլամ, որով թէ՛ մէկ եւ թէ՛ միւս կողմը փոխառութիւններ ըրած են, թէպէտ եւ այս նմանողութիւնը սահմանափակ էր։

Եթէ այս զուգակշռութիւնը տակաւին տարակուսական ալ ըլլայ զինուորական վարչութեան խնդիրներուն մէջ, շատ աւելի նուազ է նոյնը ռազմագիտութեան եւ գնդերու կազմակերպութեան սահմաններուն մէջ։ Այլեւայլ կէտեր նոյնը նախազգալ տուած են մեզի. աւելի յստակ պիտի ըմբռնենք իրը՝ երբ ուսումնասիրենք բիւզանդական հաստատու-

մար։ Եւ նոյն իսկ եթէ բիւզանդեան հեղինակները յստակօրէն բացատրած ըլլային, ասի չէր նշանակեր թէ որ եւ է շփոթութիւն մ՚ըրած չըլլան։ Այսպէս Մենանդրի Պրոտեկտորի համար (Հատակտոր 11) Զիկ (Ζίχ) պատուատիտղսան (ἀξίωμα) մըն է. Ագաթիասի համար (Դ. 30, էջ 275)՝ անուն (ὄνομα) մը. իսկ արդի արեւելագիտաց համաձայն՝ հաւաքական անուն մըն է աւատական մեծ գերդաստանի մը, ինչպէս էր Սուրէն բացատրութիւնը։

[297] Թէոփ. Սիմոկ., Գ, 5, 15. ὁ κατὰ τὰς Ἀρμενίας τὰς στρατηγίδας λαχών.

թիւնները: Ոչինչ կայ ասկէ աւելի յարմար՝ պայծառօրէն արտափայլել տալու համար այն մասնաւոր դժուարութիւնները, զոր կը յարուցանէր այս «Արեւելեան խնդիրը» Յուստինիանու տան: Երկու ոսոխներու մէջ մէկուն հանդէպ եղած խանձումը պատճառ կ՚ըլլար այսպէսով միւսին յառաջադիմութեան: Բացայայտ է թէ Պարսիկները՝ որչափ ալ ժառանգական եւ յամառ ատելութիւն ունէին, չդանդաղեցան հռոմէական մարտագիտութենէն առնուլ սեպհականացընել ինչ որ իրենց օգտակար կ՚երեւար: Ասոնք ոխերիմներ էին շատ արժանի անոնց՝ որոնց դէմ մաքառեցան չորս դար ամբողջ, եւ կրնայ ըսուիլ թէ, մանաւանդ հակառակամարտ ոսոխութեան վերջին ժամանակը, իրենց բանակը՝ բարձրագոյն աստիճանով մը՝ կը ներկայացնէր բիւզանդեան զօրագնդերու բարեյատկութիւններն ու թերութիւնները: Այս գլխաւոր կէտին պիտի վերադառնանք:

# ՄԱՍՆ Բ.

## ԲԱՆԱԿԸ

### Պահակապան Զօրքն ու Պատերազմական Զօրավիգներ:

*Կը միացընեմ այս երկու դասակարգները, որոնք ըստ ինքեան պէտք էին բաժնուիլ. որովհետեւ շատ յաճախ ներելի չ'ըլլար զանոնք զանազանելը: Նոյն զանազանութիւնն ընդհանրապէս կրնանք ընել մինչեւ Գ. դարու բարեփոխութիւնները, բացառաբար՝ յաջորդ շրջաններուն մէջ, եւ մինչեւ մեզի հասած վարչական յիշատակարանները շատ կասկածելի են յայնմ մասին թէ մեզի կ'աւանդեն վիճակներն ու վիճակագրութիւններն՝ որոնց ճշգրտութիւնը միայն «թղթի վրայ» էր: Դիւրաւ պիտի հրապուրուէինք խոտորելու՝ երբ ուզէինք ներկայացընել լիակատար պատկեր մը զինուորական դրութեան Արեւելքի նահանգներուն մէջ. եւ յիշատակել մեր ամէն գիտցածը հռոմէական կամ բիւզանդական բանակին կազմակերպութեան մասին այն տարբեր շրջաններուն, որոնք ինծի համար որոշուած ժամանակագրական սահմաններու մէջ կը պարփակուին: Բայց այսպէս առանց օգտի պիտի*

կրկնէինք՝ այն ամէնը, զոր հնագիտական ձեռնարկները կամ նոյն նիւթին մասին ճառող ընդհանուր ակնարկները կը պարզաբանեն: Այս ոճը դատապարտելի չէ. բայց պատշաճ է անոր տեղ՝ եթէ ոչ փոխարինել, գոնէ վերադրել այն ոճը՝ որ կը յառաջանայ աշխարհագրական խմբումներով: Նոյնչափ օրինաւոր ու հարկաւոր է նոյնը գործադրել պատերազմի իրաց մասին՝ որչափ քաղաքային վարչութեան կամ քաղաքացիական կենաց նկատմամբ:

Հետեւաբար հոս նկատողութեան կ'առնուին միայն ինչ որ Արեւելքի գնդերուն յատուկ կ'երեւայ, եւ երկրորդ՝ այլեւայլ աղբիւրներու տուած տեղեկութեանց մէջէն՝ զորոնք սովորութիւն է ամբողջ հռոմէական աշխարհին վերագրել, կը քաղենք զանոնք՝ որ այս տեղւոյ վերաբերեալ նահանգներէն կը ծագին — Հայաստան, Միջագետք, Ասորիք, Կապպադովկիա եւ նաեւ Արաբիա, — կամ այն դիպաց դրաւոր տեղեկագիրներէն, որոնց ասպարէզն եղած են միայն այս երկիրները: Այլեւայլ կէտերու մասին մեր լռութենէ բան մ'եզրակացընելու չէ, բայց եթէ այն միայն թէ տեղեկութիւններ կը պակսեն. ասի կրնայ ըլլալ համաձայնութիւն մը կամ եղծում մը մեզի իբրեւ ընդհանուր արժողութեամբ ներկայացուած սկզբանց: Աւելի պարզն ու ապահովն է այս ենթադրութեանց մէկն ալ ո՛չ տարամերժել եւ ո՛չ առաջարկել՝ նաեւ վերապահութիւններով:

Արեւելքի սահմանագլուխն եւ իր մերձաւորները ճիշդ այսպիսի փորձ մ'ընելու համար ընտիր հող մը կը ներկայացընեն. որովհետեւ մեր տրամադրութեան ներքեւ պիտի ունենանք՝ որ ցանցառ պարագայ մըն է, եւ այս պատմութեան բազմաթիւ կէտերուն համար՝ այնպիսի անձանց մեկնաբանութիւնները, որոնք բուն արուեստէն էին եւ ականատես իրենց պատմած իրաց, եւ կամ զանոնք քաղած առաջին լրերէն, երբ աւանդութիւնը տակաւին ձեւափոխութեան իր սովորական գործը չէր աւարտած: Ամէնէն յառաջ քաջատես ընելու է երեք անուններ, եւ որոնք բարեբախտաբար երեք աստիճանաբար յաջորդող շրջաններ կը ներկայացընեն՝ Ա, Դ եւ Զ դարերը:

Նախ՝ Փլաւիոս Յովսեպոս: Իր Հրէական Պատերազմը գրեթէ բացառաբար կը շահագրգռէ մեր ներկայ հետազօտութիւնները, եւ աւելի մեծ երաշխաւորութիւններ կ'ընծայէ քան թէ իր Հնախօսութեանց մատեանը[1]: Վեսպասիանու եւ Տիտոսի գոր-

---

[1] Յովսեպոսի տեսակ մը «կրկնեակ»՝ Յուստոս Տիբերիացի, որ յունական կրթութեամբ հրեայ մըն էր, խօսած էր նոյն դիպաց մասին (հմմտ. Em. Schürer, Gesch. d. jüdischen Volkes im Zeitalter Jesu Christi, 3. bis 4. Aufl., Leipz., I, 1901, էջ 60): Կը պակսի նոյնպէս Անտոնեայ Յուլիանու վասն Հրէից (Antonii Juliani, De Judeis)՝ զոր կը յիշէ Մինուկիոս Փելիքս (Օկտաւ. 33, 4). որ յայտնապէս Վեսպասիանու պատերազմին ժամանակ եղած Յուդայաստանի կուսակալին մէկ երկն էր: Եթէ սա ի ձեռքերնիս ըլլար՝ հաճելի բան մը կ'ըլլար բուն հռոմէական տեսակէտը համեմատել (Յովսեփեայ)

ծողութիւնները լիովին մեր նիւթին կը վերաբերին, որչափ ալ սահմանափակուած ըլլան Պաղեստինի մէջ: Ասորիքէն կու գային ամենամեծ զօրամասները՝ որ Հրէից դէմ ոգորեցան, եւ դրացի մանր իշխաններէն խառնուած զօրավիգները կրնային նաեւ գործածուիլ Պարթեւաց դէմ: Թէ՛ ասոնք եւ թէ՛ անոնք ի գլուխ հանեցին պաշարման պատերազմ մը. եւ բազմաթիւ նմաններ կայ գտնելիք Միջագետաց պատերազմներուն մէջ:

Մեզի համար նուազ արժէք չունի Ամմիանոս Մարկեղոս: «Ես, ազգաւ յոյն, հին զինուոր, իմ կարողութեանս համաձայն յօրինեցի առաջիկայ պատմութիւնս»՝ կը գրէ իր գործն աւարտելով, եւ անժխտելի է որ պատերազմաց նկարագրութեանց մէջ ինք զինքը կը ցուցնէ իբր մասնագէտ զինուորական իրաց, նոյն իսկ ձեւին մէջ բանակեաղներու ռամիկ լեզուին հետքերը պահելով[2]:

---

հրէական տեսակէտին հետ: — Շատ կը ցաւիմ որ ժամանակին առձեռն չեմ կրցած գործածել Ա. Շուհի ուսումնասիրութիւնը՝ A. Schuh, Römisches Kriegswesen nach dem B. 1. des Joseph Flavius, mit gelegentlichen vergleichenden Hinweisen auf unsere moderne Heeresverhältnisse (Prog. Gymnas. Mährisch-Weißkirchen 1902). Հետեւաբար ստիպուած էի անձամբ նորէն կատարել այն աշխատութիւնն՝ որուն ինքը ձեռնարկած էր, բայց խոյս տալով այն համեմատութիւններէն՝ զորս մասնանիշ կ'ընէ իր խորագիրը:

[2] Յուլիանոս պատերազմը երեւակայութիւնները բորբոքած էր եւ մեծ հետաքրքրութիւն մը զարթուցած: Լիբանիոս իր 1186 Թղթին մէջ կը բացատրէ

Գրեթէ նոյն ստորճանին մէջ դնելու է Պրոկոպիոսը: Ամմիանոս Անտիոքացի էր, Պրոկոպիոս՝ Պաղեստինոյ Կեսարիայէ, որ Արեւելեան սահմանագլխին մերձաւոր ուրիշ

---

այն դժուարութիւնները՝ զոր կրած էր պարսկական պատերազմին մասին վաւերական տեղեկութիւններ ստանալու: «Վերադարձողներէն իւրաքանչիւրն ապահովցուց զիս թէ՝ ստոյգ տեղեկութիւններ ունի եւ պատրաստ է հաղորդելու. բայց ոչ ոք ըրաւ: Ամէնքը կը դրադին ո՛չ թէ մեռած ինքնակալով, այլ իրենց սպասիկ գործերով: Միայն քանի մը զինուորներ խօսեցան ինծի պատերազմի տեւողութեան, օթեւաններու երկայնութեան եւ անցած տեղերուն մասին. բայց ո՛չ երբեք իրերու պայծառ նկարագրութիւն մը, ամէն կողմ մթութիւն, ոչինչ՝ որ կարենայ պատմագրի մը տեղեկագրութեան հիմ կազմել»: Անոր համար կը ստիպէ իր Սելեւկոս բարեկամն, որ արշաւանքին մասնակցած էր, Յուլիանու պատմագիրն ըլլալ (Թղ. 1078): Այս բաղձանքը (տժգին բացատրութեամբ իբր Տապանագիր՝ 'Ἐπιτάφιος) կատարած են շատերը, յատկապէս Եւտրոպիոս, Մագնոս Կառհացի (Կարխացի). եւ Եւտիքիանոս Գամբացի. այս վերջին երկուքը ձախողակօրէն ծայրաքաղ ըրած է Մաղաղաս (էջ 328, 20, հրտ. Բոն). Հմմտ. FHG, IV, 4, ուր. Կ. Միւլլեր կը հաւաքէ վկայութիւնները, որ անոնց որպիսութիւնը կ'որոշեն: Եւտրոպիոս՝ իբրեւ ստորճանաւ Պայծառագոյն (clarissimus)՝ կրնար պաշտօնական յիշատակարանները տեսած ըլլալ. բայց ինքը միայն «Թղթագիր» (ἐπιστολογράφος) էր, աննշանակալի միջակ պատերազմիկ մը, եւ իր երկերէն միայն համառօտութիւն մ'ունինք: Մագնոս կը յիշուի Ամմիանոսէ (ԻԴ, 4, 23) իբրեւ սպայ. իսկ Եւտիքիանոսի նկատմամբ Միւլլեր կը նոյնացընէ Հայաստանի դուքսն եւ այն դիւանապետը (πρωτοσηκρήτηρ)՝ որ նոյնպէս այս անուամբ ծանօթ է: Մագնոսի եւ Եւտիքիանոսի մասին գիտենք որ Թղթերով պատմած էին արշաւանքին իրենց յիշատակները, հաւանօրէն շատ աւելի համառօտ քան Ամմիանոս: Վերջինս որ կը ճանչնար զՄագնոս, թերեւս գործածած է անոր երկը: Մագնոս տեսակ մը «հրամանաբեր սպայ» էր (protector domesticus, «տանտէին վերակացու»), ուստի յաւ ստորճան մ'ունէր տեղեկանալու համար: Դժբախտաբար իր աշխարհագրա-

մէկ քաղաքն էր։ Այս դատաղակիցը (πάρεδρος) կամ իրաւաբան խորհրդականը՝ ծառայած ըլլալով բազմաթիւ պատերազմաց մէջ, ուր միշտ կը գտնուէր վերին հրամատարին առընթերակայից հետ, ստացած է չափով մը պատերազմի իրաց մասին ձեռնհասութիւն մը, եւ որովհետեւ շատացած է իր ժամանակի պատմութեամբն՝ առանց փորձուելու հմտալից երեւալու ոգիէն, իւր պատմածներն աւելի նուազ տարտամութիւն ունին եւ աւելի քիչ ենթակայ չփոթութեանց։ Իրեն պարտական ենք մարտագիտութեան վերաբերեալ ամէն իրերու մէջ առաջնակարգ բաժին մը[3]։

---

կան շրջագայութեանց (excursus) համար աւելի գրաւոր աղբիւրներ գործածած է քան թէ իր յիշողութիւնը. հմմտ. Th. Mommsen, Ammians Geographica (ի Hermes, XVI, 1881, p. 602—636). եւ երբ կը պատմէ դէպքեր՝ որոնց ինքն ականատես վկայ չէր, չփոթութիւններ կ'ընէ գործածած յիշատակարանաց մէջ. տես O. Seeck, Zur Chronologie und Quellenkritik des Ammianus Marcellinus (անդ, XLI, 1906, p. 481—539).

[3] Ասոր բնաւ մտադիր եղած չէ Luigi De Gregori, որ հեղինակ է քանի մ'էջերու՝ որոնց խորագիրն է՝ L'esercito bizantino in Procopio di Cesarea (ի „Bessarione", ser. II, vol. I, ann. VI, 1901, p. 246—258). որ միայն հետամուտ եղած է վերակազմելու բանակին կազմակերպութիւնը, զօրագնդաց բաժանումը եւ դասակարգութիւնը։ Այս վերաբերութեամբ ստուգիւ փոխ կ'ըլլայ անկէ քաղուած չահը. եւ ատկէ ալ մենք կ'առնունք միայն Արեւելքի բանակաց վերաբերեալը՝ անտես ընելով այն բանակները որ Գոթաց ու Վանդալաց դէմ կռուելու գացին։ Քիչ մ'աւելի կը գտնուի երկիս մէջ՝ Hans Delbrück, Gesch. d. Kriegskunst im Rahmen d. polit. Gesch., Berlin, II, 2 (1902), p. 355 ff., բայց մանա-

Ասոնք են մեր գլխաւոր երեք աղբիւրները. առանցմէ ետքը՝ մասամբ կրնանք օգտուիլ նաեւ Դիոն Կասիոսէ եւ Հերոդիանոսէ[4]: Վերջինս հրապարակային պաշտօններ կը վարէր, որոնց ինչ ըլլալը չենք գիտեր, բայց հաւանօրէն քաղաքային էին՝ նկատելով մտաց այն յատկութիւնները՝ զոր կը յայտնէ իր երկը, եւ այն սխալները՝ որ հոն կը տեսնուին: Դիոն՝ որ երբեմն Ափրիկէի անթիհիւպատ (proconsul, «փոխանակբդեշխի») էր, քաղաքագիտութեան եւ բանակի իրաց մէջ արուեստագիտական ծանօթութիւններու անտեղեակ չէր. բայց իրեն համար յատկապէս ընտանի չէր Արեւելք, եւ այն դէպքերը՝ որոնց մասին լոյս կու տայ՝ չեն վերաբերիր այն ժամանակամիջոցին, որուն մէջ կ՚ապրէր: Աւելցնենք որ Պլինիոս Կրտսեր՝ իւր զինուորական ծառայութեան ատեն՝ Ասորիքի կուսակալին դիւաններուն մէջ գործածուած էր գրագրութեանց[5]. իսկ

---

ւանդ աւելի գործոյս մէջ՝ Ch. Diehl, Justinien et la civilisation byzantine au VI siècle, Paris 1901, p. 145 ff.

[4] Տակիտ. (Պատմ. Ե.) համառօտիւ միայն կը պատմէ Հրէաստանի պատերազմը Վեսպասիանու ձեռօք: Վելլէիոս Պատերկուլուս (Բ, 101) զինուորական տրիբուն էր Ասորիքի մէջ Գայոս Կեսարի՝ Աւգոստոսի թոռան՝ ատեն. բայց ասի մեզի համար շատ երկրորդական աղբիւր մըն է:

[5] Պլին. Թուղթք Գ., 11, 5. «երբ Ասորիքի մէջ զինուորական տրիբուն էի (cum in Syria tribunus militarem, հմմտ. Ա., 10, 2). — Է, 31, 2. «Հիւպատոսական նուիրակէն հրաման առացայ թեւերուն ու վաշտերուն համարները քննել» (ego iussus a

իւր պարապոյ ժամանակները լիովին գրաւուած էին Անտիոքայ իմաստասիրական դպրոցներուն մէջ: «Արեւելքի խնդիրը» ծանրութեան նկարագիր մը զգեցած չէր այն ատեն, եւ կամ չ'երեւար թէ հետաքրքրուած ըլլայ անով:

Ասոր հակառակ հետաքրքրական է մատնանիշ ընել այն բուռն կիրքը՝ զոր սովորաբար Հռոմայեցւոց քով նոյն խնդիրները կը յարուցանէին, այն դիւցազներգական կերպարանքն՝ զոր իրենց երեւակայութեան մէջ կը ստանային Պարթեւաց կամ Պարսից դէմ մղուած պատերազմները: Ասոնք շատ մը քերթուածներ ներշնչած են. Սեպտիմոս Սեւերոսի կեանքը, յատկապէս իւր արշաւանքը դէպ ի Տիգրիս, մանրամասն պատմուած էին կեղծ-պատմական քերթուածներու մէջ, որոնք առանց տարակուսելու՝ շատ միջակ բաներ էին, եւ որոնց նոյն իսկ հեղինակները չենք ճանչնար[6]: Դիոկղետիանոս եւ Գաղերիոսի 297ին պարսկական պատերազմը դրուատեցաւ փոքրիկ դիւցազներգութեամբ մը, որուն հատակոտորները նորերս գտնուեցան. եւ որոնք ճիշդ կը բաւեն միայն անոր առարկան ստուգելու[7]: Անաստասի օրով

---

legato consulari rationes alarum et cohortium excutere. Հմմտ. Mommsen, Gesamm. Schr., IV = Hist. Schr. I, 1906, p. 413).

[6] Հերոդիանոս, Բ., 15, 6:

[7] R. Reitzenstein, Zwei religionsgeschichtliche Fragen nach ungedruckten griechischen Texten der Straßburger Bibliothek, Straß-

Եգիպտացի յոյն մը՝ Կոլլութոս Լիւկոպոլսեցի՝ երգած է Պարսկականս (Περσικά)՝ Սուիդասի խօսքին համեմատ։ Նմանապէս կորսուած է այն չափական ներբողեանը՝ զոր Եւդոքսիա Կայսրուհին շարադրած էր իր ամուսնոյն՝ Թէոդոսի Բ.՝ Պարսից դէմ տարած յաղթութենէն ետքը[8]։ Եթէ Ամմիանոսը չունենայինք՝ աւելի պիտի ցաւէինք այն քերթուածին կորստեան վրայ, ուր Յուլիանոս գործերը հռչակած էր Կալլիստոս՝ պատերազմիկ մը[9]։ Եւ դարձեալ տաղաչափ մըն է՝ Գէորգ Պիսիդէս՝ որ աւելի մանրամասնութիւններ կու տայ Հերակլի «խաչակրութեան» մասին։

Արձակ բանիւ՝ բայց ըստ երեւութին չափականին չափ երեւակայութեամբ եւ իրողութեանց հանդէպ անկախութեամբ՝ ծնած է ընդարձակածաւալ մատենագրութիւն մը Լուկիոս Վերոսի մեծ պատերազմին հետեւութեամբ, ճառագրութիւններ, արտասանութիւններ եւ դպրոցական պէսպէս հրահանգներ, զորոնք աղէկ կը ծաղրէր Լուկիոս[10]։ Թերեւս ասոնց ամէն մէկն ալ

---

burg 1901, p. 47—52. Բանաստեղծական այս տեսակ մեծ ընդունելութիւն կը գտնէ, նոյն իսկ այն հասարակաց տեղիքը՝ որ բարբարոսաց դէմ խանձալից ինքնակալները կը նոյնացնէր գից հետ՝ որոնք երկրիս հրէշներուն դէմ կը կռուէին (հմմտ. F. Cumont, ի Rev. des Étud. anciennes, IV, 1902, p. 36—40)։

[8] Սոկրատ., Պատմ. Եկեղ. Է., 21։

[9] Սոկրատ., անդ։

[10] Lucius, Quomodo hist. sit scrib. 21 եւ 32 («Թէ ի՛նչպէս պատմութիւն գրելու է»՝ խորագիր)։

միայն յիմարաբանութիւն չէր, եթէ Փրոնդին (Frontin = Fronton)՝ զոր կը յիշէ անոնց թուարկութեան մէջ, նոյն ըլլայ Մ. Կղաւդիոս Փրոնդոյ (Fronto) զօրավարին հետ, որ ականատես ու գործակից էր պատերազմին[11]։ Յաւելի է որ կորսուած են՝ Վեսպասիանու Յիշատակարանք (Ὑπομνήματα)[12]. — Ապողոդորի՝ Ասորեստանի Արտեմիտա քաղաքէն՝ գրած Պարթեւականք (Παρθικά), որ Ստրաբոնի երաշխաւորներէն մին է Արեւելից իրերուն մասին՝ Հասարակապետութեան վերջերէն[13]. — Ասինիոս Կուադրատոսի երկերը՝ որ կը պարունակէին Վերոսի եւ Սեւերոսի պատերազմները[14], եւ Արիանու երկերը[15]՝ որ շատ զբաղած էր

---

[11] Հմմտ. Mai, ad. M. Corn. Front. Epist., p. 312, n. 1։

[12] Զատի կը յիշատակեն՝ Յովսեպոս, Վարք, 348, 358. Կ. Ապիոն., Ա., 10։

[13] Այս Պարթեւականք ուրիշ արժէք ունենալու էին քան Թէոփանու Միտիլենացւոյ Պոմպէի պատերազմներու մասին տուած պատմութիւնը։ Իսկ Կ. Դելլիոս՝ որ Անտոնինեայ նուիրակն էր, անշուշտ շատացած ըլլալու էր վերջնոյս անձին զովաբանութեամբ, եւ Սալլուստոս չկրցաւ օգտուիլ անոր յիշատակներէն բայց եթէ Վենտիդիոսի գործողութեանց մասին. Հմմտ. O. Hirschfeld, Dellius ou Sallustius? (ի „Mélanges Boissier“, Paris 1903, p. 293—295).

[14] FHG, III, p. 659 ff. = H. Peter, Historicorum Romanorum reliquiae, Leipzig, II, 1906, p. 144—146. Հեղինակը Թերեւս Աքայեցի անթիհիւպատոս էր. Հմմտ. Prosop. imp. Rom. I, p. 168, Nr. 1031—1032։

[15] Որոնք մանրամասն էին Տրայիանու արշաւանաց վերաբերեալ իրաց մէջ, որ արշաւանաց ամէնէն մերձաւորն էր հեղինակը. տես J. Marquart, ի „Philologus“, Supplementband, X, 1 (1905), p. 221, n. 3.

ռազմագիտութեամբ։ Այս մասին նուազ հոգ ունէր Յովհ. Լիւդացի, որ այսու հանդերձ ձեռնարկեց Յուստինիանու պարսկական պատերազմաց պատմութիւնը գրել[16]. իւր կացութեան պայմանն՝ իբր շնորհալուր գործակատար մը՝ զինքը նուազ անկողմնակալ եւ քիչ հաւատարիմ տեղեկագրող մը կ'ընէր։

Որչափ ալ շատ ընդհանուր ծրագրով յղացուած՝ ծառայութիւններ կ'ընէ մեզի Մաւրիկ կայսեր ընծայուած Ռազմագիտականը[17]։ Կը զգացուի թէ Պարսից նուիրուած հատածներուն հեղինակը շփման մէջ եղած է այն ազգին հետ։ Միաբան է Թէոփիլակտոս Սիմոկատտա տարեգրողին հետ, եւ — որ թանկագին առաւելութիւն մըն է՝ որուն արդէն Ամմիանու քով հանդիպեցանք, — կը գործածէ խօսակցութեան այն ոճերը՝ որոնք գործածական էին Մաւրիկի եւ իւր յաջորդին զօրագնդերը կազմող բարբարոսներուն մէջ։

---

16 Հմմտ. W. Christ, Gesch. d. griech. Litteratur, p. 799։

17 Չենք ուզեր բանավիճել այս ընծայման խնդրոյ մասին, որ մեր նիւթին համար երկրորդական կէտ մըն է. Fr. Aussaresses, L'auteur du Strategicon (ի Rev. des Étud. anciennes, VIII (1906, p. 23—39). խոհեմական չափաւորութեամբ մը նոյնը կը ներկայացնէ՝ ո՛չ թէ իբր ապահով, այլ իբրեւ շատ հաւանական։ Իսկ R. Vari, Zur Überlieferung mittelgriech. Taktiker (ի „Byz. Zeitschr.", XV, 1906, p. 47—87) աւելի կողմն է աւանդութեան, որ նոյն գործը Ուրբիկիոսի մ'անուան կը վերագրէ, եւ որ նիւթերուն մեծ մասը հաւաքած ըլլայ՝ եւ նոյն իսկ խմբագրած քանի մը գլուխներ (էջ 81)։ Եւ եթէ ԺԲ. դրոց

Համառօտ ըսելու համար՝ մեր յունական եւ լատինական զինուորական յիշատակարանները համեմատաբար բազմաթիւ են, եւ ապահով. այս տպաւորութիւնը կը հաստատուի՝ երբ ուզենք զանոնք լրացընել արեւելեան մատենագրութեանց օգնութեամբ: Վերջինքս գրեթէ ոչինչ կու տան մեզի. մանաւանդ թէ ասոնք շատ բան փոխ առած են արեւմտեան պատմագիրներէն: Չկայ ռաբբունական պատմագրութիւն մը՝ գոնէ հռոմէական շրջանին համար. Իսրայէլի դպիրները՝ օրինաց եւ վարդապետութեան ուսման մէջ կը մեկուսանային[18]: Պարթեւները մատենագրութիւն ունեցած չեն. եւ ասորի լեզուն անկախ գրականութիւն մը յառաջ բերած է միայն անագան ժամանակ, եւ ան ալ մնացած՝ գրեթէ տարամերժօրէն՝ ծառայ աստուածաբանութեան. բացառութիւն կ'ընենք Յեսուայ Սիւնակեցւոյ ժամանակագրութեան համար՝ որ Ուռհայի անանուն ուսուցչի մը գործն է, որ ականատես վկայ էր այս քաղաքին կրած փորձանաց Անաստասի

---

այլեւայլ հատուածներ՝ որ Պարսից մասին կը խօսին, յետնագոյն ընդմիջարկութիւններ ըլլան (էջ 72). բայց գոնէ գլխաւոր հատուածը (ԺԲ., 2) ասոնցմէ մին չէ: Եւ եթէ իրօք Հեղինակը Պարսից անուամբ կը հասկընայ Սարակինոսները կամ Արաբները, զորոնք ուրիշ տեղ մը չէ յիշատակած, սակ չէ անհրաժեշտօրէն «Բիւզանդացւոց մէկ իմաստակութիւնն, որոնք կը սիրէին դասական անուններով նշանակել բոլորովին նորագոյն իրերը». Արաբացիք իրականապէս մաս կը կազմէին Սասանեանց բանակներուն:

[18] Schürer, անդ, էջ 159—160. հմմտ. 111—161:

օրով[19]։ Հայոցմէ անունը մը հոս յիշելու է, Սեբէոս, միայն Հերակլի թագաւորութեան համար. պատերազմի իրողութիւնները աւանդած է՝ որոնց մասին տեղեկացած է ականատեսներէ[20]։ Պահլաւ հին գրականու–

---

[19] Կը գործածեմ Պ. Մարտէնի թարգմանութիւնը (տես վերը՝ Ա., ծան. 92)։ Հմմտ. Rubens Duval, La littérature syriaque, Paris 1899, p. 187 ff. — Այս ժամանակագրութիւնը մեծ վստահութեան արժանի է, ինչպէս ցուցուած է Է. Մերտէն՝ Erich Merten, De bello Persico ab Anastasio gesto, diss. hist., Leipzig 1905 (Commentat. philolog. Jenens., VII, 2, p. 141—201)։ — Այլեւայլ տեղեկութիւններ կ'առնունք՝ մանաւանդ տեղագրութեան մասին, Ուռհայի մէկ անանուն ժամանակագրութենէ մը, որ յօրինուած է Զ. դարուն, եւ վերստին հրտ. Ludwig Hallier, Untersuchungen über die Edessenische Chronik mit dem syrischen Texte und einer Übersetzung (Texte und Untersuchungen, ed. v. Gebhardt und Harnack, IX, 1, Leipzig 1892)։ Այն ժամանակագրութիւնը՝ զոր Ասեմանի՝ Դիոնեսիոսի Տէլ–Մահրէ ընծայած է, մեծամեծ փոխառութիւններ ըրած է Սոկրատի Պատմութենէն։

[20] Յառաջ շատ կը գործածուէր Մովս. Խորենացի. բայց Ա. Կարիէր անոր հեղինակութիւնը կործանեց (Aug. Carrière, Nouv. sources de Moïse de Kharêne, Vienne 1893, յաւ. հրատարակութիւն ի Centenaire de l'École des langues orientales vivantes, Paris 1895, p. 357—414)։ Խորենացւոյ անուամբ տարածուած գործը խառնուրդ մըն է փոխառութեանց որ առնուած են ընդմիջարկեալ յունական ժամանակագրութեանց հայերէն թարգմանութիւններէն։ Սակայն Կարիէր նոյն գիրքը հերձուած ժամանակ՝ քիչ մը բռնադատուած է ստուարացընելով (Հմմտ. S. Weber, անդ, էջ 62)։ Նոյնը կրնանք տակաւին իբր համեմատութեան եզր գործածել. բայց զինուորական պատմութիւնն ատկէ բան մը չի շահիր։ Մարքուարտ կ'ընդունի Կարիէրի առաջարկած գրութեան ժամանակը՝ Ը. դարուն ((Marquart, ի Abh. d. kgl. Gesellsch. d. Wiss. zu Göttingen, phil.-hist. Klasse, N. F. III, 2, 1901)։ Կո–

թիւնը կորսուած է. արաբացի խմբագիր մը Թ. դարու վերջին եւ Ժ. դարու սկիզբէն՝ Տապարի՝ անկէ քաղած է առանց քննադատութեան[21]: Կարեւոր գլուխ մը նուիրուած է Սասանեանց պատմութեան — եւ տեղ տեղ բանակին. Բիւզանդացւոց պատմութիւնը քանի մը լուսաւորութիւններ կ'ընդունի անկէ:

Պէտք չկայ արձանագրագիտութեան տուած տեղեկութեանց մասին կրկնելու մեր արդէն վերն ըսածը: Միայն Արաբիոյ նահանգին մէջ — զոր հոս անտես կ'ընեմ, — բաւական մեծ թուով մզոնաքար կոթողներ գտնուած են ցայժմ. եւ ասոնց ճշգրտագոյն նշանակութիւնն ալ տակաւին բանաքննութեան նիւթ ըլլալու է: Իսկ պատկերաւոր յիշատակարաններէն, որոնք ցանցառ են եւ հոս զմեզ զբաղեցընող խնդրոյն համար ալ սակաւաշահ, ամէն առթի մէջ օգտուած եմ, ինչպէս ընթերցողը պիտի տեսնէ[22]:

---

նիքիր կը պաշտպանէ հին թուականը՝ Ե. դարուն գրուած (C. F. Conybeare, The date of Moses of Koren, ի Byzant. Zeitschr. X, 1901, p. 488—504): Հ. Հիւբշման կ'եզրակացընէ՝ Աշխարհագրութեան մասը միեւնոյն ձեռքէ չէ, որ գրած է Պատմութիւնը. եւ Պատմութեան հեղինակը կրնայ Զ. դարէն ըլլալ, իսկ Աշխարհագրութեան հեղինակն ամէնէն կանուխ Է. դարէն կրնայ ըլլալ (H. Hübschmann, ի Indogerm. Forschungen, XVI, 1904, p. 197—490, եզրակացութիւնը՝ էջ 371—375):

[21] Հմմտ. Նէօլտէքէի Թարգմանութիւնը, Լայդէն 1879, Ներած., էջ ԺԳ—ԽԸ:

[22] Մօտերս Վիեննա փոխադրուած են՝ Եփեսոսի պեղումներու ժամանակ հողէ հանուած Կեղսոսի մատենադարանին մէջ գտնուող խորաքանդակները, որոնք

## § 1. Լեգէոնները։

Ա. Մինչեւ Գ. դարու վերջը։ — *Հռոմայեցի առաջին մարտիկը՝ որ իմ սահմանագծած աշխարհագրական տարածութեան մէջ մտաւ՝ Ղուկուղոսն էր* (69—68 *Ն. Ք.*)։ *Բնական է որ իր պատմագիրները չեն աւանդեր այն լեգէոններուն անունները՝ որոնց կ՚առաջնորդէր. վասն զի այն ատեն ժամանակաշրջանի մը մէջն էին՝ երբ իւրաքանչիւր տարի զինուորակոչ եղած եւ նոր թուարկուած լեգէոնները փոխանցելու վրայ էին մշտակայ լեգէոններու։ Ճիշդ միեւնոյն պարագային մէջ է Պոմպէոս ալ, որուն Ասիոյ պատերազմին վերջնական արդիւնքն եղաւ Ասորիքի նահանգին ստեղծումը* (66—63 *Յ. Ք.*), *ինչպէս են նաեւ Կրասոս եւ Կասիոս* (54—52)։ *Հազիւ թէ Պղուտարքոս զօրաց իրական թիւերը կը յիշէ։ Բայց գոնէ ստոյգ է որ Ասորիք արդէն այն ատեն տեւականօրէն գրաւուած էր պահակազնդերով*[23]։

---

*կայ ուրիշ Հռոմայեցւոց* 161*էն* 166 *Յ. Ք. Պարթեւաց դէմ մղած պատերազմներուն հետ. ասոնց նմանատպութիւն մը տակաւին տեսած չեմ* (*Հմմտ.* Jahrb. d. d. Instit., XX, 1905, Arch. Anzeig., p. 180)։

[23] *Լաբիէնոս դաւաճանը՝ երբ Փիւնիկէ յարձակեցաւ, խրեցաւ Ապամէայի առջեւ, «բայց իրեն յօժարակամ անձնատուր եղան երկրին մէջ զետեղուած պահակազնդերը. ասոնք կազմուած էին զինուորներէ՝ որոնք Կրասոսի եւ Բրուտոսի հետ կռուած էին. Անտոնիոս զանոնք իր լեգէոններուն մէջ խառնած էր, եւ որովհետեւ երկիրը կը ճանչնային՝ անոնց յանձնած էր Ասորիքի պահպանութիւնը։ Իբրեւ հին ընկերներ՝ Լաբիէնոս դիւրաւ իրեն վաստկեցաւ զանոնք» եւն* (*Դիոն Կաս. ԽԸ.* 25)։

*Իսկ Անտոնինեայ մասին՝ մատնանիշ կ՚ընենք հեղինակաց մէջ տիրող ծանր անհամաձայնութիւնը լեգէոններու թուոյ մասին, որոնց վրայ կը տրամադրէր*[24]*: Հեղինակները շատ աւելի սիրով կը յիշատակեն պատերազմողներու թիւը. բայց տակաւին սովորութիւն չունին աւելի ճշգրտելու զանոնք. սակայն Պղուտարքոս կը յիշէ* Երրորդ *Լեգէոնը*[25]*: Ինքնին կը հասկցուի որ կը խօսիմ միայն այն գնդերուն վրայ՝ զորոնք Անտոնինոս գործածեց պարթեւական արշաւանքին համար. իսկ քաղաքային պատերազմին մէջ շատ աւելի թուով լեգէոններ ունէր (իր դրամոց այլեւայլ ընթերցուածոց համեմատ՝ իբր երեսուն թուով)՝ որոնք Արեւելից դրեթէ ամէն կողմերէ զօրահան եղած էին, բայց որոնք սահմանագլխոց պաշտպանութեան հետ կապ չունէին: Ի վերջոյ՝ ինչպէս ծանօթ է, բուն Աւգոստոսէ սկսած է լեգէոններուն ճշմարիտ կազմակերպութիւնը եւ միայն կայսրութեան սկսելէն ի վեր է որ կրնանք անոնց բաշխման նկատմամբ քիչ մ՚աւելի ճշգրիտ գաղափար մ՚ունենալ:*

---

[24] *Փղորոս* (*Դ*, 10) *եւ Յուստինոս* (*ԽԲ*, 5, 3) *կ՚ըսեն* 16 *լեգէոններ. Լիվիոս* (*Համռ.* 130) *կը նշանակէ* 18, *իսկ Վելլ. Պատերկ.* (*Բ*, 82, 1) *միայն* 13 *լեգէոն: Այս տարաձայնութիւնն անկէ կը ծագի որ Անտոնինոս բաւական թուով նուիրակներ ունէր՝ Սոսիոս, Կանիդիոս, Վենտիդիոս, որոնք փոխն ի փոխ կա՛մ առանձինն կամ իր ուղղակի հրամանաց ներքեւ կը գործէին: Երուսաղեմի պաշարման ատեն Սոսիոսի զօրամասներուն նկատմամբ տես* V. Gardthausen, Augustus und seine Zeit, I, 1, p. 238 ff.

[25] *Պղուտարքոս, Անտ.* 42:

Դարձեալ հաս հռոմէական հնութեան դժուարագոյն խնդիրներէն մին կայ, եւ ասիկայ մասնաւորապէս դժուարին է Արեւելից գնդերուն համար՝ պատերազմներու յաճախութեանց պատճառաւ, որոնց չէին բաւեր սովորական պահակապան զօրագնդերը: Այս արշաւանքներու մասին միայն հեղինակաց վկայութիւնն ունինք: Արդ ասոնք շատ ցանցառ անգամ լեգէոններու լիակատար յորջորջանքները կ'աւանդեն, այլ միայն թուերով կը նշանակեն զանոնք: Ի բաց առեալ Յովսեպոսի, Տակիտոսի եւ Դիոն Կասիոսի — վերջինս քիչ մ'անաղանագոյն է այս տեղ, — երեք հիմնական բնագիրները, որոնք ամէն կարելի կերպերով խուզարկուած են եւ հարիւրից քննուած խոշորացուցով, ուրիշ ամէն գրաւոր վկայութիւններ կը պակսին: Այս մասին բանաքննութեան միակ խարիսխն են արձանագրութիւնները, այսինքն թէ ասոնք քիչ մը տեղեկութիւն կու տան Արեւելքի լեգէոններուն վրայ[26]: Սակայն լեգէոն մ'ալ իւր ճմերոցներուն մէջ բոլորովին անբաժան

[26] Ինծի բաղձանօք է թէ ամէն կողմ գտնուած արձանագրութիւնները կրնան օգտիլ գործածուիլ այս տեսակէտով. բայց երբ լեգէոն մը պատուաշարքի մը (cursus honorum, ընթացք փառաց) անուանակոչութեանց մէջ կը յիշատակուի՝ ասկէ միշտ չի տեսնուիր թէ ո՛ւր կը բանակէր: Շատ մ'արձանագրական բնագիրներու թուականն ալ միայն մերձաւորապէս կրնայ որոշուիլ: Նոյն իսկ Վատիկանի հռչակաւոր մաֆֆէական սիւնակոթողին (colonne mafféienne) վրայ գտնուած ցանկը կ'երեւայ թէ արձանացուցուած է

միութիւն մը չէր կազմեր, այլ շատ մը կէտերու վրայ կը բաժնէին գումարտակներ (vexillationes, «դրօշաւորութիւնք»)։ Տապանագիր մը, նոյն իսկ ձօնագիր մը կրնայ յիշատակել լեգէոն մը՝ առանց յստակօրէն ցուցընելու թէ անոր գտնուած տեղը կը նշանակէ՞ գլխաւոր զօրագնդին զօրանիստը կամ թէ փաշտի մը անցողական կայանը յատուկ յանձնարարութիւն մը կատարելու ատեն[27]։

Աստիւ խօսելով Կայսրութեան նախընթաց եղող վերջին տարիներուն մէջ դէպ ի Եփրատ կամ Ասորիքի ափերը համախմբուած զօրագունդները շատ աւելի կը ծառայէին պետի մը փառասիրութեանց քան թէ երկրին պահպանութեան։ Այս վերջին տեսակէտը յետոյ բնականաբար պիտի արտաքսէր բոլոր միւս նպատակները՝ Ոկտաւիանոսի վերջնական յաղթանակէն ետքը, որ՝ Աւգոստոս ըլլալէն ետքը՝ ձեռնարկեց բանակին ընդհանուր վերակազմութեան մը բոլորովին նոր հիմերու վրայ։ Որչափ կրնանք դատել՝ անխախտ պահեց իր լեգէոնները եւ քանի մը հատ ալ իր ախոյանակիցներուն լեգէոններէն։ Ուստի կը գտնուէին գնդեր՝ որ

120 եւ 170 Յ. Ք. տարիներու միջոցին, ուստի յիսուն տարուան միջանկեալ անջրպետ մ'անորոշ կը թողու (CIL, VI, 3492, a, b)։

27 Իսկ գալով այն դրամներու՝ որոնք հակադրոշմուած են լեգէոնի մը թուով, ո՞վ չի գիտեր թէ ի՛նչ դիւրութեամբ կը տեղափոխուէին դրամները՝ կորսնցընելով ամէն յիշատակ այն տեղւոյն, ուր գտնուած էին եւ ուսկէ են։ Միայն քաղաքներուն ինքնօրէն դրամները կը ցուցընեն իրենց սկզբնատեղը։

միեւնոյն թիւ մը հասարակաց կը կրէին․ ատոնք իրարմէ կը զանազանուէին իւրաքանչիւրին յատուկ յորջորջանքներով: Վերահասու կ'ըլլանք թէ ատոնց երեքը 6—4 Ն. Ք. տարիներու մէջ կը կենային Ասորիքի մէջ[28]:

Որչափ ալ Ակոստոս չափաւորութիւն կը պահէր՝ իր իշխանութեան ժամանակ «Արեւելքի խնդրին» յարուցած դժուարութիւնները ցուցուցին թէ անբաւական է այն զօրաթիւը․ որով աճեցաւ միութեամբ մ'ալ: Առաջին անգամ Տիբերիոսի ատեն՝ 23ին Յ. Ք.՝ մեր աչաց առջեւ կ'երեւայ Պետութեան զօրակայաններուն ընդհանուր պատկերը[29]․ այս ժամանակին արդէն համաձայնութիւն մը կատարուած է լեգէոններու նահանգներուն վրայ բաշխելուն մասին, եթէ ոչ նաեւ անոնց կայանաւորմանց նկատմամբ[30]:

Այն ատեն Ասորիքի մէջ կը գտնուէին լեգէոններս՝ «Զ Երկաթի» (VI Ferrata),[31] որուն գլխաւոր բնադիրը (կենդրոնական զօրանիստը) Լաւոդիկէի մէջ հաստատուած

---

28 Յովսեպոս, Հ. Հ., ԺԸ, 286 եւն. Պ. Հ., Բ, 66 եւն:

29 Տակիտոսի տուած տեղեկութեանց շնորհիւ. Հմմտ. ի մատենաւորի Տար. Դ., 5· dehinc, initio ab Syria usque ad flumen Euphraten, quantum ingenti terrarum sinu ambitur, quattuor legionibus coercita... (ըստ Թրգմ. Հիւրմիւզեանի, Վենետ. 1872, էջ 173՝ «Իսկ յԱսորւոց մինչեւ ի գետն Եփրատ որչափ ինչ երկիր լայնածաւալ ի ծոցի անդ է... պահէին քառեակ լեգէոնք»):

30 Տես ընդհանրապէս C a g n a t, Legio (ի Dictionn. des antiq. 1899):

31 Տակիտոս, Տարեգ. Բ., 79:

էր, եւ «Ժ[32] Փրետական» (X Fretensis),[33] որ գլխաւորաբար Կիւրա հաստատուած էր։ Մնացեալ երկուքը կը նշանակուին թէ մեծ հաւանականութեամբ ըլլան՝ «Գ Գաղղիական» (III Gallica)[34] ու «ԺԲ Շանթահար» (Fulminata). այս վերջինս ուրիշ տեղ չի յիշուիր՝ բայց միայն Արեւելքի մէջ։ Դժուար է ըսել թէ վերջին երկուքիս զօրանիստներն ո՛ւր էին[35]։

---

[32] Անդ, Բ., 57։

[33] Ուսկի՞ց ծագած է Fretensis յորջորջանքս։ Սիկիլիական Նեղուցէն («Փրետում»՝ Fretum Siculum), որուն ափանց վրայ բանակած էր լեգէոնը Սիկիլեան պատերազմին ատեն ընդդէմ Սեքստոս Պոմպէի (Mommsen, Res gestae, p. 9)։ Ուրիշ մեկնութիւն մ'ալ տրուած է։ Լեգէոնը մասնակից եղաւ նաւային գործողութեանց Տիբերիա լճին վրայ (Clermont-Ganneau, ի Rec. d'archéol. orient., II, 1898, p. 300)։ Բայց fretum կը նշանակէ ծով մը կամ ծովու նեղուց մը՝ ո՛չ թէ լիճ. եւ այս «Նեղուցական» (Fretensis) յորջորջանքն մանաւանդ Աւգոստոսի ժամանակէն ըլլալու է (Ét. Michon, ի Rev. biblique, IX, 1900, p. 104)։

[34] Հաւանօրէն այն լեգէոնը՝ զոր Անտոնիոս Պարթեւաց դէմ խաղացուց (տես վերը)։ Ասկէ զատ երկու ուրիշ լեգէոններ ալ «Գ» թիւը կը կրէին այսինքն՝ «Գ Աւգոստական» (III Augusta), բայց սա Ափրիկէ էր, եւ «Գ Կիւրենական» (III Cyrenaica) եւ սա հաւանօրէն Եգիպտոս մնաց մինչեւ որ Բոստրա Արաբիոյ մայրաքաղաքը՝ փոխադրուեցաւ. Հմմտ. CIG, 5101 (յամի 33). Տակիտ., Պատմ., Ե, 1 (յամի 69). Sayce, ի Proceed. of the Soc. of bibl. arch. 1885, p. 170 (յամի 90)։ Բեռլինի մէկ պրտուն՝ 107 տարւոյ 4 օգոստ. թուականաւ (Griech. Urkunden, 140) կը ցուցընէ որ տակաւին կը բանակէր Աղեքսանդրիոյ մէջ։

[35] Երկրորդին զօրանիստը՝ Վեսպասիանու ատեն՝ Զաւփանէ կը նշանակէ Յովսեպոս (Պ. Հ., Է, 18). բայց այս տեղը չէր տակաւին Ներոնի ժամանակ, կամ յաճախ կը տեղափոխուէր, եւ Յովսեպոս (Բ, 500) կը

*Աւելի ետքը կատարուած առաջին փոփոխութիւնն այն եղած է որ* «Դ Սկիւթականը» (IV Scythica) [36] *լեգէոնը փոխադրուեցաւ Ասորիք՝ Պարթեւաց պատերազմին համար* [37]. *եւ քիչ մ՚ետքը խաւրուեցան՝* «Ե Մակեդոնականը» (V Macedonica)՝ *որ Միւսիայէ եկաւ* [38], *եւ* «ԺԵ Ապողինարեանը» (XV Apollinaris) *որ Պաննոնիայէն հասաւ: Այս լեգէոնները կանչուած էին թշնամւոյն դէմ պատերազմելու համար: Բայց* ԺԲ Շանթահարը *դոյզն ծառայութիւններ մատոյց կոր-*

---

*գրէ՝ ἀναλαβὼν δὲ ἀπὸ τῆς Ἀντιοχείας τὸ μὲν δωδέκατον τάγμα πλῆρες . . . (= Հայ թրգմ. տպ.* 1787, *Բ, ԻԵ, էջ* 194՝ *Կեստոս «առեալ ընդ իւր զբովանդակ գունդն* երկոտասաներորդն *ի քաղաքէն Անտիոքացւոց» ելն): Զարմանալի չէր ըլլար՝ եթէ գունդս նահանգին մայրաքաղաքին մէջ կայան մ՚ունեցած ըլլար:*

[36] *Աս կայանաւորած էր 33ին ի Միւսիա* (CIL, III, 1698) *հմմտ.* CIA, III, 360: *[λεγ.] δ' ἐν Μυσίᾳ (Լեգէոն ի Միւսիա):*

[37] *Տակիտ., Տար., ԺԳ,* 35. *յաւել՝* CIL, XIV, 3608: Ti Plautius Silvanus *(Նուիրակ Միւսիա)*... motum orientem Sarmatar(um) compressit, quamuis parte(m) magna(m) exercitus (= leg. IV Scyth.) ad expeditionem in Armeniam misisset = *«Տիբ. Պղաւտիոս Սիլուանոս (Նուիրակ Միւսիա)... զշարժումն ծագելոյ զՍարմատացւոց նուաճեաց, թէպէտ եւ զմեծ մասն բանակին (= Լեգ. Դ. Սարմատ.) յարշաւանս ի Հայաստան առաքէր»:*

[38] *Տիտոս երբ Պաղեստին կ՚երթար Հրէական պատերազմին համար, նախ հասաւ «Աղեքսանդրիա», ուսկից առաւ* Ե Մակեդոնականն *ու* Ժ Նեղուցայինը (Փրետակեանը): *Արդ Յովսեպոս (Պ. Հ., Դ,* 8 *եւ* 64) *Եգիպտոսի՞ Աղեքսանդրիան կը հասկընայ, որուն լեգէոնները սատարած ըլլան ըստ այսմ պատմութեան ընկճելու: (Այսպէս* Cagnat, Legio :) *Մոմզէն զայն կը ժխտէ է* (Hist. rom., *գղ. թրգմ. ԺԱ,*

բուղոնի[39]. չարաշուք աղէտ մը կրեց Հրէից առաջին ապստամբութեան ատեն՝ Կեստիոս Գաղղոս Նուիրակին հրամատարութեան ներքեւ[40]: Նոյնպէս Դ Սկիւթականը՝ դրեթէ առաջին օրէն ալ՝ դառն հիասթափութիւններ պատճառած էր Պետոսի բանակին մէջ[41]. սակայն լաւագոյն կեցուածք մ'ունեցաւ Կեստիոսի նահանջին ատեն 67ին[42]: Ուստի Հռոմէական կառավարութիւնը բարեբաստիկ ներշնչում մ'ունեցած էր՝ Հայաստանի պատերազմին աւարտելէն ետքը[43], Արեւելքի զօրագունդներուն քանակը լիակատար պա-

---

էջ 125, ծ. 1): Իրօք ալ դիտենք թէ Ժ. լեգէոնը ասորական էր եւ այն ատեն զօրքն՝ այսպիսի ուղեգիծ մ'ընելու համար՝ ապստամբած երկրէն կտրելու անցնելու էր: Շատ աւելի հաւանական է թէ Տիտոս Աքայեան ծովէն իջաւ Իսոսի ծոցը եւ ցամաք ելաւ այժմու Աղեքսանդրեակ տեղը (Իսկէնդէրուն): — Նկատելով այս մեկնակէտը՝ ինքնին կը հասկցուի թէ ինչո՛ւ պատմագիրն աւելի չէ ճշդրտեր այս «Աղեքսանդրիա» որու մասին է խօսքը: Անշուշտ տարօրինակ է որ Տիտոս հանդիպած ըլլայ Սելեւկիա Պիերիա (Seleucia Pieria, Բերիա) գեղեցիկ նաւահանգիստը: Բայց ասիկայ որոշիչ փաստ մը չէ: Ի վերջոյ ոչինչ կ'ապացուցանէ թէ այս երկու լեգէոնները Կորբուղոնի պատերազմէն ետքը՝ Թողուցած ըլլան Ասորիքը:

39 Տակիտ., Տար. ԺԵ, 7, 10, 26:

40 Յովս., Պ. Հ., Բ, 543 եւն: Յետոյ ջանաց գունդը իր քաջասրտութեամբ (Ե, 41 եւ 467) մաքրել այս բիծը, բայց ի զուր՝ ինչպէս վարը պիտի տեսնենք:

41 Տակիտ. Տար. ԺԵ, 7, 11 եւն: parum habilis proelio videbatur (պատերազմի քիչ յաջողակ կ'երեւար):

42 Անդ, 17:

43 Հմմտ. A. v. Domaszewski, Die Dislocation des röm. Heeres im Jahre 66 (ի Rhein. Museum, N. F. XLVII, 1892, p. 207—218).

հելով. միայն Գ Գաղղիականը դարձեալ Միւսիա խաւրուած էր[44]. բայց Մուկիանիոսի անձնական նախանձախնդրութիւնն իւր նուիրակին դէմ՝ պատճառ եղաւ որ դարձեալ Ասորիք խաւրուի նոյնը 70ին[45]:

Այս միջոցին կազմուած էր Կապպադովկիա նահանգը (18ին)՝ գործակալի մը (procurator) ներքեւ, որուն օգնական պիտի ըլլար՝ հարկաւորութեան դէպքին՝ Ասորիքի նուիրակն իւր զինուորական ուժովը[46]: Վերջնոյս պարտականութիւններն երթալով ծանրաբեռն կ'ըլլային. ուստի Վեսպասիանոս թեթեւացուց, Կապպադովկիոյ մէջ ալ ուրիշ նուիրակ մը դնելով: Այս նոր կուսակալը ժառանգեց ԺԵ Ապողինարեան[47] լեգէոնն ու ԺԲ Շանթահար միջակ գունդը, զոր Տիտոս՝ Երուսաղէմի առումէն ետքը,

---

44 Սուետոնիոս, Վեսպ. 6. Տակիտոս, Պատմ. Բ, 74:

45 Տակիտոս, Պատմ. Դ, 36:

46 Chapot, provincia, ի Բառագիրս Հնագիտութեան:

47 Պարթեւաց պատերազմէն վերադարձին 63ին (Տակիտ., Տար. ԺԵ, 25): Գոնէ շատ հաւանական է թէ նոյն ինքն Վեսպասիանոս զանի կայանաւորեց Կապպադովկիոյ մէջ (Սուետոնիոս, Վեսպ. 8՝ Cappadociae propter adsiduos barbarorum incursus legiones addidit, «Կապպադովկիոյ՝ բարբարոսներուն անընդհատ արշաւանաց պատճառաւ լեգէոններ աւելցուց»: Յիշեալ լեգէոնն այլ այս յոգնակի «լեգէոններու» մէջ ըլլալու է): Սակայն ապահովապէս ժամանակ մը բնակեցաւ նաեւ Պանոնիա (Յովսեպ., Պ. Հ., Է, 117). որմէ ետքը՝ անոր Կապպադովկիա գտնուելուն ամենահին վկայութիւնն է Ադրիանու «Ճակատամարտութիւն ընդդէմ Ալանաց» գրքին մէջ եղածը. յաւել՝ CIL, VIII, 7079:

Ասորիքի մեղկ բանակատեղերէն հեռացնելու համար[48], հաստատեց Մելիտինէի մէջ՝ ուրկից այնուհետեւ չհեռացաւ:

Պաղեստինը բաժնուած էր Ասորիքէն, եւ ընդունեցաւ Ժ Նեղուցային լեգէոնը՝ որ Երուսաղէմ հաստատուեցաւ՝ յորջորջուելով այնուհետեւ Էլիա–Կապիտողեան (Aelia Capitolina) անուամբ[49]: Եւ որպէս զի Ասորիքի պահակազօրքը չնուազի՝ յառաջ եկած պակասներուն տեղը լեցուեցաւ՝ նահանգին մէջ պահելով Դ Սկիւթական լեգէոնը եւ հոն մուծանելով ԺԶ Փղաւեան Ամուր (XVI Flavia Firma) լեգէոնը, որ նոր կազմուած էր՝ ինչպէս կրնայ ըսուիլ՝ Գերմանիոյ ԺԶ լեգէոնի (leg. XVI) կենդրոններէն, որ վերջինս միեւնոյն ժամանակ արձակուեցաւ[50]: Կը մնար միայն Ե· Մակեդոնական լեգէոնին համար վերջնական դիրք մը հոգալ· արդ Ամմուսի (Եմմաուս Նիկոպոլիս) արձանագրութիւններն[51] ա՛յնպէս մը կրնային կարծել տալ թէ ժամանակ մ՛այս տեղ բնակած ըլլայ[52], բայց թերեւս լեգէոնը հոն միայն

---

48 Ամէն կողմանէ առնուած՝ Παντάπασιν ἐξήλασεν, կ'ըսէ Եւսեբիոս (Պ. Հ., է, 18):

49 Յովսեփ., է, 17· Դիոն Կաս., ԾԵ, 23: Ասոր Զօրանոցի հաւանական տեղւոյն մասին հմմտ. Wilson, Palestine Exploration Found, 1905, p. 231—232:

50 Դիոն Կաս., ԾԵ, 24:

51 Հմմտ. CIL, III, 6647:

52 Clermont-Ganneau, Archaeological Researches in Palestine, London, I, 1899, p. 468. Բնական էր որ այս երկրին մէջ, ուր Հռոմ այնպիսի զարհուրելի ոսոխներ գտած էր, նախազգուշութեան

ջոկատ մը թողուցած էր՝ երբ Միսիա կը վերադառնար[53]։

Ասոր վրայ եկաւ Տրայանոս ժամանակ Արաբիա նահանգին կազմուիլը․ ասոր պահպանութիւնը յանձնուեցաւ միակ լեգէոնի մը՝ Գ Կիւրենական, որ Եգիպտոսէ կոչուեցաւ։ Վերջապէս Հրէից յետին ապստամբութենէն ետքը՝ հարկաւոր սեպուեցաւ Յուդաստանի մէջ յաւելուածոյ լեգէոն մը․ հոն փոխադրուեցաւ անտարակոյս Զ Երկաթին[54]։

---

համար առժամանակեայ պահուած ըլլան երկու զօրագունդները՝ որոնք լաւագոյն համբաւ ունէին (Յովս., Պ. Հ., Գ, 65 ἦν δὲ τὰ ἐπισημότατα τὸ πέμπτον καὶ τὸ δέκατον = Հայ թրգմ. էջ 221 «որք էին ազնուականք՝ հինգերորդ եւ տասներորդ» եւն։

[53] Mommsen, Eph. epigr., V, p. 620.

[54] Բազմաթիւ ենթադրութիւններ եղած են այս լեգէոնիս ընդհանուր բնադրին մասին՝ Լաւոդիկէն թողլէն ետքը, այդ լքման ժամանակին ալ անծանօթ է։ Մտածած են թէ Հաւրանէ ըլլալու է, ուր գտնուած է (R. Dussaud, ի Rev. archéol. 1897, I, p. 318) արձանագրութիւն որ կը յիշէ Սեւերոս տրիբուն մը, բայց մանաւանդ ասկէ հազիւ քառորդ ժամ հեռու կը գտնուէր լեռ մը Փրանկաց Mons Ferrandus, որուն յորջորջանքը թերեւս ծագած ըլլայ Ferrataէ։ Այն առեն լեգէոնը ժառանգած ըլլալու էր ԺԲ Շանթահար լեգէոնի կայանները․ Ritterling ալ դիմած է անուանակոչութեանց օգնութեան՝ բայց կարծեմ թէ աւելի յաջողութեամբ (ի Rhein. Mus. N. F., LVIII, 1903, p. 633—635)։ Գալիլէի Ledjoun տեղն (ինչպէս համանունն ի Մովաբ եւ Léon ի Սպանիա) յառաջ կու գայ լեգէոն (legio) բառէն, եւ այն տեղ բանակավայրն եղած ըլլալու է Զ Երկաթի լեգէոնին Ա դարուն մէջ․ յետոյ նախնական Կապարկոտնա անունը (CIL. III, 6814, 6816) կ՚երեւայ վերստին Փեւտինգերեան Տախտակին վրայ՝ Կեսարիայի եւ Սկիւթոպոլսոյ մէջտեղ։ Մոմսէն (CIL, III, 6641) կը մտածէր աւելի Բատանէայի մասերը տեղ մը՝ երկու արձանագրութեանց պատճառաւ (մէկը 208 տարիէն՝ CIL, VI, 210․ յաւել՝

*Այսպիսով Ադրիանոսէ սկսեալ եւ շատ երկայն ժամանակաշրջանի մը համար՝ կրնանք յաջորդ ցուցակը ծրագրել.*

Սուրիքի *մէջ՝* Գ Գաղղիականը, *կայանաւորած ի Ռափանէ Պտղոմեայ ժամանակ*[55]. *նոյնը Փիւնիկէ բանակած կը տեսնենք Մարկ. Աւրելիոսի ժամանակ եւ անկէ ետքն ալ*[56]. — Դ. Սկիւթականը՝ *որուն զօրանիստ տեղն*

---

X, 532) որոնք կապ ունին բնիկ Կապիտոլիասէ եղող զինուորներու հետ։ — Կարելի է թէ այս տարբեր կարծիքներն իրարու հետ համաձայնին՝ զանազանելով թուականութեան ժամանակները։ — Եթէ Վատիկանի աղիւսը (laterculus) խնդիրը անորոշ կը թողու՝ նոյնը մասամբ կը լուծէ ընդհակառակն արձանագրութիւնն, որուն ժամանակը դժբախտաբար անծանօթ է, որ հրատարակուած է ի CIL, IX, 5362: · · · trib. leg. VI Ferr. in Syria [P]alaestina (տրիբուն լեգէոնի Զ Երկաթի յՍուրիս Պաղեստինացւոց)։ Պաղեստինի վերակազմութիւնը Ադրիանու ձեռօք բոլորովին անհնար ըլլալու չէր այս փոփոխութեանց մէջ ինչպէս կ'ըսէ Ռոհդէն (Rohden, De Palestina et Arabia Romanis provinciis, Berolini 1885, p. 31)։

[55] Պտղոմ., Աշխ. Ե, 14, 12: *'Ραφανέαι, λεγίων τρίτη* Ռափանէ, լեգէոն Գ.)։

[56] Տիւրոսի դրամներ՝ Վաղերիանու պատկերով (Մեոնէ, Ե, էջ 449, թիւ 738)· CIG, 4544, 4548, 4571· Դիոն Կաս., ԾԵ, 23: Լեգէոնս թերեւս ջոկատ մը թողուցած էր ի Կիւրա, ուր օրինակած եմ հետեւեալ արձանագրութիւնը (BCH, XXVI, 1902, p. 185, Nr. 29)։ *M(ᾶρκον) Λικίνιον (Πρ)όκλον (ἑκατόνταρχον) λεγ(εῶνος) (Γ) Γαλλικῆς Ἰουλία Γαίου θυγάτηρ Σεουήρα τὸν ἴδιον ἄνδρα* (Մարկոս Լիկինոս Պրոկղոս հարիւրապետ Գ Գաղղիական լեգէոնի՝ Յուլիա Գայիոսի դուստր իր այրն Սեւերոսի համար)։ Արձանագրութիւնը՝ հնագրութեան եւ Սեւերա անուան նայելով՝ Գ դարէն ըլլալու է, եւ անտարակոյս՝ որովհետեւ լեգէոնի անունը մրճահար եղծուած չէ, Աւրելիանոսէ յետնագոյն (կամ Հեղիոգաբաղոսէ կանխագոյն, ենթադրելով մոռացութիւն մը)։

*անորոշ կը մնայ, բայց որ անտարակոյս միշտ նահանգին հիւսիսակողմը մնաց*[57]. — *Եւ* ԺԶ Փլաւեան Ամուր *լեգէոնը*[58]:

Պաղեստինի *մէջ՝* Ժ Նեղուցային (Փրիտական) *լեգէոնը, Երուսաղէմի մէջ.* — *Եւ* Զ Երկաթին, *որուն բանակավայրն անորոշ է:*

Արաբիոյ *մէջ՝* Գ Կիւրենեական *լեգէոնը, ի Բոստրա:*

Կապպադովկիոյ *մէջ՝* ԺԲ Շանթաւոր *լեգէոնը՝ ի Մելիտենէ.* — *Եւ* ԺԵ Ապողինեարեանը՝ *ի Սատաղա*[59]:

*Զօրանիստներու ուսումնասիրութեան մէջ տեղ մը տալու ենք հետաքրքրական դիտողութեան մը. պէտք ենք մատնանիշ ընել հռոմէական ոյժերու դանդաղ՝ բայց անընդհատ յառաջխաղաց թափանցումը: Ի սկզբան*

---

[57] *Գումարտակ մը* (vexillatio) *Անտոնինոսի Պիոսի ատեն կ'աշխատէր Սելեւկիոյ Պիերիայի մեծ ջրանցքին. Հմմտ.* BCH, *անդ, էջ* 165, *թիւ* 5, *եւ էջ* 166 = *Վադդինգտըն՝* 2714:

[58] *Վադդինգտըն (ի թիւն* 2071) *կը կարծէ թէ ասոր տեւական բանակավայրը՝ Մարկոս Աւրելիոսի ատեն՝ ըլլալու էր Դամասկոսի շրջակայքը, ինչպէս նաեւ* Գ Գաղղիականինը *(որ սխալ մըն է՝ ինչպէս տեսանք), «որովհետեւ այս ժամանակ երկու լեգէոններս միաժամանակեայ կամ փոխն ի փոխն ջոկատներ կը խաւրեն Փենայի կարեւոր պահակավայրին պահպանութեան համար, որ կեցած էր այն կէտին վրայ՝ ուր հռոմէական ճամբան կը մտնէր Տրաքոնիտիս գաւառը»: Բայց եւ Շամշատ գտած եմ աղիւս մը՝ որ նշանագրոշմս կը կրէ՝* Leg. XVI Fl. (*տես* BCH, *անդ, էջ* 203, *թիւ* 56). *եւ ճիշդ Բ. դարու կէսէն Պտղոմէոս* (Ե, 14, 8) *կը գրէ՝* Σαμόσατα λεγίων Φλαουία (*Շամշատ՝ Լեգէոն Փլաւեան*)*: Ասի միեւնոյն ըլլալու է:*

[59] *Ուղեգր. Անտոնին.* 183, 5:

լեգէոններու ընդհանուր բնադիրները կը գտնուէին Անտիոքայ կողմերը՝ Լաւոդիկէ, Կիւրրա, եւ Աղեքսանդրեակ ([61]) [60]: Հրէական ապստամբութիւնները, Հայաստանի կողմանէ եղած յարատեւ դժուարութիւնները պատճառ կ՚ըլլան՝ իրենց հաւասարակշռութեամբն՝ որ այս գլխաւոր առանցքն իր տեղը պահուի, բայց նաեւ առիթ կ՚ըլլան որ շատ մեծ հեռաւորութեանց վրայ ալ իրական եւ տեւական զօրապահութիւն մը կատարուի. Երուսաղէմ եւ Մելիտենէ զօրանիստ քաղաքներ կ՚ըլլան. սակայն մեծ միութիւնները տակաւին ծովեզերքին բաւական մօտերը կը թողուին. Լեջուն ծովափէն միայն քանի մղոն հեռու է, Հռափնէ դրեթէ նոյնպէս. Մելիտենէի ետեւը կը մնայ Սատաղայի բանակավայրը. Գ Գաղղիականը Փիւնիկէ կը մնայ: Բայց յետոյ աւելի յառաջ կը խաղացուի. լեգէոն մը կը հաստատուի ի Բոստրա, եւ ուրիշ մը կը հաստատուի Ծամշատի մէջ: Տրայիանու ըրած աշխարհակալութիւնքն, զորոնք Ադրիանոս շուտով մը մէկդի թողուց՝ ի բաց առեալ Արաբիա, չէին կրնար

---

[60] Իրրեւ յաւելուած նշանակենք թէ Ադոստոսի ժամանակ Ը Աւգոստեան (VIII Augusta) լեգէոնին հնօրեայ վաստակաւոր զինուորները հաստատուեցան ի Բերիտ (Դիոն Կաս. ԾԱ, 9. հմմտ. Ստրաբ. ԺԶ, 2, 19, էջ 576 C. Eckhel, D. N. V., III, p. 356. հմմտ. Waddington, 1827 եւ 3699):

[61] Զմոռնանք թէ ԺԲ Շանթաւորը հոս խաւրուած էր իբր տեսակ մը պատիժ:

գաղափար մը ծնուցանել Եփրատէն անդին մեծ զօրամասեր հաստատելու:

Այս գաղափարը յերեւան եկաւ Սեպտիմոս Սեւերոսի հետ, որ Պարթեւական լեգէոններու հիմնիչն եղաւ[62]: Գրեթէ միեւնոյն ժամանակ Պարթեւական երեք լեգէոններ կազմուեցան, եւ երեքն ալ մասնակից եղան Կարակալլայի եւ իր յաջորդաց արշաւանքներուն ընդդէմ Պարթեւաց. բայց երեքն ալ՝ խաղաղութեան միջոցներուն՝ չէին կենար Միջագետքի մէջ: Դիոն Կասիոս[63] նոյնը կ՚ըսէ միայն առաջնոյն եւ երրորդին համար: Անոնց մին է անտարակոյս, որ գոնէ ժամանակ մը իր կայանքն (stativa) ունեցած էր յՈւռհայաստան[64], ազատ տեղափոխուելու՝ զինուորական դրից պիտոյից համեմատ: Այսպէս Ա Պարթեւականին մէկ Վերակացուին կը նուիրուի՝ Փիլիպպոսի

---

62 Տես O. Hirschfeld, Die kaiserlichen Verwaltungsbeamten bis auf Diokletian, 3. Aufl., Berlin 1905, p. 396 ff.

63 Դիոն. Կաս. ԾԵ, 24:

64 CIL, XII, 1856 (Վիեննա, Սեպտիմոս Սեւերոսի ատեն)... proc. prov. O[sr]hoenae praefectus legionis Parthicae (գործակալ նահանգին Ուռհայաստանի, վերակացու Պարթեւական լեգէոնի): Հիրշֆելդի հետ կրնայ ենթադրուիլ թէ այս անձը միեւնոյն ժամանակ երկու պաշտօններն ալ կը վարէր, առանց որոյ իրօք ալ երկրորդ տիտղոսը՝ որ աւելի բարձրագոյն էր քան երեւութին, չէր կրնար առաջինէն ետքը կցուիլ ընդհանրապէս: Հիրշֆելդ կը յաւելու թէ այս լեգէոնը թերեւս Ա Պարթեւականն էր (I Parthica). աւելի ճիշդն ըսելով՝ անտարակոյս տակաւին միակ Պարթեւական մը կազմակերպուած էր, երբ արձանագրութիւնս փորագրուեցաւ:

ժամանակները՝ կոն մը, որ գտնուած է ի Բոստրա[65]: Ապամէայի մէկ արձանագրութիւնը կը յիշէ Սեպտիմիոս Զինոստրատոս անուն զինուոր մը լեգէոնիս I[66] Seueriana P. Fel. Fid. Aet., որ յետոյ Թ վաշտին գլխաւոր վերջին բաժնի (princeps posterior) հարիւրապետ եղած էր[67]: Իսկ Գ Պարթեւականին անունը կ'երեւայ դրամներու վրայ, որոնք դրոշմուած են ի Սիդոն՝ Հեղիոգաբաղոսի ատեն[68], կամ ի Ռեսայնա՝ Սեւերոս Աղեքսանդրի եւ Տրայանոս Դեկոսի օրով[69]: Ասոնք կ'ենթադրեն թէ միայն անցողական

---

[65] CIL, III, 99. Աւելի նուազ կը հասկըցուի թէ ինչպէս անձ մը՝ ո՛ր էր «զինուորեալ յՄուաջին Պարթեւական լեգէոնի (στρατευσάμενος ἐν λεγεῶνι Πρώτῃ Παρθικῇ) կրնայ գտնուիլ Լիւկիոյ մէջ՝ Էնոյանդայի (Oenoanda) մօտ (Wiener Denkschriften, 1897, p. 10, Nr. 30 = IGRRP, III, 479), իւր ընտանեաց դամբարանը՝ կամ վասն զի վիրաւոր էր կա՛մ ուրիշ պատճառաւ, որովհետեւ ինք զինք Βαλβουρεύς կը կոչէ, այսինքն Լիւկիոյ Բալբուրա քաղաքէն:

[66] Վադդինկտըն (2643) կը կարդայ II, թերեւս ազդուած Դիոն Կասիոսի (ՀԸ, 34) յիշատակութեամբն, որուն համեմատ Բ Պարթեւականը զարտուղաբար Ապամէա կը գտնուէր՝ երբ Հեղիոգաբաղոսի կողմն ելաւ: Բայց Perdrizet եւ Fossey ճշմարիտ ընթերցուածը յերեւան հանած են (CIL, III, 14393): Բայց ի հարկէ արգելք մը չկար որ երկու լեգէոններս որոշ պարագայի մ'ինքնին միանային. յարակցիլ պէտք էր «ինքնակալ» մ'ամբառնալու համար՝ որ այս ժամանակի զինուորաց բարձրագոյն երազն էր:

[67] Թերեւս ասի նոյն լեգէոնի միակ վաշտն էր՝ որ այն ատեն Ապամէա կը գտնուէր:

[68] Eckhel, D. N. V., III, p. 371; VIII, p. 489.

[69] Eckhel, անդ, III, p. 518.

զօրակայաններ են[70], որ կը մեկնուին նոյն ժամանակի խռովութիւններովը[71]։ Իսկ Բ Պարթեւականին կանոնաւոր կայանը Գ. դարուն Իտալիոյ մէջ էր՝ յԱլբանոյ. իսկ Կարակալլա անոր մէկ բաժինը փոխադրեց Արեւելք, ուր չբնակեցաւ Աղեքսանդր Սեւերոսի իշխանութենէն անդին[72]։

Աւրեղիանու թագաւորութիւնը, որ ա՛յնպէս կարեւոր եղաւ այս աշխարհամասին մէջ կատարուած դէպքերով, այս կազմակերպութեան մասին կարեւոր փոփոխութիւններ չունեցաւ։ Ինքնակալս վերահաստատեց այն բազմաթիւ լեգէոնները[73], որոնք լուծուած էին Գաղիենոսի եւ Զենո-

---

70 Թերեւս Պարթեւական լեգէոններէն մէկուն վերագրելու ենք այն հարիւրապետը՝ որ կը յիշուի Պալմիրայի արձանագրութեան մը մէջ (Վադդինդտըն, 2597 = IGRRP, III, 1046)։

71 Այս լեգէոնը ա՛լ չի յիշուիր «Տեղեկութիւնք Աստիճանաց» (Notitia Dignitatum). բայց սովորաբար կ'ընդունուի O. Seeckի հանճարեղ ենթադրութիւնը թէ սոսկ պատահական աներեւութացում մ'ըլլայ։ Այս լեգէոնին վերագրելու է այն Թերոյթը՝ որ կը տեսնուի Ուռհայաստանի Ապատնա տեղը բանակող զօրագնդին մասին (Not. Dign., Or. XXXV, 25)։

72 Առ՛վ է որ իր Գ վաշտը ներկայ է ի Նամարա (Վադդինդտըն, 2279. յիշատակութիւն վաշտին մէկ զինուորին՝ անդ 2280)։

73 Նաեւ Գ Գալղիականը, որ անկէ յառաջ զօրացանկերէն ջնջուած էր, Հեղիոգաբաղոսի իշխանութեան ատեն՝ յեղափոխութեան ժամանակ իր նուիրականին հետեւած ըլլալուն համար (Դիոն Կաս. ՀԹ, 27)։ Անոր անունը մրճահար եղծուած է յիշատակարանաց մեծագոյն մասին վրայ (Վադդինդտըն, 2438, 2445 եւն. CIL, III, 206)։ Անոր զինուորաց մէկ մասը խառնուեցաւ Գ Աւգոստեան լեգէոնին մէջ յԱփրիկէ (CIL, VIII, 2904, translatus ex leg. III Gallic(a)

բեայի գժտութեան ժամանակ, որով եղաւ Նորոգիչ բանակի (Restitutor exerciti) ինչպէս կը յորջորջեն զինքը դրամները[74]: Միայն Պաղեստինի Զ Երկաթիճ թերեւս արդէն անհետ եղած էր. գոնէ իւր մասին այլ եւս որ եւ է լուր չկայ այս ժամանակ: Եւ սովորութիւն է ըսել թէ ասոր յիշատակ մը կը պակսի Սեւերոս Աղեքսանդրի օրէն ի վեր: Բայց ասի այնպէս բոլորովին ճիշդ չէ. իւր Նշանագրոշմը կը տեսնուի Դամասկոսի մէկ դրամին վրայ՝ զոր De Sulcy կ'ընծայէր Յուլիա Մամէայի՝ մօր յիշեալ իշխանին, բայց զոր Վ. Վռոթ[75] կը համարի թէ վերստին ընծայելու է Ոտակիլիա Սեւերայի՝ կնոջ Փիլիպպոսի Երիցու: Ասով քանի մը տարիներ շահուած կ'ըլլան:

Սակայն բանակս աճեցաւ միութեամբ մ'ալ՝ Ա Լիւրիկէական (I Illyriaca). զօրահան եղած Իլլիւրիացիներէ, զորոնք Աւրեղիանոս Արեւելք խաղացուցած էր Զենո-

---

«փոխադրուած Գ Գաղղիական լեգէոնէ», 3049, 3113, 3157): Յետոյ Աւրեղիանոս զանի վերահաստատեց՝ իւր գործողութեանց համար Արեւելքի մէջ, եւ այն ժամանակ հակադարձ փոխանցում կատարուեցաւ (անդ, 4310: Jul. Valens, vet(eranus). natio(ne) Sur(us), prob(atus) in III Galli(ca), missus de leg(ione) III Augusta, «Յուլ. Վաղէս, հինօրեայ զինուոր, ազգաւ Սուրեցի, վերստին հաստատեալ ի Գ. Գաղղիական, տարաքեալ ի լեգէոնէ Գ Աւգոստեան»:

[74] H o m o, Essai sur Aurélien, Paris 1904, p. 200 ff.

[75] W. W r o t h, Catalogue of greek coins... of Syria, p. 286, Nr. 25.

բիայի դէմ[76]. Լեգէոնն մնաց Փիւնիկէի դքսին (առաջնորդին) տրամադրութեան տակ[77]:

Այս պէսպէս զօրագնդերէս ոմանք փոխ առնուեցան Պետութեան ուրիշ մասերու մէջ մղուած գործողութեանց համար[78]: Բայց այսպիսի դիպաց ցանցառութիւնն անգամ մ'ալ աւելի կը ցուցընէ թէ Հռոմ այս կողմէն ինչպիսի զարհուրելի նկարագրաւ դրացիներ ստացած էր:

Ուրիշ խնդիր մը մեզի համար մեծագոյն օգուտ մ'ունի, այն թէ՝ այս լեգէոններուն մէջէն որո՞նք մասնակցեցան Պարթեւաց (կամ Պարսից) դէմ եղած արշաւանաց կամ

---

[76] Ritterling, Zum römischen Heerwesen des ausgehenden dritten Jahrhunderts (Festschrift zu O. Hirschfelds 60. Geburtstag, Berlin 1903, p. 345—349).

[77] Cagnat, Ann. epigr. 1900, Nr. 29: π(ρας) π(όσιτον) λεγιώ(νων γ') Γαλλικῆς κάὶ α Ἰλλυρικῆι (առաջնորդ լեգէոնի Գ Գաղղիական եւ Ա Լիւրիկէական). յաւել՝ CIG, 2941:

[78] Զ Երկաթին կը զարկէ Դակիացւոց դէմ (Տակիտ., Պատմ. Գ., 46) եւ Բ. դարուն ջոկատ մը կը խաւրէ Մաւրիտանացւոց դէմ (Cagnat, l'Armée rom. d'Afrique, p. 41 ff.: — Ե Մակեդոնական, Ժ Ներուցայինն եւ ԺԲ Շանթաւորը՝ մեկնութեան մը համաձայն՝ մասնակցեցան Աղեքսանդրիայի ապստամբութիւնը նուաճելուն (տես վերը՝ ծանօթութիւն 38): Ըստ Քսիփիլինի (Դիոն Կաս. ԿԱ, 9) վերջին յիշուածը նաեւ Կուադներու դէմ քաշած է Մարկ. Աւրեղիանու ատեն: Գ Կիւրենեականը թերեւս ջոկատ մը խաւրեց Մաւրիտանացւոց ապստամբութեան ժամանակ՝ Անտոնինոսի Պիոսի օրով (Cagnat անդ, էջ 104). վերջապէս Դ. դարու սկիզբը զումարտակ մը («դրօշաւորութիւն» մը) խաւրուած կ'երեւայ Եգիպտոս՝ Ա Լիւրիկէականին մէկ զումարտակին հետ (Cagnat, Ann. epigr. 1894, թիւ 163. անդ՝ 1900, թիւ 29):

*Հրէից դէմ կրկին պատերազմաց։ Այս մասին մեր գիտցածը կամ կռահել կրցածը գծուած է հետեւեալ տախտակին մէջ։*

Պատերազմ Կորբուղոնի եւ Պետոսի ի Հայաստան՝

Գ Գաղղիական[79] (*Տակիտ. Տար. ԺԳ*, 38—40· *ԺԵ*, 26 *եւն*)։

Դ Սկիւթական (CIL, XIV, 3608)։

Ե Մակեդոնական, Զ Երկաթի (*Տակիտ.*, *Տար. ԺԵ*, 7, 26)։

Ժ Նեղուցային կամ Փրետական (*անդ*, *ԺԳ*, 8, 35· *ԺԵ*, 10)։

ԺԲ Շանթաւոր, ԺԵ Ապողինարեան (*անդ*, *ԺԵ*, 25, 26)։

Հրէաստանի Պատերազմին համար[80]՝

*Հազար հոգի* Գ Կիւրենականէն (*Տակիտ. Պատմ. Ե*, 1· *Յովսեպոս*, *Պ. Հ.*, *Ե*, 44)։

*Երկու հազար հոգի* Դ Սկիւթականէն (*Տակիտ.*, *Տար. ԺԵ*, 17)։

Ե Մակեդոնական (*Յովսեպոս*, *Պ. Հ.*, *Գ*, 8 *եւ* 65)։

Ժ Նեղուցային (*Յովսեպ.*, *Պ. Հ.*, *Գ*, 8· *Դ*, 13 *եւն եւն*. CIL, X, 6659)։

---

[79] *Այս այն տեղն՝* Զ Երկաթի *լեգէոնի հետ՝ ամէնէն ընտիրն էր* (*Տակիտ.*, *Տար. ԺԵ*, 26· sextum ac tertiam legiones integrum militem et crebris ac prosperis laboribus exercitum. *Թրգմ. Հիւրմ. «զվեցերորդն եւ զերրորդ՝ ամբողջ եւ ի յաճախաւոր յարձակմունս փորձ եւ յաղթող՝ էած ի Հայաստան»*)։

[80] R. Cagnat, l'Armée romaine au siège de Jérusalem (*ի* Rev. des étud. juiv. XXII, 1891, p. XXII—LVIII).

ԺԲ Շանթահար (*Յովս.*, *Պ. Հ.*, *Բ*, 500 · *Ե*, 41, 467) :
ԺԵ Ապողինարեան (*Յովս.*, *Պ. Հ.*, *Է*, 19) :

*Հազար հոգի* Ի Դիոտարեանէ (XX Deiotariana, *Յովսեփ.*, *Պ. Հ.*, *Ե*, 44 · *Տակիտ.*, *Պատմ. Ե*, 1 · Eph. epigr. V, p. 577) :

Տրայանոսի Պարթեւական Պատերազմը՝

*Ջոկատ մը* Գ Կիւրենեականէ? CIL), X, 3753) :

Գ Սկիւթական (CIL, III, 10,336) :

Զ Երկաթի (CIL, X, 5829) :

*Ջոկատ մը* Ժ Նեղուցայինէ (CIL, VI, 1828) :

ԺԵ Ապողինարեան ? (*Ասոր ժամին վկայութիւն չկայ, բայց հաւանական է. նախ Պանոնիա էր, եւ Ադրիանու ատեն Կապպադովկիա կը գտնուի. Տրայանու պատերազմը վերջին տարին էր՝ Արեւելք գտնուելու*) :

ԺԶ Փղաւիան Ամուր (CIL, X, 1202) :
Վերջին Հրէական Պատերազմ[81]՝

*Ջոկատ մը* Գ Կիւրենեականի (CIL, XIV, 3610 · l'Année epigr. 1895, Nr. 77) :

*Ջոկատ մը* Գ Գաղղիականի (CIL, XII, 2230) :

---

81 *Քանի որ Յովսեփոսի նման ա՛յնպէս մանրապատում պատմութիւն մը չկայ Տիտոսի պատերազմին համար, չենք գիտեր ճշդիւ թէ ի՛նչ զօրագունդներէ բաղկացած էր այն բանակը՝ որ Բարկոխեբայի ապստամբութիւնն ընկճելու գնաց։ Ա. Դարմստետեր կանխաւ ուսումնասիրած է այս խնդիրը* (Arsène Darmesteter, *ի* Rev. des étud. juiv., I, 1880, p. 42—55).

Դ Սկիւթական (CIG, 4033, 4034. *խնդրական են. Հմմտ. Ծիւրէր, անդ, էջ* 689, *ծն.* 117)։

*Ջոկա՞տ մը* Է Կղաւդեանի (VIII Claudia, ?, *տես* CIL, V, 3733)։

Ժ Նեղուցային (CIL, III, 7334)։

*Ջոկա՞տ մը* Ժ Երկլեգէոնի (X Gemina, ?. *տես* CIL, VI, 3508)։

ԻԲ Դիոտարեա՞ն (?. *Այս լեգէոնը անհետ եղած էր Ադրիանու ընդդէմ Հրէից մղած պատերազմին ատեն, ըստ* Tromsdorff, Quaestiones ad historium legionum spectantes, Lips. 1896, p. 92 ff. *որովհետեւ Բ. դարու սկիզբէն ի վեր լուր չկայ սորա մասին. եւ միւսներուն մասին կ'ըսուի՝ ի պարթեւական պատերազմին Տրայանու. ճիշդը չի գիտցուիր*)։

*Թերեւս նաեւ* Զ Երկաթին *եւ ջոկատներ* Ե Մակեդոնականէ *եւ* ԺԱ Կղաւդեանէ (*Ծիւրէր, էջ* 687, *ծն.* 116)։

Պարթեւական Պատերազմ Մարկ. Աւրելեանու եւ Վերոսի[82].

---

[82] *Բայց նախ կա՞ր Պարթեւական Պատերազմ մը Անտոնինոս Պիոսի ժամանակ։ Հմմտ.* CIL, IX, 2457: L. Neratio C. f. Vol. Proculo, leg. leg. XVI Flaviae Fidel., item misso ab Imp. Antonino Aug. Pio ad deducendas vexillationes in Syriam ob bellum Parthicum (*Լ. Ներատիոսի Գ. որդւոյ Վոլ. Պրոկուղի, ի լեգէոնէ ԺԶ Փղաւեան Հաւատարիմ, այսր առաքեալ յինքնակալէն Անտոնինեայ Աւգ. Պիոսէ, առ ի տանել զդրօշակաւորութիւնս յԱսորիս վասն Պարթեւական Պատերազմին*)։ *Բորգեզի* (Borghesi, *Մատենագրութիւնք, Հատ. Ե, էջ* 373—378) *այս չփոթութիւնն յարուցանող ընագիրը մեկնած է ենթադրե—*

Զ Երկաքի (°· CIL, V, 955· — *Թուականը նորոգուած է*)։

*Այս վայրկենէս սկսեալ կ'երեւայ թէ Ասորիքի զօրագունդներն ա՛լ չեն տար բանակին գլխաւոր զօրաբաժինը. Հռոմ Արեւմուտքի զօրագունդները կը կանչէ, եւ յատկապէս լաւագոյն հեծելազօր մ'ունենալու համար՝ մեծամեծ փոխառութիւններ կ'ընէ Դանուբեան գնդերէն*[83]*։ Ուստի կ'երեւան մասամբ կամ ամբողջովին* (°) *հետեւեալք՝*

Ա Մինեռուական (I Mineruia, CIL, III, 1457; VI, 1377, 31640).

Բ Օգնիչ (II Adiutrix, *տես* Rev. archéol. 1893, I, p. 396. Nr. 88, *հմմտ.* CIL, VIII, 18893).

Ե Մակեդոնական։

*Ջոկատ մը* Ժ Երկլեգէոնի (X Gemina, *հմմտ.* Ritterling, De leg. Rom. X. Gemina. Lipsiae 1885, p. 59).

ԺԱ Կղաւդեան։

Առեղծուածային արշաւա՞նք Կոմմոդոսի օրով ի Հայս (°).

---

*լով թէ յիշեալ իշխանին օրով դժուարութիւններ կային Վաղարշի Գ. հետ, բայց վերջինս վախցած է Անտոնինոս Պիոսի պատերազմի պատրաստութիւններէն՝ եւ ետ կեցած յարձակումէն։*

[83] *Հմմտ.* CIL, VI, 32933: ...praef. vexillation(is) eq(uitum) Moesiae Infer(ioris) et Daciae eunti (*այսպէս*) in expedition(em) Parthic(am)... *«Վերակացու գունդապետի հեծելոց Ստորին Միւսիոյ եւ Դակիոյ որ երթայր ի Պարթեւական Պատերազմ»։* — V. Bogdan Filow, Klio (= Beiträge zur alten Geschichte), VI. Beiheft, 1906, p. 75, 80, 85—86.

*«Դրօշաւորութիւն»* *մը* ԺԵ Ապողինարեանի (CIL, III, 6052 · *արձանագրութիւն մ՚որ գտնուած է Էջմիածնի մօտ*)։

*Այս իշխանէս ետքը չափազանց դժուարին կ՚ըլլայ նշանակել պատերազմաց մասնակցող լեգէոնները։ Շատ ցանցառ են արձանագրութիւնք՝ որ «Պարթեւական Պատերազմ» կամ «Պարսկական Պատերազմ»* (bellum Parthicum *կամ* Persicum) *յիշատակեն, եւ եղածներուն ալ անկարելի է ժամանակը ճշդրտել լիովին։ Սեպտիմոս Սեւերոս Նիգերի դէմ խաղացուց յականէ յանուանէ* Ա Միներուեան *լեգէոնը*[84]. *եւ նոյնը թերեւս գործածեց Պարթեւաց դէմ։ Արադոսի*[85] *մէկ արձանագրութեան մէջ կը յիշուի հարիւրապետ մը հինգ լեգէոններու, որոնց երեքը սովորաբար Ասորիքի մէջ էին, միւս երկուքն են՝* Ի Վաղերեան Յաղթող (XX Valeria Victrix) *եւ* Ա Միներուեան · *որոնք այս նահանգն եկած էին անտարակոյս կա՛մ Սեպտիմոս Սեւերոսի կա՛մ յաջորդ պատերազմին համար։*

Պարթեւական Պատերազմ Կարակալլայի՝

Գ Կիւրենեական (CIG, 4610, 4651? — *այս ժամանակէն ըլլալու է տապանագիրը, որ հրտ. Վատդինգտըն*, 1927)։

Բ Օգնիչ[86] (CIL, III, 3344, 10,572)։

ԺԴ Երկլեգէոն (XIV Gemina, CIL, III, 4480).

---

[84] Cagnat, Ann. epigr. 1890, Nr. 82.

[85] CIL, III, 186. *հմմտ.* Addit., p. 972

Ե Մակեդոնական (Տ. CIL, III, 6189) *եւ Թերեւս Միւսիայի ուրիշ լեգէոններուն դրօշաւորութիւնները* (Ritterling, *ի* Rhein Mus., N. F. LIX, 1904, p. 195).

Պարսկական Պատերազմ Աղեքսանդր Սեւերոսի՝

*Զոկատ մը* Զ Կղաւդեանի (Տ. *տես* Wr. Jahreshefte, VIII, 1905, Beiblatt p. 19—20, Nr. 58)[87].

Պարսկական Պատերազմ Գորդիանու Գ՝

*Զոկատ մը* Ա Օգնիչի (CIL, III, 196)։

Պատերազմ ընդդէմ Զենոբիա[88]՝

Գ Գաղղիական (*Վարք Աւրելիանու* 31, 7)։

---

86 *Թերեւս նաեւ երկու Օգնիչք* (Adiutrices) *լեգէոնները*։ Domaszewski (*ի* Röm. Mitth. XX, 1905, p. 158, n. 1) *այս լեգէոններուն եւ Կարակալլայի պատերազմին կը վերագրէ յաջորդ արձանագրութիւնը* (BCH, XXV, 1901, p. 59, Nr. 205): ἀννωναρχήσα(ς) λεγιῶσι ά καὶ β' διόδοις (ἐπὶ?) Πέρσας, *նպարապետ լեգէոնաց Ա եւ Բ՝ որ երթային (ի վերա՞յ Պարսից). ուր* G. Mendel *ակնարկութիւն մը կը տեսնէր պարթեւական կրկին լեգէոններուն. չէր հասկցուեր այն ատեն թէ ինչպէս ատոնց առաջինը (տես վարը) Բիւթինիա անցած ըլլալու է. իսկ «Պարսից» մասին տես յաջորդ ծանօթութիւնը*։

87 *Հոս կը կարդանք* expeditio Parthicam), *բայց Պարթեւաց եւ Պարսից անունները երկայն ժամանակ իրարու հետ կը փոխանակուէին. Համմ.* V. Gardthausen, Die Parther in griech.-röm. Inschriften (Orientalische Studien Th. Nöldeke zum 70. Geburtstage gewidmet, hrsg. von G. Bezold, Giessen 1906, II, p. 839—859) *տես էջ* 855 *եւն*։

88 *Տես* Léon Homo, Essai sur le règne de l'empereur Aurélien, Paris 1904, p. 84 ff.

Ուրիշ բացորոշ վկայութիւն մը չկայ։ Զոսիմոս (Ա, 52) կը նշանակէ Դանուբեան զօրագունդերու եւ Ասիոյ նորէն ձեռք ձգուած նահանգաց զօրաբաժիններու մասնակցութիւնը։ Նոյնպէս էր՝ երբ յետոյ Աւրելիանոս Պարսից դէմ արշաւից[89]։

Արեւելքի լեգէոններու այս անյիշատակ դերը կը մեկնուի անո՛վ որ անոնք գրաւոր աղբերաց քով կարծես թաղուած են աղօտ կիսաստուերի մը մէջ. ոչինչ կը յիշուի հոն՝ որ կարենայ լուսաւորել լեգէոնականաց տարազին ու սպառազինութեան միշտ վիճաբանութեան նիւթ եղող խնդիրը։ Նաեւ Յովսեպոսի տուած տեղեկութիւնները տարտամ են ու կցկցուն. «Հետեւակները, կ՚ըսէ, սաղաւարտ ունին ու զրահ. ամէն մէկը երկու սուր կը կրէ. աջ կողմինը աւելի կարճ է եւ տեսակ մը դաշոյն է։ Ընտիր զինուորները՝ որ կ՚ընկերանան սպարապետին զինուած են նիզակով ու վահանով։ Հեծեալք երկայն սուր մ՚ունին աջ կողին, նիզակ մը՝ ձեռքը եւ վահան մը ձիուն կողին վրայ կախուած, եւ կապարճ մը՝ երեք կամ աւելի լայնասլաք արդներով։ Զրահ ու սաղաւարտ՝ հետեւակաց նման[90]»։ Արդ այս տեղ խօսքը ա՞յն

[89] Homo, p. 322 ff.

[90] Յովսեպ., Պ. Հ. Գ, 93—97։ (Ստ. Լեհացւոյ խանգարած հայ թարգմանութիւնն այսպէս ունի այստեղը՝ տպ. 1787, էջ 224՝ «Հետեւակք զրահիւք եւ սաղաւարտօք պարածածկեալք, եւ յերկուս ազդերս զսուսերս կապեալք. ի ձախմէ սուսերն է ձիգ, իսկ յաջմէ թզաչափ։ Եւ որք շուրջ զզօրապետաւն են ըն-

լեգէոնակաց մասին է՝ որ հռոմէական քաղաքացի էին: Ձենք գիտեր: Մեր յիշատակարանները կը վկայեն միայն այն մարտագիտութեան եւ սպառազինման մասին՝ որ սովորական չէին լեգէոններուն. ուստի աղեղնաւորներ ու պարսաւորներ երեւան կու գան արդէն առաջին ժամանակներէն սկսեալ[91], իբրեւ անհրաժեշտ եւ նախաւոր տարերք Արեւելից պատերազմներուն մէջ. եւ սակայն զասոնք մատակարարողը սատար–

---

տիր հետեւակք, նոքա վահանս եւ գեղարդունս կրեն: Իսկ այլքն ունին նիզակս...: Եւ հեծելոց յաջոյ ազդերէ սուսեր երկայնաձիգ, եւ գեղարդն ի ձեռին, եւ դրահ ի կուշտ երիվարի կախեալ, եւ երեք կամ աւելի լայնասլաք նետք ի կապարճի՝ ոչինչ զանազանեալք մեծութեամբ ի նիզակաց: Իսկ սաղաւարտս եւ զրահս հետեւակաց նմանս ունին»): Ցաւե՛լ երկու ակնարկութիւններ, մին՝ Հռոմայեցւոց շատ ծանր սպառազինութեան մասին, որ խափանարար եղաւ Կեստիոսի նահանջին (Գ. Հ., Բ, 543 եւն). եւ միւսը (անդ՝ Է, 85 եւն) սպայի մ՚ոտից աղանելեաց մասին, որոնց գամերէն ինկաւ:

91 Ղուկուղղոսի բանակին մէջ ասոնցմէ հազար հոգի կար (Պղուտարքոս, Ղուկ. 27): Անտոնիոս պարսաւորներով ու նետողներով (այսինքն գլխաւորաբար աղեղնաձիգներով) կազմեց իր վերջապահաց գունդն եւ իր բանակին երկու թեւերը, զոր քառակուսի յարդարեց (Պղուտարք., Անտ. 42): Վենտիդիոս խիզախեց Պարթեւաց դէմ գլխաւորաբար պարսաւորներով (Դիոն Կաս. ԽԹ, 20), որովհետեւ «պարսերը շատ աւելի հեռուն կը նետեն քան աղեղները»: Եւ ըստ Վեգետիոսի (Ա, 16) պարսերը շատ աւելի վտանգաւոր կ՚ընեն վէրքերն եւ զրահներն անոնց չեն դիմանար: Երբ Կաւատ (503ին) Եդեսիոյ վրայ յարձակեցաւ, քաղաքին տղաք ու երիտասարդք պարսաքարերով կը կռուէին (Եսու Սիւնակեաց, Ժամանակագր. 61): Պարսիկներն ալ պարսաւորներ ունէին, օրինակի համար Ամդայ պաշարման ատեն (Ամ. Մարկել., ԺԹ, 5, 1):

ԾԵՐԾ *են* (auxilia, *օժանդակք*) *եւ անկանոն գնդերը։*

*Նոյնչափ հետաքրքրական է գիտնալ թէ ո՛ր աշխարհներէն զինուորակոչ կ՚ըլլային գլխաւորաբար՝ Արեւելքի լեգէոնականները։ Այս մասին արձանագրութիւնք գրեթէ առանց տեղեկութեանց կը թողուն զմեզ. տապանագիրներուն մեծ մասը կը լռեն մեռելոյն ազգին* (natio) *եւ տան* (domus) *նկատմամբ, եւ այս լռութիւնը պէսպէս մեկնութիւն կրնայ ընդունիլ։ Այն հինօրեայ զինուորին՝ որ վերջնականապէս հաստատուած ու ընտելացած էր Ասորիքի մէջ, ա՛յլ եւս չէր յիշուեր ընտանիքն ու ծննդավայրը։ Եւ պարզ զինուորի մը համար՝ որ դիպուածաբար մեռած էր առանց ընտանիքի եւ հեռուէն եկած, իւր ընկերակիցները կը կանգնէին գերեզմանաքար մը, որ իւր անունն ու վիճակը կը նշանակէր՝ առանց ուրիշ տեղեկութեան։ Ի սկզբանէ վեր արձանագրութիւնը կրնար յունարէն ըլլալ նաեւ լատինախօս անձի մը համար։ Վերջապէս մերձեցընենք հոս ալ լեգէոնականաց զինուորակոչութեան ընդհանուր տեսութիւնը. եթէ Արեւելքի մէջ ալ տեղական կ՚ըլլար՝ ինչպէս ուրիշ տեղեր՝ իբր Բ. դարու կէսէն սկսեալ մինչեւ Գ. դարու կէսը*[92], *դիւրաւ կը հասկըցուի թէ այնպիսի յիշատակութիւն մը սովորաբար կ՚ան-*

[92] *Եւ ճշդիւ մեր հաւաքմանց — ոչ քրիստոնէական — արձանագրութիւններուն մեծագոյն մասը Անտիոքիոնեներու եւ Սեւերոսներու շրջանէն են։*

տեսուէր։ Հեռաւոր երկիր մը մեռնող զինուորին քաղաքը ոչ զոք կը շահագրգռէր, եւ այլուստ Ասորիքի մէջ քաղաքաբաշխական անափառութիւնն երբեք չհասաւ այն բարձրութեան, որուն հասած էր Փոքր Ասիոյ մէջ[93]։

93 Ահաւասիկ քանի մ'օրինակներ՝ զորոնք քաղած եմ, եւ որոնք ընդհանուր զինուորագրական կանոնը կը հաստատեն կամ անոր կը հակասեն՝ ըստ իւրաքանչիւր պարագայի. L. Philocalus, L. f., Col., Valen., Gadara (domo?), mil. leg. X Fr. (ի CIL, III, 6697, գտեալ ի Բիբլոս). — աշտէաւոր մը (hastatus) Ժ Փրիտակյան լեգէոնի, Նիկոմեդիայէն (domo Nicomedia, տես Bull. dell' Istit., 1884, p. 27). — ԺԶ Փղաւեան Ամուր լեգէոնէ. զինուոր մ'ինք զինք Աթենայի կ'ըսէ (Վադդինկտոն, 1492, գտեալ ի Մոպսուեստիա)։ — Ա Պարթեւականին ծառայութեան մէջ եղող անձ մը Լիւկիոյ Բալբուրա քաղաքը ծնած է (Wiener Denkschriften, XLV, 1897, p. 10, Nr. 30). նոյն լեգէոնէն կամ Գ Պարթեւականէն ուրիշ մ'իր որդւոյն կոթող կը կանգնէ (Sithlington Sterrett, Wolfe expedition, p. 76, Nr. 131) յԱրտանադա Կիլիկիոյ, ուսկից էր թերեւս ծննդեամբ. — Գ Կիւրենականէն զինուոր մը ծնած է ի Բեսոս (nat. Bessus, Վադդինկտոն, 1956). — Նամարայի մէկ արձանագրութիւնը կը յիշէ Նաբաթացի մը՝ որ նոյն լեգէոնին հեծելազօրու մէջ կը ծառայէր (անդ, 2271). — եւ ուրիշ մ'«ի գանձաց լեգ. Գ. Կիւր.» (a quaestionari(i)s leg. 111 Cyr) որ կը նուիրէ ձօն մ'առ Զեւս Ամմոն (Ewin, Palest. explor. Fund, 1895, p. 136, Nr. 62), ծննդեամբ Եգիպտացի մ'ըլլալու է. — Գ. Կիւրենականին զինուոր մը մինչեւ անգամ խորհրդականի տիտղոս կը կրէ արձանագրութեան մը մէջ՝ որ գտնուած է ի Էլ-Մզերիբ՝ Հաւրանի մէջ (BCH, XVI, 1897, p. 43, Nr. 17). եթէ արձանագիր քարը իւր տեղը (in situ) չէր իսկ՝ գոնէ շատ հեռուն չէ տեղափոխուած. — Ապամէայ մէջ դրօշակիր մը signifer, (լեգէոնի°) ծնած է ի Սուրիա(CIL, III, 6700, Բ. դար)։ — Տեղական զինուորականութիւնը բնականապէս չի գործածուիր աստիճանաւորաց համար. ուստի՝ Մ. Յուլիոս Մաքսիմոս, Մանդուացի մը, հարիւրապետ է

Բաց աստի՝ տեղւոյ վրայ իսկ զինուորակոչ ընելու սովորութիւնն ուրիշ տեղերէ. շատ աւելի կանուխ կրնար գործադրական եղած ըլլալ այս երկիրներուս մէջ, որոնցմով հոս կը զբաղինք: Եւ կ՚արժէ որ այս խնդրոյն վրայ քիչ մը յամենք: Պիտի տեսնուի թէ զինուորական հաստատութեանց զարգացումն Արեւելքի մէջ արագօրէն կը կը կատարուի[94]. կրնայ ըսուիլ թէ Ասորիք այս կողմանէ կանխած է Պետութեան բոլոր միւս մասերն:

Երբ Աւգուստոս նոր հիմերու վրայ հաստատեց հռոմէական աշխարհքը, Ասորիք — Եգիպտոսի հետ — այն նահանգներէն էր, որոնք կը հռչակուէին իբր անխաղաղական՝ այսինքն ուրեմն ոչ–ինքնակալասէր, եւ Հռո–

---

Գ. Կիւրենականին (Վադդինգթըն, 1955). — Դ. Գադդիականին հարիւրապետ մը իւր կինը կը թաղէ յԱնկիւրիա (Arch.-ep. Mitth. aus Öst.-Ung., IX, 1885, p. 114, Nr. 6). Թերեւս ինքն ալ Անկիւրիացի էր. — ԺԲ Շանթահար եւ Դ Սկիւթական լեգէոններուն միջնածիրանեւոր տրիբուն մը քաղաքացի էր Սագալսոս քաղաքի Պիսիդիոյ (Wiener Denkschriften, XLIV, 1896, VI, p. 9): Զարտուղարար՝ կայ նաեւ տրիբուն մը, որ ծննդեամբ Փինայէ էր Տրաքոնիտիս գաւառին մէջ (Վադդինգթըն, 2533):

94 Մոմմսէն իւր հռչակաւոր եւ սքանչելի մէկ երկասիրութեան մէջ (Mommsen, Das römische Militärwesen seit Diokletian, ի «Hermes», XXIV, 1889, p. 195—279). ուսումնասիրած է այս բարեշրջութեան պատճառները ու պէսպէս փոփոխումները (փուլերը): Իրմէ փոխ առած եմ մէկէ աւելի հիմնական դիտողութիւններ. բայց կարծեմ թէ անոնց վրայ կրնանք աւելցընել քանի մ՚ուրիշներ ալ՝ զորոնք մասնաւորապէս Արեւելեան սահմանագլխոյն իրաց վիճակը մեզի կը թելադրէ:

մէն շատ բանի մէջ մեծապէս հեռու։ Մերձաւոր Փոքր-Ասիան կը մնար կա՛մ զօրավընդերէ թափուր, կա՛մ ստորակարգեալ անբութեանց դրութեամբ մը պահուած, որոնք ինքնին կը հոգային իրենց սահմաններու ապահովութիւնը։ Ասկից կը ծագէր յատուկ դժուարութիւն մը զօրաբաժիններ փոխադրելու եւ աւելի աղխատաբերօրէն ծանր ձգտում մը դէպ ի այն ոճը՝ որ յետոյ Բ. դարուն պիտի ընդհանրանար։ Կրեմոնայի ճակատամարտին մէջ Վեսպասիանոս խօսք մը կ'ուղղէ իր պրետորականաց. յետոյ, կը պատմէ Տակիտոս[95], ամէն կողմանէ աղաղակ բարձրացաւ եւ ծագող արեւը (այսպէս սովորութիւն Ասորւոց աշխարհի մէջ) երրորդ լեգէոնականք ողջունեցին։ Ուրեմն Գ Գալղիական լեգէոնի զինուորները սովորութիւն ունէին ծագող արեւը ողջունել. այսպէս նաեւ Թասրով՝ երբ յանպատրաստից առաւ Անտիոքը, գնաց արեւածագին լոգանք ընելու Իսոսի ծոցին մէջ՝ լքեալ Սելեւկիա Պիերիայի առջեւ[96]։ Արդ յիշեալ լեգէոնը նոր փոխադրուած էր Միւսիա՝ Կորբուղոնի պատերազմին աւարտելէն ետքը։ Կրնա՞նք ուրեմն կարծել թէ նոյնը կազմող զինուորները, թէպէտ եւ տարբեր երկնից ներքեւ ծնած, չուտով մը Ասորական սովո-

[95] Տակիտ., Պատմ. Գ, 2: undique clamor et orientem solem (ita in Syria mos est) tertiani salutavere.

[96] Պրոկոպիոս, Պ. Պ. Բ, 41, 1:

րութիւններն ընդունած էին։ Աւելի հաւանականն է թէ անոնց մէջ շատերը բուն իսկ Ասորիքէն էին, 69էն՝ Վեսպասիանոս գահակալութենէն ի վեր։ Ասով աւելի դիւրաւ ալ կը մեկնուին այն միջակ յատկութիւնները՝ որոնց փորձը յաճախ տուին այս նահանգին զօրագունդները, իրենց հնացեալ անկարգապահութիւնը, որուն մէջ կը մատնանշուէին կերպով մը Անտիոքացւոց ըմբոստ ու անկախ հոգին, եւ հաճոյասէր կիրքերը։ Դժբախտաբար չունինք միջոցներ, նկատելով արձանագրութեանց ցանցառութիւնը՝ մանաւանդ առաջին դարու համար, վերստուգելու այս ենթադրութիւնը, որուն կ՚առաջնորդէ զմեզ Տակիտեայ ըսածը։ Աւելցընենք որ Պետութենէն Եփրատով եւ արաբական անապատներով բաժնուած ժողովուրդները նախամեծար սէր մ՚ունէին յեղակարծահաս յարձակմանց․ ուստի առանց տեղական զինուորագրութեան թերեւս շատ աւելի ժամանակի պէտք կ՚ըլլար բանակի զօրաքանակները լիակատար ընելու համար։

Վերջապէս Ասորիք վերէն վար երկարաձգուած երկիր մըն է․ իւր դրացի անապատաբնակները կը բանակէին, կը տեղափոխուէին, հինահարութիւն կ՚ընէին փոքրիկ խմբերով։ Ասոնց դիմաց դնել պէտք էր մեծ թուով պահակապաններ։ Ասկից կը ծագէին կրկին հետեւութիւններ․ նախ լեգէոնը կա-

նուխէն կը սկսի մանրամանր բաժանուիլ[97]․ սա՛ն չափազանց դժուարին․ կ՚ըլլայ իւրաքանչիւր զօրագնդի գլխաւոր բնադիրը գըտնել։ Արձանագրութեանց տուած տեղեկութիւնք՝ որոնց վրայ սովորութիւն է յենուիլ, առերեւոյթ ա՛յնպէս հակասութիւններ ունին իրարու մէջ կամ գրաւոր բնագիրներուն հետ՝ որոնք արդէն ցանցառ անգամ լոյս մը կը սփռեն այս խնդրոյ վրայ, մինչեւ պատճառ պիտի ըլլային մտածելու թէ լեգէոններն անդադար կը տեղափոխուէին ընդարձակ շրջանի մը մէջ։ Բայց իմ ըմբռնմամբս՝ ո՛չ այնչափ տեղափոխութիւն տեղի կ՚ունենար, որչափ բաժին բաժին հատուցում[98]։ Հասարակապետութեան վերջերը Պարթեւաց դէմ պատերազմները կը մղուէին լիաքանակ լեգէոններով․ բայց արդէն առաջին հրէական պատերազմէն սկսեալ ըստ երեւոյթին կը տիրէ գումարտակներու (դրօշաւորութեանց)

---

97 Համեմատելու է Ափրիկէի մէջ Գ․ Աւգուստեան լեգէոնի պատմածը, որ տասնձինն պաշտօն ունէր անապատային երկայն գօտւոյ մը վրայ հսկելու, եւ որ ասով՝ փոքրիկ խմբերու բաժնուելով՝ ցրուած էր սահմանաց ամէն ամրոցիկներու մէջ։

98 Այսպէս՝ օրինակի համար՝ Սելեւկիա Պիերիայի մէջ մեծ ջրանցքը փորելու կը գործածուին երկու դրօշաւորութիւններ Սկիւթական եւ Փղաւեան-Ամուր լեգէոններու, որոնք միեւնոյն արձանագրութեան մէջ կը յիշուին (տես Chapot, ի BCH, XXVI, 1902, p. 165, Nr. 5), եւ ուրիշ մը՝ Փրիտակայնի (CIL, III, 6045) միեւնոյն ժամանակ։ Վերջինս կայան մ՚ալ ունի յԱբու-Գոշ Պաղեստինի մէջ (տես Rev. bibl. 1902, p. 430 = Cagnat, Ann. epigr. 1902, Nr. 230)։

դրութիւնը[99] . եւ գլխաւորաբար ջոկատներն են՝ որ կը կազմեն Ադրիանու բանակը՝ Բարկոկեբայի ապստամբութեան ատեն:

Բաց աստի զօրաց այսպիսի մանրաբաժան կազմաւորումն տկար միութիւններով միայն՝ ա՛յն արդիւնքը կ'ունենայ որ դիւրաւ կը ստանան այնպիսի սովորութիւններ, զորոնք չէին առնուր՝ եթէ ամէն վաշտերը միասին միացած մնային: Աչաց առջեւ ունին նաեւ օրինակ մը, որ առանց ազդեցութեան չէր կրնար մնալ. նոյն իսկ Հռոմայ կառավարութիւնը սովորութիւն ըրած է այնուհետեւ սահմանագլուխներուն մօտ երկիրներ տալ արար ցեղերու՝ առանց քաղաքացիական կազմակերպութեան. այն վաշկատուններն այն ատեն աւելի կը կապուին հողին: Նոյնպէս այս կամ այն դղեկին (castellum) զինուորները շրջակայից մէջ փոքրիկ կալուած մը կը ստանան՝ զոր հասարակաբար կը մշակեն: Ասով ամրականաց կամ բերդականներու (castriciani կամ castelliani) նկարագիրը կը փոխուի, կը դառնան զինուոր-մշակներ, աւելի մշակ քան զինուոր: Եւ այս ոճով Սարակինոսաց քով ձեռնարկուած փորձն աւելի կ'արժէ քան թէ միւս փորձը՝ աւատական մեծ տէրութիւն

---

[99] «Առեալ ընդ իւր զբովանդակ գունդն երկոտասաներորդն ի քաղաքէն Անտիոքայեցւոց»՝ կը գրէ Յովսեպոս (Պ. Հ., Բ, 500) այնպէս մը՝ իբր թէ կ'ուզէր զարտուղական դէպք մը մատնանիշ ընել:

մը կազմելու, ինչպէս Ոդենաթի եւ Զենոբիայի տէրութիւնն էր:

Բայց նաեւ երբ սահմանները (limes) խաղաղ են, ամէն վտանգ անհետացած չէ· Պարսկաստանի մեծ բանակներու դէմ չեն կրնար հանուիլ այլ եւս այս տկարացած գնդերը· ուստի հեռուներէն կը կանչուին աւելի կորովալիցներ եւ հուժկուներ: Այսպիսով, ինչպէս Մոմսէն կ՚ըսէ, ամբողջ Գ. դարու մէջ կը տիրէ Լիւրիկէական նահանգներու զինուորական գերակայութիւնը: Երթալով սովորած են այնուհետեւ՝ նահանգի մը պաշտպանութեան համար՝ աւելի նուազ վստահ ըլլալ այն զօրագունդներուն վրայ, որ հոն իրենց զօրանիստներն ունին· ինքնաբերաբար կը պատրաստուէր ռազմաժողով (comitatensis) տարրերու հզօրացումը[100]:

Բ.՝ Գ. դարէն ետքը· — Ճիշդ խօսելով Դիոկղետիանոս ուզած է կասեցնել այս շարժումը, եւ որոշ չափով մը յաջողած է[101]: Կարգի եւ կարգապահութեան մարդ ըլլալով՝ կը սիրէր ուրաքանչիւրն իր աստիճա–

---

[100] Զմոռնանք դարձեալ որ Գ. դարը շրջանն է այն զինուորաց՝ որ բախտի ինքնակալ եղան: Բանակի ձեռօք բարձրագոյն իշխանութեան հասնելով՝ պիտի ջանային իրենք զիրենք շրջապատել բազմաձեւ թիկնապահաց գնդով, որ իրեն անձնապահն էին եւ ամէն տեղ կ՚ընկերանային, մինչդեռ հին վաշտերը՝ որ մայրաքաղաքին պահակազօրը կը կազմէին, իշխանին հանդէպ անհանդստացուցիչ անկախութիւն մը կը ցուցընէին, նոյն իսկ Սեպտիմոս Սեւերոսի բարեփոխութիւններէն ետքը:

[101] Հմմտ. Մոմմսէն, անդ, էջ 240 եւն:

նին եւ ամէն բան իր տեղը պահել։ Պետութեան միութիւնը վերահաստատելէն ետքը, որոշեց անկարելի ընել ապագային համար հեռաւոր գաւառներու անջատականութիւնը, որուն նպաստաւոր էր զօրագունդներու քայքայման դրութիւնը պատերազմի մ'աւարտելէն ետքը։ Իր ջանքերն ուղղուելու էին գլխաւորաբար Գաղղիոյ եւ Արեւելքի վրայ։ Մեր աղբիւրները մանրապատում չեն ընծայեցըներ իր գործը. միայն գիտենք որ զօրագնդերու թիւը քառապատկէն աւելի աճեցուցած է եւ մանաւանդ խնամ տարած սահմանագլխոց ամրոցներուն ու պահակազօրաց[102]։ Լեգէոններն արդէն նուազաքանակ զինուորաց թիւ մ'ունէին. զայն փոխարինելու համար՝ բազմացուց լեգէոններու թիւը, եւ նորակազմ լեգէոնները միայն 1000 հոգւոյ զինուորաթիւ մ'ունէին։ Անտարակոյս ինքն էր որ ստեղծեց եւ Հայաստանի մէջ հաստատեց Ն Սկիւթականը, որ սակայն կարճակեաց եղաւ, որովհետեւ «Տեղեկութիւնք աստիճանաց» զանիկայ ա՛լ չի

102 Լակտանտիոս, Յաղագս մահու հալածչաց, 7։ Սուիդաս՝ ἐσχατιά:.. ὁ Διοκλητιανὸς λόγον ποιούμενος τῶν πραγμάτων ᾠήθη δεῖν καὶ δυνάμεσιν ἀρκούσαις ἑκάστην ἐσχατιὰν ὀχυρῶσαι καὶ φρούρια ποιῆσαι (Դիոկղետիանոս խօսելով գործոց մասին կը կարծէր թէ պէտք է բաւականաչափ զօրութեամբք իւրաքանչիւր սահմանագլուխ ամրացընել եւ բերդեր շինել)։ Այս տեղեկութիւնը Զոսիմոսէ առնուած ըլլալու է, որովհետեւ լիովին կը համաձայնի անոր հետ՝ զոր վերջինս Կոստանդիանոսի մասին կ'ըսէ հակառակ իմաստով (Բ, 34)։

ճանչնար: Ինքը կազմակերպեց նաեւ Ա Պոնտականը (I Pontica) որ Տրապիզոն կը բանակէր եւ որուն մէկ վերակացուն իր թագաւորութեան ժամանակի արձանագրութեան մը մէջ կ'երեւայ[103], եւ Արաբիոյ Դ Արէսեանը (IV Martia), չխօսելով նաեւ բազմաթիւ ուրիշներուն մասին՝ որոնց անունները (ինչպէս՝ Դ Պարթեւականը) կը ցուցընեն թէ սահմանաց պահպանութեամբ զբաղած էր[104]:

Ասկէ ետքը լեգէոններու կայանաւորման մասին տեղեկութիւն ունինք միայն Ե. դարու սկզբան համար՝ «Տեղեկութիւնք Աստիճանաց» (Notitia Dignitatum) գրքով, որուն վերջնական խմբագրութիւնը Մոմսէն որոշած է իբր 425ին Յ. Ք.[105]: Ասի ամենամեծ յստակութեամբ կը պարզէ այն կենդրոնախոյս շարժումը՝ զոր արդէն մատնանիշ ըրի: Լեգէոններու ամէնէն արտակենդրոնը՝ Գ Կիւրենականը[106]՝ կը կենայ իր տեղը Բոստրայի մէջ, բայց այս նահանգը՝ որ բաւական մասամբ գրեթէ անապատային էր, յաւելուածոյ զօրագունդ մը կ'ըն-

---

103 CIL, III, 236: leg. I P(ontica).

104 Նոյնն երեւան կու գայ նաեւ նահանգներու անուանակոչութիւններէն: Դիոկղետիանոսէ յառաջ զմեզ շահագրգռողներն են Կապադովկիա եւ Խորին Ասորիք (Syria Coele, Կեղեսուր). իսկ ետքը՝ Հայաստան եւ Ասորիք ու Եփրատացւոց աշխարհ (Syria et Ephratensis):

105 Զեեքս (ի «Hermes», XXXVI, 1901, p. 516—547) վերջը:

106 Not. Dign. Or. XXXVII, 21.

գունդի, Դ Արէսեան (IV Martia) որուն զօրանիստն էր Բէթհորոյ[107]:

Միջագետք ալ նման գիտողութիւններ կը պահանջէ: Յառաջ միայն երկու պարթեւական լեգէոններ ունէր (Ա եւ Գ): Արդ Ա Պարթեւականը[108] Կոստանդիա կ'երթայ[109] եւ Գ Պարթեւականը՝ վերը բացատրուած ենթադրութեան համեմատ՝ յԱպատնա, Ամդայ շատ մօտ: Բ Պարթեւականը կու գայ Իտալիայէն եւ կը հաստատուի ի Կեփա[110]՝ գրեթէ Տիգրիսի ափին վրայ. Դ Պարթեւական մ'ալ կը հիմնուի՝ Կիրկեսիումը[111] դրաւելու համար, Պետութեան ճիշդ սահմանին վրայ. կար նաեւ Ե Պարթեւական մը՝ որ զետեղուած էր (անտարակոյս Դիոկղետիանոսէ) Ամդայ մէջ, եւ հոն էր Կոստասայ եւ

---

[107] Անդ, XXXVII, 22. Բեթհորոյի (Betthoro) տեղն անծանօթ է. կ'ենթադրեն թէ ըլլայ Bet Erni ի Բատանէա (Benzinger, Baitarrhus եւ Bathyra, առ Պաուլի–Վ., յաւել՝ Ճիւրէր, անդ, Ա., էջ 693, ծն. 132—133. Schuhmacher, Across the Jordan, p. 50 ff.):

[108] Որ թերեւս Ուռհայաստանի մէջն էր. տես վերը՝ Բ. ա. 1:

[109] Not. Dign. Or., XXXVI, 24. դժուարին է մեկնել իւր նոր յորջորջանքը Մծբնական (Nisibena). պատճառը կարելի է՝ թէ՛ առժամանակեայ բնակութիւն մ'ի Մծբին, թէ՛ քաջութիւնն զոր նոյն տեղը ցուցուց, եւ թէ՛ մանաւանդ որովհետեւ այն երկրէն զօրահաւաք կ'ըլլար:

[110] Անդ, XXXVI, 30. Վերադարձը տեղի ունեցաւ Կոստանդիանոսի ժամանակ (De Rossi, ի Bull. dell' Istit. 1884, p. 84):

[111] Անդ, XXXV, 24:

Յուլիանու ատեն[112], եւ հոն ոչնչացաւ[113] ու տեղը չլրացուեցաւ:

Ասորիքի մէջ՝ Գ Գաղղիականը կը գըտնուի ի Դանաւա, Դամասկոսի եւ Պալմիւրայի մէջտեղը, դէպ ի ներքսակողմն յառաջախաղացութեան մը հետեւութեամբ[114], զոր չենք կրնար կշռել՝ բայց որ ստոյգ է: Դ Սկիւթականը, որ հիւսիսակողման անորոշ տեղ մը կը բանակէր, Որեսա կ'երթայ[115], որ Պալմիւրայի մօտն էր. Պալմիւրայի մէջն ալ ետքը Դիոկղետիանոս եւ իւր ընկերակիցք «յաջողութեամբ շինեցին դղեակներ» (castra feliciter condiderunt[116]) անոնց մէջ զետեղելու համար Ա Լիւրիկեցւոց (I Illyricarum) լեգէոնը[117]: Միայն ԺԶ Փղաւեանը շատ քիչ կը փոխէ իւր դիրքերը. Ծամշատէն տեղափոխուած է Սուրա[118]:

Պաղեստինի Ժ Փրիտականը, որ յառաջ Երուսաղէմ էր, մեկուսացած է յԱյլա[119], այն ծովածոցին մէջ, զոր կը կազմէ Կարմիր ծովը Սինայի արեւելակողմը[120]:

---

112 Ամ. Մարկեղ. ԺԸ, 9, 3:
113 Անդ, ԺԹ, 8:
114 Dign. XXXII, 31:
115 Անդ, XXXIII, 23:
116 CIL, III, 6661:
117 Not. XXXII, 30:
118 Անդ, XXXIII, 28:
119 Անդ, XXXIV, 30. Եւսեբ., Onomasticon, Αἰλάμ էջ 22:
120 Թերեւս՝ այս միջոցին մէջ՝ ժամանակ մ'եղած ըլլայ ի Փիլադելփիա (Ամման.): Այս քաղաքիս մէկ արձանագրութիւնը (Conder, Survey of Eastern.

Իսկ Կապպադովկիոյ (որ այսուհետեւ Հայաստան եղած էր) երկու լեգէոնները կը մնան իրենց իւրաքանչիւր բանակավայրերուն մէջ, ի Մելիտենէ եւ Սատաղա[121]։ Նորակազմը՝ Ա Պոնտական Տրապիզոնի, «ի Պոնտոս» (in Ponto)»[122] կը գրաւէր Պոնտոս Եւքսինոսէ առնուած պարենաւորման համբարաբեր կարաւաններու գծին գլուխը։ Վերջապէս Իսաւրիոյ զահերէցը (praeses Isauriae) եղաւ զինուորական կոմս (comes rei militaris), եւ իւր տրամադրութեան ներքեւ ունէր Բ եւ Գ Իսաւրեան (II, III Isaura) լեգէոնները, որոնց բանակավայրերը չի նշանակեր «Տեղեկ. Աստիճ.»[123]։

Աճումը շատ մեծ չէր ըլլար՝ եթէ այսչափով շատանար եւ ոչ միայն չէին արդարանար ժամանակակից վկայութիւնները՝ զոր քիչ մը յառաջ նշանակեցինք։ Բայց գիտենք որ Կոստանդիանոս Դիոկղետիանոսի որոշմանց հակառակ քայլ առաւ. տարապայմանօրէն աճեցուց այն զօրաբաժինները՝

---

Palestine, I, p. 54. Clermon-Ganneau, ի Rev. d'arch. or. II, 1899, p. 25) կը կարդայ տող 1, 2 եւն՝ [λ] εγ. δεκάτης Φρ. Γορδιανῆς (լեգ. Ժ Փր. Գորդիանու)։ Կարծեմ թէ առաջին երկու տողերը կրնան ուղղուիլ լրացուելով. ΟΡΙΚΤΩ եւ ΝΟΝΑ ... ΕΓ կրնայ դիւրութեամբ լրացուելով ընթերցուիլ՝ Ο(ὐ)ικτω[ρα ἡγε] [μ]όνα [τῆς λ]εγ. ուստի «Վիկտոր առաջնորդ լեգ.»։ Ἡγεμόν. «առաջնորդ» Գ. դարուն մէջ երբեմն praefectus (legionis) իմաստն ունի՝ «Վերակացու լեգէոնի» կամ Լեգէոնապետ։

121 Not. XXXVIII, 13—14։

122 Անդ, 15—16։

123 Անդ, XXIX, 6—8։

որոնք սահմանուած էին ճակատամարտի առաջ գինուորներ մատակարարելու, հետեւաբար նուազեցուց սահմանագլուխները կայանաւորածները [124]: Անկից յառաջ եկաւ այն բաւական նորանշան տեսակը կեղծ–ռազմաժողով (pseudocomitatenses, կիսակոմսական) լեգէոնները՝ ինչպէս կ'անուանէ զանոնք «Տեղեկ. Աստիճ.», որոնք յառաջ հսկողական զօրագնդեր էին, իսկ այժմ եղան պատերազմի պահեստագնդեր, որոնք այս ժամանակ տակաւին ձուլուած չէին բուն ռազմաժողով (comitatenses) զօրաց հետ՝ որոնք ի սկզբանէ վեր սահմանուած էին տարամերժօրէն միայն պատերազմական ծառայութեան համար: Անոնց շատերուն անունները տակաւին կը ցուցընեն իրենց սկիզբը. եւ են՝ Ա եւ Բ (աղեղնաւորք) Հայկականք (I, II sagittaria Armeniaca) [125], Ա Իսաւրեան աղեղնաւոր (I Isaura sagittaria) [126], Զ Պարթեւական [127]: Կային աւելի աննշաններ ալ՝

---

[124] Զոսիմոս, անդ. καὶ ταύτην δὴ τὴν ἀσφάλειαν διαφθείρας ὁ Κονσταντῖνος τῶν στρατιωτῶν τὸ πολὺ μέρος τῶν ἐσχατιῶν ταῖς οὐ δεομέναις βοηθείας ἐγκατέστησε καὶ τοὺς ἐνοχλουμένους ὑπὸ βαρβάρων ἐγύμνωσε βοηθείας. (Կոստանդիանոս այս ապահովութիւնը եղծանելով՝ սահմանագլխաց զօրաբանակաց մեծ մասը օգնութեան պէտք չունեցող տեղեր զետեղեց եւ բարբարոսներէն նեղուած տեղերն օգնականութենէ մերկացուց):

[125] Not. VII, 13, 49. 14, 50: Վերջինս պատառ պատառ եղաւ ի Բզաւզէ Շապհոյ ձեռօք (Ամ. Մարկել., Ի, 7, 11). բայց յայտնապէս յետոյ վերակազմուած է:

[126] Անդ, Է, 20, 50:

[127] Անդ, Է, 19, 55:

Ա Իտալական[128] *եւ* Դ Իտալական[129] (I, IV Italica):

*Շատ նշանակալից կէտ մըն է որ հռոմէական այս սորքին ժամանակաշրջանին, — որ աւելի մեծ էր մանրամասն զանազանութեանց ու նախատեսութեանց՝ քան թէ զանոնք պայծառ ընելու արուեստը, — նոյն իսկ այն զօրաց մէջ՝ որոնք միշտ վերապահուած էին պատերազմական ծառայութեան* (comitatenses, *ռազմաժողովք, «կոմսականք»*[130]), *ոմանք կը ծառայէին միայն Արեւելքի մէջ, ուրիշները՝ միայն Արեւմուտք*[131]: *Առաջիններն են՝* Ա Փղաւեան Թէոդոսեան (I Flavia Theodosiana[132]), Բ Փելիքս Վաղենտեայ Թեբացւոց (II Felix Valentis Thebaeorum[133]), Բ Փղաւեան Կոս–

---

128 *Անդ, է*, 17, 53:

129 *Անդ, է*, 18, 54:

130 *Հմմտ.* Seeck, Comitatenses (*առ Պաուլի-Վ.*): *Կը նշանակէ թէ* pseudocomitatenses *բացատրութիւնն առաջին անգամ երեւան կու գայ* 373 *տարւոյ մէկ սահմանադրութեան մէջ (Կ. Թէոդ., Ը,* 1, 10): *Իսկ* comitatenses *ծագած ըլլալու են* 297*ին պարսկական պատերազմին: Սահմանագլխուն ակար պահակագնդերը ի սկզբան պարտուեցան. եւ յաղթութիւնը ձեռք բերուեցաւ միայն երբ Գալերիոս խաղացուց պահեստի (երկրորդ գծի) զօրագնդերը (Աւրել. Վիկտոր, Վասն Կեսար.* 39. *Եւտրոպիոս, Թ.* 24—25):

131 *Աստ մեծապէս նպաստած ըլլալու է Պետութեան բաժանումը բազմաթիւ իշխաններու մէջ, թէպէտ եւ չթերացան նոյն իսկ Գերմանիոյ մէջ զօրահան ընել նորակոչներ Արեւելքի համար: Այլուստ խիստ խօսելով՝ այս ամէնը սկզբունքի կանոններ են, ո՛չ թէ իրականութեան:*

132 Not *է*, 12, 47:

133 *Անդ, է*, 11, 46:

134 *Անդ, է*, 10, 45:

տանդեան Թեբացւոց (II Flavia Constantina Thebaeorum)»[134], Ե Մակեդոնական[135], Է Երկուորեակ *կամ* Կրկնալեգէոն (VII Gemina)[136], Ժ Երկուորեակ (X Gemina)[137] *եւ* Ա Փղաւեան Կոստանդեան[138]: *Անծանօթ* Արէսեան *լեգէոնէ մը, կամ բաժան բաժան եղած* Դ Արէսեան (IV Martia) *լեգէոնէն են* Երիցագոյնք Արէսեանք (Martenses Seniores), *որոնք* Արեւելքի Զօրաց Մագիստրիանոսին *տրամադրութեան ներքեւ էին* (sub dispositione magistri militum per orientem», «*Զօրավար Զօրաց յԱրեւելս*»)[139]:

*Աւելցնենք որ նաեւ Գաղատական լեգէոնները, որ կազմուած էին ինքնակալին անձնական պաշտպանութեան յատկացուած Անձնապահ գնդերէն, Արեւելք կ՚երթային երբ ինքն իշխանը հոն կ՚երթար, որ սակայն Ե. դարէն ետքը ցանցառադէպ բան մըն էր*[140]: *Այս կազմակերպութեան մէջ, որուն սովորական յատկութիւն մ՚ընէ մեզմէ գաղանի մնալը, կ՚երեւայ թէ ուրիշ գնդեր ալ ստա-*

---

135 *Անդ*, *Է*, 4, 39:
136 *Անդ*, *Է*, 6, 41:
137 *Անդ*, *Է*, 7, 42:
138 *Անդ*, *Է*, 9, 44:
139 *Անդ*, *Է*, 5, 40:
140 *Ասոնք են*՝ Կրտսերք *կամ* Երիտասարդք (Juniores)՝ Ա Յովիանեան (I Joviana) *զօրագնդին*՝ *զոր կազմած էր Դիոկղետիանոս* (*անդ*, *Ե*, 3, 43). — *Երիտասարդք* Բ Հերքուլեան (II Herculia) *գնդին*՝ *զոր Մաքսիմոս Հերքուլէս ստեղծած էր* (*անդ*, *Ե*, 4, 44). — *Ջոկատ մը* ԺԱ Կղաւդեանի (*անդ*, *Զ*, 46): *Յուլիանոսի բանակին մէջ Գաղատականք կը յիշուին* (*Ամ. Մարկել.* *ԻԵ*, 6, 4):

ցած են լեգէոնական նկարագրով կազմութիւն մը[141]. գոնէ զատոնք ալ «Տեղեկ. Աստիճ.» կը հաշուէ լեգէոններու թուոյն մէջ, թէ կարգի որեւէ թիւ մը չունին:

Ամմիանու քով յաճախ կը յիշուին լեգէոններ. անոր քով կը տեսնենք որ այլեւայլ զօրագնդեր գործողութիւններ կը կատարեն, որոնք «Տեղեկ. Աստիճ.» մասամբ կը յիշուին եւ մասամբ ո՛չ: Այսպէս Լ Ուլպեանը (XXX Ulpia) Կոստանդեայ Բ. ատեն կը կռուի Շապհոյ դէմ[142]. — Սինգարա ճակատին մէջ կը կռուին՝ Ա Փղաւեան եւ Ա Պարթեւական[143]. — Բզաւդէի կռուին՝ Բ Փղաւեան, Բ Հայկական եւ Բ Պարթեւական[144]. — Ամիդայ մէջ՝ ուրիշներ, զորոնք «Տեղեկ. Աս-

---

[141] Արեւելքի կամ կեղծ—ապգմաժողովոց, կամ Դիւակղոմատիկանաց մէջ կը գտնուին՝ Թէոդոսեան Բաղիստրաւորներ (Balistarii Theodosiaci, անդ, Է, 21, 57). Պարսատորք (Funditores, անդ, Է, 16, 52). Ամրական սատարք (Fortenses auxiliarii, անդ, Է, 15, 5). Անդրտիգրիսեանք (Transtigrisani, անդ, Է, 22, 58). — Իսկ Կոմսականաց (Comitatenses) մէջ՝ Երիցագոյնք Բաղիստարաձիգք (Balistarii Seniores, անդ, Ը, 8, 43) եւ Երիցագոյն Արէսեանք (Martenses Seniores) որոնք արդէն յիշուեցան (Է, 5, 40): Բաց աստի 363ին Անտիոքի մէջ կար ընտրելագոյն գունդ մը՝ Հերակլեան Երիցագոյնք (Herculiani Seniores), որ գնդէն էին երկու զինուորականներ՝ որոնք մարտիրոս եղան՝ ըստ Վկայաբանութեան, որ գոնէ մանրամասնութեանց մէջ կասկածելի է (Բոլլանդեանց Acta SS., Օգոստոս, Դ, 425, 30). Հմմտ. Dom. Leclercq, Les Martyrs, III, 1904, p. 99 ff.):

[142] Ամ. Մարկել., XVIII, 9, 3:

[143] Անդ, XX, 6, 8:

[144] Անդ, XVIII, 9, 3. Հմմտ. Մոմսէն՝ ի «Hermes», XXIV, 1889, էջ 254:

տիճ.» ս՛յլ եւս չի ճանչնար կամ ուրիշ անուններով կը յիշէ, Ե Պարթեւականը, Մագնենտացիք (Magnentiaci) եւ Դեկենտիականք (Decentiaci), Գաղղիոյ զօրանդները՝ զորոնք Ամմիանոս իրենց հին յորջորջանքներով միայն կ՚անուանակոչէ. Երեսնականք (Tricensimani) Հռենոսի մէկ լեգէոնն էին[145]. Ամրական Տասնականք (Decimani Fortenses) Պաննոնիայի զօրանդներէն, որչափ կ՚երեւայ Վերահասք (Superventores) եւ Կանխահասք (Praeventores) որոնք այնուհետեւ մոռցուած են:

Ամմիանու այս թուարկումը, եւ 20·000 հոգւոյ ամբողջական գումարը՝ զոր կու տայ Ամիդայ պահակային զօրաց, որ կազմուած էր եօթն լեգէոններէ եւ Սատարներէ, կը ցուցընեն թէ ի՛նչ մանր բաներ եղած էին արդէն լեգէոնները: Ոչ միայն նուազած էր զինուորաց քանակը[146], այլ նաեւ սովորութիւն եղած էր նոյն լեգէոնն անուանել պարզ

---

145 Not., Occ. VII, 108:

146 Seeck, անդ, այսպէս եղած կը մեկնէ հաւանական յեղաշրջումը. Հին լեգէոնի 6000 հոգիէն՝ 4000 հոգին առնուեցան կազմելու համար պահեստի բանակին Երիցագոյնքն (Seniores) եւ Կրտսերագոյնք (Juniores) կազմելու համար (լաւագոյն էր ըսել՝ 2000 հոգի Կոմսականք = comitatenses, եւ 2000 հոգի՝ կիսակոմսականք = pseudocomitatenses). կը մնային 2000 հոգի Ափնականք (riparienses) Սահմանաց (limes) պահպանութեան համար: Վերջիններս ամէնէն միջակ տարրերն էին (Ամ. Մարկեղ., ԻԹ, 5, 4. Թէոդոր, Է, 22, 8. Կ. Յուստ., 27, 2, § 8): Մեզի բացարձակօրէն անծանօթ կը մնան Կոմսականաց կայանաւորութիւնները:

ջոկատ մը, կամ որեւէ հետեւակագունդ մը պահեստի բանակին, կամ նաեւ շատ յատկազէն զօրախմբեր՝ որոնք ապահովապէս բազմաթիւ չէին, ինչպէս այն բալիստաւորքն (balistarii)», «ամրաձիգք», «նետակալք»): Բիչ մ'ետքը լեգէոն բառն իսկ անհետացած էր կենդանի լեզուէն[147]. բայց միւս կողմանէ հին ռազմական միութեանց անուններէն ոմանք կրցած են մնալ նաեւ շատ երկայն ժամանակ՝ իբրեւ պարզ յորջորջանքներ. այսպէս Թէոփիլակտոս Սիմոկատտա տակաւին կը ճանչնայ Κουαρτοπάρθοι[148] ակներեւ մնացորդներ Դ Պարթեւականին (IV Parthia). «Տեղեկ. Աստիճ.» գրոց մէջ լեգէոնը շատ բարձր աստիճան մը չունի արդէն, հազիւ ճիշդ թուերէ ու վաշտերէն վեր: Եւ ո՛չ արդէն միակերպ կազմակերպութիւն մ'ունի, ինչպէս որ կը տեսնուի կոմսական լեգէոնաց (legiones comitatenses) անուններէն: Եւ յետոյ օր մը՝ երբ իւր նկարագրական դիմագիծը բոլորովին անորոշ պիտի դառնայ, աւելի ընդհանուր բա-

---

[147] Զ. դարուն Պրոկոպիոս իբրեւ արդէն սպառ կորնչուցած բացառութիւն մը կը դրէ (Վաճ. Շին. 7, 4, էջ 255). Μελιτηνὴ μὲν τὸ χωρίον, Λεγεὼν δὲ ὁ λόχος ἐπωνομάζετο, «Երկիրը Մելիտինէ, իսկ հարիւրական գունդը լեգէոն կը կոչուէր» (Հմմտ. Ա, 7, էջ 195):

[148] Թէոփ. Սիմ., Բ, 6, 9 կը դրէ՝ οὕτω τὴν προσηγορίαν ἐπιφερομένων τῶν ἐν Βεροίᾳ τῇ πόλει Συρίας τὰς διατριβὰς ποιουμένων, «Այս անուանակոչութիւնը կը կրեն Ասորիքի Բերիա քաղաքը կեցող զօրքերը» (որոնք յառաջ Կիրկեսիում կը բանակէին, տես վերը՝ Բ. ա, 1բ):

ցատրութիւն մը՝ թիւը (numerus) զինքը պիտի նսեմացընէ։

## § 2. Դաշնակից զօրք, աշխարհակալութեան առաջին ժամանակը։

Պէտք չէ շփոթել այն գնդերը՝ զոր կուտային ստորակարգեալ Տէրութիւնք, որ Հռոմի հետ դաշինքով կապուած էին, բուն Սատարք (auxilia) ոչ-լեգէոնական գնդերուն հետ, որոնք կը կազմուէին ու կը կազմակերպուէին — եթէ ոչ սպառազինուէին — հռոմէական դրութեամբ։ Այս զանազանութիւնը խստօրէն չեն պահած միշտ մեր աղբիւրները. եւ այլեւայլ ժամանակաշրջաններու հեղինակներ այս մասին շատ անճիշդ բացատրութիւններ գործածած են[149]։ Ասոր

[149] Կիկերոնի թղթակցութիւնք կ'արդարացնեն այն յաճախ լսուած գանգատները թէ Ասիական երկիրներուն մէջ զօրաթուերը անբաւական են։ Երբ 51ին Կիլիկիոյ կուսակալ եղաւ՝ հազիւ Պարթեւաց սպառնալիքին ինչպէս ըլլալը (Կիկ. ad div. XV, 2) եւ մեծ երկիւղ ունեցաւ Կապադովկիոյ համար, որ անպաշտպան էր եւ որ իր նահանգէն կ'առնուր պետերը։ Կը գրէ (ԺԵ, 1). «Պէտք չէ վստահ ըլլալ գաւառական զօրաժողովներուն վրայ. ժողովուրդը տկար է եւ կը թաքչի վտանգ մ'եղածին պէս։ Այս զօրաբանակի քաջութեան մասին՝ համաստացէք Բիբուլոսի, որ չէր ուզեր զանոնք։ Իսկ Դաշնաւորաց օգնականաց (sociarum auxilia) գալով՝ մեր անարդարութեանց պատճառաւ անոնց տուած զօրաբաժինները կա՛մ շատ տկար են կա՛մ շատ անբարեացակամ»։ Հմմտ. Տակիտոս, Տար. Բ, 78 regulis Cilicum ut se auxiliis iuuarent scribit (Piso. հայ թրգմ. Հիւրմ., էջ 108՝ Պիսոն «առ արքայս Կիլիկիոյ փոքրկունս գրէր պատուէր՝ յղել իւր զօրս յօգնականութիւն»)։ Հերոդիանոս (Է,

պատճառը մասամբ թերեւս ա՛յն է որ շատ անգամ Դաշնակիցք խմբովին անցան Սատարաց տեսակին[150]: Հեղինակները տարտամ բացատրութիւններով լի են. այսպէս Պղուտարքոս[151] կ՚ըսէ թէ Կրասոս, որ Եփրատայ եզերքէն կը քալէր՝ «ունէր սպառազինաց դասակներ» (ἑπτὰ μὲν ἔχων ὁπλιτῶν τάγματα) — եւ սա՛ կ՚երեւայ թէ լաւ կը բացատրէ լեգէոնները, — եւ ունէր դարձեալ 4000է քիչ պակաս հեծեալներ եւ գրեթէ նոյնչափ թեթեւակազմներ (vélites, Φιλοὺς δὲ τοῖς ἱππεῦσι παραπλησίους). Հաւանական է — եւ ոչ աւելի — թէ խօսքի այս դարձուածով նշանակել կ՚ուզէր Սատարաց թեւերն ու վաշտերը, զորոնք այլուստ մանրամասն չ՚որոշեր: Դիոն Կասիոս[152] կը նշանակէ Անտոնինեայ պարսաւորները, որ իրեն հետ կը խաղացընէր գլխաւորաբար կեղտական ու սպանիացի հեծելագնդերը՝ բայց սակաւաթիւ, որովհետեւ կը սպասէր Հայոց հե-

---

2, 1) բացարձակ չփոթութիւն մը կ՚ընէ. Մաքսիմիանոս Հռենոսը կ՚անցնի Մաւրիտանացի նետաձիգներով՝ որ իւր հպատակներն էին (ὑπήκοοι), եւ Ոսրհոյեցի եւ Հայ աղեղնաւորներով՝ «որոնք բարեկամ էին ու մարտակից» (φίλοι καὶ σύμμαχοι)։ Բայց Ոսրհոյատան այն ատեն հպատակ երկիր մըն էր՝ ո՛չ թէ դաշնակից:

[150] Օրինակի համար՝ նոյնը կը տեսնուի Պոնտոսի մէջ՝ Տրապիզոնի վաշտին համար, Պոլեմոնի թագաւորութեան բարձուելէն ետքը (Տակիտ. Պատմ., Գ., 47):

[151] Պղուտարքոս, Կրաս. 20:

[152] Դիոն Կաս., ԽԹ, 20, 26. այսպէս՝ Պղուտարքոս, Անտ. 41 եւն:

ծելազօրուն հանելուն՝ որ չհասաւ մասամբ իւր յանցանօք եւ մասամբ իւր դաշնակցին: Չեմ կարծեր թէ պարզապէս դուեհիկ քաղաքավարութեան գործ մը համարելու ենք, երբ Անտոնինոս հռոմէացի լեգէոնականներ կը փոխանակէ մարական զինուորներու հետ[153]. այլ իւր արշաւանաց համար անհրաժեշտ իրեն կ'երեւային այս ձիաւորները. նախընթաց արշաւանքին մէջ հեծելազօրու պակասը սաստիկ զգացած էր. ուստի յօժարութեամբ ընդունեցաւ Մարաց արքային ուղարկած զօրավիգները[154]: Իւր լեգէոնականները լաւ գնացք մ'ունեցած էին երբեմն, մանաւանդ պաշտպանողականին մէջ. բայց շատ ծանրաշարժ էին. եւ շատ հակամէտ էին անձնատուր ըլլալու իրենց բաղձանաց կամ պիտոյից կշտապինդ յագենալու, եւ ճամբան կը հալէին թօթափէին՝ հիւանդութիւններով հիւծուած սպառած: Տարակոյս մը չկայ թէ Անտոնինոս առատօրէն գործածեց Ասորիքի մէջ իբր դաշնակիցներ զօրահան եղած զօրագնդեր[155]: Համաշխարհային իշխանապետի մը դերն առած էր, թագաւորութիւններ կը բաշխէր, եւ ասոր փոխարէն զօ-

---

153 Դիոն Կաս., ԽԹ, 41: στρατιώτας τέ τινας ἀντέδοσαν σφίσι (քանի մը զինուորներ տուին իրարու):

154 Պղուտարքոս, Անտ. 50, 52, 61:

155 Անդ, 45, 50: Փղորոս (Դ, 10 = Բ, 20, 10 հրտ. Roßbach) կ'ըսէ անոր հազիւ երրորդ մասը ազատեցաւ, եւ Անտոնինոս երկոտասան լեգէոն ունէր անոր զօրաց հետ միասին (Պղուտ., անդ, 39):

րավիգներ խաւրել կու տար իւր դրած արքայիկներէն, աչքի առջեւ ունենալով ա՛յն մեծ պայքարն Ոկտաւիանոսի դէմ, որ արդէն կը պատրաստուէր։

Մինչեւ հոս պահած էին այսու ամենայնիւ հռոմէական լեգէոններն իրենց առաջնակարգ դերը զինուորական գործողութեանց մէջ։ Բայց Աւգոստոսի քաղաքականութիւնը գերակշռութիւնը տուաւ դաշնակից զնդերուն։ Կազմակերպած էր միայն Ասորիքի նահանգը, ուր միջակ տարրներ կայանաւորած էին․ կը մտաբերէր տեղական օգնութիւն ունենալու այն փոքրիկ վեհապետներէն՝ զորոնք հաստատած կամ պահած էր քիչ շատ ամէն կողմ, Թագաւորներ Կոմագինեայ եւ Պոնտոսի, իշխաններ Ծոփաց եւ Փոքուն-Հայոց, առանց յիշելու այն մանրամաղ իշխանութիւնները՝ որ Ասորիքը կը ծածկէին հիւսիսէն մինչեւ հարաւ։ Այս ոճը խնայողական եւ յարաբերաբար գոհացուցիչ լուծում մըն էր, որովհետեւ տակաւին Ներոնի օրով Կորբուղոն Արեւմուտքէն միայն երեք լեգէոն բերաւ եւ հռոմէական զօրագնդերու մէջ միայն տկար նպաստիչ ոյժեր գտաւ եւ օգուտ քաղեց գլխաւորաբար արշաւանայ սահմանագլխոց իշխաններու տուած զօրքերէն։ Ինքն ալ զօրահան ըրաւ Գալիլեայի եւ Կապպադովկիոյ խատակեաց երկիրներէն եւ հոգ տարաւ ամէնէն աւելի իւր ծառայութեան մէջ ունենալու բնիկ թեթեւ

հեծելազօր մը[156]։ Հռոմայեցի պատմագրաց փառասիրութիւնը պատճառ կ'ըլլայ որ այսու հանդերձ ճշմարտութիւնը երեւան կ'ելլէ. Դաշնակիցք (foederati) էին՝ որ Կորբուլոնի տուին յաղթութիւնը[157]։

Դիրքը բոլորովին տարբեր չեղաւ Վեսպասիանոս եւ Տիտոսի պատերազմաց ժամանակ։ Երբ գործ կ'ունենային արձակ դաշտի վրայ ի դիւրի կռուող թշնամեաց հետ, Հռոմայեցիք «շատ ծանրազէն էին եւ չէին կրնար խուսափել թեթեւ եւ արագաշարժ Հրէից հարուածներէն՝ որոնք զիրենք կը տագնապէին[158]»։ Կեստիոսի չարաղէտքը, որուն մէջ երկու լեգէոններ այնչափ կրեցին, երկայն ժամանակ վշտագին արձագանգ մը ունեցաւ։ Եւ վերջապէս պաշարուած Հրէից դուրս յարձակումները շատ արիւնահեղ էին։ Բայց քանի որ արշաւանքը շուտով այլափոխեցաւ պաշարմանց պատերազմի մը, ոչ-հռոմէացի զօրագնդերու սեպհական բարելաւ յատկութիւնները չկրցան իրենց գերակշիռ նախապատուութիւնը պահել։ Սակայն եւ այնպէս տանք տակաւին

---

156 Հմմտ. յատկապէս Տակիտոս, Տար. ԺԵ, 26։
157 Տես մասնաւորաբար Տակիտ., անդ, ԺԳ, 35։
158 Յովսեփ., Պ. Հ., Բ, 543 (Հայ Թարգմանութիւն է՝ էջ 200. «Զի ինքեանք ծանրաբեռն էին եւ զկարգն խանգարել երկնչէին. եւ զՀրեայսն տեսանէին թեթեւս եւ դիւրաշարժս. ուստի լինէր զի բազում չարիս կրէին, եւ զՀրեայսն ոչինչ վնասէին»)։

շատ բազմաթիւ էին[159] եւ Պետութեան համար գնդերու փոխադրութեանց խնդիրը շատ կը պարզէին: Միեւնոյն ժամանակներն անհետ եղաւ Ասորական փոքրիկ վեհապետութեանց մեծագոյն մասը. եւ այն օժանդակ զօրավիգները՝ զոր մատուցած էին, առնուեցան բուն յատուկ Սատարաց (auxilia) գնդերուն մէջ. եւ իրօք այնուհետեւ՝ Ադրիանոսի ժամանակ՝ ա՛լ չէր յիշուիր թէ ձեռական Տէրութիւնք մասնակցած ըլլան ընկճելու Բարքոկեբայի արծարծած վերջին ապստամբութիւնը: Այսպէս կերպով մը կը փակուի շրջան մը — զոր կրկին պիտի բանան

---

[159] Պր. Cagnat պատճէ մի առ մի թուած է (Rev. des étud. juiv., անդ), եւ հաշուած է իբր 20·000 հոգի: Թերեւս պարզ խօսք մը չէ, երբ կ'ըսուի թէ միայն Պալմիւրա խաւրած էր օգնութեան 8000 Արաբացիներ՝ հրէական բնագրի մը համեմատ (J. Derenbourg, Hist. de la Palestine, Paris 1867, p. 15, ծն.): Ստոյգ է որ պէտք չէ վստահիլ արեւելեան վիճակագրութեանց. այսպէս Յովսեպոս իւր հայրենի երկրին ամէն մէկ գիւղէն մեծ քաղաք մը կ'ընէ: Սակայն այս տեղ գործակից եղած էին՝ Հերովդէս Ագրիպպա Բ., Իտուրիայի եւ Կոմագենեայ թագաւորները, եւ Մաղքոս Նաբատացի ազգապետը: Կոմագենէ ընտիր գունդ մը խաւրեց՝ որ չինուած ու մարզուած էր Աղեքսանդրի զինուորաց ոճով, եւ զօրանք «Մակեդոնացի» կը կոչէին (Յովսեպ., Պ. Հ., Ե, 460): Իտուրեան աղեղնաւորաց տարազին մասին գաղափար մ'ունինք գերեզմանական խորաքանդակի մը շնորհիւ (Cagnat, անդ, p. XXXIX), որ անոնց միայն կիսանդրին կը պատկերացընէ. հագած է կնգղաւ լայն կրկնոց մը եւ հետեւաբար սաղաւարտ չունի: — Ներկայ էր նաեւ գունդ մը Գետուղացւոց, որ յետոյ հաւանօրէն եղաւ «թեւ Գետուղացւոց հինօրեայ» (ala Gaetularum veterana. տես քիչ մը վարը):

Բիւզանդացիք, — եւ կը սկսի ուրիշ շրջան մը՝ գերակշիռ տիրապետութեան Սատարաց գնդերու, որոնք Հռոմէական դրութեամբ կազմակերպուած են եւ որոնց Հռոմայեցիք կը հրամայեն[160]:

## § 3. Սատարք՝ թիւք եւ վաշտք:

Լեգէոնը յարմար էր ամէն արշաւանքի. բայց պատերազմի ոսոխին համեմատ՝ պահեստի Սատարներէն (auxilia) կ'առնուէին այս կամ այն տեսակ մարտիկներ, զոր լեգէոնը չունէր: Իրօք ալ այս Սատարող գնդերը յաճախ՝ Հռոմէացի պետի մը ներքեւ՝ կը պահէին իրենց աւանդական զէնքերը եւ յատուկ մարտագիտութիւն մը: Այս մասին լոյս մը կը սփռեն այլեւայլ պատկերաքանդակ յիշատակարաններ, որոնք սակայն ցանցառ են, իսկ Արեւելքի նկատմամբ՝ ասոնցմէ հատ մը միայն կրնամ յիշատակել:

Աթէնքի թանգարանին մէկ կոթողը[161], որ Սպարտա գտնուած է, կը ներկայացնէ կանգուն կեցած մարդ մը՝ որ անտարակոյս սատարական վաշտի մը կը վերաբերէր[162]:

---

160 Այս մասին չափաւորիչ ակնարկում մ'ընել անհրաժեշտ է Արաբիոյ վերաբերմամբ, որուն համար տես վարը:

161 P. Wolters, Ein Denkmal der Partherkriege (ի Athen. Mitth. XXVIII, 1903, p. 291—300. (Հմմտ. Lebas-Foucart, II, 203 b).

162 Արձանագրութիւն նոյնը չի ըսեր. Μᾶρκος Αὐρήλιος Ἄλεξυς Θέωνος στρατευσάμενος κατὰ Περσῶν ἔτη βιώσας Λ΄. (Մարկոս Աւրելիոս Ալեքսիս Թէոնեայ զինուորեալ ընդդէմ Պարսից կեցեալ ամս Լ.)

Հագած է շերտաւոր զրահ, որ կիսով ծածկուած է վերարկուի մը ներքեւ, պարեգօտ մը, կխակեշիկներ եւ իբրեւ գլխու ծածկոյթ՝ թաղի մը: Զինուած է ձուաձեւ վահանով մը, ուղղորդ սուսերով մ'երկայն երախակալով որ երկու ձեռքով կրնայ բռնուիլ, եւ կարճ լախտով մը՝ որ յիշատակարանիս ամէնէն նշանաւոր մանրամասնութիւնն է[163]: Դժբախտաբար ասի քիչ մը բացառիկ տիպար մըն է մարտիկի մը. անճշան եղած ըլլալու էին բուն Յունաստանէ զօրահան եղած զինուորները[164]:

---

բայց լեգէոնական ըլլալը յիշուած կ'ըլլար՝ եթէ այն հանգամանքն ունենար: Իր եռանուանութիւնը (tria nomina) արգելք մը չէր՝ լեգէոնէ մը դուրս ծառայած ըլլալու. բայց տակի քաղաքացւոյ իրաւունքը շատ տարածուած էր Գ. դարու սկիզբը, որ ժամանակէն է յիշատակարանը, եւ կ'երեւայ թէ առաջին անգամ Կարակալլա Աքայիոյ մէջ զինուորակոչ ըրաւ պարթեւական պատերազմին համար. «Սպարտայէն բերել տալով կոչեց երիտասարդ Լակոնական եւ Պիտանեան խումբը (νεανίας Λακωνικὸν καὶ Πιτανάτην λόχον ἐκάλει) կը գրէ Հերոդեան (Դ, 8, 3):

[163] Wolters իրաւամբ մտածանի: կ'ընէ լախտի գործածութիւնը Արկադիացւոց քով (Պաւսա., Թեգայ. Դ, 301) որոնցմէ նոյնը փոխ առած ըլլալու էր լակեդեմոնական գունդը (λόχος). Համեմատենք ուրիշ օրինակ մ'ալ. Աւրեղիանու բանակին մէջ Պաղեստինի գնդերը զինուած էին՝ բաց ի ուրիշ զէնքերէ, ինչպէս Զոսիմոս կ'ըսէ, նաեւ մահակով ու բրով (κορύνας καὶ ῥόπαλα) ասոնց հարուածներուն ներքեւ Պալմիրացիք կ'ընդարմանային ու կ'անդամալուծուէին (Ա. 53, 2—3): Հմմտ. Պարսից լախտերը՝ վերը գլ. Բ.:

[164] Եւ կ'երեւայ թէ ամէնքն ալ միեւնոյն ժամանակին կը վերաբերին. Հմմտ. CIG, 1253 (Սպարտա)՝ Νεικοκλῆς νέος, δημόσιος, ἐστ(ρα)τε(υ)μένος δὶς κατὰ Περσ(ῶ)ν. (Նիկոկլէս երիտասարդ, դեմոսական, եր–

Սատարաց *գլխուն մէջ ժամանակագրական որեւէ բաժանում անհրաժեշտ հարկաւոր չ'երեւար: Մարտական այս միութիւնները՝ որեւէ ուրիշ միութենէ մ'աւելի՝ զերծ մնացած կ'երեւան այլափոխութենէ՝ իրենց սկզբէն սկսեալ մինչեւ վերջը, որ ամէնէն կանուխ Ե. դարուն է. որովհետեւ «Տեղեկ. Աստիճ.» գրոց մէջ թեւեր ու վաշտեր կը վխտան միեւնոյն անուանակոչութիւններով՝ զոր երբեմն ունեցած էին*[165]:

*Շատ բաղձալի էր որ՝ գոնէ այն անբաւական չափով որով կրցանք նոյնն ընել լեգէոններու համար, կարելի ըլլար հոս ալ նշանակել այս զօրագնդերէն անոնք, որ՝ այլեւայլ շրջաններու մէջ՝ կը վերաբերէին կայուն բանակազօրքի, եւ միւսները՝ որ միայն բացառաբար կը կոչուէին պատերազ-*

---

*կէցս դիմուորեալ ընդդէմ Պարսից): Չեմ կարծեր թէ Լ. Վերոսի պատերազմն ըլլայ բնագրիս մէջ ակնարկուածը, այլ մանաւանդ Կարակալլայինը եւ յետոյ Աղեքսանդր Սեւերոսի, յաւել՝* 1495. Lebas-Foucart, II, 183 b. *Մեգարիայի մէկ արձանագրութիւնը, որ ծանօթ է միայն* Wheler*ի յոյժ մէկ օրինակութենէն, պատահով ունի հետեւեալ՝* τὸ ἐπίγραμμα τῶν ἐν τῷ Περσικῷ πολέμῳ ἀποθανόντων ... (*վերատառութիւն Պարսկական Պատերազմի մէջ մեռնողներուն...*) CIG, 1051:

[165] *Սակայն անտարակոյս կը դադրին ընդհանուր* Սատարք *անուան տակ պարուրուելէն, որովհետեւ այս բացատրութիւնս այնուհետեւ կը նշանակէ նոր կազմութիւնները՝ ուր միայն հետեւակները կը մտնէին, ոմանք կայանաւորուած Դանուբի կողմը (Տեղեկ. Աստ., Արեւմ.* XXXII, 39—43. XXXIII, 46—50). *ուրիշները՝ պաղատական պահեստի մէջ* (auxilia palatina) *տես վարը:*

մական ծառայութեան[166]։ Բայց ասիկայ անկարելի ձեռնարկ մըն է։ Այս խնդրոյ ուսումնասիրութեան համար բոլորովին անօգուտ են մատենագրական աղբիւրները, գրեթէ մէկ բացառութեամբ[167]։ Հեղինակները գրեթէ չեն յիշեր թուերն ու վաշտերը[168], նախ՝ կարծեմ անոնց թուական տկարութեան պատճառաւ, եւ երկրորդ՝ հաւանօրէն որովհետեւ շատ մեծարգի չէին նկատուիր։ Նոյն իսկ գաւառական հեղինակները կը ջանան Հռոմայեցւոց արտայայտութեանց նմանիլ. իսկ արդ այս մանրամանր զօրաբաժինները գրեթէ ամբողջովին չէին պարունակեր հռոմէացի քաղաքացիներ։

Սակայն երբեմն երբեմն պատմագիրները

---

[166] Այսպահով՝ տեղեկութիւն մը Յովսեպոսի քով (Պ. Հ., Բ., 500), բայց միահամուռ կերպով եւ միայն կցկցեալ գործողութեան մը վերաբերմամբ. «Տիտոս առաւ, կ'ըսէ, իրեն հետ վեց վաշտեր եւ չորս թեւեր, եւ դարձեալ դաշնակցաց օժանդակները» (հայ բնագիրը՝ էջ 194 այսպէս է՝ «եւ այլոցն ԲՌ ընտիր հետեւակս, եւ չորս թեւս հեծելոց, եւս եւ զօգնականութիւնս թագաւորաց»)։

[167] Ակնարկել կ'ուզեմ Արիանոս «Ճակատամարտութեան ընդդէմ Ալանաց» երկը, զոր մանրամասն լուսաբանեց E. Ritterling, Zur Erklärung von Arrians Ἔκταξις κατ᾽ Ἀλανῶν (ի Wiener Studien, XXIV, 1902, p. 359—372)։

[168] Պղուտարքոս շատ անգամ կը յիշատակէ Ղուկուղղոսի վաշտերը (Պղուտարք., Ղուկ. 27. 31). կ'ակնարկէ այն հետեւակազօրն՝ որ «թէ՛ թեթեւազէն էր եւ թէ՛ ծանր սպառազէն»՝ զոր նոյն պետն իւր Սեքստիլիոս նուիրակին տուաւ։ Թեթեւազէնը շատ բազմաթիւ եղած չ'երեւար. իսկ յիշուած վաշտերուն մասին՝ յայտնի չէ թէ Սատարա՞յ գնդեր են եթէ լեգէոնի բաժիններ։

կը յիշատակէն մարտի մը մէջ Փռիւգացւոց, Դակիացւոց, Գաղղիացւոց եւն կատարած քաջագործութիւնները: Արդ. երբ այս ազգաց անունները կը գտնենք իբր յորջորջանք թեւի մը կամ վաշտի մը, պէ՞տք է հետեւցնել թէ այս թեւը կամ վաշտը ներկայ էր ճակատամարտին[169]: Այսպիսի եզրակացութիւն մը անխոհեմական ըլլալ կը կարծենք: Այս Սատարաց որեւէ մէկ բաժինը կ'անուանակոչուէր ազգագրական այն խումբին համեմատ՝ որուն կը վերաբերէին այն գնդին կազմուելու առեն անոր մէջ մտած զինուորները: Սակայն իր սկզբնական տեղը չի մնար. յաճախ տեղէ տեղ կը ճամբորդէ[169]. իր կարգերուն մէջ բացուած պարապները կը լեցուէին այն նորակոչներով՝ որոնք կ'առնուէին նոր կայաններու տեղերէն, ուստի ուրիշ ցեղերէ[170]. եւ անունն իսկ միայն յարաբերական արժէք մը կը պահէ, որ կրնայ

---

169 Մարքարտ (Marquardt, Oganis milit., գղ. Թրգմ. էջ 197, ծն. 7) չափազանցուած է Սատարաց այս շրջուն նկարագիրը. ասոր հակառակ մեր յիշատակարանները՝ որ այսօր շատ աւելի բազմաթիւ են, չափաւոր հաստատականութիւն մը կը ցուցընեն: Օրինակի համար՝ 139 եւ 157 տարիներու վկայագրեր հաստատելով այն կարծիքը թէ Լոլիանոսի դրօշաւորութիւններ (CIL, III, 600) Տրայիանոս Պարթեւական պատերազմին մէջ ծառայած են, կը ցուցընեն միանգամայն թէ այս գնդերուն բաւական մաս մը հոն մնաց այնուհետեւ, ոմանք մինչեւ իսկ «Տեղեկ. Աստիճ.» գրոց ժամանակը: Բայց ի վերջոյ ընդհանուր կանոն մը չկար:

170 Մարկարտ (անդ, ծն. 8) ինքնին կը յիշէ ասոր հակառակող բազմաթիւ դէպքեր:

բոլորովին խաբէսպատիր իսկ դարձած ըլլալ[171]։ Հետեւաբար խնդրոյ նիւթ եղող բնագիրներուն մեկնութիւնը շատ վտանգալից է։ Ասկէ շատ լաւ կը հասկցուի թէ ի՛նչու այլեւայլ թեւեր ու վաշտերը՝ փոխանակ ժողովրդեան մ՚անուան՝ առած են յորջորջանք մը, որ կը յիշեցընէ նահանգին կուսակալը, որմէ նախ կազմակերպուած էին։

Այս անգամ գլխաւորաբար արձանագրութիւնքն են՝ որ մեծապէս կը նպաստեն, որովհետեւ կարելի է օգտուիլ այլեւայլ երկիրներու արձանագրութիւններէն. այսպէս՝ երբ Սատարաց գնդի մը Սկիւթական վերադիրը կու տան։ Բայց աստի մոլորելու կարելիութիւնը, որ լեգէոններու նկատմամբ մեծ էր, հոս գրեթէ կ՚անհետանայ։ Շատ բնական է որ լեգէոն մը՝ որ պատերազմիկ մեծ միութիւն մըն էր, բազմաթիւ դրօշաւորութիւններ (uexillationes) կամ ջոկատներ հատուածէր. բայց աւելի դժուար էր հասկընալ թէ բազմաթիւ բաժիններ անջատուէին վաշտէ մը՝ որ 500էն 1000 հոգի էր լիակատար զօրաթիւ ունեցած ատեն։ Անտարակոյս ամբողջ հետեւակաջոկը (battaillon) կամ հեծելախումբը (escadron) կը հետեւէր կանոնաւորաբար անբաժան իր վերակացուին (praefectus)[172].

---

171 Հմմտ. Մոմզէն, ի «Hermes», XIX, 1884, էջ 210 եւն։

172 Սակայն իբր զարտուղութիւն նշանակելու է հրամատարութիւնը «կարգեալ ի Միջագետս ի դրօ-

Վերջապէս մեծապէս կը շահինք «Տեղեկ. Աստիճ.» գրքէն: Ասի թերեւս աւելի գաղափարական կազմակերպութիւն մը ցոլացընէ քան թէ իրաց իրական վիճակը, եւ 425ին ծրագրեալ զօրադասերը կրնային շատ մեծ պարապներ ունենալ[173]: Մենք խնդիրը կը վերացընենք այն ենթադրութենէն, զոր անկարելի է գործնականին մէջ հաշուի առնել, եւ կը ներկայացնենք վաշտաց (cohortae) եւ թեւոց (alae) կրկին ցուցակ մը, որոնց մասին վկայութիւն կը տրուի որեւիցէ ժամանակ մը եւ որեւէ կէտի մը վրայ աշխարհագրական այն սահմանին մէջ՝ որ հոս մեր նիւթին կը հայի, հետեւելով այբուբենական կարգին եւ առանց զանազանելու բաժնելու նահանգներու մէջ:

Միայն «Տեղեկ. Աստիճ.» կը ներէր լիակատար աշխարհագրական խմբում մ՚ընելու. բայց արդ անպատեհութիւն մը չկայ՝ զատ զանց ընելու, որովհետեւ իր տուած ցանկերը միշտ օգտակար կը մնան: Յիշեալ ոճէն հրաժարելու համար կը բաւէր մտածել Սատարաց մեծ թիւ մը, որոնցմէ առնուեցան

---

շաւորութեանց հեծելոց ընտիր թեւոց»... (praepositus in Mesopotamia vexillationibus equitum electorum alarum..., տես CIL, III, 600):

173 Արդեամբք ալ, եթէ ընդունելու ենք իւրաքանչիւր պէսպէս Թուերու (numeri) համար Մոմսէնի առաջարկած զօրաքանակները, այն ատեն ամենադոյզն դուքսը (dux) իր հրամանաց ներքեւ ունենալու էր գոնէ հնգետասան հազար հոգի, որ սակայն լաւ չի միաբանիր զինուորաց այն նուազութեան հետ, որու մասին յաճախ կը վկայուի:

*Լոլլիանոսի դրօշաւորութիւնները եւ որոնց մասին գիտենք միայն ընդհանրապէս թէ* Արեւելքի մէջ *էին Տրայիանու իշխանութեան տակ։ Այլուստ ալ աւելի ճշդե՞լ կ'ըլլար քան թէ պարզ ըսելը՝ Առաջին դարուն այս կամ այն վաշտը կը բանակէր կամ կը գոր- ծէր* Ասորիքի մէջ, *երբ որ չենք կրնար բուն զօրանիստ կայանն որոշել։ Այն ատեն Ասո- րիք շատ ընդարձակ էր. եւ Արեւելքի նա- հանգներն այն կարգէն են՝ զորոնք «Դիոկղե- տեան բարեփոխութիւնն» ամէնէն աւելի ստո- րաբաժանել ստիպուեցաւ. մինչդեռ օրինակի համար Ափրիկէ ատոր շատ քիչ ենթար- կուեցաւ։*

*Իմ հետեւած կարգս այն է՝ զոր* C. Ci- chorius *ընդունած է իր կրկին անուանա- ցանկերուն համար, զորոնք կազմած է մեծ հմտութեամբ ու խղճմտութեամբ եւ որ կը պարփակէ հռոմէական ամբողջ աշխարհքը*[174]*։ Իրեն շատ պարտական եմ. բայց հարկ էր որ լրացնէի իր գործը այն յիշատակարա- նաց օգնութեամբ, որոնք անկէ ետքը հրա- պարակ ելած են։ Աւելի յօժարակամ ալ պիտի ըլլայի զինքը դսրովելու այն մասին որ տեղ տուած չէ «Տեղեկ. Ասոտիճ.» տուած տե- ղեկութեանց՝ երբ կը յիշէ* Սատարճեր, *որոնք արդէն ծանօթ են հնագոյն շրջանի մը վկայու-*

---

174 *Պաւլի-Վ. ի բառին* Ala (1893) *եւ* Cohors (1899)։ *Կը զարմանամ որ Ա. Յաւելուածոյ Հատորը* (I Supplementband, 1903) *ատոնց վրայ բան մ'աւել- ցուցած չէ։*

թիւններէն։ Այսպիսի զանազանութիւն մ՚արդարացի չէ, որովհետեւ այս յիշատակարանը շատ դիպաց մէջ կը հաստատէ նախընթաց վարչութեան տեւականութիւնը, ուստի պատշաճ է որ օգտուինք անկէ առանց սահմանափակութեանց։ Իրմէ վերջն է միայն որ մեծ խրամատութիւնը երեւան կու գայ։ Իրմէ վերջն աներեւոյթ կ՚ըլլան ամէն հետք վաշտաց եւ թեւոց այնպէս՝ ինչպէս հինած էր զատոնք Հասարակապետութիւնը, եւ որոնց նկարագրի դիմագծութիւնը՝ դրեթէ հինգ դարերու տեւողութեան մէջ՝ հազիւ թէ փոփոխութիւն մը կրած էր։ Այս ցանկին մէջ կը գտնենք նոյն իսկ Պաղեստինի ու Արաբիոյ Սատարները[175], որովհետեւ ասոնք ալ ըստ դիպան պարագայից կը կոչուէին Պարթեւաց կամ Պարսից դէմ մղուած պատերազմական գործողութեանց աջակցելու։

Թեւ Բ նոր Եգիպտացւոց Ala II nova Aegyptiorum), ի Կարթա Միջագետաց. — Not.[177] XXXVI, 32.

---

175 Թէպէտ եւ հրաժարած ենք երկու աշխարհները տեղագրօրէն ուսումնասիրելէ։

176 Այրուձեռական կարգին համար նախ մտադրութիւն եղած է ազգաց անուանակոչութեանց ըստ նոր ուղղագրութեանց. իսկ ուր ազգի անուն չկայ՝ հին առնուած է այն յորջորջանքն որ ունէր յարմարագոյն էր զանազանելու ուրիշներէն։ — [Մենք հետեւած ենք պարզապէս հեղինակին դրած կարգին. եւ արդէն այլ կերպ ալ պատշաճ չէր Լատինական յորջորջանաց համար՝ զոր պէտք էինք գնել։ Ծ. Թ.]

177 Այս ամէն կոչմանց մէջ Տեղեկութեանց Արեւելեան բաժինը. տեղերը յառաջ կը բերուին Not. Orientis)։

Թեւ Բ Փղաւեան Ագրիպինեան (Ala II Flavia Agrippina), *Ա. դարուն՝ Հռենոսի վրայ.* CIL, XIII, 6235. *Լոլիանոս*[178] *ասկէ չոկատ մ՚ընդունեցաւ. Բ. դարուն՝ Ասորիքի մէջ.* — *Վատդինգտէն*, 2121:

Թեւ Ա Ալամանաց (Ala I Alamannorum), *ի Նէիա Փիւնիկաստանի.* — Not., XXXII, 36.

Թեւ Աղակտեա՞ն (Ala Alactica)? *Տես* Թեւ Բ Գաղղիացւոց:

Թեւ Բ Ուլպեան Աւրիանեան (Ala II Vlpia Auriana), *Կապպադովկիոյ մէջ՝ Ա. դարուն, ի Թոանկուսա.* — CIL, III, 6743. *Առիան*[179], 1. *Իսկ տակաւին Է. դարուն՝ Հայաստանի*[180] *մէջ.* — Not. XXXVIII, 22:

Թեւ Ա Բոսպորացւոց (Ala I Bosporanorum), *Ա. դարուն՝ Ասորիքի մէջ, դղեակի մը մէջ՝ որ Եւրոպոսէ երկու ժամ էր.* — CIL, III, 6707. *Իսկ Բ. դարուն՝ Դակիոյ մէջ:*

Թեւ Ա Փղաւեան Աւգոստեան Բրիտանական հազարաւոր երկիցս վասն քաջութեան մանեկաւ պսակեալ. (Ala I Flavia Augusta Britannica miliaria bis torquata ob virtutem), *նախ Պանոնիոյ մէջ, գործածուած Տրայիանու Պարթեւական Պատերազմին.* — *Վկյդր.* XXXIX *յամէ* 114 *Յ. Ք. հմմտ.* CIL, III, 6748.

---

[178] *Այս անուն ա՛լ պիտի չկրկնենք՝ բայց միայն վերը յիշուած արձանագրութեան առթիւ:*

[179] *Այս կոչումն ամէն տեղ կը ցուցընէ Արիանու «Ճակատամարտութիւն ընդդէմ Ալանաց» երկը:*

[180] *Կը յիշեցընենք որ Հայաստան ըսելով այն ատեն կը հասկցուէր Հռոմէական Վերին Պետութեան ժամանակի Կապպադովկիոյ արեւելեան բաժինը:*

յետոյ կը դառնայ Պանոնիա. — Վկյգր. LXVIII—LXIX.

[Թեւ Կեսարացւոց, Ala Caesariensium, կասկածելի. Յովսեփոս, Հ. Հ., ԺԹ, 365 խօսքին մէջ (τὴν ἴλην δὲ<τῶν Καισαρέων καὶ> τῶν Σεβαστηνῶν, «զթեւ Կեսարացւոց եւ Սեբաստացւոց,) չակերտեալ երեք բառերն ընդմիջարկուած կ'երեւան. (Հմմտ. Գ. Հ. Ք. 236). μίαν ἴλην ἱππέων καλουμένην Σηβαστηνῶν, Հայ թրգմ. 131 «առաւել քաջամարտիկք էին Սեբաստացւոց Գն. ոգիք.) կամ թէ կը նշանակէր պարզապէս այն սկզբնատեղն՝ ուսկից զինուորական եղան Թեւոյ Սեբաստացւոց մէկ մասը]:

Թեւ ԺԷ Փղաւեան Կորդուաց (Կորդովտաց, Ala XV Flavia Corduenorum), ի կայնի Միջագետաց. — Not. XXXVI, 34.

Թեւ Նոր Ամուր հազարաւոր զրահավառ (Ala nova Firma miliaria catafractaria զոր Աղեքսանդրոս Սեւերոս արեւելեան գնդերէն կազմեց 234ին. կը կռուէր Արեւելից մէջ. Փիլիպպոսներու օրով՝ հաստատուած Արաբիոյ մէջ. — CIL, III, 99:

Թեւ Կղաւդեան Նոր. (Ala Claudia nova), Կապպադովկիոյ մէջ. — CIL, III, 13635.

Թեւ Ա Աւգոստեան Երկուորեակ Կողոնիացւոց (Ala I Augusta Gemina Colonorum), մասնակցեցաւ Ադրիանու պատերազմին ընդդէմ Հրէից. — CIL, VIII, 8934. այս միջոցներուն՝ Կապպադովկիոյ մէջ, Առիան՝ 1. յետոյ ի Քիակա (Chiaca) Հայաստանի.

— Not. XXXVIII, 21: *Հմմ. արձանագրութիւն մը Սաւրայի (Ասորւոց) στρατοπεδαρχήσαντι ἱππέων Κολωνείτων (զօրավարի հեծելոց կողոնիացւոց.* Dittenberger, Or. Gr. IS, 425 = IGRRP, III, 1144).

Թեւ Կոստանդիանեան (Ala Constantiana) *ի Տոլոհա Պաղեստինի.* — Not. XXXIV, 34.

Թեւ Բ Կոստանդիանեան (Ala II Constantiana) *ի Լիբոնա Արաբիոյ.* — Not. XXXVII, 27.

Թեւ Ուլփեան Դակաց (Ala Vlpia Dacorum) *կապպադովկիոյ մէջ՝ Բ. դարուն.* — *Առեան,* 8. *Հմմտ.* CIL, VI, 1333. *յետոյ ի Սուրիա Հայաստանի.* — Not. XXXVIII, 23.

Թեւ Ա Դամասկեան (Ala I Damascena) *ի Լեառն Յովեայ (Արամազդայ* Monte Jouis) *Փիւնիկէի.* — Not. XXXII, 33.

Թեւ Ա Նոր Դիոկղետեան, ի մէջ Թաննուրի եւ Հորոբայ (Ala I nova Diocletiana, inter Thannurin et Horobam) *յՈւռհայաստանի.* — Not. XXXV, 31.

Թեւ Նոր Դիոկղետեան ի Վերիաբակա Փիւնիկէի: — Not. XXXII, 34.

Թեւ Անտանեան (= Անտոնինեան՞) Արուայկաց (տանիկ ուղտուց) (Ala Antana [= Antoniniana?] Dromedariorum) *յԱդմաթա Պաղեստինի.* — Not XXXIV, 33.

Թեւ Վալերեան Արուայկաց հազարաւոր (Ala Valeria Dromedariorum miliaria) *Ասորիքի մէջ 157ին.* — *Վկյդ.* CX. *յաւել՝*

CIL, III, 93 եւ 123=14160. Ե. դարուն՝ Թե-րայիսի մէջ. — Not. XXXI, 57.

Թեւ Ա Փրանկաց (Ala I Francorum) ի կունեա Փիւնիկէի. — Not. XXXII, 35.

Թեւ Ը Փղաւեան Փրանկաց (Ala VIII Flavia Francorum) ի Հոիպալթա Միջագետաց. — Not. XXXVI, 33.

Թեւ Գեթուղացւոց հնօրեայ (Ala Getulorum veterana). 86ին ի Հրէաստան. — Վկյդ. XIX. կռուած ըլլալու է Վեսպասիանոս օրով Հրէից դէմ։ — CIL, V, 7007.

Թեւ Ա Փղաւեան Գեթուղացւոց (Ala I Flavia Gaetulorum) նախնաբար Դանուբիափը. Արեւելքի մէջ Թերեւս Գորդիանու ատեն, բայց ասի դեռ ապահով չէ. — Arch. epigr. Mitth. aus Öst.-Ung. VIII (1884) p. 22, Nr. 61 (=IGRRP, I, 263).

Թեւ Բ Գաղղիացւոց (Ala II Gallorum). ասի է հաւանօրէն այն ἴλη ἡ Ἀλλακτική (=Γαλατική ըստ յաջող ենթադրութեան Ռիտ-տերլինգի) Առիանու, 9 (տես վերը „Alactica"). յԷլիանա (Aeliana) Հայաստանի. — Not. XXXVIII, 24. անտարակոյս տարբեր յաջորդէն՝

Թեւ Անտ(ոնինեա՞ն) Գաղղիացւոց (Ala Ant[oniniana?] Gallorum), յԱսորական Պա-ղեստին, յամին 139. — Վկյդ. CIX.

Թեւ Գաղղիացւոց եւ Թրակացւոց (Ala Gallorum et Thracum) նոյն։

Թեւ Հերակղեան (Ala [H]erc[uliana])

յԱսորական Պաղեստին, յամի 139. — Վկյգ. CIX. Համմտ. M. Sobernheim, Palmyrenische Inschriften, p. 10, Nr. 2. (Mitth. der Vorderasiat. Gesellsch. 1905, 2 = X. Jahrg.) ἐπαρχ[ο]ς εἴλης Ἡρακλιαν[ῆς μειλι]αρέας (յամէ 167/8. Հաւանօրէն չփոթելու չէ յաջորդէս հետ՝

Թեւ Ա նոր Հերակղեան (Ala I nova Herculia) յԱմմուդա Ասորիքի. — Not. XXXIII, 30.

Թեւ Զ Սպանիացւոց (Ala VI Hispanorum) ի Գոմոհա Արաբիոյ. — Not. XXXVII, 26.

Թեւ Ա Յովեայ Փելիքս (Երջանիկն Արամազդայ) (Ala I Jovia Felix) ի Քազանենիկա (Chaszanenika) Հայաստանի. — Not. XXXVIII, 31. (= «խաչեա՞նք») ։

Թեւ Ա Յութունգացւոց (Ala I Juthungorum) ի Սալուտարիա Ասորիքի. — Not. XXXIII, 31.

Թեւ Հազարաւոր (Ala miliaria). Պղինիոս Կրտսեր (Թղ. Է, 31) որ Դոմիտիանու ատեն Ասորիքի մէջ զինուորական տրիբուն էր, բարեկամ ունէր զԿղաւդիոս Պոլլիոն (Cl. Pollio) որ «առաջնորդէր Թեւոյն Հազարաւորի» (praeerat alae miliariae) որ Թերեւս ըլլայ Թեւ Ա Հազարաւորն (Ala I mil.) ի Հատտայ Պաղեստինի. — Not. XXXIV, 36. աւելի յաջորդներէս մէկը՝

Թեւ Բ Հազարաւոր (Ala II miliarensis) ի Նաասրասփարի Արաբիոյ. — Not. XXXVII, 28.

Թեւ Ժ Հազարաւոր (Ala X miliaria) յԱւաթա Արաբիոյ — Not. XXXVII, 25.

**Թեւ Պաննոնիացւոց** (Ala Pannoniorum) *Տակիտոս* (*Տար. ԺԲ*, 10) *Կորբուղոնի բանակին մէջ կը յիշէ* alares Pannonios robur equitatus (*Թրգմ. Հիւրմիւզ. էջ* 434 «*Եւ զՊաննոնիացիս՝ որ ի թեւս բանակին զօրավիգն էին հեծելոց*». *բառացի՝* «*Թեւք Պաննոնիացւոց՝ զօրավիգն այրուձիոյն*»). *Համանօրէն* **Պաննոնական թեւերէն** *մին՝ որ առժամանակեայ խարսխած էր Արեւելք Միւսեայէ*:

**Թեւ Բ Պափղագոնացւոց** (Ala II Paphlagonum) *ի Թիլափիկա Ուռհայատանի*. — Not. XXXV, 29.

**Թեւ Ա Պարթեւաց** (Ala I Parthorum) *ի Հոէսայա Ուռհայատանի*. — Not. XXXV, 30. *չի տեսնուիր թէ արդեօք ասի հին* **թեւ Ա Աւգոստեան Պարթեւաց** (Ala I Augusta Partorum) *գո՞ւնդն է ի Մաւրիտանիա, եթէ* **Թեւ Պարթեւաց հինօրեայ** (Ala Parthorum veterana) *գունդն ի Դաղմատեայ՝* «*Տեղեկ. Աստիճ.*» *գրէքէն յառաջ* (CIL, III, 8746).

**Թեւ Ա Փիւնիկեանց** (Ala I Phoenicum) *ի Հոենէ Փիւնիկէի*. — Not. XXXII, 38.

**Թեւ Փռիւգացւոց** (Ala Phrygum) *յԱսորիս՝ Ա. դարուն*. — CIL, II 4251. *նոյն է համանօրէն յաջորդս՝*

**Թեւ Է Փռիւգացւոց** (Ala VII Phrygum) *յԱսորական Պաղեստին յամի* 139. — *Վկյդ*. CIX. *Հմմտ. Թերեւս* «**Թեւ Եօթներորդ** (Ala septu[m]a) *կայֆայի մէկ արձանագրութեան մէջ*. — Germer-Durand, Échos d'Orient, VIII, 1905, p. 12.

Թեւ Ա Պրետորական Հռոմէացի քաղաքացւոց (Ala I Praetoria civium Romanorum) *Արեւելքի մէջ Լուկիանոսի ժամանակ. Համմտ.* *οἱ τῶν Ἰταλῶν ἱππεῖς* *(հեծեալք Իտալացւոց) թեւապետի մը (ἰλάρχης) հրամանի ներքեւ, Ասեան Գ. համեմատելու է սոյն* Թեւ Ա Պրետորական այժմ(?) հաստատեալ (Ala I Praetoria nuper[?] constituta) *Հայաստանի մէջ.* — Not. XXXVIII, 26. *Հոս* nuper *«այժմ»* *խանգարուած մըն է տեղւոյ մ'անունէն:*

Թեւ Ռիզացւոց (Ala Rizena) *յԱլադալէ-արիզա Պոնտոսի.* — Not. XXXVIII, 17.

Թեւ Ա Փրկարար Երկոտասանիցս հաստատեալ (Ala I Salutaria, Duodecimo constituta) *յՈսրհոյաստան.* — Not. XXXV, 34.

Թեւ Բ Փրկութեան (Ala II Salutis) *յԱրեփա Փիւնիկէի.* — Not. XXXII, 39.

Թեւ Ա Սաքսոնացւոց (Ala I Saxonum) *ի Վերոփաբուլա Փիւնիկէի.* — Not. XXXII, 37.

Թեւ Սեբաստացւոց (Ala Sebastenorum) *կազմուած Սամարիացիներէն ի Կեսարիա. 44ին Հրէաստանի մէջ (Յովսեփ., Հ. Հ. ԺԹ, 365) եւ 51ին (անդ, Ի, 122. Պ. Հ. Բ, 236). Վեսպասիանոս եւ խաւրեց զայս Հաւանօրէն փոխանակելով թեւիս հետ՝* Թեւ Ա Թրակացւոց Մաւրիտանեան (*ի Մաւրիտանիա.* Ala I Thracum Mauretana): *Ուստի իւր լիակատար անունները պիտի ըլլան* «Թեւ Երկուորեակ Սեբաստացւոց» (Ala Gemina Sebastenorum, *տես* CIL, VIII, 9358—9359) *կամ* (?) «Թեւ Ա Փզաւեան Սեբաստացւոց» (Ala

I Flavia Sebastenorum, *անդ*, 17.900). *անտարակոյս նոյնն է* հազարաւոր (miliaria) *յոր-ջորջուածն ալ՝ որ Ե. դարուն էր յԱսուաստ Պաղեստինի.* — Not. XXXIV, 32.

Թեւ Ընտրելագոյն (Ala Singularium) *Լո-լիանոսի արձանագրութեան մէջ. թերեւս նոյն* «Թեւ Ա Ուլփեան Ընտրելագոյն (Ala I Vlpia Singularium, *տես* CIL, X, 6426) *որ* 157*ին Ասորիք էր.* — *Վկյգր.* CX. *Հմմտ.* «Թեւ Ա Ընտրելագոյն (Ala I Sing[ularium] — CIL, III, 11995. *յաւել՝ էջ* 2328$^{53}$ teg. *Դարձեալ այս* Ընտրելագոյնք (Singulares) *կրնան ըլլալ Առեանու յիշած «Զեծեալք ընտիրք» (ἱππεῖς ἐπίλεκτοι), Առեան,* 4։

Թեւ (Աւգոստեան) Ասորի՞ (Ala [Augusta] Syriaca?) *տարակուսական.* — *Լոլիանոսի արձանագրութեան մէջ։*

Թեւ Թէոդոսեան առ Աւաքսա (Ala Theodosiana apud Avaxam) *ի Պոնտոս.* — Not. XXXVIII, 18.

Թեւ Փելիքս (Երջանիկ) Թէոդոսեան (Ala Felix Theodosiana). *երկու հատ այս անու-նով. մէկը՝* Շահապացի (Siluanis, *չահապետ անտառաց*), *ի Պոնտոս.* — Not. XXXVIII, 19. *միւսը՝* Կարասի (Pithiae, *«Տակառ» տեղ*) *Հայաստանի մէջ.* — *անդ.* 32. *Ասի չէ՞ ար-դեօք աւելորդ կրկնութիւն մը «Տեղեկ. Աս-տիճ» գրոց, որուն խմբագիրը գործա-ծելով մերձաւոր թուականաւ՝ բայց իրարմէ տարբեր յիշատակարաններ, միտ դրած ըլլայ միեւոյն թեւին մէկ կայանէն ուրիշ կայան մը։*

*փոխադրուած ըլլալուն։ Հոս միեւնոյն նահանգին վրայ է խնդիրը (որ ճիշդ չէ սակայն* **Թեւ Բ Փելիքս Վաղենտինեան** *գնդերու համար)։*

**Թեւ Թրակացւոց Հերակղեան** (Ala Thracum Herculania), *Լուկիանոսի արձանագրութեան մէջ. յաւել՝* CIL, XII, 1357. *յետոյ Եգիպտոսի մէջ։*

**Թեւ Թրակացւոց Մաւրիտանեան** (Ala Thracum Mauretana) *որ փոխանակուեցաւ* **Թեւ Ա Սեբաստենացւոց** *գնդին հետ (տես վերը)։ — Վկյգ.* XIX *յամէ* 88. *յետոյ Եգիպտոսի մէջ* — Berlin, Griech. Urk. II, 26, 2.

**Թեւ Գ Թրակացւոց (յԱսորիս** Ala III Thracum in Syria). *Փղաւեանց ժամանակի արձանագրութեան մը մէջ.* — CIL, II, 4251.

**Թեւ Ա Վաղենտինեան** (Ala I Valentiana) *ի Թայմատա Արաբիոյ։* — Not. XXXVII, 29.

**Թեւ Բ Փելիքս Վաղենտինեան** (Ala II. Felix Valentiana). *երկու հատ այս անուամբ, մին* «**առ Բանակաւ**» (apud Praesidium) *ի Պաղեստին)։* — Not. XXXIV, 35. *միւսը՝ «առ Ադիտթաւ»* (apud Adittha) *Արաբիոյ։* — Not. XXVII, 30.

**Թեւ Ա Վաղերեան Ընտրելագունից** (Ala I Valeria praelectorum) *ի Թիլլականս Ոսրհայաստանի։* — Not. XXXV, 27.

**Թեւ Ա Յաղթութեան Տովեայ (Յովեա՞յ) ընդդէմ Բինիթայ** (Ala I Victoriae Tovia [Jo-

via?]) contra Bintha) *յՕսրոհայաստան*; — *Անդ*, 28։

*Սոխպուած եմ մէկդի թողուլ այն երկու հեծելախմբերը որ անուն չունին եւ չեն նշանակուիր՝ բայց եթէ իրենց զօրանիստ տեղերով. այսինքն՝*

Թեւ յիդիոտա հաստատեալ (Ala Idiota constitua) *ի Պաղեստին*։ — Not. XXXIV, 37.

Թեւ ի դղեկին Տաբլարացւոց հաստատեալ (Ala castello Tablariensi constituta) *ի Հայաստան*։ — Not. XXXVIII, 25.

Վաշտ Բ Եգիպտացւոց (Cohors II Aegyptiorum), *ի* Ձորին Դիոկղետիանու (Valle Diocletiana) *Փիւնիկէի*։ — Not. XXXII, 43.

Վաշտ Ե Պակատեան Ալամանաց (Cohors V Pacata Alamannorum) *ի յՄնեւսաթա Փիւնիկէի*։ — *Անդ*, 44։

Վաշտ Գ Ալպեանց (Cohors III Alpinorum) առ Ամոնու (apud Amona) *Արաբիոյ*։ — Not. XXXVII, 35). *Համանօրէն տարբեր* Վաշտ Գ Ալպ. հեծեալ (Cohors III Alp. equitata) *Դաղմատիոյ*։

Վաշտ Ապուլեան Հռոմէացի Քաղաքացւոց (Cohors Apule[i]a civium Romanorum) *յԻւսիպորտոյ* (Yssiporto) *Հայաստանի*։ — Not. XXXVIII, 34. Ritterling (*ի* Wiener Studien, *անդ, էջ* 366) *կը կարծէ թէ գրչին մէկ վրիպակն ըլլայ, որ իւր բնագրին մէջ գրուած էր ΑΙΤΑΛΙΚΗ բայց գրած է ΑΠΑΔΙΚΗ, ուսկից եղած* Apaleca *եւ վերջապէս* Apuleta, *փոխանակ*

ըլլալու I Italica «Ա Իտալական»: Ենթադրութիւնս հանճարեղ է. սակայն անկարելի ալ չէ ընդունել թէ coh. Apuleia «Ապուլեան» վաշտ՝ պէտք մ'անունն ըլլայ: Իսկ Արիանու (Ար. 7 եւ 14) 'Απλανοί (Անշարժք) յորջորջանաց մասին՝ Ռիտտերլինգ կը դառնայ Grotefendի սրբագրութեան՝ Λεπιδιανοί (Լեպիդեանք) կարդալու, մինչդեռ Seeck, Մոմսէն եւ Cicharius կ'առաջարկեն ընթեռնուլ 'Απ(ου)λ(ηι)ανοί (Ապուլեանք): Ասոնց մէջ ընտրութիւն մ'ընելը կամայական բան մը կ'ըլլար. սակայն ես մէտ եմ աւելի առաջին կարծեաց, որովհետեւ կայ Վաշտ Ա Լեպիդեան (Coh. I Lepidiana, տես վարը) որ ճիշդ ալ Հայաստանի մէջն է:

Վաշտ Յիսնական Արաբաց (Cohors quinquagenaria Arabum) ի Բէթէլլահա Միջագետաց: — Not. XXXV, 35.

Վաշտ Փելիքս (Երջանիկ) Արաբաց (Cohors III Felix Arabum), առ ափամբ Վադէ (Ձոր) Աֆարիս գետոյ ի Դղեակս Ամոնեացւոց (in ripa vade Afaris fluvii in Castris Amonensibus) յԱրաբիա: — Not. XXXVII, 34.

Վաշտ Ա Ասկաղոնեացւոց Փելիքս հեծեալ (Cohors I Ascalonitarum Felix equitata) (Հոկատով մը կը ներկայանայ Լոլիանու զօրաց մէջ. կ'ըսուի Աղեղնաւոր sagcittaria) սառբական Վկայագրին մէջ 157 տարւոյ. — Վկյգ. CX: Թերեւս մաս էր Կեսարիոյ պահակազօրաց՝ Հրէաստանի «Գործակալաց» ժամա-

*նակ*: — *Մոմսէն*, *ի* Berliner Sitzb. 1895, p. 501, *ծն*. 5. *Հմմտ*. *Ծիւրէրի* (*անդ*, *էջ* 461) *շատ տկար տարակուսութիւնները*, *որ հիմնուած է Յովսեպոսի խօսքին մէկ շատ նեղ բառացի մեկնաբանութեան վրայ*:

Վաշտ Ա Աւգոստեան (Cohors I Augusta) *Ասորիքի մէջ Աւգոստոսի ժամանակ*, *Կեսարիոյ շրջակայքը*: — CIL, III, 6687. *Վատտինգտ*. 2112. *Հարիւրապետ մ'այս գնդին ընկերակցաւ Ս*. *Պօղոսի Առաքելոյ դէպ ի Հռոմ*: — *Գործք Առաք*. *Իէ*, 1 (*Հայ Թրգմ*. «...*Հարիւրապետ մի*, *որում անուն էր Յուլիոս*, Սեբաստեան գնդին» = *σπείρης σεβαστῆς*, *լատ*. *Թարգմանութիւն* «*Աւգոստեայ*»):

Վաշտ Ա Բոսփորական հազարաւոր Աղեղնաւորաց հեծեալ (Cohors I Bosporiana miliaria sagittariorum equitata). Վաշտ մը Ա Բոսփ. (Coh. I Bosp.) *կը յիշուի* 116 *տարւոյ Պաննոնիական Վկայագրի մը մէջ* (CIL, III, p. 2328[67], Nr. CV), *Պաննոնիա տարուած ըլլալու է Տրայիանու իշխանութեան վերջը կամ Ադրիանոսի ատեն*: — *Առիանոս* 3, 4, 18: *Իւր Վերակացուաց* (praefecti) *երկուքը* զօրաց տրիբուն (tribuni militum) *կ'ըլլան* ԺԲ Շանթահար լեգէոնին (leg. XII. Fulminata). Arch. Zeitschr. XXXVII, 1879, p. 136, Nr. 269. BCH, XVII, 1893, p. 35. *ստոյգ է որ այս վերջին արձանագրութիւնս Ա*. *դարէն կ'երեւայ*. *այն ատեն ընդունելու է որ այս վաշտն*

*առաջին անգամ առժամանակեայ կերպով կեցաւ Արեւելք․ իսկ երկրորդ անգամուն թերեւս վերջնական եղաւ հոն մնալը․ Ե․ դարուն կայ* Վաշտ Հազարաւոր Բոսպ. (Coh. mil. Bosp.) *յԱրաւրակս Հայաստանի*: — Not. XXXVIII, 29.

Վաշտ Գ եւ Դ Բրակ(ացւոց *կամ* Արաւգուստանացւոց) (Cohors III. IV Brac(arum *կամ* aravgustanorum) *յԱսորական Պաղեստին* 139*ին*. — *Վկյգ*. CIX. *Թերեւս հոս բերուած՝ մին Հռետիայէ՝ միւսը՝ Ափրիկէէ* (CIL, VIII, 7079). *Հրէական երկրորդ պատերազմին համար*:

Վաշտ Է Բրիւկացւոց հռոմէացի քաղաքացեաց հեծեալ (Cohors VII Breucorum civium Romanorum equitata) *նախնապար Դանուբի վրայ, յետոյ թերեւս Արեւելք խաւրուած Տրայիանու կամ Ադրիանու ատեն*: — CIL, III, 1464. *Հմմտ*. 215:

Վաշտ Է Դաշտական (Կամպանիական) Գորդիանու Պիոսի Փելիքսի (Cohors VII Campestris Gordiana Pia Felix) *թերեւս* «Քաղաքացեաց Հռոմէացւոց կամաւորաց» (civium Romanorum voluntariorum) — Eph. epigr. VII, 740. յԱտնի՝ *Դամասկոսի եւ Պաղմիւրայի մէջտեղ, արդէն Անտոնինոս Պիոսի ատեն*: — *Վատտինգտ*. 2562m. CIL, III, 132

Վաշտ Ա Փղաւեան Կանաթենացւոց հազարաւոր (Cohors I Flavia Canathenorum miliaria). *Մոմսէն զայն կը զետեղէ ի Կե-*

սարիա 6 եւ 41 տարիներուն մէջ տեղ (Հմմտ. Վաշտ Ասկաղոնացւոց եւ Վաշտ Սեբաստացւոց). Հմմտ. Վատտինգտ. 2329, 2412ª :

Վաշտ Բ Կանտաբրացւոց (Cohors II Cantabrorum). Հրէաստանի մէջ 86ին: — Վկյգ. XIX.

Վաշտ Բ Կարքեդոնեական (Կարթագի՞ (Cohors II Carthaginensis) իւր կայանի՞ տեղէն ի Կարթա (Cartha) Պաղեստինի: — Not. XXXIV, 39.

Վաշտ Ա Քաղկիդոնեացւոց հեծեալ Աղեղնաւորաց (Cohors I Chalcidenorum equitata sagittariorum) յՍուրիա 157ին: — Վկյգ. CX. Իսկ 162ին Աղմեղեբրա դղեկին մէջ՝ Դամասկոսի արեւելակողմը: — CIL, III, 129 = 6658.

Վաշտ Ե Քաղկիդոնեացւոց հեծեալ (Cohors V Chalcidenorum equitata), որմէ չոկատ մը Լուկիանու բանակին մէջ:

Վաշտ Բ Դասական (Cohors II Classica) Արեւելքի մէջ Աւգոստոսի վերջին տարիները: — CIL, III, 6687.

Վաշտ Կղաւդեան հեծեալ ի Գամիրս (Cohors [Cla]udia equitata [in Cappa]docia) — CIL, IX, 2958. անտարակոյս Ա վաշտը՝ զոր «Տեղեկ.» (XXXVIII, 36) կը դնէ ի Սեբաստոպոլիս Հայաստանի:

Վաշտ Կղաւդեան Աղեղնաւորաց (Cohors Claudia sag[ittariorum]) յՍուրիա 157ին: — Վկյգ. CX.

Վաշտ Կոմագենացւոց ի Գամիրս ([Cohors Comm]agenorum in Cappadocia). — CIL, VI, 3654, *հաւանօրէն Դ կամ Ե վաշտը, որովհետեւ միւսները ուրիշ տեղ են եւ բանաձեւը ամէնուրէն չի ներեր՝ առժամանակեայ տեղափոխութիւն մ'ընդունելու։*

Վաշտ Բ Կրետական, առ Յորդանան գետով (Cohors II Cretensis, iuxta Jordanem fluvium) *ի Պաղեստին։* — Not. XXXIV, 47.

Վաշտ Կիւրենական (Cohors Cyrenaica) *ի Կապպադովկիա։* — *Արրիանոս*, 1, 3, 14, 18. *ապահովապէս պէտք չէ շփոթել յաջորդին հետ՝*

Վաշտ Գ Կիւրենական Աղեղնաւորաց հեծեալ (Cohors III Cyrenaica sagittariorum equitata) *Միւսիայէ Արեւելք եկած Ներոնի ատեն* Ե Մակեդոնական լեգէոնի հետ։ — Notizae degli scavi, 1895, p. 342.

Վաշտ Ուլպեան Դակաց (Cohors Vlpia Dacorum) *յԱսորիս* 157*ին*։ — *Վկյդ.* CX. *հաւանօրէն Ա վաշտը, զոր «Տեղեկ.»* (XXXIII, 33) *կը դնէ ի Կղաւդիա Ասորիքի մէջ։*

Վաշտ Գ Դակաց հեծեալ (Cohors III Dacorum equitata) *որմէ ջոկատ մը Լոլիանու բանակին մէջ։*

Վաշտ Ա Դամասկացւոց (Cohors I Damascenorum) *յԱսորական Պաղեստին* 139*ին*։ — *Վկյդ.* CIX.

Վաշտ Ա հեծեալ (Cohors I equitata)

*տասանց ուրիշ յորջորջանաց) ի Կալամոնա Պաղեստինի*։ — Not. XXXIV, 43.

Վաշտ Բ Հեծելոց (Cohors II equitum) *Ջոկատ մ'ասկէ Լոլլիանու բանակին մէջ*։

Վաշտ Ա Եփրատական (Cohors I Euphratensis) *ի Մարաթա Ոսռհայաստանի*։ — Not. XXXV, 33.

Վաշտ Ա Փղաւեան Հռոմէացի քաղաքացեաց հեծեալ (Cohors I Flavia civium Romanorum equitata) *Լոլլիանու արձանագրութեան եւ Պաղեստինեան Վկայագրին մէջ* CIX՝ *յամէ* 139։ *Յետոյ Ա Փղաւեանը կը գտնենք ի Մոլէաթա Պաղեստինի*։ — Not. XXXIV. 45.

Վաշտ Ա Գետուղացւոց (Cohors I Getulorum) *ի Թիլլասամանա Ոսռհայաստանի*։ — Not. XXXV, 32.

Վաշտ Ա եւ Բ Ուլփեան Գաղատացւոց (Cohors I, II Vlpiae Galatarum) *յԱսորական Պաղեստին* 139*ին*։ — *Վկյգ*. CIX. *«Տեղեկ.» ա՛յլ եւս կը ճանչնայ միայն* «Բ Գաղատացւոց» (II Galatarum) *ի յԱրիելդելա Պաղեստինի* (XXXIV, 44).

Վաշտ Դ Գաղղիացւոց (Cohors IV Gallorum) *յԱսորիս* 157*ին*։ — *Վկյգ*. CX.

Վաշտ Ե Երկուորեակ Հռոմէացի քաղաքացեաց (Cohors V Gemina civium Romanorum) *յԱսորական Պաղեստին* 139*ին*։ — *Վկյգ*. CIX.

Վաշտ Ա Հազարաւոր Գերմանացւոց (Cohors I miliaria Germanorum) *յԱսորիս Գոր-դիանու անուն*։ — Arch. ep. Mitth. aus Öst.-Ung. VIII, 1884, p. 22, Nr. 61 = IGRRP, I, 263. *առանց Թուոյ կարգի՝ ի Սիսիլիա Հա-յաստանի՝ «Տեղեկ.»* XXXVIII, 30.

Վաշտ Ա Գոթաց (Cohors I Gothorum) *ի Հելելա Ասորիքի*։ — Not. XXXIII, 32.

Վաշտ Բ Գրատիանեան (Cohors II Gratiana) *ի Յեհիրոյ Պաղեստինի*։ — Not. XXXIV, 42.

Վաշտ Համիացւոց (Cohors Hamiorum) — *տես* Վաշտ Հազարաւոր (Cohors miliaria).

Վաշտ Գ Հերակլեան (Cohors III Herculia) *ի Վերանոկա Փիւնիկէի*։ — Not. XXXII, 40.

Վաշտ Բ Սպանիացւոց (Cohors II Hispanorum) *ի Կապպադովկիա*։ — CIL, III, 6760; IX, 2649.

Վաշտ Ա Իտալական (*Առիանոս*, 13) կամաւորաց քաղաքացեաց Հռոմայեցւոց ի Գամիրս (Cohors I Italica voluntariorum civium Romanorum in Cappadocia). — CIL, VI, 3654.

Վաշտ Բ Իտալական քաղաքացեաց Հռոմայեցւոց կամաւորաց Հազարաւոր (Cohors II Italica civium Romanorum voluntariorum miliaria). CIL, III, 13483 a. XI, 6117. *ասորա-կան վկայագիրը՝* CX, 157 *տարւոյ չ՚անուա-նէր զայն «Հազարաւոր»*։

Վաշտ (Գ. *կամ աւելի*) Իտուրէացւոց (Աղեղնաւո՞ր) (Cohors [III...] Ituraeorum sagittaria). *Հմմտ. Րիտտէրլինգ, անդ, էջ* 367) *Կապպադովկիոյ մէջ։ — Արրիանոս*, 1, 18։

Վաշտ Ա Յուլեան Ընտիր[181] (Cohors I Julia Lectorum) *ի Սպիտակ–Ձոր* (Valle Alba) *Փիւնիկէի*։ — Not. XXXII, 42.

Վաշտ Ա Լեպիդիանեան հեծեալ (Cohors I Lepidiana equitata) *Միւսիայէ՝ հաւանօրէն արեւելք խաւրուած Տրայիանու պատերազմին համար, ի* «Նոր–Բանակ» (Caene-Parembole) *Հայաստանի*։ — Not. XXXVIII, 35. — *Տես վերը՝ Վաշտ* Ապուլեան։

Վաշտ Ա Լիգուրացւոց (Հազարաւո՞ր) (Cohors I Ligurum [miliaria?]), *Արեւելքի որեւէ նահանգի մը մէջ* (°)։ — CIL, III, 435 = 7131.

Վաշտք Ա եւ Դ Լուկենտեանք հեծեալք (Cohortes I, Lucensium equitatae) *Ջոկատներ Լոլիանու բանակին մէջ*։

Վաշտ Ա Աւգոստեան Պրետորական Լուսիտանացւոց հեծեալ (Cohors I Augusta Praetoria Lusitanorum equitata) *Հրէաստանի մէջ* 86*ին*։ — *Վկյգ*. XIX, *յետոյ՝ Եգիպտոսի մէջ*։ — Berlin, Griech. Urkund. 696.

---

[181] *Այս* Lectorum (*բառ.* Ընթերցողաց) *բառը թերեւս* Singularium (Ընտրելագոյն) *իմաստն ունի*։ — [*Այսպէս վերն ալ* «Ala I Valeria praelectorum, *բառացի* «... *առաջին ընթերցողաց՝ Ուսուցչաց*» *ըստ հին լատիներէնի հաւանօրէն* Ընտրելագոյն *ձեւ, ինչպէս գրինք*։]

Վաշտ Հազարաւոր (Cohors miliaria, *առանց ուրիշ յորջորջանաց*) *Ասորիքի մէջ*: — BCH, XXI, 1897, p. 45 Nr. 22: *στρατ. χωρτ. μιλι(αρίας).*) · *Իսկ Տրէվէսի արձանագրութեան մը մէջ* (CIR h, 787): [co]hortis Rhamae miliariae in Syria. *Հոս* «Հռամա»՝ *զոր քանդակիչը սխալ հասկցած է, զօրակայան է* Համա (Hama) · *Եւ* R *տառն աւելցուած է արաբական* H *կոկորդային հնչումը բացատրելու համար: Հիրշֆելդ եւ Ցանգէմայստէր* (CIL, XIII, 3684) *նոյն բնագիրն երկրայութեամբ կը մեկնեն այսպէս*՝ ex [co]hort[e pr(ima)] Ha[m(iorum)] miliaria in Syria (*յառաջին վաշտէ Համացւոց հազարաւորէ յԱսորիս*): *Այս ամէնը բնագրի քիչ մը չափազանց մեծ վերանորոգում եղած կ'ըլլայ. բայց առջեւնիս ալ՝ սրբագրելու համար՝ միայն թերակատար պատճէններ ունինք արձանագրութեան:*

Վաշտ Ա Լեռնականաց (Cohors I Montanorum) *յԱսորական Պաղեստին 139ին:* — *Վկյգ.* CIX. *Թերեւս Պաննոնիոյ մէջ եղածը՝ հոս փոխադրուած:* — *Վկյգ.* XVII.

Վաշտ Նումիդացւոց Աղեղնաւորաց հեծեալ (Cohors Numidarum sagittariorum equitata *Արրիանոս*, 3, 18 = *կը գրէ Νομάδες* «*Վաչկատունք*»). *Թերեւս* Վաշտ Ա: — Ath. Mitth. IX, 1884, p. 262.

Վաշտ Ա Արեւելեան (Cohors I Orientalis) *ի Թամա Փիւնիկէի:* — Not. XXXII, 44.

Վաշտ Դ Պաղեստինեացւոց (Cohors IV Palestinorum) *ի Թամանա Պաղեստինի:* — Not. XXXIV, 46.

Վաշտ Ա Աւգոստեան Պաննոնիացւոց (Cohors I Augusta Pannon(iorum) *յԱսորիս* 157*ին:* — *Վկյգ.* CX.

Վաշտք Բ եւ Գ Ուլփեանք Պափղագոնիացւոց (Cohortes II, III Vlpiae Paphlagonum), *նոյնպէս. ասոր Բ* հեծեալ (II equitata) *վաշտը՝ Լուկիանու բանակին մէջ:*

Վաշտ Ա Ուլփեան Պետրէացւոց հեծեալ (Cohors I Vlpia. Petraeorum equitata) *ներկայ Լուկիանու բանակին մէջ, եւ յԱսորիս* 157*ին:* — *Վկյգ.* CX.

Վաշտ Գ Ուլփեան Հազարաւոր Պետրէացւոց (Cohors III, Vlpia miliaria Petraeorum) *ի Մետիտա Հայաստանի:* — Not. XXXVIII, 27. *Հաւանօրէն* «հեծեալ աղեղնաւոր, equitata sagittaria, *տես Առիանոս*, 1 *τοὺς ἱπποτοξότας τοὺς Πετραίους* (*«զհեծեալ նետաձիգ Պետրացիս»*):

Վաշտ Դ (Ուլփեա՞ն) Պետրէացւոց (Cohors IV [Vlpia?] Petraeorum) *յԱսորական Պաղեստին*, 139*ին:* — *Վկյգ.* CIX.

Վաշտ Ե Ուլփեան Պետրէացւոց (հեծեալ) (Cohors V Vlpia Petraeorum [equitata] *որուն մաս մը ներկայ էր Լուկիանու բանակին մէջ, եւ յԱսորիս էր* 157*ին:* — *Վկյգ.* CX.

Վաշտ Զ [Ուլփեա՞ն] Պետրէացւոց (Co-

hors VI [Vlpia?] Petraeorum) *յԱսորա-կան–Պաղեստին* 139*ին*: — *Վկյգ*. CIX.

վաշտ Դ Փռիւգացւոց (Cohors IV Phrygum) *ի Պրեզիդիում* (*Բանակ*, Praesidio) *Պաղեստինի մէջ*: — Not. XXXIV, 41.

վաշտ Ա Յիսնաւոր (*առանց ուրիշ յոր-ջորջանաց*, (Cohors I Quinquagenaria, *ըստ* Seeck *ի ուղղելի* Հարիւրաւոր, Centenaria), *ի Տարբա Պաղեստինի*: — Not. XXXIV, 40.

վաշտ Ա Հռէտացւոց հեծեալ (Cohors I Raetorum equitata) *ի Գամիրս*: — *Առիա-նոս*, 1:

վաշտ Դ Հռէտացւոց հեծեալ (Cohors IV Raetorum equitata), *անդ*՝ 11, 12. *Ա. դարուն՝ յԱնայիրա Հայաստանի*: — Not. XXXVIII, 28.

վաշտ Ա Փրկարար (Cohors I Salutaria) *Երուսաղեմի եւ Երիքովի միջանեղ, ի Պաղես-տին*: — Not. XXXIV, 48.

վաշտ Ա Սեբաստացւոց Հազարաւոր (Cohors I Sebastenorum miliaria) *յԱսո-րական Պաղեստին*, 139*ին*: — *Վկյգ*. CIX. *Մոմսէն ասոր մասին ալ նոյն ենթադրու-թիւնը կ'ընէ զոր կ'ընէր* Ա Ասկաղոնացւոց *եւ* Ա Կանաթացւոց *վաշտերուն վրայ*: *Տես նոյները*:

վաշտ Ա Սիւգամբրացւոց հեծեալ (Cohors I Sygambr[or]um equitata)), *ներկայա-ցուած Լոյլիանու արձանագրութեան մէջ*. *Համանօրէն նոյն է* Ա Կղաւդեան Սուգամ-

բրացւոց (I Cl[au]d[ia] Sugambr[orum]) *վաշտը՝* CX *Վկայագրին որ նոյնը Ասորիքի մէջ կը դնէ 157ին։*

Վաշտ Ա. Թէոդոսեան (Cohors I Theodosiana) *ի Վաղենտիա Հայաստանի։* — Not. XXXVIII, 33.

Վաշտ Ա. Աւգոստեան Թրակացւոց (Cohors I Augusta Thracum equitata) *նախ ի Պաննոնիա, յետոյ Արաբիա եկած։* — CIL, III, 109, 110. *Հաւանօրէն վերջնական կերպով, որովհետեւ Ե. դարուն կայ* Վաշտ Ա. Թրակացւոց (Cohors I Thracum) *յԱսաբէա Արաբիոյ։* — Not. XXXVII, 32: *Դարձեալ՝*

Վաշտ Ա. Թրակացւոց Հազարաւոր (Cohors I Thracum miliaria) *նախ յԱսորական Պաղեստին 139ին։ — Վկյդ. CIX. յետոյ՝ յԱգոտիթա (կամ Ազիոթա) Արաբիոյ։* — Not. XXXVIII, 31. *Որոշ չէ թէ այս երկուքին միայն հետ նո՞յն դնելու ենք յաջորդը՝*

Վաշտ Ա. Թրակացւոց (Ասորական) հեծեալ (Cohors I Thracum [Syriaca] equitata) *յանախ Միւսիայէ Ասորիք փոխադրուած։ — Վկյգ. XIX, յամէ 86. արձանագրութիւն Հոլիանու՝* CIL, III, 8262 — Wiener Jahreshefte, VIII (1905) Beiblatt, p. 19. (*Բ. դարու վերջէն*)։

Վաշտ Բ Թրակացւոց Ասորական (Cohors II Thracum Syriaca, *ի* CIL, XIV, 2957) *կը ներկայանայ* XIX *Վկայագրին մէջ* 86 *տարւոյ եւ*

CX Վկյգ. 157 *տարւոյ. յետոյ՝ Եգիպտոսի մէջ*:

Վաշտ Գ Թրակացւոց Ասորական (հեծեա՞լ) (Cohors III Thracum Syriaca [equitata?]) — Cagnat, Ann. epigr. 1896, Nr. 35. *Ասորական* CX *Վկայագրին մէջ* 157 *տարւոյ է* վաշտ Գ Աւգուստեան Թրակեան (Coh. III, Augusta Thracum) *եւ ո՛չ* «հեծեալ»: *Ասորիք եկած ըլլալու է* 139*ին* Գ Թրակացւոց *վաշտին հետ, ինչպէս եզրակացուցած է* H. de Villefosse *ի մեկնութեան արձ.* CIL, VIII, 15529. (*Հմմտ.* L. Poinssot, *ի* Nouv. archiv. des miss. XIII, 1906, p. 289).

Վաշտ Դ Թրակացւոց Ասորական (Cohors IV Thracum Syriaca — CIL, II, 1970. *Միայն իւր անունէն կ'ենթադրենք երբեմն Ասորիք բնակած ըլլալը*:

Վաշտ Բ Վաղենտինեան (Cohors II Valentiana) *ի Զիգանա Հայաստանի*: — Not. XXXVIII, 37.

Վաշտ Գ Վաղերեան (Cohors III Valeria) *ի Մարմանտարում Ասորիքի մէջ*: — Not. XXXIII, 34.

Վաշտ ԺԲ Վաղերեան (Cohors II Valeria) *յԱփրոյ* (Afro) *Պաղեստինի*: — Not. XXXIV, 38.

Վաշտ Ա Յաղթողաց (Cohors I Victorum) *յԱմմաթա Ասորիքի*: — Not. XXXIII, 35.

Վաշտ Ա Վինդելիկեանց Հազարաւոր (Cohors I Vindelicorum miliaria) *յիշատա–*

*կուած ի Վկայագրին* LXVI (157 *տարւոյ*), *որ Տրանսիլուանիոյ գնդերը կը յիշէ յանուանէ. բայց, կ'ըսէ* Cichorius, *թերեւս նախնաբար Պաղեստին էր, որովհետեւ այն տեղ յիշատակուածներուն մէջ կ'երեւայ նաեւ Կեսարացի Հրեայ մը՝* Bar Simso(n), Callistenis f. n. (*Բար Սամսոն՝ որդի Կալիսթենեայ*)։

Վաշտ Ա Ուլփեան Աղեղնաւորաց հեծեալ (Cohors I Vlpia sagittariorum equitata) *ներկայացուած Լոլլիանու բանակին մէջ*։

Վաշտ Բ Ուլփեան հեծեալ (Cohors II Vlpia equitata) *յԱսորիս* 157*ին*։ — *Վկյգ*. CX.

Վաշտ Գ Կամաւոր (Cohors III Voluntaria) *ի Վալթա՛ Արաբիոյ*։ — Not. XXXVII, 33. *Հաւանօրէն Դաղմատիայէ փոխադրուած* 245*էն ետքը*։ — CIL, III, 2706 = 9724։ *Թերեւս այս վաշտին անունը անցած է յետոյ Հետեւակայ այն* թուոյն (numerus)՝ *որուն կը վերաբերին Գազայի եւ Ելեւթերոպոլիսի Մարտիրոսաց ոմանք (Է. դարու սկիզբը). որոնց համար կ'ըսուի՝ ἐκ βάνδου Βολουνταρίων (ի խմբէ Կամաւորաց)*։ — J Pargoire, *ի* Echos d'Orient, VII, 1905, p. 40—43.

Վաշտ ԺԴ Վաղերեան Զաւդէից (*Ծաւդէից*) (Cohors XIV Valeriana Zabdenorum) *ի Մէոկարիրի Միջագետաց*։ — Not. XXXVI, 36.

*Առանձինն յիշատակելու է այն գունդը՝ որ զուտ ու պարզապէս* Վաշտ (Cohors) *ա–*

նուամբ կը յիշուի ի Մոքորա Հայաստանի: Not. XXXVIII, 38.

Այս Յանկերը յերեւան կը հանեն բազմաթիւ իրողութիւններ՝ զորոնք պէտք է մատնանիշ ընել. Նախ՝ Տրայիանու փառաւէր՝ բայց եւ նախատեսող գործունէութիւնը. այս թեւոց եւ Վաշտից շատերը կը յորջորջուին Ուլփեան (Vlpia)[182]. Բ. դարու երկրորդ կիսուն պատկառելի թուով զօրագնդեր նոր ստեղծուած կամ փոխադրուած են դէպ ի արեւելեան սահմանագլուխները: Միեւնոյն ժամանակ կը հաւաստենք որ այս զօրագունդերը չէին զար լէգէոններէ, որոնք պարագայից պահանջած ծառայութեան համար նուազ յարմար ճանչցուած էին: Նախադաս համարուած են զօրաբաժիններ՝ որ աւելի ճկուն ու աշխոյժ մարտագիտութեամբ մը մարզուած են եւ քիչ մը նման ասպարէզի վրայ ճակատներ մղելու պատրաստուած դէպ ի Եփրատ կամ Տիգրիս: Դիոկղետիանու վերակազմութիւնն աւելի նուազ ակներեւ կը տեսնուի՝ Թեւ Դիոկղետեան, Թեւք Յովեայ (ala Diocletiana, alae Jovine.) վերջապէս կան երեք Թեւք Թէոդոսեանք (alae Theodosianae) Հայաստանի մէջ[183]:

---

182 Ցատերը նոյնպէս Փղաւեան (Flavia) կը կոչուին. բայց եթէ զատոնք Փղաւեանք ստեղծած են՝ գոնէ ապահովապէս իրենք չեն, որ զանոնք Արեւելքի մէջ հաստատած են, հրէական առաջին պատերազմին առթիւ:

183 Ասի ուշադրաւ մանրամասնութիւն մըն է՝ զոր մերձեցընելու ենք Թէոդոսի Ա. ձեռօք Հայաստանի

Միտ դնելու կէտ մը նոյնպէս որ շատ փոքր թուով սատարք կայանաւորած էին Արաբիոյ մէջ՝ «Տեղեկութեան» վկայած վարչութենէ յառաջ։ Կարծեմ թէ սաի նշան մըն է թէ Ինքնակալք՝ նոյն իսկ 105էն ետքը՝ խնամք տարած են օգտուելու Նաբատացւոց գործակցութենէն իբրեւ Դաշնակիցներէ, որով հռոմէական գնդերու խնայութիւն կ'ըլլար։ Եւ թերեւս այս մարդկան շատերը կը զինուորագրուէին Ասորական զօրագնդերու համար[184]։

Զօրաթուերը բաւական ճշդիւ համեմատական եղած կ'երեւան Սահմանաց (limes) այն հատուածին տարածութեան հետ՝ զոր պէտք էին պաշտպանել։ Միւս կողմանէ այն ատէն զօրագնդերը՝ զորոնք Արիանոս Կապադովկիոյ մէջ կը յիշէ, Ե. դարուն ամբողջովին կը գտնուին Հայաստանի մէջ. ուստի կ'երեւայ թէ այս տեսակիտով կանոնաւոր կէտ մըն էր առանց հաստատակայ տեւակա-

---

խաղաղական բաժանման համար կրած դաշանց հետ, Վաշտերս կը ցուցընեն որ այնու հանդերձ խոհեմօրէն անձնապահ զգուշութիւն կ'ըլլար։

[184] Արդեամբք ալ 130էն յառաջ կային մինչեւ վեց Վաշտք Պետրէացւոց (cohortes Petraeorum)· բայց նորանշան կէտ մըն է որ այս փորձուած հեծեալները ուրիշ թիւոց մէջ չեն մուծած։ — Այս Վաշտք Պետրէացւոց թերեւս կը ներկայացնեն այն «Վեց Վաշտք Սարակինոսաց» (sex coh. Saracenorum) որոնց մասին կը խօսի Գրոլլոս (4, 1—2) եւ որոնք կասկածելի կը համարի՝ շատ բառացի մեկնութեամբ մը՝ Lécrivain գիտնականը (Études sur l'Histoire Auguste, Paris 1906, p. 58 ff.)։

նութիւնը, — երեք դարերու տեւականութի՛ւն մը։

Զարմանալու չենք որ Ուռհայաստանի եւ Միջագետաց արձակ երկիրներուն մէջ հետեւակազօրքը հազիւ թէ կը ներկայանայ։ Աւելի զարմանալի է որ առաջին հայեցուածքին ա՛յն է որ Վաշտերու թիւը՝ ամբողջութեան մէջ զգալապէս աւելի է Թեւոց թուէն. սակայն արդէն այս Վաշտերէն շատերը — թուով 24 — հեծեալ են (equitatae), անշուշտ նաեւ ուրիշ քանի մը հատն ալ էին նոյնպէս՝ թէպէտ մեզի անծանօթ մնացած. բայց մանաւանդ այրուձին շուտով աճեցաւ[185] նոր կազմութիւններով, որոնք Գաղղիենոսէն են[186], եւ ասոնք են՝ Հեծեալք կամ Այրուձին (equites)[187]։

---

[185] Բոստրայի արձանագրութիւն մը (Վատտինգտ. 1946 = CIL, III, 93) կը յիշէ «Հեծեալք ընտիրք բանակին Արաբացւոց» (e[q]uites) sing(ulares) exer(citus) Arabici). յայտնապէս այրընտիր զինուորներէ կազմուած գունդ մըն էր՝ քիչ շատ ամէն կողմէ զօրահան եղած։ Թանկագին բան մը կ'ըլլար արձանագրութեան թուականը գտնել. արձանագրութիւնը գեղեցկատառ (bonis litteris( կ'ըսէ CIL, որ մեծ բան մը չի ցուցըներ. եւ արձանագրութեանս մէջ յիշուած նուիրակին այլուստ անծանօթ է. բայց նոյն իսկ այս տիտղոսը գոնէ կը ցուցընէ՝ ամէնէն ուշ՝ Գ. դարու առաջին կէսը։

[186] Հմմտ. Ritterling, ի Festschrift für O. Hirschfeld, անդ։

[187] Եւ Յուրանք (երեքանկիւնի Ճակատք) Հեծելոց (cunei equitum բառացի «Սեպք հեծելոց»), որ Գերմանական ճակատամբ հեծելախմբերու (գերմ. Keil) տիպար մըն էին (Տակիտ., Գերմ. 6—7) եւ որ Արեւելքի մէջ կը ներկայացուի միայն Պաղմիւրացւոց միակ

## § 4. Նոր կազմութիւններ Գ. դարուն. Հեծեալք։

*Այս գնդերը ծնած են նոյն խոկ Արեւելքի մէջ. Հռոմէացիք միշտ ընդդիմութիւն մ'ունեցած են լեգէոնական հետեւակազօրը միացնելու հեծելազօրուն հետ. մանաւանդ որոշ ժամանակ մը լիակատար բաժնած էին երկուքն իրարմէ. բայց Գ. դարու կրկին վերանորոգեցին։ Մոմզէն*[188] *մեծ կարողամտութեամբ կ'ենթադրէ թէ այս* Հեծեալք (equites) *լեգէոններու հին հեծելազունդը կը ներկայացընեն։ Հերձումը կատարուած է երկու պատճառաւ. Նախ՝ հեծելազօրը կ'աճէր թուով, ա՛յնչափ որ մինչեւ այն ատեն հաւասարակշիռ երեւցածն ալ խանգարած էր. եւ երկրորդ՝ հեծելազօրաց երկու խմբերու՝ Մաւրիտանացւոց եւ Դալմատացւոց կամ Իլիւրիկեցւոց՝ բացարձակ գերակշռութիւնը կը միտէր յանգելու ձիաւոր տարրերու այնպիսի յարակցութեան մը՝ որ լեգէոնները կը կղզիացընէր։*

*Հեծելազօրաց այս տեսակը Աւրելիանու ընդդէմ Պալմիւրայի մղած պատերազմին*[189] *մէջ մեծ ծառայութիւններ մատոյց իր յանդգնութեամբն ու դիւրաշարժութեամբ։ Զե–*

---

կոմսական դրօշաւորութեամբ *մը* (vexillatio comitatensis՝ *«մարտական ջոկատ»*. Not., Or. VII, 34)։

[188] *Ի* «Hermes», XXIV, p. 207։

[189] *Զոսիմոս*, *Ա.*, 52, 3։

նորիայի յաղթողը նոր որեւէ ապստամբութեան մ'առջեւը կանխաւ առնելու համար՝ բնիկներէն կազմուած հին պահակայան զօրագնդերուն մէջ առատօրէն խառնեց ցրուեց այս օտար ցեղերէն ու երկիրներէ եղած գունդերը, եւ կցեց ուրիշ զօրաբաժիններ ալ՝ Գոթաց, Ցութոնգացւոց, Ալամանաց։ Ինքն իրմէ կը հասկցուի թէ զինուորագրութիւնը չէր կրնար շարունակուիլ միեւնոյն հիմանց վրայ. ինչպէս Թեւոց ու Վաշտուց համար՝ պարապները կը լեցուէին նոյն տեղն առնուած զինուորներով։ Սակայն եւ այնպէս նախնական անուանակոչութիւնք մնացին այնուհետեւ ալ. եւ այս վերջին յիշուածները պարզապէս փոխուեցան խառնուեցան Սատարաց մէջ (auxilia), իբր ո՛չ այնչափ պանծալի՝ որչափ էին Մաւրիտանացիք, Դալմատացիք եւ Լիւբիկեցիք, որոնք այլընտիր զօրագնդեր կը կազմէին՝. լեգէոններէն ալ նախադասութիւն մ'ունենալով։ Այս ամէն միութեանց իւրաքանչիւրին սկսաւ գործածուիլ թուոյ (numerus) ընդհանուր բացատրութիւնը. բայց պաշտօնական դասակարգութեան մէջ պէսպիսութեանց այնպիսի խուռն բազմութիւն մը կը զանազանուէր՝ որ դժուար է պատուոյ աստիճանաց մէջ իւրաքանչիւրին կարգը ճանչնալ. որովհետեւ կ'երեւայ թէ «Տեղեկ. Աստիճ.» այս նկատմամբ բաւական հակասութիւններ կը պա-

բունակէ[190]։ Իւրաքանչիւր գաւառի համեմատ եղած զինուորակոչութիւնք կը նշանակուին բառովս indigenae (բնիկք, տեղացի) որ բազմաթիւ հեծելախմբերու կը գործածուի. իսկ promoti (յառաջ մատուցեալք) կը նշանակէ ճիշդ՝ ինչպէս կ'ըսուի[191], թէ անոնք լեգէոնական հին հեծելազօրէն ծագած են. բայց նոյն անունը կը տրուի նաեւ իրարմէ շատ տարբեր աստիճանու տեսակներու ալ։

Ձեռնհաս չենք Հեծելոց իւրաքանչիւր խմբի իրական զօրութիւնը նշանակելու եւ ոչ իսկ կռահելու. կարելի չէ նախընթաց մ'ալ յառաջ բերել եւ երբ մեր գրաւոր աղբիւրները կը խօսին 300, 400, 500 հեծելոց մասին՝ չենք իմանար թէ այս թուերը հեծեալ Ցուրանմե՞րը (cunei) թէ Թեւերը (alae) կ'ակնարկեն։ Գոնէ «Տեղեկ.» գրոց մէջ երկայնաձիգ անուանացանկ մը կայ ամէն դքսութեան համար[192], որ ինքնին կը տանի

---

190 Աւելէ չի կրնար վրիպիլ որ այս կամ այն Հեծելոց ընծայուած պէսպէս յորջորջանքները կորսնցուցած էին ի հարկէ իրենց նշանակութիւնը, որովհետեւ կը միացուին յորջորջանքներ՝ որ պարզ աւելաբանութիւն մը կը կազմեն (Dalmatae Illyriciani «Դալմատացիք»՝ Not., Or. XXXII, 24· XXXIII, 25· XXXIV, 18· XXXV, 15· XXXVII, 16)· եւ ուրիշ ալ կան որ իրարու անմիաբանելի են (Mauri, Illyrion «Մաւրիտանացի Իլիւրիկեցիք», Or. XXXII, 18· XXXIII, 26· XXXIV, 21· XXXV, 17· XXXVII, 17)։

191 Ռիտտէրլինգ, անդ։

192 Կը խօսիմ միայն անոնց մասին՝ որ մեր նիւթին աշխարհագրական սահմանաց մէջ կը մտնեն. ու-

ամէն մեծաթիւ գնահատութիւնները մեր-ժելու. աւելին ալ պէտք չկայ անոր հակա-ռակ ծայրայեղութեան մէջ իյնալու. որով-հետեւ՝ որչափ կ'երեւայ Հեծելոց կազմու-թեան զուգընթաց ընկերակից եղած է Վաշ-տերու հեծելագնդին չափաւորումը[193]:

Այսպիսով այս Հեծեալք իրենց զինուո-րագրութեամբն ու դերովը իրապէս չափա-զանց շատ կը մօտենան Թեւոց. բայց պաշ-տօնապէս կը զանազանուին վերջիններէս եւ դասակարգութեան մէջ անջատ կը մնան՝ լե-գէոններու ձեռօք՝ այն ստորադոյն գնդերէն, որոնք ստորադոյն խմորէ կ'առնուէին (կը բացատրուի՝ quae de minore laterculo emit-tuntur): Ուրիշ Հեծեալք ալ կը ներկայանան Արեւելից պահեստի բանակին մէջ[194] եւ այն տեղն միացուած են պիտակին ներքեւ՝ «Դրօշաւորութիւնք կոմսականք» (կամ ռազ-մականք, uexillationes comitatenses)[195] հակադրութեամբ Պաղատական Սատարաց

---

րիշ տեղեր նման բան մը չենք գտներ՝ բայց եթէ Պա-նոնիոյ (անդ., Occ. XXXII), Գաղղիոյ եւ Ափրիկէի մէջ (անդ՝ VII, 166 եւն):

193 Մոմսէն (անդ.) կը կարծէ նոյն իսկ թէ Սեւե-րին Շրջանին մէջ ա՛յլ եւս Թեւոց զօրագնդեր գոյու-թիւն չունէին: Իրաց ընթացքն այս ուղղութեամբ կը շարժէր. բայց նոյնն իրագործելու համար ժամանակի պէտք կար. ապա թէ ոչ՝ ի՞նչպէս մեկնելու է Վաշտ Ա հեծեալ (cohors I equitata) Պաղեստինի մէջ (Not. XXXIV, 43) եւ Վաշտ Ա Կղաւդեան հեծեալ (Cohors I Claudia equitata) Հայաստանի մէջ (անդ., XXXVIII, 36):

194 Not. Or. VII, 25—34:

195 Անդ., 24:

(auxilia palatina)՝ *որոնք՝ իրենց բարբարոսական (օտարացեղ) ծագման պատճառաւ՝ հակառակ յիշեալ տիտղոսին ալ արձանագրուած են* կոմսական (comitatenses) *լեգէոններէն յառաջ*[196]:

## § 5. Զ. դարուն զօրագնդերը:

*Քանի որ չկայ վաւերական ցուցակ մը՝ որ համեմատելի ըլլայ «Տեղեկ. Աստիճ.» գրոց հետ՝ չենք կրնար Յուստինիանու ատեն կամ անկէ քիչ մը յառաջ եղած զօրագնդերու եւ անոնց տրուած անուանց մասին որոշ գաղափար մը կազմել: Բայց տարակուսի տեղի չմնար թէ այն ատեն լեգէոն բացատրութիւնն այլ եւս գոյութիւն չունէր. նոյնպէս գործածութենէ դուրս են Թեւք եւ Վաշտք. իսկ* Հեծելոց *մասին այսչափ վճռականօրէն չենք: Գոնէ տարածուած բացատրութիւն մը սովորական եղած է՝ այսինքն* Ցուցակ *(κατάλογος) կամ* Համար (numerus):

*Բոլորովին բնական է այս բնաշրջութիւնը.* Համար (numerus) *յառաջ կը ցուցընէր «այն գնդերը՝ որ կազմուած էին զինուորներէ որ ծագմամբ իրենց կայանաւորած երկիրներէն տարբեր աշխարհներէ*

---

[196] *Այս* Պալատական Սատարք *սահմանափակուած են միայն գնդերով՝* «Երջանիկք (Փելիքս) Արկադեանք Երիցագոյնք» (Felices Arcadiani Seniores) *եւ* «Երջանիկք Ոնորեանք Երիցագոյնք» (Felices Honoriani Seniores. *տե՛ս՝* VII, 35—37). *որոնց անուններն իսկ միայն անոնց ժամանակը կը ցուցընեն*:

էին[197]»: Բայց արդ ամենայն ինչ համընթացակից եղած էր՝ զինուորն իւր հայրենի հողէն խլելու, այսինքն՝ զօրաց Համարները բազմացընելու: Կոստանդիանու կարգադրութեամբք բազմաթիւ Սահմանորդներ (limitani) բարձրացան սահմանագլխոց Դքսութեանց (ducatus)՝ աճեցընելով պահեստի բանակը: Օտարացեղներն երթալով աւելի կը թափանցէին Հռոմէական բանակին մէջ: Եւ վերջապէս կազմուեցան Սեպհական (Առանձնական) գնդեր՝ որոնք կ'ընկերանային իրենց պետերուն՝ ուր որ ալ երթան: Որչափ գրական աղբիւրները կը ներեն այս մասին դատաստան մ'ընելու՝. բոլոր մարտական միութիւնները Համար (numerus) յորջորջանքը կ'առնուն. բայց ուրիշ տեսակիտով մը նայելով՝ Զ. դարուն բանակը կը բաղկանայ երեք տեսակ՝ մարտիկներէ՝

1. Դաշնակիցք.

2. Կայսերական գնդեր.

3. Թոշակաւորք կամ Ռոճկակերք (Bucellarii):

Ա. Դաշնակիցք: — Յիշելու ենք թէ ի՛նչպէս եւ ե՛րբ այս տարրերը Պետութեան ծառայութեան մէջ մուծուեցան: Սահմանագլուխները հետզհետէ յառաջադիմելով հեռացած էին: Այս յառաջխաղացութեան իւրաքանչիւր կայանին կը պահուէին՝ գօտւոյ մը նման՝ այլեւայլ իշխանութիւններ,

---

[197] Cagnat, անդ, ի Diction. des antiq.

որոնք իրենց ազատութիւնը կը գնէին աջակցութեան մը գնով՝ զոր պարտական էին տալ ըստ պարագային իրենցմէ անդին եղած տէրութեանց դէմ։ Այս փչալից վիճակ մըն էր. դաղտնի մեքենայուած կնճիռները կը ծնանէին, եւ ի վերջոյ կը քաւուէին միեւնոյն կերպով, այսինքն՝ սահմաններն աւելի հեռուն կը մղուէին. հին դաշնակիցներն իրենց երկիրները նահանգ եղած կը տեսնէին, իսկ երեկի ոսոխներն ալ իրենց կարգին պաշտպանաւոր ձեռականներ եղած կ՚ըլլային։

Արեւելից մէջ երբ մանրամանր իշխանութեանց մեծ մասն անհետացաւ, պէտք էր որ աներեւութանային նաեւ այս կարգի Դաշնակիցք։ Գ. դարուն կը սկսին բարբարոս ազգաց մեծամեծ դաղթականութիւնք եւ Կայսրութեան տկարութիւնը նպաստաւոր եղաւ անոնց ձեռնարկներուն. փառասէր բախտախնդիրներն ասոնց աջակցութիւնը կը գնէին՝ գահ ելլելու համար. որով այս օտարականները Պետութեան մէջ զեղծական ազդեցութիւն մը ստացան։ Դիոկղետիանոս ջանաց ասկից ազատելու. սահմանագլուխներու վրայ աւելցուց կանոնաւոր զօրադասերը։ Ցուլիանոս իր պատերազմաց համար բարձրագոյն կը յայտարարէր. Երբեք պատշաճ չէ եկամուտ օտար օգնականութեամբք պաշտպանել Հռոմէական շահը (nequaquam decere adventiciis adiumentis rem vindicari

Romanam)[198]. բայց ուրիշ Կեսարներն այսչափ սէգ զոռոզութիւն չէին յայտներ: Այս ժամանակներս է որ կը վերանորոգուի Դաշնակցութեան դրութիւնը[199]:

Նահանգները կազմուած են հռոմէական հաստատութիւններէ. բայց ամբողջ հռոմէական աշխարհահողը չեն բաղկացըներ: Պետութիւնը կը զեղու սահմանէն ալ անդին՝ օրինակի համար Մեծ Հայաստանի մէկ մասին վրայ, կը տարածուի ազգաց (gentes) կամ բարբարոսաց (barbari, օտարք) վրայ՝ որոնք իրենց սեպհական կազմակերպութիւնը կը պահեն, թէպէտ եւ ենթարկուած ըլլան այն գերիշխանութեան՝ զոր ստիպուած էին ընդունիլ: Զասի կը հաստատէ ու կը հաստատէ կռուած դաշինք մը (foedus) որ կը սահմանէ՝ այն պայմանները որոնց մէջ պարտական էին ընծեռել զինուորական աջակցութիւնը՝ նաեւ յարձակողական պատերազմնե-

---

[198] Ամ. Մարկել. ԻԳ, 2, 1. Հմմտ. Լիբանոս, Ճառ ԺԸ (Ἐπιτάφιος) 169 = Բ, էջ 309, հրտ. Förster. Սակայն եւ այնպէս չարհամարհեց Գոթաց օգնութիւնը (Զոս. Գ. 25, 9) կամ Սկիւթացւոց (Ամ. Մարկել. ԻԳ, 2, 7) եւ իւր բանակին մէջ կային Հիւսիսական Գերմանացիք (Arctoi Germani, անդ՝ ԻԵ, 6, 13, 8, 1):

[199] Մոմսէն, անդ, էջ 215 եւն: Մայնինգէրի նոր եւ ձեռագիր երկէն (P. Meininger, Les barbares dans les armées romaines du IV siècles) ծանօթ է ինձի միայն նիւթերու նուազ մեկին ցանկը՝ որ հրատարակուած է այս տեղ՝ Positions des Mémoires présentés à la Faculté des Lettres de Paris pour obtention du diplôme d'études supérieures (hist. et géogr.) 1904, Յուլիս, էջ 70 եւն:

բու համար[200], եւ ստորադասութեան արտաքին նշանները (ոսկի թագի՝ aurum coronarium[201], եւ Դաշնակից արքայից իրենց իշխանութեան նշանակները Հռոմայեցիներէ ընդունիլը)։ Ասոնք յառաջադոյն իրենց այս հպատակութեան փոխարէնը կ՚ընդունէին հարկերէ անօրինուած ազատ ըլլալով. բայց հիմայ պարտք ունէին զինուորական հանդերձանք տալու՝ Սահմանակցաց (limitari) նման. բաժին վարձ մը (συντάξεις) կ՚ընդունէին եւ կ՚ըլլան վարձաւորք (ἔμμισθοι) Հռոմայեցւոց։ Ուստի իրենց վիճակը կերպով մը տեւական է։ Բայց ասով աւելի պայծա՞ռ ալ եղած է։ Ընդհակառակն աւելի մթագնած է, որովհետեւ Դաշնակցաց գաղափարը ընդարձակ ծաւալ մը ստացած է։

Բոլորովին պարզ բան մըն է որ արեւմտակողման Սարակինոսները, Լազերը, Ճանները, Ապխազներն ընդունին ու պահեն ստորադասութեան այս պայմանը. ասոնք կա՛մ չեն յարձակիր, կա՛մ կ՚ասպատակեն միայն աւարառութեան համար։ Բայց արդ նոյն իսկ

200 Միայն Անդրկովկասի Լազերը իրաւունք ունէին շատանալու իրենց երկրին պաշտպանութեամբ եւ պարտական չէին թողլու իրենց երկիրը։ Պրոկոպիոս այդ իրողութիւնն իբր արտակարգի զարտուղութիւն մը կը նշանակէ (Գ. Գ., Բ, 15, 4)։ Սակայն երբեմն շատ դժուար է այս ազգաց մէկ մասին ճշգրիտ դրութեան վիճակն որոշել. այսպէս Ապխազաց ու Ճանացւոց համար՝ տես Մոմզէնի հաւաքած բնագիրները (անդ, էջ 270). ասոնք ինքնօրէն կ՚ըսուին՝ Թէպէտ եւ հռոմէական հողի վրայ հաստատուած։

201 Ամ. Մարկեղ. ԻԳ, 3, 8. Կ. Թէոդոր. ԺԲ, 13, 6։

մշտնջենաւոր ու անհաշտելի ոսոխներն իսկ՝ Պարսիկները՝ կը պահանջեն նոյն իմաստով Դաշնակիցներ համարուիլ եւ անկէ բղխած հարկաւճարքն ընդունիլ Կաւկասեան Դրանց համար[202]: Այս դաշնագրութեան նիւթն որոշ՝ կերպով սահմանագծուած կ՚երեւայ. բայց արդ Սասանեանք չէին կրնար հիւսա-կողմը դաշնակիցներ ըլլալ, մինչդեռ ուրիշ ամէն կողմ հակառակորդներ էին: Ուստի Բիւզանդացիք կը սակարկեն ու իրաւախոհ կ՚ըլլան՝ փախուստի ելք մը գտնելու համար Խոսրով 5000 ոսկի դրամ կ՚ընդունի եւ խոս-տում կ՚առնու տարեկան 500 ոսկի ալ ստա-նալու: Բայց Պարսիկներն ալ ունին պաշտ-պանուող Արաբներ. վերջինքս ալ իրենց կարգին կ՚ուզեն նոյն ոճով հռոմէական պաշտպանութեան ներքեւ մտնել, եւ իրօք ալ կ՚երեւայ թէ ասոնց արտաքին յա-րաբերութիւնքն ալ նոյն փոփոխութիւնքը կրած են՝ ինչ որ կրեցին Պարսից յարաբե-րութիւնքն: Ինքնակալներն ասոնց ալ ընծա-ներ կու տան, զոր Սեմացիք կը միտեն տա-

---

202 Պրոկոպիոս, Պ. Պ., Բ, 10, 21—23 կը պատմէ թէ Խոսրով կը յայտարարէր որ Հռոմայեցիք տեւական խաղաղութիւն չեն ունենար եթէ ոչ տարեկան վճարք մը հատուցանեն Կասպից Դրանց պահպանութեան համար: Յուստինիանու պատուիրակները կը բողոքեն՝ թէ Պարսիկները կ՚ուզեն Հռոմայեցիները հարկատու-ներու կարգը դնել: — Ո՛չ, կ՚ըսէ Խոսրով, բայց հիմայ Հռոմայեցիք Պարսիկներն ալ իբր սեպհական բանակ-ներ ունին (στρατιώντας οἰκείους ἕξουσι τὸ λοιπὸν Πέρσας [Ρωμαῖοι]) ինչպէս ունին Սարակինոսներն ու Հոները, որոնց ամէն տարի գումար մը կը վճարուի՝ որպէս զի ձեր երկիրը պաշտպանեն:

րեւոր դրամական նպաստներ նկատել[203]։ Այս մթագնութիւնք անկէ յառաջ կու գան որ Հռոմայեցիք ա՛լ սովորած են բարբարոսաց վճարելու, ո՛չ միայն անոնց զինեալ աջակցութիւնը ստանալու համար, այլ նաեւ պարզապէս խաղաղութիւնը գնելու։

---

[203] Մենանդրի Պրոտեկտորի Հատակոտորները (FHG, IV, p. 220 ff. = De Boor, Excerpt. de legat., p. 180, 446 ff.) կը ցուցընեն թէ երկու կողմն ալ իրաւարանական ձեւերը անհաւասար կերպով կը պահուէին։ Խոսրով է, որ 565 տարւոյ օր մը, ընդունելով Յուստինիանոս ինքնակալին մէկ պատուիրակը, խօսք մ՚ըրաւ Սարակինոսաց խնդրոյն մասին։ Յուստինիանոս ալ՝ խաղաղութեան ժամանակ՝ նուէրներ ըրած էր Պարսից հպատակ եղող Արաբներուն։ Յուստինոս չէր ուզէր խոնարհիլ բարբարոսաց առջեւ եւ այս սովորութիւնը ջնջեց։ Յետոյ վերջինքս աղերսագիր մը մատուցին իրենց գերիշխանին, որ անոնց խնդիրն իր ձեռքն առաւ։ Սարակինոսք կը պնդէին թէ այն գումարը կ՚ընդունէին ի փոխարէն խոստման չխռովելու հռոմէական նահանգները։ Իսկ Յուստինոսի դեսպանը կը պատասխանէ թէ՝ Պարզ առատաձեռնութիւն մ՚էր եղածը, ընծայ մըն է՝ ոչ թէ դաշնամբ պայմանաւորած վարձք մը։ Խոսրով չի պնդեր. բայց յաջորդ տարին իր պատգամաւորաց մին կու գայ նոյն յանձնարարութեամբ։ «Ծիծաղաշարժ բան մըն է, կը գոչէ Յուստինոս, թէ մենք Հռոմայեցիքս հարկ մը վճարել պարտական ըլլանք այս Սարակինոսներուն, այս վաչկատուններուն»։ — Ճիշդ է որ Հերայի Արաբներն ամէն անգամ այսպէս սիրով չէին պատսպարուեր Պարսից քով. 532 տարւոյ հռոմէական-պարսիկ դաշնադրութեան մէջ Սարակինոսներն եւ ո՛չ կը յիշուին, Բիւզանդիոն այն գաղափարը կը պաշտպանէր թէ անոնց գիրքն ալ լռելեայն կարգադրուած էր անով։ Բայց Սասանեանց ստորակարգեալ Արաբացին կը յայտարարէր թէ այն դաշնադրութիւնը զինքը չի պարտանդեր, եւ ասի պատճառ եղաւ նոր պատերազմի մը (Պրոկոպ., Պ. Պ., Բ, 1, 8)։ Պէտք է ուշադիր ըլլալ Խոսրովու այն գանգատին թէ Յուստինիանոս «կ՚ուզէ Ալամունդարն իրմէ սարսեցընել՝ անոր մեծագումար արծաթ խոստանալով»։

*Իբր սկզբունք՝ Դաշնակիցները կը պահեն իրենց ազգային պետերը, եւ իրենց սեպհական զինուորական կազմակերպութիւնը: Իրենց վարձքը՝ թէեւ հռոմէական գանձերէն վճարուած, կը հատուցուէր անոնց իշխանին ձեռօք՝ որ անոնց կ'առաջնորդէ կամ իբր պաշտօնակալաց մին կը կարգէր իրեն փոխանորդ: Արեւելից Դաշնակցաց ամէնէն կատարեալ տիպարը, այս բառին յատուկ իմաստովը, կը ներկայանացընեն Ղասանեան Արաբացիք:*

*Անաստասի ժամանակ Դաշնակիցք կը ծառայէին գլխաւորաբար Սահմանագլխոց պահպանութեան. իսկ Յուստինիանու տեն արդէն աւելի նախամեծարութեամբ ալ կը գործածուէին պատերազմական մեծամեծ գործառնութեանց. անոնց ամենալաւ տարերքը յարմար կը դատուէին պահեստի բանակին մէջ մուծանելու*[204]*:*

*Բ.* Կայսերական գնդեր: — *Առաջին տեսութեամբ պիտի կասկածուի թէ հակառակութիւն մը չըլլայ այս տեսակին եւ նախընթացին մէջ. բայց պիտի տեսնենք որ իրականութեան մէջ այսպէս չէր:*

---

[204] *Յաճախ արշաւաբանակին մէջ փոխադրուեցան* Սահմանորդքն (limitani) *որ նշանաւոր եղած էին քաջագործութեամբ* (CIL, VI, 2759. Dessau, ILS, 2781—2782): *Արեւմտից համար Ոնորիոս յատուկ Սահմանադրութիւն մը հրատարակեց՝ նոյն բանն արգիլելու համար (Օրէնք Թէոդոսի, Է, 1, 18). անշուշտ վախնալով որ անապատանոց բնութիւնները չկատարուին:*

Օտար ազգերուն մէջ կային՝ որ Գետուլեան վարձկան ըլլալով՝ կը ստիպուէին ոչ միայն ընդհանուր կերպով մ'աջակցելու յարձակողական կամ պաշտպանողական պատերազմի մ'ատեն, այլ նաեւ անոր տալու՝ նոյն իսկ խաղաղութեան ատեն՝ որոշ թուով զինուորակոչներ, որոնք հռոմէական զօրաբաժիններու (ըլլա՛ն Հեծեալք թէ Սատարք) մէջ մտնէին: Այս կէտս կը պայմանաւորէր Սարմատացւոց հպատակութեան դաշինքը[205]: Այս մարդկան մաս մը զինուորութիւնն ամէն արուեստէ նախադաս համարելով՝ յօժարակամ կը զինուորագրուէին. իսկ մաս մ'ալ պատերազմի մէջ գերի բռնուածներն էին՝ որոնք մահուանէ կամ բուն գերութենէ կ'ազատէին՝ յանձն առնելով հռոմէացի զինուորներու վիճակը:

«Տեղեկ. Աստիճ.» գրոց մէջ կը նշմարուին բազմախուռն գումարութիւն մ'օտար՝ Հռոմայեցւոց հակառակորդ՝ ազգերու: Ասի բանակին յեղաշրջութեան գլխաւոր գծերէն մին է, ուր՝ Դիոկղետիանոսէ յառաջ՝ շատ ցանցառ կ'առնուէին այն օտարազգիները՝ որ փախստական կամ գերի էին[206]: Դրութիւնը

---

205 Ամ. Մարկեղ. ԺԷ, 2, 3· dilectum validae iuventutis et servitium spoponderunt (խոստացան զօրս տալոյ երիտասարդութեան եւ ծառայութեան):

206 Մոմմզէն (անդ, 240) շատ լաւ կ'ըսէ թէ նոյն իսկ կը ջանային զանոնք թաքուցանել: Անոր համար ալ, կ'ըսէ, օտարերկրեայ յորջորջանօք հին գունդ մը՝ ի բաց առեալ մի միակ թեւ մը՝ որ կը կոչուէր Փար-

*փոխուեցաւ կամաց կամաց. եւ այս փոփոխութիւնը կատարուեցաւ մանաւանդ Գ. դարու ընթացքին մէջ, որ ատեն Հռոմէական աշխարհք իր հին նկարագրական դիմագիծը լիովին մերկացած թափած է: Մինչեւ անգամ կը հարցնեմ թէ Դիոկղետիանոս եւ իր յաջորդք տեսակ մը ունայնական պչրանք ցուցուցած չե՞ն արդեօք իրենց զինուորական վարչութեան բառագիտարանին մէջ, այսպիսի բարբարոսիկ անուններով զարդարելով ամէն այս նորակազմ* Սատարները, *անո՛վ իրր թէ աւելի զգալի ընելու համար այն ազգաց ընտելացումն ու ծառայեցուցումը: Մոմզէն*[207] *ընդհանուր տեսութիւն մը տուած է մեզի այս զօրագնդերուն մասին, որոնք կազմուեցան պաշտպանաւոր տէրութեանց մէջ կամ օտար երկիրներ: Եփրատայ պաշտպանութեամբ շահագրգռուող Արեւելեան նահանգներուն մասին՝ մատնանիշ կ՚ընեմ գլխաւորաբար Գոթաց, Ալամանաց, Փրանկաց, Յութոնգացւոց եւ Սաքսոններու (գերմանական խմբէն) ներկայութիւնը, իսկ արեւելեան ազգախմբին մէջ՝ Զաւդէից (Ծաւդէից)*[208], *Կորդուաց եւ Սարակինոսաց*[209]*: Միւս ազ-*

---

*թեւաց անուամբ, զորոնք Հռոմէացիք իրենց արժանի միակ հակառակորդները կը համարէին:*

207 *Անդ, էջ* 272 *եւն:*

208 Վաշտ ԺԴ Վաղեբեան Զաւդէից (Cohors XIV Zabdenorum = Zabdicenorum):

209 Հեծեալք բնակք Սարակինոսաց (Equites Saraceni indigenae) *եւ* Հեծեալք Սարակինոսք (Equites Saraceni) *Փիւնիկէի դքսութեան մէջ* (Not. XXXII, 27—28):

գերը, որոնք զինուորական տեսակէտով շատ մեծարգի կը համարուէին, չէին կայանաւորուեր սահմանագլուխներուն վրայ՝ կամ գոնէ ո՛չ միշտ, այլ կը մնէին թէ՛ Առաջիկայ Մագիստրիանոսի (magister praesentatis), Ներկայ Զօրավարութիւն) եւ Արեւելից կողմանց Մագիստրիանոսի (Magister per Orientem) թէ՛ Պաղատական եւ թէ՛ Կոմսական (palatinus, comitatenses), պահեստներուն մէջ։ Այսպէս՝ Վիրք[210] Ճանք[211], Հայք[212] եւ մանաւանդ Պարթեւք ու Պարսք[213]։

Միւս կողմանէ բոլորովին ճիշդ է որ այս

---

[210] «Պաղատական Սատարք» (Auxilia palat.), անդ, Or. V, 60։

[211] Զարմանալի պարագայ մըն էր որ ասոնք Թրակիոյ մէջ Կոմսական լեգէոն (legio comitatensis) մը կը կազմէին (անդ, Or. VIII, 49)․ թէպէտ եւ տեւական մնացած էր տակաւին այն սկզբունքը՝ լեգէոնականները բացառապէս քաղաքացիներէն միայն առնուլ։ Պիտի կարծէինք թէ «Տեղեկ․» գրոց ընդօրինակողին մէկ վրիպակն ըլլայ՝ եթէ չըլլար Ամմիանու միարան վկայութիւնը (ԻԵ, 1, 19)․ qui legionem Ziannorum (= Tzannorum) regebat (որ կը հրամայէր Ջիանացւոց = Ճանացւոց լեգէոնին)։

[212] «Կոմէսք աղեղնաւորք Հայոց» (Comites sagittarii Armenii (Պաղատ․ Դրօշաւ․ Vexill. palat., անդ, Or. V, 30․ VI, 31․ Մոմսէն կը կարծէ թէ ասոնց ծննդավայրն չէր բուն Հռոմէական Հայաստանը․ այլ Մեծաց Հայոց տէրութիւնը՝ այս զօրաց մասին առնլով Ամմիանու բնագրին խօսքը (ԺԸ, 9, 4) որ զանոնք «հզօր օտարներ» (barbari ingenui) կ'ըսէ։

[213] Հեծեալք առաջին (եւ երկրորդ) զրահաւորեալք Պարթեւաց, դրօշաւորութիւնք կոմէսականք (Equites primi, secundi clibanarii Parthi, vexil. comitatenses, անդ, Or. V, 40․ VI, 41)։ — Հեծեալք Պարսից զրահաւորք (Equites Persae clibanarii, անդ, Or. VI, 32) Պաղատ․ Դրօշաւորութեանց (vexil. palat.) մէջ Արեւելից Առաջիկայ Մագիստրիա-

օտարացեղ տարրերը չէին կրցած անխախտ պահել իրենց համացեղութիւնը՝ սովորական Սասանեաններէն ո՛չ աւելի։։ Պարագայից հարկին ներքեւ դարձած եղած են տեսակ մը խճանկարներ, ուր ամէն տեսակ ազգեր իրարու կցուած խառնուած են։ Գործնական այսպիսի սովորութիւն չէ՞ր արդեօք ենթակայ յոռեգոյն անյարմարութեանց, եւ այսպէս խայտաբղէտ մարտախմբերը կրնայի՞ն օգտակար ծառայութիւններ մատուցանել[214]։ Շատ հաւանական է թէ «Տեղեկ. Աստիճ.» կը ներկայացընէ մեզի վերջին այն շրջանին պատկերը, որուն մէջ հնագոյն ձեւերը պահուած են՝ քողարկելով ներքին շատ խորունկ կատարուած ձեւափոխութիւնները։ Ե. դարէն ետքն Արձանագրութիւնք ա՛լ բան մը չեն աւանդեր մեզի այս մասին. իսկ մինչեւ մեզի հասած այլեւայլ տեղեկութեանց ամէնքն ալ կա՛մ եկեղեցական կա՛մ տեղագրական նկարագիր ունին, եւ շատ քիչ յարաբերութիւն ունին զինուորական հաստատութեանց հետ։ Սակայն ամենայն ինչ կը մղէ զմեզ ընդունելու թէ այս հին ձեւերն անհետ եղած են[214]։ Ինծի այնպէս կ՚երեւայ թէ

նոսի (magister praesentalis)։ — Չորրորդ Հեծելայք զրահաւորք Պարթեւաց (Equites quarti clibanarii Parthi) կոմէսականն Դրօշակութեանց մէջ Արեւելից կողմանց Մագիստրիանոսի (magister per Orientem, անդ, է, 32)։

[214] Միեւնոյն ժամանակ երբ կը նուազէր «Հռոմէական» զինման ոճը, կը բազմանային այս գնդերը՝ որոնք անձամբ կը կազմակերպուէին ու կը զինուէին իրենց ոճով։

Դէլբրիւկ ճշգրտօրէն տուած է այս կերպա-րանափոխութեան բանաձեւը[215]: Հռոմէացւոց դասական բանակին մէջ հիմնական բաժանումը կ'ըլլար զինուց համեմատ՝ Լեգէոնական հետեւակազօր, թեթեւազէն հետեւակազօր եւ հեծելազօր: Յուստինիանոս բանակին մէջ այս տեսակի պէսպիսութիւնք մինչեւ անգամ լեզուի մէջ չէին բացատրուիր, եւ զօրքը բաժնուած է ցեղերու համեմատ: Հետեւակազօրը հեծեալ եղած է, եւ հեծելազօրն ալ յաճախ հետիոտն կը պատերազմի:

Կարծեմ թէ անշուշտ այսպէս հասկընալու է Պրոկոպիոս եւ իւր ժամանակակիցները կամ անմիջական յաջորդները, երբ կը խօսին Հերուլեանց, Մաւրիտանիացւոց, Իսաւրացւոց, Թրակացւոց եւն մասին, պէտք է այս անգամ հասկընալ զօրախմբեր՝ որոնք թէեւ բոլորովին համացեղ միացած չըլլան, բայց զօրահան եղած էին գլխաւորաբար այն իւրաքանչիւր ազգերէն, եւ ո՛չ թէ այլ եւս ըլլան որ եւ է մարտական միութիւններ՝ որոնք միայն սկզբնաբար այն ազգերէն առած ըլլան իրենց անունները: Այս նոր դրութիւնը կը բղխի այն սկզբունքէն՝ զոր Մոմսէն յստակօրէն պարզաբանած էր[216]. այսինքն՝ Դիոկղետիանոսէ վերջ որչափ բարձր է գնդերու աստիճանը, նոյնչափ կը տիրապետէ հոն օտար տարրը: Աղբիւրները կը

---

215 Delbrück, Gesch. der Kriegskunst, II, 2, 1902, p. 355 ff.

216 Անդ, էջ 242:

լուն իրաւանց տարբերութեանց նկատմամբ․ արդեամբք ալ տարակոյս չկայ թէ ոչ-քաղաքացին արտօնեալ մըն էր:

Վերջինս իրօք ալ աւելի կը ծառայէ զինուց ներքեւ: Եւ այն վայրկենէն ի վեր անհրաժեշտօրէն մտատիպար մ'եղած է՝ բանակին մէջ աճեցընել ոչ-քաղաքացիները: Եւ Դաշնակիցք լիառատ կը մատակարարեն այսպիսիներ: Ասոնց մէկ մասը զօրաբաժին մը կը մատակարարէ դաշինքի մը զօրութեամբ, ուրիշները միայն գնուած են ըստ պարագայից[217]: Ի՞նչպէս եղած է որ ի վերջոյ յանգած են միեւնոյն անուան ներքեւ խառնելու այս երկու տեսակները: Ասի առանց տարակուսի յառաջ կու գայ գլխաւորաբար Պետութեան տիեզերականութեան գաղափարէն, որ քրիստոնէութեան յաղթանակէն ետքը ծնաւ[218]: Այս ըմբռնման զօրութեամբ եւ ո՛չ մէկ ազգ սկզբամբ ազատ էր Հռոմայեցւոց հետ որեւէ կապ մ'ունենալէն:

---

217 Ինչպէս նաեւ Վաղէսի առեն Սկիւթացիները՝ պարսկական արշաւանքի մը համար (Ամմ. Մարկել․, Լ, 2, 6)։

218 Diehl (Justinien եւն, անդ) շատ յաջող կերպով ստորագծած է այս կէտիս կարեւորութիւնը․ «Կ. Պոլսոյ ինքնակալներն երբեք չէին ընդունիր երկիրներու կորուստ ունենալը: Մէկ Պետութիւն, մէկ հաւատք․ միայն ստորադաս իշխաններ կան»: Այս կարծիքը կ'ընդունէին այն երկիրներու բնակիչները, որոնք ստորադաս համարուած իշխաններն աշխարհակալած էին: Եւ ասոնք ալ չէին վախնար ստորակարգեալ համարուելէն: Իրենք զիրենք այնպիսի կ'ըսեն, կը զմայլին Պետութեան վրայ, կայսեր պատկերը կը դրոշմեն իրենց դրամներուն վրայ՝ նոյն իսկ երբ ինքնակալին դէմ յայտնարձակ պատերազմի մէջ են»:

Կ՚երեւայ ուրեմն թէ անով յատուկ կայսերական Համարք (numeri) զգալապէս նուազած ըլլան։ Դիտողութիւնը ճիշդ է․ բայց այս ժամանակաշրջանի ուրիշ մէկ գործնական սովորութիւնը հակառակ կը ներգործէ։

Պէտք է ընդունիլ, ինչպէս արդէն Benjamin ապացուցած է[219], թէ Ստորին-Կայսրութեան այս Դաշնակից անուանեալները յաճախ նոյն իսկ ուրիշ բան չեն՝ բայց եթէ շահադէտ մը կողմանէ զինուորակոչուած պարզ վարձկան զօրքեր, որ զանոնք Պետութեան ծառայութեան համար վարձու կուտար։ Եւ հոս ի վերջոյ իրարու կը խառնուին ու կը շփոթին Դաշնակիցք ու Կայսերական զինուորք։ Ըստ նոյն գիտնոյն զօրաց այս նոր տեսակը ծագած է Ոնորիոսի ատեն[220], եւ կը պարունակէր միշտ «զամբոխ զօրաց խառն յամենայն ազգէ մարդկան» (turbam militum ex omni genere hominum mixtam)։ Այս կարծեօք Ողիմպիոդորոսի բնագրին քիչ մը մթին մէկ խօսքը[221] բռնազբօսիկ կերպով շատ շէշ-

[219] Conrad Benjamin, De Justiniani imperatoris aetae quaestiones militares (Diss.), Berolini 1892, p. 4 ff.

[220] Սիւնեսիոս (Վասն թագաւորութեան, 25) քիչ մ՚աւելի հնագոյն ալ կը դնէ Թէոդոս Ա․ կայսեր ատենը՝ բարբարոսիկ տարրեր ճշմարիտ արշաւանքը հռոմէական բանակին մէջ։

[221] Հատուած․ Գ, առ Müller, FHG, IV, p. 59: ὅτι τὸ Βουκελλάριος ὄνομα ἐν ταῖς ἡμέραις Ὁνωρίου ἐφέρετο κατὰ στρατιωτῶν οὐ μόνον Ῥωμαίων, ἀλλὰ καὶ τῶν Γότθων τινῶν, ὡς δὲ αὔτως καὶ τὸ φοιδεράτων κατὰ διαφόρου καὶ συμμιγοῦς ἐφέρετο πλήθους. (Թէ Թուշա-

տած կ'ըլլանք, որ յամենայն դէպս չի բռնադատեր զմեզ ընդունելու Դաշնակցաց մասին մեզի առաջարկուած սահմանը (ամէն կողմի հորդաններէն միաձոյլ եղած բանակ մը՝ militum gregibus undique conflatis)։ Պրոկոպիոսի մէջ չկայ կէտ մը՝ որ դրդէ զմեզ ընդունելու այս բանս. մանաւանդ թէ բնագրին այլեւայլ խօսքեր ասոր հակառականն կ'երեւան[222], եւ նոյն իսկ այն փոյթն ու խնամքն՝ զոր կը գործածեն Ստորին-ժամանակի մարտագէտները՝ նշանակելու համար ռազմագիտական հնարքներ՝ որոնք օգտակար են պէտ—

---

կուռք անունը Ոնորիոսի օրերուն կը կրէին զինուորք ոչ միայն Հռոմայեցւոց, այլ նաեւ Գոթաց ոմանց. ինչպէս որ Դաշնակցացն ալ՝ այլազան ու խառնամանն ամբոխը կը կրէր)։

[222] Յամի 541 անգամ մը սփռուեցաւ այրեցեալ Միջագետաց մէջ (բաժնին Պարսից)։ Հռոմայեցի զինուորները, որ մեծաւ մասամբ Թրակացիք էին, չկրցան դիմանալ տօթը եւ բազմաթիւ մեռնողներ եղան (Պ. Պ., Բ, 19, 32)։ Յուճապի մ'ատեն «բարեբախտաբար Գոթերը սատակարար յարձակեցան եւ ստիպեցին զՊարսիկները ընկրկիլ» (անդ, 18, 24)։ Ուրիշ տեղ մը կ'ըսուի թէ Ներսէս կը հրամայէ «Հերուլաց ու Հայոց» (24, 12) եւ Պրոկոպիոս կը նկարագրէ Հերուլաց յատուկ սպառազինութիւնը (25, 27—28)։ Հմմտ. Ագաթիաս՝ որ կ'անուանէ (Գ, 4, 1) «Հերուլաց պետ» մը, եւ կը զանազանէ Մաւրիտանացւոց, Ծանաց, Իսաւրացւոց, Լոմբարդացւոց, Հերուլաց սպառազինութիւնքն (Գ, 8, 2)։ Ուրիշ անգամ մը Հռոմայեցիք ծանր սպառազինուած 2000 Սաբիրացիք ունէին (Գ, 8, 1)։ Բելիսար գիտցաւ ճարպիկութեամբ մը Խոսրովի դեսպաններուն ցուցընել իր գնդերը՝ Թրակացիք, Իլիւրիկեցիք, Գոթք, Հերուլք, Վանդալք, Մաւրիտանացիք. եւ անոնք զարմացած էին այսպէս բարեկարգ զինուորներ տեսնելուն (Պ. Պ., Բ, 24, 4 եւ 14)։ Այսչափ պէսպէս ցեղերու միաձոյլ խառնուրդ մը նոյնպիսի տպաւորութիւն մը թողուլ չէր կրնար։

պէս Թշնամեաց դէմ, — որոնց փախստականներէն շատերը կը գտնուէին հռոմէական բանակաց մէջ՝ որ նոյն իսկ վարձկաններ կ'առնուն, — կը ցուցնէ ընդհակառակն թէ ազգագրական խմբումները տեւական կը մնային: Գործնականին մէջ՝ պատերազմի մ'ընթացքի ատեն՝ կրնային առժամանակեայ միախառն յարակցութիւններ տեղի ունենալ. այս իմաստով (hoc sensu) Դաշնակցաց զօրաբաժին մը խառնուրդ մըն է՝ անո՛վ որ շատ տարբեր խմբերէ կը բաղկանայ, սակայն իւրաքանչիւր խումբ աւելի կամ նուազ չափով կը պահէ իր համացեղութիւնը: Այս խմբերէն անոնք՝ զորոնք իրենց բուն ստացիչը զուտ ու պարզապէս կը փոխանցէ Բիւզանդական սպայից, կը դառնան ու կ'ըլլան Կայսերական Համար (numerus): Իսկ եթէ զօրահան ընողը կը պահէ իր հրամատարութիւնը, այն ատեն զօրաց նոր տեսակ մ'եղած է, զոր պէտք ենք այժմ ուսումնասիրել, այսինքն՝ վարձկանապետի (condottiere) սեպհական զօրագունդը:

Գ. Թոշակաւոր («Bucellarii») — Հասարակական իշխանութեանց տկարութիւնն՝ որ անընդհատ երթալով նուազելու վրայ էր դարերէ վեր, որչափ ալ քանի մը կորովալից Կեսարներ փորձեցին ասոր դէմ հակազդեցութիւն գործել, պատճառ եղած էր վերջապէս որ բազմաթիւ սեպհականատէրներ ձեռնարկեցին անձամբ պաշտպանել իրենք

զիրենք աւարառուաց դէմ՝ զինելով իրենց ծառաներն եւ գլխաւորաբար իրենց գերիները: Քանի որ հզօրագունին իրաւունքն էր միակ տիրողը, բնական էր որ ջանացուէր իրապէս հզօրագոյն ըլլալ. ուստի այս անիշխանութեան մէջ մեծամեծք սկսան անձամբ իրենց համար հետեւորդ յուղարկախումբ մը հոգալ: Պետութիւնն անզէն ըլլալով առանձնական խմբերուն դէմ՝ որ իրենց ճոխութեան կը սպառնային, ի զուր աշխատելէն ետքը զանոնք արգիլելու[223], ձեռնարկեց զանոնք իրեն համար ալ օգտի գործածելու: Մոմսէն կատարելապէս ըմբռնած է այս յեղաշրջումը[224]. միայն աւելցնելու էր նշանակելով օտարացեղ տարրեր խաղացած դերը՝ երբ վերջինս թափանցեց մաս Հռոմէական բանակին մէջ: Յունաց եւ Լատինացւոց քով դիւրըմբռնելի բան մըն էր ազգային բանակը. որովհետեւ հասարակաց իրաց վերացական՝ բայց պայծառ գաղափարն ունէին: Բայց Գերմանիացւոց քով[225] մարդ մը՝ երբ հպատա-

---

223 Լեւոնի Սահմանագրութեան կամ Հրովարտակին մէջ (468ին). Օրէնք Յուստին., Թ, 12, 10 «Կուզենք որ քաղաքներուն ու գիւղերուն մէջ ամէն թոշակաւորներ (bucellarios), իսաւրացիներ կամ զինեալ ծառաներ ունեցողներուն արգիլուի բարձուի այս արտօնութիւնը»:

224 ի «Hermes», անդ, էջ 233 եւն:

225 Հմմտ. Seeck, Bucellarii, ի Բոգր. Պաուլի-Վ. — Աւելցնենք ասոր վրայ այն ազդեցութիւնը՝ զոր պէտք է որ Արեւելքի մէջ գործէին արաբական սովորութիւնները. ասոնք յատուկ թոշակազօրք (bucel-

կած էր՝ աւելի դիւրութեամբ կ՚ըմբռնէր իր պարտաւորութիւնքն ուրիշ անձի մը հանդէպ[226], որուն պաշտպանեալ ձեռականը կ՚ըլլայ կամ անոր ընկերակիցը (comes, նախնաբար «ուղեկից», ապա ընդհանրապէս «հետեւորդք» եւն)[227]: Բիւզանդացիք ալ քիչ տարբեր բանաձեւեր ընդունած են. այսինքն՝ παῖδες (ծառայք)[228]՝ որ կը յիշեցնէ այս սեպհական զինուորներէ առնուած հնագոյն զինուորակոչներուն ծառայական վիճակը. — ὀπαδοί[229], οἱ τῷ δεῖνι ἑπόμενοι[230] (հետեւորդք, որք զկնի ուրուք երթան», որ մէկուն կը հետեւին), ուստի հետեւորեայք (suite). — Μισθοφόροι οἰκεῖοι[231] (Սեպհական վարձկանք), եւ վերջապէս՝ երկու շատ աւելի հաստատուն եւ աւելի յատկապէս զինուորական բացատրութիւններ՝ δορυφόροι[232] (Նիզակակիրք, Թիկնա-

---

larii) չեն. բայց նաեւ զուտ «Տէրութեան» համար ալ ծառայելու մասին խօսք չըլլար. սակայն ցեղապետին ու իր մարդկանց մէջ ալ եղած կապը՝ թէպէտ եւ արենակցութենէ դրուած՝ այնու հանդերձ ոչ նուազ լիովին անձնական է:

226 Տակիտոս, Գերմ., 13—14:

227 Տակիտ., Տար. Ա, 57. Բ, 45. ԺԲ, 30:

228 Ամմ. Մարկել., ԺՉ, 12, 60:

229 Ագաթիաս, Գ, 16. Մաղաղաս, Հատոր., հրտ. Մոմսէն, ի «Hermes», VI (1872), p. 369:

230 Ագաթիաս, Ա, 15, 19. Բ, 8. Դ, 21:

231 Պրոկոպ. Պ. Գ.. Դ, 26, 12:

232 Մալքոս, FHG, IV, p. 127 (Հատոր. 18): — Պետ մ՚այսուհետեւ ինքնակալի մը նման իր οἰκία (տուն, domus) ունի՝ հակադրութեամբ պաշտօնատանին (officium), որով վերջինս երկրորդական

պահք, Նիզակաւորք) եւ ὑπασπίσται[233] (Վահանակիրք, զինակիրք, վահանաւորք)։

Ինչպէս որ φοιδέρατοι (Դաշնակիցք) բառն՝ նոյնպէս δορυφόροι καὶ ὑπασπίσται (Նիզակակիրք եւ Վահանակիրք) բացատրութիւնները շատ յաճախ կը հանդիպին Պրոկոպիոսի քով[234], բայց դժբախտա-

---

տեղը կը բռնէ (Benjamin, p. 26)։ Անկէ կը ծագի ἑταιρίζεσθαι (ընկերակից լինել եւն) բառը՝ որ կը նշանակէ թոշակաւորի (bucellarius-ի) մը յատուկ պաշտօնները կամ սպասաւորութիւնքն (Պրոկոպ. Պ. Պ. Ա, 25, 7)։ Այս տունը (οἰκία) կրնայ շատ ուրիշներ ալ պարունակել քան միայն նիզակակիրքն ու վահանակիրքը (Պրոկոպ., Ծած. Պատմ. 4, 12: Բելիսարի նիզակակիցքն ու վահանակիրքն, եւ սպասաւորներէն որոնք որ պատերազմի տեղեակ էին եւն = δορυφόρους τε καὶ ὑπασπιστάς, καὶ τῶν οἰκετῶν εἴ τε ἐν πολέμῳ δόκιμον ἦν . . .)

233 Պրոկոպ., Պ. Պ. Ա, 24, 40. 25, 7. Պ. Գ, Դ, 35, 25 եւ 27։

234 Փորձ եղած է տոնց իմաստն աւելի ալ ճշգրտելու քան զոր ըրած է Մոմզէն. հմմտ. Benjamin, անդ։ Ասի շատ հմտալից երկ մըն է, բայց թերեւս քիչ մը նրբամտութեանց մէջ ինկած։ Եթէ լաւ հասկցած եմ հեղինակը (էջ 27 յատկապէս) երկու խմբերուն մէջ միայն այն տարբերութիւնը կար որ նիզակակիրք ու վահանակիրք, որոնք պէտք մ'արբանեակներն էին, չէին կրնար՝ Դաշնակցաց պէս՝ վարձուիլ Ինքնակալէն։ Բայց ինչո՞ւ արդեօք։ Չէ՞ր բաւեր որ պետն ու ինքնակալն այս մասին միաբանէին։ Առաւելն այս մարդիկ իրենց անունը պիտի փոխէին։ Եւ դարձեալ. նոյն իսկ ինքն Benjamin «Տեղեկ.» գրոց սա բանաձեւը՝ «Կոմէսանք (Ընկերակիցք) զրահապատք թոշակաւորք կրտսերք (comites cataphractarii bucellarii iuniores) «Արեւելից կողմանց Մագիստրանոսի զօրաց տրամադրութեան ներքեւ»՝ sub dispositione magistri militum per Orientem, անդ՝ Է, 25) լուսաբանելու համար՝ իրերը կը մեկնէ ամենայն հաւանականութեամբ այսպէս։ Ասոնք սեպհական զնդի մը հին պատերազմիկներն են, որոնք կա-

բար ասոնք գրեթէ երբեք չեն հանդիպիր Պարսկական Պատերազմին մէջ կամ Գոթական Պատերազմին վերջը: Տեսակ մը վեհերոտութիւն կը զգանք յենլու բնագիրներու վրայ՝ որոնք Յուստինիանոս ուրիշ պատերազմաց կը հային, կայսեր մը՝ որ շատ քիչ կը շահագրգռուէր Արեւելքի գործերով[235], շատ աւելի քիչ ուշադիր եղած Պարսկական մօտալուտ վերահաս պատերազմին, քան թէ մտազբաղած Արեւմուտքը վերստին աշխարհակալելու եւ ազատելու, բայց յետոյ տրամադրուած մեծամեծ զիջողութիւններ ընելու եւ զուտ պաշտպանողականին մնալու: Ուստի կրնար ըլլալ որ զինուորական գործօն ուժերու տեսակէտով Արեւելեան գործողութիւնները տակաւին ինքնայատուկ բաներ մ'ունենան: Սակայն չեմ կարծեր թէ պէտք ենք կանգ առնուլ այս դժուարութեան հանդէպ. որովհետեւ գիտենք որ Սասանեանց դէմ ալ Յուստինիանոս արձակեց իր սովորական տեղակալները, Բելիսար ու Ներսէս: Եւ ասոնք ստիպուած էին մէկ երկրէն միւսը փո-

---

նոնաւոր բանակին մէջ փոխադրուած են, բայց միայն պահած իրենց հին անունը (էջ 22 եւն): — Արդ ինչո՞ւ. նոյնը չկարենային ընել Նիզակակիրքն ալ: Ասի ալ նոյնչափ դիւրահասկընալի է՝ որչափ յաջորդ հնարաւորութիւնը. նախանձելի նշանաւորութիւն մըն էր կայսերական բանակէն անցնիլ պետի մը թոշակաւորի (bucellarius) աստիճանին: Այն մարդն՝ որ այսպէս կրնար ինքնակալը զրկել իր մարդիկներէն, անշուշտ կրնար վերջնոյս վարձու տալ իր մարդիկը: Տե՛ս Պրոկոպիոս, Պ. Գ. Դ, 29, 28:

[235] Հմմտ. Diehl, Justienien, p. 129:

խաղրել այն զօրագնդերը՝ զորոնք ճշմարտապէս իրենց ձեռքին մէջն ունէին։

Անշուշտ բառերով զեղծած կ'ըլլայինք՝ եթէ սեպհական գնդերը շատ մեծ հնութեան մէջ ալ իբրեւ գոյութիւն ունեցող ընդունէինք։ Սակայն եւ այնպէս Հասարակապետութեան վերջերը տեղի ունեցած քաղաքային պատերազմաց մէջ բազմաթիւ դէպքեր կան, երբ այս կամ այն փառասէր զօրավարն հայթայթած էր գնդեր՝ որոնք ո՛չ այնչափ Հռոմայ որչափ իւր իսկ անձին կը ծառայէին։ Շատ նկարագրական է Մ. Կրասոսի խօսքը, թէ այն միայն հարուստ է՝ որ կրնայ իւր տարեկան եկամուտով լեգէոնը մը պահել (nisi qui reditu annuo legionem tueri posset.[236]) եւ արդէն թոշակաւորաց (bucellarii) զօրահաւաք մը չէ՞ այն՝ ուրիշ կողմանէ անծանօթ՝ Պտղոմէոսն, որու մասին Վարոն կ'աւանդէ՝ թէ Պոմպէի Հրէաստանի գործերը կարգադրած ժամանակ ութ հազար հեծեալները կը պահէր իւր ստակով (quem Varro tradit, Pompeio res gerente circa Judaeam octona milia equitum sua pecunia toleravisse)[237].

Հռոմէացիք կանուխէն սկսած էին Արեւելից մէջ զինուորել Հռենոսի ու Դանուբի ափերէն եկող մարդիկը։ Այս ցեղերուն իրենց

---

236 Պղինիոս, Բն. Պատմ. ԼԳ, 134։
237 Անդ ԼԳ, 136։

տիրանց հանդէպ ունեցած հաւատարմութիւնը հոս հանրածանօթ էր. եւ Հերովդէս Մեծ՝ Աւգոստոսի առեն՝ արդէն գունդ մ'ունէր ասոնցմէ իւր անձնական ծառայութեան համար[238]: Կարակալա իւր անձին համար ստեղծեց Անձնապահաց գունդը (protectores) եւ ի վերջոյ Պրետորականաց Թիկնապահք իսկ քիչ շատ նման նկարագիր մ'ունէին[239]: Ամէն պաշտօնակալ՝ որ բան մ'ըլլալ կ'ուզէր, յուղարկաց (escorte) այս կարգի խումբ մը կը հաւաքէր իրեն, ամէն կարգի մարդիկներէ բաղկացած, որոնք իրեն հետ կապուած՝ էին երդմամբ եւ կ'ընդունէին իրմէ՝ բացի խորհրդանշանական հացիկէն

---

238 Յովսեպոս, Գ. Հ., Ա, 672. Մեռելոյն դագաղին չորս կողմը շարուած էին «Թիկնապահքն (δορυφόροι, ուստի բացատրութիւնս արդէն գործածութեան մէջ է), եւ գունդ Թրակացւոյ (τὸ Θράκιον στῖφος), Գերմանացիք եւ Գաղատացիք (Γερμανοί τε καὶ Γαλάτας) կազմեալք ամենեւին իբրեւ ի պատերազմ.» (= Հայ Թրգմ., էջ 122՝ «Եւ զգահոյիւքն շուրջ... պաշտօնէիցն զինուորութիւնք, եւ գունդք Թրակացւոց Գերմանացւոց եւ Գաղատացւոց, ամենեքեան կազմեալ զինու հանդերձ՝ իբր թէ ի պատերազմ ճակատիցին»)։ Այս վերջին բառերս համեմատելու է՝ գրեթէ նոյն բառերով եղած պատմութեան հետ ի Հ. Հ. ԺԷ, 198, ուր կը կարդանք τὸ στρατιωτικὸν κατὰ οἰκεῖα ἔθνη (զօրականն ըստ սեպհական ազգի)։ Այսպէս ուրեմն զօրաբաժինը կը պահուէր ցեղերուն համեմատ։ Ասի գործնական սովորութիւն մըն է՝ որմէ չեմ կարծեր թէ Ռնոբիոսէ ետքը կանոնաւորաբար շեղած ըլլան՝ հակառակ իսկ Ողիմպիոդորոսի խօսքին։

239 Հմմտ. Հերոդիանոս, Ե, 4, 8: Καὶ οἱ δορυφόροι οὓς δὴ πραιτωριανοὺς καλοῦσιν («եւ Նիզակակիրքն՝ զորս Պրետորականս կոչեն»)։

(bucella, նաեւ՝ պաքսիմատ)[240] նաեւ ամէն պարէն ու հանդերձանք եւ պարգեւներ, եւ ըստ պարագային՝ աւարէն մաս մը։ Ասոնց մեծագոյն մասը զօրահաւաք կ'ըլլար հիւսիսային եւ միջին Եւրոպայի ազգերէն, ինչպէս՝ Հոնք, Գոթք[241], Թրակացիք. ասոնց վրայ աւելցան Փոքուն Ասիոյ լեռնորդեայք՝ Իսաւրացիք, Գամիրք, Պիսիդացիք. եւ վերջապէս Հայք ու Պարսք[242]։

Արբանեկաց այս խմբերը բանակներուն այրընտիր դասակները կը կազմէին։ Բաց ի անկէ՝ որ յաճախ շատ բազմաթիւ էին[243], նշանաւոր էին անձնանուիրութեամբ իրենց պետերուն հանդէպ։ «Տեղեկ.» գրոց մէջ Յուղարկք (comites, ընկերակիցք եւն), որոնց ինչ ըլլալը տարակուսական չէ, ամէն

---

240 Հմմտ. Schol. Basilic. 60, 18, 29: οἱ τὸν ἄρτον τινὸς ἐσθίοντες ἐπ' αὐτῷ τούτῳ τὸ παραμένειν αὐτῷ. (որք զհաց ուրուք ուտեն՝ զի սովին իսկ մնասցեն առ նմին)։

241 Ռուփինոս՝ Արկադիոսի կայսերական անձնապահապետը (395ին) նախամեծար սէր մ'ունէր Գերմանացւոց (Կղաւդ., ի Ռուփին., Բ., 75)։ Մաղաղաս յաճախ կը յիշէ Բիւզանդական բանակաց մէջ Գոթական ամբոխը (πλῆθος Γοτθικόν).

242 Պրոկոպ., Պ. Գ. Դ, 31, 43:

243 Այսպէս Հայաստանի դուքս (dux) մը 1000 հոգիէ աւելի ունէր (Պրոկոպ., Պ. Գ. Դ, 27, 3). Բելիսար ունէր 7000 հեծեալներ (անդ, 1, 12) զորոնք՝ երբ անգամ մը Պարսից արքայէն կանչուեցաւ (542ին)՝ Կիլիկիա ձմերելու խաւրեց (Պրոկ. Ծած. Պատմ., 3, 5)։ Ասոր հակառակ այս յուղարկ-հետեւորդներն երբեմն կը նուազէին մինչեւ մէկ հոգի մնալու չափ. այսպէս՝ զինակիրն Արտաւանայ՝ որ հայկական Համարագնդի (numerus) տրիբունն էր (Պրոկ., Պ. Վ., Բ, 27, 28)։

Հեծելոց (equites) գլուխը կ'երեւան [244]: Արդեամբք ալ անփոփոխ հեծելազնդեր են տառանք, զորոնք պետ մը իր ծախիւք կը վառէր ու կը հանդերձէր, եւ զոր կը շրջապատէին թէ՛ սեղանի վրայ եւ թէ՛ խառնուրդի մէջ, եւ զոր չէին լքանէր՝ բայց եթէ վստահութեան յանձնարարութիւն մը կատարելու համար: Այն բոշակաւորքն (bucellarii)՝ զորոնք Բելիսար շուտով մը դէպ ի Տիգրիս կը խաւրէ [245], զօրաց ամենազօր մարտիկներ կը կոչուին (οἱ τῶν στρατιωτῶν μαχιμώτατοι)[246], եւ Պրոկոպիոսի մէջ կը վխտան այս գլխապահ փչտիկանաց գնդին քաջագործութիւնները [247]: Գիտնականք միաբան են յայնմ թէ Նիզակակիրներն աւելի բարձր աստիճան մ'ունէին քան Վահանակիրները, բայց երկուքն ալ կրնային ամենաբարձր աւագութեանց հասնիլ, ինչպէս Սիտտաս, Բելիսար[248] եւ Ներսէս [249]:

Արդ քաջ ապացուցուած ըլլալով թէ Բոշակաւորքն (bucellarii) իրօք կ'ընտրուէին օտարացեղ ազգերէն, եւ թէ «Դաշնակիցք» ալ կրնային շահագիտութեամբ մը վարձուիլ, ինքնին պայծառագոյն կը տեսնուի թէ միեւ-

---

244 Not. Or. V, 29—31· VI, 28, 31· VII, 25:

245 Պրոկոպ., Պ. Պ., Բ, 19, 17:

246 Անդ, 39:

247 Հմմտ. Seeck, ի բանին Արգէկ՝ նիզակակիր Պետրոսի «մագիստրիանոսի զօրաց» (magister militum, զօրավար) իւր ձեռօք կը պահէր 26 Պարսիկներ (Պրոկ., Պ. Պ., Բ, 26. 27):

248 Պրոկ., Պ. Պ., Ա, 12, 20:

249 Թէոփիլ. Սիմոկ. Ե, 2, 8:

նոյն անձն ազատ էր՝ թէ՛ իւր անձին համար բազմաթիւ սեպհական անձնապահաց խմբեր հայթայթելու եւ թէ՛ կազմելու այնպիսի զօրագնդեր՝ զորոնք վարձքի մը փոխարէն փոխ կու տար կռիւ մղելու համար, որոնց զօրագլուխն ինքը կը մնար: Ասով իւր գործնական արժէքէն շատ բան կը կորսնցընէ այն խընդիրը՝ թէ ինչպէս Benjamin կ՚ուզէ գիտնալ, «Դաշնակցաց կոմս» մը (κόμης φοιδεράτων[250] կամ «Իշխանք Դաշնակցաց» (ἄρχοντες φοιδεράτων) արդեօք առանձնակա՞ն անձինք էին, եթէ կայսերական ճշմարիտ պաշտօնատարներ: Միեւնոյն մեծամեծ պաշտօնակալաց անունները կը գտնենք Յուստինիանու թէ՛ Արեւելից եւ թէ՛ Արեւմտից պատերազմներուն մէջ. եւ գիտենք որ ասոնց մասնակցեցան թէ՛ կայսերական գնդեր, թէ՛ նաեւ Դաշնակիցներ եւ թէ՛ Բոշակաւորք: Տարակուսական չէ հրամատարութեանց միեւնոյն անձի վրայ կուտուիլը[251]: Իսկ զօրադասերէ

---

[250] Մագաղաթ, անդ: Միեւնոյն տիտղոսը կը տրուի Պատրիկիոլոսի (Թէոփանէս, 157, 11) որ մասնակցեցաւ 508ի պարսկական պատերազմին (Պրոկոպ., Պ. Պ., Ա, 8, 3):

[251] Benjamin, p. 11 կը գրէ՝ «Երբեք չէին յիշուիր թէ Դաշնակցաց Դքսերն ի սկզբանէ հրամատար եղած ըլլան Հռոմայեաց (numeris) կամ Պետութեան ուրիշ զօրագնդերուն, ի բաց առեալ միայն Դորոթէոսը» «որ էր ὁ τῶν ἐν Ἀρμενίοις καταλόγων στρατηγός, զօրավար Հռոմայոց ի Հայս»: Պրոկոպ., Պ. Վ., Ա., 11, 5): Արդ այս բացառութիւնն ինքնին կը բաւէ այն «կանոնը» կասկածելի ընել: Մենք միայն յայտնանիշներ ունինք առջեւնիս, որք շատ աւելի իրերուն կազմակերպութիւն մ'ընդնշմարել կու տան:

դուրս այլեւայլ այս զօրաց վարձատրութիւնքը ἀννῶναι φοιδερατικαι, (դաշնադրական տարեկաններ) կը վճարուէին կա՛մ ուղղակի գանձու մէկ պաշտօնէին ձեռօք (Χαρτουλάριος φοιδεράτων կամ ὀπτίων, «քարտուղար դաշնակցաց կամ օգնականաց), եւ կա՛մ անոնց պետին միջնորդութեամբը, որ կարեւոր կէտ մը չէ: Գլխաւոր կէտն է նշանակել այն պարագան թէ Պարսից դէմ մղուած պատերազմները՝ վերջին ժամանակաշրջանին մէջ՝ շահուեցան կամ կորսուեցան վարձապետներու (condottieri) կողմանէ, եւ թէ այս բախտախնդիրները՝ որ ա՛յնպէս կ՚երեւան թէ պիտի վտանգէին Պետութեան ապահովութիւնը, իրականութեան մէջ անոր մեծ օժանդակութիւնն եղան եւ ամուր նեցուկը[252]:

## § 6. Գուգազներ (տեղական աշխարհաբանակք):

Այս յորջորջանօք կը նշանակեմ այն զօրագնդերը՝ որոնք ինքնաբերաբար կը կազմուէին նահանգներուն մէջ այն ամէն տեղերն, ուր անբաւական կը դատուէին կայսերական վարչութեան ձեռք առած միջոցները[253]: Բաղձալի է լուսաբանել այս

[252] Benjamin, p. 17 եւ 41:

[253] Այս տեղ բառս ուրիշ բան չի կրնար նշանակել բայց միայն մեր ուսումնասիրութեան նիւթ եղող նահանգները, որովհետեւ ամէնքն ալ կայսերական են: Հմմտ. Ant. Stapfers, Les milices locales de l'empire romain, leur histoire et leurs organisation d'Auguste à Dioclétian (ի Musée belge, VII, 1903, p. 198—246, 301—334. IX, p. 50—79).

խնդիրը մանաւանդ Ա. դարուն համար, որու մէջ աշխարհաբանակները միայն իրենց սկզբնական երկրին մէջ կը գործէին. բայց մեր տրամադրութեան ներքեւ եղած յիշատակարանները չեն ներեր այս խնդիրը լուծելու: Տրայիանոսէ՝ բայց աւելի Ադրիանոսէ սկսեալ այս զօրաբաժիններն ալ յաճախ թէ՛ կը կցուէին կանոնաւոր բանակին եւ թէ՛ կը փոխադրուէին ուրիշ երկիրներ[254]: Յետոյ՝ Գ. դարու վերջերը՝ խառնուեցան ձուլուեցան Լեգէոններու կամ Սատարներու մէկ մասին հետ՝ կազմելով Սահմանապահ գնդերը կամ Սահմանորդները (limitarii): Ասով անհետ եղան տեղական հին աշխարհաբանակները. բայց մեծապէս հաւանական է որ ա-

---

254 Ասով տարօրինակ հակադարձ փոխանակութիւն մը յառաջ կու գայ: Երբ մէկ կողմանէ լեգէոններու զինուորակոչութեան մէջ տեղական դրութիւնը կը յաղթանակէ, միւս կողմանէ տեղական աշխարհաբանակները կը ստիպուէին սաստ հակառակ տարաշխարհիկ ըլլալ: Արեւելեան գունդերու մասին՝ որ Արեւելքէ դուրս գործածուած են, հմմտ. Stapfers, անդ, VII, p. 305—337: Այսու հանդերձ Կապադովկիոյ մէջ՝ առաջին երեք դարերուն՝ բնակ զօրագունդները կը զօրացընէին կանոնաւոր զօրագնդերը: Բայց Ասորւոց բանակը գլխաւորաբար Ափրիկէէն կ'առնուր այն տեսակ զօրավիգն օգնականութիւնները՝ որոնց մասին հոս խնդիր կ'ըլլայ: Նոյնը մաւրիտանական զօրաբաժին մ'ունէր Պարթեւաց դէմ 161ին (Լուկիան, Quomodo hist. sit conscr. 31)· ուրիշ գնդեր մասնակից եղան Կարակալլայի արշաւանաց (Հերոդ., Դ., 15, 1)· քիչ մ'ետքը Մաւրիտանացի ձիաւորներն առիթ ունեցան ցուցընելու իրենց հաւատարմութիւնը Մակրինոսի, որ իրենց պէս ափրիկեցի էր. իսկ զօրաց բոլոր մնացեալ մասը թեր եղաւ Հեղիոգաբաղոսի (Դիոն Կաս. ՀԸ, 32):

անոնց տեղը բռնեցին շուտով մ'ուրիշ զուգագներ։

Պարթեւաց ժամանակ՝ որոնք շատ նախայարձակ չէին, Արեւելից պատերազմները տեղի կ'ունենային, գլխաւորաբար յարդարուած ճակատամարտներով, արձակավայրի վրայ, եւ աւելի կամ նուազ համառօտուելով անոնց ընտանի մարտագիտութեան ոճովը։ Սասանեանք աւելի յարձակողական քաղաքականութիւն մը սկսան. եւ պատրաստուեցան քաղաքապաշարման արուեստին։ Այն ատեն կը սկսին յանկարծահաս յարձակումներ ամրավայրերու դէմ, զորոնք տկար պահակազօր մը չէր կրնար առանձինն յետ մղել ու վանել։ Ասով սկսուեցաւ խորհուիլ թէ քաղաքացի ազգաբնակութիւնն ալ ձեռնարկէ տեսակ մ'ազգային պահակներ զօրաժողով ընելու։ Այս իրողութիւնը ստոյգ է Մծբնի համար, որուն հռոմէական գաղթականութիւնը Յովիանոս 363ին ստիպուեցաւ Պարսից զիջանիլ յանձնել։ Քաղաքացիք բողոքեցին իրենց քաղաքին զիջման դէմ, եւ յայտարարեցին թէ կարող են նաեւ առանձինն անձամբ պաշտպանել քաղաքը, ինչպէս յաճախ ալ ըրած էին եւ առանց օգնութեան Պետութեան զօրաց[255]։

---

[255] Ամ. Մարկել. ԻԵ, 9, 2. «Ձեռնամած կ'աղաչէին, որ անջատման բռնադատիչ հարկ չդրուի վրանին. կը հաստատէին թէ կարող են նաեւ առանձինն պաշտպանել իրենց բերդերն առանց հասարակաց օգնականութեանց ու զօրաց (ad defendendos penates se solos sufficere sine adiumentis publicis

Ապահովապէս այս դէպքը միակ չէր: Մանաւանդ Զ. դարէն սկսեալ կը տեսնենք որ պաշարեալ քաղաքներուն մէջ եպիսկոպոսը կը ստանձնէ զինուորական առաջնորդութիւնը, եւ ո՛չ միայն կը կանգնի իբրեւ նախամեծար բանագնաց, այլ նաեւ կը հսկէ՝ պատնէշներուն առջեւ՝ ամբաձիգ նետակալաց մարդկոցները դնելուն: Արդ այս ազդեցիկ իշխանութիւնը դիւրըմբռնելի չէր ըլլար, եթէ զինուած չըլլար նոյն իսկ բնակչութիւնը: Բայց աստի տեղւոյ մը պաշտպանութիւնը չէր պահանջեր ռազմագիտական մեծ հմտութիւն մը՝ որչափ կը պահանջեն պատերազմի մը մեծ ռազմական շարժումները: Եւ եթէ մտաբերենք թէ կանոնաւոր զօրքերն ինչ ոճով կը վարուէին, իբր թէ աշխարհակալուած երկրի մը մէջ ըլլային, իրենց եւ քաղաքացեաց մէջ եղած շփմանց առեն, դիւրաւ կ՛ըմբռնենք որ վերջինքս աւելի սիրով յանձն կ՛առնուին, երբ պարագան ստիպէր, անձամբ ձեռք առնուլ կապարճքն ու բաղխառը, քան թէ՝ ինչպէս կը բացատրէ ժամանակակից մը՝ կրել «պահակազօր բանակի մը պատուհասը[256]»:

adfirmantes et milite), շատ իսկ վստահացած ապագայ արդարութեան ծննդավայրին համար պատերազմողաց, ինչպէս յաճախ փորձը տուին»:

[256] Զոսիմոս, Բ., 34, 2: τὴν ἀπὸ τῶν στρατιωτῶν ἐπέθηκε λύμην, δι' ἣν ἤδη πλεῖστοι γεγόνασιν ἔρημοι. (Լեցուց զօրաց ըրած վնասը, որով շատերն արդէն անչէն եղան): — Յեսու Ստիւնակեաց (Ժամանակագր. 93—96) երկայնաձիգ կը պատմէ այն վայրագութիւնները՝ զոր Ուռհայի երկրին մէջ կը կատա-

## § 7. Արեւելից գնդերում ազգագրական պէսպիսութիւնք Ստորին ժամանակաշրջանի մէջ:

*Վերագոյն յառաջ բերուած բացատրութիւնքն արդէն կը ցուցընեն նիւթիս շահեկանութիւնը. պատշաճ է այժմ վերադառնալ անոր՝ առանց այսուհետեւ ուշադիր ըլլալու աւելի կամ նուազ արուեստական զանազանութեանց՝ միադնակցաց, կայսերական Գու-*մարաց, *կամ վարձապետաց խմբերու միջեւ: Բնականապէս ոչ այնչափ ճշգրիտ՝ բայց Սասանեանց գահակալութեան մերձաւոր՝ թուականէ մը սկսեալ բանակին մէջ կարեւորութիւն կը ստանայ ցեղերուն խնդիրը, ինչպէս անդադար կը վկայեն պատմագրաց տուած պատերազմներու նկարագրութիւնները, եւ որ կը հաստատուի միանգամայն թէ՛ բարբառներուն եւ թէ՛ Պետութեան հպատակներուն նկատմամբ: Ուստի մենք ալ այստեղ չբաժնենք մէկը միւսէն: Այս կամ այն ցեղին մատուցած ծառայութեանց փոխարէն սահմանուած վարձքն կախում ունէր բնական կամ բարոյական կարգի յատուկ հանգամանքներէն, որոնց մասին մատենագրական աղբիւրները այլեւայլ նշմարներ կ՚ընծայեն,*

---

*ըէին Գոթացի Դաշնակիցք, որոնք բնակ ժողովրդեան համար շատ աւելի չարաղէտ էին՝ քան բուն թշնամեաց զործածները: Քաղաքացիք պահանջեցին որ այս մարդիկ բնակեցուին գիւղական սեպհականատերաց քով: Բայց վերջիններս ալ միաբերան աղաղակեցին թէ աւելի սիրով յանձն կ՚առնուն այսպիսի պարտաւորութենէ մ՚ազատ՝ մնալ դրամական փրկանաւորութիւն իսկ հատուցանելով:*

եւ անտարակոյս նաեւ սպառազինման առանձնայատկութիւններէ՝ որոնք մեզի աւելի քիչ ծանօթ են։ Իրերն այսպէս չէին ըլլար՝ եթէ հոս ալ դարձեալ պատկերաւոր յիշատակարանաց գրեթէ բացարձակ պակասութիւնը չկրէինք։ Անոր համար հոս անմիջապէս կը նշանակեմ այն միակ բացառութիւնը՝ որով կրնանք պարծենալ։

Թեսաղոնիկէի յաղթական կամարին խորաքանդակները Դակաց մասին բաւական յստակ գաղափար մը կու տան մեզի։ Քանդակիչը շատ պայմանադրական դիմագիծ մը տուած է Պարսից. բայց կը տեսնուի որ Դակերն իրենց աւելի ընտելական են, եւ թէպէտ եւ իր նախատիպար առածները Դիոկղետիանոս իշխանութեան ժամանակէն են (իբր 300ին), կրնանք զանոնք օգտիւ համեմատել այն Դակերուն հետ՝ զորոնք միւս կողմանէ կը ցուցընէ Տրայիանոս կոթողը։ Ասոնք հայրենակից էին Գաղերիանոս, որ սեանց միոյն վրայ կը ներկայանայ՝ իւր զօրապետի ճառն (adlocutio) անոնց ուղղած պահուն[257]։ Կը կրեն սաղաւարտ մը կզակակապով՝ խորխորշանաձեւ եւ ոնգապանով մը, պատենաւոր զրահ մը կամարազօտով, թեզանիք ու սանազգեստ մը՝ որոնք բաւական սեղմօրէն

---

257 Ասոնց 297ի պատերազմին մասնակցութիւն ունենալը չեն նշանակեր մեր դրաւոր վտիտ աղբիւրները, բայց Որոսիոսի մէկ խօսքը (է, 25, 10. հրտ. Zangemeister) մեծապէս ընդունելի կ'ընէ նոյնը (itaque mox per Illyricum Moesiam undique copias [Galerius] contraxit).

յանդչած են անդամոց, եւ մուճակներ՝ որ մինչեւ պճեղները կը հասնին: Զէնքերն են՝ բոլորշի վահան ու նիզակ. իսկ սուսեր չկայ ամենեւին[258]: Մանրամասնութեանց պէս-պիսութիւնքն են՝ զօրագնդերու տեսակին համեմատ. ձիաւորներուն քով՝ պատենաձեւ զրահը կ'իջնայ բաւական վար եւ տեսակ մը կիսազգեստ կը կազմէ[259]. միւսները՝ որ հետեւակ կ'երեւան, աւելի կարճ զրահ մ'ունին, սակայն երբեմն ալ կաշեայ երկար վերջ-քեր (πτέρυγες) կը կցուին ու կ'երկարին կշտերուն վրայ՝ ինչպէս բազկաց վերնամասին վրայ: Ասդին անդին քանի մը պաշտօնակալներ կը զանազանուին իրենց սաղաւարտները զարգմանելով[260]:

Առիթ ունեցայ արդէն ըսելու թէ Գ. դարն է Միջին Եւրոպայի՝ Դանուբէն մինչեւ Ադրիական ու Արքիպեղագոս՝ զօրագնդերուն գերակշռութեան շրջանը: Վերոս սկիզբ ըրած է զասոնք խմբովին Արեւելք փոխադրելու. նոյնն ըրած են Կարակալլա, Աղեքսանդր Սեւերոս[261], եւ Աւրելիանոս[262]:

---

258 Kinch, անդ, p. 13 ff. Տախտ. Դ, էջ 19:
259 Անդ, էջ 42 եւն. Տախտ. Ը:
260 էջ 18, Տախտ. Դ:
261 Հերոդիան., Զ, 6:
262 Գաղերիոս՝ նոր կազմութեանց մէջ՝ իբրեւ հինօրեայ զինուորներ խառնեց Դանուբի լեգէոններուն հին զինուորները. ասոնք կը զանազանուին յաղթական կամարին վրայ իրենց վահաններուն վերնանշաններովը. առիւծն ու արծիւը կը ցուցնեն Ե Մակեդոնական ու ԺԳ Երկուորեակը (Kinch, p. 17). Կոստանդի եւ Յուլիանոս ատեն այս հեծեալներէն 700

Զոսիմոս կը թուէ վերջնոյս զօրաբաժինները, «զոր կը կազմէին Դաղմատացի[263], Միւսիացի, Պէնեացի, Նորիկէի եւ Հռենոսի հեծեալներ եւ Կեղտացի լեգէոններ. բաց աստի ունէր Պրետորական վաշտերու զինուորներն՝ որ ամէնէն այրընտիր եղած էին, եւ Մաւրիտանացւոց այրուձին. Ասիայէն ունէր Տիանայի մարզիկն, ուրիշներ՝ Միջագետքէն, Ասորիքէն, Փիւնիկէէն ու Պաղեստինէն, քաջազոյններէն ընտրուած[264]»: Այսպէս ուրեմն Արեւելից զինուորաց մէջ ընտրութիւն մ՚ընել հարկաւոր էր:

Պատմագիրն՝ ի մէջի այլոց կը յիշէ Մաւրիտանացիները: Ասոնք՝ ինչպէս նաեւ Դաղմատացիները՝ նետաձիգներու թանկագին հեծելազօր մը կը կազմէին. ասոնցմէ կային Արեւելքի մէջ արդէն Սեպտիմոս Սեւերոսի ժամանակ՝ որ զասոնք Պարթեւաց դէմ խաւրեց, եւ Մակրինոսի ատեն[265]: Օգտակար եղան Աւրելիանոսի, որ զրկուած էր արաբացի հեծելախմբերէն, որոնք ճիշդ ապստամբաց բանակին մէջ էին: Սակայն

---

հոգի (երկու հեծելախմբեր) Միջագետք խաւրուեցան (Ամ. Մարկել ԺԸ, 8, 2):

263 Հմմտ. Վադդինգդըն, 2058:

264 Զեմ կարծեր թէ այսպէս մեկնելով՝ բռնադբօսած ըլլամ Զոսիմոսի այլուստ վիճելի խօսքը (καὶ ἐκ τῆς μέσης τῶν ποταμῶν καὶ Συρίας καὶ Φοινίκης καὶ Παλαιστίνης τέλη τινὰ τῶν ἀνδρειοτάτων. «Եւ ի Միջագետաց եւ յԱսորւոց եւ ի Փիւնիկեցւոց եւ ի Պաղեստինացւոց աշխարհաց գունդս ինչ ի քաջազունից»):

265 Հերոդիան. Դ, 15, 1. հմմտ. Գ, 3, 4:

ափրիկեան տարրերքն ընդհանրապէս մեկուսի կը թողուին. Մակրինոս Եգիպտոսէն բերել տուած էր գնդեր՝ որոնք դասալիք եղան[266]:

Վերջապէս այս թուարկութեան մէջ կ'երեւան նաեւ Կեղտական լեգէոններ: Գլխաւորաբար Դ. դարուն է որ ասոնք առաջին շարքի վրայ կ'երեւան: Փրանկ-գերմանական ցեղերը փորձուած էին Յուլիանոսէ ընդդէմ Ալամանաց իւր տարած յաջողութեան առեն. անոնց մէջէն զօրահան ըրաւ Սատարական զինուորներ: Կոստուս՝ որ գիտէր անոնց կորովութեան արժէքը եւ կը նախանձէր Յուլիանու, իւր քարտուղարներէն մին Գաղղիա խաւրեց՝ անկէ բերելու Հերուլներ, Բատաւիացիներ, Կեղտեր՝ զորոնք Պարսից դէմ խաղացընել կը մտածէր[267]: Ասոնք քաջասիրտ մարդիկ էին, մարզուած դաշտամարտերու մէջ պատերազմելու, բայց երբեմն խափանարար կ'ըլլային սակաւաձեռն յառաջամարտներու եւ պաշարմանց առեն. անհմուտ էին նետողութեան արուեստին եւ կ'արհամարհէին դակիչի համար կատարուած աշխատութիւնները: «Կ'արօրանային, կը թաքչէին վայրի երէներու նման»՝ մինչ պատրաստ յանդուգն յարձակում մը գործելու: Օր մը տրիբուններն ասոնց արգիլած էին բանակէն ելլել, բայց այս հրամանով միայն մա-

[266] Անդ, Ե, 4, 7:

[267] Ամ. Մարկեղ. Ի, 4, 2. Հմմտ. Ցուլիանոս՝ Թուղթ առ... Աթեն. 282 եւն:

Հուան սպառնալիքներ ստացան, եւ անյուսին գիշեր մը Գաղղիացիք՝ տապարով ու սուսերով զինուած՝ փորձեցին հանիլ մինչեւ Պարսից արքային վրանը: Բայց իրենց աղմկալից արշաւն արթնցուց թշնամին, եւ ստիպուեցան յետսընդդէմ ընկրկելով դառնալ բանակը, ծանր կորուստներ կրելով[268]: Այս անկարգապահներն[269] էին, զորոնք սակայն Յուլիանոս լիովին իր ձեռաց մէջ ունէր, որ տակաւին անոր բանակին կորիզը կը կազմէին պարսկական պատերազմին համար: Ճարպիկ լողացող ըլլալով՝ թշնամւոյն առջեւ կը նետուէին գետերէն անցնելով, իրենց վահաններու պաշտպանութեան ներքեւ:

Այս ամէնը նոյնպէս Սարմատացւոց մէկ արժանիքն էր, որոնք «մշտնջենաւոր վարձկանք» էին[270], եւ զորոնք նոյնպէս Յուլիանոս բանակին մէջ կը գտնենք[271]: Կոստաս, բացի քանի մը զինուորներէ՝ զորոնք հաւաքած էր Անտիոքայ կողմերէն[272], գնած էր

---

268 Ամ. Մարկել. ԺԹ, 5, 2—3· 6, 7—14:

269 Անդ, ԺԸ, 9, 3· Մագնենտեանք եւ Դեկենտեանք (Magnentiaci et Decentiaci, այսպէս անուանակոչուած էին իրենց պետերուն անուանց համեմատ) զորոնք քաղաքային պատերազմաց աւարտելէն ետքը՝ ինքնակալն իբր խաբեբայ խռովայոյզներ բռնադատեց Արեւելք գալու (ut fallaces turbidos ad orientem venire compulit imperator)· ուր բան մը չի վախցուէր բացի արտաքին պատերազմներէն»:

270 Տակիտ., Տար. Գ, 34:

271 Ամ. Մարկել. ԻԵ, 8, 1:

272 Անդ, ԻԱ, 6, 6:

վերջապէս Սկիւթացւոց օգնութիւնը[273]: Իսկ Յուլիանոս մասին գիտենք որ իւր կանոնաւոր զօրաքանակներուն վրայ կ'աւելցնէր միայն Սարակինոսաց եւ Գոթաց ընծայած զօրավիգները[274]: Գոթերը Դ. դարուն վերջերն արդէն հիմնած են իրենց հռչակը եւ տեսնք են որ Արեւելքի բանակին սպայից մէջ կը տիրեն[275]:

Ե. դարը մեծ մթութեան շրջան մըն է՝ զմեզ հոս շահագրգռող տեսակէտով, որովհետեւ չկայ Ամմիանոսի նման ճշգրիտ եւ մանրապատում տարեգիր մը[276]: Ստիպուած՝

---

[273] Անդ, Ի, 8, 1: Քանի մը զինուորներ՝ որոնք մարտիրոսացան Արաբաց ձեռօք Պաղեստինի մէջ՝ Է. դարուն սկիզբը, Գազայի առնուելուն հետեւութեամբ, կամ Ելեւթերապոլսոյ մէջ, կը վերաբերէին սկիւթացի հետեւակաց գնդի մը, որուն անունը Բոլանդեայի մէկ ձեռագրին մէջ կը գտնուի բարբարոսիկ ձեւին ներքին՝ devanduscithom = ἐκ βάνδου Σκυθῶν (ի գնդէ Սկիւթաց). տես J. Pargoire, ի Échos d'Orient, VIII, p. 40—43:

[274] Անդ, ԻԳ, 5, 2 = Զոսիմ., Գ, 25, 6:

[275] Meininger, անդ: Նոյնպէս Վաղէս՝ Շապհոյ արքայի դէմ կը գործածէ «զՎադոմար՝ նախկին թագաւոր Ալամանաց» (Ամ. Մարկել., ԻԹ, 1. 2: Vadomarius ex rege Alamannorum): Գոթերը կը գնահատուէին մասնաւորապէս իբր Թիկնապահներ. Անաստասի ատեն՝ Անտիոքի մէջ՝ գիշերապահապետը (νυχτέπαρχος) յուղարկախումբ մ'ունի Գոթերէ (Մաղաղ., ԺԶ, էջ 366):

[276] Որ սակայն «նկարագրող» մը չէ: Իւր պատմութեան մէջ զուր տեղ կը փնտռենք հանդերձից ու կազմածոց մասին տեղեկութիւններ: Ահա երկրորդական տեղեկութիւն մը (ԺԹ, 8, 8). «Զրհոր մը գտանք, բայց ա՛յնպէս խորունկ՝ որ ստիպուեցանք մեր կտաւի զգեստներէն երկայն չերտեր կտրել՝ պարան մ'ընելու անկէ, որուն ծայրը գտակ մը կապեցինք՝ զոր մեզմէ մէկը սաղաւարտին ներքեւ կը կրէր»:

առանց միջանկեալ փոխանցման մը՝ կ՚անցնինք Զ. դարը, որուն համար ընտիր առաջնորդներ ունինք՝ Պրոկոպիոս եւ իր շարունակողները:

Այս ժամանակաշրջանը նշանաւոր է իբրեւ գագաթնակէտ վարձկանապետաց դրութեան եւ ցեղերու մեծախուռն խառնուրդքի: Բայց իւրաքանչիւրն իր «կողմն» ունի, իր յարգն ու արժէքը: Նշանակելի կէտ մըն էր որ Պրոկոպիոս շատ քիչ անգամ կը յիշէ մարտիկ մը կամ զօրագունդ մը՝ առանց աւելցընելու ազգագրական տեղեկութիւն մ՚ալ: Այս մասին շատ աւելի ուշադիր է քան թէ յատկանշելու պետի մը դասակարգական աստիճանը կամ այն դասն՝ որուն մէջ կը մտնէր ջոկատ մը: Այսպէս կ՚անուանէ «Ներսէս՝ որ կը հրամայէր Հերուլաց եւ Հայոց»[277]: Բիւզանդական բանակին զօրագլխոյ մը մահը կը ծանուցանէ եւ կը յաւելու թէ Վրացի էր[278]: «Անաստաս շատ բազմաձեռն բանակ մը հաւաքեց, բայց որուն

---

[277] Պրոկոպ., Պ. Պ., Բ., 24, 12:

[278] Անդ, 25, 1: — Կուձէս եւ Բուզէս՝ որոնք Լիբանանին մէջ կը հրամայէին, խուրուեցան Մինդոնի ամուր դղեկին վրայ աշխատող գործաւորները պաշտպանելու. «ասոնք երկու եղբայր էին՝ Թրակացի» (անդ, Ա, 13, 5): Սատաղայի մօտ ճակատամարտին մէջ Հռոմայեցւոց կողմանէ նշանաւոր կը հանդիսանայ «Փլորենտիոս Թրակացին» (Ա, 15, 15). Թրակացի ուրիշ պետեր՝ Ա, 12, 23. Բ, 30, 29: Լազիկէի պատերազմին մէջ Հռոմէական հեծելազօրուն գլուխ դրուած են Գեպիտացի մը եւ Հայ մը (Պրոկ., Պ. Գ., Դ, 8, 15). եւ Յուստինիանոս Թրակացի ու Հերուլ պետեր (անդ, 9, 5):

չափէն աւելի պաշտօնակալներ կը հրամայէին, յականէ յանուանէ Կիլորոս՝ անձնապահապետ, Պատրիկիոս Փռիւգացի, եւ Հիւպատիոս, երկուքս ալ Կ. Պոլսոյ դասակներուն զօրագլուխներ. ուրիշներն աւելի խոնարհագոյն աստիճանաւ՝ Փարազման՝ ազգաւ Կողքիսացի քաջամարտիկ մը, Գոդիգիսկլոս եւ Բեսաս՝ երկու Գոթացիք. Ալպիոն Եգիպտացի գանձապահ էր[279]»: Ճակատի մը նկարագրութեան մէջ կը պատմէ թէ Բարբերախօսարար «Գոթերը» յարձակեցան[280]: Ուրիշ օրինակ մը. Մարտի մը մէջ «նշանաւոր հանդիսացաւ Պարսից կողմանէ Կատշաց գունդը, եւ Հռոմայեցւոց կողմանէ՝ Հերուլք»: Կաւատ Հռոմէական Հայաստան կը խաւրէ Պարսից բաժնի Հայոց եւ Սիւնեաց (Աղուանից սերձաւորաց) բանակ մը, 3000 Սաբիրացի կոչուած Հոնաց հետ մէկտեղ՝ որոնք գոռ պատերազմող էին[281]: Կոմագենէի մէջ Բելիսար իւր հետ ունի 20.000 հոգի, որոնց մէջ գոնէ 2000 հոգի Իսաւրացիք էին: Կը ստիպուի ճակատ տալ իւր կամաց հակառակ: Իսաւրացիք՝ անկարգօրէն կռուելով՝ կ՛իյնան 800 հոգւոյ չափ: «Ասոնք երկրագործութենէ նոր անցած էին պատերազմի վտանգաց, եւ նշանաւոր եղան իրենց անկարողութեամբը, թէպէտ եւ կռուելու աճապարանք մ՛ունէին. Եւ ոչ ա՛լ ամէնքն

279 Պրոկոպ., Պ. Պ., Ա, 8, 2, 3 եւ 5:
280 Անդ, Բ, 18, 24. հմմտ. վերը՝ ծան. 221:
281 Պրոկոպ., Պ. Պ., Ա, 13, 19. 15, 1:

Իսաւրացիք էին, այլ մեծագոյն մասը Լիւկայոնացիք[282]»:

*Ժամանակակից միւս մատենագիրներն ալ միեւնոյն հոգեկան ունակութիւնները կը ցուցընեն*[283]*: Սակայն ո՛չ ամէնքը կը յամեն նկարագրելու եւ զանազանելու բիւզանդական բանակին մէջ եղած բարբարոսաց տիպարներն ու անոնց կռիւներու յեղանակները: Պրոկոպիոս բացատրութիւն մը կ'ընէ Հերուլներու համար, անոնց պարտութիւնը մեկնելու համար*[284]*: Միւս ժամանակագիրներն ալ միեւնոյն լակոնաբանութիւնը կը պա-*

---

[282] *Անդ*, 18, 38—40: *Ընդգծած բառերը վերջին աստիճան պայծառութեամբ կ'արտայայտեն ցեղերու զանազանութեան մասին ցուցուած հետաքրքրութիւնը:*

[283] *Մաղաղաս*, *ԺԸ*, *էջ* 445. *«բազմաթիւ զօրքեր հաւաքեց Գայլագլուխ փռիւգացիներէն. եւ զանոնք արձակեց Պարսից եւ Սարակինոսաց դէմ... միեւնոյն ժամանակ Պարսից քով խաւրուեցաւ Հերմոգենէս Սկիւթացին, որ նախկին* մագիստրիանոս (magister) *էր, հեռատես մարդ մը»: Եւագր (Եկեղ. Պատմ., Ե,* 14) *կ'անուանէ ուրիշ Սկիւթացի մը՝ Կուրսոս՝ Հռոմայեցւոց ծառայութեան մէջ, եւ Զոսիմոս (Ա,* 66, 1) *կը յիշէ զՍատուրնինոս՝ Աւրելիոսի կուսակալը, «ազգաւ Մաւրիտանացի»* (*γένει Μαυρούσιος*)*. Թէոփիլակտ. Սիմոկ.* (*Ա*, 14, 5) *կը յիշէ՝ իբրեւ տեղակալ Փիլիպպիկեայ՝ «Ապսիկ՝ Հոն»: Հմմտ. Ագաթիաս, Դ,* 5, 1. *«Իսաւրացի զինուոր մը»: Ռուստիկոս՝ բանակին մէջ եղած արքունի գանձապետը Գաղատացի մըն էր (անդ, Գ,* 1, 3)*:*

[284] *Պրոկոպ., Պ. Պ., Բ,* 25, 27—28. *«Իրենց սովորութեան համար՝ պաշտպանողական զէնքեր չունէին: Չեն ագանիր՝ ո՛չ սաղաւարտ եւ ո՛չ զրահ, այլ միայն կ'առնուն վահան մը եւ տառատոկ մը՝ որ իրենց գօտւոյ տեղ է: Գերիներն առանց Վահանի կը պատերազմին. եւ միայն իրենց քաջութեան փորձը տալէն ետքը իրաւունք կը ստանան իրենց աւագներէն վահան մը կրելու»:*

հեն[285], որմէ կը խոտորին միայն այն բարբարոսաց մասին՝ որ թշնամւոյն բանակին մէջ չէին գտնուիր սովորաբար[286]։

Իրականութիւնն այն է որ այս յափշտակիչներն երկու կողմերուն ալ ծախու կու տան իրենց ծառայութիւնքն, եւ անոր համար միեւնոյն ցեղը կը գտնուի երկու ոսոխներուն ալ շարքերուն մէջ։ Յուստինեանու չորրորդ պարսկական պատերազմին մէջ երբ Խոսրով կ՚ուզէր յարձակիլ Ուռհայի վրայ, «իրեն հետ բերած էր Հոներ»։ Պաշարման աշխատութիւնները սկսիլ կու տայ. բայց այն ատեն «Հոները՝ որ Հռոմայեցւոց հետ էին» կ՚արձակուին այս աշխատաւորաց դէմ[287]։ Բանակին մէջ (որ Պետրան պաշարեց) կային Սաբիրացի Հոնաց ազգէն զինուորներ. ասոնք Կաւկասի մօտ կ՚ապրին՝ բազմաթիւ իշ-

285 Տես միայն Ագաթիաս Գ, Թ, 2. Հռոմայեցիք իրենց բանակին մէջ ունէին Մաւրիտանացիներ, զինուած երկայն նիզակներով եւ փոքր վահաններով, եւ Ծաններ, որոնք կուռ վառեալ էին (— այս միջակ տեղեկութիւնը ցանցառ չէ այն հեղինակաց քով՝ որոնց մասին կը խօսիմ, —) Իսաւրացիներ՝ որ կը դարծածէին պարսատիկ ու աղեղ, Լոմբարտացիներ եւ Հերուլներ։

286 Այսպէս Դիմանց մասին (զորոնք Պրոկոպ. Δολομῖται կը գրէ) կ՚ըսուի թէ կու գան՝ Պարսկաստանի մէջէն, որուն միշտ ծառայած են արծաթով։ Հետիոտն են. ամէն մէկն իւր սուրն ունի, վահան մը եւ երեք նետ։ Կատարներու վրայ եւ վհերու եզերքն այնչափ դիւրութեամբ կ՚ընթանան որչափ հարթադաշտի վրայ» (Պրոկոպ., Պ. Գ, Դ, 14, 6—9)։ Ագաթիաս, Գ, 8, 1 զասոնք կը կոչէ Διλιμνῖται, եւ բառացի նոյն ոճով կը բացատրէ։

287 Պրոկոպ., Պ. Պ., Բ, 26, 5 եւ 25։

խաններու իշխանութեան ներքեւ, որոնց ոմանք Հռոմայեցւոց դաշնակից են եւ ոմանք՝ Պարսից: Երկու վեհապետներն ալ սովորութիւն ունին արծաթ բաշխելու իրենց դաշնակցաց, ո՛չ թէ ամէն տարի, այլ հարկաւորութեան ժամանակ: Յուստինիանոս պէտք ունենալով Սաբիրացիներուն՝ անոնց առաջարկեց դրամական նպաստներ[288]»:

Իրօք ալ նաեւ Պարսիկներն իրենց համար օտարացեղ Սատարներ պահել սկսած են. Գ. դարու վերջը Կատիչք՝ որոնք աւազակաբարոյ ու լեռնորդեայ են, եւ անհամեմատելի քաջակորով նետաձիգներ, կը մատակարարեն սքանչելի հեծեալ հետեւակազօր մը[289], որ կը կարծուի թէ պատկերացուած է Սալոնիկի յաղթական կամարին վրայ[290]: Եդեսիոյ դէմ 503ին եղած յարձակման առեն Պարսից հետ կը քալեն Հոներ, որոնք իրենց արդները կը ճօճացընեն, եւ արարքացի նիզակաւորներ[291]: Դ. դարուն Շապհոյ զօրագասերուն մէջ դաշնակից են Քիոնացիք եւ Գեղք (Գեղանացիք), որոնք անոր պետութեան սահմաններուն վրայ բնակող պա-

---

[288] Պրոկոպ., Պ. Գ, Դ, 11, 22 եւն: — «Զէր կրնար անոնց այս գումարը տանիլ տալ Թշնամեաց շարքերուն մէջէն. երբ ներկայացուցիչներ խաւրեցին նոյնը ստանալու համար»:

[289] Մորպարոն, ԺԱ, 13, 2 եւ 4, էջ 523 C:

[290] Kinch, Տիտ. Ը, էջ 42:

[291] Յեսու Սիւնակեաց, Ժամանակագր., 63:

տերապմասէր ազգեր են[292]։ Ուրիշ տեղ յիշեցինք Հեփթաղները, զորոնք արքայից արքայն իրեն սատար՝ կ'առնու՝ իր իշխանութեան ներքեւ զանոնք նուաճելէն ետքը[293]։ Հետզհետէ Սասանեան բանակը կ'ըլլայ խայտաբղէտ ամբոխ մը, որու մէջ կը մտնեն շատ տարօրինակ տարրներ[294]։ Գողոն Միհրան պարսիկ զօրավարն իրեն հետ ունէր «բազմաթիւ օգնականներ, առնուած անթիւ անհամար ցեղերու բազմութենէն, որոնց մէջ կը բնակի՝ Կաւկասի լեռնաշխարհին մէջ՝ Հոնաց ազգը[295]»։

Երկու ոսոխները ճիշդ Կովկասի այս միջին գօտւոյն մէջ կրնային գտնել դիւրապատրաստ օժանդակ զօրավիգներ։ Հեղինակները բազմաթիւ ազգաց անուններ կու տան, որոնց սահմանները չեն կրնար որոշուիլ[296], եւ որոնց ամէնուն ալ հասարակաց նկարագիրն է պատերազմասէր ըլլալ։ Երկու պե-

---

[292] Ամ. Մարկեղ., ԺԷ, 5, 1. Համմտ. ԺԸ, 4, 1. Ծապուհ աճեցուց իր ուժերը վայրենի ցեղերով՝ զորոնք նուաճած էր։

[293] Պրոկոպ., Պ. Պ., Ա, 3, 13։

[294] Կեդրենոս, Ա, էջ 727. «Յամի 10 (Հերակղի) Խոսրով (Բ.) հաւաքեց նոր բանակ մ'օտարներէ, քաղաքայիններէ, գերիներէ եւ ամէն կարգի մարդկանէ»։

[295] Մակլէր, Սեբ., էջ 9 (= Հայ բնագիր՝ էջ 29 «Այսպէս եկն եւ Գողոնն Միհրան ի. հազարաւ զօրաց սպառազինաց եւ փղաւք բազմաւք, եւ ունէր նա ընդ ինքեան սատարս բազումս ի ճամբարէ անթիւ ազգացն, ընդ որ բնակեալ են ընդ լեռնակողմամբ Կովկասու ազգք Հոնաց»)։

[296] Տես յատկապէս Ասիան, Երջանաւ. ԺԱ, 1—3. Այս կողմանց արքայք իրենց իշխանութիւնը կ'առնուն ինքնակալէն, բայց անհանդուրժող են հարկ տալու։

տութիւններն անընդհատ պայքարի մէջ էին՝ անոնց օգնականութիւնն ստանալու[297]. բայց ասի չէր տրուեր՝ առանց թաքուն խորհրդոյ ձեռնթափ ըլլալու։ Արդէն իսկ Հասարակապետութեան ժամանակէ ի վեր Վիրք եւ Հայք կը տատանէին ընտրելու Հռոմայեցւոց եւ Պարթեւաց կողմը, ջանալով որ իրենք զիրենք շատ չվտանգեն[298]։ Այս ազգերուն մէջ Հռոմ աւելի դիւրութեամբ իրեն կը յանկուցանէր տոհմիկները եւ արքայազունները[299], որոնք յաճախ արեւմտեան քաղաքակրթութեան կաթողին էին, եւ այն՝ իւր արքունեաց ճոխութեամբն, կամ անոնց անձնական փորձառութեամբն Իտալիոյ մէջ իբրեւ պա-

297 Հմմտ. Մարդացի աղեղնաւորներն ու Վրացի նիզակաւորները Լուկուղղոսի բանակին մէջ (Պղուտարքոս, Ղուկ. 31)։

298 Պրոկոպիոս կը պատմէ (Պ. Գ., Դ, 8, 21—24). նորաղոյն միջադէպ մը, որ կը ցուցընէ թէ ի՛նչ դիւրութեամբ մէկ բանակէն միւսը կ՚անցնէին. «Հռոմէական բանակին մէջ Պարսկահայ մը կար՝ Արտաւան անուն, որ երկայն ժամանակէ վեր Հռոմէական Հայաստան քաշուած էր, իւր հաւատարմութեան գրաւական տալով 120 Պարսկի սպանութեամբ։ Հայաստանի զուգազապետ Վալերիանոսէն 50 զինուոր խնդրած էր, եւ գացած էր Պարսկահայաստանի բերդ մը՝ զոր 150 Պարսիկներ կը պահէին, որոնք չգիտնալով թէ անիկայ միւս կողմն անցած է՝ սիրով ընդունեցան։ Զանոնք սրախողխող ըրաւ, թողուց բերդն եւ Վալերիանոսի քով դարձաւ եւ այնուհետեւ Հռոմայեցւոց քով մնաց»։ Ուստի ո՛չ Վալերիանոսի տուած 50 զինուորներն եւ ո՛չ Արտաւան ինքնին իբրեւ թշնամի ճանչցուեցան, որ ակներեւ հետեւութիւն մըն է վարձկանապետաց դրութեան։

299 Պրոկոպ., Պ. Գ., Դ, 9, 8. «Ինքնակալին հրամանաւ շատ ժամանակէ ի վեր Լազ իշխանները կնութեան կ՚առնուին (Հռոմէացի) ծերակուտականաց դուստրները»։

տանդ ապրելով[300]։ Բայց իւրաքանչիւր ազգին բուն զանգուածը կը մնար ըմբոստ արտաքին ձեռնարկութեանց դէմ եւ կ'ուզէր միայն անոնցմէ ազատ մնալ։

Պարսից շարքերուն մէջ ազդեցութեան՝ թէեւ յաճախ բռնաբարուած՝ բաժին մ'ունէին Աղուանք[301], մինչդեռ Հռոմայեցիք իրենց ձեռքին մէջ ունէին Վրացիները։ Բայց նախ Հռոմի եւ յետոյ Բիւզանդիոնի մէջ եկան այն գիտակցութեան թէ անհրաժեշտ է անմիջական գօտւոյն այն դաշնակիցները չգործածել Արեւելից պատերազմներուն մէջ[302]։ Այլ ատոր հակառակ զիրենք իրենց հայրենիքէն շատ հեռուն կը խաւրէին. այսպէս մինչեւ Զենոնի ժամանակը Վարժականք (scholari) կամ Կայսերական Պալատան Թիկ-

---

300 Այսպիսի է Համազասպ ի Վրաց, որ տակաւին պատանի՝ մասնակից եղաւ Տրայիանոսի պատերազմին եւ մեռաւ ի Մծբին (CIG, 6856 = JGIS, 1374). յաւել՝ Մարաց Արտաւազդի (Արտոբարզանէս) Թուղ (CIL, VI, 32364)։

301 Կը գտնենք զատոնք Ամդայ պաշարման ատեն (Ամ. Մարկել., ԺԹ, 2, 3)։

302 Բաց ի այն պարագայէն, երբ ահ յափոյ պաշտպանութիւն մ'ընել անհրաժեշտ էր, եւ երբ կռիւը կը մղուէր նոյն իսկ անոնց երկրին մէջ։ Սինգարայի մէջ զէնք առած էին «բազմաթիւ բնիկներ» (Ամ. Մարկել., Ի, 6, 8). Բզաւդէն կը պաշտպանէին Հռոմայեցի գունդեր, Զաւդէացի բազմաթիւ աղեղնաւորներու հետ (cum sagittariis pluribus Zabdicenis) որոնց՝ այն ատեն մեզի հնազանդ եղողներու՝ հողին վրայ կանգնած էր այս քաղաքը» (in quorum solo tunc nobis obtemperantium hoc est municipium positum. Ամ. Մարկել., Ի, 7, 4)։ Լազիկէի պատերազմին մէջ Լազերն ալ կը յիշուէին իբրեւ պատերազմակիցներ (Պրոկոպ., Պ. Գ., Դ, յաճախ), ինչպէս նաեւ Ծանարք (Պ. Պ., Բ, 29, 10)։

նապահք կ՚ընտրուէին քաջակորովի Հայերէ[303]»: Եւ երբ ատոնց մին երկարամեայ ծառայութեամբ կը գրաւէր Կայսեր վստահութիւնը՝ անձնական յանձնարարութիւն մը կը տրուէր անոր. այսպէս Արշակ Հայը՝ Յուստինիանոս օրով՝ կը հրամայէր Սուրայի պահակազօրուն[304], եւ Պարսկահայ մը կը գըտնուի բիւզանդական զօրավարաց մէջ՝ որոնք Փասիսի գետաբերանոյն կողմերը կը գործէին[305]. բայց ատոնք այն ատեն՝ հեռացած իրենց հայրենակիցներէն, կերպով մը մերկացած կ՚ըլլային իրենց ազգութիւնը: Ընդհանրապէս ցեղ մը՝ ամբողջութեամբ առեալ՝ կը մնայ իբր կասկածելի. եւ նոյն իսկ Պարսիկ զօրավարը Միհրմահրով չի համարձակիր իւր քով պահել Սաբիրացի Հոնաց շատ մեծաթիւ բազմութիւն մը եւ անոնց երկու երրորդն ետ կը խաւրէ լաւ վարձատրելով[306]: Իսկ Հռոմայեցիք կը տեսնէին որ Ապխազք եւ Ապշեղք կը լքանէին իրենց կողմը՝ վայրացած հարկերու ծանրաբեռնութեան դէմ, որոնց տակ զիրենք կ՚ընկճէր անմտաբար Կ. Պոլսոյ արքունիքը[307]: Հերակլիոս քանի մ՚անգամ խոչընդոտն գտաւ իւր Սատարաց չկամութենէն, որ էին Լազք, Վիրք եւ Ապ-

303 Պրոկոպ., Ծ. Պատ. 24, 16:

304 Պրոկոպ., Պ. Պ., Բ, 5, 11: Հմմտ. Գերանիոս զօրավարը՝ որ Վրացի էր եւ հռոմէական պետ. մը (Բ, 28, 1):

305 Պրոկ., Պ. Գ, Դ, 13, 10:

306 Անդ, 13, 7:

307 Անդ, 9, 9 եւն. 10, 6:

խաղք[308]։ Համառօտիւ ըսելով՝ կամք եղած է սահմանագլխոյն դրացի այս ազգերը հե-տու բռնելու, բայց յաճախ ասոր համար մի-ջոցները չունէին։

Ճակատամարտերու բախտը յաղթողին սովորաբար կու տար գերիներու բազմութիւն մը. ասոնք բանակին մէջ կը մտնէին՝ որ-պէս զի ազատին պատերազմական իրաւանց ամբողջական գործադրութենէն[309]։ Յուս-տինիանոս Պարսից դէմ խուրեց հեծելազօրու հինգ բաժիններ Վանտալներու, որոնք Բիւ-զանդիոն բերուած էին[310], եւ Գոթերու դէմ՝ պարսիկ գերիներ[311]։ Բայց ասի Ստորին Կայսրութեան մէկ սովորութիւնն էր, որ բա-ցառիկ բան մըն էր Սեպտիմոս Սեւերոսէ յա-ռաջ. եւ ճիշդ Պարթեւաց նկատմամբ նոյնը կրնանք նշմարել[312]։ Բաց աստի Հռոմէա-կան ծառայութեան անցնողներուն մեծագոյն մասը գերի չէին, այլ փախստականներ՝ զո-րոնք իրենց հայրենիքէն մերժած էին՝ ան-տարակոյս՝ արքունեաց յաճախադէպ յեղա-փոխութիւնները[313]։ Աղեքսանդր Սեւերոս

---

308 Հմմտ. Թէոփանէս, 168, 14 եւն։

309 Խոսրով՝ Պետրան առնելէն ետքը, անոր պաշտպաններուն մէկ մասն իւր զօրաց մէջ ընդու-նեցաւ (Պրոկոպ., Պ. Պ., Բ, 17, 28)։

310 Պրոկոպ., Պ. Վ., Բ, 14, 18։

311 Պրոկոպ., Պ. Պ., Բ, 19, 25. Պ. Գ., Գ, 3, 11։

312 Տես վերը՝ § 5, ծան. 197։

313 Ասոնց թիւը Հռոմի մէջ ա՛նչափ մեծ էր Աւգոստոսի օրով, որ Լիւրիկէական-Պանոնեական ապստամբութիւնը զսպելու համար կրցան կազմել Պարթեւ. այրուձիոյ համացեղ գունդ մը, իրենցմէ

երբ Հռենոսի կողմը պատերազմելու կ'երթար՝ իրեն հետ կը խաղացընէր բացի Ուռհայեցի եւ Հայ աղեղնաւորներէն՝ նաեւ Պարթեւներ[314]. եւ Մաքսիմինոս Թրակացին նման արշաւանքի մը համար՝ անոր օրինակին հետեւեցաւ[315]: Թէ՛ մին եւ թէ՛ միւսը զգուշացան Արեւելից մեծ պետութեան նախկին հպատակները խմբովին գործածել իրենց հայրենակցաց դէմ:

Վերջապէս Ստորին ժամանակաշրջանին ատեն լաւագոյն եղանակը կ'երեւար՝ օտարացեղերու այլեւայլ զօրաքանակները համախառնել բանակին, պահելով իւրաքանչիւրին անջատ խմբերով եւ զանոնք առնելով իրարմէ

---

միոյն՝ Որնոսպատէսի՝ հրամատարութեան ներքեւ (Տակ., Տար. Զ, 37). Հմմտ. CIL, IX, 137 (Ռաւէննա)՝ C. Jul. Mygdonius, generi Porthus natus, ingenuus captus pubis aetate datus in terra(m) Romana(m)... (Կ. Յուլ. Միգդոնիոս, ազգաւ ծնեալ Պարթեւ, ազատատոհմ գերեալ ի տղայ տիս տուեալ յերկիր Հռոմայեցւոց...) եւ VI, 31187՝ M. Vlp. Cresimus (e)xerc[itator] natione Porthus (Մ. Ուլփ. Կրեսիմոս մարզիչ, ազգաւ Պարթեւ)։ Վերջինս անտարակոյս գերի մըն էր՝ որ կայսերական անձնապահաց գնդին անցած էր։ — Gardthausen, ի Oriental. Studien..., Nöldeke... gewidmet եւն, էջ 851 եւն։

314 Լամպրիտիոս, Վարք Սեւեր. Աղեքս. 58, 3. 61, 8. նոյնը կը հաստատէ Հերոդիանոս (Զ, 7, 17. Է, 2, 2)։

315 Կապիտոլինոս, Վարք Մաքսիմ., 11, 7, 8. Հերոդիանոս, Է, 2 1 կը գրէ՝ καὶ εἴ τινες Παρθυαίων ἢ χρήμασι πεισθέντες καὶ αὐτομολήσαντες ἢ ληφθέντες αἰχμάλωτοι Ῥωμαίοις ἐδούλευον. (Եւ Պարթեւներէն ոմանք կա՛մ արծաթով հաւանած կա՛մ թշնամիներէ փախած եւ կա՛մ գերի բռնուած՝ Հռոմայեցւոց կը ծառայէին)։

չատ հեռու աշխարհներէն։ Յուստինիանոս պարսկական սահմանագլուխը կը խաւրէր «մեծ բանակ մը ի Լիւրիկեցւոց, Սկիւթացւոց, Իսաւրացւոց եւ Թրակացւոց[316]»։ Ուրիշ պարագայի մը մէջ Պրոկոպիոս[317] քիչ մը տարբերութեամբ կը թուարկէ՝ Թրակացիներ, Լիւրիկեցիներ, Գոթք, Հերուլք, Վանտալք, Մաւրիտանացիք, եւ կ՚աւելցնէ թէ Բելիսար այնպիսի ճարտարութեամբ մ՚իր այս գնդերը ցուցուց Խոսրովի դեսպաններուն, որոնք վերադարձան վախցած՝ ըսելով թէ երբեք տեսած չէին այսպիսի գեղեցիկ համախումբ մը, եւ համոզեցին իրենց տէր արքայն խաղաղութիւն ընելու[318]։

Ցեղերու այս հաշտ մերձեցումն՝ առանց իրարու մէջ խառնելու չփոթելու, կ՚ընծայէր առաւելութիւն մը՝ որ արհամարհելի չէր։ Որչափ կարելի էր գարունը կ՚ընտրուէր պատերազմի մը համար, թէպէտ եւ միւս եղանակներուն ալ յաճախ կռիւներ տեղի ունեցան։ Երբեմն ամառը դաշտավայրի վրայ՝ Միջագետաց մէջ՝ հարկ կ՚ըլլար անցընել, եւ ձմեռը՝ լեռները, Հայաստանի լեռնադաշտերուն վրայ եւ հովտաց մէջ։ Կլի-

316 Մաղաղաս, ԺԸ, էջ 441 եւն։

317 Պրոկոպ., Պ. Պ., Բ, 21, 4։

318 Անդ, 21, 13 եւն։ Այս որոշման մեծապէս նպաստած պիտի ըլլայ 512ի ժանտախտը, ինչպէս կը թելադրէ Ռաւլինսըն (Rawlinson, History of Persia, p. 401)․ բայց սա՛ արգելք մը չէ որ վերյիշեալ նկարագրութեան մէջ նոյն ժամանակի կարծեաց համեմատ գաղափարական բանակի մը ստորագրութիւնը նշմարենք։

մայի ծայրայեղ բարեխառնութիւնքն ըստ պարագային կը պահանջէին կա՛մ հիւսիսաբնակ մարդիկ կա՛մ ջերին երկիրներու վարժած անձեր: Աղեքսանդր Սեւերոս՝ Արտաշիրի դէմ քալելու ատեն, նախ անցաւ Լիւրիկէէն եւ անկէ զօրագնդեր առաւ՝ իր բանակը ստուարացնելու համար. բայց «տօթերը ծանր խօթութիւններ պատճառեցին երկրորդ բանակին մէջ (այն որ Միջագետքն էր), մանաւանդ Լիւրիկեցւոց մէջ՝ որոնք եկած էին ցուրտ ու անձրեւոտ երկրէ մը եւ որոնք սակայն՝ տօթագին կլիմայի մը մէջ ալ՝ իրենց սովորածէն պակաս չէին ուտեր»: Այս միջոցիս առաջին բանակն ալ (այն է՝ Հայաստանի ու Մարաստանի) շատ կրած էր ցրտէն հիւսիսի լեռներուն մէջ[319]: Յայտնի է որ Ինքնակալը չէր դիտցած իր ոյժերը լաւ բաժնել ու բաշխել: Յուլիանոս պատասխանելով Կոստասի, որ իր Կեղտացի մարտիկները ետ կ'ուզէր, այսպէս կը մեկնէ անոնց մեկնելէն հրաժարիլը[320]. «Կ'ըսեն թէ հիւսիսի սառոյցներուն մէջ ապրող մարդիկ կը բաժնուին իրենց կանանցմէ ու տղոցմէ՝ որպէս զի, ամէն բանէ ազատ, Արեւելքի ծայ-

319 Հերոդիանոս, Զ, 4, 3. 5, 1—3:

320 Ամ. Մարկեղ., Ի, 8, 7: Տակաւին Դ. դարու ամէն զինուորները չէին թողուր որ զիրենք օտարացընեն իրենց հայրենիքէն. եւ անկէ յառաջ ալ՝ հազիւ թէ պատերազմը կը լմնար, յօժարակամ կը տրտնջէին՝ Մակրինոսի զօրաց նման թէ օտարութեան մէջ կը մնան (ἐν ἀλλοδαπῇ διαιτώμεναι), Հերոդեան, Ե, 2, 6):

բերը երթան»: Նոյնպէս Թրակացիք շատ կրեցին Միջագետաց կիզիչ խորշակներէն[321]: Ասոր հակառակը Հերակղէ զօրահաւաք եղած Թուրքերը կամ Խազարները (Khazars) դժուարութեամբ կը դիմանային ձմերան, եւ մի առ մի թողուցին բանակետղերը եւ ի վերջոյ լիովին դասալիք եղան եւ վերադարձան իրենց տեղը[322]: Բայց այս ձախողանաց դէմ հակառակ կողմն ալ կար. ամէն մէկ ցեղը քիչ մ՚առնելով՝ երկարատեւ գործողութեանց համար՝ ապահովուած կ՚ըլլար նախազգուշութեամբ լիակատար ձեռնթափութեան մը կամ ամբողջական անզօրութեան մը դէմ:

Շատ հաւանական է որ ազգերու այս միախոնները գլխաւորաբար բուն ռազմական բանակը կը կազմէին. եւ այսպէս միայն կարելի էր զանոնք ազգագրական խմբերու բաշխել: Սակայն եւ այնպէս ասոնցմէ ալ զըրնուելու էին սահմանագլխոց տեւական պահակազօրաց գնդերուն մէջ: Լիբանանի գնդերուն ժամանակ ժամանակ եւ այն՝ յանձախօրէն ուղղուած կոչը կը ցուցնէ թէ վերջնոյս մեծ կարեւորութիւն կը տրուէր. այս գնդերը միայն բնիկ տարրներ պարունակելու չէին[323]:

---

321 Պրոկոպիոս, Պ. Պ., Բ, 19, 32:

322 Կեդրինոս, Ա, էջ 729. Թէոփանէս, 317, 11 եւն:

323 Պրոկոպիոս, Պ. Պ., Ա, 13, 5: Եթէ համեմատենք Բ, 16, 17 եւ Բ, 19, 32 տեղերը՝ կը մղուինք մտածելու թէ ասոնց մէջ կային նաեւ Թրակացիներ:

Այլուստ պէտք չէ ա՛յնպէս կարծել թէ Պետութիւնն ալ՝ ուզած ամէն վայրկեանին՝ կարենար անաշխատ գնել վարձկաններ եւ արուեստի զինուորներ, որոնց պէտք ունէր։ Զինուորագրողներն երբեմն գոհանալու կը ստիպուէին այն երկիրներուն մէջ, որոնց բնակիչները գնահատուած էին իբր զինուոր, զօրահաւաք ընելով անփորձ զինուորակոչներ, անձապարանօք հաւաքուած անհրաժեշտ ստիպողական պիտոյից համար․ այսպէս են այն Իսաւրացիքն ու Լիւկաւոնացիք, որ վերը յիշուեցան[324]։ Պատահած է որ աւելի արմատական միջոցներ ալ ձեռք առնուած են։ Յուլիանոս՝ երբ ի Կեսարիա Գամրաց էր, որեւէ խիղճ չըրաւ պատերազմի սպասաւորութեան բռնադատելու նաեւ կրօնաւորները[325]։ Անտարակոյս այս խոչընդ–

---

324 Պրոկոպ․, Պ․ Պ․, Ա, 18, 40։ Յուստինոսի Բ․ օրով՝ Մարկիանոս, զօրավար Արեւելից բանակին՝ ստիպուած էր Միջագետք մտնել սակաւաթիւ զինուորներով, որոնք գէշ զինուած էին, հովիւներէ ու ռանչպարներէ՝ զորոնք արտերէն առած էր (Եւագր․, Ե, 8)։ Ասոր եւ ո՛չ բարբարոսներ գտած էր պատերազմի պահեստներուն մէջ։

325 Սոզոմենոս (Պատմ․ Եկեղ․, Ե, 4, էջ 1224 Migne) կը գրէ՝ Κληρικοὺς δὲ πάντας ἐγγραφῆναι τῷ καταλόγῳ τῶν ὑπὸ τὸν ἄρχοντα τοῦ ἔθνους στρατιωτῶν, ὃ δαπανηρὸν εἶναι σφόδρα καὶ ἐπονείδιστον ἐν ταῖς τῶν Ῥωμαίων στρατιαῖς νομίζεται (Բոլոր կղերիկոսք գաւառին իշխանին ներքեւ եղած զօրաց ցուցակին մէջ, որ (գունդը) Հռոմէացւոց բանակաց մէջ շատ ծանրաբեռն ու եպերելի կը համարուի)։ Բայց այն քնէած կրօնաւորներն՝ որ Ամդայ մէկ աշտարակին ա՛յնպէս գէշ պահել կրցան (Պրոկոպ․, Պ․ Պ․, Ա, 7, 22), կ'երեւայ թէ այս միջակ ծառայութիւնը մատուցած էին ամենայն բարեսէր յօժարակամութեամբ։

դունն աւելի իւր հեթանոսական զգացումներէն կը բղխէր քան վայրկենի պիտոյքէն: Բայց աւելի նորանշան կ՚ըլլայ, ինչպէս որ ենթադրուած է, եթէ նաեւ Հերակղ, որ Քրիստոսի համար կը պատերազմէր, միեւնոյն միջոցն ընդունած ըլլայ:

## § 8. Զինման կերպարանափոխութիւնք Պարսկական պատերազմաց ժամանակ:

Եթէ այժմ խնդրէն դուրս թողլով զօրաքանակներու ազգութիւնը, ջանանք որոշել թէ ի՛նչ բան ամէնէն աւելի յատկանշական է այն սպառազինման մէջ, որ կը տրուէր Արեւելքի բոլոր զօրագնդերուն, պիտի զարմանանք տեսնելով որ ամէնէն աւելի փոյթ տարուած է պաշտպանողական մասին: Անշուշտ զրահավառ սպառազինութիւնը գործածական էր հռոմէական բանակին առաջին ժամանակէն ալ ի վեր. զոնէ այս մասին Պողիբիոսի տուած ցուցմունքը շատ հաստատական են[326]: Բայց ի սկզբան՝ պատերազմիկներու մեծագոյն մասին համար՝ զրահը — ինչպէս կը ցուցընէ եւրոպ. cuirasse բառը (ծագած cuir «կաշի» բառէն, լտ. corium). — միայն կաշեփոկներու կամ կաշեայ շերտերու գումարումը կամ զօդուածն էր, եւ միայն սրտին կողմը կը զօրացուէր երկաթի տախ-

326 Տես այս մասին Մարքուարդի տուած համառօտ բովանդակութիւնը՝ Marquardt, Organis. milit. (գղ. Թրգմ.), p. 25 ff., 39 ff.:

տակով մը։ Առաջին դասի քաղաքացիները կ'ընդունէին տեսակ մը վառարան (վերա-զրահ) որուն վերտերը կամ օղակները կը ծածկուէին մետաղեայ վահանակներով։ Հետզհետէ այս սպառազինութիւնը վերապահուեցաւ սպայից[327]։

Դարաւոր կռիւներն Իրանեան ազգերուն դէմ, որոնք իրենց ամէն ընտիր զօրագնդերուն կու տային զրահն ու սաղաւարտը, պատճառ եղան որ Հռոմայեցւոց ճապուկ ու գործնական հանճարն առնու եւ ընդգրկէ միեւնոյն սպառազինութիւնները։ Չենք գիտեր թէ այս կերպարանափոխութիւնն ե՛րբ աւարտած է[328]. բայց արդէն շատոնց գլուխ ելած էր Զ. դարուն, որուն համար յիշատակարանաց աւելի հարուստ բով մ'ունինք։ Այս ժամանակ նոյն իսկ հետեւակը «զրահավոր» սպառազէն էր, կրելով մետաղեայ զրահ ու սռնապաններ. բայց սատի զրահը կը պակսէ թանձր վառարան մ'ալ։ Ասոր վրայ

---

[327] Վեգետիոս կը վկայէ թէ իր ժամանակ, եւ այն՝ քիչ ժամանակէ ի վեր, հետեւակք մերկ էին (pedites constat esse nudos, անդ, Ա., 20)։ Հռոմի հիմնարկութենէն սկսեալ մինչեւ Գրատիանոս՝ հետեւակազօրը միշտ սաղաւարտաւոր էր եւ զրահաւոր. բայց անհոգութիւնն ու ծուլութիւնը հետզհետէ զինուորական մարզանքները նուազեցուցած ըլլալով՝ զինուորներն սկսան շատ ծանր գտնել այն զէնքերը՝ զորոնք միայն ցանցառ կը կրէին եւ թոյլտուութիւն խնդրեցին լքանելու նախ զրահը՝ յետոյ սաղաւարտը։ — Այս ողբիս մէջ անշուշտ չափազանցութիւն կայ։

[328] Առիանոս Մարտագիտականաց երկրորդ մասին համեմատ՝ Պարթեւաց եւ Հայոց սպառազինման այս նմանողութիւնը կ'ելլէ մինչեւ Ադրիանոսի ժամանակը։

կը յաւելու սաղաւարտ մը՝ նոյնպէս մետաղեայ, եւ հսկայ վահան մը[329]: Պրոկոպիոսի ժամանակ ալ հռոմէացի հեծեալները՝ յունական բանակներու այրուձիոյն նման՝ պղնձեայ զրահ մ'ունէին, եւ պէտք ենք կարծել թէ անոնց ձիերն ալ՝ յունականաց նման՝ երկաթի այլեւայլ փառեր կը կրէին՝ որոնք կը պաշտպանէին գլուխը, լանջքն ու կշտերը: Բայց այս հեծելախմբերը շատ աննշան էին իւրաքանչիւր լեգէոնի մէջ, եւ Սատարաց թեւք կը բաղկանային այն հպատակներէն ու օտարներէն՝ որոնք իրենց ազգային շատ աւելի պարզեալ զինավառութիւնը կը պահէին: Լէգէոնին մանրաբաժանումէն, ինչպէս վերն ըսինք, յառաջ եկան գումարտակներ, որոնք անջատ Գումարներ (numeri) եղան: Արդ երբ այն ժամանակներն՝ երբ այս բնաշրջութիւնը կատարուեցաւ, երեւան կու գան՝ նոր կազմակերպութիւններ, որոնք՝ ուրիշ յորջորջանաց հետ՝ կը կրեն նաեւ անուններս՝ զրահավառք կամ կուռ սպառազէնք (catafracti կամ catafractarii) եւ պատենազէնք (clibanarii)[330]:

---

[329] Diehl, Justinien, p. 116 ff. — Քանի որ պատկերաւոր յիշատակարանները կը պակսին, մեր տեղեկութիւնները կը քաղենք մատենագէտներէն, եւ յատկապէս Մաւրիկ կայսեր անուն կրող Ռազմագիտականէն, որ Արեւելքի պատերազմներուն ժամանակից եղող անձի մը երկասիրութիւնն է:

[330] Տես Fiebiger, Clibanarii, ի Հանրագ. Պաուլի-Վ.: — Արդէն Ադրիանոսի առեն գոյութիւն ունէր՝ թեւ զրահավոր Գաղղիացւոց եւ Պաննոնիացւոց (ala catafractata. տես CIL, XI, 5632). բայց

Հոս պարսկական ազդեցութիւնը միայն ենթադրական չէ, այլ նաեւ լիովին հաստատուած։ Աղեքսանդր Սեւերոս ճառի մը մէջ, զոր անոր բերանը կը դնէ Լամպրիդիոս[331], այսպէս կ'ըսէ. Զրահավոր ասպազէնք՝ զորոնք անոնք (Պարսիկները) պատենաւազէնք կը կոչեն. (catafractarios, quos illi clibanarios vocant)[332]։ Այս ինքնակալը ստեղծած է պատենաւազէններ (clibanario) պարսկական նախատիպին համեմատ, անոնց տալով այն պատենազրահները (clibani) զորոնք սպաննուած թշնամիներէն քաղած էին, եւ այս նպատակաւ օտարականներ առած է Հռոմի ծառայութեան մէջ[333]։ Անշուշտ Աւգոստո–

---

ռաւ ներկայացնել գունդ մըն էր, եւ դարձեալ Տրայիանոս պարթեւական մեծ պատերազմէն վերջն ալ ստեղծուած է։ — Հմմտ. Նազար., Ներբողեան առաջի Կոստանդ. Աւգ. ասացեալ Nazar., Panegyr. Constantino Aug. dictus, 22, հրտ. Baehrens, p. 230), ուր կ'ըսուի. Երկաթի ծածկոյթով ձիերն ու մարդիկ հաւասարապէս պատուած են (Operimento ferri, equi atque homines pariter obsaepti)։ Ասոնք Պատենազէնք կը կոչուին բանակին մէջ (Clibanaris in exercitu nomen est)։ Վերուստ ծածկուած են մարդիկը, որոնց լանջապանը բացուած բերաններով զրահ մըն է եւ սռնապանն ալ կապերով կախուած արգելք չի ըլլար քալելուն, կը պաշտպանէին վիրաց վտանգներէն (Superne hominibus tectis, quorum pectora oribus demissa lorica, et crurum tenus pendens sine impedimento gressus a noxa vulneris vindicabat).

331 Վարք Սեւեր. Աղեքս. 56, 5։

332 Յաւել՝ Մարկեղ. Ամմ. ԺԶ, 10, 8։

333 Հերոդիանոս, Զ, 7, 8։ Հմմտ. վերը յիշուած՝ Թեւ նոր ամուր հազարաւոր զրահավոր (ala nova firma miliaria catafractaria) որ Փիլիպպոսեանց ատեն Արաբիա կը բանակէր (CIL, III, 99)։

սանց Պատմութիւնը միայն մեծ նախազգու-շութեամբք կրնանք գործածել. բայց այս վկայութիւնը կը հաստատուի անուղղակի բազմաթիւ ուրիշ վկայութիւններով[334]. «Տե-ղեկ. Աստիճ.» գրոց մէջ առաջնոյն մա-գիստրոսնոս բանակի (magister militum praesentalis) Արեւելից իր Պաղատական դրօշա-ւորութեանց (vexillationes palatinae) մէջ կը հաշուէ նաեւ «Հեծեալք Պարսից պատենա-զգէնք» (Equites Persae clibanarii)[335] եւ Կո-միտական դրօշաւորութեանց (vexillationes comitatenses) մէջ՝ «Հեծեալք (առաջինք եւ երկրորդք) պատէնազգէնք Պարթեւաց (Equites, primi et secundi, clibanarii Parthi)[336]: Դարձեալ Արեւելից կողմանց մագիստրո-նոսի տրամադրութեան ներքեւ (sub dispositione magistri militum per Orientem) կը գտնուին՝ Հեծեալք չորրորդք պատենազգէնք Պարթեւք (equites quarti clibanarii Parthi)[337]:

---

334 Միայն Վեգետիոս (անդ) կ'ըսէ թէ Գոթաց, Ալանաց եւ Հոնաց օրինակին համեմատ կազմուեցան հեծելոց զէնքերը (nam, licet exemplo Gothorum, Alanorum, Hunnorumque, equitam arma profecerint). որ ա՛յսպէս կարծել կու տայ թէ իր այս յիշած ազգաց ազդեցութիւնը շատ աւելի մեծ եղած ըլլայ. Վեգետիոս Պարսից ազդեցութիւնն ուշադրու-թեան չէ առած, որովհետեւ սա՛ այն նկատմամբ ար-դէն իր ժամանակ իր արդիւնքը լիակատարօրէն ա-ւարտած էր:

335 Not., Or. VI, 32:

336 Not., Or. V, 40. VI, 40:

337 Not., Or. VII, 32. Չեն յիշատակուիր Եր-րորդք (tertii) այս գնդերուս. կա՛մ ջնջուած էին եւ կա՛մ փոխուած ուրիշ յորջորջմանք կրող գնդի մը, թէ՛ անոնք «Հեծեալք յառաջացեալք պատենազգէնք» (Equi-

Ուստի, կ'եզրակացնէ Ֆիբիգէր, պատենազէնք (clibanarii) են այն զրահաւորք՝ որոնք արտասահմանէ կը զինուորագրուէին, մինչդեռ զրահաւորք կամ կուռ սպառազէնք (catafracti ) կը կոչուէին այն զինուորականները՝ որ հռոմէական ծագում ունէին[338]։ Ասիկա անկարելի բան մը չէ․ բայց աւելի՛ բան մ'ըսելու չենք համարձակիր։ Միայն նշանակինք թէ այս զօրագնդերը, որոնք իրենց պաշտօնական անուամբն իսկ երբ զրահապատներ կը մատնանշուին, շատ աւելի բազմաթիւ են տակաւին «Տեղեկ․» գրոց մէջ, եւ կը ներկայանան ընտրելագոյն զօրագնդերուն մէջ, թէպէտ եւ անուանացանկերուս մէջ առաջին դասը ասոնց վերապահուած չէ․ աւանդութիւնն ասոնց չի տար առաջնութիւն մը Դալմատացւոց (Dalmatae) եւ Մաւրիտանացւոց (Mauri) վրայ։ Սակայն շուտով սկսան աւելի կարեւորութիւն ստանալ եւ բազմանալ[339]։

---

tes promoti clibanarii, անդ, VII, 31), եւ թէ՛ ըլլայ՝ «Ցուպամ հեծելոց երկրորդաց պատէնազինաց Պաղմիւրացւոց (cuneus equitum secundorum clibanariorum Palmirenorum, անդ, VII, 32), Զենոբիայի պարտութենէն ետքը՝ շատ բնական է որ գերի բռնուած Պաղմիւրացիք Պարթեւական ոճով զինուէին։

[338] Միեւնոյն յիշատակարանը Արեւելքի բանակին մէջ կը նշանակէ միայն հետեւեալը՝ «Կոմէսք զրահաւորք (սպառազէնք) քուշակաւորք կրտսերագոյնք» (comites catafractarii bucellarii Juniores, անդ, VII, 25), որ կը քալէր Արեւելից կողմանց բանակի մագիստրիանոսին հետ։

[339] Նախ Կոստաս կազմակերպեց զասոնք․ երբ Հռոմ մտաւ 356ին՝ ասոնք մեծ տպաւորութիւն յառաջ բերին (Ամ․ Մարկել․ ԺԶ, 11, 22․ clibanarius noster)։

Ինչպէս մարտագէտները կ'ուսուցանեն[340] Զ. դարուն ամբողջ ռազմիկ հեծելազօրը՝ ճակատի այրն ու ձին բոլորովին երկաթապատ են։ Ձիոյն առաջակողմը զրահապատ էր եւ գլխուն վրայ կը կրէր ճակտոց մը. Հեծելոյն ալ սպառսպուռ սպառազինութեան վրայ կ'աւելնար մեծ վահան մը եւ սաղաւարտ մը ցցունքներով կամ զարդմանակով։ Այլեւայլ արշաւանաց առթիւ Պարսկաստանի մէջ տեսնուած մարտիկները շատ աւելի քիչ կը նմանէին հռոմէական զօրաց՝ որոնք քիչ առաջ անկէ անցած էին՝ տակաւին նոյն իսկ Անտոնինեանց ատեն, որչափ միջինդարու մեր արեւմտեան ասպետներուն՝ փրանկ խաչակրաց։ Եւ հոս չեմ խօսիր միայն կայսերական կանոնաւոր զօրաց մասին։ Բիւզանդեան զօրագնդերն որչափ ալ խայտաբղէտ ըլլային, եւ որչափ ազատութիւն ալ ունենային դաշնակիցք կամ վարձկանապետք իրենց մարդիկը զինելու ատեն, դժուարին է հաւատալ թէ ի վերջոյ կազմածոյ ու սարուածոյ ընդհանուր տիպար մը տիրապետած չըլլայ ամէնուն վրայ, մանրամասնութեանց մէջ տարբերութիւններն ալ մնալով։ Ուրիշ կողմանէ ալ Երանեան սովորութեանց ընդունուիլը կը յայտնուի նաեւ յայնմ, որ ամէնէն աւելի ծանրակշռութիւն կը դրուի հեծեալ զօրագնդերու վրայ, որոնք

---

340 Հմմտ. Մաւրիկ, Ռազմագ., Ա, 2, էջ 20 (հրտ. Scheffer)։

գլխաւոր իրական զօրաքանակները կը կազմեն։ Ասոնք բնականապէս աւելի մեծ թափ մ'ունին յարձակման ատեն եւ հարուածոց դէմ ալ նուազ խոչընդոտն արգելք չեն ընծայեր։

Բայց կար նաեւ թեթեւազէն հետեւակազօր մը եւ հեծելազօր մը, որոնք անտարակոյս աւելի պարզ եւ աւելի պէսպէս ոճով զգեցած ու զինուած էին։ Անոնք եթէ ոչ երկրորդական, գոնէ չափաւոր դեր մ'ունէին. յեղակարծ յարձակումներ կ'ընեն այնպիսի կէտերու վրայ՝ որոնք լաւ պաշտպանուած չեն[341], եւ կը հոգան տեղեկութեանց ծառայութիւնը, որ շատ օգտակար է այլեւայլ երկիրներու, օրինակի համար Հայաստանի մէջ, ուր երբեմն շատ դժուար է ուղղութիւնը գտնել։ Յատկապէս Ամմիանոսի քով անընդհատ կը յիշուին դէտք կամ աշխարհադէտք (speculatores)[342] եւ քննիչք կամ հետախոյզք (exploratores)[343], բայց չենք կրնար յստակօրէն տեսնել թէ ասոնք լրտեսներու փոքրիկ պահախումբ մըն էին, որոնք կ'ընտրուէին եւ վարձկանաբար կը խմբուէին, եթէ պահայող ճշմարիտ զօրագունդ մը՝ որ երբեք ուրիշ պաշտօններ չունէր։ Միայն քանի մը

341 «Լուկիլիանոս հրաման տուաւ 1000 թեթեւազէններով (velites) յարձակիլ Անաթայի վրայ» (Ամ. Մարկեղ. ԻԴ, 1, 6)։

342 Ամ. Մարկեղ. ԺԸ, 6, 8. ԻԱ, 13, 4:

343 Ամ. Մարկեղ. ԻԱ, 7, 7: Յուլիանոս, ալ աշխարհատէր լրտեսներու մասին կը խօսի իր նամակներէն մէկուն մէջ (թղթ. 27)։

տկարութիւն դէպքերու մէջ պէտք է առաջին ենթադրութիւնը տարամերժել[344]։ Բայց այլուստ մեր բնագիրները չեն ներեր այս տարբեր վերադիր յորջորջանացս խստօրէն անջատ ու զատ իմաստներ տալ, եւ թերեւս Ամմիանոս ալ զանոնք շրջաբանութեամբ իբր խօսքի դարձուած գործածած է։ Մենք պիտի վերադառնանք յառաջապահաց դիտազօրու խնդրոյն՝ ռազմագիտութեան վրայ խօսելու ժամանակ։

Երկրորդ կէտ մըն է այն որ պարթեւ-պարսկական պատերազմաց անհրաժեշտ պէտոյքն առիթ եղած են աղեղի գրեթէ ընդհանրական գործածութեան։ Զրահաւորք տէգ ունին եւ նիզակ, սուսեր եւ երբեմն սակուր. բայց կը վախնան ի մերձուստ ձեռն ի ձեռն կռուելէ. ապէ կը խոյսին եւ կը նախընտրեն հեռուէն կռուիլ՝ բաց ի յառաջապահից թերամարտերէն։ Անոր համար այս ամէն մարդիկ աղեղնաւոր են։ Բայց այս կէտին մէջ ա՛յլ եւս չեն հետեւիր հռոմէական աւանդութեան։ Լեգէոնականներն երբեք կապարճք կրած չեն, եւ զայն՝ իբր եւ ո՛չ այնչափ պատուաբեր զէնք մը՝ կը թողուին դաշնակցաց եւ օտարազգի վարձկանաց[345], ա—

---

[344] Ամ. Մարկել. ԻԴ, 1, 2՝ Հեղինակը կը խօսի 1500 առաջապահաց (կամ լրտես-սուրհանդակաց excursatores) մասին. ԻԴ, 5, 5՝ «Երբեք վաշտք մեր Գուշակներէն»։

[345] Հռոմէացիք ալ զարտուղութեամբ նետ կը գործածէին այն հակառակորդաց դէմ, որոնց գլխաւոր զէնքն աղեղն էր. այսպէս՝ հրէական պատերազ-

առանձնապէս՝ Ասորւոց եւ Պոնտոսի բնիկներուն։ Աղեղնաւորք (sagittariae) կոչուած Վաշտերուն մէջ կը նշմարենք այնպիսիներ՝ զորոնք նախնաբար զօրահանութեամբ կազմած են Ասկաղոնացիք, Քաղկիսացիք, Պետրացիք, Իտուրիացիք եւ Նումիդացիք[346]։ Իսկ թեւոց (alae) մէջ աղեղնաւորներ չկան. առոր հակառակ այն Վաշտերը հեծեալ են (equitatae)։ Արդեամբք ալ աղեղը գերազանց զէնքն է արեւելեան ձիաւորի մը[347]։

---

մին մէջ, Երուսաղէմի պաշարման առեն (Սուետոնիոս, Տիտ. 5)։ Բիւզանդեանց ժամանակ ալ մեծարգոյ զէնք մ'եղաւ. Մաւրիկի Ռազմագիտականին մէջ (Ա, 2, էջ 20) կ'ըսուի՝ «Այն երիտասարդներն որ տակաւին աղեղ ձգել չեն գիտեր, ընդունելու են երկու նիզակ եւ վահան մը»։

[346] Այս «Նումիդիացիք» թերեւս միայն Աֆրիկոյ վաչկատունքն (Νομάδες) կամ Վրանաբնակքն են։ Կրնայ նաեւ ըլլալ որ այլեւայլ Վաշտեր ընդունած ըլլան աղեղնաւորներու խումբ մը. արձ. Կարնունդումի՝ Վեսպասիանու օրէն՝ (CIL, III, 13483 a) ունի՝ Proculus, Rabili f., Col., Philadel(phia), mil. optio coh. II Italic. c. R., (centuria) F(aus)tini, ex vexil(laris ?) sagit(tariis) exer(citus) Syriaci stip. VII (ըստ Bormannի). (Փրոկուղոս, որդի Ռաբիլեայ, Կող. (Գղթ.) Փիլադելփիա, յիսնապետ Վաշտին Բ Իտալականին, քաղաքացի Հռոմայեցւոց, (հարիւրաւոր) Փաւստինեայ, ի նշանակիրա՞ց աղեղնաւորաց բանակին Ասորւոց, յամի ծառայութեան, է). փոխանակ vexillariis... (նշանակիր, հնագոյն վաստակաւոր զինուոր)՝ կրնայ ըլլալ ex vexil(lationibus) sagit(tariorum) «ի դրօշակաւորութեանց աղեղնաւորաց»։ Որովհետեւ vexillariis «ի նշանակրաց» ունելի կը գործածուէր հնօրեայ զինուորաց համար, իսկ աստ ծառայութեան միայն 7 տարի ունի։

[347] Աբգար Ուռհայի արքային՝ երբ անձամբ Տրայիանու առջեւն եկաւ, իւր հպատակութեան մեծարանքն յայտնելու, ընծայ բերաւ 250 ձի եւ 60·000 նետ. (Դիոն. Կաս. ԿԸ, 21)։

Սակայն այս կողմանէ կրած վնասներով Հռոմայեցիք ստիպուեցան տակաւ տակաւ փոխել իրենց այս նկատմամբ ունեցած գաղափարները: «Տեղեկ.» գրոց մէջ հեծեալ աղեղնաւորներն այլընտիր զօրագնդերուն մէջ կ՚երեւան[348], բայց նաեւ ընդհանրապէս ցանկին վերջը. որովհետեւ Հռոմայեցւոց քով նախապաշարումները դիւրաւ կ՚աներեւութանային կամ կը տկարանային գործնականին մէջ, բայց անոնք տարապայմանօրէն յամառ են ձեւին մէջ եւ տեւական կը մնան լեզուին մէջ: Պրոկոպիոս այս մասին նոր վկայութիւն մը կու տայ. «Ոմանք, կ՚ըսէ, կատակաբանութեամբ մեր զինուորները նետաձիգ (τοξότας) կ՚անուանեն, եւ նախկին զինուորաց համար կը վերապահեն (աւելի փառաւոր) անուններն՝ վահանաւոր եւ հետի կռուող զինուոր[349]: Կը քննադատէ այս նեղ հայեցակէտը եւ կը շարունակէ իր նկարա-

---

[348] «Կոմէսք աղեղնաւորք Հայոց» (Comites sagittarii Armeni) Առաջնին (praesentalis) մագիստրիանոսի Պաղատական Դրօշաւորութեանց մէջ (Not., Or. VI, 31). «Հեծեալք առաջինք աղեղնաւորաց» (equites primi sagittarii). Կոմէտակեանց (comitatenses) մէջ Արեւելից կողմանց մագիստրիանոսի (mag. mil. per Orientem, անդ, VII, 33): Իւրաքանչիւր դքսի (dux) ներքեւ կը գտնուին բազմաթիւ գնդեր «Հեծեալք աղեղնաւորք բնիկք» (Equites sagittarii indigenae). այսպէս՝ Փիւնիկիոյ (անդ, XXXII, 24—26, 29). Ասորւոց (անդ, XXXIII, 18, 20—22). Պաղեստինի (XXXIV, 25—27, 29). Ոսրհայաստանի (XXXV, 20—22). Միջագետաց (XXXVI, 25—28). Արաբիոյ (XXXVII, 20, 23) եւ Հայաստանի (XXXVIII, 11—12):

[349] Պրոկոպ., ՊՊ. Ա, 1, 8:

դրութիւնը. «Մեր նետաձիգները պատերազմի կ'երթան միայն զրահներով ու բարձապաններով պատուած: Կը կրեն նետեր՝ աջ կողմը կախուած, եւ սուսերը՝ ձախ: Ոմանք թիկանց վրայ արդնուկ մ'ունին, եւ վահան մը՝ անթին տակ, որով կը ծածկեն իրենց մարմինը: Սքանչելի նետաձիգներ են, կ'արձակեն նետը վազած ժամանակ եւ կը հանդիպցնեն հակառակորդին, եթէ՝ հալածեն եւ եթէ հալածուին: Աղեղը կը բարձրացնեն մինչեւ ճակատ, կը պրկեն լարը մինչեւ աջ ականջին մօտ, եւ այնպէս բռնալիր ուժգնութեամբ կ'արձակեն սլաքը՝ որ ո՛չ վահան եւ ո՛չ զրահ արգելք մը կ'ըլլայ թափ անցնելու[350]:

Բիւզանդացիք, որ նետաձգութեան մէջ Պարսից աշակերտն էին, կրցա՞ծ են արդեօք իրենց վարպետները գերազանցել: Գոնէ վկայութեան մը համեմատ, որ սակայն անմերժելի չէ միշտ, պարսիկ աղեղնաւորները շատ աւելի նուազ արժէք ունենալու էին:

---

[350] Ասի գոնէ բիւզանդական գաղափարական աղեղնաձիգն է: Նոյն իսկ Պրոկոպիոսի ծանօթ էին ո՛չ այնչափ քաջակորովները: Բելիսար՝ Իտալիայէն դառնալէն ետքն՝ իր բոլոր զօրքը հաւաքեց Միջագետաց մէջ, «վասնզի կազմեց զինուորներն՝ որ գրեթէ ամէն զէնքէ ու հանդերձներէ զուրկ էին, եւ որոնք կը դողային միայն իսկ Պարսից անունը լսելով» (Պ. Բ, 16, 2): Բայց ահա պարագայ մըն ալ՝ որ կ'աւանդուի եւ կը ցուցընէ այս մարտիկներէն շատերուն յաջողակութիւնը. Եարմուկի ճակատամարտին մէջ մահմետականաց ստուար բազմութիւն մը խոցուեցան աչքէն զարնուելով (տես Pernice, անդ, p. 274):

«Շատ աւելի փքին կ՚արձակեն, կ՚ըսէ, միայն փոխն ի փոխ կարգաւ կռուելով. եւ քաշուողներու տեղը կը բռնեն ուրիշներ՝ այնպէս մը որ չի նշմարուիր»[351]: Պրոկոպիոս նոյնը կը կրկնէ այլուր ալ[352]. «Պարսիկները աղեղնաձիգ կ՚ըլլան շատ աւելի յաճախ, բայց նետերը այնչափ խորունկ չեն թափանցեր; կը բթանան կամ կ՚ոստնուն հռոմայեցի զինուորի մը սաղաւարտին, զրահին կամ վահանին հանդիպելով. որովհետեւ կ՚արձակեն շատ կակուղ (թոյլ) աղեղներով եւ անբաւական պրկմամբ. Հռոմայեցւոց նետաձգութիւնքն աւելի ցանցառ են, բայց աւելի աղէկ կը նետուին, որովհետեւ աղեղներն աւելի պինդ են ու աւելի պիրկ»: Դէլբրիւկ այս կարծիքը կը մերժէ իբրեւ մտացածին[353]: Անկարելի է որ Պարսիկներն այս արուեստին մէջ Հռոմայեցիներէն քիչ յառաջադիմած ըլլան[354]. բաց ասատի վերը յիշուած խորաքանդակներուն մէջ Խոսրով որսի

---

351 Պրոկոպ., անդ, Ա, 14, 35:

352 Պրոկոպ., ՊՊ. Ա, 18, 46: Ամմիանոս (ԽԳ, 6, 37) բոլորովին ուրիշ տեսակ տեղեկութիւններ կու տայ. «Խաղաղաց երկրին մէջ, կ՚ըսէ, կ՚ըլլայ Մարաց նաւթը. անով կը մարձին նետերը. եւ եթէ այս փքինները դանդաղօրէն արձակուին՝ ուր որ կը հանդիպին կը բորբոքեն կրակ մը, զոր միայն աւազը կրնայ մարել»:

353 Delbrück, անդ, II, 2, p. 364:

354 Դիոն Կաս. Խ, 22. բացայայտ կ՚ըսէ թէ Պարթեւաց սլաքները թափանցանց կ՚անցնէին վահաններէն ու զգեստներէն. բայց այս տեղեկութիւնը կը պրուի Կրասոսի առթիւ, որուն մարդկան մեծագոյն մասը պատսպարուած չէր՝ բայց եթէ կաշեայ վարապանակներով:

տանն կը ներկայացուի այնպէս որ աղեղան լարը պրկած է մինչեւ ականջին ետեւը, ինչպէս որ Բիւզանդացւոց համար կ'ըսուի: — Իմ կարծիքովս Կեսարացի պատմագրիս տուած այս վկայութեան ամենալաւ քննադատութիւնը կ'ըլլայ նոյն իսկ այն ժամանակի բանակներու համեմատութիւնը: Քիչ շատ ամէն տեսակէն կայ բիւզանդական բանակներուն, ինչպէս նաեւ Պարսից բանակաց մէջ: Ձինուորագրուած բարբարոսները փոյթ չէին ըներ ուսումնասիրելու գիտնական ճառերն՝ ինչպիսի է «Վասն Նետաձգութեան» (περὶ τόξείας)[855] անոնք իրենց աւանդական գործնական վարժութիւնն ունէին, որոնցմէ փոխն ի փոխ կարգաւ կ'օգտուէին զօրավարներն՝ որ անոնց ապաւինած էին:

Ձիարդ եւ իջէ՝ շատ բանաւոր չէր ըլլալ՝ երկրայողականութիւնը շատ յառաջ տանիլ. անվիճելի է որ Պարթեւաց՝ եւ յետոյ Պարսից՝ օրինակը ստիպած է անոնց Արեւմտքի ախոյեանները վարժուելու աղեղնաձգութեան մէջ առանձին ժրաջան յարատեւութեամբ մը, ինչպէս որ պատճառ եղած է զրահապատ մարտիկներու գործածութեան ընդհանրանալուն:

---

855 Koechly-Rüstow, Griech. Kriegsschriftsteller, II, 2, p. 198—209: Հմմտ. նաեւ Մաւրիկի Ռազմագիտականին մէջ (Ա, 1, էջ 18—19). աղեղ գործածելու մասին տուած խորհուրդները «հռոմէական կամ պարսիկ ոճով», եւ աղեղնաւորաց կրթութեան մասին՝ որոնք պէտք է որ վարժուին փոխն ի փոխ գործածելու նետ ու նիզակ:

## ԳԼՈՒԽ Բ.

### Նաւային զօրութիւնը:

*Իմ ընդգրկած տեսակէտովս շատ երկրոր-դական օգուտ մը միայն կ'ընծայէ Նաւա-տորմղաց խնդիրը: Ասոնք շատ քիչ ծառա-յութիւն կը մատուցանէին հողային պաշտ-պանութեան համար*[1] *այնպիսի թշնամեաց դէմ, որոնց համար ծովային իրերը թերեւս անծանօթ բան մըն էին: Պարսք ծովեզերաց չափաւոր տարածութիւն մը միայն ունէին,*

*[1] Գիտենք միայն քանի մը միջադէպներ Վեսպա-սիանոս ընդդէմ Հրէից մղած պատերազմէն: Հրէից դիմադրութիւնը միջոց մը կեդրոնացաւ Գեննեսարէթի լճին վրայ, ուր հաւաքած էին ծովահինաց ունեցած-ներուն նման ցռուկանաւեր: Քիչ օրուան մէջ Հռոմայե-ցիք շինեցին մրցակից նաւատորմիղ մը՝ ի Տարիքէ գտած ատաղձներով, եւ առի ոչնչացուց Հրէից տոր-միղը (Յովսեպ. ՊՀ. Գ; 466, 505, 522, եւն): — Յոպպէի Հրէից պետը՝ այս նաւային կայանէն օգտուե-լու համար՝ շինել տուած կամ գնած էր բազմաթիւ փոքրիկ նաւեր, որոնցմով ապստամբաց գունդ մը՝ որ Հռոմայեցւոց աւերած տեղերէն հեռացած էին, կը հա-լածէին թշնամւոյն համբարաբերները: Կը գրաւէին ուտեստներ ու ապրանքներ, իրենց յարձակումները սփռելով Ասորիքի ամբողջ ծովափին վրայ եւ մինչեւ Եգիպտոս: Յոպպէի դէմ արձակուեցան հռոմէացի գնդեր. ազգաբնակութիւնը փախաւ ապաստանեցաւ նաւերու վրայ, բայց փոթորիկ մ'եկաւ եւ զանոնք նե-տեց ջախջախեց ծովեզերքի խարակներուն վրայ (ՊՀ. Գ, 414—427):*

եւ այն՝ առանց հաղորդակցութեան Միջերկրականի հետ: Սակայն եւ այնպէս արեւելեան պատերազմաց մեծագոյն մասին մէջ Հռոմայեցիք եւ Բիւզանդացիք գործած են նաւերը:

Մեր նիւթին համար աննշան է գիտնալը թէ քաղաքային պատերազմաց ատեն ինչ մաս ունեցած են Ասորական ծովափանց մօտ կատարուած ծովային գործողութիւնները. որովհետեւ յետսակողման երկիրն ալ Հռոմայեցւոց ձեռքն էր. եւ Փիւնիկէի հին նաւահանգիստները կորսնցուցած էին ընդհանրապէս իրենց զինուորական կարեւորութիւնը եւ գրեթէ ոչնչութեան հասած, Միջերկրականի վրայ եղած միակ տիրապետութեան պատճառաւ: Այն վայրկենէն որ մեծամեծ անձնաւորութիւնք մաքառիլ սկսան Աւգոստոսի մը տիտղոսը չահելու համար, նաւային զօրութիւնը սկսաւ իւր կարեւորագոյն դերը վերստանալ: Փիւնիկեցիք 300 տրիէր (եռաթի ցռկանաւ) խաւրեցին Լիկինոսի, երբ գահակալութեան մրցակից ելած էր Կոստանդիանոսի դէմ[2]:

Արտաքին պատերազմաց ժամանակ Միջերկրականի եւ Եւքսինոսի (Սեւ ծովու) նաւերը օժանդակ կ'ըլլային ո՛չ թէ ռազմագիտութեան՝ այլ հոգաբարձութեան ծառայութեանց համար, որովհետեւ ծովային զօրութիւն մը միշտ գոյութիւն ունէր եւ որչափ

[2] Զոսիմ. Բ, 22:

ալ ծածուկ մնար՝ անով աւելի արհամարհելի չէր ըլլար. ծովահէններն երբեք բոլորովին անհետացած չեն[3]: Անոնց դէմ էր որ անդուլ անդադար կը գործէր Ասորական տորմիղը (classis Syriaca). որ կը յածէր Կիլիկիոյ եւ Եգիպտոսի մէջ[4] եւ թերեւս ճիւղ մ'ունէր ի Կեսարիա Մաւրիտանացւոց: Հաւանական է որ տորմղիս կազմութիւնը Կայսրութեան սկզբնաւորութեան ժամանակէն է[5]. Նաւաստիները կը հաւաքուէին մասամբ Եգիպտոսէ, եւ Ադրիանոսի օրով Հրէից պատերազմին ատեն՝ պարտաւորուած էր Պաղեստինեան ծովափանց շրջափակ պաշարումն իրագործել[6]: Անտարակոյս տորմղիս համար էր որ Լիբանանի մէջ ծառերու այլեւայլ տեսակներ կը պահուէին[7]: Իւր հանգրուաննաւահանգիստներն աստիճանաբար շարուած էին հիւսիսէն հարաւ, որոնց գլխաւորը՝ գոնէ լաւագոյն խնամուածն՝ էր Սելեւկիա

---

[3] Վկայութիւն Զոսիմոսի՝ Ե, 20, 1 Արկադիոսի թագաւորութեան ժամանակին համար:

[4] Հմմտ. Paul Perdrizet, ի Rev. archéol. 1898, I, p. 41—49. E. Ferrero, Memorie della R. Accademia di Torino, ser. II, XLIX, 1900, sc. mor. stor. e fil., p. 236—239.

[5] Տակիտոս, Տար. Բ, 81: Interim Piso classem haud procul (այսինքն՝ Կեղենդերիս Կիլիկիոյ) opperientem adpugnare frustra temptavit (= հայ թրգմ. Հիւրմիւզ., էջ 109՝ «Յայնմ վայրի Պիսոն ընդդէմ նաւատորմղին, որ ոչինչ անտի ի բացեայ կայր, փորձ փորձեալ ընդունայնս» եւն):

[6] Berlin, Griech. Urkunden, I, Nr. 113 (տող 2) եւ 265 (տող 4—5). Հմմտ. Մոմսէն՝ ի CIL, III, Suppl., p. 2007—2008.

[7] CIL, VIII, 8934.

Պիերիայի[8], դրացի թէ՛ Անտիոքիոյ՝ որ Ասորիքի մայրաքաղաքն էր, եւ թէ՛ լեռնոտ Կիլիկիոյ՝ որ շատ նպաստաւոր էր ծովահէնաց համար: Այլեւայլ վկայութիւններ կը յայտնեն թէ հոն ներկայ էր նաեւ Մեսենիումի պրետորական նաւատորմղին մէկ բաժինը (vexillatio) այսպիսով Իտալիոյ հետ ուղղակի յարաբերութիւններ հաստատելով[9]:

Այս նաւախմբերը կ'ապահովէին դէպի Ասորիք փոխադրութեանց ապահովութիւնը, յատկապէս Պարթեւական պատերազմաց համար: Երբ պատերազման գործողութիւնք Հայաստան կը փոխադրուէին, այն ատեն զօրավիգներն ու պարէնները կրնային ուրիշ ճամբայ մը բռնել: Անկէ՝ Պոնտական տորմիղը (classis Pontica)[10] որ մնեցաւ իր դերը զահակալական կռիւներուն մէջ[11], բայց նաեւ ան զբաղած էր գլխաւորաբար ծովահէններով[12]: Նպարակրաց պաշտպա-

---

[8] E. Renan, Mission de Phénicie, Paris 1864, p. 258—281.

[9] Տես իմ երկս Séleucie de Piérie, ի Mém. de la Soc. des antiq. de France, p. LXVI (1907).

[10] Յայտնապէս ինքնակալներն ու նուիրակները դասի կը գործածէին Անտիոք երթալու համար: Բայց ոմանք կրնային նախընտրել Աղեքսանդրեակի վրայէն եղած ճամբան, որուն կը նպաստէին տարեւոր հովերը, եւ զոր Կալիգուլա կը յանձնարարէր Ագրիպպայի (Փիլոն, Ընդդէմ..., էջ 969):

[11] Ferrero, անդ., էջ 255—256:

[12] Մուկիանոս 69ին հրամայեց որ տորմիղը Պոնտոսէն Բիւզանդիոն երթայ (classem e Ponto Byzantium adigi iusserat, Տակիտ., Պատմ. Բ, 83): Տորմիղն այն ատեն քառասուն նաւէ կը բաղկանար (Յովսեփ., Պհ. Բ, 367):

նութիւնն անհրաժեշտ կ'ընէր իբրեւ կայանատեղի ընտրել Տրապիզոնը[13]. կ'երեւայ թէ ուրիշ հանգրուան-կայաններ կային՝ Կիւզիկէ[14] եւ Սինոպ[15]: Չեմ կարծեր թէ այս տորմիղն երբեք շատ բազմաթիւ եղած ըլլայ. որովհետեւ Լ. Յուլիոս Վե[...] Գրա–

[13] Տակիտ., Պատմ. Գ, 47. «Եւ ոչ նոյն իսկ բարբարոսներն այնպէս արհամարհելի կերպով կը յածին, իրենց արագօրէն շինած փոքրիկ նաւերով, զորոնք կամար կը կոչեն (camarae, յունականէն καμάρα), որոնք նեղ են երկու կողէն ալ, բայց լայն փորով...: Երկու ծայրն ալ ցռուկ ունենալով եւ որովհետեւ թիերը կրնան տեղափոխուիլ, կրնան հաւասարապէս եւ առանց վտանգի մէկ կամ միւս կողմէն մերձենալ: Համեմատելու է Դիոն Կասիոսի բանծը (ՀԴ, 11) Բիւզանդիոնի պաշարման մասին՝ Սեպտիմոս Սեւերիոսի իշխանութեան սկիզբը. Բիւզանդացիք 500 նաւեր շինած էին. ոմանք երկու ծայրն ալ՝ թէ՛ խելաց եւ թէ՛ տառաջքի կողմը՝ ղեկ ունէին, եւ ունէին երկու նաւուղիղներ եւ կրկին դաս նաւազներու, որպէս զի պէտք չըլլայ դառնալու թէ՛ յառաջանալու եւ թէ ետ երթալու համար, եւ որպէս զի կարենան յանկարծակի բերել թշնամին թէ՛ դէպ ի յառաջ եւ թէ՛ դէպ ի ետ արշաւած ատենն: Այս յայտնատեսիլ օրինակ մըն է նմանողութեան այն ոճոյն՝ զոր յաճախ պիտի կարենամ նշանակել:

[14] Հմմտ. Տակիտ., Պատմ. Գ, 47—48. Ferrero Տրապիզոնը Պոնտական տորմիղին գլխաւոր կայանը կ'ընէ: Բայց կրնանք խնդիր ընել թէ այսպէ՞ս էր արդեօք Ա. դարուն: Արրիանու համեմատ այն տեղ Ադրիանոսէ յառաջ միայն պարզ նաւակայք մը կար, ուր նաւերը միայն ամառը կրնային խարիսխ ձգել (ἐνταῦθα σὺ ποιεῖς λιμένα · πάλαι γάρ, ὅσον ἀποσαλεύειν ὥρᾳ ἔτους, ὅρμος ἦν. Հոս նաւահանգիստ շինեց. որովհետեւ յառաջ՝ տարւոյ եղանակին բաց խարսխելու չափ հանգրուան մըն էր. Արիան., Շրջանաւ. Պոնտ. ԺԶ, 5): Տրապիզոնի մասին հմմտ. F. եւ E. Cumont, Studia Pontica, Bruxelles, II, 1906, p. 363 ff.:

[15] Դիոն Կաս. ՀԹ, 7. CIG, 3691:

տոս Յուլիանոսի[16] պատուոյ շարքին մէջ (cursus honorum) իր աստիճանն իբր ծովապետ Պոնտական տորմիղին (praefeucts classis Po[ntic]a[e]՝ «վերակացու Պոնտ. տորմիղին») շատ բարձր տեղ մը չի գրաւեր։

Կայսրութիւնը Հռենոսի վրայ կը պահէր Գերմանական տորմիղ մը (classis Germanica), եւ Դանուբի վրայ երկու տորմիղներ՝ Պաննոնիական եւ Միւսիական (classes: Pannonica եւ Moesica)։ Արեւելքի մէջ Եփրատ այս երկու գետերէս տարբեր դեր մը կը խաղար. որովհետեւ փոխանակ սահմանագլխուն հետ զուգահեռական ընթանալու՝ սովորաբար կը կտրէր զայն եւ իր դանդաղ ընթացքը կը շարունակէր շատ հեռուէն թշնամւոյն մէջէն։ Չեմ խօսիր Տիգրիսի վրայ, ուր իր ընթացքին հռոմէական մասին մէջ որեւէ դիւրութիւն չէր ընծայեր նաւարկութեան։ Որեւէ յիշատակարան մը, որեւէ արձանագրութիւն մը չի վկայեր թէ Եփրատի ջրերուն վրայ մշտակայ տորմիղ մը գտնուած ըլլայ, զոր Մարքուարտ ա՛յնպէս դիւրութեամբ կ'ենթադրէ՝ յենլով այն յաճախ խաբէպատիր նմանութեան վրայ[18]. եւ պատճառն ըլլալու են աշխարհագրական պայմանները՝ զորոնք նշանակեցի։

Սակայն եւ այնպէս հարկաւոր երեւցաւ՝

---

[16] CIL, III, 6980.

[17] G a t t i, ի Bullet. comun. 1888, p. 104.

[18] Marquart, Organ. milit. (գղ. Թրգմ.), p. 239.

դոնէ պահ մը՝ գետային հսկողութեան դրութիւն մը կազմակերպել, որ Արեւմուտքի դրութիւնները կը յիշեցնէ։ Ինչպէս որ հոն կար «վերակացու ափանց Հռենոսի» (praefectus ripae Rheni)[19], նոյնպէս հոս վկայութիւն մը՝ որ ճիշդ է թէ մի միակ է եւ անորոշ ժամանակէ մը[20], կու տայ մեզի «Վերակացուի Եփրատական ափանց» անունը (praefectus ripae Euphratensis)․ բայց այդ այսպիսի պաշտօնները կատարելու համար կը գործէ՞ր արդեօք կանոնաւորապէս նաւաց երթեւե-

---

19 Տակիտ., Պատմ. Դ, 55։

20 «Պատուանդան, լուսագոյն դասերով՝ կարծես առաջին դարու» կ՚ըսէ ընտիր դատաւոր մը՝ O. Hirschfeld (ի CIL, XII, 1337)․ Հնագրութիւնը բացարձակապէս չի հակառակիր այն եզրակացութեանց՝ զոր կրնանք հանել բնագրէն՝ ... C. Sappio C. filio Volt. Flacco ... praef. alae Thracum Herculaniae, praef. ripae fluminis Euphratis. «Կ. Սապպեայ Կ. որդւոյ Վոլտ. Փլակկեայ... վերակաց. թեւոյ Թրակացւոց Հերկուլանեայ, վերակ. ափանց գետոյն Եփրատայ»)։ Այս թեւը կը յիշուի Լոլլիանոսի արձանագրութեան մէջ (CIL, III, 600)․ ուստի Արեւելքի մէջ կայանաւորած էր ամէն ուշ Տրայիանոս առեն, եւ այս իշխանին պարթեւական պատերազմը Ս. դարէն շատ հեռու չէ։ Կարելի է այս վերակացուն ափանց ապրէր ճիշդ այն պատերազմին առեն, որուն հետեւեցաւ՝ թէեւ միայն քիչ ժամանակ տեւելով՝ Միջագետաց միացումը Պետութեան հետ։ Սապպիոս Փլակկոս թողուած ըլլալու է գետին վրայ վերջապահաց պահպանութեան համար՝ Թրակացւոց թեւոյն հետ, թերեւս նաեւ աջակցութեամբ քանի մը նաւերու։ Աւելի հնագոյն ժամանակի մը համար կրնայինք թեթեւ նշանակ մը գտնել Տակիտոսի քով (Տար. ԺԵ. 3)՝ Atque interim (Corbulo) reliquas legiones pro ripa Euphratis locat (Հայ թարգմ. Հուրմիւզ., էջ 480՝ «Իսկ զայլս ի լեգէոնաց բանակեցոյց առ Եփրատաւ»)։

կութիւն մը, եւ ի՞նչ կերպով: Զենք գիտեր այս ամէնը:

Ամէն արշաւանց ընթացքին մէջ միշտ՝ կամ գրեթէ միշտ՝ յիշատակութիւն կ'ըլլայ բազմաթիւ նաւերու, որոնք այլեւայլ նպատակներու կը գործածուէին: Ոմանք կը փոխադրեն բանակին աղխն ու նետողական մեքենայքն, իրենց սարօք, եւ բանակը գետին անդին կ'երթայ[21]. — Եւ այս մասին պիտի խօսինք նպարակրութեանց գլխուն մէջ, — եւ ուրիշներն՝ իրարու կապուած պարաններով կամ շղթաներով, կամրջի տեղ կը ծառայեն, — այս մասին ալ պիտի խօսինք մարտագիտութեան առթիւ: Այս երկու տեսակին վրայ կ'աւելնար երրորդ մ'ալ Յուլիանու արշաւանքին մէջ՝ «(հազար) նաւք բեռնաբարձք» ([mille] onerariae naues), «յիսուն այլ նաւք պատերազմականք» (quinquaginta aliae bellatrices)[22], «եւ

---

[21] Օրինակ՝ Յուլիանոս, Ճառ, Ա, 22 A (հոս խօսքը Տիգրիսի վրայ է): — Կամ նոյն իսկ բանակը նաւ կը մտնէր. այսպէս գործած էր Սեպտիմոս Սեւերոս, որուն այսպէս փոխադրուած զինուորը՝ Հերոդիանոս մթին մէկ վկայութեան համեմատ (Գ, Թ, 9—10)՝ ցամաք հանուեցան Պարթեւաց ափանց վրայ՝ Տիգրոնի մօտ (միտ դնելու է՝ Տիգրիսի ափանց վրայ): — Պարսք Ամիդ քաղաքը կապուտ կողոպուտ ընելէն ետքը իրենց աւարը կը փախցընեն վաղադործ լաստերով, զորոնք կը թողուն Տիգրիսի հոսանքին տանելու (Զաքարիա Հռետոր, էջ 110):

[22] Այս թուին մէջ բնականապէս կար կայսերական ցռկանաւ մը. Տրայիանու ցռկանաւը՝ Արիանու հետեւելով նկարագրած է Սուիդաս (տես ի բառին Ναῦς ):

Նոյնչափ յարկանել կամուրջս կարեւորս» (totidemque ad compaginandos necessariae pontes)[23]: Այս ինծի ծանօթ միակ օրինակն է[24]: Պատերազմիկ նաւաց (naues bellatrices) այս փոքրաթիւ քանակութիւնը խորհել կու տայ թէ անոնք պարզապէս թեթեւ եւ արագընթաց նաւիկներ էին՝ ի հարկաւորութեան բեռնաբարձ նաւերը պաշտպանելու համար, եւ ո՛չ թէ բուն պատերազմական միութիւններ, որոնց հետ գործ չունէին Միջագետաց մէջ, այլ հողատէրներու հետ:

Իսկ այն նաւերու համար՝ որոնք գետերը անցնելու սահմանուած էին, կ'երեւայ թէ ընդունուած էր յատուկ ձեւ մը. եւ այն ատեն խնդիր է թէ արդեօք կամրջաձիգները կը գործածէի՞ն վաճառանաւերը՝ որոնք կ'ակօսէին Եփրատն ու Տիգրիսը: Իրողութիւնս որեւէ կողմանէ երաշխաւորուած չէ[25]: Ապահով է որ առանձնական նաւարկութիւնը այս գետերու գոնէ առաջնոյն վրայ կը գործէր. թէպէտ եւ չենք կրնար նոյն իսկ կռահել թէ ի՛նչ աստիճան յաճախութեամբ[26]:

---

[23] Ամ. Մարկել. ԻԴ, 3, 9:

[24] Հրէական «Յայտնութիւն Եղիայի» գիրքն ալ կը յիշատակէ՝ բայց ոչ այնչափ բացայայտ կերպով՝ թէ Գորդիանու Գ. արշաւանաց մասնակից եղած է տորմիղ մ'ալ. հմմտ. Samuel Krauß, Neue Aufschlüsse über Timesitheus und die Perserkriege (ի Rhein. Mus. N. F. LVIII, 1903, p. 631).

[25] Թերեւս կարելի ըլլայ հետեւցնել Պրոկոպիոսէ՝ ՊՊ. Ա, 18, 50:

[26] Ամմիանոս (ԺԹ, 8, 9) անցաւ Եփրատը նաւով մը՝ որ զրաստները ու մարդիկ միւս ափը փոխադրե-

*Բայց չատ ալ գործօն ըլլալու չէր, աւելի կարճ հեռաւորութեանց վրայ ափնայածութիւն մ'ըլլալով: Կ'երեւայ թէ այս նաւակամուրջներէն մաս մը տեւական էին. ուստի կը խափանէին գետընթացքը: Բաց աստի պիտի տեսնենք թէ լոմերը (նաւակամուրջք) կը շինուէին տեղին վրայ անտառախիտ երկիրներու մէջ՝ պատերազմին նախընթաց ձմեռուան ժամանակ*[27], *կամ հեռուէն կը բերուէին սայլերով*[28]:

*Այսպէս ուրեմն ասոնք բուն պատերազմական նաւեր չէին: Ոչ ալ Պարթեւք՝ եւ յետոյ Պարսք՝ այս գետերուս վրայ որեւէ զինուորական տորմիղ ունէին: Միայն բացառիկ դէպքերու մէջ պատահած էր որ նաւեր գործածուած են որեւէ յարձակման մը համար, եւ զասոնք գործածողներն ալ եղած*

---

լու համար, նոյն գծի վրայ տեւական սովորութեամբ հաստատուած էր (per nauem quam transfretandi causa iumenta et homines in eo tractu diuturna consuetudo locarat): *Թէոդորետոս կը խօսի Եւսեբեայ Սամոսատացւոյ վրայ, զոր Վաղէս վտարած էր իր եպիսկոպոսական աթոռէն, եւ որ գիշերն սկսելուն նաւակ կը մտնէ եւ Զեւգմա կ'երթայ, ուր կը հասցընեն զինքը Թիավարները արեւածագին (Պատմ. Եկեղ. Դ*, 14):

27 *Հմմտ. Սալլուստ, Մնաց. Պատմ. Հրտ.* Maurenbrecher, I, 1891, p. 180, *Հատուր.* 59. *Ղուկուղոսի՝ Հայաստանի պատերազմին համար կային* յատուկ նաւեր՝ որ ձմեռը ծածուկ շինուած էին (naues caudicariae occulte per hiemem fabricatae aderant). *Հռոմայեցի զօրավարը կը տեսնէ այն ատաղձը՝ զոր կրելու էր նաւակներ հաւաքելու եւ լաստեր շինելու համար* (συνάγοντι πορθμεῖα καὶ πηγνυμένῳ σχεδίας, *Պղուտարքոս, Ղուկ*. 24):

28 *Ագաթիաս, Գ*, 9, 2:

էն Պետութեան թէ՛ հպատակները եւ թէ՛ թշնամիները հաւատարապէս։ Կոստանդ Բ. կայսեր օրով Պարսիկները ձեռնարկեցին Մծբինը պաշարելու. Միւգդոնիոս գետն այն ատեն յորդած ըլլալով՝ տարածուած էր քաղաքին բոլոր բոլորտիքը, եւ շրջապատ դաշտն ողողած էր։ Պարիսպներուն մերձենալու համար, ինչպէս կը պատմէ Յուլիանոս կայսրը[29], մերձեցուցին նաւեր՝ որ մեքենաներով զինուած էին եւ նաւակներ՝ որոնք մարտիկները կը տանէին։ Պաշարուողները խորտակեցին զանոնք ամբաքարերով, տեղալով այս նաւերուն վրայ այնպիսի ծանր քարեր՝ որոնք մինչեւ Ատտիկեան եօթ տաղանդ կը կշռէին[30]։ Երկու դար ետքը նման գործողութիւններ տեղի կ՚ունենային Կողքիսի մէջ։ Նիխորական պարսիկ զօրավարը կ՚ուզէր յարձակիլ Փասիսի քաղաքին վրայ[31]։ Գիշերանց իջեցընել տուաւ նաւիկները՝ զորոնք սայլերու վրայ բերած էր, եւ աճապարանօք կամուրջ մը շինել տուաւ՝ որուն վրայէն անցաւ իր բանակը։ Հռոմայեցիք գետն ի վար իջան՝ քաղաքին օգնութեան գալու համար։ Բայց թշնամին կանխած էր՝ գետին ազատ ընթացքը խափանելով ցցերով ու նաւերով։ Ուստի ստիպուեցան թիավարելով գետն ի վեր ելլել եւ շրջան մ՚ընել Փասիս հասնելու

---

29 Յուլիանոս, ճառ Ա, 27 B—C. ճառ Բ, 62 C—D։

30 Շուրջ 200 քիլոկրամ։

31 Ագաթիաս, անդ։

համար։ Քաղաքը շրջապատուած էր լայն փոսով մը, ուր դարձուած էր լճի մը ջուրը։ Յառաջ խաղացուցած էին նաւեւ նաւեր, որոնց կայմերէն կախուած էին մեծ կողովներ՝ տեսակ մը հայեակներ (կայմի թակաղաղներ)՝ որոնք պաշարուածներուն աշտարակներէն կամ ուրիշ կազմածներէն աւելի բարձր էին, եւ որոնց մէջ լեցուած էին աղեղնաւորներ ու պարսաւորներ։ Ուրիշ ցռկանաւեր ալ կը հսկէին գետին վրայ։ Այն ատեն պարսիկ ռահվիրաներ ջանացին լեցնել փոսը՝ բերելով թափելով հող ու քարեր[32]։

Աւելցնենք որ երբ կամուրջ մը կը ձգուէր թշնամւոյն առջեւ, եւ ո՛չ գաղտնի կամ գիշերային, անոր սահմանուած նաւերուն մէջ դիմացի ափին ամէնէն մօտաւորը կը կրէր իրեն մէջ որմածերպեր ունեցող աշտարակներ, աղեղնաւորներ եւ բաբաններ[33]։

Հարկ չկայ այս ցանցառ դիպաց մասին աւելի երկար յամենալու։ Միայն կը յիշեցնենք թէ Հերակղի Սասանեանց դէմ տարած ահեղ պատերազմին մէջ՝ Բիւզանդեանց առաւելութիւնը կը կայանար յատկապէս նշանաւոր տորմիղ մ'ունենալուն մէջ, որ կ'արգելու

---

32 Խոսրով արդէն «Լազիկէ խուզած էր մեծաքանակ ծառեր՝ որոնք յարմար էին նաւեր շինելու, առանց ըսելու թէ ի՛նչ էր անոնց նպատակը. բայց կայծակ մ'այրեց զանոնք» (Պրոկոպ. Բ, 29, 1 եւ 3)։

33 Եւնապիոս՝ Սուիդասայ քով, ի բառին Ζεῦγμα։ — Նոյնպէս Կորբուղոն Եփրատի վրայ խարսխած նաւերու վրայ հաստատեց բաբաններ (քարընկէցներ) եւ բաղեստրներ (Տակիտ., Տար. ԺԵ, 9)։

թշնամին՝ իւր յաջողութիւնն աւելի հեռուներ տարածելու. բայց այն ատեն չէին կռուէր Միջագետաց ռովմայական սահմանագլխին համար. Պարսիկները հասած էին ժամանակ մը մինչեւ Միջերկրականի ծովափունքը[34]:

---

34 Եւ անոնց գլխաւոր փառասիրութիւնն էր նոյնը գրաւել ու պահել: Շահէն պարսիկ զօրավարը փոյթ ունեցաւ Ասորական նաւահանգիստներուն մէջ հաւաքել նաւատորմիղ մը, որ երթալու յածելու էր մինչեւ անգամ Հելլեսպոնտոսի ջուրերուն մէջ, որպէս զի Կ. Պոլսէն մեկնող օժանդակութեան կարաւանները կարենայ խափանել (Pernice, անդ, էջ 67, 77, 141):

## ԳԼՈՒԽ Գ.

### Զօրաց կարգապահութիւնն եւ անոնց յարաբերութիւնը ժողովրդեան հետ:

*Ասորական զօրանիստները կը համարուէին իբրեւ հաճոյալից բնակավայրեր*[1]*: Գերճասէր սովորութիւնները՝ զորոնք Սելեւկեանք նորոգած էին եւ որոնք անոնցմէ ետքն ալ պահուեցան՝ տնտեսական բարգաւաճման մը շնորհիւ, կլիմային անուշութիւնը, այն միջոցները՝ զոր կը գտնէին դիւրաւ հաճոյքն ու անբարոյականութիւնը, պատերազմաց ցանցառութիւնը երկու դարերու ընթացքին մէջ եւ անոնց կարճատեւ տեւողութիւնը, ոստիկանական գործառնութեանց անզօր նկարագիրը՝ որոնց կը կոչուէր գլխաւորաբար բանակը, եւ այն պարագաներ՝ որովք այս երկրիս մէջ կ'ապրէին փառասէր զօրապետներ, որոնք բնականա-*

---

[1] *Սուետոնիոս, Վեսպ.* 6. *Տակիտ., Պատմ., Բ,* 80: *Մուկիանոս զօրքերը գրգռեց Վիտելլիոսի դէմ ըսելով թէ անի կ'ուզէ զիրենք Ասորիքի հարուստ ու խաղաղ զօրանիստներէն փոխադրել Գերմանիոյ խիստ կլիմային եւ իր դժուարին ծառայութեանը: — Տես Սենեկա, Տրամախօսութիւն Գ (վասն բարկութեան),* 11, 4: Syriae molles bello viri (*Ասորիք՝ թոյլ մարդիկ պատերազմի*):

պէս մէտ էին զօրաց յօժարականութիւնը շահելու[2], — այս ամէնը համընթացակից կ'ըլլար այս երկրին մէջ զինուորական կարգապահութիւնը խանգարելու եւ եղծանելու։ Ժամանակի ընթացքին մէջ աւելցան ուրիշ պատճառներ ալ. ազգաբնակչութեանց ըմբոստ հոգին, որ կը հաղորդուէր դրսէն եկած զինուորաց ալ, բայց ա՛լ աւելի զգալի կ'ըլլար գաւառային զինուորակոչութեամբ զինուորագրուած անձանց քով. եւ դարձեալ Վերին-Գետութեան վերջին տարիներէն սկսեալ բանակին մէջ մուծուելով բարբարոսները՝ վարձուած այնպիսի պետերէ, որոնք իրենքն նախ օրինակ կու տային անհաստատութեան եւ դասալքութեան եւ վերջապէս յոռի վարչութեան մ'անխուսափելի արդիւնքները, որով մարտիկներուն

---

[2] Պէտք կա՞յ յիշելու Պիտոնի դէպքը. «յինքն յարեցոյց զլեգէոնս առատաձեռնութեամբ եւ զհաճոյս նոցա առնելով. զի յաւնոց ի զօրականէն ձեռնտու լինէր. եւ փոխանակ հնաւուրց հարիւրապետաց եւ քաջայաղթ զօրավարաց՝ զձեռասունս իւր եւ զայս անօրէնս կացուցանէր. անտես առնէր զյուլութիւն հօրաց ի բանակին, զհամարձակութիւն ի քաղաքս, զթափառական եւ ցոփազնաց վարել կեանս զինուորաց ի գիւղօրէս, յայն անկարգութիւն հասեալ՝ զի հայր լեգէոնաց զնա ամենեքեան կոչէին» (Տակիտ., Տար., Բ, 55. Հայ Թրգմ. Հիւրմ., էջ 960. համմտ. նաեւ անդ, Գ, 12)։ Բայց նոյն Տակիտոս կը յիշէ Կղաւդիոսի օրով Ասորիքի նուիրակ մ'ալ՝ Կ. Կասիոս, որ կ'ուզէր խաղաղութեան ժամանակ ալ՝ իբր թէ թշնամին առ դուրս ըլլար, «նորոգել զսա կարգ զնախնի հրահանգս, կրթել զլեգէոնս» (Տակիտ., Տար., ԺԲ, 12 revocare priscum morem, exercitare legiones. Հայ Թրգմ. Հիւրմ., էջ 304)։

օրինաւոր եւ խոստացուած վարձատրու-թիւնը կը զլացուէր եւ կը ստիպէր զանոնք տուժածին տեղը որեւէ կերպով մը լեցնել:

Երկրին տարեգրութիւնները կանուխէն իսկ պայծառ կը ցուցընեն անկարգապահու-թեան միջադէպներ[3]: Ի մասնաւորի Ան-տիոք՝ մեծ ապականարարը[4], հռետորնե-րուն յորդարան ճառեր ներշնչած է զօրաց անկարգապահութեան եւ մեղկութեան մա-սին: Թատերաց ցոփութիւնը[5] մեծամեծ աւերներ կը գործէր հոն, ինչպէս նաեւ այս մայրաքաղաքիս եւ իւր վատահամբաւ Դափնէ արուարձանին անսանձ գիշերային կեանքը: Միեւնոյն հեղինակները նոյնպէս անչափ ներ-բողագիրներ եղած են այն քանի մը պետե-րու մասին՝ ըլլա՛ն կուսակալ կամ իշխան, որոնք ուզած են բարեկարգութիւնը վերա-հաստատել: Այս կարգէն էր Թերեւս Անքն-դիոս Կասիոս[6], շատ աւելի խնդրական է

---

[3] Իդումէի մէջ Վարոս կուսակալի օրով՝ 2000 հինօրեայ զինուորներ, որոնք յաջողութեամբ պատե-րազմած էին Արաբացւոց դէմ եւ որոնք արձակուած էին, դաւակցեցան իրենց մէջ եւ գացին միացան Իս-րայելացի ապստամբներուն (Յովսեփ., ՀՀ. ԺԷ, 270. ՊՀ. Բ, 55):

[4] Հմմտ. Վերոսի համար՝ Վարք Վեր. 4—6. Կարակալլայի համար՝ Զոնար., ԺԲ., 12:

[5] Զոսիմոս, Բ, 34, 2:

[6] Պէտք չէ բացարձակապէս հրաժարիլ սա ըն-դունելէն անո՛ր համար որ Վուլկատիոս Գալլիկանոս անվաւեր Թղթակցութիւն մ'այս մասին դարբնած է Մարկոս–Աւրելիոսի եւ իւր անձնապահապետաց մէջ, «Հաւ ըրած ես Կասիոսը Սուրիոյ լեգէոնաց գլուխ կարգելով» — ըսել կու տայ անոնց միոյն. — ամ-բողջ այս Յունաբարոյներուն (Graecanicis militibus)

նոյն բանը Լ. Վերոսի նկատմամբ, որչափ ալ Փրոնտոն ատենաբան գովութիւններ կը շռայլէ անոր այս տեսակէտով[7], որոնց հետ չի միաբաներ ամենեւին Մարկոս Աւրելիոսի կենսագիրը Աւգոստեանց Պատմութեան մէջ[8]:

Անշուշտ քիչ շատ ճշմարտութիւն մը կայ այս եպերիչ կտորներուն մէջ՝ ի մասնաւորի կապելաները շատ յաճախելու[9], խաղամոլութեան, եւ հեշտին բարձեր փնտռելու մասին. բայց կ՚երեւայ թէ նոյն ինքն Վերոս այս թուլամորթ սովորութիւնները առած է փոխանակ անոնց վերջ մը դնելու: Միեւնոյն գովութիւնները կ՚ուղղուին Աղեքսանդր Սեւերոսի ալ, որովհետեւ՝ ճիշդ կամ սուտ՝ լեգէոնաց ապստամ-

---

ուրիշ բան չի վայլեր՝ բայց եթէ խիստ պետ մը. անիկայ պիտի վերցընէ այն ծաղիկները՝ զոր այս զինուորները կը կրեն իրենց ճակատին, պարանոցին ու կուրծքին վրայ» (Վարք Կաս., 5, 1—6): Յիշատակարանս կեղծ է, բայց կ՚երեւայ թէ իրականութեան մը կը համապատասխանէ. հմմտ. Lécrivain, Essai sur l'Histoire Auguste, p. 240:

[7] Թղթ. առ Վերոս, Ա., էջ 183 եւն, հրտ. Mai..., Պատմ. Իշխ., էջ 316, եւն (անդ):

[8] Վարք Մարկ. 8. հմմտ. Կապիտոլինոս, Վարք Վեր. 4—6:

[9] Սպարտիանոս, Վարք Պեսկեն. Նիգ. 7՝ «Երբ կ՚աղմկէին անոնք՝ որ Սարակինոսներէ յաղթուած էին, եւ կ՚ըսէին թէ՝ Գինի չենք ընդունիր, կռուիլ չենք կրնար (Vinum non accepimus, pugnare non possumus), պատասխանեց անիկայ՝ Ամաչեցէ՛ք. ձեզի յաղթողները ջուր կը խմեն (qui nos vincunt, aquam bibunt): — Պէտք է իմանալ թէ Աւգոստեան Պատմութիւնը գրող հեղինակները այնպիսի աղբիւրներէ քաղած են, որոնք Աւրելոց թշնամի էին.

բուլթիւնն Անտիոքի մէջ ընկճած ըլլայ[10]. տուր՝ գոնէ ձեւին մէջ՝ ծիծաղելի ինքնահնար գիւտ մըն է, որուն կը հակառակի այն չափ աւելի քիչ կասկածելի վկայութիւնը թէ Միջագետաց զինուորներն իրենց պետը Փղաւիոս Հերակղէոն սպաննած են[11]։

Այս անմիտարը Գ. դարուն մէջ, ուր մէկէ աւելի Ասորիներ իշխանութեան հասան, Կեսարներէն եւ ո՛չ մէկը կը համարձակէր զինուորական տարրին իրմէ սարսուցանել։ Մակրինոս չուզեց նորակոչ զինուորներու վրայ ալ տարածել՝ բայց նաեւ չհամարձակեցաւ հինօրեայներէն կարճել պերճական վարձատրութիւններն ու ծառայութեան սպակարգ ազատութիւններն՝ որոնց հաւանած էր Կարակալլա[12]։ Վերջնոյս օրով զինուորները կը լքանէին զինուորանոցը եւ ձմեռը կ'անցընէին բնակչաց քով, որոնց տները կանոնաւորապէս կը բաժ-

Գերդինաքսի Վարուց հեղինակը (3, 1) առանց հիման կը յանդիմանէ այս ինքնակալը թէ արծաթասէր եղած է Ասորիքի կուսակալ ըլլալէն ետքը (Դիոն. Կասիոս ալ կանխակալ կարծիքն ունի. հմմտ. Հէ, 10). յաւե՛լ՝ Վոպիսկոս, Վարք Տակիտ. 7 (leues mentes Syri «թեթեւամիտ Ասորիք»)։

[10] Լամպրիդիոս, Վարք Աղեք. Սեւեր. 52, 3. 53—54, 1—7։

[11] Դիոն. Կաս., ՀԹ. 2, 3. հաւանօրէն Պարթեւական Լեգէոնի մը Վերակացուն էր (Hinschfeld, Die kaiserlichen Verwaltungsbeamten, 2. Aufl., p. 397)։

[12] Քսիփիլինոս, առ Դիոն. Կաս., ԿԸ, 28: Եւ նոյն իսկ Մակրինոս զոհ եղաւ զինուորաց դաւադրութեան մը՝ որոնք արծաթով վաստկուած էին (Հերոդ. Ե)։

նէին[13]: Քաղաքային պատերազմաց ատեն՝ յաղթական բանակ մը Անտիոք մտաւ. զօրավարը խոստացած է զինքը շրջապատող զինուորաց 500 դրամ, «որպէս զի արգիլէ քաղաքն աւարելէն, որուն մեծ ախորժակ կը ցուցընէին[14]»: Երբ Յուլիանոս այս մայրաքաղաքիս մէջ իւր պատերազմի պատրաստութիւնները կը տեսնէր, «անցորդները պարտաւորուած էին իրենց ուսոց վրայ բառնալ ու բանակ տանիլ այս զինուորները, որոնք մինչեւ կոկորդ խճողած էին միս ու գինի մեհեաններու մէջ»՝ օգտուելով հաշտարար զոհերէն[15]: Կեղտերը նշանաւոր էին

---

[13] Դիոն. Կասիոսի (ՀԸ, 3) ըսածը հաստատութիւն կ'առնու Փենէի քաջածանօթ արձանագրութենէն (CIG, 4551 = Վատտինկտէն, 2524 = Dittenberger, Or GrJS, 609). «Յուլիոս Սատուրնինոս, առ Փայինացիս, մայր աւանաց (μητροχωμία) Տրաքոնիտէս գաւառի, ողջոյն: Եթէ մէկը, զինուոր կամ առանձնական, ձեր քով բնակի եւ բռնաբար վարուի, ինձի իմացուցէք եւ արդարութիւն պիտի գտնէք: Քանի որ օթեւան կայ (ξενών, տեսակ մ'առժամանակեայ զօրանոց), չեն կրնար զձեզ ստիպել մէկը ձեր առանձնական բնակարաններն ընդունելու: Այս թուղթն ամէնուն յայտ յանդիման ի տես դրէք, որպէս զի ոչ ոք պատրուակէ թէ չէր գիտեր»:

[14] Այս իրողութիւնը կը նշանակեմ միայն անոր համար որ քաղաքային պատերազմի մէջ տեղի կ'ունենայ. անկէ դուրս՝ կանոնաւոր բան մըն էր: Հերովդէս Երուսաղէմ առած էր Սոսիոսի աջակցութեամբ. կ'ուզէր արգիլել որ քաղաքն աւարի չառնուի: Սոսիոս պատասխանեց թէ չէին կրնար զլանալ զինուորաց՝ առնուած քաղաք մը կողոպտելը, այն ատեն Հերովդէս խոստացաւ զանոնք իւր ծախիւք վարձատրել (Յովսեփ., ՊՀ. Ա, 356):

[15] Քսիփիլինոս, առ Դիոն. Կաս., ՀԹ, 1: Միեւնոյն ժամանակ՝ Հեղիոգաբաղոսի օրով՝ Գ Գաղիական լեգէոնի պետը եւ Դ Սկիւթականին մէկ սպան կը

*ամէնէն այս կարգի ախրագործութեանց մէջ. բայց քիչ մ'ետքը նոյն իսկ Ասորիները նշանաւորագոյն հանդիսացան յոռեգոյն զեղխութեամբք:*

*Լիբանիոս այս մասին յաճախ ողբացած է: Անոնց՝ որ իրեն կը խոժոռին, կ'առարկէ սպայից ընչաքաղցութիւնը, զինուորաց անկարգութիւնները, որոնք լիովին պատուղած են իրենց ընտանեկան կենօք, եւ որոնց շատերը զատարաններէն հին փախածներ են, եւ որոնք պատերազմի մ'օրերուն աւելի ալիտ գործածեն ոտքերը քան թէ բազուկները: Զինուորական ուրիշ բարքեր տեսած է, կ'ըսէ*[16]*: Քիչ մ'ետքը — հաւանօրէն 391ին կամ 392ին — կ'արտասանէ իւր ճառը «Հովանաւորութեանց» վրայ*[17]*: Զինուորներն աւելի կամ քիչ բազմութեամբ հաստատուած են գիւղերը (χῶμαι). Հոն կ'արբե-*

---

*փորձէին իրենց օգտին համար ապստամբեցընել այս երկու գիւղերը (անդ, ՀԹ, 7): Հաւանական է որ երկրորդը չյաջողեցաւ, որովհետեւ Դ. լեգէոնին անունը մրճահար եղծուած չէ յիշատակարանաց վրայ՝ ինչպէս եղած է Գ. լեգէոնինը:*

16 *Ամմ. Մարկեղ.*, *ԻԲ*, 12, 6:

17 *Լիբանիոս, ճառ. Բ («ընդդէմ այնոցիկ՝ որ ծանրատաղտուկ զինքն կոչեն»՝* πρὸς τοὺς βαρὺν αὐτὸν καλέσαντας, *արտասանուած 381ին*), 37—40, 45. *Հրտ.* Förster, I, p. 250—253: *Հմմտ.* 38՝ καὶ καλὸν μὲν ἐμέσαι καὶ μεθυσθῆναι καὶ συνάψαι τοῦτοις εὐθὺς ἐδωδὴν ἑτέραν καὶ πόσιν, αἰσχρὸν δὲ αἱ μελίται ακὶ τὸ ἐν τῷ πεδίῳ πρέπουσι πόνοις αὐτὸν γυμνάσαι . . . *(Եւ գեղեցիկ կը համարին զզայուելն ու արբենալն, եւ ասոնց անմիջապէս կցել նորէն ուտելն ու խմելը, բայց տգեղ՝ վարժութիւններն ու բանակին մէջ պատշաճ աշխատութիւններով ինքն զինք մարզելը...):*

նան, եւ անչափ կը պարարին մսով. վիրաւորուող մը չի կրնար ինք զինք պաշտպանել, որով իր կորուստը կ'ըլլար զինուորի մը զարնելը. պէտք է համբերել զինուորութեան ամէն հետեւանաց, օրէնքները չեն գործեր: Ասով գիւղացիք ալ աւազակներ եղած են. երբ տասնապետները կու գան անոնցմէ քաղցրութեամբ հարկ պահանջելու, կը թշնամանեն զանոնք. եւ անոնք կը ստանան՝ ոչ թէ արծաթ, այլ վէրքեր: Արդեամբք ալ գիւղացիք մտած են անկարգ զօրականին պաշտպանութեան ներքեւ, որոնք իրենց քով կ'օթեւանին: Այս հովանաւորութիւնը կը թոյլատրէ որ Տէրութեան հարկ տալ մերժեն, եւ կալուածատէրանց՝ հասքը, եւ նոյն իսկ աւերել այն դաշտերը՝ որ նոյն ոճով պաշտպանուած չեն: Երկրագործք երբեմն կը լքանեն իրենց չէները եւ կու գան անոնց մէջ՝ որոնք հովանաւորութեամբք պատսպարուած են: Վաղէս կարգադրութիւններ ըրաւ պաշտպանողաց եւ պաշտպանելոց դէմ. Թէոդոս ստիպուած էր նորոգել զանոնք. բայց ինքն ալ աւելի չյաջողեցաւ[19]: Զինուորականները կը շարունակէին նոյնպէս զարհուրելի ըլլալ բոլոր ժողովրդեան, եւ փաղաքշուիլ փառասէրներէն[20]: Ուրիշ տեղ

---

[18] Նոյն, ճառ ԽԷ (περὶ τῶν προστάσιων «վասն պաշտպանութեանց»), 5—12, հրտ. Förster, III, p. 406 ff.:

[19] Հրովարտակ 8 Ապրիլ 392ի (Օրէնք Թէոդ., ԺԱ, 1, 128):

[20] Ամ. Մարկել., ԻԵ, 8, 18. Սպայ մը «զահա—

յիշած եմ[21] այն անհեթեթ միջադէպը, որուն ասպարէզն եղաւ նախ Սելեւկիա Պիերիա· վաշտի մը զինուորները՝ որ նաւահանգիստը խորունկցնելու կ'աշխատէին, տրտնջելով տարապայման վաստակաբեկ ըլլալու մասին, ուզեցին ծիրանին տալ իրենց տրիբունին, եւ սաստիկ դիմադրութէ մ'ետքն Անտիոքիա դնացին, ուր կոտորուեցան[22]:

Բիւզանդիոնի կայսերք զօրաց հանդէպ երկդիմի ընթացք մ'ունէին: Ներողամիտ էին Պալատական զօրագնդերուն անկարգութեանց, եւ միւս կողմանէ կը թողուին որ զինուորները չքաւորութեան մէջ իյնան: Յուստինոս Պետութեան հպատակներէն հաւաքել կու տար այն զինուորաց համար սահմանուած դահեկանները. համարակալներու (λογοθέτης) ձեռօք, որոնց կը տրուէր այն դումարներուն երկոտասներորդ մասը, բայց անոնք շատ աւելին կը վերապահէին իրենց: Զինուորները բաժնուած էին դասերու՝ հնութեան կարգաւ[23], եւ հնօրեայ վաստա-

---

ւէժ նետուեցաւ չոր գմբի մը մէջ եւ քարկոծ եղաւ, որովհետեւ Յուլիանու մահուանէն ետքը՝ անխոհեմ կը վարուէր, կը տրտնջէր ամէն եղածին վրայ, եւ անմիջապէս զինուորները խրախճանաց կը հրաւիրէր (invitabatque ad convivia subinde militares).

21 Իմ ուսումնասիրութեանս մէջ՝ Séleucie de Piérie, անդ:

22 Լիբանիոս, ԺԱ, 159. հմտ. Förster, I, p. 489. ԺԹ, 45 F, II, p. 405. Ի, 18 F, II, p. 420:

23 Յաճախ կը գործուէին իրաւանցութիւններ, որոնց մէջ պետերը յանցաւոր էին: Անաստասայ մէկ հրովարտակը, որմէ միայն չափազանց ծայրատեալ հատակոտորներ ունինք (Վաշինգտոն, 1906, Բա-

կաւորներն աւելի բարձր վարձք կ'ընդունէին. սակայն համարակալները զանց կ'առնուէին վիճակացոյցները նորոգել եւ նախկին զինուորակոչները յառաջացընել՝ որոնք արդէն ծերացած էին ծառայութեան մէջ: Մանաւանդ Սահմանորդաց (limitani) համար դրութիւնն ողբալի էր. գիւղացիք հաստուցմանց մէջ շատ տարեկաններով ետ կը մնային եւ դժբախտ զինուորները կարօտ էին անհատական ողորմածութեան[24]:

Յետոյ եկաւ Մաւրիկ կայսրը, որ Գանձուն տագնապին մէջ հրամայեց զօրավարձին մէկ քառորդը զեղչել: Այս հրամանը պիտի գործադրէր Պրիսկոս, որ անուանուած էր մագիստրիանոս զօրաց Արեւելից (587ին): Արդ սակայն Անտիոք հասաւ, եւ հրաման ըրաւ որ զօրագնդերը հաւաքուին ի Մոնոկարտոն Միջագետաց: Նման դիպաց սովորութեան համեմատ բա-

---

տրա. 2033, Մոթանո). իւր առաջին յօդուածին մէջ կ'երեւայ թէ կը վերաբերի կամայական յառաջացմանց. կը հրամայէ աստիճանաց փոփոխութեանց ատեն կապուիլ իւրաքանչիւր գնդին անուանադիր արձանագրոյն:

24 Պրոկոպիոսի տուած տեղեկութիւնները, թէպէտ եւ «Գաղտնի Պատմութեան» մէջ (24, 1—6) աւանդուած, արժանի են վստահութեան, որովհետեւ մանրամասնութիւնք ուրիշ կողմանէ հաստատութիւն կ'առնուն: Անհատական ողորմածութեան օրինակ մը. «Գրիգոր՝ Անտիոքիայ եպիսկոպոսը՝ մեծ ճոխութիւն տուած էր զինուորներուն վրայ իւր բարեգործութեամբը: Ոմանց արծաթ տուած էր, ուրիշներուն՝ զգեստ եւ ուտեստ, երբ անոնք զինուորագրուած էին եւ անցած իւր հօղերուն վրայէ» (Եւագր. Զ, 11):

նաւկը գնաց հաւաքուեցաւ նոյն տեղը, սպասելով որ ձիէն իջնայ եւ շարքերուն մէջ բարեկամաբար շրջի: Զօրավարը չի ըներ այս բանը. առաջին տժգոհութիւն, որ երթալով աճեցաւ՝ երբ լսեցին ռոճկին (annona «տարեկան» պարէն էին) նուազիլը: Մարդիկը կը յառաջանան դէպ ի զօրապետին վրանը, քարեր կը նետեն կամ սուսերները կը շողացընեն: Պրիսկոս վայրապար շրջեցընել կու տայ բանակին մէջ Քրիստոսի արձանը՝ զանոնք խաղաղցընելու համար, անոնք կը սպառնան քարկոծել զայն: Այն ատեն կը խուսէ՝ ոչ առանց դժուարութեան մինչեւ Կոստանդիա, եւ անկէ կը գրէ իշխանութեանց չկրճատել բան մ'այն ամէնէն՝ որ սովորաբար կը տրուէին զինուորաց: Բայց ապստամբութիւնը կ'աճի. զօրապետին վրանը կտոր կտոր կ'ըլլայ. սպաները կը ցրուին. եւ զօրքը կ'ընտրէ նոր զօրապետ մը, որ մահու սպառնալեօք ստիպուած է այն տիտղոսն ընդունիլ: Մինչ այս մինչ այն կու գայ Կոստանդիայի եպիսկոպոսը՝ կարգադրութեան եւ առնուիլը ծանուցանելու համար, եւ ըսելու համար թէ Մագիստրիանոսի նախորդը նոյն բանին խորհուրդը տուած էր, ո՛չ թէ անիկայ: Բայց եպիսկոպոսին ալ չեն լսեր. զինուորները կը խորտակեն ինքնակալին արձանը[25], եւ իր անուան նշանակները: Ուսհայի կրօնաւորաց առաջնորդն ալ նոյնպէս

---

[25] Զինուորները ինքնակալը «փերեզակ» (παλιγκάπηλος) անուանելով կը թշնամանէին:

գրաւաստակ կ՚ըլլայ։ Եւ զինուորները կը սկսին աւազակութիւններ ընել ամբողջ նահանգին մէջ, յափշտակելով հունձքերն ու նախիրները. եւ յետոյ 45 հոգւոյ պատգամաւորութիւն մը կը խաւրեն Գրիգորի՝ հրամայելով որ Ուռհայէն ելլէ երթայ։ Ասի կը յաջողի զանոնք իւր կողմը ձգել, եւ անոնք ալ կը փորձեն իրենց ընկերները հանդարտեցընել, որոնք սակայն կատղելով՝ աստիճանազուրկ կ՚ընեն զանոնք եւ 5000 հոգի կը քալեցընեն Ուռհայի վրայ՝ Գրիգորի դէմ։ Գրիգոր արդէն դէպ ի Կ. Պոլիս ճամբայ ելած էր. այն ատեն անոր տեղը կը դնեն նորէն Փիլիպպիկոսը, զոր զօրաց հետ կը յաջողի հաշտեցընել միայն Կ. Պոլսոյ արքեպիսկոպոսը, նաեւ երբ Մաւրիկ իրենց տարեկան վարձքին քանակութիւնը սովորականին պէս արդէն խաւրած էր որպէս զի իրենց մէջ բաշխուի[26]։

Այս միջադէպը բնորոշ է Արեւելքի զօրանդներու բարոյականին համար խաղաղութեան ժամանակ։ Այն տրամադրութիւնները՝ զորոնք այլեւայլ ժամանակամիջոց-

---

[26] Թէոփիլ. Սիմոկ. Գ, 1—5. միեւնոյնը կը պատմէ Եւագր., Զ, 4—7, բայց աւելի նուազ պայծառութեամբ եւ նուազ լիակատարութեամբ եւ մթագնած հռետորական ճոռոմաբանութեամբ։ — Համեմատենք Պրոկոպ., Պ. Պ. Բ, 7, 34 եւն՝ Եպիսկոպոսին աղաչելով զիջած՝ Խոսրով թոյլ տուաւ որ Բերէայի բնակիչները հեռանան քաղաքէն. բայց եղան նաեւ քանի մը զինուորներ՝ որոնք պատրուակ ըրին թէ իրենց ռոգը յետամնաց անվճար է եւ մտան Խոսրովի բանակին մէջ. եւ անոր հետ Պարսկաստան գացին։

ներու համար նշանակեցինք, արդէն յստակ նախագուշակութիւն մըն էին այն մասին՝ թէ ի՛նչ կ՚ըլլար պատերազմի ժամանակ։ Եւ ճիշդ պատերազմի ծառայութիւնը պարսկական սահմանագլխին վրայ դժնդակ էր, եւ բացարձակ հակառականն էր զօրանոցի կենաց՝ որ հոս ամէն տեղէ աւելի քաղցր էր։ Նոյնը կը տեսնուի արդէն Ղուկուղոսի ժամանակէն[27]. իւր գնդերը մէկէ աւելի անգամ հեստեցին, եւ մերժեցին ընկերանալ իրեն մինչեւ Արտաշատ՝ ձիւներու միջէն, եւ հալածել Տիգրանը Հայաստանի մէջ։ Աւելի յոռեգոյն եղաւ Անտոնինեայ ատեն, որուն զօրագնդերը՝ զարհուրած սկիզբէն իսկ վեր կրած կորուստներէն, բազմաթիւ թուով զաղտագողի սրացան փախան թշնամւոյն մօտերը։ Անտոնինոս կատղելով գործադրեց տասանորդութեան հին պատիժը եւ մնացեալ տասներորդներուն ալ գարի տուաւ փոխանակ ցորենի։ Բայց քիչ մ՚ետքը ուտելեաց նուաղութենէն ու ջրոյ պակասութենէն լլկուած տագնապած լեգէոնականները, վարսամնահար մոլեգնութեամբ վարակուած, յարձակեցան անոնց վրայ՝ որ քիչ մ՚արծաթ ունէին իրենց գրպանը, կողոպտեցին ազխը՝ նոյն իսկ զօրապետինը, վար ափիբերան կարկեցին՝ անոր սպասն անգամ իրենց մէջ բաժնելէն ետքը։ Երբ աւելի բերրի երկիր մը

[27] Պլուտարքոս, Ղուկուղ. 24, 32, 34, 36։ — Բայց ստոյգ է որ այս մարդկան վրայ անձնական ազդեցութիւն մը կը պակսէր։

դարձան, ա՛յնչափ խմեցին ու կերան որ ջրգողութիւններ ու սաստիկ խիթքեր ստացան[28]:

Անոնց զօրապետները յօժարակամ թոյլ կու տային որ արշաւանաց ատեն հարստանան: Պոմպէոսի հրաւէրանաց վրայ էր որ Տիգրան Երէց արքայն խոստացաւ տալ իւրաքանչիւր զինուորի կէս մնաս արծաթոյ, իւրաքանչիւր հարիւրապետի՝ տասը մնաս, եւ իւրաքանչիւր տրիբունի (հազարապետի)՝ տաղանդ մը[29]: Աղեքսանդր Սեւերոս դէպ ի Պարսկաստան մեկնելէն յառաջ՝ ստիպուած էր պատժել քանի մ՚ըմբոստութիւններ. Եգիպտոսի զինուորները դասալիք եղած էին. սակայն եւ այնպէս՝ Թէպէտ եւ Արտաշիր մեծամեծ կորուստներ պատճառած էր իրեն դէմ կռուող բանակաց միոյն, Աղեքսանդր «ստուարաձեռն բաշխումներ ըրաւ զինուորաց՝ զանոնք պարտութեան դէմ մխիթարելու համար[30]»: Ուրիշ տեղ մը յիշեցի թէ Կորբուղոն շատ քիչ օգնութիւն գտաւ ասորական լեգէոններէն. դասալքութիւնները բազմացան անոնց մէջ. «առջեւն առնուեցաւ խստութեամբ, եւ չեղաւ ուրիշ

---

[28] Պղուտ., Անտ. 39, 48, 49: — Կը տեսնուի ասկէ որ հռոմէացի զօրավարները քաջարար չէին հանդուրժեր դիմանալ ո՛չ զրկմանց եւ ո՛չ կլիմայի խստութեանց. բայց ասի արգելք մը չէ կարծելու թէ Պարթեւք այս դիպուածներէն յառաջ «կը սքանչանային բանակին կատարեալ կարգաւորութեան վրայ» (անդ, 39):

[29] Պղուտարք., Պոմպ. 33:

[30] Հերոդիանոս, Զ, 4, 7. 6, 4:

բանակներուն մէջ եղածին նման՝ ուր առաջին եւ երկրորդ յանցուածը կը ներուէր. հոս՝ անմիջապէս մահու պատիժ տրուեցաւ: Շատ աւելի քիչ ձեռնթափութիւններ ունեցաւ իր բանակին մէջ քան թէ էին անոնց մէջ՝ ուր թողութիւնը տրուէր[31]:

Գոնէ Ասորիքի մէջ, ինչպէս նաեւ ամէն երկիրները, զօրապետի մը ճոխութիւնն իր զինուորաց վրայ առաջնակարգ կարեւորութիւն ունէր: Ասով կը հասկընանք Յովսեպոսի գաղափարը հռոմէական կարգապահութեան մասին[32], զոր կ'ուզէր գոնէ սահմանել իր մարդկան ալ, եւ ճշմարիտ բանաստեղծական գովասանութիւն մը կը նուագէ այն մասին թէ ի՛նչպէս «թշնամեաց այն մեծաթիւ բազմութիւնը կարծես թէ մէկ մարմին կը կազմէ՝ որ միահաղոյն կը շարժի[33]»: Ի լո՛յ դիտէր Կորբուղոնի ի վերջոյ ձեռք ձգած յաջողութիւնը, եւ կը

31 Տակիտ., Տար., ԺԳ, 35. Հմմտ. Դիոն. Կաս., ԿԲ, 19: Յովսեպոս, Պհ., Գ, 108՝ այս տեսակ յանցանաց համար գլխապարտ պատուհաս կը դնէ իբր սկզբունք. զինուորական քրէական օրէնսդրութիւնն ի վերջոյ ամենեւին չէր փոխուած. նոյնը կը տեսնուի ահաւասիկ նաեւ Զ. դարուն վերջը, զինուորի մը դասալքութեան համար՝ պատիժ է մահ. զօրագնդի մը դասալքութեան՝ պատիժ տասանորդուիլ (տասէն մին վիճակաւ կոտորուիլ. տես Մաւրիկիոս, Ռազմաց., Ա., 8, էջ 38):

32 Յովսեպ., Պհ., Բ, 577. յաւե՛լ՝ 529:

33 Անդ, Գ, 70—103. տես մանաւանդ 74, 85 եւն: Բայց սակայն՝ եւ այն՝ ո՛չ առանց պատճառի, «հռոմէասէր» էր (φιλορωμαῖος) եւ չէր հաճեր ձախողական զարհուրանքի այլեւայլ դէպքերէն ընդհանուր եզրակացութիւններ հանել (Ե, 76 եւն, 87):

տեսնէր անձամբ Վեսպասիանու եւ Տիտոսի գործը: Վստահացած իրենց հրամատարաց վրայ՝ հռոմէյացի զինուորը անձնատուր կ՚ըլլար նաեւ յախուռն յանկարծաթափ գործողութեանց, զոր Վեսպասիանոս օր մը պարսաւել ստիպուեցաւ[34]: Նոյնպէս հարիւրապետ մը դժբախտ արտայարձակում մը գործած էր՝ չպահելով Կորբուղոնի հրամայած պաշտպանողականութիւնը: Կորբուղոն անոր եւ իր Վաշտին տուաւ այն անպատուաբեր պատիժը՝ ամրացեալ ղակիշներէն դուրս բանակելու[35]: Տրայիանոս իւր կորովի զօրեղութեամբը կրցաւ այսպիսի դժուարութիւններէ զերծ մնալ. բաց աստի՝ լաւ չենք ճանչնար իւր Պարթեւական պատերազմը, լաւ չենք գիտեր նաեւ Լ. Վերոսի արշաւանքն, եւ աւելի քիչ Գ. դարու պատերազմները. եւ արդեօք պէ՞տք է որ Անտոնինեայ ժամանակ պատահած անկարգապահութեան գործողութեանց միայն աւշադիր ըլլանք[36]:

Գ. դարուն նոյն իսկ Յուլիանոս[37] կը յիշէ Ասորի զինուորաց մէկ ապստամբութիւնը, զոր իւր նախորդը չուտով մը դադել

---

[34] Պհ., Դ, 44—45:

[35] Տակիտ., Տար., ԺԳ, 36:

[36] Սեպտիմոս Սեւերոսի առեն Հեթրայի պաշարման մէջոցին դարձեալ Ասորիներն էին որ լաւագոյն վարմունք մը չունեցան: Եւրոպայի զինուորներն ալ մերժեցին բերդի վրայ յարձակիլ (Զոնար., ԺԲ, 12. Դիոն. Կաս., ՀԵ, 12):

[37] Յուլիանոս, ճառ Ա, 18 D:

տուած էր։ Բայց այն ժամանակէն ետքը Արեւելքի պատերազմներն աւելի յաճախադէպ եղան, եւ այնուհետեւ աւելի հարկ կար ամէն ինչ ափյափոյ կարգադրել, որովհետեւ Պարսիկներն այն ատեն նախայարձակ կ'ըլլային փոխանակ իրենք զիրենք պաշտպանելու։ Միեւնոյն բանակին մէջ միացուած են ամէն տարերք. աշխարհագրական ծագումն այլ եւս չէր կրնար իբրեւ հիմ ծառայել բոլորովին ապահով կերպով բարոյականի մասին զանազանութիւններ ընելու. Լիւրիկեան՝ երբեմն ա՛յնչափ գովաբանուած՝ հեծելախմբերէն երկուքը, որոնց յանձնուած էր Ամդայ մօտ խումբի մը պահպանութիւնը, կը հեռանան անկէ գիշերային դարանագործութիւններէ վախնալով. եւ Պարսիկները մօտեցան՝ երբ այս մարդիկը գինով ու քնացած էին[38]։ Յուլիանոս ալ առանց անվստահութեան կասկածի չէր իր զօրաց հանդէպ[39]։ Երբ սահմանագլուխ հասաւ՝ բեկանել տուաւ իր ետեւ միացած կամուրջ մը,

[38] Ամ. Մարկել., ԺԸ, 8, 3։

[39] Իր իշխանութեան ատեն զինուորական կարեւոր դաւակցութիւններ նիւթեց, որոնք մեծաւ մասամբ անտարակոյս յառաջ կու գային իր կրօնական քաղաքականութենէն եւ իր եռանդէն՝ նորադարձ հեթանոսներ գտնելու։ Կրնան նաեւ անոնց մէջ եղած ըլլալ ընդհարումներ՝ որ տեղի կ'ունենային կողմանէ Կոստանդի զինուորաց՝ որոնք ընդհանրապէս քրիստոնեայ էին, եւ միւս կողմանէ Յուլիանոսի Եւրոպայէն բերած զօրաց միջեւ, որոնք ալ համոզուած հեթանոսներ էին. Սիվերս ուսումնասիրած է բնագիրներն եւ յառաջ բերած (G. R. Sievers, Das Leben von Libanios, Berlin 1868, p. 97 եւ 108)։

որպէս զի բառնայ ամէն յոյս քակտման եւ նահանջի մասին մտածելու. յետոյ բանախօսութիւն մը կ'ընէ արգիլելով կողոպուտը. «Քայլեցէք միշտ կարգաւ. ճակատի մէջ մի՛ լքանէք երբեք ձեր դրօշները. առաջինն որ անկէ հեռանայ՝ զինքը պիտի թողում լքանեմ՝ կարթակոտոր ընել տալէն ետքը[40]»:

Ամիանոս կը յիշատակէ բազմաթիւ պատիժներ որ տրուեցան այս պատերազմիս մէջ: Սուրէն յանկարծակիի բերած էր երեք հեծելախումբեր, եւ առած անոնց մէկ դրօշը եւ սպաննած տրիբուն մը. միւս երկու տրիբունները կը դատապարտուին իբրեւ վատ, տասը զինուորներու հետ որոնք փախած էին, եւ մահուապատիժ կը կրեն[42]: Ուրիշ անգամ մը բարկացած վաշտի մը զինուորներուն դէմ, որոնք թշնամւոյն առաջին բռնութեան լաւ չէին դիմադրած, ինքնակալը զանոնք փոխադրեց ուրիշ զօրագնդի մը մէջ՝ որ նուազ պատուաբեր էր եւ նուազ ար-

40 Ամ. Մարկեղ., ԻԳ, 5, 4. Թէոդորետ., Պատմ. Եկեղ., Գ., 20, էջ 1118 (Migne): — Եւ երկու ռազմագծերու մէջտեղը կը զետեղէ հետեւակազօրուին ջոկագնդերը՝ որոնք կասկածելի էին թէ կրնան թիկունք դարձընել ու գէշ օրինակ տալ միւսներուն (Ամմ. ԻԴ, 6, 9):

41 Ամմ. Մարկեղ., ԻԳ, 5, 21:

42 «Հնագոյն օրինաց հետեւելով» (secutus veteres leges) կ'ըսէ Ամմիանոս (ԻԴ, 3, 1—2): Պիրիսաբորայի առմանէն ետքը Յուլիանոս իւրաքանչիւր զինուորի խոստացաւ հարիւր դահեկան արծաթ. անոնք կը տրտնջէին գումարին դուզնաքէութեան վրայ, բայց իւր բուռն ազդարարութիւնները զանոնք հանդարտեցուցին (անդ, 3, 3—7):

տօնական առաւելութիւններով[43]։ Երբ լեգէոնները կ'ամբաստանէին հեծելազունդ մը թէ յարձակման ատեն անզգայաբար եւ քաչուեցաւ, մեծ վտանգի ենթարկելով մնացեալ բանակը, առաւ անոնցմէ դրօշները, խորտակեց նիզակները, եւ հրամայեց անոնց խմբիկներուն աղխին եւ գերելոց հետ չուել։ Քաղաքոյն սպաները առաջնորդ կը տրուէին ուրիշ զօրագնդերու, որոնց տրիբունները նոյնպէս փախած էին։ «Յուլիանոս, կ'ըսէ Ամմիանոս, տեսնելով այն դժուարութիւններն՝ որ իրեն կը սպառնէին, չաստացաւ այս թեթեւ պատճառով[44]»։

Ընթացք ժամանակի յոյն սովորութիւններն աւելի զարգացան։ Անաստասի ժամանակակից մ'այս մասին ականատես վկայութիւն մը կ'աւանդէ։ Ճակատէ մ'ետքը բիւզանդական զօրքերը ցրուեցան դիակները կողոպտելու համար[45]. երբ գիշերը հասաւ՝ պէտք եղաւ որ սպարապետը բլրան մը գլուխը կրակ վառել տայ եւ փողերը հնչեցընէ, իր զինուորները հաւաքելու հա-

---

[43] Ամմ. Մարկեղ., ԻԴ, 5, 10։

[44] Անդ, ԻԵ, 1, 7—9։

[45] Շատ հետաքրքրական բան մըն է որ յետոյ հռոմէացի զօրավարն այսպէս կը խօսի իր զօրաց զինուորաց. «Պարսից հեծեալները գիւղացւոց կոյտ մըն են, որոնք շատ շատ երկիր կրնան քակել եւ դիակները կողոպտել» (Պրոկոպ., ՊՊ., Ա, 14, 25)։ Մաւրիկ խստօրէն կը պատուիրէ՝ դիակները չկողոպտել երբ ճակատը տակաւին կը շարունակուի (Խազման., Է, 15, էջ 146)։

մար[46]: Զինուորները քաղաք մը մտնելով երբեւ ազատարար, ուզեցին որ հոգացուին ու սնուցուին, օթեւանելով նաեւ քահանայից եւ սարկաւագաց տները, թէեւ կայսերական հրովարտակ մը կ'արգելուր այս բանս[47]:

Զարմանալի՞ է որ դաշնաւորները կամ Դաշնակիցք ալ դասալիք կ'ըլլային:

Հռոմայեցիք շատ անգամ ճանչցան այս դժբախտութիւնը[48], յաճախ նաեւ անհատական ապստամբութիւնը: Դարայի մէջ զինուոր մը իր քանի մ'ընկերակցաց հետ դաւակցեցաւ, եւ գրաւեց քաղաքը, ամրացաւ պալատան՝ ինչպէս նաեւ միջնաբերդի մը մէջ, եւ հոն պաշտպանեց ինք զինքը չորս օր. այս ճգէն ետքը՝ սպաննուեցաւ[49]: Վերջին ժամանակները Բիւզանդեանց կողման յաղթութիւնը շատ անգամ վտանգուեցաւ կամ խափանուեցաւ այլեւայլ զօրապետներու երկչոտութեամբը. Թէոդորիկոս՝ որ Սկիւթացւոց կը հրամայէր, փախաւ նոյն իսկ չդիմադրելով թշնամեաց առաջին բախման[50]. ուրիշ ընդհարման մը մէջ զօրա—

46 Յեսուէ Սիւնակեաց, Ժամանակագր., 52:

47 Անդ, 87:

48 «Լազերը դժուարութիւն յարուցին Հռոմայեցւոց հետ միանալու, որոնց ուժութենէն կը վախնային, որովհետեւ անոնք՝ չէին կուէր՝ ինչպէս իրենք՝ իրենց երդերուն համար» (Պրոկոպ., ՊԳ., Դ, 8, 3). առաջին ընդհարման՝ լաւ հեծելազօրը փախուստի դիմեց (անդ, 18 եւն. հմմտ. Թէոփան. 309):

49 Պրոկոպ., ՊՊ. Ա, 26. 5 եւն:

50 Ծւագր. Ե, 20 (Մաւրիկի անուն):

պետի մը խօլական սարսափը պատճառ եղաւ բանակին խուճապագին փախուստեան[51]:

Պարսկական բանակներուն մէջ զօրավարը շատ աւելի ուժէր էր իր զինուորաց, եւ հրամատարութեան գաղտնիքները հոն լաւ կը պահուէին[52]: Բիւզանդեանց քով ընդհակառակն աղմկալից եւ անմիաբան սպայակոյտ մը կը տիրէր: Բելիսար երբ Դարայէ մեկնեցաւ՝ դադար ըրաւ Մծբնէ 41 ասպարէզ հեռուն: Շատերն աւելի հեռուն կ'ուզէին երթալ: Այն ատեն ըսաւ ան անոնց՝ «Չեմ կրնար իմ խորհուրդներս յայտնել». — անոնք կը պահանջէին. — բանակին մէջ ըսուած խօսք մը գաղտնի երբեք չի մնար եւ կը հասնի մինչեւ թշնամւոյն ականջը: Կը տեսնեմ որ ձեր իւրաքանչիւրը՝ մոռնալով իր աստիճանը՝ կը ձեռնարկէ հոս հրամայելու[53]»: Բայց ստիպուած էր իր գլխաւոր զօրապետաց կարծիքները առնուլ՝ վախնալով որ այլապէս չհնազանդին[54]: Վարձկանատեարց դրութիւնը կը տանէր անհաստատ դասակարգութեան մը. Հայաստանի սահմանագլխուն մօտ հռոմէական զօրագնդերը ծանր պարտութիւն մը կրեցին,

---

51 Թէոփ. Սիմոկ., Բ, 9 1 եւն:

52 Ամմ. Մարկեղ., ԻԱ, 13, 4. «Պարսից քով ոչ ոք գիտակից է խորհրդոց՝ բաց ի լռասէր եւ հաւատարիմ աւագներէն, որոնց քով լռութեան անունը մեծարոյ է (apud Persas nemo consliorum est conscius, praeter optimates taciturnos et fidos, apud quos silentii quoque colitur nomen):

53 Պրոկոպ., ՊՊ., Բ, 18, 5—6:

54 Անդ, 19, 6 եւն:

*որովհետեւ յիսունի չափ զօրագլուխներ կ'առաջնորդէին զօրաց, ամէնքն ալ դրեթէ միեւնոյն աստիճանն ունենալով, որոնք իրարու չէին միաբաններ*[55]*: Ասով շատ դժուար կ'ըլլար կարգապահութիւնը պահել· օրինակի համար կռուոյ մը մէջտեղ կը տեսնուէր որ զօրագունդ մը գրաւած ըլլալով թշնամւոյն աղխը՝ կը սկսէր կողոպտել զայն, փոխանակ թշնամւոյն դիմակալ ըլլալու հաստատութեամբ*[56]*: Բայց իրենց ամենամեծ մտահոգութիւնն էր ամէն տեղ եւ միշտ՝ աւարը*[57]*:*

*Ստորին ժամանակաշրջանիս մէկ նորութիւնն է այն շատ մեծ կարեւորութիւնը՝ զոր կը սկսին ունենալ եպիսկոպոսները նոյն իսկ պատերազմի գործողութեանց մէջ: Կ'ընկերանան հռոմէական բանակաց՝ աստուածեղէն օրհնութիւնքն անոնց վրայ հրաւիրելու համար. եւ ընդհանրապէս Միջագետաց որեւէ առաջնորդ մը*[58] *ուղեկից կը սահմա-*

---

55 *Անդ*, 24—25:

56 *Թէոփիլ. Սիմոկ.*, Բ, 4, 1:

57 *Մաւրիկոս զօրավարը վախնալով իւր զօրաց վատութենէն՝ այնպէս ձեւացուց թէ իմացած է որ օգնական բանակ մ'իրեն կու գայ, յուսալով որ սով անոնց ընդ հենուն նախանձը գրգռէ, որովհետեւ առանձինն կ'ուզէին ձեռք ձգել աւարը: Իրօք ալ երբ թշնամին յարձակեցաւ, հօյակապ պաշտպանութիւն մ'ըրին* (*Ագաթիաս*, Գ, 9, 4):

58 *Եւ շատ մեծ փոփոխութիւններ տեղի ունեցած էին կրկին՝ քաղաքային ու կրօնական՝ կարգերուն մէջ. Սիլուիա (Եթերիա*) հաւաստաւոր կուսանը գինուորական յուղարկաւորումը մ'ընդունեցաւ իւր* ուխտագնացութեան (peregrinatio) *վտանգաւոր ճամ-*

նուէր ղեսպանաց՝ որ արքայէց արքային կ՚երթային։ Ս. Եփրեմայ բանաստեղծութիւնք[59] կը բողբոքէին Մծբնայ բնակչաց սրտերը, երբ քաղաքը Պարսից կողմանէ պաշարուած էր։ Եւսեբիոս Սամոսատցի ընդունած էր զինուորական տարազը՝ բացի սաղաւարտէ, որուն տեղը թագը (եպ. խոյրը) կը բռնէր[60]։ Կոնոն՝ Որոնդէսի վրայ եղող Ապամէա քաղաքին եպիսկոպոսը՝ քաջաբար կռուեցաւ Իսաւրացւոց դնդին մէջ, որ Անաստասի գահը կը պաշտպանէր Ղոնգինոս յափշտակչին դէմ[61]։ Այս կէտիս մասին բազմաթիւ զրոյցներ կան, մանաւանդ Թէոդորետոսի պատմածներուն մէջ[62]» բայց

---

բաններուն համար (Բ, 3, հրտ. Geyer, ի Corp. script. eccles. lat. XXXIX, 1898, Վիեննա, էջ 49)։

59 Հմմտ. Carmina Nisibena Sancti Ephraemi Syri, հրտ. ed. G. Bickell, առաջի բնագիրը, թրգմ. եւ մեկնաբանութիւնք. եւ C. Ferry, Saint Ephrem, poête, Paris 1877։

60 Թէոդորետոս, Պատմ. Եկեղ., Դ, 13, էջ 1149 (Migne)։

61 Եւագրիոս, Պատմ. Եկեղ., Գ, 35։

62 Պատմութիւն Ս. Յակոբայ եպ. Մծբնայ, որ կ՚աղերսէ զԱստուածորդին, որ եւ կ՚երեւայ քաղաքին պարիսպներուն վրայ. սաստկապէս սարսափեցընելով թշնամիները (Relig. hist., p. 1118 = 1304 Migne). Եւ կ՚ընդունի ի Տեառնէ որ Պարսից ամբոխին վրայ խուժէ որդեր ու մժեխներ, որոնք կ՚եռան ու կը լնուն ձիոց եւ փղաց ականջները աչքերն ու ռնգունքը (Պատմ. Եկեղ., Բ., 26, էջ 1076 եւն)։ — Թէոդուպոլսոյ պաշարման ատեն Եւնոմոս եպիսկոպոսն առանձին քայքայեց արքայից արքային մեքենաները. եւ պարսիկ իշխան մը հայհոյած ըլլալուն՝ մեքենայ մը դնել տուաւ պարսպին վրայ՝ որուն տրուած էր Ս. Թովմայի առաքելոյ անունը, եւ հարուածով մը զարկաւ հայհոյիչը՝ որուն ուղեղը գետին թափեցաւ։

տարակուսական չէ եպիսկոպոսական այս իշխանութեան պարագ դէպքը[63]: Ուստի քրիստոնէական գաղափարը շատ մը դիպաց մէջ այս բարբարոսաց համար սկզբունք մ'եղաւ համախմբման եւ կարգապահութեան:

Հերակղ ասկէ օգտուեցաւ յաջողակութեամբ[64]: Երբ ձմեռն եկաւ՝ չէր ուզեր իւր գնդերը վտանգել Գանձակէն անդին. բայց անոնք կ'ուզէին տակաւին յառաջ արշաւել. այն ատեն զանոնք կրցաւ իւր՝ շատ աւելի բանաւոր՝ որոշման համամիտ ընել, պահոց օր մը բանալ տալով Աւետարանն այնպիսի տեղ մը, որ կարծես կը նշանակէր թէ պէտք է երթալ ձմերել Աղուանից աշխարհը[65]: Այս զգացմանց շնորհիւ՝ զինուորական այս պատմութիւնն գրեթէ կ'աւարտի գեղեցիկ էջով մը. մոլեռանդն մահմետականաց դէմ Բիւզանդեանք եւ իրենց կուսակիցք կ'ոգորէին աւելի մեծ քաջութեամբ քան բախտիւ.

---

Գարսից արքայն ասկէ զարհուրած՝ խաղաղութիւն ըրաւ (Պատմ. Եկեղ., Ե, 30, էջ 1269):

[63] Յաւե՛լ՝ այն եպիսկոպոսները, զորոնք քաղաքները իբր պատգամաւորաց կը խաւրէին (Պրոկոպ., ՊՊ., Բ, 5, 3. 6, 4. 11, 4):

[64] Կ'արժէ որ յառաջ բերենք Գէորգայ Պիսիդէսի (Արշաւ. Պրս., Բ, 241 եւն) նկարագրած հակադրութիւնը Հերակղի եւ Շահրվարազի բանակներուն միջեւ, ճակատամարտի մը նախընթաց օրը. պարսիկ բանակին մէջ ծնծղաներ հնչեցընելով՝ մերկ եւ գրգռիչ կանայք կը կաքաւէին զօրավարին բոլորտիքը, քրիստոնեայ բանակին մէջ՝ սաղմոսերգութիւնք կը բարձրանան:

[65] Թէոփանէս, 308:

որպէս զի փախչելու ամէն դիւրութիւն բարձրուի՝ քրիստոնեայք իրենք զիրենք իրարու հետ շղթայակապ ըրած էին Եարմուկի ճակատամարտին օրը[66]:

[66] Ըստ Բելաձորի արաբացի պատմագրին (հրատ. de Goeje, անդ, էջ 117)։ Բնական է որ խօսքը հետեւակաց մասին է։

## ԳԼՈՒԽ Դ։

## ՀՐԱՄԱՏԱՐՈՒԹԻՒՆԸ

*Միտք չունիմ այս խորագրիս ներքեւ քննել այն ամէն խնդիրները, որ զինուորական դատակարգութեան կը վերաբերին. եւ արդէն մեր յատուկ աղբիւրներն ոչինչ կը հանդամանեն զանոնք լուսաւորելու համար, եւ եթէ ոչ յանդգնական՝ գոնէ անօգուտ բան մը կ'ըլլար՝ Արեւելից նկատմամբ յիշեցնել ընդհանուր սկզբունքները։ Մտադիր եմ հետամուտ ըլլալ գլխաւորաբար այն ամէնուն՝ որ վերին հրամատարութեան կը հայի*[1]*, որ կրնայ զմեզ տանիլ աւելի մասնաւոր դիտողութեանց ալ։*

---

[1] *Հրամատարութեան օգնականներու, սպարապետի անձնապահաց եւն մասին՝ միայն իսկ արձանագրութիւնք կրնային մեզի բազմաթիւ վկայութիւններ մատակարարել. բայց ծանօթ է որ Ասորիքի մէջ ասոնք պատրանքներ կը պատճառեն։ Բաալբէքի արձանագրութիւն մը* (Hornstein, Palest. Explor. Fund, 1900, p. 74) *կը յիշէ երկու* թիկնապահներ (protectores). *Ամմիանոս* (*ԻԵ*, 3, 4) *կ'անուանէ* գլխապահ *մը* (apparitor, *բուն «փոքրաւոր» սպասաւոր, եւն*). *որ իւր Վերակացուն սպասեց։ Աւելցընելու է այլեւայլ* զինակիրներ (statores, *«պահապանք» եւն*) *նահանգներու կուսակալաց կամ լեգէոններու զօրապետաց* (*Վադդինգտոն*, 2215. CIL, III, 6641. VIII, 7050)։

## § 1. Զինուորական բաժնից պետերը:

*Ա. Տեղական հրամատարութեանց մասին շատ աւելի քիչ առանձնայատկութիւններ կան նշանակելիք, մանաւանդ Վերին-Կայսրութեան շրջանին համար: Ծառանանք յիշատակելով Ասորիքի հիւպատական նուիրակը (27էն Ն. Ք.) Կապպադովկիոյ հիւպատական նուիրակը (70էն ետքը)*[2], *եւ Արաբիոյ պրետորական նուիրակը* (105/6*էն ետքը): Գաղեստինի պրետորական նուիրակը* (70*էն ետքը) նուազեցուց Ասորիքի նուիրակին հրամատարութիւնը. որովհետեւ ամէն նուիրակ իւր նահանգին զօրաց գլուխն է: Իբր* 198*ին կար նաեւ նուիրակ մը* Ներքին Ասորւոց (Syria Coele) *եւ ուրիշ մը* Փիւնիկեան Ասորւոց (Syria Phoenice)[3]. Հայոց Մեծաց (Armenia Major) *փաղանցուկ նահանգը՝ զոր Տրայիանոս կազմած էր, միացած էր Կապպադովկիոյ նուիրակին ներքեւ*[4]*: Բան մը չենք գիտեր Միջագետաց եւ Ասորեստանի նահանգաց նոյն ժամանակամիջոցին կառավարութեան մասին:*

*Բ. դարուն վերջը Միջագետաց մէջ, որ մասամբ նորէն ձեռք բերուած էր, չկան ուրիշ պետեր՝ բայց եթէ լեգէոնաց հրամատարները՝* Վերակացուք (praefectus) *որոնք իրենց այն պաշտամանց հետ կը միա-*

---

[2] Marquart, Organis. milit. II, p. 291, n. 6.

[3] *Անդ, էջ* 375 ff.:

[4] CIL, X, 8291.

ցընէն նաեւ գործակալաց (procurator) պաշտօնները, թէ՛ Ուռհայաստանի եւ թէ՛ յատուկ մտօք Միջագետաց մէջ[5]: Յաջորդ դարուն ա՛յնպէս կ'երեւայ թէ այս աշխարհացս մէջ ա՛լ եւս չկան գործակալներ, եւ միակ Վերակացու մ'անտարակոյս կը հրամայէ միահաղոյն երկու Պարթեւական լեգէոններուն, որ հոն կայանաւորած էին:

Բ. Դիոկղետիանոսի իշխանութենէն ետքը քաղաքական գաւառաշրջանները կը շահագրգռեն զմեզ միայն զինուորական շըրջաններու հետ համեմատուելովը: Գիտենք որ նախկին Գահերէցի մը (praeses) այնուհետեւ կը հակադրուի Դուքս մը (dux)[6]: Այս վերջինս է որ ունի հրամատարութիւնը Սահմանաց (limes) ամբողջ հատածին վրայ՝ որ իւր երկրամասին մէջ կը բովանդակուէր, եւ այն տեղեաց սահմանուած զօրագնդերուն վրայ. անոր համար ալ երբեմն կ'անուանի Սահմանադուքս (dux limitis) յորջորջանքը, առանց անով տարբերելու.

---

[5] Hirschfeld, Die kaiserlichen Verwaltungsbeamten bis auf Diocletian, 2. Aufl., Berlin 1905, p. 375 ff. und 395.

[6] Հմմտ. Seeck, Dux (ի Պաուլի-Վիսովա): — Վոպիսկոս, Վարք Աւրելիանու (ԻԶ, 13, 1, հրտ. Peter) կ'անուանէ՝ Julio Tryphone orientalis limitis duce (Յուլիոս Տրիփոն՝ դուքս Արեւելեան Սահմանաց): Բայց այսպիսի դքսութիւն մ'երբեք գոյութիւն ունեցած չէ. եւ բաց աստի տարածամանակութիւն մըն է, մին այն բազմաթիւ կարկատուած տիտղոսներէ՝ զորոնք կը գտնենք Աւգոստոսաց Պատմութեան մէջ:

միւս դքսերէն: Դքսութեան մը սահմանները միայն մերձաւորապէս գուշակելով կրնան որոշուիլ. որովհետեւ «Տեղեկ.» գրող յիշած զօրանիստ տեղերուն մեծագոյն մասը գտնելն ու նոյնացնելը կը մնայ երբեմն յարափոփոխ բան մը: Բայց նոյն յիշատակարանին նայելով[7]՝ կու գանք հետեւեալ եզրակացութեանց:

Զինուորական միակ դուքս մը կայ՝ Հայաստաններու (Ա. եւ Բ.) եւ Պոնտոսի համար. այս դօտեշրջանը կ՚երեւայ թէ շատ վտանգի ենթակայ չէր: Միեւնոյն դիտողութիւնը կ՚ընենք աւելի հարաւային երկիրներու համար ալ. ժամանակաւ միայն Պաղեստին Գ. (Palestina III), երեք Պաղեստիններէն միակը՝ որ Սահմանաց կցորդ էր, իբր առաջնորդ ունի միակ դուքս մը[8]: Արաբիոյ մէջ միեւնոյն պաշտօնեայն կը պաշտօնավարէ թէ՛ իբրեւ դուքս եւ թէ՛ իբրեւ Գահերէց[9], սակայն կրկին պաշտօնատան (officium) կայ՝ քաղաքային ու զինուորական[10]: Այս բացառիկ կարգադրութիւնը կրնայ մեկնուիլ ա՛յնպէս թէ ուզուած է իրերը պարզել, քանի որ երկրին խաղաղ վիճակը կը ներէր:

Ասոր հակառակ միջին շրջանին մէջ չորս դքսեր կը գտնենք՝ Փիւնիկէի (Լիբանանի),

---

7 Հմմտ. Not., Or. I, 42—50.
8 Տես Օրէնք Թէոդոս., է, 4, 30:
9 Not., Or. XXXVII, 36.
10 Անդ, 36 եւ 43:

Ասորւոց եւ Եփրատական Ասորւոց[11] (Syriae et Euphratensis Syriae). Ուռհայաստանի եւ Միջագետաց, այսինքն՝ չորս զինուորական վիճակներ հովանոցաձեւ շառաւիղած այն վտանգաւոր գծին չորս կողմը՝ որ կը տարածուէր Տիգրիսէն Եփրատ եւ անընդհատ Պարսից յարձակմանց ենթակայ էր:

Յետոյ դժուարութիւններն աւելցան, եւ այն ատեն երեւան կու գան փոփոխութիւններ: Արաբիոյ մէջ նորէն անջատուած են քաղաքական եւ զինուորական իշխանութիւնները[12]: Հիւսիսակողման մէջ Թէոդոս 413ի սահմանադրութեամբ մը[13], որուն հետքը չկայ «Տեղեկ.»-գրոց մէջ, կը ստեղծէ Կոմս Պոնտական[14] [զինուորական իրաց] (comes Ponticae [rei militaris]), որ անտարակոյս արդիւնք է Հայոց թագաւորութեան Հռոմայեցւոց եւ Պարսից մէջ բաժնուելուն: Հայաստանի մէջ ալ Յուստինոս կազմակերպեց չորս նահանգներ, որոնց միայն մին՝ Հայաստան Գ. (Armenia III, «Երրորդ Հայք»,

---

[11] Not., Or. XXXIII, 15. Երկու նահանգաց այս գումարումը յառաջ կու գայ անկէ՝ որ ասոնք հազիւ թէ սահմանակից էին Սահմանաց (limes):

[12] Տես Յուստինիանու ձԲ Օրինագիրը:

[13] Օրէնք Թէոդոս. Զ, 13, 1:

[14] Seeck (Comites, առ Պաւլի–Վ., էջ 661, Թ. 7) կը կարծէ թէ ասի Հայաստանի դուքսն ըլլայ, որուն հրամատարութիւնը տարածուած ըլլար ամբողջ Պոնտոսի թեմին վրայ՝ Պարսկական պատերազմի մը մօտալուտ ըլլալուն առթիւ, եւ որ կոմսի մը պատուոյ տիտղոսն ընդունած ըլլայ: — Այս ամէնը շատ մութ է:

*մայրաքաղաքը Մելիտենէ) զինուորական նկարագրաւ* կոմս *մ'ունէր*[15]. *բայց միւս կողմանէ հաստատեց երկու նոր դքսեր, որոնց մին կը նստէր ի Կթառիճ. եւ միւսը՝ Արտալէզ*[16]: *Ուրիշ խօսքով ըսելով՝ Եփրատ շատ հեռու գիծ մը կ'երեւար պաշտպանութեան ընդհանուր բանակադրին համար, զոր անոր համար փոխադրած են դէպ ի բուն* Սահմանը (linies) *Հայկական լեռնաշխարհին սիրտը:*

*Բայց այս վերջին կոմսին եւ այս դուքսերուն խնդիրը անձուկ կերպով կապուած է ուրիշ դժուարին խնդրի մը հետ՝ այն է* մագիստրիանոս զօրաց ի Հայաստան (magister militari per Armeniam), *զոր քիչ մ'ետքը պիտի քննենք:*

*Յիշենք Յուստինիանոս վերջին որոշում մըն ալ՝ որ* Ականծելի (spectabilis) *աստիճանին բարձրացուց Լիբանանեան Փիւնիկէի կուսակալը, անոր անձնական տրամադրութեան տակ դնելով նաեւ աւելի* Գումար (numerus) *մը զօրաց*[17]:

---

[15] *Պրոկոպ., Վասն Շին. Գ*, 3, *էջ* 250: *Տես վարը՝ Մաս Գ, գլ. Է:*

[16] *Օրէնք Յուստին. ԼԱ, գլ.* 3. *«Երրորդ Հայոց կոմսը ո՛չ միայն քաղաքական՝ այլ նաեւ զինուորական իշխան կը կարգենք, որ անհրաժեշտ իր հրամանին ներքեւ ունենալու է նաեւ ամէն զօրքերը՝ որ հոն նստած են»* (τὸν τῆς τρίτης Ἀρμενίας κόμητα οὐ πολιτικὸν μόνον, ἀλλὰ καὶ στρατιωτικὸν πεποιήκαμεν ἄρχοντα, ἀναγκαίως ἔχειν καὶ τοὺς στρατιώτας αὐτῷ, τοὺς κατ᾽ αὐτὴν ἱδρυμένους ὑποκεῖσθαι).

[17] *Հրովարտակ Դ. (իրր* 538—539*ին*), § 2: *«Իրեն կու տանք քաջագոյն Երրորդ Դաղմատացւոց Գումարը* (τὸν ἀριθμὸν τῶν ἀνδρειοτάτων Τερτιοδελμάτων), *որ Փիւնիկէի երկրին կողմն է»:*

## § 2. Պատերազմի առաջնորդութիւնը:

*Պարթեւաց դէմ մղուած պատերազմները, Սասանեանց դէմ գլուխ հանուած առաջին արշաւանքները սովորաբար վարեցին Հասարակապետութեան ամէնէն ականաւոր անձինքն, եւ յետոյ՝ նոյն իսկ ինքնակալներն անձամբ: Այն ատեն ամէնէն ծանր կ'երեւար «Արեւելքի խնդիրը». եւ այս էր տակաւին տիրող կարծիքը Դ. դարուն*[18] *ալ: Յետոյ տակաւ այլազգ եղան իրերը. եւ եթէ շարունակուեցաւ միջամուխ ըլլալ ունակութեամբ Կաւկասի եւ Եփրատի կողմանց գործերուն, սակայն այն տեղ գործադրուած քաղաքականութիւնը գլխաւորաբար պաշտպանողական էր*[19]*:*

*Արդէն Գ. դարու ինքնակալները մեծ եռանդ չէին ցուցըներ Պարսկական պատերազմին համար. յօժարակամ կը դեգերին Անտիոքիոյ զուարճութեանց մէջ. ասոր դէմ յետաշրջում մ'երեւան կու գայ Գալերիոսի*[20] *եւ Յուլիանու հետ. բայց Ե. դարու*

---

18 *Այս ժամանակի մատենագրաց գործածած լեզուն տարակոյս մը չի թողուր այս մասին. Հմմտ.* Homo, Essai sur Aurélien, p. 55, n. 1:

19 De Gregori (*անդ, էջ* 253) *յառաջ բերած վիճակագրութիւնները կը ցուցընեն թէ դէպ ի Պարսկաստան խաւրուած զօրաքանակները* (*Պրոկոպ., ՊՊ.* Ա, 13, 18. Բ, *յաճախ, մանաւանդ*, 2, 4). *սակաւաթիւ էին, իբր միայն կէսին չափ այն զօրաց՝ որ Գոթերու եւ Վանտալներու դէմ կը կռուէին:*

20 *Սալոնիկի մէկ խորաքանդակը* (Kimt, *Տիտ.* Զ, *էջ* 20. *յաւել՝ Տիտ.* Ը, *էջ* 44) *կը ցուցընէ զինքը դեսպակակառքի մը մէջ* (cisium), *որ երկանիւ կառք*

վերջէն ետքը կը հրաժարին ա՛յլ եւս ինքնակալք անհանդիստ ըլլալէ, եւ կը խուրեն զօրավարները[21]։ Արդ ի՞նչ կ'արժեն այս վերջինները[22]։

Ասոնց մէջ կային զօրեղ կորովիներ եւ արժանաւորներ՝ Բելիսար, Ներսէս․ բայց մեծագոյն մասը վարձկանատեարք են, աւազակաբարոյ եւ քիչ վստահելի՝ իրենց մարդկան պէս։ Երբեմն բացայայտ կագի ու կռուի մէջ են եւ իրենց ձեռաց մէջ չեն կրնար բռնել իրենց անմիջական ստորակարգեալները։ Ջրաջան խորհրդակցութեան ժողովներ կը բացուին, ուր դանդաղօրէն միջակ որոշում մը կը տրուի[23]։ Այս ընչաքաղց բախտախնդիրներուն կեղեքումներն էին պատճառը

---

մըն էր ուղեւորութեան, չքեղօրէն զարդարուած․ արդ ատի՞ էր պատերազմի ժամանակ տեղափոխութեան իւր միջոցը, թէ թերեւս կը գործածէ նոյնը բացառաբար՝ քաղաք մը մտնելու համար, ինչպէս քանդակին նիւթը կը ցուցընէ։ Եփրատականին դուքսը, երբ իւր Սահմանքը (limes) կը շրջէր, հրամայած է որ Ս. Սարգիս իւր «կառքին առջեւէն» ընթանայ (Acta SS. Sergis et Bacchi, ի «Analecta Bollandiana», XIV, 1895, p. 391, 10. տես «Վարք եւ Վկայաբան.», Բ, 275)։

21 Ասոր փոխարէն բանակներուն մէջ իրենց ներկայացուցիչներ ունէր, որոնք իրենց շնորհաց տնտես պաշտօնեաներ էին։ Այսպէս Դուստիկոս, «Մատակարար ընչից արքայի» (ταμίας τῶν βασιλέως χρημάτων) պաշտօն ունի այն գանձերէն վարձատրութիւններ ընել անոնց՝ որոնց արժանիքն երեւան կ'ելլէ պատերազմաց մէջ (Ագաթ. Գ, 1, 3)։

22 Տես նախընթաց էջերը։

23 Պրոկոպ., ՊՊ. Բ, 16. 19. 24. 25. Ագաթիաս, Գ, 4, 1։

Լազիկէի ժողովրդոց մէջ մէկէ աւելի ձեռնթափութեան[24]։

Արկադիոսէ երկու դար ետքը՝ Հերակղ առաջին անգամ զարտուղութիւն մ'ըրաւ այս հաստատուն եղած սովորութենէն։ Յետոյ երբ Հերակղ իր արշաւանքը կը կազմակերպէր, անվերջ սնոտի բաջաղանօք կը խորհրդակցէին թէ ի՛նչ ընթացք ունենալու է ինքնակալը։ «Ոմանք նրբամտօրէն կը վիճաբանէին զինուորական հրամատարութեան օրինաց ու առածոց վրայ, ըսելով թէ պատշաճ է որ իշխանին հեղինակութիւնը ներկայ ըլլայ պատերազմին վտանգաց մէջ. ուրիշները՝ թէ վտանգաւոր է իր ճոխութիւնը վտանգի դնել դիպածոց բախտին առջեւ. քանի մ'իմաստակներ երկու կարծիքն ալ կը զուգախառնէին՝ պնդելով թէ մնալու է իր պալատան մէջ եւ մասնակից ըլլալ պատերազմին անոր վրայ մտածելով[25]»։ Հերակղ մեկնեցաւ, եւ շատ լաւ ըրաւ. շատ անգամ իր ներկայութիւնը միայն որոշեց յաջողութիւնը[26]։ Եւ երբ վերջին կռուին չփոթութեան մէջ՝ ստիպուած էր ուրիշներուն յանձնել Արաբաց դէմ կատարուած գործողութեանց առաջնորդութիւնը, շուտով երեւան ելլել սկսան զօրապետաց մէջ անհամա-

---

[24] Պրոկոպ., ՊԳ. Դ, 16, 3. նոյնպէս Հայաստանի մէջ՝ ՊՊ. Բ, 3, 4 եւն։

[25] Գէորգ Պիսիդէս, Արշաւ. Պրս. Ա, 112։

[26] Մաւրիկի ատեն Կոմմենտիոլոս ամօթաբար ի փախուստ դարձած էր Սիսիրբանի կռուին մէջ (Թէոփ. Սիմոկ., Գ, 6, 1—2)։

ձայնութիւնները, եւ յոյն կուսակալները թշնամւոյն հետ նաեւ գաղտնի դաշինքներ կնքեցին[27]:

Գ. դարուն տակաւ տակաւ բաժնուած են նահանգներուն մէջ քաղաքական իշխանութիւնները զինուորական գործառնութիւններէն. ասկէ յառաջ եկաւ վերջնոյս նուազումը, որ աւելի սաստկացաւ նահանգներու այլ մանրաբաժին ըլլալովը: Նոյնները վերստին բարձրացընելու համար՝ յանդեցան ի վերջոյ ստեղծելու զօրաց մագիստրիանոսներ[28] (magistri militum, «Զօրավար բանակի»). որուն հիմնարկութիւնը Կոստանդիանոսէ ըլլալու է. բայց այս հաստատութիւնը չդադրեցաւ փոփոխուելէ եւ զարգանալէ: Ամմիանոս այս պաշտօնակալներուն կու տայ ոչ-պաշտօնական յորջորջանքներս՝ «մագիստրիանոս զինուց» կամ «բանակի» (magister armarum կամ rei castrensis): Ի սկզբան գոյութիւն չունէր գաւառի մը մագիստրիանոսութիւնը (magisterium, «զօրավարութիւն»). Նոյնը կը տրուէր

---

27 Թէոփանէս, 338, 340:

28 Հմմտ. Մոմզէնի շատ լիակատար ուսումնասիրութիւնը՝ Actius, ի «Hermes», XXXVI, 1901, p. 531 ff. = Gesamm. Schriften, IV (կամ Hist. Schriften, I, 1906), p. 531—560): Կը նշանակէ թէ Հեծելոց մագիստրիանոսը աստիճանաւ խոնարհագոյն էր Հետեւակաց մագիստրիանոսէն, առանց պատճառ ցուցընելու (էջ 531, ծն. 5, եւ էջ 534, ծն. 1): Սոյն պատճառն ա՛յն էր կարծեմ՝ որ մինչեւ այն ատեն ամէնէն աւելի մեծարգի գունդը՝ լեգէոնը՝ կազմուած էր գրեթէ մի միայն հետեւակ զօրքերէ:

միայն արքունի պալատան մէջ՝ Մագիստրիանոս զօրաց (magister militum) որ շուտով կոչուեցաւ Առաքենին կամ Առաջիկայ (praesentialis) դարձաւ եղաւ ինքնակալին փոխանորդ մը բանակին հրամանատարութեան մէջ: Բայց յառաջ եկաւ պաշտօնակալաց ուրիշ դասակարգ մ'ալ նոյն տիտղոսով, բայց աւելի խոնարհագոյն աստիճանաւ, որոնք իրենց պաշտօնը կը կատարէին նահանգներուն մէջ: Սահմանափակ բաժիններ ունէին պարագայից համեմատ; բայց դոնէ աւելի ընդարձակածաւալ քան դքսութիւնները: Թէոդոս Ա. բազմացուց մագիստրիանոսներ կայսրութեան արեւելեան կիսոյն մէջ[29]: «Տեղեկ.» գրոց մէջ կ'երեւան երկու Առաքենին մագիստրիանոսներ (praesentalis), բայց աստի՝ երեք մագիստրիանոսք հեծելոց եւ հետեւակաց (magistri equitum et peditum). Թրակիոյ, Իլիւրիկէի եւ Արեւելից միացեալ մասին համար:

Ասկէ ետքը գոյութիւն ունի ընդհանուր եւ տեւական զինուորական հրամանատարութիւն մը Արեւելեան արշաւանաց համար. նոյն իսկ տեւականը նոյնն ա՛յլ եւս միայն ինքնակալին չի վերապահեր: Բայց նաեւ մանրաբաժին ընելու ձգտումն ալ կանուխէն յերեւան կու գայ: Ինչպէս որ կար Արեւելից կոմս մը (comes Orientis) եւ Պոնտոսի տեղապահ (uicarius Ponticae)[30], իրարմէ

---

[29] Զօսիմ., Դ, 27:
[30] Not., Or. I, 29, 32:

անկախ, նոյնպէս կը դանազանուէին լեզուին մէջ՝ Արեւելքի Սահմանը (limes) եւ Պոնտոսինը, թէպէտ եւ սոյնց իշխանութիւնք քաղաքական նկարագիր միայն ունէին[31]։ Այս ամէնն ընդարձակածաւալ տարածութիւն մըն էր՝ զոր պիտի պաշտպանէր ու պահպանէր առանձինն Արեւելից սպարապետը (στρατηλάτης կամ ἄρχων τῶν στρατιωτῶν τῆς ἕω, ստրատելատ կամ իշխան զօրաց արեւելից)[32]. Յուստինիանոս ստեղծեց նման պետ մ՚ալ Հայաստանի (τῆς Ἀρμενίας)[33], որուն

---

31 Օրինագիր Թէոդոսի Բ. եւ Վաղենտինիանոսի Բ. (յամէ 443). ... nec non etiam Orientis ac Pontici Limitis, «Որպէս եւ Արեւելից եւ Պոնտոսի Սահմանաց» (Օրին., Ա, 24, 5)։ Այս պաշտօնական բնագիր մըն է. իսկ հեղինակաց բացատրութիւնները բոլորովին համաձայն չեն ճշգրտագոյն բառագիտութեան հետ։ Տես Մաղաղաս, ԺԲ, էջ 308 (հրտ. Բոն ըղք.). «Նոյն Դիոկղետիանոս բերդեր շինեց Սահմանաց վրայ (τὰ λιμιτα κάστρα) Եգիպտոսէն մինչեւ Պարսկական լեռները (ἕως τῶν Περσικῶν ὅρων), կարգելով անոնց մէջ սահմանապահ զօրքեր (στρατιώτας λιμιτανέους), հաստատելով դքսեր ըստ գաւառաց (δούκας κατὰ ἐπαρχίαν) նստելու բերդերուն մէջը բազմաձեռն օգնականութեամբ՝ զգուշութեան համար. եւ անկեց թագաւորին ու կայսեր կոթողներ Ասորւոց Սահմանին մէջ (ἐν τῷ λιμίτῳ τῆς Συρίας)։ Բուն յատուկ իմաստով Սահման Ասորւոց (limes Syriacus) գոյութիւն չունէր. Դիոկղետիանեան այլեւայլ նահանգները որ «Ասորիք» կ՚ըսուէին, սահմանագլխուն կը դպչէին միայն մէկ կէտի մը վրայ։

32 Պրոկոպ., ՊՊ., Ա, 3. 8. 11. 13. 11, 6, 1. II, 24։

33 Հմմտ. Կ. Յուստ. Ա, 20 (վասն պաշտաման մագիստրիանոսաց զօրաց), 5։ Յուստինիանոս կը գրէ առ Զետաս «Մագիստրիանոս զօրաց Հայաստանի եւ Պողեմոնեական Պոնտոսի եւ Ազգաց (mag. mil. per Armeniam et Pontum Polemoninacum et gentes). ... Եւ զանազան նահանգներ, այսինքն է Մեծ Հայաս-

ենթակարգել Հայաստանի երկու նոր դքսերը[34]: Բայց այս յաւելուածական բա-

---

տան (magnam Armeniam = Բարձր Հայք), որ Ներքնագոյն կը կոչուի (quae interior dicebatur), եւ Ազգերը (Gentes), այսինքն է՝ Անձիթ (Anzetenam), Անգեղ-տուն (Ingilenam), Հաշտեանք (Asthianenam), Ծոփք (Ծաւհուենաց, Sophenam), Ծոփք Մեծ (Sophanenam), որուն մէջ է Նփրկերտ (Martyropolis, Մարտիրոսաց-քաղաք) եւ Բալահովիտ (Balabitenam), եւ Ա ու Բ Հայաստան (I et II Armeniam, Ա եւ Բ Հայք) եւ Պոլեմոնեան Պոնտոսը՝ իրենց դքսերով քու խնամոց կը յանձնենք, բոլորովին բառնալով Հայաստանի կոմսը (comite Armeniae penitus sublato), եւ հրամանիդ ներքեւ կը դնենք (կ'ենթարկենք) այլեւայլ Գումարներ (numeros՝ գնդերը), ոչ միայն զանոնք՝ զոր նոր մը հաստատենք, այլ նաեւ Ատեանին ու Արեւելեան եւ ուրիշ բանակներէ ընտրուածները, բայց այնպէս որ այն բանակաց զօրաց քանակութիւնը չնուազի. բայց որովհետեւ անոնց շատ բան աւելցուցինք՝ առանց հասարակաց իրաց վնասի եւ առանց ծախուց յաւելման, ձաւն մ'ալ ի բաց կը բառնանք, սակայն այնպէս որ այս պարգեւմանէն ետքն ալ մնացածներն աւելի մեծագոյն ըլլան քան ինչ որ մինչեւ մեր երջանիկ ժամանակն էր»: — Այս բնագրին համեմատ «Պարսկահայոց իշխանը» (ἄρχων ἐν Περσαρμενίοις Պրոկոպ. ՊՊ. Բ, 24, 6) նոյնացընելու ենք այս անձին հետ: Ուրիշ մը՝ զոր նոյն հեղինակը քանի մը տող վար կը յիշէ, կ'ըսուի «զօրավար ի Հայս» (ὁ ἐν Ἀρμενίοις στρατηγός). Մաղաղաս (ժէ, էջ 465) կը յիշէ Հայաստանի սպարապետը. եւ իր պատմութենէն կը տեսնուի որ միեւնոյն պաշտօն միանգամայն էր Սիտտասին Մագիստրիանոս (mag. mil. praesentalis). կը գրէ՝ «Հրամայեց... Զիտտայի Սիտտային Ստրատելատի որ Հայաստան կ'ապրէր (Τζίττᾳ τοῦ στρατηλάτη πραισέντου ἐν Ἀρμενίᾳ διάγοντι) իրեն նպաստակցութեան անձուլ Արեւելքը (τὴν ἀνατολήν), որ Զիտտաս նաեւ Պարսկական երկիրներն անցաւ: Պրոկոպիոս ալ (ՊՊ. Ա, 15, 3) շատ պայծառ կերպով կը հաստատէ նոյն իրողութիւնը: Բայց արդ այս խառնակումը կանոնաւո՞ր էր եւ տեւակա՞ն արդեօք:

[34] Տես վերը՝ էջ 442:

*ուղարկած է․ բայց այս բնագիրը ստուգիւ՝ ինչպէս ըսած է արդէն Սէէք, ամէնէն ուշ 535 տարիէն է, որ տարին աւարտած է* Յուստինիանու Օրինագիրքը, Codes Justinianus), *ուստի յիշեալ Օրինագրէն ալ կանուխ։ Եւ այսպէս այն կշռադատութիւնը՝ զոր կ'ընեն Գրոսսի–Գոնդի, ինքնին կը տապալի*[39]։

*Գիւտերբոք եւ Հիւբշման ուրիշ մեկնութեան մը կը յանգին՝ որ ինծի աւելի ընդունելի կ'երեւայ։ Հայաստանի 387ին բաժնուելէն երեք տարի վերջը կը մեռնի Արշակ։ Արքային կալուածոց վրայ կը մնան հինգ նախարարներ (սատրապք), եւ Հռոմ կը շատանայ ասոնց գլուխը վերադրելով* Հայաստանի կոմս (comes Armeniae)[40]։ *Ասոնք կը կառավարեն տեղական զօրքերով՝ որոնք զուտ հայկական նկարագիր ունէին, եւ կ'առնուէին այն* «Ազգերէն» (gentes)՝ *զոր Սահմանադրութիւնը կը յիշէ։ Այս* կոմսն *է՝ զոր նոյն հրովարտակը կը ջնջէ։ Նախարարները տակաւին կը մնան մինչեւ 536, բայց զրկուած իրենց զինուորական պաշտամունքներէն։ Միայն թէ այս կոմսը գոյութիւն ունէր ընդհանրապէս 390էն սկսեալ․ ուստի*

---

[39] *Նոյնպէս* կոմս (զինուորականութեան) Պաղեստինի (comes [rei militaris] Palestinae), *զոր նոյնպէս կ'ենթադրեն Գրոսսի–Գոնդի (անդ) որեւէ հաստատուն հիմ մը չունի այն երկու արձանագրութեանց մէջ՝ զոր կը յիշէ, եւ որոնք միայն կը յիշեն* κόμης *(կոմս) մը — որուն ի՛նչ ըլլալը չենք կրնար ճշդրտել։*

[40] *Պրոկոպիոս, Վանդ. Ծին., Գ, Ա. էջ 246։*

չենք կրնար զայն չփոթել խառնել 371 տարւոյ Տրայիանոս կոմսին հետ, եթէ միայն ճիշդ Հայաստանի դուքսը — որ անձնապէս կոմս տիտղոսը կը կրէր, — իր վրայ կուտակած գումարած չէր այս հնագոյն պաշտօնները՝ նախարարաց վրայ ըրած վերահսկողութեան հետ: Պէտք է նշանակել որ սպարապետ կամ ստրատելատ (στρατηλάτης = մագիստրիանոս՝ magister militum) տիտղոսը Պրոկոպիոս չի տար Զիտասի (Սահմանադրութեան մէջ Զետաս): Պատմաբանս նուազ յստակաբանութեամբ կը խօսի Զիտասի Հայաստան խաւրուելուն մասին, որ գնաց վերջ տալու համար նախընթաց կուսակալներուն կեղեքմանց, որ պատճառ եղած էին ապստամբութեան մը յառնելուն[41]: Բայց ունինք ուրիշ վկայութիւն մը ծանրակշիռ նորափոխութեան մը. միեւնոյն 536 տարին Յուստինիանոս աւելի որոշակի նշանակեց իր դիտաւորութիւնները՝ ԻԱ. Օրինագրով «վասն Հայոց, զի յամենայնի պահեսցեն զօրէնս Հռոմայեցւոց» (De Armeniis, ut ipsi per omnia sequantur Romanorum leges).

---

[41] Պրոկոպիոս, ՊՊ. Բ, 3, 6—7, 8 եւն:

## ԳԼՈՒԽ Է:

## ԲԱՆԱԿԸ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԷՋ

### § 1․ Զօրի եւ ճակատամարտի կարգը:

*Կը սկսինք ուսումնասիրել պատերազմի գործողութիւնները, պէտք չունինք ըսելու՝ թէ ի՛նչ մտօք: Ի բաց կը թողունք նոյն իսկ պատերազմաց պատմութիւնները որոնք կը գտնուին այլեւայլ երկերու մէջ, ի մասնաւորի Տիլլէրի, Ռաւլէնսընի եւ Բուրիի քով*[1]*, դիւանագիտական բանակցութիւնները, մասնամարտերու ժամանակագրական մանրամասնութիւնքն, եւ յաջորդող դաշնադրութիւնները*[2]*: Իրողութեանց այս ստուարահոծ կոյտէն պէտք է քաղել հանել այն միայն՝ որ Արեւելեան բանակաց ընդհանուր ռազմագիտութեան կը հայի:*

---

[1] The History of the Decline and Fall of the Roman Empire, by E d w. G i b b o n, ed. by J. B. B u r y, London I—V, 1897—1898.

[2] *Զ. դարու դիւանագիտական բանակցութեանց վերլուծումը եւ Սասանեանց դէմ մղուած պատերազմաց ընդհանուր պատկերը կրնայ գտնուիլ Կ. Գիւտերբոքի մատենակին մէջ՝* K a r l G ü t e r b o c k, Byzanz und Persien in ihren diplomatisch-völkerrechtlichen Beziehungen im Zeitalter Justinians, ein Beitrag zur Geschichte des Völkerrechtes, Berlin 1906.

Ասորական զօրագնդաց չուակարգին վրայ, երբ թշնամւոյն դէմ կ'երթային, չունենք մանրամասն տեղեկութիւններ՝ որ հնագոյն ըլլան Յովսեպոսի տուածներէն[3] ։ Յովսեպոս կը նկարագրէ այս ճակատը (agmen), ինչպէս Հռոմայեցիք կ'անուանէին, երբ համաձայն սովորական ոճին, այսպէս.

Բանակին գլուխը կամ առաջը՝ Սատար զօրքերը[4], աւելի թեթեւ զինուած, տեսակ մը շատ դիւրաշարժ պահակիրք, որոնք պաշտօն ունին՝ ի դիմի հարկանելու յառաջապահից, եթէ կարելի է, — պատրաստ ընկրկելու, երբ կռիւն անհաւասար ըլլայ, — եւ հետազօտելու ճանչնալու անտառներն ու թփուտները՝ ուր կրնան ծածկուած ըլլալ դարաններ, եւ ճամբաններու մանուածապատ դարձուածները՝ որոնք շատ յարմար կրնան ըլլալ յեղակարծ յարձակմանց[5] ։ Ետոյ կու գան երկու խմբեր, որոնք երբեմն իրարու տեղը կը փոխանակէին. ռահվիրա—

---

[3] Կը նկարագրէ Վեսպասիանու չուկարգը (ՊՀ. Գ, 115 եւն). եւ քիչ մ'ետքը (Ե, 47—49) Տիտոսինը՝ գրեթէ նոյն բառերով, բայց աւելի համառօտ ։

[4] Հմմտ. Սալլուստոս, Մնաց. Պատմ. 74 (հրտ. Maurenbrecher, I, p. 187). «Այն առեն Բիւթանացիք արդէն մօտեցած Արածանի գետը (amnem Arsaniam). ասոնք Սատարք են (auxillia), որոնք բանակին առաջը կարգուած են, նախ կը հասնին գետը ։

[5] Այս կէտը քիչ նշանակութիւն ունէր Միջագետաց դաշտավայրերուն վրայ, բայց չափազանց էական՝ Հայաստանի ձորերուն մէջ ։ Այս տրամադրութիւնը պահած են ապահովապէս Լուկուղղոս, Պոմպէոս, Անտոնիոս, Կորբուղոն, Թէպէտ եւ մեր աղբիւրները բան մը չեն ըսեր այս մասին ։

ներ[6]՝ ճամբաները յատակելու, ծառերը կտրելու՝ որոնք կրնան խափան ըլլալ նպարակրութեանց, աղխի կառքերուն կամ նետիչ մեքենայից: Եւ հռոմէական հետեւակազորուն եւ հեծելազորուն մէկ մասը, յատկապէս տասը հոգի իւրաքանչիւր դասակէ առ այն կարգուած. ասոնց պաշտօնն է նշանակել բանակետղի տեղը. եւ միւս կողմանէ կը պաշտպանուին դարանագործութիւններէ յառաջապահ գնդին գնութիւններովը: Կը հետեւին գլխաւոր սպայից կահն ու կազմածները, շրջապատուած յուղարկախմբէ մը: Ասոնց ամէնէն վերջը կու գայ սպարապետը, որ պարտական է բանակի առաջին շատ մօտ գտնուիլ՝ պատրաստ նոր լրեր առնլու. ինչպէս նաեւ բանակադրութեան գործավարները՝ որ կը հաստատուի իւր հրամանաւ: Զինքը կը պաշտպանեն անձնապահաց գնդերէն ընտրուած զօրքեր՝ հեծելազօր ու հետեւակազօր, ընդհանրապէս զինուած նիզակներով: Իրմէ ետքը կու գան յարձակողական մեքենայք, բանակին կեդրոնին մէջ՝ իրենց տարապայման զանգուածին համար, որով հարկ կ'ըլլայ զանոնք շրջապատել ամենամեծ պաշտպանութեամբ. ասոնց կը հսկեն մասնաւորաբար ուրիշ ընտրուած զինուորներ[7]: Արծուենշաններն ու

6 Տես վարը՝ § 3:

7 Կը տեսնուի որ Եռակյանին մէջ ընդհանուր է ջոկատման սկզբունքը: Ո՛չ մէկ զօրագունդ ամբողջական մարմին մը չէր կազմեր. ասոնց մարդկան շա–

պէսպէս դրօշները (uexilla) նման կերպով զետեղուած են, եւ ատոնց առջեւէն ու ետեւէն կ'երթան սրափողեր ու շեփորներ:

Յետոյ կու գայ ճակատի գլխաւոր զօրքը, վեց վեց մարդու շարքերով. սպաները տողաններու ետեւը կեցուած են, եւ կը հսկեն կարգի ու կարգապահութեան պահպանութեան: Իւրաքանչիւր լեգէոնի կ'ընկերանան իր ծառաները, որոնք կը վարեն ձիերը, ջորիներն եւ ուրիշ գրաստները. հարկ է որ՝ եթէ դիպուածիւ կտրուի բուն բանակէն, բոլորովին անպատրաստ չըլլայ, զրկուած ուտեստէ ու ապաղձէ եւ անկարող քանի մ'օրուան ճգանց դիմանալու: Բանակին վերջը՝ բանակի նպարավաճառներն ու արուեստաւորները, եւ փերեզակներու ալ խուռն ամբոխը՝ որոնք յաճախ կը հետեւէին բանակներուն, թերեւս ի բաց առեալ միայն ներքսակողման անպատներու խորքերը, եւ այն՝ ինքնաբերաբար ու իրենց հաշուին[8]: Սակայն եւ այնպէս ատոնց ալ զինեալ յուղարկագունդ մը կը տրուէր հեծելոց, հետեւակաց ու պէսպէս վարձկանաց, որպէս զի չըլլայ թէ աճեցընեն թշնամւոյն միջոցներն ի դիպուածի որ անոր ձեռքն իյնային: Այս գունդը միանգամայն բանակին վերջապահն էր:

---

տերը անջատուած ցրուած են այլեւայլ յատուկ ծառայութեանց համար:

[8] Պղուտարքոս, Անտ. 28:

Ասի գաղափարական չուակարգ մըն է՝ զոր կը պահէր բազմաթիւ բանակ մը՝ լիաթիւ զօրաքանակներով. եւ որոնց տարերք իրարու լաւ զուգակշռուած են. եւ որ չի սպառեր լուրջ յարձակում մը կրելու ճամբուն ընթացքին վրայ. որ կարած ճանապարհին վրայ որեւէ մասնաւոր դժուարութեան մը չի հանդիպիր՝ որուն պէտք ըլլայ յաղթել. եւ զոր թշնամույն հնարքներն ու հաշիւները չեն ստիպեր որ եւ է կերպով մը խմբերու բաժնուելու, անհրաժեշտ եւ յանկարծական շարժում մ'ընելու: Բայց այս ամէն պայմանները ցանցառ անգամ ա՛յնպէս միացած կ'ըլլան: Օրինակի համար Անտոնինոս աճապարելով հասնելու այն քաղաքն, ուր հաւաքուած էր մարական արքային գերդաստանը, իբր խոչընդոտն արգելք նկատեց 300 կառքերն՝ որ պաշարման մեքենաները ու կազմածները կը կրէին, եւ զանոնք ետեւ թողուց՝ նուիրակի մը պահպանութեան ներքեւ: Արդ այս վերջնոյս վրայ յարձակեցաւ թշնամին, կոտորեց անոր զունդը, եւ գերեց աղխն ու կազմածը[8]: Այս անխոհեմութիւնը ամբողջ պատերազմին ելքը վտանգի ենթարկեց: Վեսպասիանու եւ Տիտոսի չուն աւելի դիւրին էր կարգադրել, որովհետեւ Հրեայք յօժարակամ յարձակումներ չէին գործեր հեծելազօր չունենալուն՝ Կեսարներու առաջնորդած ահեղ զօրաքանակներուն վրայ[9], եւ աւելի կը նախընտրէին փակուիլ

9 Կեսարոսի զնդերը շատ աւելի սակաւաթիւ էին:

քաղաքներուն մէջ՝ ջանալով իրենց յուսահատական դիմադրութեամբ Հռոմայեցւոց յարատեւութիւնը վաստակաբեկ պարտասեցնել:

Այնպէս կ'երեւայ թէ Պարթեւաց դէմ մղուած պատերազմները սովորաբար կատարուած են նուաղագոյն ուժերով. այս բանս ստոյգ է Ստորին—ժամանակաշրջանի պարսկական պատերազմներուն համար: Եւ Պարթեւներն աւելի յանդուգն էին եւ յարձակումներ կ'ընէին. ուստի պէտք էր որ աւելի մանրակրկիտ խնամքով նախազգուշութիւն ըլլար. եւ այն ատեն չուակարգը՝ ճակատակարգի կերպարանք կ'առնուր: Այն ժողովրդեան ծանօթ ընտելական մարտագիտութիւնն էր՝ պատելու փորձեր ընել. արդ ասոր դէմ պատասխանելու բոլորովին յարմար կազմակերպութիւնն էր քառակուսի ճակատը (agmen quadratum) այնպէս՝ ինչպէս Ղուկուղոս գործադրեց առաջին իսկ ընդհարմանէն ի վեր[10]: Հռոմէական արշաւանքները՝ յաճախ Եփրատը կամ Տիգրիսը կ'ընտրէին իրենց ուղղութեան գիծը, եւ այն ատեն աղխն ու ռազմական կազմածները՝ մասամբ կամ ամբողջովին՝ կը յանձնուէին գետոյ ընթացքին տորմղաւ մը: Ցամակա—

---

10 Պղուտարքոս, Ղուկ. 31. Տասնուերկու վաշտերը՝ մարտաճակատի վրայ, միւսները՝ ետեւը սաղան տողան կարգաւ. ասկէ մեծապէս զարհուրեցաւ թշնամին: Գրեթէ միեւնոյն յօրինուածական կարգադրութիւնը գործադրած է Կրասոս (Պղուտարքոս, Կրաս. 23):

պէս Յուլիանոս ըրաւ այս բանս, եւ ցորենի պաշարները այս ոճով յուղարկեց։ Ուստի բանակը կրնար յառաջելու առեն մէկ կողմէն յենուլ գետին վրայ, եւ միայն միւս կողմը ազատ կը մնար թշնամւոյն հարուածոց ենթարկուելու։ Բայց գետին ընթացքը մանուածապատ շրջաններ կ'ընէ՝ որոնց հետեւիլ ստիպուած էին նաւերը, մինչդեռ զօրագնդերը կրնային ճամբան կարճ կտրել հարթավայրին մէջէն, եւ կարեւոր է անօգուտ չուեր ընել չտալ անոնց տապախառն կլիմայի մը տակ։ Նաւերը միշտ վտանգի մէջ էին կա՛մ յարձակման մը միւս ափէն, կա՛մ բնական արկածի մը[11]. ուստի Յուլիանոս վստահացաւ միայն պահեստ մը՝ իր քով պահելով ամենակարեւոր աղխն ու կազմածները, զորոնք պարփակեց իր բանակին իր կողերուն մէջ, սպասաւորներով ու այն ամէնուն հետ մէկտեղ՝ որ անպաշտպան էին, որպէս զի ապահովէ ամէն յեղակարծ յարձակումէ։ Կը գուշակէր ու կ'երեւակայէր զարանակալութիւններ իր չորս կողմն եւ նախազգուշութիւններն այնչափ աւելի կը կրկնապատկէր՝ որչափ կը մօտենար Բաբելոնի[12]։ Եւ

---

[11] Սեպտիմոս Սեւերոսի տորմիղը նետուեցաւ խարակներու վրայ (տես վերը՝ Բ. գլ. 2, ծան. 21) եւ Յուլիանու նաւերէն ալ շատերն ընկղմեցան Եփրատի մէջ, որ յանկարծ յորդեց ու զեղաւ իր ափերէն դուրս (Ամ. Մարկել. ԻԴ, 1, 10).

[12] Ամ. Մարկել. ԻԴ, 1, 4, 13. ԻԴ, 1, 2։ ne per locorum insolventiam insidiis caperetur occultis, agminibus incedere quadratis exorsus est (որպէս զի չըլլայ թէ տեղեաց անսովորութեան

իրօք ալ Յովիանոսի սաժանելի նահանջին առեն Պարսից շահաւոր մարտագիտութիւնը անփոփոխ կերպով հետեւեալն էր. Թերամարտեր՝ վերջապահաց հետ, եւ երբ Հռոմայեցիք դադար կ'ընէին՝ պատերազմելու համար, քայլերը յամրացընել, ի հարկին՝ գաղտագնաց խուսափել, եւ քիչ մը հեռուն նորէն սկսել: Այսով չափազանց դանդաղաքայլ եղաւ չուն. եւ օր մը Յովիանու բանակը կրցաւ միայն 30 ստադի (6 քիլոմեթր) ընթացք մ'ընել[13]: Շրջանիկ շարժման մը եւ յանկարծական յարձակման մը միշտատեւ սպառնալիքը Արեւելքի ամէն արշաւանաց մէջ կ'արգիլէր աւելի աշխոյժ ու արագ խաղացքները[14]:

Յետնագոյն ժամանակաց համար խնդիրը ստուերի մէջ կը մնայ: Պատերազմները որ աւելի բազմաթիւ՝ բայց աւելի կարճ էին

---

պատճառաւ ծածուկ դարանակալութեանց մէջ իյնալ, սկսաւ չըլնէքկուսի ճակատներով չուել). անհաւասարին՝ չուակարգի ու ճակատակարգի խառնակումը. — անդ, 1, 3՝ Որպէս զի իւր գնդերուն զօրութեան մասին թշնամին խաբուի՝ անջրպետեց տարածեց շարքերը, այնպէս որ իւր բանակը տասն մղոնի (15 քիլոմետրի) երկայնութիւն ունեցաւ:

[13] Անդ, ԻԵ, 6, 9: — Շատ հեռու ենք այս տեղ Վեգետիոսի (Ա, 9) տուած թուերէն՝ 20 մղոն (իբր 30 քիլոմետր) ամառը հինգ ժամերու մէջ՝ կրթուած զօրագնդի մը համար. եւ 24 մղոն՝ արագաքայլ չուերու մէջ լաւ խճուղւոյ մը վրայ եւ փոքրիկ զօրաբաժիններով:

[14] Համմ. Գլուտ., Անտ. 45: — Ուրիշ առնչական սկզբունք մըն էր՝ երբեք «փոքրիկ կծիկներ» չընել, այլ մեծահոծ զանգուածով յառաջանալ (անդ, 42):

*եւ նուազագոյն զօրաքանակներով կատարուած, — հռոմէական ո՛չ մէկ ինքնակալ այնձամբ մասնակից եղաւ, — այնչափ չեն հետաքրքրած ժամանակագիրներն իրենց մեծ գծերով՝ որչափ մանրամանր մանրամասնութեամբքն*[15]:

## § 2· Ընդհանուր մարտակազմութիւնն:

*Արդէն նշանակած եմ այն մարտակազմականը՝ զոր հռոմէացի զօրավարները նախապատիւ կը հռչակէին Պարթեւաց դէմ, այն է՝ կարճ հեռաւորութեամբ կռիւը*[16]: *Որպէս զի կարենան թշնամեաց մօտենալ առանց շատ կորուստներու՝ թանկագին միջոց մը գտած էին այն հնարագիտական շարժումը, որ թէեւ Արեւելքի պատերազմաց մէջ չէր հնարուած, բայց կոչուած էր հոն մեծ դեր մը խաղալու, այսինքն է՝ ասպարափակ յարձակումը: «Անտոնինեայ լէգէոնականները թշնամւոյն դէմ կը դառնային,*

---

15 *Տես միայն Մասն Ա. Գլ. Բ եւ յաջորդ համառօտը ճակատի, երեք առաջ կամ հաւարածին կարգին համար:*

16 *Պարթեւք նախապէս կը համարէին անկէ խորշիլ· Պոմպէի ամենահին սպաները խորհուրդ տուին յարձակումը փութացընել. Հռոմայեցիք յառաջացան՝ լուսինն իրենց թիկանց կողմն ունենալով· մարմնոց ստուերներն առաւ երկարելով՝ թշնամիները խաբուեցան իրենց եւ Հռոմայեցւոց մէջ եղած միջոցին նկատմամբ. նետերը կ'արձակէին ի զուր տեղ՝ որոնք մէկուն չէին հանդիպիր: Հռոմայեցիք մեծագոչ աղաղակաւ ինկան անոնց վրայ, որոնք չհամարձակեցան դէմ դնել, այլ անձնապուրծ փախան. բայց կորսնցուցին աւելի քան 10·000 հոգի եւ իրենց բանակն առնուեցաւ (Պլուտ., Պոմպ. 32):*

իրենց չարքերուն մէջ սեղմելով թեթեւազէն հետեւակազօրը. առաջին կարգը կամ շարքը մէկ ծունկը գետին կը դնէր եւ ինքզինք կը ծածկէր վահաններովը. երկրորդն ալ նոյնը կ'ընէր եւ կը բարձրացնէր իր վահանները առաջին կարգին ասպարներուն վրայ. երրորդն ալ անոնց կը նմանէր: Վահաններու այս շարքը՝ որ տան մը տանիքը կը յիշեցնէր կամ աւելի եւս՝ թատրոնի մը աստիճանաձեւերը, ապահով պատսպարութիւն մըն էր սլաքներու դէմ՝ որոնք կը սահէին կ'իյնային առանց մէկուն դպչելու: Պարթեւները կարծելով թէ Հռոմայեցիք խոնջած պարտասած ըլլան՝ կ'ուզէին յարձակիլ իրենց տէգերով. այն ատեն անոնք կ'ամբառնային մեծագոչ աղաղակաւ եւ ի փախուստ կը դարձընէին: Այս մարտահնարքը յաջողեցաւ շատ օրեր[17]»:

Հրէից դէմ ալ՝ որոնք յաջողակ աղեղնաձիգներ կը համարուէին, նուաղ դիպող չէր վահանափակը. եւ Հռոմայեցիք գործածեցին նոյնը ականափորութեան ատեն[18]: Երբ Գամալա մտան՝ Վեսպասիանոս եւ քանի մ'ուրիշներ յանկարծակի ենթարկուեցան մեծամեծ քարերու եւ նետերու տեղատարափի մը՝ որ տներու երդիկներէն կ'արձա-

17 Պղուտարքոս, Անտ. 45, հմմտ. 49: Նոյնպէս Անտոնինեան Հայաստանի մէջ մղած պատերազմին առթիւ է որ Դիոն Կասիոս՝ աւելի ալ երկարօրէն՝ կը նկարագրէ ասպարափակի դրութիւնը (ԽԹ, 30):

18 Յովսեպոս, ՊՀ. Բ, 537. Զ, 26:

կուէին: Այն ատեն սերտիւ քովէ քով սեղմուեցան, ծածկեցին իրենք զիրենք իրենց զէնքերովը եւ այսպէս կրցան նահանջել հեռանալ[19]: Յաջորդ դարերու մէջ Աւրեղիանոս հետեւակները փաղանգակերպ կազմեց՝ պատապարելով քովէ քով բերուած վահաններով, եւ զանոնք այնպէս արձակեց յարձակելու Դափնէի բլրոյն վրայ՝ զոր Պաղմիւրական աղեղնաւորները կը պաշտպանէին[20]. եւ Կոստոս ալ իր զինուորներն ասպարափակ ըրաւ՝ Բզաւդէի վրայ յարձակելու համար[21]:

Պարթեւաց զօրութիւնը կը կայանար գլխաւորաբար այրուձիոյն մէջ: Հանդըրտեան ժամերուն ձանկէ յապահովլի ըլլալու համար՝ ամենապարզ միջոցն էր բարձանց վրայ բանակիլ, ինչպէս Վիտելլիոս ըրաւ շատ անգամ մեծ օգուտ տեսնելով[22]: Միեւնոյն պատճառաւ եւ որովհետեւ անոնք իրենց հետ միայն քիչ մը պաշար ու խար կը տանէին, շատ մեծ հարկաւորութեան պահուն՝ կրնար օգտակար մարտական արուեստ մ՚ըլլալ՝ երկիրն աւերել ապականելը: Կորբուլոն գործադրեց նոյնը՝ մարախներու գործած աւերն ու ապականութիւնը լիակատար ընելով: Սասանեանց բազմաթիւ հեծելախմբերը նուազ չկրեցին Կոստոսի հրա-

19 Անգ, Դ, 33—34:
20 Զոսիմոս, Ա, 52, 1:
21 Ամ. Մարկեղ. Ի, 11, 8:
2[2] Դիոն Կաս. ԽԸ, 40. ԽԹ, 20:

մայած կարգադրութիւնէն, որ երկրագործներն ու անոնց հօտն ու նախիրը ապահով տեղեր գտնելէն ետքը՝ այրել տուաւ ամէն բան, նոյն իսկ արդէն գրեթէ հասունցած ցորենի հունձքերը, այնպէս որ թշնամին որեւէ բուսականութիւն չկրցաւ գտնել Տիգրիսի ու Եփրատի մէջտեղ[23]: Նաեւ Հերակղ ստիպուած էր այրացաւեր ընելու ոճը գործադրել:

Բայց բարեբախտաբար Պարթեւաց կողմանէ յարձակման մը տեղն ու օրը անծանօթ կը մնար, բայց ո՛չ տարւոյն եղանակը. յաճախ կրկնուած է թէ ցրտի ամիսներուն իրենց տեղը կը մնային[24]: Անգամ մը սակայն՝ երբ Բակուր, Լաբիենոսի ձերբակալութենէն ետքը, ուզեց վերսկսիլ իր արշաւանները Ասորիքի մէջ, պատահեցաւ որ լէգէոններն արդէն ցրուած էին իրենց ձմերան կայանները, եւ Վենտիդիոս միայն իր հնարիմացութեամբը կրցաւ ժամանակ գըտնել զանոնք հաւաքելու[25]:

---

23 Ամ. Մարկեղ. ԺԸ, 7, 3—4:

24 Տես վերը՝ Ա. Մաս, Գլ. Բ:

25 Ընտելական ծանօթ մ՚ունէր արքայիկ մը, որու մասին սակայն գիտէր թէ Արշակունեաց կողմնակից է: Անոր վստահութիւն ցուցընել սկսաւ աներկսս, եւ մանրամասաբար դաղտնիքներ ալ յայտնեց՝ որոնք շատ վտանգաւոր չէին. յետոյ կեղծել սկսաւ թէ կը վախնայ որ չըլլայ թէ Պարթեւք այս անգամ փոխանակ իրենց սովորութեան համեմատ Զեւգմայէն անցնելու՝ ուրիշ ճամբայ մը բռնեն՝ գետին խոնարհագոյն կողմէն: Կ՚ըսէր թէ դաշտավայրի ճամբան թշնամեաց նպաստաւոր է, իսկ բլուրներունը՝ Հռոմայեցւոց: Բակուր այս տեղեկութենէն խաբուած՝

Յաճախ կրկնուած է թէ Հռոմայեցիք գերազանց աստիճանաւ մ՚ունէին այն արուեստը՝ պաշտպանողական լաւագոյն միջոցները հակադրելու ամէն նոր թշնամւոյն՝ որուն հետ գործ կ՚ունենային: Արեւելեան քաղաքականութեան մասին՝ ակներեւ է բարեդիպական պատշաճողութեան այս ոգին: Եթէ Հասարակապետութեան վերջերը, երբ դէպքերը կը յաճախէին ու կը դահավիժէին, հռոմէացի զօրավարները ստիպուած էին դիմելու Դաշնակցաց ընծայած կամ խոստացած հեծելազօրու գնդերուն. արդէն Կորբուլոն ձեռնարկեց անձամբ զինուորագրել բնիկ թեթեւազէն հեծելազօր մը: Այս ընթացքին ամէնէն կերպական վկայութիւնն է Յուլիանոս այս խօսքը՝ զոր կ՚ըսէ ի դրուատիս Կոստանդեայ թէ «Ստեղծեցիր հեծելազօր մը՝ որ նման է թշնամւոյն ունեցածին[26]»: Պէտք է համեմատութեան բերել Մաւրիկի Ռազմագիտականին կարեւոր կտորը, որ առանց մանուածոյ խօսքերու կը կրէ խորագիրս՝ Πῶς δεῖ ἁρμόζεσθαι Πέρσαις. (Թէ ի՞նչպէս յարմարելու է Պարսից[27]). Եւ զոր արդէն վերլուծեցինք[28]:

---

իրօք ալ դաշտի ճամբան բռնեց որ շատ աւելի երկայն էր, եւ ասով Վենտիդիոսի ժամանակամիջոց թողուց՝ ինչպէս անոր բուն ուզածն էր, կենդրոնանալու (Դիոն Կաս. ԽԹ, 19):

26 Յուլիանոս, Ճառ Ա, 216:

27 Մաւրիկ, Ռազմագ. ԺԱ, 2, էջ 254—260. Հմմտ. այս կտորը (Զ. 2, էջ 196). որ ապահովապէս Արեւելից պատերազմները կ՚ակնարկէ. «Պէտք աւելի հեծելներ ունենալու է քան հետեւակներ. ոմանք ի

Արդէն նշանակեցինք երեքատող կազմութեանց սկզբնաւորութիւնը, տեսանք որ կը յանձնարարուէր միահարթ հողի վրայ հետիոտն նիզակաւորաց հոծ փաղանգները: Բիւզանդացիք դաշտավայրի պատերազմներու մէջ իբր դրութիւն ունէին՝ իրենց նիզակներով աւելի խոցել երիվարները քան թէ աւելի լաւ պաշտպանուած հեծեալները[29]: Եւ նշմարելով որ Պարսիկներն իրենց բանակի թեւերը լաւ չէին պատսպարեր, հաստատեցին թեւապահներ (ὑπερκεράσται) թըշնամւոյն կողերը պատելու անցնելու համար, իսկ իրենք իրենց առաջին գծին ջոկագնդերու կողերը կը պաշտպանէին թըշնամւոյն պաչարիչ շարժմանց դէմ՝ կողմնապահաց (πλαγιοφύλακες)[30] օգնութեամբ, թէ՛ ասոնք եւ թէ՛ անոնք կ'առնուէին գլխաւորաբար աղեղնաւորներէ[31]: Բաց աստի թիկունքը կը պատսպարէին թիկնապահներով (νωτοφύλακες)[32].

Մաւրիկ մատնանիշ կ'ընէ թէ Պարսից վրանները խառնիխուռն են գիշերային բանակմանց ատեն: Արդ Հռոմայեցիք յաջողակ

---

մերձուստ կռուելու համար են, ուրիշները յարձակում գործելու եւ դառնալու, բայց ի հարկին կրնան ձիէն իջնալ եւ հետի պատերազմիլ»:

28 Տես վերը՝ Ա. Մաս, Գլ. Բ:

29 Հմմտ. Թէոփիլ. Սիմոկ. Բ, 4, 7:

30 Ռազմագ. Ա, 3, էջ 29:

31 Անդ, Բ, 4, էջ 54, եւն. յաւել Գ, 14. էջ 90, եւն:

32 Անդ, էջ 58:

ու ճարպիկ էին գիշերային յարձակմանց մէջ. եւ նոյնը յաճախ գործադրեցին Տիտոսի հրէական պատերազմին ժամանակ: Այսպէս առին Ցովղապատը[31] եւ Երուսաղէմի Անտոնիա ամրոցը[32]: Քանի չափ զինուոր եւ փոք մը բաւական եղան քնացած պահակպանները զարհուրեցընել, որոնք կարծեցին թէ թշնամի ամբողջ բանակը յեղակարծ յարձակած էր, եւ ի փախուստ դիմեցին: Սակայն այս մարտագիտութիւնը դերեւ ելաւ տաճարին մերձավայրքը[35]: Կոստանդի ատեն Ուրսիկլիոս թեթեւազէն զօրաց օգնութեամբ ուզեց գիշերախառն յարձակիլ անոնց բանակէն դուրս Պարսից վրայ՝ որ Ամդայ կը սպառնային: Բայց յորովհետեւ չուզուեցաւ Ուրսիկլիոսի, որուն կը նախանձէին, առիթ ընծայել որեւէ փառք մը ստանալու, անօգնական մնալով խափանեցաւ[36]: Այս միեւնոյն պաշարման ատեն Գաղղիացիք գիշերային արտաքս յարձակում մ՚ըրին, բայց շատ անօգուտ, ինչպէս ծանօթ է[37]:

Պարսիկները նաեւ այս տեսակէտէ իրենց ոսոխներուն աշակերտն եղան՝ յաճախ յաջողութեամբ:[38] Ամիդ առնուեցաւ գիշերային

---

33 Ցովսեպոս, Պհ., Գ., 317, եւն:
34 Անդ, Ձ, 68—80:
35 Անդ, Ձ, 131—136:
36 Ամ. Մարկեղ. ԺԹ, 3, 1—2:
37 Անդ, ԺԹ. 6, 7—11:
38 Ամ. Մարկեղ. ԺԹ, 5, 5: Մաւրիկի հրահանգներուն, զորոնք ուրիշ տեղ մ՚աւելի ընդարձակ պարզաբանած է (Բազմ. Թ, 2, էջ 205—211), բառացի

յարձակմամբ միայն 70 այրնտիր աղեղնաւորաց արգանի գնդին, որոնց կ'առաջնորդէր դաւալիք փախստական մը:

Ռազմագիտականը կը շարունակէ թէ ամենէն յառաջ պէտք է ճակատամարտերուն համար ընտրել բաց ու հարթ տեղեր, առանց ճահիճներու, փոսերու կամ անկարկութեանց, որոնք կրնան խոչընդոտն արգելք ըլլալ բարեյարդար կարգաւ չուելուն[39]: Բանակը ճակատայարդարելէն ետքը սկսիլ կռիւը, երբ կը տեսնուի թէ ամէն բան պատրաստ է: Յարձակումները սլաքաց հարուածներուն նմանելու են՝ հաւասար, յաճախադէպ ու՛ արագ ըլլալով, առանց սոր՝ եթէ թշնամին պատրաստ է փոխադարձն ընելու՝ շատ աւելի բազմաթիւ մարտիկներ ու իրենց երիվարները կրնայ հարուածել: Եթէ կարելի

---

հետեւած է Հերակղ արդի Վան քաղաքին շրջակայքը (Թէոփանէս, 311): Սոյն միակ օրինակն է՝ զոր հեղինակաց քով կը գտնեմ: — Հմմտ. տակաւին Ռազմագ. Թ, 1, էջ 201 եւն περί ἐφόδων ἀδοκήτων. (վասն անակնկալ յարձակմանց): Մաւրիկ խորհուրդ չի տար միայն զինուորային շուէր կատարել թշնամի երկրին մէջ. այլ համար բացարձակ անհրաժեշտութիւն մ'ըլլալու է, եւ այն ատեն՝ ամենախիստ գաղտնիք պահուելու է (Թ, 3, էջ 212):

[39] Սակայն ասիկա կախում ունէր ցեղերէն՝ որոնք շարքերու մէջ կը մտնէին: Պարթեւներն ու Գաղղիացիք վարժած էին դաշտավայրներու. Սպանիացւոց եւ Լիգուրացւոց աւելի կը յարմարէին անհարթ տեղեր, Բրետոններու՝ անտառները, եւ Գերմանացւոց կակղացած հարթերը (Ը, 2, էջ 96): Յաւել՝ է (Երկիցս), 2, էջ 150. Յուշելու է լեռներէն, երբ կռւոյն աղեղնաւորաց դէմ է. ասոնք կրնան բարձրագոյն տեղէ մը արձակել իրենց նետերը:

չէ խորշիլ ու խոյս տալ ընդհարման մը համար քիչ յարմար տեղէ մը, այն ատեն հեծելազօրը շատ մեծ չափաւորութեամբ գործածել եւ հետեւակազօրը արձակել: Եթէ տեսնէ թէ զօրքերը կռուելու աշխոյժ չունին, այն ատեն արձակ ճակատամարտ մը չընել, այլ աւելի գաղտագողի թերամարտեր՝ որոնք շրջահայեցութեամբ ըլլան եւ որչափ կարելի է՝ այնպիսի ոճով մը որ ո՛չ զինուորներն՝ ճիշդ ինչպէս նաեւ թշնամին՝ չիմանան թէ ինչո՞ւ յետաձգուեցաւ ճակատամարտը:

Թշնամւոյն կողերուն ու թիկանց վրայ կրնան շրջանիկ կամ յետախաղաց շարժումներ կատարուիլ: Արդեամբք ալ Պարսիկները շատ հոգ տանելով քր իրենց կարգը չխանգարել՝ դիւրութեամբ անպատսպար կը թողուն իրենց կռնակը՝ ի թիկանց եղած յարձակմանց առջեւ: Անոնք՝ զոր Պարսք կը հալածեն, եւ դառնալու չեն բացարձակապէս՝ ճակատելու համար. որովհետեւ Պարսիկները փախստեաներուն հետամուտ կ՚ըլլան, ո՛չ թէ անկարգաբար՝ Սկիւթացւոց պէս, այլ հանդարտութեամբ ու յօրինուածօրէն: Ուստի անոնց դէմ ամէն դարձի շարժում կատարուելու չէ՛ ճակատէն, այլ՝ կողէն, այնպէս որ կարելի ըլլայ անոնց թիկունքին վրայ յարձակիլ:

Յաջորդ գլխուն մէջ[40] հեղինակը Սկիւթացիները կը հակադրէ Պարսից ու Հոռ-

[40] Ռազմագ. ԺԱ, 3, էջ 263—264:

մայեցւոց միանգամայն: Անոնք չէնք ամրանար դաշտի մէջ փոսի մ'ետեւը. իրենց ճակատագունդը փոխանակ երեք առաջքի բաժնուելու՝ միակ առաջք մը կը կազմէ[41]. յաղթեալ մը կը հալածեն չափազանց յամառ պնդութեամբ, միակ նպատակ մ'ունենալով՝ բոլորովին զինաթափ ընել պարտուողը:

Մաւրիկոս կը գրաղի նաեւ թեթեւազէն զօրաց կազմութեամբն ու մարզանքովը[42], որպէս զի կարենայ իրագործել իւր պաշտպանած դաղափարներէն մին՝ միջոցներու խնայողութիւնը[43]: Արագընթաց երամներ (δρούγγοι) ընդունելու են առաւելապէս դարանակալութեանց համար[44]. զննութեան խուզուած դիտազօրքերը լաւ է որ վերարկուներ հագած ըլլան՝ շատ լայն թեզանեօք անձրեւի առեն, ծածկելու համար թշնամւոյն աչքէն զրահներու շողիւնը[45]: Ռազմագէտը շատ մտահոգութիւն ունի այն ան-

---

[41] Այսպէս նաեւ Ոնիսանոս, «Ճակատամարտութիւն» ԺԱ, 3 (հրտ. Koechly-Rüstow, II, 1, p. 304—306) խորհուրդ կու տայ՝ զանոնք պարտելու համար՝ ընտրել ցռկաձեւ կազմութիւնը (ἔμβολον) կամ նաւացռուկի ձեւովը: Մի միակ օրինակ մ'ունինք նոյն իսկ Պարսից դէմ գործածուած դասաւորութիւն մը հետեւակաց սրածայր սեպի ձեւով (Պրոկոպ., ՊՊ. Ա, 18, 46):

[42] Ռազմագ. ԺԲ, 3, 3, էջ 304:

[43] Aussaresses, անդ, p. 26—27:

[44] Ռազմագ. Դ, 5, էջ 117, եւն:

[45] Այս նկատմամբ կը յիշուի Սուրէնը՝ Կարհայի ճակատին առեն (53 Ն. Ք.) «որ իւր բուն զօրքերը զետեղած էր առաջին գծին ետեւը եւ քողարկած զինուց շողշողիւնը՝ ծածկելով պաստառներով ու մորթերով» (Պղուտարք., Կրաս. 23):

յարմարութեանց մասին՝ որ յառաջ կու գան՝ երբ երկու պատերազմողաց մէջ ալ միեւնոյն ցեղէ պատերազմիկներ ներկայ են միահաղոյն։ Ուստի, կ՚ըսէ, «այն զինուորները՝ որոնք Հայրենակիցներ ունին թշնամւոյն կողմը՝ պէտք է, որ խոհեմաբար ճակատամարտէն հեռու պահուին[46]»։ Եւ որովհետեւ այն խայտաբղէտ բանակները միշտ քիչ մը կասկածելի են, գործողութեան խիզախելու առեն՝ զօրապետն իրեն գրաւելու յանկուցանելու է այն մարդիկը, եւ այն՝ «նիզակակցաց ընծաներ տալով, իսկ զինուորաց ըստ պատշաճի աւելցնելով պարգեւները[47]»։

Վերջապէս Մաւրիկ տեղեկութիւն մը կու տայ այն մասին, թէ ի՛նչ միջոցներով հրամանները կը փոխանցուէին տարբեր տարբեր լեզուներ խօսող պատերազմիկներուն մէջ[48]. կը պարզէ իւր գաղափարներն

---

[46] Ռազմագ. Է, 16, էջ 147։ Յաւել.՝ Է, 7, էջ 141՝ «Թշնամեաց ցեղակիցները հեռու շարել, եւ պատերազմի ժամանակ զանոնք չտանիլ իրենց ազգակցաց դէմ.» (Τοὺς ὁμογενεῖς τῶν ἐχθρῶν πρὸ πολλοῦ χωρίζειν, καὶ ἐν καιρῷ πολέμου τούτους μὴ φέρειν κατὰ ζῶν ἰδίων)

[47] Անդ, Ը, 2, էջ 190՝ τοῖς μὲν συμμάχοις δῶρα διδούς, αὔξων δὲ τοῖς στρατιώταις κατὰ λόγον τὰ χαρίσματα

[48] Ասիկայ շատ դժուար խնդիր մըն է։ Թէպէտ եւ յԷակէա (Eaceaea) դրուած է տապանագիր մը «Թարգմանի գործակալաց» (ἑρμηνεὺς ἐπιτρόπων) բայց ասի քաղաքական վարչութեան կը վերաբերի (Վադդինգթըն, 2143)։ Թէոփիլակտոս Սիմոկ (Բ, 10, 6) կը յիշատակէ անձ մը՝ «թարգմանն... Սարակինոսեան ցեղին, որ օգնէր Հռոմայեցւոց» (ἑρμηνεὺς . . . τοῦ Σαρακηνικοῦ φύλου, τοῦ ἐπικουροῦντος Ῥωμαίοις).

աւագ–աջակցաց (μανδάτωρες, «պատուէ-րակք», «հրաւիրակք») գնդի մը մասին, որոնք պէտք էր որ գիտնան լատիներէն, պարսկերէն եւն՝ որչափ կարելի է՝ յունարէն[47]: Այսպիսով թերեւս միշտ կրնային զինուորները հասկընալ իր ըսածները· յամենայն դէպս շատ աւելի օգտակար էին ասոնք լրտեսի կամ դէտի դերին մէջ:

Պատշաճեցումն ու յարմարումը չի կըրնար չփոթուիլ փոխառութեան հետ. եւ շատ բնական է որ ռազմագիտութիւն մը աշխատի հակազդործել ուրիշ ռազմագիտութեան մը, առանց վերջինոյս գործածած ամէն միջոցներն իւրացընելու: Ըսինք թէ Արեւելեան բանակներն իրենց հետ կը խաղացընէին բազմաթիւ փղեր, որոնք անոնց՝ Հնդկաց սահմանակից՝ նահանգներէն կու գային, նշանակեցի նաեւ այն գլխաւոր միջոցները՝ զորոնք Հռոմայեցիք կը գործածէին անօգուտ՝ մինչեւ անգամ վտանգաւոր՝ ընելու համար, այս յաղթամարմին անասունները· կը զարնէին զանոնք փորէն, կամ կը կտրէին թամբազօտինները՝ որ պինդ կապած կը պահէին այս անասնոց թիկանց վրայ բարձած աշտարակները[50]: Արդ խրտուցեալ կամ մա-

Պաւղոս Թարգմանը, որ հռոմէացի մըն էր (Գործոց., ԳԳ. Բ, 6, 22) Պարսկաստանի ծառայութեան մէջ ըլլալու է:

[49] Ռազմագ. ԺԲ, 8. 7, էջ 306—307:

[50] Յաւել՝ Վեգետիոս, Գ, 24, որ կը հռչակէ ի միջի այլոց՝ բաղխարըները, կառքերն՝ որ կը կրէին երկայնատէգ նիզակներով զինուած պատերազմիկներ,

հու կարեվէր խոցուած փիղ մը կրնար բաւել, գլխիվայր տապալելով իր վրան տարածները եւ ինքնին յերկիր կործանելով, քակտել բանակի մը մէկ գնդին կարգերը[51]։ Պրոկոպիոս պարզմտութեամբ կը յաւելու թէ Հռոմայեցիք գիտէին թէ ի՛նչպէս պէտք է վանել այն անասունները, բայց չէին օգտուիր անկէ. Երբ Խոսրով կը պաշարէր Ուռհան, կը պտտցընէր վիթխարի փիղ մը[52], որուն վրայէն նետերու ամպանման տեղատարափ մը կը թափուէր, արդ քաղաքացիք աշտարակի մը ծայրը խոզ մը կապեցին, որուն՝ այս անգամ շատ աւելի սրաձայն՝ կանչիւնը սարսեցուց փիղը եւ հեռացուց։

Հռոմայեցիք թէպէտ եւ հեռու էին Հնդկաստանէ կամ թէպէտ եւ դժուարին էր ծովու ճամբով այսպիսի անասուններ յուղարկել, կրնային զանոնք ունենալ իրենց պատերազմաց մէջ ալ. յաղթուողներն ու օգնականները յաճախ այնպիսի ընծաներ նուիրեցին իրենց[53]։ Երբ Գորդիանու պարս-

---

հետի թեթեւազէններ՝ ծածկուած սպառազինութեամբք, որ դրուագուած էին երկաթի սայրերով։

[51] Պրոկոպ., ՊՊ, Դ, 14, 35, եւն. Հմմտ. Ագաթիաս, 7, 9, 8. Հռոմայեցի մ՚իւր նիզակը կը վարէ փղի մը ճակատը, որ իւր խոցուածէն մոլեգնած՝ կատաղաբար կը շարժի եւ խառնակութիւն կը սփռէ Պարսիկ բանակին մէջ։

[52] Յաճախ նոյն իսկ արքայից-արքայն փիղ մը կը նստի փոխանակ ձի հեծնելու. այսպէս՝ գետ մ՚անցնելու համար (Եւագր., Ե, 14)։

[53] Սալոնիկի յաղթական կամարին վրայ (Kinch, Տխտ. Ե, էջ 37) կը տեսնուին շքախմբի մէջ Պարսիկ-

կակալն յաղթութեան աւետիքը Հռոմ հասաւ՝ ծերակոյտը վճռեց ի պատիւ անոր չորեքփիղ ձաղանաց կառք մը[54], եւ Գաղերիանոս ալ նոյն պատիւներն ընդունեցաւ, որովհետեւ Սելանիկի[55] ուրիշ մէկ խորաքանդակը կը ներկայացընէ իր ձաղանաց քառանիւը (carpentum)՝ զոր կը ձգեն երկու երկու լծուած փղեր[56]։ Զ դարուն վերջը թէ՛ Ներսէսի եւ թէ՛ Վռամի բանակները փղեր ունէին[57]. բայց սա՛ անկէ էր թերեւս որ առաջնոյն բանակին մէջ կային քանի մը զօրամասեր՝ զորոնք Խոսրով Բ առաքած էր, որուն թիկնածական պահանջմանց պաշտպան կը կանգնէր այն ատեն Բիւզանդիոն ընդդէմ Վռամայ՝ անոր ախոյենին։

Ուղտերը՝ զորոնք մշտատեւ կը գործածէին Արաբացիք՝ Հռոմայեցւոց սատարները կամ թշնամիները, շատ մեծ չափով չգործածեցին Հռոմայեցիք՝ բայց եթէ նպարակրութեանց համար[58]։ Սակայն կային նա–

---

ներ՝ որ կու գան ընծաներ մատուցանել Գաղերիոսի՝ փիղեր, առիւծներ, ծիրանի եւ ոսկեճամուկ անկուածներ։

54 Վարք Գորդիանու, 7, 27։

55 Kinch, Տխտ. Է, էջ 28—29. Կ'երեւայ թէ նոյն իսկ պատերազմին ժամանակ Պարսիկները փղերուն կառք ձգել կու տային. հմմտ. Տխտ. Ը, էջ 42։

56 Հերակղ ալ Աքեսեղէքէն դարձին Կ. Պոլիս մտաւ բոլորովին նման կառքով մը (Նիկեփոր, ի PG. Migne, էջ 26։

57 Թէոփիլ. Սիմոկ. Ե, 10, 11։

58 Տակիտ., Տար. ԺԵ, 12, Հիւղինոս hեծանող (epitatae) կը կոչէ ուղտապանները (dromedarii) եւ կ'ըսէ թէ փոխադրութեանց ծառայութեան սահմա–

բատեան տաճիկ ուղտեր (δρομεδάριος) որ կանոնաւոր երամակախմբոց (turmae) վաշտ կազմած էին Արաբիոյ նահանգին մէջ[59], եւ «Տեղեկ. Աստիճ.» գրոց մէջ կ'երեւայ նաեւ «թեւ ուղտապանաց» (ala dromedariorum)[60] Պաղեստինի դքսին՝ տրամադրութեան ներքեւ։ Վեգետիոս[61] կ'ըսէ թէ ուղտերը շատ օգտակար չեն պատերազմի համար[62]. իսկ այն դիպաց մեծագոյն մասը՝ զորոնք սակայն եւ այնպէս կրնային վկայութեան բերել, չեն վերաբերիր մեր այս տեղւոյ նիւթին[63]:

Շատ այլազան պարագաներ համընթաց եղած են յառաջ բերելու այն արդիւնքը, որ Արեւելեան ամէն պատերազմաց մէջ՝ ռազմագիտութեան մէկ յատուկ մասը՝ մանաւանդ առաջնակարգ կարեւորութիւն ստացած է, այն է՝ քաղաքապաշարումը. եւ իրեն հետ բնականապէս՝ տեղեաց պաշտպանութիւնն ու ամրագործութիւնը, համառօտ ըսելու համար՝ այն՝ զոր այսօր զինուորա-

---

նուած էին. Համմտ. Թէոդոսի կոթողը Կ. Պոլսոյ մէջ, ուր ասոնք պատկերացած են (Dict. des antiq. I, fig. 1050).

[59] Clermont Ganneau, ի Rev. d'archéol.-orient. II, 1898, p. 127.

[60] Համմտ. Վատինգտըն, 1946 (= CIL, III, 93), Բոստրա գտնուած արձ.՝ dromedarii. եւ 2267 ի Նամարա՝ δρομεδάριος յաւել՝ 2425:

[61] Վեգետիոս, Հտր. Գ, 23:

[62] Յաւել Պղինիոս, Բն. Պատմ. Ը, 68: velocitas ut equo (արագութիւն իբրեւ ձիոյ):

[63] Համմտ. Fiebinger, Dromedarii, առ Պաուլի–Վ.:

կան ճարտարապետութիւն (génie) եւ հրետապետութիւն (artillerie) կը կոչենք։

### § 3. Ռահվիրայք եւ Կամրջաձիգք:

Ճարտարապետութեան մաս կը կազմէին Ռահվիրայական ծառայութիւնը, բանակագրաց հաստատութիւնը եւ պաշարման աշխատութիւնները։ Ռահվիրայք դժնդակ աշխատութիւն մ՚ունէին ընելիք Հայաստանի լեռնագաւառները եւ Կաւկասի ստորոտները։ Տիգրան ռահվիրայից մեծ գունդ մ՚ունէր իւր հրամանաց ներքեւ[64]։ Պէտք էր աշխատիլ բանալու ճամբաները երկիրներու մէջ՝ որոնք շատ ցանցառ կը կոխուէին եւ միայն անձուկ շաւիղներ եւ վայրընդհատ արահետներ միայն ունէին. դարձեալ՝ կամուրջներ ձգել, անտառներ կտրել, եւն։ Ճիշդ ըսելով այս գործառնութիւնք ամէն անգամ յատուկ մասնագէտներէ չէին կատարուիր. այսպէս ռահվիրաներ առանձին կը յիշատակուին Տիտոսի չուակարգին մէջ[65]։ Բայց հրէական պատերազմին նկարագրութիւնք ցոյց կուտան թէ յառաջ լեգէոնականաց բոլոր ամբողջութիւնն ալ առանց զանազանութեան կը սահմանուէր այս կարգի աշխատութեանց։ Պարսիկներն ալ յայսմ Հռոմայեցիներէն նուազ կիրթ ու վարժ չէին[66]։ Ծանօթ է այն սքանչանքը՝ զոր կը խոստովանի Պրոկոպիոս

64 Պլուտարք, Լուկ. 26։
65 Յովսեպոս, ՊՀ. Ե, 47։
66 Հմմտ. օրինակի համար Ագաթիաս, Գ, 9, 3։

Վրաստանի եւ Կողքիսի անտառաց այն յանդգնագործ յարդարչաց հանդէպ, որոնք կրցան անցանելի ճամբաներ ստեղծել փղերու եւ նպարակրութեանց համար այն տեղեր՝ ուր յառաջ միայն անտառներ ու դահավէժներ կային[67]:

Երբեմն ալ սոր հակադարձը կատարել անհրաժեշտ էր. պէտք կ'ըլլար խնուլ խափանել անցք մը՝ անցափակելով քարերով ու սայլերով, փոսի մ'առջեւը կամ ետեւը[68]. կամ նոյն իսկ անանցանելի ընել գետոյ ընթացք մը՝ նաւերով՝ եւ շերտերով կամ ցցապատնէշներով[69]:

Բայց ամէնէն աւելի անհրաժեշտ էր խնամ տանիլ նաւակամրջաց շինութեան: Այս մասին յաջողակութեան մէջ թէ՛ Հռոմայեցիք եւ թէ՛ Պարսք հաւասարապէս կը մրցին իրարու հետ: Պարթեւաց նկատմամբ իրր կամրջաձիգներ՝ բան մը չենք գիտեր. բայց Պրոկոպիոս կը հաստատէ թէ Պարսիկներն ամէն գետեր կ'անցնէին առանց դժուարութեան, հետերնին ունենալով միշտ անհրաժեշտ գօտեփայտերը, որոնց կը յարմարցընէին կ'անցնէին երկաթի ճանկեր՝ կարթերու նման կեռացած[70]: Հռոմայեցւոց նկատմամբ վկայութիւնքն աւելի բազմաթիւ

---

67 Պրոկոպ., ՊՊ, Դ, 13, 5:

68 Պրոկոպ. ՊՊ. Բ, 25, 23. հմմտ. Ագաթիաս, Բ, 9, 5:

69 Ագաթիաս, Գ, 9, 2:

70 Պրոկոպ. ՊՊ. Բ, 21, 23:

եւ աւելի ճշգրիտ են[71]. կ՚ըսուի թէ անդադար կը պատրաստէին այս կրթութեանս Իստերի, Հռենոսի եւ Եփրատայ ափանց վրայ: «Կամուրջ մը կառուցանելու սահմանուած նաւակները լայն են. զանոնք կը շարեն քիչ մը վերագոյն գետին այն տեղէն՝ ուր կամուրջը պիտի ձգուի: Նշան տրուելու պէս՝ կ՚արձակուի առաջին նաւը, որ հոսանքէն քշուած կը ձգուէր կը տարուէր գետափին երկայնութեամբը: Երբ որոշեալ տեղը կը հասնէր՝ նաւու մէջ եղողները հոսանքին մէջ զահաւէժ կ՚ընկղմէին քարերով լեցուն կողով մը՝ որ պարանով կապուած էր եւ խարսխի դեր կը կատարէր: Նաւակուրը գետափին կը կցէին տախտակներով, եւ նոյն ոճով կ՚ընէին յաջորդ նաւակներուն համար ալ[72]»: Թերեւս նաւակները եւ կրերն ալ իրարու կը կապուէին մալուխներով. այսպէս՝ հիւսուած ոլորած կնիւնէ (ճլէ) պարաններով իրարու կապած էին Եփրատի վրայ Հերակլի ձգել տուած նաւակամուրջին կրերը[73], այդ կամուրջը սակայն Պարսիկները յաջողեցան կտրել՝ իւր նպատակին ծառայելէն յառաջ[74]:

---

71 Հմմտ. Առիանոս, Արշաւ. Ե, Է, 3: Καίτοι γε ταχυτάτη ὧν ἐγὼ οἶδα 'Ρωμαίοις ἡ γεφύρωσις ἡ διὰ τῶν νεῶν γίγνεται, (թէպէտ եւ արագօրէն՝ ես տեսայ Հռոմայեցւոց նաւաձգութիւնը՝ որ նորերու ձեռօք կ՚ըլլար):

72 Եւսեբ., առ Սուիդասայ, ի բառին Ζεῦγμα.

73 Թէոփանէս, Ժամանակագր. 313:

74 Նոյնպէս Վահրամ Տիգրիսի անցաւ նաւակամուրջով մը. բայց որպէս զի ուրիշները նոյնը չգործածեն՝ անցնելէն ետքը կտրեցին կամուրջին լարերը

*Յովհաննու Նահանջին առեն՝ Հռոմէա-կան բանակը Տիգրիսն անցաւ* տկակամուր-ջով *մը* (ascogefrus[75]), (*այսինքն՝ ἀσκός «տիկ» եւ γέφυρα «կամուրջ») · այսպէս կը կո-չուէր կամուրջ մը՝ որ ճեպով կը պատրաս-տուէր փչուած ուռեցուած կաշեայ տիկերով, որոնց վրայ տախտակներ կը ձգուէին ու կրուէին[76]: Այս կերպն անշուշտ չէր ներէր որ նաւակամուրջներուն իրապէս ծանր բե-ռներ ա՛յնպէս արագութեամբ փոխադրուէին՝ ինչպէս կ՚ըլլար նաւակամուրջներուն վրայէն · բայց դիւրակատար գործադրելի էր այն եր-կիրներուն մէջ՝ ուր անտառներ կը պակսէին, եւ կ՚երեւայ թէ Արաբացիներէն հնարուած էր, որոնք ստիպուած էին այսպիսի ատաղձ-ներով բաւականանալ[77]: Նաւակները կամ կրերը՝ թէպէտ քակտուած թէպէտ ոչ՝ սայ-լերու կամ կառքերու վրայ[78] բարձած տա-*

---

*կամ պարանները՝ որ զանի կը բռնէին (Մակլէր, Սեբէոս, էջ* 14 = *Հայ բնագիր՝ էջ* 31 *«անցանել յայն-կոյս գետոյն Դգլաթայ ընդ* զամ *ի Վեհկաւատ, եւ* հատանել զլարս կամրջացն»):

[75] *Ամ. Մարկեղ. ԻԵ*, 6, 15:

[76] *Ուրիշ անգամ մը կրեր կամ նաւակներ պակ-սելով՝ արգելք եղած էր գետ մ՚անցնելու. այն ատեն դիւղի տներուն մէջ գտնուած անկողինները զետեղե-ցին տիկերու վրայ՝ զորոնք դիւրին էր հայթայթել այգիներով ծածկուած երկրին մէջ: Զօրագնդին զլխաւորներէն իւրաքանչիւրը պառկեցաւ այս անկող-նոց մէկուն վրայ՝ իրենց ձիերն ալ ետեւնէն ձգելով, եւ այսպէս առ ի չեղ կարեցին անցանել գետը (Ամ. Մարկեղ. Լ*, 1, 8—9):

[77] *Սոլինոս, ԾԶ*, 8՝ Arabes Ascitae. *Հմմտ. Պղինիոս, Բն. Պատմ. Զ*, 176:

[78] De la Berge, Essai sur le règne de

նիլը շատ ժամանակ ու ծախք կը պահանջէր․ բայց երբ իրենց ձեռքն էր ընտրութիւն ընելը՝ միշտ կը նախընտրէին նաւակամուրջները[79]։ Գետն անցնելէն լմնալէն ետքը՝ կրնային նաւակները կամ դարձեալ բարձրնել իրենց կառքերու վրայ, կա՛մ զանոնք գետին հոսանքին թողուլ, բայց շատ յաճախ զանոնք կ'այրէին առանց տատանելու, որպէս զի թշնամւոյն չմնայ այն կազմածը[80], սակայն բռնադատուած էին Բաբելոնի մէջ եղած իւրաքանչիւր արշաւանի համար նորեր շինել։

## § 4․ Բանակետղները եւ դակիշները։

Բանակետղներու կառուցումը՝ այս տեսակէտով՝ կրնայ համեմատուիլ նաւակամուրջաց հետ․ անոնք ալ աիփյափոյ կը յօրինուէին․ ամէն մարդ քիչ կամ շատ՝ գործակից կ'ըլլար[81] եւ սովորաբար զանոնք ալ կ'այրէին՝ երբ կը թողուին կ'երթային[82]։

---

Trajan. Paris 1877, p. 172 ff, 177, 179 n. 1։ Դիոն Կասիոսի (ԿԸ, 28) տուած տեղեկութիւնները սխալ ըլլալու են, ինչպէս որ ինքն ալ կ'ըսէ, եւ յառաջ եկած ըլլալու են շփոթութենէ մը։

[79] Հմմտ․ Ամ․ Մարկեղինոս (ԻԳ, 6, 21) ըսածը Ասիաբենէի մէջ եղածներուն մասին։

[80] Օրինակի համար՝ Յուլիանոս ատեն (Ամ․ Մարկեղ․ ԻԴ, 7, 4․ Լիբանիոս, ճառ ԺԸ՝ Ἐπιτάφ. 262—263; Förster, II, p. 350)․ եւ Մաւրիկի ժամանակ (Թէոփիլ․ Սիմոկ․ Գ, 17, 10)։

[81] Այս մասին գաղափար կրնանք ունենալ նկատելով այն սարքանները, զորոնք՝ Յովսեպոսի ըսածին համեմատ՝ հռովմայեցի զինուորները հետերնին կը կրէին՝ սղոց, կողով, բրիչ, տապար, գերանդի եւն πρὸς οἷς πρίονα καὶ κόφινον ἄμην τε καὶ πέλεκυν, πρὸς δὲ ἱμάντα καὶ δρέπανον καὶ ἅλυσιν, ՊՀ, Գ, 95=

Արեւելքի մէջ Հռոմէական բանակադրութեանց մասին Յովսեպոս բաւական ճշգրիտ ընդհանուր գաղափար մը կու տայ. Հռոմայեցիք կ'ամրանային պատնէշներով իրենց բանակետղին մէջ չորեքկուսի ձեւով, որուն հողը կը հարթէին՝ երբ անհաւասար էր. իրենց հետ ունէին միշտ բազմաթիւ դարբիններ եւ ուրիշ արուեստաւորներ եւ ամբաշինութեան ամէն սարուածները: Ներքին մասը կը բաժնուի թաղերու փողոցներով, իսկ դրսէն քաղաքի մը պարսպին կը նմանէր, որովհետեւ կը բարձրանային իրարմէ հաւասար հեռաւորութեամբ աշտարակներ, որոնց մէջ կը զետեղէին իրենց մեքենաները: Միջավայրին մէջ՝ պետերու վրանները, պրետորարանով մ'ալ՝ փոքրիկ մեհենի մը ձեւով, շուկայ մը, խանութներ, եւ նոյն իսկ դատարան մը կար: Ի հարկաւորութեան ամբողջը կը շրջապատուէր փոսով մը՝ որ չորս կանգուն լայն էր եւ նոյնչափ խորունկ[83]:

Արդեամբք ալ մինչեւ այժմ իբր նմուշ մնացած օրինակները, որչափ ալ մանրամասնութեանց մէջ պէսպիսութիւն ունենան, կը վերածուին մէկ ընդհանուր նախատիպի

---

հայ Թրգմ. էջ 224՝ «այլքն ունին... եւ սղոց, եւ քթոց, եւ բահ, եւ կացին. այլ եւ փոկ եւ մանգաղ, եւ շղթայս»):

[82] Յովսեպոս, անդ, 90: Ասի բնականապէս կրնայ հասկցուիլ միայն թշնամի երկրի մէջ հաստատուած բանակադրութեան համար եւ կամ սահմանագլխի շարժական բանակադրաց նկատմամբ:

[83] Գրոկոպ., ՊՀ. Գ, 76—90:

մը՝ որ շատ բնորոշ է. այսինքն՝ պատերու ուղղանկիւն՝ երբեմն քառակուսի՝ գիծ մը, մտից դռներու թուով մը՝ որ կը տարբերի ամբողջին տարածութեան կամ մեծութեան համեմատ։ Յաճախ՝ մանաւանդ փոքրիկ նմուշներու մէջ՝ ներքին պատին անմիջապէս կը կռթնի կը յենու խցերու շարք մը, շըր-ջապատին ամբողջ երկայնութեանը։ Աւելի մանրակրկիտ մանրամասնութեանց մէջ չեմ մտներ. տեղագրական ուսումնասիրութեանս ընթացքին մէջ արդէն ստիպուած պիտի ըլ-լամ այս ամուրներէն (castella) մէկ մասին համար նոյն մանրամասնութիւնները նկարա-գրել[84]։ Պատերազմի ժամանակ դանոնք մեծ օգտին կը շրջապատէին ցցապատնէշներով կամ սրածայր չերտերով։

Իսկ բանակին առ ժամանակեայ քանա-կարգութեանց մէջ՝ կառուցման կերպը կը փոփոխէին պարագային եւ տրամադրելի

---

84 Միւսներուն համար ընթերցողը կը խաւրեմ պարզապէս հետեւեալ երկին՝ Brünnow-Domaszewski, Die Provincia Arabia (յաճախ): Dussaud եւ Macler (Voyage archéologique au Safa. Paris 1901, p. 26 ff.) կը նկարագրեն զանոնք՝ զորոնք հետազօտած ու ստուերագրած են անապատին եզերքը՝ Դամասկոսի եւ Հաւրանի միջեւ։ Տես նաեւ A. v. Domaszewski, Die principia des römischen Lagers (ի Neue Heidelberger Jahrbücher, IX, 1910, p. 141 ff.) որ երկասիրութիւն մըն է նուիրուած գլխաւորաբար Փղաւիոս Սիլուայի բանակատեղին՝ Մասադայի մօտ Մեռեալ Ծովու վրայ, համեմատելով ալ զայն Լեջունի եւ Ոդրունի բանակատեղից հետ։

85 Աւ. Մարկեղ. ԺԸ, 7, 8։

*ժամանակին համեմատ*[86]*: Նպաստաւոր դիրք մըն էր բարձունքի մը գագաթը. տօս'վ աւելի յապահովի էին Պարթեւաց հեծելազօրուն յեղակարծ յարձակումէ մը: Վենտիդիոս այսպիսի տեղւոյ մ'ընտրութիւն ընելովը լիովին յաջողութիւն գտաւ*[87]*: Երբեմն բանակին մէջ կ'ամրափակէին միայն լեգէոնները, իսկ Սատարները կը հաստատուէին երկրորդական կայաններու վրայ բոլոր բոլորտիքը, ինչպէս ըրաւ Կորբուղոն: Մաւրիկի* Ռազմագիտականը *հազիւ թէ կը ճառէ* ամուրներու *վրայ* (castella..)*. կը յանձնարարէ անոնց մէջ ապահովցընել աղխն ու կազմածը եւ բեռնարարձ գրաստները, եւ*

---

[86] *Տիգրանի դէմ* (*Աւ. Մարկեղ.* *ԻԴ*, 5, 12) *բարձրացուցին հաստատուն պատուար մը, փորեցին խորունկ փոսեր եւ զանոնք ամրացուցին զօրաւոր ցցապատնէշներով, որպէս զի պատսպարուած ըլլան անակնկալ յարձակումներէ: Յովիանոսի զինուորները իրենց բանակին չորս կողմը* (*անդ՝* *ԻԵ*, 6, 5) *կը տնկեն սուսերի նման սայրասուր ծայրով ցցեր կամ չերտեր: — Մենանդրի կզզիացեալ մէկ վկայութեան համեմատ՝ զոր Սուիտա յառաջ կը բերէ* (*ի բանին Ἀπεταφρευον*) *հմմտ.* Müller, FHG, IV, p. 259, 8) *Հռոմայեցիք երկայն ժամանակ զանց առած ու խափանած էին իրենց բանակետղերը փոսերով ամրացընելու սովորութիւնը. եւ միայն յետոյ Մաւրիկ՝ որ նախ զօրավար էր Արեւելքի մէջ եւ յետոյ ինքնակալ եղաւ, կրկին վերադարձաւ այս իմաստուն սովորութիւնը գործադրելուն: Այս ալ անշուշտ ստիրագայից զրուատեաց դէպքերէն մէկն է, որոնց պէտք չէ տալ այն ընդարձակ նշանակութիւնը՝ զոր ըստ երեւութին կը պարունակեն: Հմմտ. Սոկրատ, Պատմ. Եկեղ. Է,* 20, *էջ* 780 (Migne)*: ἔνθα τὴν [illegible] οἱ Ῥωμαῖοι πρὸς [illegible] φυλακὴ ἐπεποίηντο.* (*յամէ* 420)*:*

[87] *Դիոն Կաս. ԽԹ*, 20*:*

բազմացընել պահակները՝ մանաւանդ երբ շրջակայքը խաղաղ կ'երեւան[88]։

Պատերազմաց նկարագրութիւնները չեն ներեր ընդնշմարելու թէ բանակադիրքերու ներսը զօրագնդերն ի՛նչպէս կը բաշխուէին ընդհանրապէս. իսկ բանակադրութեան ճառերը անոր վրայ կը խօսին բոլորովին տեսական հայեցակէտով մը։ Կ'աւանդուի մեզի թէ Հիւգինոս, երբ իւր «Վասն կազմածոց Ամրութեանց[89]» գիրքը կը գրէր, աչքին առջեւ ունէր Արեւելքի մէկ պատերազմը, նկատելով որ իւր բանակադրից մէջ տեղ մը կը վերապահէ ուղտերու համար[90]։ Սակայն այս մատենին գրութեան համար նշանակուած թուականը տակաւին ենթադրական կը մնայ[91], եւ այս մանրամասնութիւնն՝ որուն ա՛յնչափ կարեւորութիւն կը տրուի, շատ քիչ վճռական կէտ մըն է. Հիւգինոս կրնար փոխադրութեան համար ուղտերու գործածութեան նախահոգակ ուշադրութիւն ընել, առանց վախ մ'ունենալու թէ իւր մատենկան մէջ կը սպրդին այնպիսի սկզբունքներ, որոնք բազմաթիւ ժամանակաշրջաններէ են եւ Պե-

---

88 Մաւրիկ, Ռազմ. Ե, 2, էջ 122. Ժ, 1, էջ 237։

89 De munitionibus castrorum, հրտ. Domaszewski, գերմ. թարգմանութեամբ ալ. Լայպցիգ, 1897. տես Տխտ. Ա եւ Բ։

90 Անդ, § 29, էջ 16։

91 Գ. դարէ՞ն, Schantz, Röm. Literaturgeschichte$^{2}$, II, 2 (1901), p. 401—402, նոյն դարուն վերջերը՝ կ'ըսէ Շիլլեր (Schiller, Kriegsalterth.$^{2}$, 1903, p. 259).

տութեան զանազան մասերուն կը հային ։ Ժողովածոյ խմբագրութեան այս տեսակը լիովին համեմատ էր հնութեան սովորութեանց ։

## § 5. Տեղեաց վրայ յարձակումներ եւ անոնց պաշտպանութիւնը ։

Արեւելքի պատերազմները մեծագոյն մասամբ պաշարման պատերազմներ են ։ Այս մասին շատ օրինաւոր է որ, Եփրատի պաշտպանութեան խնդրոյն համար, կարեւոյն չափ ուշադրութիւն դարձընենք այն գործողութեանց՝ որոնց առիթ տուին հրէական կրկին ապստամբութիւնները[92], որովհետեւ Հռոմայեցիք անոնց մէջ կատարելագործեցին քաղաքապաշարման իրենց արուեստը ։ Իսրայէլական ժողովուրդը կ'ապստամբէր բոլորովին ինքնայատուկ պարագայից մէջ. շատ քիչ մարզուած էր զէնուց արուեստին մէջ, եւ հազիւ թէ ունէր իսկ նոյնը. ազգովին ապստամբութեամբ ստացած էր հետեւակազօրք մը՝ բայց ո՛չ նաեւ հեծելազօրք մը. եւ նոյն իսկ պետեր կը պակսէին իրեն[93] ։ Ուստի պէտք էին հրաժարիլ ի դիւրոջ տրուած մեծ ճակատամարտներէ, եւ բաւա-

[92] Այս պատմութիւնը մեզի համար կը սկսի նոյն իսկ Երուսաղէմի այն առաջին պաշարմանէն, ուր, Պոմպէոս կը տրամադրէր այն մեքենային վրայ զոր Տիւրոսէն բերել տուած էր (Յովսեպոս, ՊՀ, Ա, 147) ։

[93] Ճիշդ այս երեք կէտերը կը պարզաբանէ իրաւամբ Տիտոս այն բանախօսութեան մէջ (adlocutio) զոր Յովսեպոս անոր բերանը կը դնէ Տարիքէի առջեւ (ՊՀ, Գ, 477) ։

կանանալ պաշտպանելով բնակութեան կեն-
դրոնները. եւ այս բանն ըրին ամենէն ուժ-
գնութեամբ մը: Այսպիսով չատ աղետաբեր
չէր ըլլար իրենց սպառազինման անբաւական-
ութիւնը, եւ հեծելազօրն ալ անօգուտ կ'ըլ-
լար, եւ հրամանատարութեան իսկ մասին՝
աւելի նուազ գիտութիւն ու փորձառութիւն
կը պահանջուէր: Վերջապէս պաշարեալք
կրնային օգտուիլ այն տագնապալի առթէն՝
զոր Հռոմայեցիք կ'ունենային ծառոց պա-
կասութենէն [94], նորոգելու եւ նորակերտելու
համար իրենց մեքենաները՝ որ փճացած
կամ այրած էին, եւ անոնց սարահարթակներ
կառուցանելու համար: Աստ փոխարէն քա-
ղաքները չրջապատուած էին ահագին պա-
րիսպներով. որովհետեւ ստուգութեամբ ու-
նէին չինուածոյ ընտիր քարեր, եւ երկրին ալ

---

[94] Երուսաղէմի պաշարման միջոցին՝ Տիտոսի ատեն՝ պէտք էին որ երթային փնտռէին մինչեւ 90 կամ 100 ստադ քաղաքէն հեռու տեղերը (ՊՀ. Զ, 5—6 եւ 151): Շրջակայքը միայն չրջափակներ ու ցանկապատներ կային կամ պտղատու փոքրիկ ծառեր, զորոնք նոյն իսկ ինքն Տիտոս որոշեց կտրել սպառել, որովհետեւ Հրէից յարձակումները ծածկելու կը նպաստէին (Ե, 106—107, 264). Տաճարը բռնելու համար հաստ գերաններ ունենալու համար՝ Ագրիպպաս արքային ստիպուած էր զանոնք Լիբանանէն բերել տալ մեծ ծախքով. Յովհաննէս Գիսկալացի զանոնք սղոցել տուաւ պաշտպանութեան աշտարակներուն ատաղձ ունենալու համար (Ե, 36—38)։ Կը յիշուի անտառ մը՝ ուր պահուըստած էին 3000 Հրեայք՝ որ Մաքերոնտէ պրծած զերծած էին, Բեսոս սկսաւ կտրել տալ ծառերը՝ բռնադատելու համար որ այն դժբախտները դուրս ելլեն (Է, 210 եւն). սակ արդէն պատերազմին վերջն էր։

դարձեալ կ'ընծայէ յարմարագոյն դիրքեր որ սեպաքերձ էին ու ի բնէ շատ ամուր։

Հրեայք ի սկզբան մեքենաներ չունէին[95]. բայց Կեստոսի դժբախտ նահանջովը ձեռք ձգեցին անոնք ալ[96], զորոնք գործածեցին Երուսաղէմի պաշտպանութեան համար. ի սկզբան անոր գործնական վարժութիւն չունենալով՝ շատ օգուտ չէին քաղեր անոնցմէ, եւ գործածելու կերպն ալ սորված էին միայն քանի մը փախստականներէ՝ որոնք քաջավարժ չէին[97]. բայց կամաց կամաց յառաջադիմեցին, հնարեցին հանճարեղ միջոցներ հարուածներ տալու եւ անոնցմէ զգուշանալու։ Սակայն յարձակումն ալ համընթաց յառաջադիմութիւններ կ'ընէր. հնարուեցան նորագիւտ նետիչ մեքենաներ[98]։

---

95 Անդ, ՊՀ. Բ. 435։

96 Անդ 553։

97 Անդ, Ե. 267—268։

98 Այս բանս կը հաստատեն՝ Տակիտոս (Պատմ. Ե. 13) Երուսաղէմի պաշարման համար, եւ Յովսեփոս՝ Մասադայի պաշարման մասին, որ դիւան ալ նոյն իսկ Վեսպասիանոսի եւ Տիտոսի կը վերագրէ. (ՊՀ. Է. 308)։ Ադրիանոս այս մասին մտաց աւելի նուազ բեղմնաւորութիւն մը ցուցուց. իւր մէկ նամակը՝ զոր ուղղած է Ապողոդորոս Աթենացի ճարտարապետին՝ վերադրանուեցաւ նոյն հեղինակին Քաղաքապաշարումն գրոց ներածութեան մէջ (Plew, Quellenuntersuchungen zur Geschichte des Kaisers Hadrian, Straßburg 1890, p. 92—96)։ Ինքնակալն անկէ փութով խորհուրդներ կը խնդրէ նոր մեքենաներ կառուցանելու համար. խնդիրն է պաշարել կարենալ ոչ թէ քաղաքներ՝ այլ ամբողջ ժողովրդեան բազմութիւններ, որոնք զօղած են լեռանց խորշերուն մէջ եւ շահաւորապէս ամրացած։ Ապողոդորոս կը գրէ ծրագիրները մեկնաբանու–

Պարթեւական պատերազմաց նկատմամբ աւելի նուազ զարմանալի է որ կռիւները կը բորբոքէին տեղերու շուրջը: Երբ կռիւը կեդրոնացած էր Հայաստանի մէջ, որեւէ դիրք մ'ապահով չէր ձորերու այս բաւիղին մէջ՝ բայց եթէ պատնէշներու ետեւը: Բաց աստի պարզ դղեակ մը որ լաւ դիրք մ'ունէր, կը խափանէր կը փակէր կարեւոր անցք մը. Նրբանցքներու այս ցանցը կարելի չէր բռնել, բայց եթէ անոնց վրայ իշխող բանալի-կէտերով: Միջագետաց մէջ եւ գետերու մերձավայրքն ալ խնդիրը նման կերպով կը լուծուէր. ասոնք «բազմամարդ» երկիրներ չէին, եւ մեծահռչակ իսկ յաղթութիւն մը տէր չէր ըներ անոնց: Բնակչութիւնն այն տեղերն անօսրն էր. բայց անկէ կ'անցնէին ճամբաներ, կարաւաններու շաւիղներ, որոնց վրայ կը հսկէին ամրոցները: Այս աշխարհը պահելու համար հարկ էր որ նախ աշխարհակալուէին եւ յետոյ շարունակ գրաւուած պահուէին կղզիացեալ դիրքերը[99]:

---

թեանց հետ մէկտեղ, որոնք կը համապատասխանէին ամէն դիպաց պատահականութեանց՝ զորոնք կրնար նախատեսել՝ առանց երկիրը ճանչցած ըլլալու: Այս նախազգուշութեանց ձեռնարկուած ըլլալն է աչքի առջեւ ունենալով Բարկոկեբայի դէմ մղուելու պատերազմը:

[99] Այս կէտս չըմբռնեց Ցուլիանոս. ցորչափ կը յառաջանար դէպի հարաւ՝ այնչափ կ'աւերէր պարսկական բանակետղերը եւ բնաջինջ կ'ընէր պահակագնդերը եթէ հպատակութիւն յայտնած չըլլային. բայց այս հպատակութիւնը միայն առ երեւոյթ եղած կրնար ըլլալ: Այս մարդիկ չէզոք էին, պարզապէս

Կ՚ըսուի թէ Պարթեւք միշտ անյաջողակ էին պաշարմանց, եւ արդէն հինք կը կրկնեն այս բանս: Իրողութիւնն անտարակուսելի է, բայց երկրորդական նշանակութիւն ունի: Իրենք չէին յարձակում գործողները. երբ կը ծանուցուէր իրենց կերպական սպառնալիք մը, ապահով ու պատրաստուած յարձակում մը, կը պատահէր որ նախայարձակում մը կատարէին, բայց այս տեղ շատ ցանցառ պէտք ենք աշխարհակալութեան խորհուրդ մը տեսնել: Իրենց նպատակն էր ուժասպառ տկարացնել թշնամին, որպէս զի այլ եւս ախորժակ չունենայ կրկին գալու: Սասանեանք յաջորդեցին Արշակի տան. եւ սոնք նախայարձակ են. այս առենէն սկսեալ ի հարկէ կը կրթուին կը հրահանգուին ամուրներ պաշարելու մէջ: Սաստկապէս ոգորեցան Մծբինը գրաւելու, ամէն բանի ձեռք զարկին արգիլելու համար Բիւզանդացիները որ չամրացնեն Դարայի սահմանակայանը: Սահմանագլխոց ամրոցներու (castella) այս խնդիրն երկայն ժամանակ

---

սպասելով պատերազմի ելքին (Ամ. Մարկել. ԻԴ. 2): Միայն Լիբանիոս պարզմտութեամբ գոված է այս անխոհեմ վստահութիւնը (Ճառ ԺԸ՚ Ἐπιτάφιος p. 219; հմմտ. Förster, II. p. 332). — Անտոնինոս դասալիք փախստականը Ջերմագին համոզած էր Շապուհ արքայն չզբաղիլ քաղաքներու պաշարումով, այլ շիտակ Եփրատի վրայ քալել. (Ամ. Մարկել. ԺԸ, 6, 3). բայց արքային առջեւ ամէն կողմ աւերակ անապատ դարձուած ըլլալով՝ կարելի չեղաւ այս ծրագիրը գործադրել, եւ նոյն տարւոյ իբր արշաւանքն աւարտեցաւ Ամիդայ շատ երկարատեւ պաշարմամբը:

դերիշխող նիւթն եղաւ խաղաղութեան բա-նակցութեանց։

Հայք Պարթեւները կանխած էին մե-քենաներու ընծայած առաւելութիւնք եւ օգուտները ըմբռնելու մէջ։ Արդեօք ա՞յն էր ատոր պատճառը որ հելլենական գաղափար-ները անոնց քով աւելի յաճախած էին սպըր-դելու մտնելու։ Կը տեսնենք թէ Տիգրան իւր քովը կը պահէր Կալիմաքոսը, որ յոյնա-պէս յոյն մըն է, որուն՝ իւր զինուորական հմտութիւնը, իւր մեքենաներ հնարելու ճարտարութիւնը՝ տուած էին իրական ճո-խութիւն մը[100]։ Սակայն թերեւս Արեւ-մտեանք այս նիւթերուս մէջ այնպէս միակ ու տարամերժիկ գիտութիւն մը չունէին. որովհետեւ Տիգրան Կորդուաց երկրին մարդկան մէջ կը գտնէր վաստակաւոր զի-նուորական ճարտարագէտներ[101]։ Զիարդ եւ իցէ, Արշակունիք հոգ չէին տաներ պա-տերազմի մեքենաներ հայթայթելու. եւ նոյն իսկ կ՚արհամարհէին գործածել զանոնք, զոր բախտն իրենց ձեռքը կը ձգէր, եւ փորձել սորվելու անոնց գործածութիւնը, ինչպէս որ շատ աւելի յետոյ Հրեայք յաջողութեամբ պիտի ձեռնարկէին ընել։ Երբ Անտոնիոս սխալմունքն ըրաւ իւր կազմածներն առան-ձինն թողլու, «բարբարոսները դրաւեցին մե-քենաները եւ կտոր կտոր ըրին[102]», փոխա-

---

100 Պղուտք. Ղուկուղոս 32։
101 Ստրաբոն, ԺԶ, 1, 24, էջ 747 C։
102 Պղուտարք, Անտ, 38։

նակ պանոնք խուրացնելու։ Եւ ասոնց մէջ կար խոյ մը ութսուն ոտք երկայնութեամբ։ Կորբուլոն ալ Հայաստանի արշաւանաց մէջ բազմաթիւ մեքենաներ ունէր. եւ մաս մը գործածեց նաւերու վրայ զետեղելով, որոնք խարսխած էին Եփրատի մէջտեղը[103]։

Պատերազմի — կամ մեր ունեցած տեղեկութեան — բախտէն է որ մեքենայից գործածութիւնն այլ եւս չի յիշուիր Պարթեւական պատերազմաց մէջ Սեպտիմիոս Սեւերոսէ առաջ։ Բայց Տրայանոս ապահովապէս զանոնք ուղղած էր Հատրայի դէմ, բայց առանց յաջողութեան։ Սեւերոս կրկին ձեռք առաւ այս քաղաքին պաշարումը, երկու անգամ իր կազմածներն այրեցան, քաղաքացիները տեղացած ըլլալով անոնց վրայ կրակ մը՝ որ անշէջ կը կոչուէր[104], եւ որ անտարակոյս նաւթէ կը պատրաստուէր[105]։ Քաղաքապաշարման մասին տեղեկութիւնները մեծապէս կ՚առատանան Ամմիանոս Մարկելոսի գրութեամբն[106], որ երկայն գլուխ մը նուիրած է նկարագրելու Յուլիանոսի իր հետ տարած մեքենաները։ Հետաքրքրական բան մըն է զանոնք համեմատել Վեգետիոսի հետ[107], որ առանց յօրի-

---

103 Տակիտոս, Տար. ԺԵ, 9։

104 Դիոն. Կաս. ՀԵ, 10—11։

105 Զոնար. ԺԲ, 10, հմտ. Բոն քղք. Բ, էջ 551. — Հայք ալ նոյն կրակը գործածած էին Տիգրանակերտի մէջ (Սալուստոս, Մնաց. Պատմ. 64, հմտ. Maurenbrecher I. p. 180։

106 Ամ. Մարկել. ԻԴ, 4։

107 Վեգետիոս, Հմռ. Դ. 13 եւն։

նուածութեան օգտուած է շատ պէսպէս աղբիւրներէ, եւ Պրոկոպիոսի հետ, որ նման մեկնաբանութիւն մը կ'ընծայէ Գոթաց պատերազմին առթիւ[108]: Վիտիգէս ալ պատերազմի միեւնոյն գործիքներն իր տրամադրութեան ներքեւ ունէր. իր ցեղի մարդիկը սորված էին զանոնք գործածելու կերպն այն օրէն ի վեր, երբ սկսած էին բազմանալ լեգնել հռոմէական բանակները: Մտադիր չեմ այս բնագիրները մանրամասն ուսումնասիրել. այսպիսի վերլուծութիւն մը՝ վերակազմութեանց փորձերով՝ շատոնց եւ շատ անգամ կատարուած է[109]: Քանի մը խօսքով միայն պիտի յիշեմ գլխաւոր տեսակները եւ անոնց գործածութիւնը:

Թէ՛ արձակ դաշտի պատերազմի եւ թէ՛ պաշարմանց մէջ, ըլլա՛յ յարձակման համար եւ ըլլա՛յ պաշտպանութեան՝ կրնային գործածուիլ բաղխոտը կամ նետակալը, եւ էշը (կամ կարիճը): Պրոկոպիոս ուրիշ ամէնէն աւելի լաւ կը յատկանշէ զանոնք: Առաջինը «աղեղի պէս» էր, որ հսկայ նետ մը կ'արձա-

---

[108] Պրոկոպ. ՊԳ. Ա, 21, 3 եւն: Իր ժամանակակիցը ալ Ագաթիաս, Սիմոկատտա, կը մատակարարեն քանի մը տեղեկութիւններ:

[109] Այս քննութեանց համառօտ արդիւնքը տես Marquart, անդ էջ 249 եւն: — Քանի որ իմ բաղձանքս էր՝ իմ աշխարհագրական շրջանակէս դուրս չելլել՝ նկատողութեան առնուլ չէի կրնար Շնայդէրի յօդուածը, Rudolf Schneider, Geschütze auf antike Reliefs. (ի Röm. Mitth. XX, 1905, p. 166—184). որ նուիրուած է ուսումնասիրելու Պերգամայի մէջ խորաքանդակը եւ Իտալիոյ մէջ կոթողը Ա. դարէն:

կէր՝ ձգանէ մը մղուած այնպիսի արագութեամբ որ, ինչպէս Ամմիանոս կ'ըսէ, երբեմն կայծեր կ'ելլէին։ Էշը «նման էր պարսի» մը որ վիթխարի էր, եւ երբ զսպանակը կը թողացուէր՝ կը նետէր քարերու այնպիսի զանգուած մը, զոր մարդ չէր կրնար շարժել եւ իր ցնցման ուժգնութեամբ կը դողացնէր գետինը[110]։ Երուսաղէմի պաշարման ատեն Ժ լեգէոնի կարիճները կ'արձակէին քարեր, որ գոնէ մէկ տաղանդ կը կշռէին եւ որոնց հեռատարութիւնը երկու ստադէ աւելի էր, եւ զինուորաց բազմաթիւ շարքեր կը տապալէին[111]։ Յովդապատի առջեւ Վեսպասիանոս կարգած զետեղած էր հարիւր վաթսուն մեքենաներ[112]. այս թուոյն մէջ կային նաեւ խոյեր, որոնք երկայն գերաններ էին, երկաթի գլուխներով, որոնք առկախման եւ պրկման լարերով կը ճօճացուէին ամենամեծ աստիճանաւ դէպի ետ

---

110 Մայոզամալքայի պաշարման ատեն, կ'ըսէ Ամիանոս (ԻԴ 4, 28). «Մեր ճարտարապետներէն մին՝ որ կարճի մ'ետեւ կեցած էր, տուժեց իր կեանքը, իր կրծքին զարնուելով քար մը, զոր մեքենային սպասաւորը չէր կրցած լաւ զետեղել պարսատրկին մէջ, անոր անդամներն այնպէս պատառ պատառ եղած էին որ անկարելի էր զինքն ալ ճանչնալը»։ Յովդապատի պաշարման ատեն ալ, եթէ հաւատանք Յովսեպոսի (ԳՀ. Գ. 245—246) հռոմէական «մեքենաներէն արձակուած քար մը երեք ստադ հեռու տարաւ նետեց պաշարեալոյ մը գլուխը. եւ ուրիշ քար մը կնոջ մը մարմնէն թափ անցնելէն ետքը՝ կէս ստադ հեռուն նետեց անոր արգանդի պտուղը, որով յղի էր»։

111 Յովսեպոս, ԳՀ. Է 270։

112 Անդ, Գ. 166։

ձգտելէն ետքը՝ որով ստանելու ուժգին վազք մը կը ստանային, կը նետէին այն պարիսպին դէմ, զոր տապալել կ'ուզէին[113]: Անոնց միայն կատարած քանդագործութեանց համար Հրեայք Նիկոն (Յաղթող) յորջորջանքը տուած էին[114]:

Ամմիանոս կը յայտարարէ թէ իր ժամանակին այս խոյ գործիքն արհամարուած էր եւ անոր փոխարինած էր պաշարամարտիկը (helepolis) «քաղաքառու» որ արդէն շատ հինէն ծանօթ էր: Այս երկուքին մէջ եղած միակ տարբերութիւնն այն է որ դերանը փոխանակ պարզապէս կախուած ըլլալու տեսակ մը կախաղանէ, որով աչքին բաց ու անպաշտպան էր, քաղաքամարտիկին մէջ իր պաշտօնը կը կատարէր յապահովի ապաստանած տեսակ մը խղիկի ներքեւ, որ անիւներ ալ ունէր եւ որուն մէջ յամրօք կը կենային նաեւ մեքենային ծառայողները: Ուստի քաղաքամարտիկը բաղադրութիւն մըն էր խոյին եւ կրային, որ վերջինս ոզորէ չինուած տանեաց ձեւով մեքենայ մըն էր, ամէն կողմանէ գոցուած, եւ որուն տակը պաշարողները փոսի կամ ականի աշխատութիւններ կը կատարէին[115]: Անիւներ ունե-

---

113 Անդ, Գ. 213 եւն:

114 Անդ, Ե. 299:

115 Անդ, Բ. 537. Ագաթիաս Գ, 3, 4. Կրայն՝ իր ձեւին կողմանէ կրնայ այսպիսով չփոթուիլ այն գործւոյն հետ՝ զոր Վեգետիոս կ'անուանէ աքիշ (uineae, ձողաբարձ կազմած որթոյ, սարփենայ) կամ տախտակայարկ (plutei, տախտապատնէշք,

նալով չարժուն էր, ուստի ամենեւին հարկաւոր չէր զայն քակել տեղէ տեղ փոխադրելու համար սայլերով, եւ ասով աղխի հսկայ խոչընդոտէ մը կ'ազատէին եւ վերջապէս շատ աւելի դիւրաւ կրնար գործածուիլ անմիջապէս եւ շատ աւելի քիչ անձինք վտանգի առջեւ կը թողուր:

Այս մեքենայից մեծագոյն մասը մեծածաւալ ու սաստիկ ծանր էին. իսկ պաշարուողներուն կը բաւէին աւելի նուազ մեծութեամբ գործիքները, որովհետեւ իրենց գործն էր աւելի սպաննել քան թէ քակել ու կործանել, կամ որոնց հարկաւոր էր գոնէ միայն ափյափոյ չինուած կառոյցներ, աւելի նուազ ամուր քան որմնածները: Ահա այսպէս Ամդայ բնակիչները Պարսից դէմ կանգնեցին թեթեւ բաղիստրներ (balistae leuiores[116]) որով ի դերեւ հանեցին յարձակում մը:

Արդէն Վեսպասիանու ատեն Հրեայք մեծ հանճարամտութիւն ցուցուցին հռոմէական բախոցներու արդիւնքը չէզոքացնելու կամ նուազեցնելու մասին. Յովսեպոս իր անձին կը վերագրէ[117] այն գաղափարը որ կիրարկուեցաւ, պարիսպներու առջեւ տընկելով մեծամեծ գերաններ, որոնց վրայ կը

---

քուայտրկ, եւն): Նաեւ Ամմիանոս (ԺԹ, 5, 1) կը յիշէ Պարսից ոստերէ շինած տախտակամածները (plutea):

116 Ամ. Մարկ. ԺԹ, 5, 6:

117 Յովսեպոս, ՊՀ. Գ. 173:

կապուէին նոր մորթուած եզերու կաշիներ՝ որ տակաւին խոնաւ եւ կակուղ էին, եւ որոնց դէմ սլաքները եւ ռմբաքարերը միայն խուլ կերպով կ'ընդհարէին կ'իյնային[118]։ Ուրիշ անգամ մը յարդով լեցնել տուաւ պարկեր, զորոնք պարաններով կ'իջեցնէին ու կը միջարկէին ճիշդ այն տեղը՝ ուր խոյն պիտի զարնէր[119]։ Համայեցիք ալ աջողակութեան մէջ մրցելով կը կտրէին այս պարանները գերանդիներով, որոնք երկայն ձողերու ծայրը հաստատուած էին[120]։ Տիտոս դիտելով որ ռմբաքարերու սպիտակութենէն Հրեայք կ'իմանային քարին գալը եւ ժամանակ կ'ունենային փոխադարձաբար իրարու ազդարարելու, որով գետին կը պառկէին ու կը թողուին որ ձգերը իրենց վրայէն անդին թռչէին անցնէին, փորձեց սեւցնել քա—

---

118 Եղեռից պաշարման ատեն Հոնք նետերէ պաշտպանուելու համար կը բարձրացնէին քրձեղէն յարկաձեւեր՝ այծու մազէ շինուած (cilices), բուն «Կիլիկիան»՝ տեղւոյն այծերու մազէն ցախից, Պրոկոպ. ՊՊ. Բ. 26, 29)։

119 Յովսեպ. ՊՀ, Գ. 222 եւն։ Վեգետիոս (Դ. 23) կը յիշէ նման եղանակ մը, ուր յարդէ պարկերու տեղ կը գործածուէին բրդեայ անկողիններ ու ծածկոցներ։ Երբ Պարսիկք կը պաշարէին Լազիկէի մէջ բերդ մը, Հարուածներէն կը պաշտպանուէին կտաւեայ վարագոյրներու (կտաւապատնէշ) ու տապականներու ետեւը, զորոնք պարզած էին։ (Ագաթիաս, Գ. 4, 2)։ Սակայն նաեւ Պարսք կը գործածէին յարդը՝ զոր կը լեցնէին թելէ ու մազէ հիւսուած մեծ պարկերու մէջ. (Թէոփիլ. Սիմոկ. Բ. 18, 3) կամ նոյն իսկ պարապին կը լեցնէին փայտեր, (Պրոկոպ. ՊՊ. Ա, 7, 12). Հմմտ. Դիոն. Կաս. ԿԶ, 4։

120 Յովսեպոս, ՊՀ. Գ. 225։

րերը, եւ Յովսեպոս կ'ապահովցնէ թէ այս գիւղը յաջողեցաւ[121]։

Յովդապատի պաշարելոց մին ծանր քար մը դահավէժ ձգելով խոյի մը վրայ յաջողեցաւ ջախջախել զայն[122]։ Ասի երկրորդական հնարագիտութիւն մըն էր, որմէ միայն մասնական ու անբաւական յաջողութիւններ գտնելու կրնար սպասուիլ։ Ամենամեծ միջոցն էր զանոնք այրել ծծմբով, ձիւթով,

---

[121] Անդ, Դ, 271—273։ Սակայն դժուար է հաւաստի համարիլ Յովսեպոսի պատմած ամէն մանրամասնութիւնները, օրինակի համար հետեւեալը. երբ Հռոմայեցիք աւարտեցին իրենց աշխատութիւնքն (պաշարման՝ Երուսաղէմի առջեւ) լարի կապուած կապար մը նետեցին չափելու համար իրենց շինած հողաբլրին ու պարսպին մէջ եղած անջրպետը, վասն զի պաշարեալք իրենց հարուածներով կ'արգիլէին մօտենալը. տեսան սակայն որ մեքենայք մինչեւ հոն կը նետէին. այն ատեն Տիտոս հրամայեց սկսիլ նետելու. (ՊՀ. Ե, 275—276 = Հայ թարգմ. էջ 365. «Իբրեւ գործն կատարեցաւ, կապար եւ լար ի հողաբլրոցն ձգեալ՝ արուեստագործքն զմիջոցն որ էր առ պարիսպն, չափեին. քանզի այլ ազգ ոչ կարէր լինել, զի ի վերուստ նիզակօք զնոսա հարկանէին. եւ իբրեւ զբարձանն միջոցին հաւասարաչափ գտին, յառաջ մատուցին զնոսա, եւ Տիտոս մերձ կարգադրեալ զմեքենայսն» եւն)։ Իրական կատարուած փորձ մը նոյնչափ պարզ էր ու աւելի համոզիչ։

[122] Անդ, Գ, 230։ Դիոն. Կաս. անդ. Հմմտ. Վեգետիոս, անդ. «Ուրիշները շարժուն հանգոյցներ (խեղդակապեր, հանկուրցներ) նետելով կը բռնէին խոյերը եւ կը տապալէին»։ Ճիշդ այս բանն ըրին Բեզաւդէի պարսիկ պաշարողները. (Ամ. Մարկեղ. Ի, 11, 15)։ Պաշարման մանգղիոնաց ու մեքենայից դէմ գործածուած բոլոր այս միջոցները տակաւին մի առ մի յիշուած են Մաւրիկի Ռազմագիտականին մէջ (Ժ, 3, էջ 244), որ նորագոյն հնարուած որեւէ գիւտ մը չի նշանակեր։

կպրով կամ ուրիշ այրեցականներով[123]. բայց ատոր մէջ յաջողելու համար երբեմն հարկ էր յանդգնօրէն դուրս յարձակիլ, ինչպէս փորձեցին Հրեայք՝ ընդհարելով հեծելազօրուն եւ աղեղնաւորաց դէմ, զորոնք Տիտոս կարգած էր մեքենայից բոլոր բոլորտիքը, նոյն իսկ ձեռքով կործանելով վրան պարզուած ծածկոյթները[124]: Ապահով է որ արդէն Ա դարուն հնարուած էին «հրացան» Նետք ու տէգք (maleoli, «չանթաձիգ նետք»՝ հնոց, հրանետ կամ phalaricae, փաղարիք, «հրատէգք») զորոնք Վեգետիոս եւ Ամմիանոս կը նկարագրեն, տեսակ մը չանթացեալ կամ հրաբորբոք արդներ՝ զոր կ'ուղղէին կ'արձակէին այն կաշիներու եւ մորթերու վրայ, որ կրայները ու խոյերը կը պատէին, եւ զորոնք ջուրը չէր մարեր՝ այլ միայն աւազն ու հողը[125]: Բայց չ'երեւար թէ Հրեայք զասոնք գործածած ըլլան: Բաց աստի կրնանք կարծել թէ արդինքն ալ բոլորովին ապահով չէր, թերեւս որովհետեւ դիւրին չէր անոնց պատշաճ արագութիւնը տալ. եթէ շատ արագ թռչէին՝ հրաբորբոք չէին մնար: Գոնէ Կոստանդեայ եւ Յուլիանոս ժամանակ կը շարունակէին գործածել թրջած կաշիէ ծածկոյթով պատուածները[126]:

---

123 Յովսեպոս, Պհ. Գ, 227:
124 Անդ, Ե, 279—281. Հմմտ. 473—477:
125 Տես վերը՝ Ա. Մաս, Գլ. Ա. ծն. 352:
126 Ամ. Մարկեղ. Ի, 7, 13, Unus aries resi-

Որոշ չենք գիտեր թէ ե՛րբ սկսան Պարսիկներն անձամբ շինել պաշարման մեքենաներ. Ամմիանոս կը պատմէ թէ Ամդայ դէմ ուղղեցին այն գործիքները, զորոնք Սինգարան կողոպտելով առացեր էին (quae direpta Singara possederant[127]). Հռոմայեցիք զառոնք այրեցին, բայց թերեւս ոչ ամէնը, վասն զի շատ մը կտորներ շարունակեցին գործածուիլ[128]: Երբ Կոստանդ Բզաւդէն վերստին գրաւել կ'ուզէր, գործածեց «հսկայական խոյ մը՝ զոր երբեմն Պարսք Անտիոքէ բերած ու Կարխա թողուցած էին[129]: Պաշարեալք իրենք վիրենք կը պաշտպանէին կղմինտրներով, երկանաքարերով եւ սեանց հատակտորներով. տարտամ ակնարկութիւն մը միայն կայ մանգղիոններու[130]: Անաստասի օրով Ամդայ պաշարման ատեն չի յիշուիր ժամանակագրաց կողմանէ Պարսից մեքենաձգութիւնը, ասոր հակառակ կը պատմուի թէ քաղաքին բնակիչները շինեցին վիթխարի քարընկէց պարս

---

duis celsior umectis taurinis opertus exuuis (խոյ մը՝ միւսներէն աւելի նշանաւոր՝ ցլու խոնաւ մորթերով ծածկուած)։ Հմմտ. նաեւ Ի, 11, 13։

127 Անդ. ԺԹ, 2, 8։

128 Անդ, 7—8։

129 Անդ, Ի, 11, 11. Հարկ եղած էր քակել զայն՝ փոխադրելու համար։

130 Անդ, 11, 12. Tormenta nihilominus et lapidem crebritas atque fundarum ex utraque parte plurimos consumabant. (Քարընկէցները սակայն եւ քարերու ու պարսերու տեղատարափն երկու կողմանէ ալ շատերը սպառեցին մեռցուցին)։

(թաքան) մը, զոր Պարսիկք իրենց լեզուաւ Toubaha կը կոչէին, որովհետեւ կ՚արգիլէր իրենց ամէն պարսպամերձ աշխատութիւնն եւ զիրենք կը կոտորէր. 300 լիտրէ աւելի ծանր քարեր կը նետէր, որոնք կը խորտակէին տախտակապատնէշներու (plutei) տանիքները եւ տակը գետեղուած մարդիկը կը ջախջախէին[131]: Եղեսիոյ առջեւ Կաւատ արքայի բանակը կրեց այն մեքենայից հարուածները, զորոնք բնակիչները կանգնած էին պատնէշներու վրայ, իսկ իրենք պատըսպարուած էին մազեայ կապերտներով[132]:

Մեր արեւմտեան աղբիւրները շատ քիչ լուսաւորութիւն կու տան պատերազմի մեքենայից Պարսից կողմանէ ունեցած գործածութեան մասին: Խոյերու հարուածներով նոր շինուած եւ լաւ չչորցած աշտարակի մը դէմ՝ կրցան բռնաբար Սինգարա մտնել[133]: Մաղաղաս ալ կ՚ըսէ թէ իրենց մանգղիոններով կործանեցին Գարուղայի պարիսպները Յուստինիանու օրով[134]: Տարակոյս չկայ թէ այս արուեստն ալ իրենց նոյնպէս ծանօթ էր, ինչպէս բոլոր միւսները՝ որոնց մասին պիտի խօսինք: Բայց աստի յընթացս ժամանակի այս հնարքները ժողովրդականացած էին նաեւ բարբարոսներու մէջ այնչափ՝ որչափ էին երկու մեծ

131 Յեսու Սիւնակեաց, Ժմնկգր. 54:
132 Անդ, 60:
133 Ամ. Մարկել. Ի, 6, 6—7:
134 Մաղաղաս, ԺԸ, էջ 461 (Հրտ. Բոն քղք.):

ազգերու մէջ։ Եւ մինչեւ անգամ բարբարոսներն էին որ կ'իրականացնէին վերջին զարգացումը, զոր մեզի համար այս տեղ հետաքրքրող ժամանակաշրջանին համար կրնանք նշանակել։ Զինուորական սարքն ու կազմուածքն երթալով բազմայօղ. եւ կընճռոտ կ'ըլլային եւ կը ծանրանային. երկու բանակներու մէջ ալ սպառազինաց զրահապատութիւնք աւելի թանձր կ'ըլլային եւ աւելի մեծածաւալ. նետիչ ու բախիչ մեքենայքն ալ հետզհետէ մեծազանգուած ու ծանրաբեռն կ'ըլլային։ Այս մեծ խոչընդոտն դժուարութիւն մըն էր այս երկիրներուն մէջ գործող զօրաց՝ որ շատ բազմաթիւ ալ չէին ընդհանրապէս։ Ուստի հակադարձ յեղաշրջում մը երեւան եկաւ ի նպաստ աւելի մեծ դիւրաշարժութեան եւ միջոցներու աւելի պարզացման, եւ այս նետիչ մեքենայից մէջ ակներեւ երեւան կ'ելլէ Հոնաց խոյի գիւտովը։

Այս շինուած էր կաշէպատ ձողերէ, որոնք տանիքը վեր բռնող հին մարդակները կը փոխարինէին. գերանը պահուած էր միայն յատուկ մտօք բախիչ գործւոյն համար։ Ամբողջը շատ թեթեւաբեռն եղած էր ասով, եւ հարկ չկար այնուհետեւ մեծամեծ դժուարութեամբ ձգել տանիլ զայն յոռի ճամբաներէն։ Իբր քառասուն հոգի զայն կը բռնային, անոնք ձեռքերուն մէջ կը բըռնէին ցցեր՝ կռածայր երկաթի ճանկերով,

որոնցմով Նզախարխուր վար կը Թափէին պարսպի քարերը, զորոնք խոյի հարուածները խախտած էին։ Հոնք չինած էին բազմաթիւ այսպիսի մեքենաներ, զորոնք գործածեցին Բուզանդացիք Լազիկեան պատերազմին մէջ[135]։ Պարսից Մահրմահրով զօրավարն երբ լսեց անոնց այս մասին պարծենալը, ինքն ալ նոյնպիսիներ շինել տուաւ իր բանակին մէջ եղած Սաբիրացւոց[136]։

Հասարակապետութեան ժամանակ եւ Վերին Կայսրութեան սկզբնաւորութեան մեքենայք, ինչպէս տեսանք, կը գործածուէին նաեւ ճակատամարտներու մէջ։ Բայց կարծեմ թէ տակաւ սկսան չգործածուիլ, գոնէ Արեւելքի մէջ, միմիայն պաշարմանց համար։ Ասի առաջ կու գայ գըլխաւորաբար այն իրողութենէն, զոր մատնանիշ ըրած եմ արդէն, այսինքն՝ ամէն զօրավարի փառասիրութենէն տիրանալու իր ճամբան խափանող քաղաքներուն եւ բերդե-

135 Պրոկոպիոս, ՊԳ. Դ, 11, 29 եւն։

136 Անդ, Դ, 14, 4։ — Կրնար պատահիլ որ ճակատամարտի մը գլխաւոր ճիգը հաստատուէր սահմանափակ մարտկոցի մը դէմ, ուր միայն սակաւաթիւ պաշտպաններ տեղ ունէին շարժելու եւ գործելու։ Այսպէս Անտիոքի մէջ Հռոմայեցիք կը նեղուէին շատ անձուկ տեղւոյ մը մէջ, ուստի խորհեցան իրարու կապել բազմաթիւ մեծ տախտակներ, զորոնք կախեցին մարտկոցաց միջնորմներու երկայնութեամբ, որպէս զի անոնց վրայ տեղաւորել կարենան բազմաթիւ պատերազմողները։ Բայց վեր բռնող չուանները խզուեցան եւ զինուորները գահավէժ Թափեցան խորութեան մէջ. (անդ, ՊՊ. Բ, 8, 9 եւն)։

րումն։ Մանաւանդ Ջ. դարէն սկսեալ, ժամանակի զինուորակոչութեան սովորական դրութեան հետեւանօք, արշաւանքները շատ յաճախ աւարառու ձեռնարկութեանց կերպարանք կ'առնուին։ Կը ջանային խաղաղ ազգաբնակութենէն գերիներ բռնել, որպէս զի բռնադատեն զանոնք ծանրաբեռն հաշտութիւն մը գնելու։ Սահմանագլխոց հսկողութեան զօրագնդերը շատ բազմաթիւ չէին, եւ դիւրին էր անոնց ուշադրութենէն վրիպիլ, իսկ պահեստի գնդերը դանդաղօրէն միայն կը հաւաքուէին։ Ուստի անհրաժեշտ կը դառնար յանկարծական յարձակմանց մարտագիտութիւնը։

Բանակետղերն ու քաղաքները շրջապատող բարձրաբերձ պարիսպները չէին կրնար սովորաբար կործանուիլ կամ խրամատուիլ տեղէ մը՝ այն մեքենայից հարուածներէն, որոնք հողին վրայ կամ անոր բարձրութեամբ զետեղուած էին։ Ուստի կարեւոր բերդի մը դէմ ամէն լուրջ ձեռնարկութեան առաջին գործը կ'ըլլար պաշարելը, եւ այս շրջափակ պաշարումը գոհացուցիչ կերպով գլուխ չէր ելլեր առանց շրջապատնէշի գծերու, փոսերու եւ վանդակորմերու, որոնք քաղաքին շրջապատ պարիսպէն որոշ հեռաւորութեան մը վրայ կը կառուցուէին[137]։ Ասոր հակառակ որպէս

---

137 Այս կէտիս մասին՝ Արեւելից պատերազմաց համար չունինք որեւէ նկարագրութիւն մը, որ համեմատելի ըլլայ Կեսարու պատմածին Ալեսիայի

զի խոյերը կարենան պարիսպներու մօտենալ, կը լեցնէին՝ գոնէ քանի մը կէտերու վրայ՝ պաշտպանողական փոսերը[138]։ Այս աշխատութիւնն ամէնէն վտանգալիցն էր, վասն զի թշնամին մօտ կանգնած էր՝ դէպ ի դուրս ծռած, ուստի կը կատարուէր միեւնոյն չերտափակներու կամ ցցապարկաց պաշտպանութեան տակ, որոնք կը պահէին նաեւ մանգղիոնները ու անոնց ծառայողները։

Իսկ մեքենայից ռմբահետք (կամ Նետուած մարմնոյն բռնած շաւղին) ճշգրիտ ուղղութիւնը միշտ շատ անորոշ կը մնար, ցորչափ կարելի չէր ըլլար քաղաքին ներքսակողման վրայ հայեցուած մ'արձակել։ Այս հարկին կը համապատասխանէր թումբը (agger), որ անուամբ կը նշանակէին ամէն հողաբլուր, որ կը հասնէր պարսպին բարձրութեան մակերեսին։ Ասոր լաստակերտը

---

պաշարման մասին. (Պարզմ. Գաղ. Ե, 80)։ Ցանուցիր կան այլեւայլ տեղեկութիւններ. այսպէս Տիտոս երեք օրուան մէջ Երուսաղէմի բոլորտիքը շրջապատել տուաւ 30 ստադ երկայնութեամբ պատուարով մը, 13 բերդերով՝ որոնց շրջապատութիւնը 10 ստադ էր. բոլոր զինուորները աշխատեցան ասոր համար (Յովսեպ. ՊՀ. Ե, 499 եւն)։ Յուլիանոս կրկին շրջապատնէշ յօրինել տուաւ Մայոզամալքայի բոլորտիքը Բաբելոնի մէջ (Ամ. Մարկեղ. ԻԴ, 4, 10)։

[138] Տիտոս աւելին ըրաւ. Երուսաղէմի պարիսպները շրջապատող ամբողջ անձրպետը ընդարձակ երեսի մը վրայ՝ միահարթ հաւասարեցնել տուաւ (Յովսեպ. ՊՀ. Ե, 100 եւն)։ Գամալայի առջեւ նոյնը պաշտօն ստացաւ կատարելու ժ լեգէոնը (անդ, Դ, 13)։ Փոս լեցնել՝ ի Մաքերոնտէ (Է, 190). եւ Մասադա (Է, 304)։

կը կազմէին ամէն տեսակ աստղձներով․ այսպէս այն հողաբլրոյն համար՝ զոր Վեսպասիանոս բարձրացնել տուաւ Յովդապատի առջեւ ամէնէն աւելի դիւրամատոյց կողմը[139] «բերին բազմաքանակ ծառեր ու քարեր մերձաւոր լեռներէն․ իսկ հողը կ'առնուէին աւելի մերձաւոր տեղերէն եւ նոյնը ձեռքէ ձեռք կ'անցնէին»։ Փայտակերտները տեսակ մը պատուած շրջանակ կը կազմէին՝ զոր կը զօրացնէին (միջոցները լեցուած) խիպարով[140]։ Ասոր գագաթէն կարելի էր ձգել կամուրջ մը որով կարելի կ'ըլլար մտնել պարիսպներուն կատարը[141]։ Եթէ հողաբլուրը չբաւէր՝ անոր կ'առընդերադրէին — կամ կը վերադրէին — (քովն ու վրան կանգնելով) աշտարակ մը, փայտակերտ մեծ շինուած մը, որուն միշտ հրըդեհ կը սպառնար՝ ինչպէս նաեւ մեքենայից, եւ անոր համար կը պատէին զայն

---

[139] Անդ, Գ. 102, եւն։

[140] Հմմտ. Յեսու Սիւնակեաց, Ժամկգր. 54։ Կաւատ Ամդայ առջեւ կը ճգնի նորէն բարձրացնելու տապալած հողաբլուր մը, հրամայեց լեցնել փայտերով ու քարերով, բերել մազեղէն ու կտաւեղէն հիւսուածքներ եւ անոնցմէ տիկեր ու պարկեր շինել, զանոնք հողով լեցնել եւ այսպէս հողաբլուրը բարձրացնել մինչեւ պարիսպներու բարձրութիւնը։ — Պարսից սարահարթակներ Ուռհայի առջեւ՝ փայտերէ, հողէ ու քարերէ․ (Պրոկոպ. ՊՊ, Բ, 26, 24)։

[141] Այս բանս փորձեցին Հռոմայեցիք Յովդապատի առջեւ. Հրեայք կամուրջներու վրայ եփած մանանխի թափեցին, որով լպրծուն եղան եւ անանցանելի (Յովսեպ. ՊՀ. Գ. 277)։

կաշուով եւ երբեմն նոյն իսկ երկաթի տախտակներ կը դրուագէին[142]:

Բայց տաժանելի ու երկարատեւ ձեռնարկութիւն մըն էր այս աշտարակներու շինութիւնը, եւ չ'երեւար թէ ասոր համեմատ պատշաճական ծառայութիւններ մատուցած ըլլան: Այն պաշարումներն՝ որոնց լիակատար նկարագրութիւններն ունինք, ի գլուխ ելած են սովորաբար հնարքներով[143], եւ այս յաջողութեանց մէջ ականը առաջնակարգ դեր մը կը կատարէր եւ կամ հիմերը բրելը: Գամալա շատ պարզ կերպով առնուեցաւ. անձնապահաց երեք զինուորներ գիշերային սողոսկեցան հասան մինչեւ քաղաքին ամենաբարձր աշտարակին ոտքը. հիմերէն կորզեցին հանեցին հինգ մեծ քարեր եւ մեկնեցան դարձան. աշտարակը կործանեցաւ եւ թաղեց իրեն տակ անոր մէջ պահակածները[144]: Պաշարողաց այս կերտուածոց՝ ինչպէս նաեւ քաղաքի մ'ամրու-

---

142 Անդ, Ե, 292, 297:

143 Վայրկենական ներշնչումներն ամէն տեսակ հնարքներ գտնել կու տան, եւ չեմ կրնար նշանակել ամէն պէսպէս կերպերը, նոյնպէս է պաշտպանութեան նկատմամբ. այսպէս օրինակի համար Հատրայի պաշարուողները մտածեցին յարձակողներուն վրայ նետել կաւէ պոյտեր՝ լեցուած թունաւոր միջատներով, որոնք կը մտնէին աչքերը եւ զրահից կտուածներուն մէջ (Հերոդիան, Գ. 9, 5):

144 Յովսեպ. Պհ, Դ, 63—65. Երուսաղէմի մէջ հիմնափորութիւնը յաջողեցաւ պատուարներուն մէկուն դէմ. (Զ, 26—28), բայց ի դերեւ ելաւ տաճարին արտաքին պարիսպներուն հանդէպ. այս տեղ լծակները խորտակեցան (Զ, 222):

թեանց դէմ կրնար գործածուիլ, — եւ շատ անգամ գործածուեցաւ — ամենասովորական հնարք մը։ Այսպէս Յովհաննէս Գիսկալացի Հռոմայեցւոց հողաբլուրներուն մէկուն ներքեւ ական բանալ եւ գետնի վրայի հողը չերտերով բռնել տուաւ. փոսին մէջ յետոյ նետեցին ռետինով, ձիւթով ու կպրով ծեփուած փայտեր եւ կրակ տուին. մոյթերն այրելէն լմնալէն ետքը՝ ամբողջ հողաբլուրը տապալեցաւ[145]։ Երբ Հռոմայեցիք Ամիդ քաղաքը կրկին առնուլ կ'ուզէին՝ Անաստասի օրով, միեւնոյն բանն ըրին. բայց միայն պարսպին արտաքին երեսը կործանեցաւ։ Աւելի յառաջ սկսան փորել՝ որպէս զի ամբողջովին կքի ու իյնայ. բայց Պարսիկները իրազեկ եղած՝ գոցեցին ծակը, եւ շեղջակուտած հողին վրայ փոս մը բացին շրջապատին երկայնութեամբը ներսի կողմէն, եւ անոր մէջ դարձուցին աղբիւրի մը ջուրը, որպէս զի ջրոյ հոսելէն իմանան,

[145] Անդ, Ե, 469—470։ Ուրիշ աշտարակի մը ներքեւ գաղտնաբար ական փորուած՝ պաշարուողներու կողմանէ՝ Պրոկոպ. ՊՊ, Ա, 7, 14։ Յեսու Սիւնակեաց, ժմնկգր. 51։ Այս կերպով Պարսիկները տիրեցին Լազիկէի մէջ Պետրայի (ՊՊ. Բ, 17, 23 եւն)։ — Յարձակման կողմանէ՝ յիշենք հրդեհով պաշտպանութիւն ընելը. Հռոմայեցիք անխորհրդաբար ձեռնամուխ եղան Երուսաղէմի տաճարին կամարասրահներուն մէկուն վրայ յարձակելու, զոր Հրեայք լեցուցած էին փայտերով, ծծմբով ու կպրով։ Հրեայք ձեւացուցին թէ կը փախչին՝ ի բաց առեալ քանի մը հոգի, որոնք կրակ տուին այն ժամանակ, երբ Հռոմայեցիք սանդուխներ կը մերձեցնէին. յարձակողները զոհ գացին այս հրդեհին. (Յովսեպ. ՊՀ. Զ, 177—180)։

*եթէ Հռոմայեցիք շարունակեն իրենց ձեռնարկած փորձը*[146]*։ Ուրիշ անգամ մը Բզաւդէի պաշարեալք պարսպագողի ու ծռած զգուշութեամբ սողոսկելով դուրս յարձակած ատեն՝ կրցան ջահեր սպրդեցնել հողաբլրոյ մը ձողակերտներուն մէջ, որ շինուած էր ծառի ոստերով ու եղեգներով, եւ քիչ մ'ետքը կրակ առաւ ամբողջը*[147]*։*

---

146 *Յեսու*, 72։ — *Աւելի յետոյ Հռոմայեցւոց կարգն եկաւ հնարագիտ ըլլալ նոր գիւտի մը՝ այս շատ ծանօթ եղած ռազմահնարից յաջողութիւնն ապահովելու համար։ Եղեսիոյ պաշարողներն կը փորէին ական մը դէպ ի թշնամւոյն մէկ հողաբլուրը։ Կէս-ճամբան էին երբ Պարսից ականջն հասաւ լուրը. անոնք սկսան պեղել իրենց կողմանէ, որպէս զի մթան մէջ գործող աշխատաւորները յանկարծակի ըմբռնեն։ Բայց իրենց հնարքն ալ ծանօթացած էր. Հռոմայեցիք կը թողուն այն ձեռնարկը եւ կը խցուն իրենց փորած փոսը։ Յետոյ կը բանան ուրիշ ական մը՝ աւելի յաջողութեամբ, որ կ'աւարտէր հողաբլուրին միւս ծայրը, կը լեցնեն այրեցիկ նիւթերով եւ կը բռնկցընեն։ Պարսիկները հոն կը դիմեն, բայց զիրենք խափելու համար հրդեհին ծագման պատճառին նկատմամբ, քաղաքացիք կը նետեն պայտեր՝ որ լեցուած էին հրաշող ածուխով, եւ հրացան սլաքներ։ Այս միջոցին ստորերկրեայ կրակին իր գործը կը շարունակէր, եւ երբ Խոսրով նշմարեց զայն՝ արդէն շատ ուշ էր անոր հետեւութեանց առջեւ առնելու համար.* (*Պրոկոպ*, *ՊՊ. Բ.* 27, 1—17) — *Խոսրով երբ յարձակած էր Դարայի վրայ՝ փորել կու տար ական մը պարիսպներու ներքեւ։ Անձ մը այս բանս իմացուց Հռոմայեցւոց, որոնք բազմաթիւ ռահվիրաներ զետեղեցին երկու պարսպաց մէջ եղած անջրպետին միջեւ։ Որովհետեւ Պարսիկները միշտ ուղիղ գծով կը փորէին, Թէոդորոս ճարտարապետին խորհըրդով խաչաձեւ կորող փոս մը բացին. շատերն անոր մէջ ինկան ու մեռան, իսկ ուրիշները փախան մազապուրծ, իսկ Խոսրով հրաժարեցաւ իր ձեռնարկէն* (*անդ*, *Բ.* 13, 20 *եւն*)։

147 *Ա. Մարկեզ. Ի*, 11, 18։

Նոյն իսկ սանդուխներով վերելակելով յարձակիլը՝ որչափ ալ ակնյայտնի վտանգներ ունէր՝ կ՚երեւայ թէ աւելի շահաւէտ էր։ Այս եղանակը կը գործածէին կա՛մ առաջին օրը, սկզբնաւորութեան առաջին յանձնապաստանութեամբ, կա՛մ վերջնական ձեռնարկութիւնը կ՚ըլլայ՝ երկարատեւ անյաջողութենէ սրտմտած։ Երուսաղէմի պաշարման վերջին վայրկեաններուն՝ Հռոմայեցիք տաճարին վրայ յարձակման ձեռք զարկին մագլելով ելլելով սանդուխներով՝ զորոնք Հրեայք յամառ պնդութեամբ կը տապալէին վրան լեցուն մարդիկներով մէկտեղ[148]։ Հայաստանի մէջ պաշարման մ՚ատեն բիւզանդացի զինուոր մը սուր սեպեր հետն առած՝ անոնց մին խոթեց պարիսպի կարգածին երկու քարերու կցուածին մէջ, անոր վրայ կոխեց մէկ ոտքով, միւս սեպը մեղմով մխեց աւելի վերը՝ միւս ոտքին համար, եւ ջանաց վեր ելլել՝ կառչելով դուրս ցցուած քարերուն։ Երկու անգամ զինք յետս մղեցին. բայց յաջողեցաւ երրորդ անգամ, եւ ուրիշներն ալ իրեն նմանեցան[149]։

Պարսիկներն ու Հռոմայեցիք կը մրցէին իրարու հետ հնարագիտութեան մէջ։ Մըծբնայ բազմաթիւ պաշարմանց միայն ատեն Շապուհ արքայն մտածեց Միւգդոնիոս գետը, որ քաղաքին մէջէն կ՚անցնէր, շատ

---

148 Յովսեպ. Պհ. Զ, 223։
149 Թէոփիլ. Սիմոկ. Բ. 18, 15 եւն։

վերէն կապել ու արգիլել. Թողուց որ ջրերը չեղջակուտին վեր բարձրացուցուած ափանց մէջ, եւ յետոյ յանկարծ ազատ ընթացք տուաւ կուտակներուն, զորոնք այսպէս արձակելով խոյ մեքենայի մը նման՝ քաղաքին պարիսպներուն դէմ, անոնք տապալեցան ինկան: Սպասեց մինչեւ երկրորդ օրը, որպէս զի անցնելու հուն մը գտնէ՝ տղմին ցամաքելէն ետքը, եւ յետոյ խուռնընթաց դիմեց ամբողջ զօրօք. բայց տեսաւ որ կըրկնապարիսպն ամբողջովին վերաշինուած էր գիշերը[150]: Բուզանդացիք Կողքիսի մէջ Զակար բերդը գրաւեցին Խաւրացի զինուորի մը շնորհիւ. սա՝ լրտեսած ըլլալով այն անձինքն, որ գիշերը կու գային ջուր կ'առնուին աղբիւրէ մը, ծածուկէն զննեց տեղերուն դիրքն ու վիճակը, եւ պաշարողաց խումբ մը յաջողեցաւ այս տեղէն մտնել բերդին ներսը[151]:

Սասանեանք միշտ տագնապ կը զգային՝ իրենց դէմ առ դէմ ապառնալեօք կանգնած

---

[150] Աւելի մանրամասն կը պատմէ Թէոդորիտոս, Եկեղ. Պատմ. Բ. 26, էջ 1076 Migne.

[151] Ագաթիաս, Դ. 5, 3: — Համմ. Ամ. Մարկել. ԺԹ. 5, 4—5: Ամիդայ մէջ կային գետնափորեր, որ աստիճաններով կը տանէին դէպի Տիգրիս՝ ուրկից կ'երթային ջուր առնելու, եւ որ կը սկսէր կենտրոնը կանգնած մէկ աշտարակէն: Գիշերուան մէջէնեղ փախստականի մ'առաջնորդութեամբ (որ քաղաքին քաղաքացիներէն մէկն էր) Պարսից արքունի գնդէն 70 աղեղնաւորներ սպրդեցան հասան մինչեւ նոյն աշտարակին երրորդ մասը եւ հոն հասնելէն ետքը՝ նշան տուին իրենց հայրենակցաց միահաղոյն յարձակման ներսէն ու դրսէն:

տեսնելով Դարայի ամուր բերդը, եւ մոլած էին զայն անպատճառ չէզոքացնելու կամ գրաւելու: Յոսրով օր մը հոն խաւրեց դեսպան մը բազմաթիւ չքաղիր ուղեկցօք. այս մարդիկ պիտի փորձէին օթագնիլ այլեւայլ տուներու մէջ, եւ յետոյ հրձիգ ըլլալ՝ երբ մութը կոխէր, յետոյ դռները պիտի բանային բանակի մ'առջեւ՝ զոր շրջակայից մէջ պատրաստ ունենալու հրաման տուած էր Մծբնայ կուսակալը, բայց բնակիչները կասկածներ յղացան այս շատ մեծաշուք դեսպանութեան մասին, եւ նենգագործութիւնն ի դերեւ ելաւ[151]: Զախողեցաւ ուրիշ մ'ալ՝ որ արժանի չէր յաջողելու[153]: Արքէոպոլիս շատ կրած էր Հոնաց խոյերէն, բայց դեռ միշտ կը դիմանար. դաւաճան մատնիչ մը խոստացաւ պարսիկ զօրավարին ձեռքը տալ քաղաքը, եթէ իրեն թոյլ տրուի միայն հրձիգ ըլլալ շտեմարաններու, մտածելով որ բնակչաց հրդեհը մարելու փոյթին ու ջանքը պիտի բաժնէ անոնց ուժերը՝ երբ այն տանէ անմիջապէս յարձակում մ'ըլլայ: Բայց պաշարե-

---

[152] Պրոկոպ. ՊՊ. Բ. 28, 31 եւն:

[153] Աւելի պատուաւոր էր Հռոմայեցւոց ռազմահնարքը Պետրայի պաշտպանութեան համար: Յոսրով վճռած էր առնուլ զայն: Կուսակալն իր զօրաց արգիլեց ամենեւին երեւնալու. եւ հրաման ընդունեցան անձայն անշշուկ պատրաստ կենալ դռներու քով: Պարսիկները կարծեցին թէ քաղաքը լքուած է եւ մօտեցան առանց նախազգուշութեանց եւ առանց կարգերը պահելու: Յանկարծ դռները բացուեցան եւ կատաղաբար դուրս յարձակեցան, որով կորուստներ կրեց Թշնամին. (անդ. Բ. 17, 5—10):

լոց միայն փոքրաթիւ մէկ մասը դիմեց կրակին տեղը. միւսները դուրս յարձակեցան եւ Պարսից զօրքը լիակատար խուճապի եւ փախուստի մատնեցին[154]: Բայց նոյն ազգը խորամանկ նենգութեամբ գրաւեց առաւ Մարտիւրապոլիսը Հայաստանի մէջ. Սէստոս զօրապետը 400 հոգի ուղարկեց այն քաղաքը, որոնք եկան կեղծեցին իբր թէ անձնատուր կ'ըլլան Հռոմայեցւոց. ժողովուրդը հիւրընկալից զանոնք իբր փախստականներ. բայց ասոնք անգամ մը քաղաք մանելէն ետքը՝ շուտով տէր դարձան անոր[155]:

## § 6. Դատալիքներ ու յանցանքներ:

Շատ բնական էր դատալիք փախստականաց հաւատք ընծայել. այս պատմութիւնն ուսկից մանրադէպներ հասկաքաղ կ'ընեմ, լի է մատնութիւններով: Եւ ասոնք երեւան չեն գար միայն պաշարմանց ատեն, այլ զինուորական եւ դիւանագիտական բոլոր տարեգրութիւնք կը գրաւեն: Բայց պէտք է գիտենք որ հիները հայրենասիրութեան մասին մեր արդի խիստ վարդապետութիւնք չէին դաւանէր. Թող որ այն բանակներու բազկացութիւնն, ու վարձկանազօրաց զեղծումն ճակատագրօրէն պիտի տանէին բնաբարձ բառնալու ազգային ամէն խղճմտութիւն:

---

154 Պրոկոպ. Պպ. Դ. 14, 24—29:

155 Թէոփիլ. Սիմոկ. Գ: 5, 13 եւն:

Սակայն եթէ հաւատանք այլեւայլ մատենագրաց՝ Պարսիկներն այս մասին աւելի հաստատամիտ եղած ըլլալու են[156]։ Բայց ինչ որ ալ ըլլայ՝ իրողութիւնները կը ժխտեն այսպիսի բացառութեան մը գոյութիւնը։ Նոյն ինքն Ամմիանոս կը նշանակէ այն փորձերն՝ որ կատարուեցան Տիգրիսէ անդին եղող սատրապները կաշառաբեկ ընելու՝ ընծայատար պատգամաւորներով[157]։ Սակայն եւ այնպէս Պարթեւաց ազգը, որմէ այնչափ բազմաթիւ պանդխտեալներ եղան[158], կ'երե–

[156] Ամ. Մարկել. ԻԳ. 6, 81. «Պարսից օրէնքները չափազանց խիստ են. ամէնէն անողորմ պատիժներ կը սրուին ապերախտներուն եւ դասալիքներուն» նոյն իսկ փախչողներն ու վատերը պիտի մերժուին վտարուին իրենց հայրենակիցներէն (Թէոփիլ. Սիմոկ. Բ. 5, 7)։ Կոխէի մէջ «Յուլիանոս բազմաթիւ գիւղեր տեսաւ կախաղաններէ կախուած։ ասոնք ազգականներն էին անոր՝ որ տուած մատնած էր Պերիսաբորան». (Ամ. Մարկել. ԻԴ, 5, 3)։

[157] Ամ. Մարկել. ԻԱ, 6, 7. յաւել ԺԸ, 6, 20. «Կորդուաց աշխարհի Յովինիանոս սատրապն իր մանկութիւնն անցուցած էր Հռոմէական երկիրներու մէջ, Ասորիքի մէջ պատանդ ըլլալով, ուր ճաշակած էր գրչութեանց քաղցրութիւնը, կը բաղձար մեր մէջն ըլլալ դարձեալ»։ Նախորդ պարսիկ աւագը Արուսայ դեսպին հզերքներն անշարժութեան մատնուեցաւ, «չիրեններուն ստրկաբարութեամբ մատնուած, որ դարձուած անիրին երկիւղէն մղուած էր Հռոմէական օգնականութեան ապաստանիլ» (անդ, ԻԵ, 3, 4)։ — Լիբանիոսի երկու տեղեկատու Թղթակիցները Տարպուհ (Թղթ. 878) եւ Վահրամ (Թղթ. 1024) պարսիկ դասալիքներ եղած ըլլալու են, ինչպէս էր Որմիզդ՝ Յուլիանոս բանակին պետերէն մին (Զոսիմ. Գ. 11, 3)։ Արաբաց դէմ կռուող Հերակլի վերջին զօրավարն էր Վահան՝ պարսկահայ մը, որ իրեն քով ապաստանած էր. (Թէոփանէս, 337, 3. Կեդրենոս, Ա, էջ 745)։

[158] Տես վերը Մասն Բ. Գլ. Ա յօդ. Է։

ւայ թէ չափով մը հակակրութիւն կը զգար քաջալերելու թշնամւոյն քովէն եղած ժամանումները[159]: Բայց Բիւզանդացւոց պաշտօնական դիւանագիտութիւնը խիղճի այդպիսի խայթերով չէր տագնապեր[160]: Խոսրովի եւ Յուստինիանոսի միջեւ կնքուած խաղաղութեան դաշինքը, որով յատկապէս Լազիկէի բախտը կը կարգադրուէր, առանձադրութիւն մը կը պարունակէ փախստականաց մասին: Վեցերորդ յօդուածն է. Եթէ ոմանք անոնցմէ, որ պատերազմի ժամանակ Հռոմայեցւոց կողմանէ անցած են Պարսից կողմը, կամ հակառակը (ηὐτομόλησαν) թշնամեաց սպասատան եղած են, կը բաղձան վերադառնալ իրենց երկիրը, ազատ են ընելու այդ բանը. բայց այս ազատութիւնը կը դադրի խաղաղութիւն ըլլալէն ետքը, եւ այն ատեն՝ երբ դէպք պատահի՝ իւր տէրութեան կը յանձնուի (փախստականը[161]):

---

159 Հմմտ. Դիոն. Կաս. ԽԹ, 29. (Անտոնիոսեայ պատերազմին մէջ) «եղան Հռոմայեցի դասալիքներ բայց քիչ, որովհետեւ բարբարոսները նետահար կ'ընէին զանոնք ուրիշներուն աչքին առջեւ»: Թէերեւս կը վախնային որ օրինակը վարակիչ կ'ըլլայ իրենց շարքերուն մէջ:

160 Մաւրիկի Ռազմագիտականի համեմատ պէտք է ջանալ թշնամւոյն դիրքը ճշգրտօրէն ճանչնալու: Եթէ անոր բանակը բաղկացած է այլեւայլ ցեղերէ՝ ջանալ երկպառակելու, եւ եթէ պետերն անմիաբան են մէջերնին՝ փոյթ տանիլ քանի մը հատը կաշառելու. (Է, ա, էջ 136):

161 Menand. Protect., Excerpt. de legat. Rom. Migne PGL, CXIII, p. 866 = Հրտ. De Boor, p. 180, l. 30 ff.

Միւսոյն յողդողդութիւնը կը տեսնուի Հրէից քով, թէպէտ եւ մեծագոյն մասը յուսահատական կատաղութեամբ կը պատերազմէր: Անշուշտ ոմանք միայն առ երեսս մատնութիւն կ'ընէին[162], բայց ուրիշներն իրապէս մատնեցին Յովդապատ քաղաքը՝ Վեսպասիանոս խորհուրդ տալով յարձակիլ առտուն, երբ բոլոր պաշտպանք՝ վաստակաբեկ ու խոնջած՝ տակաւին քնացած էին[163]. եւ այսպէս ալ եղաւ: Միւս կողմանէ Հրեայք ալ, ինչպէս յիշեցի Հռոմայեցի դասալիքներէն սորվեցան մեքենայից գործածութիւնը[164]: Ընդհանրապէս կ'երեւայ թէ Հռոմայեցւոց կողմանէ մանաւանդ բազմացած են ձեռնթափ օժանդակները[165]:

---

[162] Դիոն. կառ. ԿԶ, 5. «Գերիներուն փախըստականները ծածուկ կ'ազդարարէին Հռոմայեցւոց խմելու ջուրը եւ խեղդամահ կ'ընէին մարդիկը՝ զորոնք առաջնին կը գտնէին: Այն ատեն Տիտոս չընդունեցաւ ա՛լ եւս կամաւոր որեւէ անձնատուութիւն: Հռոմայեցիք պաշտպանման երկայնութենէն յհա-ռած ըլլալով՝ անոնցմէ ոմանք անցան թշնամւոյն կողմը. անոնք թէպէտ եւ ուտեստի կարօտութիւն ունէին, ընդունեցան, ցուցնելու համար որ իրենք ալ փախստականներ կ'ընդունէին:

[163] Յովսեպոս, Գէ. Գ. 317 եւն: Դասալիք փախստականաց ուրիշ յիշատակութիւններ՝ անդ. Գ. 143, Դ, 410: Հրեայք Երուսաղէմէն կը փախչէին՝ կլլելով ոսկիները կլլելէ ետքը. Հռոմայեցիք ալ անոնց փորը կը բանային՝ գտնելու համար (Ե, 550 եւն). «այս անգթութիւնը շատերն ետ կեցուց Հռոմայեցւոց անձնատուր ըլլալէն». (անդ, 561):

[164] Անդ, Ե, 268:

[165] Լամբինոսի. գինուորները՝ Սուլլայի զօրքերը՝ հանձնելու համար՝ սլաքներուն ծայրը նամակներ կապած՝ կը նետէին հակառակորդ բանակին մէջ. (Դիոն.

Անոնց պատճառն երբեմն շատ սնոտի էր[166]. բայց ընդհանրապէս շահու վրայ հիմնեալ էին: Բնորոշ դէպք մըն է Անտոնինոս անուն անձի մը, որուն մասին Ամմիանոս երկարօրէն կը խօսի[167]: Ասի նախկին վաճառական մըն էր, որ Միջագետաց դքսին դիւանին մէջ պաշտօն ստացած էր, եւ դատերով խնչքը կորսնցուցած. իւր պարտքերէն մին անցուցած էր հասարակաց գանձուն հաշուին. այս ժամանակէս ի վեր սկսաւ դրացի պետութեան քով գաղտնի մեքենայել եւ գաղտնիքներ հաղորդել[168]: Ամենա-

---

Դաս. ԽԸ, 25) — Սաֆայական երկու արձանագրութիւններ այսպէս խմբագրուած են. (յառաջ կը բերեմ անգլ. թարգմանութեան համեմատ. Enno Littmann, Semitic Inscr. Part II. of the Americ. Arch. Exped. p. 140, Nr. 51 Dussaud et Macler, 219). «Թէոսար յաշխարհէ Հռոմայեցւոց»: Ասի կըրնայ դատալիք մը եղած ըլլալ, ինչպէս կ'ըսէ Լիտման, որ թաքչած ղօղած էր Թուհրեհ անապատին մէջ: Բայց աւելի քիչ յանդգնական է ենթադրութիւնս միւս արձանագրութեան համար (անդ, էջ 148, Թիւ 59 = Dussaud-Macler, 251) «Լաթամ... եւ փախաւ Հռոմայեցւոց աշխարհէն. եւ, ով Աստուած, փրկութեան այն ժխառօրէն՝ որ զարկաւ (ներկայա՞ու)»:

166 Ամ. Մարկել. ԻԵ, 5, 8: Դրօշակիր մը (signifer) գժտած էր Յովիանոսի հետ՝ որ այն ատեն սպարդ ռազմական անձ մըն էր, անոր հօր վրայ անխորհրդաբար խօսած ըլլալուն համար: Վախնալով որ թշնամի միացած ըլլայ իրեն այն՝ որ ամենամեծ աստիճանին նոր բարձրացած էր, նախընտրեց փախչիլ ապաստանիլ Պարսից քով:

167 Ամ. Մարկել. ԺԸ, 5, 1, եւն:

168 Անդ, 1. «Որ կը նկարագրէր թէ՝ ի՛նչ զօրագնդեր ո՛ւր կը գտնուէին եւ թէ ո՛ր ժամանակ կազմ ու պատրաստ պիտի գան, նոյնպէս թէ զէնքերուն ու պաշարաց քանակութիւնք եւ պատերազմի պի-

մերձաւոր պարսիկ նահանգին մէջ փոքրիկ կալուած մը գնած էր՝ Տիգրիսէն անդին, որպէս զի պատրուակ մ'ունենայ իւր մշտատեւ երթեւեկութեանց : Իւր պարտքին վճարման պայմանաժամին օրը վերջնականապէս անցաւ Տիգրիսը, մեծամեծ պատիւներու հասաւ եւ համոզեց Տամշապուհ սատրապը՝ անմիջապէս պատերազմի ձեռնարկելու : Ուրիշ փախստական մը՝ Կրաւգասիոս, Մծբնայ ուայ քաղաքացի մը, միեւնոյն լեզուն կը բանեցնէր արքային առջեւ[169] : Ինքն իսկ Ամմիանոս, որ հազիւ ազատած էր սահմանագլխին մօտ կուտուած հեծելախմբերէն, Մայօկարիրի մօտերը հանդիպեցաւ պարիզցի զինուորի մը, որ իւր գործած մէկ յանցանաց համար պատիժէն վախնալով մղուած էր մինչեւ իսկ Թշնամեաց իբր լրտես ծառայելու[170] :

Փախստականներու առանձինն յիշատակութիւնք շատ յաճախադէպ են[171] . ասոնք

---

տոյից ուրիշ ապացոյց կարեւորք թէ արդեօք ստատութեամբ կը բաւէին, անխոնջ հետախուզութեամբ քննելով են:

169 Ամ. Մարկել. Ի, 6, 1. Համմ. ԺԹ, 9. 3:

170 Անդ, ԺԸ, 6, 16:

171 Համմ. միայն իսկ Ամմիանոս քով՝ ԺԸ, 10, 1. ԻԱ, 13, 3. ԻԵ, 6, 6: Դասալիք մըն էր՝ որ Գարսից իմացուց Յուլիանու մահը. (Լիբան. Ա, Blos. 134, հմտ. Förster, I. p. 147) : — Ասոր փոխարէն՝ կրօնական հալածանաց պատճառաւ բազմաթիւ քրիստոնեայք Պարսկաստանէ փախստեայ անցան հռոմէական հողը, մանաւանդ Թէոդոսի ատեն. (Սոկրատ, Եկեղ. Պատմ. Է, 18, էջ 773 եւն. Համմ. Թէոփանէս, 85—86) :

կը յիշուին յառաջապահաց դիտազօրուն հետ ի միասին, որուն ձեռնարկութիւնն կը դիւրացնէին[172]. եւ շատ հաւանական է թէ պաշտօնական լրտեսներուն մէկ մեծ մասը կ՚ընտրուէր անոնց մէջէն: Այս արուեստին համար բազմալեզուի ձիրքեր կը պահանջուէին[173], որոնք դժուարաւ միատեղ կը գտնուէին: Բայց այսպիսի բան մը մեզի չ՚աւանդեր Պրոկոպիոս, որ այս նիւթիս մէջ մեր միակ աղբիւրն է[174]: Հաստատուն սովորութիւն մըն է[175], կ՚ըսէ, Պարսից եւ Հռոմայեցւոց քով՝ Տէրութեան ծախքով լրտեսներ պահել, որոնք թշնամւոյն կ՚երթան պալատին եւ կը տեղեկացնեն ինչ որ կը տեսնեն: Մեծագոյն մասը հաւատարիմ է իրենց համաքաղաքացւոց. բայց ուրիշներն զանոնք ալ կը մատնեն. այսպէս էր Պարսից մէկ լրտեսը, որ եկաւ Յուստինիանոսի ծանոյց մերձաւոր յարձակում մը Հռոմայեցւոց

---

172 Ամ. Մարկեղ. ԻԷ, 7, 1: exploratorum perfugarumque (աշխարհատեսաց եւ փախստականաց). հմմտ. ԻԱ, 13. 3:

173 Ամմիանոս (ԺԸ, 5, 1) Անտոնինոսի մասին շատ լաւ կ՚ըսէ՝ utriusque linguae litteris sciens (երկու լեզուաց ալ դպրութիւնը գիտէր):

174 Չեմ գիտեր ի՛նչ անհաղորդութեամբ երբեմն ապացուցել տուած են (ի Mém. de la Soc. des antiq. de France, VII série, tome III, 1904, p. 259) թէ յոյն հեղինակներու բան չեն աւանդեր այս պաշտօնին մասին:

175 Արդէն Կոստանդեայ օրով հռոմայեցի սպաները լրտեսներ ուղարկեցին Պարսկաստան, որոնք, լաւ բերին թէ Շապուհ շատ զբաղած է ալեւայլ պատերազմաց. տե՛ս. Ամ. Մարկեղ. ԺԶ, 9, 2—3):

*դէմ՝ աջակցութեամբ Մազքթաց։ Ինքնակալը վարձատրեց զանի որպէս զի երթայ ըսէ այն Պարսից՝ որ Մարտիրոպոլիսը պաշարած էին, թէ Մազքութք կաշառաբեկ եւ բանակափոխ եղած էին* [176]։

*Բիւզանդացի անանուն մը՝ փախստականներու առթիւ՝ կ'ակնարկէ թէ Պարսիկներն ընծայաբերութեան կերպարանօք նեն-*

---

176 *Պրոկոպ.* ՊՊ. Ա, 21, 11—13։ *Միեւնոյն Պրոկոպիոս, երբ իր «Գաղտնի Պատմութեան» գրոց մէջ պարսաւագիր մ'եղած է, այսպէս կը գրէ.* (30, 12—14) *«Յառաջագոյն Տէրութիւնը լրտեսներ կը պահէր, որոնք վաճառականութեան պատրուակաւ կ'երթային թշնամւոյն երկիրը եւ մինչեւ Պարսկաստանի խորքը։ Շատ ժամանակէ ի վեր նոյն սովորութիւնը կար Պարսից քով ալ. Խոսրով այս գործակատարներուն վարձքը աւելցուցած է, որոնցմէ շատ կ'օգտուի։ Իսկ մենք Լազիկէն կորսնցուցինք՝ որովհետեւ չէինք գիտեր թէ Պարսից արքայն ո՛ր կողմանէ միտք ունէր իր զէնքերը դարձնելու»։ Անկարելի բան մը չէ որ այս մասին Յուստինիանոսի կողմանէ չափով մը թուլութիւն եղած ըլլայ, եւ ո՛չ ալ այն՝ թէ Պրոկոպիոս չափազանցուցած ըլլայ իրերը։ Գաղտ. Պատ. գրոց մէջ ուր յաճախ կը խօսի լրտեսներու վրայ, անոնք ափ-յափոյ ուղարկուած կ'երեւան.* (Ա, 15, 4, *երկու նիզակակիրներ կ'երթան թագաւորաց բանակը լրտեսելու.* Բ 25, 10 *եւ* 15, *Հռոմայեցիք բռնեցին պարսիկ լրտես մը եւ իրենք ղրկեցին լրտեսներ*)։ *Բայց Մնո-րիոսի եւ Թէոդոսի Բ ատեն՝ Ե դարու սկիզբները՝ այնպիսի հաստատութիւն մը գոյութիւն ունէր, Պարսկաստանի հետ կնքուած համաձայնութեան մը համեմատ, որով այլեւայլ անցքեր որոշուեցան նոյն երկրին մէջ առուր եւ տալիկ փոխանակութեանց համար,* որպէս զի օտարք չհետազօտեն տէրութեան գաղտնիքները՝ որ չի վայելեր. (ne alieni regni, quod non conuenit, scrutentur arcana)։ *Բացառութիւն եղած էր միայն այն վաճառականաց համար՝ որոնք իրենց ազգին դեսպաններուն կ'ընկերանային.* (*Օրէնք Յուստ.* Դ, 63, 4, *յօդ. եւ* 1)։

գութեամբ զօրաց գունդ մը դրկած էին քաղաք մը, որոնք գրաւեցին նոյնը[177]: Մաւրիկի Ռազմագիտականը բազմաթիւ խրատներ կը պարունակէ այս մասին. «Այլեւայլ զօրավարներ որոշած են թշնամւոյն ուղարկել կեղծ փախստականներ, որպէս զի կարծել տան թէ այն բանակը, որուն անոնք կը վերաբերէին նեղութեան մէջ է[178]»: — «Պէտք չէ անմիջապէս վստահանալ անոնց, որ կ'օժտեն կու գան, վասն զի յաճախ անոնց տուած տեղեկութիւնները սուտ են, այլ աւելի անոնց հաւատալու է, որ յառաջապահաց կռուի մէջ գերի բռնուած են[179]: Այս վերջինները «եթէ մեր քով ուրիշ բան դիտած չեն, բայց միայն կարգապահութիւնը եւ ուղարկելու է. կ'երթան կը զարհուրեցնեն թշնամին իրենց տուած տեղեկութիւններով. բայց եթէ զմեզ դժնդակ տրամադրութեանց մէջ տեսած են, զանոնք մեռցընելու է կամ ապահով տեղ մը դնելու[180]»: Սակայն եւ այնպէս այնչափ մեծ էր մաս-

177 «Վասն Ռազմագիտութեան» ԽԱ, 4 (Հրտ. Koechly et Rüstow, II. 2, p. 188) «Պէտք է զգուշանալ ոչ միայն անոնցմէ (անարգապահներէ) այլ նաեւ անոնցմէ, զորոնք թշնամիք մեզ կը խաւրեն ծառայութեան, ընծայաբերութեան պատրուակաւ, վասն զի Պարսք երբեմն երեքհարիւր հոգի ուղարկելով ծառայութեան ընծայաբերութեան կեղծարանօք' անոնց ձեռօք քաղաքը գրաւեցին»:

178 Մաւրիկ., Ռազմ. Թ, 2, էջ 206:

179 Անդ, Թ, 3, էջ 213:

180 Անդ, Ը, 2, էջ 186:

նութիւն ընելու մէջ մարդկան հանդիպելու կարելիութիւնը, որ «պէտք է կարապետներ (exploratores, յառաջապահ դէտեր կամ հետախոյզներ), նոյն իսկ միայն զանանք հաւաքելու համար[181]։

Յայտնի բան մըն է թէ ամէն ժամանակ կազմուած էին դէտերու կամ լրտեսներու զինուորական ծառայութիւնք։ Պղուտարքոս կը յիշէ Ղուկուղոսի դէտերը (σκοποί) եւ Կրասոսի սուրհանդակները (σκοῦλκοι)[182], որ յորջորջանքները կ'երեւայ թէ կը համապատասխանեն լատին բառերու՝ exploratores (դէտք) եւ procursores («յառաջընթացք»), լրաբերք[183]։ Ամէն բանակ ունի զասոնք[184], բայց մանրամասնութիւնք կը

181 Անդ, Է (Երկիցս) 13, էջ 163։

182 Պղուտ. Ղուկուղ. 25, Կրաս. 20։ — Սարքին շրջանին համար դիտաղօրաց թիւ մ'ալ ունինք Թէոփիլակտոս Սիմոկատտայէ (Գ, 7, 5) որ կը նշանակէ յառաջապահաց 2000 զինուորաց կաբւ մը։

183 Այն պատուիրակք (speculatores, «զննիչք») որ Յուղայաստանէ եւ Ասորիքէ եկան ծանուցանելու Վիտելլիոսի թէ Արեւելք զինքը կը ճանչնայ (Տակիտ., Պատմ. Բ, 73) աւելի անոր անձնական ծառայութեան մէջ եղող գաղտնի պատուիրակներ եղած կ'երեւան։ Ամմիանոս կը յիշէ Պարսից սուրհանդակներ կամ կարապետք (procursatores Ամ. Մարկել. ԺԶ, 1, 10)· ուրիշ տեղ մը կը խօսի պատուիրակաց եւ աշխարհագէտ զննչաց մասին (speculatores) անդ, ԺԸ, 6, 8)։

184 Ամմիանու ժամանակ (ԻԱ, 7, 7) կ'երեւայ թէ դէտք (exploratores) այն լրտեսքն են՝ որ շատ հեռուները կ'ուղարկուէին. (այսպէս՝ աշխարհագէտք Յուստինիանու ատեն՝ Պրոկոպ. ՊՊ. Բ, 16, 3) իսկ երբ թշնամին շատ մօտ էր՝ կ'ուղարկուէին նոյն իսկ

*պակսին*[185]*։ Մօւրիկի* **Ռազմագիտականը** *կը ջանայ ճշդրտել այլեւայլ բացատրութիւնները. այս ժամանակիս համար* **դէտք** (exploratores[186]) *աւելի ճշգրիտ պիտի ըլլայ. (յունարէն* κατάσκοποι[187]*). Իսկ* **խնդրակք** *կամ* **հետախոյզք** (cursores) *կը կոչուէին անոնք՝ որ փախստականներու հետամուտ կ'ըլլային, որոնց կ'օգնէին* **պաշտպանք** (defensores) *ի դիպուածի որ ծանր յետադարձ յարձակում մ'ըլլար։ Սակայն այս ամէն բառերու գործածութիւնը անհաստատ կ'երեւայ եւ կամ մանաւանդ անոնց զօրակարգերը*[188]*։*

*Մատնիչներն ու զատալիքներն առաջնակարգ դեր մ'ունէին այն պատերազմաց մէջ, որոնք կը ձեռնարկուէին ընդարձակածաւալ տարածութեանց վրայ, ուր բաւ չէր ճանչ-*

---

*սպաներ, ինչպէս ինքնին Ամմիանոս* (*ԺԸ*, 6, 21) *հարիւրապետի մը հետ մէկտեղ։*

185 *Մօւրիկ.* Ռազմ. *Ա.* 3, *էջ* 26, 29։

186 *Եւ աւելի նորագոյն ժամանակներ* σκουλκάτωρες *կոչուած։*

187 *Նոյնպէս Ամմիանոս* praetentura (յառաջապահակք) *բառը* (*Ամ. Մարկ. ԻԱ*, 13, 3 praetenturis iuncturos citeriores Tigridis ripus, *«յառաջապահներով կապելով Տիգրիսի այս կողման ափերը»). յայտնապէս կը նշանակէ յառաջապահապահանորդք՝ Սահմանաց* (limes) *վրայ, ուստի՝ Սահմանապահորդք։ Եւ ընդհանրապէս ալ կը նշանակէ բանակտեղի մը յառաջադիր բաժինը կամ հատուածը* (*Հիւզին.* 14)։

188 *Մարդացի մը Անտիոքեայ այս ծառայութիւնը կ'ընէր եւ անոր քով խորհրդականի մը տեղը կը բռնէր.* (*Պրոկ. Անդ* 46)։

նար արշաւողը, եւ որ այնպէս խառնաման էր՝ ինչպէս, օրինակի համար, հայկական լեռնաշխարհը, այս տեղերը փորձառու առաջնորդներ պէտք էին[189]: Եւ այս պատճառ կ'ըլլար շատ անգամ դաւաճանութեանց: Լազիկեան պատերազմին մէջ Նախարականի Դիմիկները կ'ուզէին բիւզանդական բանակին Սաբիրացիները յանկարծակի բերել քնոյ ժամանակ. ճամբան իբր առաջնորդ առին Կողքիսացի մը, որ յաջողեցաւ կանխել յառաջել, պրծաւ անոնցմէ ու փութաց իմաց տալու քնացողներուն. երբ Դիմիկները հասան՝ կոտորուեցան[190]: Ուրիշ անգամ մը բիւզանդացւոց զօրավարը 50 հոգի ուղարկեց թշնամեաց դիրքաւորութիւններն իմանալու համար. ասոնք հանդիպեցան երկու լրտեսներու՝ որ հռոմէական տարազ հագած էին եւ պահեցին իրենց քով. բայց վերջինքս՝ իրենց կեանքն ազատելու համար՝ յայտարարեցին թէ կողմնակից են զիրենք ըմբռնողներուն, եւ առաջարկեցին այս դէտերուն՝ գիշերախառն առաջնորդել զարտուղի ճամբով մը՝ այնպիսի տեղ մը ուր կընային յանպատրաստից խոտի վրայ պառկած Պարսիկները յարձակիլ զարնել: Եւ այն 50 հոգին իրենց դիւրահաւատութեամբ պարզապէս ղարանի մը մէջ ձգուեցան:

---

189 Ագաթիաս, Գ. Ց, 3:
190 Թէոփիլ. Սիմ. Գ, 7, 4—6:

## § 7. Պէսպէս ռազմահնարքներ:

Նոյն իսկ բանագնացական հրեշտակութեան իրաւունքը գործնականին մէջ չէր յարգուէր: Շապուհ՝ Եզաւդէի վրայ յարձակելէն առաջ քարոզներ կամ հրաւիրակներ (caduceatores) ուղարկեց խաղաղութիւն առաջարկելու՝ որով անմիջական անձնատուութիւն մը պիտի ապահովէր: Բնակիչները, կ'ըսէ Ամմիանոս[191] ասոնց չարիք չհասցուցին, վասն զի այս հեշտակները նախապատւութիւն ըրած էին իրենց հետ տանելու Սինգարայի գերի բռնուածները, որոնք Հռոմայեցիք չէին ուզեր ճախող դիպուածով մը հարուածել:

Ճիշդ խօսելով չենք կրնար դարովել երկու կողման պատերազմողները՝ որ երկուքէն միայն վաղանցուկ պակասութիւններէն օգուտ կը քաղէին. այսպէս՝ կրօնական որեւէ օրինապահութենէ մը: Պոմպէոս Երուսաղէմը դիւրութեամբ գրաւեց շաբաթի պատճառաւ, որ օրը Հրեայք անգործ կը մնային. եւ այսպէս ամէն ազատութիւն ունեցաւ լեցնելու փոսը եւ հիւսիսային հատուածին հովիտը եւ հոն զետեղել աշտարակներն ու մանգղիոնները[192]: Նոյնպէս Պարսից բանակը յարձակեցաւ անգամ մը քրիստոնեայ հակառակորդաց վրայ Զատկի նախընթաց օրը, ուշադիր ըլլալով ծոմացն՝

---

191 Ամ. Մարկել. Ի, 7, 3—4:
192 Յովսեպոս, ՀՀ. ԺԴ. 63, ՊՀ. Ա, 145—147:

որով անոնք ակարացած էին[193]: Ուրիշ պարագայի մը մէջ ընտրեցին Պարսք Կիւրակի օրը, որ աղօթից օր էր եւ որու մէջ ճակատամարտները կը մոռնային[194]: Իսկ Բիւզանդացիք ալ յաճախ մտադիր կ՚ըլլային ուրիշ իրողութեան մը՝ որ իրենց շատ նպաստաւոր էր: Իրենք կերակուրն առատն արդէն կ՚ուտէին, իսկ Պարսիկները բան չէին ուտեր, բայց միայն իրիկունը: Ուստի շատ յարմարադէպ էր զանոնք ի կռիւ գրգռել օրուան երկրորդ կէսին մէջ, երբ կերակուրով ոյժ առած չէին[195]:

Կրնայինք այս «կողմնակի» ռազմագիտութեան շատ մ՚ուրիշ գծեր ալ յիշատակել· այսպէս Հռեայք կեղծեցին թէ խաղաղութեան մասին կ՚ուզեն բանակցիլ[196] կամ նոյն իսկ անձնատուր ըլլալ[197], որպէս զի շունչ առնուլ կարենան եւ կամ իրենց Հարուածող ենթարկել մեկուսացած եւ վաստակալից փոքրիկ խումբ մը զօրաց: Յովդապատի մէջ Յովսեպոս ջուր բերել կու տար գիշերանց Հեղեղատէ մը՝ լաւ չհսկուած պահպանութեանց անցից ճամբով մը· իսկ մարդիկը յափսիթերս կը սողոսկէին՝ ծածկուած մորթով, որպէս զի անտեսուն կարծուէին[198]:

[193] Պրոկոպիոս, ՊՊ. Ա, 18, 15:
[194] Թէոփիլ. Սիմոկ. Բ. 2, 7:
[195] Պրոկոպ. ՊՊ. Ա, 14, 34. Բ, 18, 17 (ճակատամարտը կէսօրին կը սկսի):
[196] Յովսեպոս, ՊՀ. Ե, 317, եւն:
[197] Անդ, Ե, 109—119:
[198] Անդ, Գ. 190—192:

Լազիկէի մէջ Պետրայի ջուր մատակարարելու համար Խոսրով շինել տուած էր ջըրմուղ մը՝ որ վրայէ վրայ երեքկարգեայ ջրանցից աղուգայ ունէր։ Հռոմայեցիք ասով խաբուեցան։ Կը կարծէին թէ ջուրը կ'անցնի միայն վերին յարկէն, եւ զայն կտրեցին։ Բայց յետոյ իրազէկ եղան իրենց սխալած ըլլալուն եւ այն ատեն կտրեցին արգիլեցին միւս երկու ջրուղիներն ալ[199]։ Սակայն մինչեւ այն ատեն Ներսէի պահակազօրը ծարաւ կրած չէր։ Անհատական զուարճալի ռազմահնարք մըն է, որով Ամմիանոս[200] եւ Ուրսիկինոս՝ որոնք պաշտօն ստանձնած էին, անվթար անցան թշնամեաց գծերէն․ իրենք դէպի աջ պրծան, եւ դէպի ձախ արձակեցին ազատ երթալու համար ձի մը՝ որ վառուած լապտեր մը կը կրէր․ եւ ասով թշնամեաց ուշադրութիւնն իրենցմէ հեռու՝ այն կողմը դարձաւ։ Գրեթէ առակի կարգ անցած էր թէ Բիւզանդական բանակները նախամեծար սէր մ'ունէին հնարագիւտ կեղծեաց․ Հերակլի պատերազմներն ուրիշ բան մը չեն՝ բայց թէ յաջորդական շարք մը ռազմահնարից՝ որոնց յաջողութիւնը սակայն անհաւասար էր[201]։ Պարսից քաջածանօթ էր

---

199 Պրոկոպ. ՊՊ. Դ, 2, 24, եւն։

200 Ամ. Մարկել, ԺԸ, 6, 14։

201 Հմմտ. Norman H. Baynes, The first campaigne of Heraclius against Persia. (Ի English historical Review, XIX, 1904, p. 694—701)։ Ընդհանուր մարտավարութիւնն էր՝ Պարսիկները փոքր-Ասիայէն վանելու համար, որոշեց չմտնել

թէ Բիւզանդացիք յաճախ կերպարանեալ նահանջի մը կը դիմէին՝ որպէս զի յետոյ յարձակման սկսին աւելի նպաստաւոր պայմաններու մէջ[202]: Ուստի Շահրվարազ չէր ուզեր հաւատալ համարիլ Հերակլի զօրաց ընկրկումը. բայց սակ կը հաստատուէր այն աստիճան որ ճշմարիտ պարտութիւն մը այլ եւս անտարակուսելի կ՚ըլլար: Այն ատեն պարսիկ զօրավարը վճռեց թողուլ իր ամրացեալ դիրքը, զոր Հերակլի գլխաւոր բանակն անմիջապէս գրաւեց շրջանիկ շարժմամբ մը[203]: Տասնուհինգ օր ետքն ալ նման կեղծիք մը Թշնամւոյն ջախջախման պատճառ եղաւ[204]:

Աւելցնենք որ Միեւնոյն հնարագիտութիւնքն փոխն ի փոխ կարգաւ կը գործածուէին երկու ոսոխաց կողմանէ, որոնք զանոնք իրարմէ փոխադարձաբար կ՚ընդօրինակէին: Հերակղ վարժեցուցած էր իր

---

ճակատամարտի անոնց հետ, այլ անցնիլ անոնց կողին վրայ սպառնալու անոնց հաղորդակցութեանց:

202 Նոյնը գործածած էր Աւրեղիանոս Օրոնդէսի ափանց վրայ. իւր թեթեւ հեծելազօրը (Դալմատացիք ու Մաւրիտանացիք) փախուստի դարձան հազիւ թէ պաղմիւրական ծանրակուռ սպառազէն հեծելախմբերու յարձակումը յայտնուիլ սկսաւ. եւ երբ վերջիններս տօթէն ու իրենց սպառազինութեանց ծանրութենէն սպառած երեւցան՝ յանկարծակի յետընդդէմ դարձան եւ Թշնամի հեծելազօրքը մեծցին վանեցին անկարգաբար աղմկած. (Հմմտ. Homo, L'Empereur Aurélian, p. 84 ff.).

203 Համառօտի ծայրաքաղ կ՚ընեմ հեղինակէս՝ Pernice, անդ, էջ 117:

204 Pernice, p. 119:

զօրքը՝ սաստիկ աղաղակելու եւ ժխոր ու աղմուկ յարուցանելու ճակատի ատեն[205]։ Քիչ մը ետքը Մանուրի Արաբները երբ մօտեցած էին բիւզանդական բանակին, սկսան թմբուկներ զարնել, փողեր հնչեցնել եւ միահամուռ պոռալ կանչել՝ Հռոմայեցիք կարծեցին թէ անթիւ անհամար թշնամի մը յարձակած է, եւ սարսափէն զահավէժ թափուեցան դետին մէջ՝ որ միւս կողմանէ կից կը պատէր իրենց բանակը[206]։ Երբ Պերոզ արքայ պատերազմ կը մղէր Հեփթաղաց արքային դէմ, վերջինս հրամայեց փորել լայն ու խորունկ փոս կամ խրամ մը, որ մէջտեղէն ընդհատուած էր միայն նեղ անցքով մ՚այնչափ՝ որ բաւական էր մէկ տողանի տաս ձիաւորներու անցնելուն եւ ծածկեց խրամը եղէգներով եւ հողով։ Ոմանք հեռուէն հրապուրեցին ձգեցին Պարսիկները, որ խուռն դիմեցին արձակ-երասանակ վազք տալով ձիոց, եւ թափուեցան ինկան խրամին մէջ, ուր մեծագոյն մասը մեռաւ[207]։ Բարբարոսաց այս նենգագործութիւնը Արեւելից մէջ մեծահռչակ տարածուեցաւ. եւ Հռոմայեցիք չդանդաղեցան զայն ալ բանեցնելու[208], եւ դար մ՚ետքը Մաւրիկ Ջերմա-

---

205 Կեդրենոս, Ա, էջ 719։

206 Ուտիքէոս, Տարեգիրք, Բ, 273, եւն։

207 Պրոկոպ. ՊՊ. Ա, 4, 7, եւն։

208 Չեմ կարծեր գոնէ թէ այսպէս մեկնելով յանդգնած ըլլամ Պրոկոպիոսի այն կտորը (ՊՊ. Ա, 13, 13) մեծ փոսի մը մասին, զոր Հռոմայեցիք փո-

դին կը յանձնարարէ նոյնն իր Ռազմագի-տականին մէջ[209]:

Պաշարմանց մասին երկարաձիգ քննու-թիւններէ ետքը՝ տակաւին ալ յամեցի պաշարմանց մարտամանր միջադիպական իրո-ղութեանց վրայ: Պէ՞տք էր դանց ընել զա-սոնք եւ բաւականանալ զինուորական կազ-մակերպութեան ընդհանուր գծերովը ու տե-ղագրական մանրամասնութեամբքն: Այսպէս չկարծեցի. վասն զի այս ոճով Բիւզանդի պաշտպանութեան մասին անկատար ու սխալ գաղափար մը պիտի ունենայինք: Վերջինս չէր ապահովեր դարերու ընթացքին մէջ — որչափ ալ սահմանագլխին խուճապներ տեղի ունեցած էին — միայն ա՛յն նախահոգ զգու-շութեամբ՝ որով Սահմանաց (limes) վրայ կը զետեղուէին բերդեր ու զօրակայքեր: Պարթեւաց համար — բայց աւելի եւս Սա-սանեանց համար — խնդիր չէր այն՝ թէ բռնաբար կարենան կոտրել անցնիլ որեւէ կէտէ մը պաշտպանողական այն շղթային՝ որ տեսականօրէն անընդհատեալ կը նկա-տուէր: Այս միջնակաց ընդարձակածաւալ երկիրներուս մէջ ա՛յնչափ խոչընդոտներ կային ու ա՛յնչափ ծուղակներ, որ վճռական քայլ մը չէր առնուեր՝ նոյն իսկ բազմաթիւ

---

քած ըլլան Դուրայէ մէկ քարընկէց հեռուն, եւ զորուն մէջ Թողուցին մէջընդմէջ մուտքեր ու ելքեր»: Յա-ւել՝ Զաքարիա Հակոբ, Թ. 2, էջ 170:

[209] Ռազմագ. Դ, 3, էջ 107, եւն:

ընդհարումներէ եաքը։ Պարսից բանակին իրական եւ հոյակապ զօրութիւնը կը սկաբանար այս բազմապատիկ ճիգերով, բայց ապահովապէս ասոնց ոգեսպառ ըլլալու եւ ասոնց՝ իւր առուգութիւնը կորսնցնելէ եաքը միայն՝ հասնելու արեւմտեան մեծ պետութեան, ի բաց առեալ շատ ցանցառ դիպաց մէջ՝ որոնցմէ վերջինս կը յաջողէր պրծիլ։ Արեւելեան սահմանագլխին պաշտպանութիւնը կը կայանար համառօտիւ՝ բաւական մեծ մասամբ յառաջապահաց կռիւներու այն անսահման շարքին մէջ, եւ պաշարմանց — ապարդիւն կամ շատ ուշ եղանակին վերջերն միայն յաջողած, — երկարաձիգ բանակցութեանց, խարդախ նենգութեանց[210], եւ մեծ ու մանր ճարպիկութեանց մէջ[211]։ Այս ամբողջ խառնակոյտը, որ ի

210 Ահա ասոնց շատ բնորոշներէն մին. Սուրայի եպիսկոպոսը Խոսրովի առջեւ կը դնէ թէ քաղաքը Հռոմայեցւոց բանի մը ծառայած չէ եւ իրեն ալ ծառայութիւններ պիտի չմատուցանէ։ Մեծ գումար մ'առաջարկեց քաղաքը կողոպուտէ փրկանաւորելու համար։ Արքայն կը կեղծաւորի, եպիսկոպոսին դեսպաններ իրր ուղեկից կու տայ, որոնք սակայն հրաման առած էին քաղաքին դրան բացուածքին մէջ նետելու մեծ քար կամ գերան մը, որպէս զի դուռը փակել կարելի չըլլայ։ Եւ այս միջոցով Պարսք մտան քաղաքը, զոր հիմն ի վեր կործանեցին. (Պրոկոպ. ՊՊ. Բ, 5, 13—26). Հմմտ. Մակլէր, Սեբէոս, էջ 9 = հայ բնագիր՝ էջ 29 Գողոն Միհրան «եկն ի Հայս եւ առ զԱնկղ սուտ երդմամբն»)։

211 Նշանակելիք Մաւրիկի շատ պայծառ բանաձեւը (Ռազմագ. Է, 1, էջ 137) Κυνηγίῳ ἔοικε τὰ τῶν πολεμίων (որոգայթով վարէ թշնամականները)։

212 Պէտք է նաեւ ասոր փոխարէն քանի մը խօս-

*վերջոյ նկարչական է՝ եթէ ընթրութիւն ընենք, կարելի չէր յապաւել հանել իմ նիւթէս՝ առանց չափով մ'կրաց ճշմարիտ նկարագիրը խանգարելու*[212]:

---

*քով նշանակել այն իրողութիւններն ալ, որ այս պատմութեան հակառութիւնները կ'արդարացնեն, եւ կ'աւելցնեն ասպետական եւ դիւցազնական գիծ մը: Ցանցառ չէին՝ գոնէ Սոսրին-կայսրութեան առեն՝ մենամարտիկ կռիւները* (prouocatoria proelia) *ասկէ կանխագոյն ինծի ծանօթ է միայն Հրէի մը եւ Հռոմայեցի հեծելոյ մը մենամարտը՝ ուր վերջինս ընկճեցաւ. (Յովսեպոս, ՊՀ. Է* 169—176)*: Այս տեսակ մենամարտութեանց շատ յաճախ կը հանդիպինք կովկասեան աշխարհին նախնական ասպետութեանց մէջ, ուր կը պատմուին անհատական ոգորումներ Վրաց եւ Հայոց մէջ. (Հմմտ.* Brosset, Hist. de la Géorgie, St. Petersbourg, I. 1849, p. 52, 67, *եւն): Նոյնը տեղի ունեցաւ Թէոդոսիպոլսոյ պաշարման ժամանակ Թէոդոսի Փոքու առեն, զոր Մաղաղաս կը նկարագրէ. (ԺԳ, էջ* 364)*. Սոկրատ միայն կ'ակնարկէ զայն (Է,* 18 — *վերջ): Ուրիշ դէպք մը կը պատմէ Պրոկոպիոս (ՊՊ. Ա,* 13, 29, *եւն) եւ որոգումը տեղի ունեցաւ Կ. Պոլսոյ ըմպշամարտապետին՝ որ Կոցէսի բազմնեաց սպասաւորն էր, եւ երկու Պարսիկներու միջեւ, որոնք կարգաւ զանի յառաջարկեց կանչած էին. վերջին երկուքն ալ յաղթուեցան: «Մաշակէր» Հերակլէս միայն ընդ միայն կռուեցաւ պարսիկ զօրավարի մը դէմ (Նիկեփոր. Զ,* 1)*: Ադուանից աշխարհի մէջ ճակատամարտէ մը յառաջ կատարուեցան շատ հետաքրքրական քաղաքավարական արարողութիւններ. երկու ոսոխներու բանակները իրարու կը հանդիպին՝ Նրաժիկ միայն իրարմէ բաժնուած. երկու կողմն ալ կը փափաքի կռուի ձեռնամուխ ըլլալ: Պարսիկները հրաւիրակ մը կ'ուղարկեն՝ առաջարկելով կռուիլ, բայց խնդրելով որ Հռոմայեցիք այս նպատակին համար անցնին գետը եւ կամ թոյլ տան որ իրենք անցնին: Զօրավարը խորհուրդ հարցուց զօրաց, որոնք յու համարեցան որ Պարսից թոյլ տրուի գետն անցնիլը. եւ անոնք անցան գետը՝ եւ յաղթուեցան (Թէոփիլ. Սիմոկ. Գ,* 7, 13, *եւն):*

## ԳԼՈՒԽ Զ.

## Բանակին վարչական ու օրինական կառավարութիւնը:

*Քանի որ ներածութեան մէջ բացատրած եմ՝ հոս կը զգուշանամ կրկնելէ այն պատճառները, որոնց համար այս գլխուս մէջ կը պակսին այլ եւ այլ բանաքննութիւններ՝ որոնց թերեւս կը սպասուէր*[1] *եւ որով ուրիշներ ալ անսովոր համառօտութեան մը վերածուած են: Ծանօթ է թէ կը շատանամ այն տեղեկութիւններով, որոնք արեւելեան*

---

[1] *Օրինակ մը յիշելու համար՝ այս երկիրներու զինուորական դիւանակալութիւնը շատ քիչ ծանօթ է մեզի: Հազիւ քանի մը յիշատակութիւններ ունինք արձանագրութեանց մէջ՝ կուսակալաց եւ զօրերու դիւանաց մէջ պաշտօնավարողներու մասին: Վադդինկտոն* 2700· *βοηθῷ κορνικουλαρίων ὑπατικοῦ*; (*«օգնականի քարտուղարաց հիւպատականին»*· carnicularius *բառական «եղջերական»՝ նշան է աստիճանին, ապա պէսպէս աստիճաններ*): — *Նոյն* 2225 beneficiarius *մը* (*բուն՝ ազատեալ, անձնական զինուոր*·) *եւ* commentariensis *մը* (*արձանագրիչ*)· — *ուր՝* 2122 *δουκηνάριε τάξεως δουκός երկերիւրապետ դքսական դասու· համմ. թիւ* 2405)· CIL, XII, 4254՝ ex (t)abul(ario) ... Syriae Pala(e)stinae (*ի դիւանապետութենէ... Ասորական Պաղեստինի*)· — Erwin, Palest. Explor. Fund, 1895, p. 36, n. 62՝ a quaest(i)onar(i)is leg. III Cyr(enaicae):

աշխարհաց կը պատշաճին՝ առանց որեւէ հակառակութեան։

## § 1. Նպարակմունք։

Այս նիւթն առաջնակարգ շահեկանութիւն մ'ունի։ Պատերազմի ժամանակ հարկ էր նախատեսութեամբ հոգալ պահեստներ՝ որ իրենք իրենց բաւական ըլլային, վասն զի արշաւելիք երկիրը մեծ մասամբ ամայի անապատային էր. եւ եթէ այնպէս ալ չէր՝ թշնամին կը ջանար նոյնպիսի ընել առ ժամանակ մը. զոնէ շատ յաճախ նոյն իսկ հասուն հունձքերը կ'աւերուէին. եւ երբ պաշարուած տեղ մը ստիպուած էր հրաժարել դիմադրութենէն՝ անձնատուր ըլլալէ յառաջ կ'այրէին շտեմարաններն ու համբարանոցները։ Խաղաղութեան ժամանակ դժուարութիւնքն աւելի նուազ չէին, Ասորիքի տնտեսական բարգաւաճման պատճառաւ։

Բայց յընթացս ժամանակաց՝ երբ Հռոմայեցիք միջամուխ եղան աւելի ներքնաշխարհները, բազմացան յառաջապահնորդաց կայաններ՝ անշէն ու ամայի ապառաժներու եւ առապարներու մէջ, եւ ասով կանոնաւոր պաշարահոգութեան պաշտօնն իր ամէն մասովը աւելի ծանրաբեռն եղաւ, բայց նաեւ աւելի անհրաժեշտ հարկաւոր։ Սահմանորդաց (limitanei) ստեղծմամբ խնդիրը փոխուեցաւ, բայց չբարձաւ։ Հետզհետէ պիտի կանգնինք այս երկու ենթադրութեանց մէջ.

այսինքն՝ վիճակ խաղաղութեան եւ վիճակ պատերազմի: Պէտք կա՞յ աւելցնելու որ այս նկարագրութիւնս շատ թերութիւններ ունի. նոյն իսկ վաւանդի մէջ ենք յաճախ խառնակ շփոթութիւններ ընելու: Այս տեղ նկատի կ՚առնունք իրաւանց, կանոնաւոր կառավարութեան խնդիրները. մինչ հեղինակները գլխաւորաբար իրողութեանց խնդիրները կը նկատեն, եւ բոլորովին մեկին կերպով չեն զանազաներ քաղաքներուն վերապահեալց[2] եւ զինուորական հոգաբարձութեան ծառայութեանց մէջ, ասոր կանոնագրական մատակարարութեանց, որ քիչ շատ ճշգրտութեամբ կը հատուցուէին, եւ պատահական եկամտից միջեւ, զինուորաց օրինական արժէքով վճարուած վարձքին ու այն պէսպէս առաւելութեանց միջեւ՝ որոնք անոնց ապահովուած էին երկիր բերքով. — Նոյն իսկ ռոճիկ բառը (լտ. annona). բառական՝ «տարեւոր», եկամուտ) բազմաթիւ պատրանաց պատճառ կու տայ: — Վերջապէս իմ ընտրած խորագրիս ներքեւ պիտի քննենք միանգամայն այն ամէնը՝ որ աղերս ունի ուտեստներու, կերի հետ, եւ պատերազմի նիւթոց՝ ինչպէս նաեւ փոխադրութեանց

[2] Սակայն անհաւատի բաւական պայծառ տեղեկութիւն մը. (Մաղաղաս, էջ 467, հրտ. Բոն գրք.) «Այն ժամանակ (Յուստինիանու ատեն) Արեւելք ուղարկուեցաւ Գեռմանոսեանս, հետը տանելով ոչ սակաւ դրամ պատրաստելու համար զաւ քաղաքի ցորենի մթերքը՝ Պարսից հետ պատերազմին պատճառաւ»։

միջոցներու հետ: Այն յիշատակարաններն որոնցմէ կարելի է օգտուիլ, երբեմն անխտիր այս ամէնուն կը վերաբերին:

Ա. — Խաղաղութեան ժամանակ: — Ուրեմն պատերազմիկները կ'ընդունէին վարձք մը եւ նպարանկ մը կամ ռոճիկ: Առաջինը գրեթէ ծանօթ է ժամանակի այլեւայլ շրջաններու, զօրաց պէսպէս տեսակներու եւ աստիճանաց համար[3]: Իսկ գալով տրուած նպարակաց կամ ռոճկաց՝ (annona) ասոնք շատ աւելի մթին կը մնան. եւ պէսպէս ըլլալու էին երկրամասերու համեմատ, ըստ որում զինուորականը կայանաւորած էր բազմաձեան գնդի մը հետ կամ թէ անդամ էր ջոկատի մը՝ որ որեւէ հեռաւոր բերդի մը մէջ զետեղուած էր[4]: Գոնէ տեղեկութիւն ունինք թէ իւրաքանչիւր լէգէոնի մէջ կային գոնէ երկոտասանեակ մը նպարապանք կամ ռոճկապանք (frumentarii, նաեւ համբարապանք, պարենապանք) որոնց պաշտօնն էր նպարակիմանց այս բաժինը յանձնել:

---

[3] Հմմտ. յատկապէս Marquart, անդ. էջ 18, 20, 88, 89, 93, 105, 204, 209, 282, 284, 311, 323.

[4] Զինուորական ռոճիկը (annona militaris) միայն աւելի ուշ ժամանակ մանրամասն կանոնադրութեան նիւթ եղաւ, որ սակայն միջոց ալ յոգնոդման. Հմմտ. Թէոդոսի Օրինաց գիրքը՝ զոր յառաջ կը բերէ Seeck (տե Պաւլի — Վ.): Արձանագրութիւն մը 350 տարւոյ (Վաղդինգտոն, 2037) կը յիշէ ἀκτουάριος (= actuarius) οὐεξιλλατιόνος Μοθανῶν (պարենապետ զօրաբաժնին Մոթանացւոց) այսինքն՝ համարակալ պաշտօնեայն որ կը կազմէր անուանացանկերը, որոնք հիմ կը ծառայէին ռոճկաց բաշխման:

Երկու արձանագրութիւնք կը յիշեն Ասորւոց եւ Արաբիոյ բանակաց երկու նպարապանները[5]։ Կ՚երեւայ թէ ասոնք պիտի հայթայթէին միայն զինուորաց պիտոյքները եւ ոչ թէ նաեւ սպայիցը։

Եթէ պէտք ենք հաւատալ Աւգոստեայ Պատմութեան կեղծ յիշատակագրութեան[6] Վաղերիանոսի գրած մէկ թուղթն առ Զոսիմիոն՝ որ անծանօթ մըն է, եւ Ասորիքի մէկ գործակալը, այս վերջինոյս հրամանց եւ պարտուց մէջն էր վարձքն ու նպարակները տալ Կղաւդիոսի (որ յետոյ եղաւ Կղաւդիոս Բ Գոթացի) այն ատեն տրիբուն կամ հազարապետ ի Արեսեան Հզօրագոյն լեգէոնի (leg. V Martia Fortissima), որ ամէնէն կասկածելի լեգէոններէն էր[7]։ Այն տեղ կը գտնենք երկարաձիգ ու հետաքրքրական անուանացանկ մը, որուն մէջ ա-

---

[5] Մին Գ. Գաղղիական լեգէոնէն (CIL, VI, 1636). միւսը Գ. Կիւրենեականէն (CIL, III, 2063)։ Ընդհանրապէս համբարարներ զօրաց վրայ (milites frumentarii) տես v. R. Paribeni, ի Röm. Mitth. XX (1906) p. 310—320։

[6] Ուրիշ հեղինակ մը (Զոսիմոս, Վարք Աւրել. 13, 1) կը յիշէ զՄէկիոս (Maecius) Բրունդիսիանոս, որ վերակացու էր Ռոճկաց Արեւելից՝ Վաղերիանու օրով, բայց վաւերականութիւնը շատ տարակուսական է, վասն զի ժամացածին տեղեկութեան մը մէջ կը յիշատակուի։

[7] Տրեբելլիոս Պողիոն, Վարք Կղաւդեայ, 12, 2—4։ — Այս բնագիրս մեկնաբանած է L é c r i v a i n, Études sur l'Histoire Auguste, p. 55—57. այս մասին չէ ծանրացած L. Homo, De Claudio Gothico. Paris 1905, p. 25։

պահովապէս ճշգրիտ մանրամասնութիւններ ալ կան: Գողթին կրնար հայթհայթել պաճարել զինուորական պարենաց եւ ռոճկաց ցանկերը. բայց իւր գործածած վարչական ցուցակներն ապահովապէս մեծ մասով Դ դարէն են, իսկ յիշատակներն այլեւայլ ժամանակներէ, եւ ամբողջը գեղեցկագոյն գործած է[8]:

Այս նկարագրութիւնք որ «մեր սեպհական գանձէն» կ՚ըլլան, ամէն տեսակ նիւթ կը պարունակեն: Իբր ուտեստ՝ ցորեն, գարի, ճարպ, գինի, երկու տեսակ ձէթ. — սպարապետի համար՝ 6 ջորի, 3 ձի, 9 մատակ ջորի, 10 ուղտ, եւ այս անասնոց համար՝ կեր: Կ՚աւելցուէն մորթք՝ վրաններ շինելու, — պաստառներ՝ լաւղիկներ, վերարկուներ, եւ ասոնց զարդարիչ յարակիցներ՝ ճարմանդներ, գօտի, օղ, ասպարանջան, — ղէնքեր՝ սաղաւարտ, վահաններ, նիզակներ, արդներ, եւն ու ծառայք՝ խոհարար, ջորեպան, քարտուղար (դրագիր), ճարտարապետ, որսորդներ, սայլագործ, բաղանեաց սպասաւոր, չաքարագործ, եւն եւն[9]: Այս

---

[8] Բայց մասի Կղաւդեայ պարագան քիչ մ՚առանձնայատուկ բան մ՚ըլլալու է, հեղինակին վերջին տողերուս համեմատ՝ «Այս ամէնն անոր համար յատկապէս կը պատմեմ՝ ո՛չ իբրեւ տրիբունի՝ այլ իբրեւ դքսի (non quasi tribuno sed quasi duco), վասն զի այսպիսի մարդ մըն էր, որուն մասին շատ բան կայ պատմուելիք»:

[9] Այս անուանացանկին տողերուն բազմաթիւ ըլլալուն մէկ փաստն է անոր մէջ տիրող խառնակու-

նիւթերուն մեծ մասը պիտի հատուցուէր հրամատարութեան պայմանակէտին. (quem refundat, «որում հատուցանէ» փոխարէն)։ Տիրոյնը — կամ տիրոջնի տեղ գործակալը — չէր կրնար բան մը պահանջել զանազանցիններէն՝ մանաւանդ արծաթ[10]։

Այս արծաթի փոխուած գնարկութիւնը (adaeratio) շատ անգամ արգիլուած է Դ դարուն մէջ[11]. բայց արգելքն երկարատեւ չէ եղած[12], մանաւանդ Արեւելքի մէջ։ Եւ Ե դարու սկիզբը Ոնորիոս եւ Թէոդոս Բ ա՛լ ուրիշ բանի հոգ չեն տանիր, բայց միայն դրամական այս համազօրութեան հաստատուն նկարագիր մը տալ[13]։ Նահանգներն ու տեղերն ապահովապէս ա՛յլ եւս կազմակերպած են զօրաց մատակարարելու պարէններ ու դրամական նպաստներ, նոյն իսկ մեծաքանակ ալ ըլլան, միայն որպէս զի ազատին պարտաւորութենէն՝ անոնց օթեւան տալու եւ տան մէջ անոնց բնակութիւնը

---

թիւնը. Իւրաքանչիւր շատ կ'ընդհատի եւ քիչ մ'ետքը կրկին կը սկսի՝ բոլորովին տարբեր նիւթերու միջամտութենէ մ'ետքը։

10 «Իսկ Տուգեալները, զորոնք կարելի չէ զերել իրենց չքնութեանց պատճառաւ, չափաւորութեամբ հատուցանեն, բայց այնպէս որ ոչինչ գնարկուի (ut nihil adaeret), եւ եթէ տեղ մը բան մը պակսի՝ ո՛չ զրուցի եւ ո՛չ ալ դրամով պահանջուի»։

11 Օրէնք Թէոդոսի. Է, 4, 1։

12 Հմմտ. Seeck, Adaeratio (առ Պաուլի-Վ)։

13 Օրէնք Թէոդոսի, Է, 4, 31 (յամէ 409) «Զինուորական մատակարարութեանց խնամ տանելով՝ գնարկական նպաստահատոյց, զորոնք սովորութիւն

կրելու: Հաւանական է թէ ինքնակալը, որոնք միշտ պատրաստ էին օրինադրելու, ջանացած են որ այս փրկանքը գոնէ շատ ծանր չ՚ըլլար[14]:

Միեւնոյն սահմանադրութիւնը 409 տարւոյ կը ցուցնէ թէ վարձքի վճարումը կը տարածուէր նաեւ պատերազմիկներուն զաւակաց, ընտանեաց (familiae)[15] եւ այս բնական հետեւութիւնն էր այն սկզբունքին՝ որ ծառայութեան կ՚ենթարկէր անձնապէս հնօրեայ զինուորին որդին (filius ueterani) ինչպէս նաեւ գաղթականը, եւ զայսպիսիք կը համարէր զայն՝ եթէ թերանար ներկայանալու զինուորակոչութեան գործակատարաց: Սահմանորդք (limitaneus) եւ նոյն իսկ նահանգաց զինուորաց մեծագոյն մասը տակաւ տակաւ շատ կորսնցուցած էին իրենց զինուորական նկարագրէն: Անոնք կը գործածուէին ամէն տեսակ պիտոյից համար, եւ

---

եցած է տալ ընտանեաց յԱրեւելս եւ յԻլիւրիկոն, տեղեաց եւ Թրակաց համեմատ որոշ եւ զանազան գներ կը սահմանենք»:

[14] Թերեւս Բերսաբէի կայսերական հրովարտակը (Clermon-Ganneau, ի Rev. bibliq. XII, 1903, p. 27 ff. 429. N. S. I, 1904, p. 85. III. 1906, p. 412—432) կը կարգաւորէր ճիշդ այն հասերն, որ հատուցուելու էին գրաւման (երկրապահ) զօրագնդաց: Անեղծուածոյին բանաձեւին ἐπὶ τοῖς, զոր իւրաքանչիւր տողին վերջը կը կարդանք՝ կարգուածքէն առաջ, կը յանձնարկէ՞ն արդեօք զօրացուցակաց (καταλόγοι) անունները: Այս շատ հաւանական պիտի ըլլար:

[15] Յաւել՝ 359ի արձանը Ակաղոնի (ի Hermes, XIX, 1884, p. 422):

հռոմէական է որ իրենք ալ անձամբ կը ջանային քաղաքային վարձու տալ իրենց բաղնիքները իրենց եկամուտն աճեցնելու համար [16]։

Նպարը կամ ռոճիկը [17] չէր հատուցուէր միայն հռոմայեցի զօրաց՝ այսինքն՝ անոնց որ պաշտօնապէս կայսերական բանակին մաս կը կազմէին, Դաշնակից իշխանք ալ, որոնք սահմանագլխոց տէրութիւնները կը կառավարէին, իրաւունք ունէին ընդունելու պարէնաւորմունքը, որոնք թէեւ սկզբունքով բերօք երկրի հատուցմունք կ'ըմբռնուէին, բայց, բնական է, կը փոխարկուէին ար—

---

[16] Թէոդոսեան Օրինագիրքը կը պարունակէ բազմաթիւ կարգադրութիւններ այս զեղծումները բառնալու համար։ Կոստաս Բ կը գրէ Միջագետաց դքսին 349ին) «Փահուէ որ հնօրէից կամ զինուորաց որդիք չյարակցին կուսակալական պաշտօնարանաց» (Է, 226)։ Արկադիոս եւ Ոնորիոս կը գրէին Հայաստանի դքսին (396ին) «Եթէ զինուորաց մին ասկէ ետքն ալ ատանձնական հնազանդութեան մէջ գտնուի, հինգ լիտր ոսկի իբր տուգանք վճարէ». (Է, 1, 15)։

[17] Ռոճկաց համբարանոցաց եւ այն կերպին մասին՝ որով իրենց նպաստակին կը հանէին, երբ զանոնք քիչ մը հեռուէն բերել տալ հարկ էր, կրնամ յիշատակել միայն Լիբանոսի յաջորդ քիչ մը մթին խօսքը (Թղթ. 209, «Կայան մը (σταθμός) կայ Եփրատայ շուրջը, Կալինիկոս անունով... այս գիւղը զօրագունդ մ'ունի հոն նստած, զոր պէտք է դարմանել, քանի որ մերք հոն չեն տանիր, այլ ուրիշ կողմանէ պարէն հագալով. անկից մինչեւ Կալինիկէ տանիլ պարտքն է Եփրատայ շրջակայից իշխանին»։ Ուստի ռոճկաց եւ պարէնից հարկապահանները պարտք չունէին մինչեւ վերջին նպաստակակէտն իրենքին տանիլ նոյները։

ծախի[18]: Դաշնակցութեան դաշանց մէջ կանխաւ կը սահմանուէին Դաշնաւորական ռոճիկք կամ հացք (annonae foederaticae) մասն — որոշելով քանակն ու վճարելու կերպը[19]: Իսկ Պէտութեան զինուորաց նկատմամբ չենք կրնար որոշել այս հատուցմանց պայմանաժամերը: «Զմեռուան ժամանակ տեղ մը կ'անցնէ եւ ընչից պարբերական տուրքն ունի Հռոմէական կարգադրութեան համեմատ[20]»: Այս բնագիրը շատ բացայայտ եւ պարզ չէ, այնչափ աւելի որ «ինչք» (χρήματα) չափազանց տարտամ իմաստ մ'ունի եւ կրնայ գործածուիլ թէ՛ դրամոց եւ թէ ուտեստի, պարենոց համար[21]: Մաւրիկի՛ ատեն ծագած ապստամբութեան պատճառ[22] էր սնունդները (σιτήσεις) նուազեցնելուն ծրագիրը: Զօրաց նպարակարարումներն ի հարկէ ենթակայ էին

---

18 Յուստինիանոս ատեն այս զօրամասերու բաշխողները այլեւս իշխաններն չէն, այլ կայսերական պաշտօնեաներ՝ ὀπτίωνες. (Benjamin, անդ, p. 13). Տես վերը Մասն Բ, Գլ. Ա յօդ. Ե:

19 Հմմտ. Մազգաղայի հատուածը (Մոմզէն, ի Hermes, VI, 1872, p. 344). Դաշնակիցք «օրոնցմէ նաեւ դաշնաւորական հացք կը ծագին»:

20 Թէոփիլ. Սիմոկ. Բ, 10, 5:

21 Այս ἐπίδοσις (տուրք, նուէր, բաժ եւ հանգանակ) թէպէտ եւ աւելցուած ալ է ἐγκύκλιος, կըրնայ տակաւին չնշանակել (պարբերական) սովորական կանոնաւոր վճարում մը, այլ տեսակ մը տուրք կամ պարգեւք (donatium կայսերական պարգեւ զօրաց)՝ որ սովորաբար պատերազմի մը բարեյաջող ելքէն ետքը կը բաշխուէր:

22 Տես վերը՝ Մասն Բ. Գլ. Գ.:

տեղական շուկայի վիճակին ազդեցութեան· երբ 324ին սարսափելի սով մ'աւերեց Արեւելքը՝ զինուորները վերջինները չէին որ Անտիոք քաղաքի շտեմարանաց եւ մթերանոցներու վրայ յարձակեցան[23]:

Երբ զինուորները փոքրիկ խմբերով միացած էին ցանուցիր ամրոցիկներու մէջ, շատ կարելի է որ ռոճիկը կամ թոշակը անհատական չըլլար· ամէն դէպքին կառավարութեան կ'իյնար հոգ տանիլ ի մէջ այլոց պահեստներ համբարելու պատերազմի եւ պատահելի պաշարման պարագային համար: Առրիանոս, որ Կապպադովկիոյ մէջ հրամանատար էր եւ քննական այցելութեան պաշտօն ստանձնած էր Կողքիսի համար, Ապսարոսի կը զեկուցանէ իր ըրածները· Ափսարոսի մէջ «հատուցի զինուորաց իրենց վարձքը, ծանրախոյզ քննեցի անոնց զէնքերը, պատնէշները, փոսերը, հիւանդներն ու ուտեստի պարէնները[24]»: Սեբաստապոլսոյ (Դիոսկուրիասի) մէջ «նոյն օրը կրցանք վճարել զօրաց իրենց վարձքը, եւ տեսնել ձիերը, ձիաւորները... հիւանդանոցը, պարենաւորութիւնքը (համբարքը) եւ շրջեցանք պարիսպներն ու փոսերը[25]»: Անխուսափելի

---

23 Թէոփանէս, 29, 13 եւն:

24 Առիանոս, Ծրջան. Եւքսն. (հրտ. Didot), Զ. 2:

25 Անդ, Ժ, 3:

էր որ հաշուող այս կանոնադրութիւնք ան-անկմնութիւններ ունենային[26]:

Պատերազմի մեքենայից շինութեան նկատմամբ միայն ենթադրութիւններ կըր-նանք ընել Հասարակապետութեան ամբողջ շրջանին եւ Վերջին-Կայսրութեան ժամանակի համար: Եւ այս կառք ու կառքմածն ալ պէտք չունէր շատ յաճախ նորակերտուելու. ի սկզբան, գոնէ պարտութեան մ'առթիւ, ճա-կատամարտի մէջ կը կորսուէին կը սպա-ռէին միայն արդնունք· միւս տակաւին շատ քիչ կը գործածուէր քան ինչպէս եղաւ յե-տոյ. այն ժամանակ տակաւին անհրաժեշտ կարեւոր չէին սլաքներու մեծաքանակ պա-հեստի մթերքներ: Բայց աստի ընդհանրա-պէս պատերազմները բոլորովին անկէկալ կերպով չէին ծագեր, ինչպէս յետոյ Սասա-նեանց ժամանակ եղան: Ինքնակալ մը, որ Տիգրիսէ անդին արշաւանք մ'ընել կը ծրա-գրէր, կրնար կանխաւ հոգալ ամէն բան Հռոմի, կամ գոնէ Իտալիոյ մէջ: Բայց կային բացառիկ դէպքեր, օրինակի համար երբ կայսրութեան հետամուտ կուսակալ մը սոփ-

26 Ասկէ կը տեսնուի թէ տեսուչն ամէն բանի միջամուտ կ'ըլլայ: Նահանգին կուսակալն էր ան-շուշտ ռոճկաց վերատեսուչը, բայց ի՞նչ վերին իշխա-նութեան ներքեւ: Կապիտոլինի եւ Պաղղինի քով, որոնք սակայն սաանց երաշխաւոր պաշտօնութեան դրօշ հեղինակներ են, կը գտնենք այն գաղափարը թէ նպարակմանց խնամքն ու հոգը անձնապահապետին էր վերաբերի· (Lécrivain, անդ., էջ 58): Առ ինչ կ'երեւայ Դ դարու համար· տես վարը:

պռուած էր ամէն բան հայթհայթել իր նահանգին մէջ. այսպէս պատահեցաւ Վեսպասիանոս՝ Անտիոքի մէջ[27]:

Երբ Արշակունեաց յաջորդեց ուրիշ հարըստութիւն մը, իրերը կերպարանափոխ եղան: Այս նոր թշնամին իրական փառասիրութիւններ ունէր եւ կը բաղձար զանոնք արժեցնել. բայց առոյ պատերազմները յաճախադէպ եղան, եւ միաժամանակ շատ աւելի յանկարծահաս. նիւթերու եւ կազմածներու կորուստները յաճախեցին. եւ հարկ էր մթերանոցներու թերիները լրացնել: Պատերազմիկներու սպառազինութիւնը բազմամասն դարձաւ. երկաթը տիրեց կաշիէն շատ աւելի, եւ զրահ տրուեցաւ շատ աւելի մեծ թուով պատերազմողներու: Հետեւաբար զգեստուց հաղարարձութիւնն ալ ձեւափոխուեցաւ եւ ընդարձակուեցաւ: Վերջապէս յառաջ պէտք կար ամրութեանց վրայ յարձակելու համար հարկաւոր մանգղիոնն-

27 Տակիտոս, Պատմ. Բ, 82. «Առաջին հոգն եղաւ նորանոր զինուորներ հաւաքել, եւ կանչել հնօրեայները. ամուր տեղեր ընտրուեցան այն տեղ զէնքեր շինելու համար. Անտիոքի մէջ ոսկի ու արծաթ դրամ հատանել տրուեցաւ»: Ձիւղ խօսելով պաշարողական շրջափակութիւնքն ալ մեր նիւթին սահմանին մէջ մտնելու են. բայց չենք կրնար ճանչնալ թէ ի՞նչ չափով այն դրամները կը գործածուէին զինուորական վճարմանց համար եւ կամ թէ ուրիշ պիտոյից համար կը կարուէին. շատ յաճախ փչատակից յուշարար դրամներ կը դրոշմուէին. (Հմմտ. B. Pick, ի Journ. intern. d'arch. numis., I. 1898, p. 452).

րու[28], բայց շատ ցանցառ պաշտպանութեան համար. մեքենայք դեր մը չունէին Պարթեւաց հեծելազօրուն ասպատակաց մէջ։ Բայց Պարսիկները պաշարմանց կը ձեռնարկէին այնքան, որքան կը դիմադրէին անոնց. ուստի հարկ էր քաղաքներուն եւ դղեկաց (castella) մէջ պահուէին նախազգուշութեան համար մեքենայից շարքեր[29]։ Կ'երեւայ թէ նաեւ Դիոկղետիանոս պէտք տեսած է այս նոր պահանջներու մասին կարեւորը հոգալ եւ այն՝ պատերազմի ասպարէզին բանակին մօտ։ Մաղաղասի պատմածը[30] գրեթէ լիակատար հաստատութիւն կ'առնու Տեղեկ. Աստիճ. գրքէն[31]։

---

28 Զէյգուլի մէկ արձանագրութիւնը՝ Բ դարու վերջէն՝ կը յիշէ μα(γ)γα(ν)άριος (մեքենագործ) մը (BCH, XXI, 1897, p. 44)։ Այս բառս կը նշանակէ պատերազմի մեքենաներ շինող։

29 Հմմտ. Յուլիանոս, Ճառ Ա, 26 D. «Խնամ կը տանիս Ասորիքի քաղաքները պաշարապինդ ընելու մեքենայիւք, զօրանոցներով, պարէններով եւ ամէն տեսակ մթերքներով հայթայթելով որ այս ամէնը բաւէ քու բացակայութեանդ ատեն, կ'որոշես անձամբ քալել բռնաւորներու դէմ, (գէթ ի կայսրութեան արեւմտեան կողմը)»։ Տես արդեամբք ինչ որ Ամմիանոս (ԺԸ, 9, 1) կը գրէ Ամիդայ մասին. «ընդարձակ աշտարակներով եւ պատուարներով շրջապատեց (Կոստանդիոս) եւ հոն կարգեց ծանդիքոններ պահելու տեղեր» եւն։

30 Մաղաղաս, ԺԲ, էջ 307։ Դիոկղետիանոս «կառոյց նաեւ (Անտիոքի մէջ) երեք գործատուներ բանակին զէնքեր շինելու համար. կառոյց նաեւ Եդեսիոյ մէջ գործատուն մը զէնքերն աւելի մօտ պատրաստելու համար. նոյնպէս նաեւ Դամասկոսի մէջ գործատուն մը շինեց, խորհելով Սարակինոսաց արշաւանքները»։

31 Not. Dign. Or. XI.

18 Ներքոյ գրեալ գործանոցներ․
19 Արեւելից՝ հինգ հատ․
20 Վահանարան եւ զինարան՝ Դամասկոս․
21 Վահանարան եւ զինարան՝ Անտիոք․
22 Զրահագործարան՝ Անտիոք[32]․
23 Վահանարան եւ կազմածարան՝ Ուռհա․
24 Տիգարան (աշտէից)՝ Իրինոպոլիս Կիլիկիոյ․
25 Պոնտականք երեք հատ․
26 Զինագործարան՝ Կեսարիա Գամիրաց․
27 Վահանարան եւ զինարան՝ Նիկոմեդիա․
28 Զրահարան՝ Նիկոմեդիա։

Այս յիշատակարանիս մէջ չեն յիշուիր

---

32 Անտիոքի երեք գործատեղերէս միայն մին յիշուեցաւ Դ դարուն։ Արդեօք պէտք է այս հետեւութիւն համարիլ այն դաւադրութեան, որուն աջակցութիւն խոստացած էին երկու տրիբունք գործատանց (tribuni fabricarum) Կոստանդեայ օրով․ (Ամ. Մարկեղ. ԺԴ, 7, 18. ասոնց պատիժը կը պատմուի՝ 9, 4 եւն)։ Գոնէ պէտք է կարծել թէ ասոնց դաւակցութիւն անըմբռնելի բան մը կ՚երեւայ, վասն զի երբ Մոնդիոս (ըստ Սոկրատի, Պատմ. Եկեղ. Բ, 34 եւ Սոզոմ. Դ, 7՝ Մագնոս) զանձապետը ամենքանոց չարչարուած ատեն իբր դաւակիցներ անուանեց Եպիգոն եւ Եւսեբիոս անձինք, փոխանակ այս երկու տրիբունները վրայ խորհելու՝ որոնք քաղաքին մէջ էին, հեռուէն բերելով երեւան հանեցին երկու համանուն անձինք՝ որ բոլորովին անմեղ էին, Եպիգոն Լիւկացի փիլիսոփան եւ Եւսեբիոս Եմեսացի ատենախօսը։

*պատերազմի մեքենայք — եթէ ընդհանուր*
զէնք (arma) *բառին մէջ չեն պարունա-*
*կուիր, բայց այս չափ հաւանական չէ:*
*Ասոնք իրենց ծաւալին պատճառաւ յաճախ*
*չէին կրնար տեղափոխուիլ առանց մասանց*
*քակուելու, ուստի յարմարագոյն էր այս*
*գործիքները շինել հոն ուր անոնց հարկա-*
*ւորութիւնը կը զգացուէր*[38]*: Այն ատեն*
*տեղափոխողներն էին* արուեստագործ-
ներք (artifices) *կամ արուեստապէտները:*

*Ի վերջոյ այս ամէն պէսպէս պաշտօն-*
*եայք՝ որոնց մասին ցայժմ խօսեցանք, —*
*որչափ թոյլ կու տան այս մասին դատաս-*
*տան մ'ընել մեր ունեցած անօսր յիշատա-*
*կարանները, — մեծապէս ենթակայ էին*
*յանկարծագործ պատրաստութեան մ'ամէն*
*պատահարաց. եւ այս պակասութիւնը ա-*
*ւելի պիտի հաստատուի, երբ այժմ անցնինք*
*պատերազմական պատրաստութեանց:*

*Բ.* — Պատերազմի ժամանակ: — *Առա-*
*ջին օրերէն իսկ Հռոմայեցիք մեծ դժուա-*
*րութիւններ կը զգային պաշարապինդ ըլլա-*
*լու այն նոր երկիրներուն մէջ, ուր գացած*
*էին իրենց բախտը փորձելու: Հայաստան*
*իրենց համար չքննուած աշխարհ մըն էր.*
*բաց աստի առաջին պատերազմներուն առիթ*

---

[38] *Յիշելու է Հիւտայի պաշարումը. տես վերը*
*յօդ. Դ: Լազիկէի մէջ բերդի մը վրայ յարձակելու հա-*
*մար Բուզանդացիք իրենց մանգղիոնները նոյն տեղը*
*առ յաւէտ պատրաստեցին. Ագաթիաս, Գ. 3, 3:*

տուած էին պարագայք եւ ոչ թէ կանխաւ երկարօրէն պատրաստուած էին: Ի սկզբան զօրավարաց զինուորական ճարտարութիւնը կը բաւէր ամէն բանի, այնպիսի քաջագործութիւններ՝ ինչպէս էր Տիգրանակերտի առումը, եւ Զարբիենոսի պալատին կողոպուտը՝ զօրավարին եւ զօրաց ձեռքը ձգեցին ոսկւոյ եւ արծաթի ահագին գանձեր եւ 300.000 արդաւ ցորեն. «կը սքանչանային Լուկուլլոսի վրայ, որ կրցաւ առանց հասարակաց գանձէն գահեկան մ'առնելու, պատերազմի ծախքերը հոգալ նոյն իսկ պատերազմով[34]»: Պոմպէոս ալ հոգերէն ազատեցաւ իր հարուածող արագութեամբը. բայց պրդէն Անտոնիոսով կը սկսին տառապանքներն ու աղէտները:

Անտոնիոսեայ գլխաւոր յատկութիւնը չէր նախատես ըլլալ, եւ ժամանակն իրեն համար արժէք չունէր. կ'երեւայ թէ այն պարանքն ունէր թէ հոն երկրին մէջ կրնայ ապրիլ: Բայց հարկ եղաւ շուտով սթափիլ ու զիջանիլ: Ամէն բան յաջող կ'երթար քանի որ Հայաստանի մէջ էր[35], բայց հազիւ թէ

---

[34] Պղուտարքոս, Լուկուլլոս, 29:

[35] Ասկէ կը տեսնուի թէ Անտոնիոսեայ Ուղեգրեաց մասին ընդունած եմ Կրոմայէրի կարծիքը (J. Kromayer, Kleine Forschungen zur Geschichte des zweiten Triumvirats (ի Hermes, XXX, 1896, p. 70—104): Դէլբրիւք (Delbrueck, անդ, p. 408—414) կը հետեւի հին կարծեաց, առանց սակայն մասին վիճաբանելու՝ որ բուն երեւոյթին իրեն անծանօթ էր:

Մարաստան հասաւ. կարօտութիւնը սկսաւ սպառնալից դառնալ որ երթալով կը մեծնար։ Անկարելի էր խար ու կեր գտնելու երթալ առանց մեռեալները թաղելու եւ բազմաթիւ վիրաւորներով նահանջելու[36]. վասն զի ձմեռն մօտ ըլլալուն՝ պարթեւ զօրավարք որոշած էին քաջամեր ու անխոնջ հրոսակամարտ մը մղել։ «Կարելի չէր ամենեւին ցորեն հայթայթել առանց կռուի. աղօրիք չկար զայն աղալու համար, ստիպուած էին զանոնք ճամբան թողուլ դրաստուց մեծ մասը կորսուած ըլլալով, եւ դեռ մնացածներն ալ պէտք էին հիւանդներն ու վիրաւորները փոխադրել։ Կ՚ըսուի թէ ատտիկեան գրուի մը ցորենը բանակին մէջ կը ծախուէր մինչեւ 50 դահեկանի, եւ գարեհացերը[37] արծաթի կշռով։ Հռոմայեցիք ստիպուած էին ուտել ընդեղինայ ու արմատներու, եւ համակամ յանձնառնուլ ճաշակելու այնպիսիներ՝ որոնք իրենց անծանօթ էին (երբեմն թունաւոր)։ Միայն գինին կրնար դարման ըլլալ այն ախտից՝ զոր այս պտտահարք կը պատճառէին, եւ այս ալ չկար[38]»։ Կը պակսէր նոյն իսկ ջուրը. Հայաստան այնչափ ջրաշատ չէ, որչափ

---

36 Պղուտարք., անդ, 40։

37 Դիոն. Կաս. ԽԹ, 27. Երբ Անտոնիոս Փրաասպայի առջեւ ուտեստի նեղութեան մէջ էր, իւր զինուորաց ցորենի տեղ գարի տուաւ, որ ձիերուն կերն էր, երբ խոտը պակսէր։

38 Պղուտ. Անդ, 45։

կրնար կարծել տալ իր միջին մեծ բարձրադրութիւնը. Հետեւաբար իրեն դրացի շրջակայ լեռնադաշտերն ալ աւելի չոր են: Երբ Գոմպէոս Աղուանից աշխարհին վրայ կը քալէր, որ ապառաժուտ էր, նախազգուշութեան համար 10,000 տիկեր ջրով լեցնել տուած էր[39]: Անտոնիոս երբ Փրաա-սպան թողուց՝ որչափ ալ կը զգուշանար դաշտավայրերէն, բռնադատուեցաւ սարսափելի ծարաւ մը կրել տալու իր բանակին: Ամե-նադոյն ապուակէ ջուր կ'առնուին, նոյն իսկ եթէ փտտառողջ ըլլար հոսած ջուրը, չոր տիկերով կամ սաղաւարտի մէջ, քանի որ ամաններ չկային. եւ այս տառապագին անձկութեան մէջ հարկ էր իւրաքանչիւր քայլին կռուիլ Պարթեւ հեծելազօրուն դէմ[40]: Պէտք կա՞յ աւելցնելու թէ Միջագետեան երկիրները շատ աւելի մեծ խոչընդոտներ կը յարուցանէին[41]:

---

39 Պղուտ. Պոմպ. 35:

40 Պղուտ. Անտ. 47. Կը տեսնուի թէ շատ ուշ հասած են Ռկտաւեայ պատրաստութիւնները (զինուորաց համար ապահնելեաց մեծ պաշար, բազմաթիւ գրաստներ, որձով ու պարգեւներ՝ ապայից համար. — անդ. 53):

41 Պղուտարքոս իր վառ երեւակայութեամբ Արիամնէս արաբացի նենգաւոր ցեղապետին, որ առաջնորդն էր, բերանը կը դնէ խօսքս՝ «Պիտի կարծէք թէ Կամպանիոյ մէջ կը ճամբորդէք». (Կրասոս, 22): Անտարակոյս Կամպանիան շատ ծանօթ մը չէր բարբարոսին: Դիոն. Կասիոս (Խ, 21) նոյն արշաւանաց մասին գրած ատեն չի խօսիր այսպէս բացարձակ աւազոտ անապատի մը մասին, այլ թէ երկիր մըն էր, որ քիչ մը լեռնոտ էր եւ ծառազուրկ չէր:

Նոյն իսկ Եփրատայ ափանց մօտ՝ Կորբուղոն ստիպուած էր ծանր աշխատութեանց եւ ճարտարարանաց դիմել՝ ջրոյ պաշարն ապահովապէս հայթայթել կարենալու համար[42]: Իր արշաւանքները կատարուեցան աւելի մեծ խոհեմութեամբ. աչքի առջեւ ունէր թէ երկար պիտի ըլլան անոնք եւ թէ ամէն անակնկալ աղէտաւոր հետեւութիւններ կրնար ունենալ: Նոյն իսկ Հայաստանի մէջ չկրցաւ ցորեն ճարել. բարձրադիր սարահարթերուն վրայ՝ յատկապէս Վանայ ծովու ափանց կողմերը՝ հանդիպեցաւ ոչխարի հօտերու, որ հռոմէական զօրաց համար անհաճոյ սնունդ մըն էր եւ որ շատ դէշ կը յարմարէր ամառուան տօթերու ատեն[43]: Ուստի բանակին հետ կը քալէին ցորենաբարձ ուղտերու երկար տողաններ[44]: Բարեբախտաբար գրաւած կը պահէր բերդերու բաւական թիւ մը, ուր կրնար պատսպարել իր լեգէոնները եւ իր ամբողջ հետեւակա-

---

[42] Տակիտ. Տար. ԺԵ, 3, (Հայ Թարգմ. Հիւրիւզ. էջ 430) «Եւ քանզի անջրդի էր երկիրն, ամրոցս յաղբերականս անդ կառոյց (castella fontibus inposita). եւ զոմանս ի վտակաց Թաւրոյ՝ աւազակոյտս շուրջ ամբարձեալ»: Բայց նշմարելի է թէ բնագիրն ալ չորոշեր ճշդիւ թէ ո՛ւր էր այս «երկիրը» (regio):

[43] Այս արշաւանաց մանրամասն դիպուածոց մասին հմմտ. Հէնդէրսընի համառօտ բովանդակութիւնը՝ B. W. Henderson, The Life and Principate of the Emperor Nero. London, 1903, p. 163—191:

[44] Տակ. Տար. ԺԵ, 11:

ղօրը, մինչդեռ Պարթեւք՝ որ պաշարումներ ընելու կարող չէին, քաղաքներու շուրջ խեղճօրէն կը թափառէին, տեսնելով ամպանման բազմութիւն մը մարախներու որ կը փճացնէին ամէն կեր՝ որուն վրայ յոյս դրած էին իրենց հեծելազօրուն համար։

Ասորիք մեր թուականութենէ առաջ ամբողջ Ա. դարուն մէջ սաստկապէս ենթարկուած էր հարկերու[45]․ բայց այս ո՛չ թէ արտաքին ձեռնարկութեանց համար էր՝ այլ քաղաքային ներքին պատերազմն էր որ անկէ օգուտ կը քաղէր[46]։ Եւ այս նահանգը սահպուած էր տակաւին ընել նաեւ Տիտոսի Հրէական պատերազմի ծախքերը։ Գոնէ

---

45 Կեսար, Քաղ. Պատերազմ. Ա, 22։ Ասորւոց աշխարհի վրայ սահմանուած գումարները չափազանց խստութեամբ կը պահանջուէին․ ընչաքաղցութիւնն յագենալու համար ամենազգի միջոցներ կը հնարէր։ Սակ մը կը դրուէր գերեաց վրայ, հարկ մը՝ սպատոնց, տուրք մը՝ տանց դռներու եւ սիւներու վրայ։ Աշանջենապէս կը պահանջուէին ցորեն, պատերազմի համար մարդիկ, թիավարներ, մեքենաներ, սայլեր։ Բաւական էր որ եւ է բանի մը անուն տալ հնար ըլլար, անմիջապէս կրնար վրան հարկ մը սահմանուիլ։ Պետեր կային հոն քաղաքաց, գիւղերու եւ ամրոցաց մէջ։ Ամէնէն դաժանն ու ամէնէն անգութը լաւ քաղաքացի կը համարուէր, եւ հասարակաց նկարագրի տէր։ Գաւառը լեցուած էր սակրտուրներով (տանենի պաշտօնեայ), գործակատարներով, հարկապահանջներով՝ որոնք որչափ կարող էին կը կեղեքէին իրենց հաշուին։ Տես՝ Ապպիանոս, Քաղ. Պատերազմ. Դ, 62, Կասիոսի Լաւոդիկէի մէջ ըրած պահանջմանց մասին։

46 Նոյնը պարենաւորելու համար էր որ Կասիոս ցամաքէն հղկիացուց Լաւոդիկէի նաւահանգիստը մեծամեծ աշխատութիւններով, ուր կ'ուզէր ամբարահել ուտեստի պարէնները։ (Ապպիանոս, անդ, 60։)

վերջնոյն ժամանակ հռոմէական հոգաբար-ձութեան գործը դիւրին էր. Իսրայէլացիք իրենց քաղաքներու մէջ ամփոփուած՝ կը կրէին կարօտութիւն[47], բայց պաշարողներն ազատ էին իրենց պարէնները հայթայթելու, եւ Յովսեպոսի քով տող մը չի գտնուիր՝ որ այս կարգի հոգալից դժուարութիւն մը մատնէ[48]:

Դարձեալ դիւրաւորաքար Ասորիք հոգա-յին Գեստոսի եւ Կորբուղոնի պաշարարարն-դութիւնը[49]. բայց արդէն այն ժամանակ

---

[47] Յիշենք թէ Վեստիոս իր նահանջին առեն սպաննել տուաւ իր գրաստները, էշեր, ջորիներ եւն, որպէս զի թշնամւոյն ձեռքը չիյնան. (Յովսեպոս, Պ. Բ, 546):

[48] Մանաւանդ թէ Ասորիք այս պատերազմէն շահեցաւ յաջողելէն ետքը, վասն զի Երուսաղէմ գրաւումէն եւ տաճարին կողոպուտէն վերջն՝ աւարն այնչափ էր որ ոսկին այս երկրին մէջ նախկին գնոյն կէս գնով կը վաճառուէր. (անդ, Զ, 317):

[49] Արշաւանքի մը մէջ զինուորական Հոգաբար-ձութեան պետը ինք զինքը կ'անուանէ «վերակացու կարեւորաց» (praefectus necessariorum, ἔπαρχος τῶν ἐπιτηδείων): Կորբուղոնի բանակին մէջ այս պաշտօնն ունէր Տիբերիոս Յուլիոս Աղեքսանդր Հրեայն («պաշտօնեայ պատերազմին տուեալ» ministrum bello datum, կ'ըսէ Տակիտ. Տար. ԺԵ, 28. հայ թարգմ. Չիթըմիէզ. էջ 444 կը դնէ, «օգնական Կորբուղոնի ի պատերազմին»): Իր այս պաշտօնը պատուով ու յաջողութեամբ վարելուն համե-րուն ապացոյցն է այն՝ որ զինքն այդ պաշտօնանց մէջ պահեցին հրէական պատերազմի ժամանակ. տես Գոբերիոսի արձանագրութիւնը՝ ἀντεπίτρο[πον Τιβε-ρίο]υ Ἰουλίου Ἀλ[ε]ξ[άνδρου ἐπ]άρχου [τ]οῦ Ἰουδαϊ-[κοῦ στρατοῦ]. Տես Dittenberger, OrGrIS, 586. յաւել Յովսեպ. Պ. Ե, Զ, 237, եւ Domaszewski, ի Rhein. Mus., N. F., LVIII, 1903, p. 218—230:

նորութիւն մը կը սկսի երեւան գալ։ Զօրանոցները Կապպադովկիա թողուած էին ձմեռ մ'ամբողջ, Պետոս ալ հոն հասած էր Պոնտոսի եւ Գաղատիոյ զօրամասերով, ուրիշ երկիրներ ալ հանդանակած էին պատերազմի պատրաստութեանց։ Այլեւայլ իրողութիւններ, զորոնք լաւ չենք ճանչնար, կը ցուցնեն այն դիտաւորութիւնը՝ ուտեստներու նպարակրութեանց ուրիշ կարելի ուղի մ'ապահովելու հիւսիսակողմէն։ Վրաց երկրին մէջ բերդ մը շինեցին Հռոմայեցիք 75ին[50], եւ թերեւս նոյն իսկ Հայաստան ժամանակ մը զօրքերով գրաւուեցաւ[51]։ Տրայանոս՝ Տիգրիսէն անդին իր մեծ արշաւանքը ջնկած՝ փոյթ ու խնամ ունեցաւ դաշնակցութիւն մը կազմելու եւ ընծաներ փոխանակելու Արքեղայոսի Հենիոքաց (Heniochi) թագաւորին հետ[52]։ Աղուանից ալ նոր վեհապետ մը տուաւ, բարեկամական յարաբերութիւններ հաստատեց Վրաց, Կողքիացւոց եւ Սարմատաց պետերուն հետ[53]։ Համառօտ

---

50 Journ. Asiatiq., sér. VI, XIII, 1869, p. 26։

51 Ստատ. Սիլ. Ա, 4, 79՝ «Հռուտիլիոս Գաղղիացին կը վախնար Հայաստան եւ արդէն Լատինական կամուրջին ընդունող Երասխը» (Rutilium Gallicum timuit | Armenia et patiens Latii iam pontis Araxes)։ Այս ժամանակամանութիւնները թերեւս վերաբերին Պարթեւաց դէմ կատարուած թշնամութեանց, որոնց մասին ճշգրիտ յիշատակներ չունինք։ Հմմտ. Gsell, Domitien, p. 232—233։

52 Դիոն. Կաս. ԿԸ, 10։

53 Եւտրոպիոս, Ը, 3, Պղինիոս, Թղթ. Ժ, 13—15 (= Պղին. առ Տրայան. 63, 64, 67 հրտ. Keil)։

քսելով կ'ուղեր որ կա՛մ հպատակին եւ կա՛մ բարեկամ ըլլան Հայաստանի եւ Կաւկասի մերձակայ ժողովուրդները, որպէս զի ապա ըլլայ գործածելու Տրապիզոնի գիծը, որով կարելի էր կանոնաւոր պարէն ու պաշար փոխադրել ցամաքի ճամբով։

Այս նաւարկութեանց կը գործածուէին հողի վրայ ամէն տեսակ գրաստներ[54], բայց կ'երեւայ թէ յատկապէս ուղտեր, ասոնք պահանջաբար կ'առնուէին նոյն իսկ խնդրոյ մէջ չահ ունեցող նահանգներէն դուրս. այսպէս Եգիպտոսի մէջ, ինչպէս կը վկայէ Ֆայումի մէկ պապիրուսագիրը[55], ուր կնոջմէ մը կը պահանջուէր երկու ուղտ, որոնց մէն «ի տերունական ծառայութիւնս յԱնտիոքիա քաղաքայն զօրաց տեառն մերոյ ինքնակալին Սեւերեայ Անտոնինեայ» (Կարակալլա)։ Ետտոյ անոնք նաւիկներու վրայ կը բարձուէին, որոնք կ'անցնէին Եփրատը մեծ թուով, ուղեկցելով արշաւող բանակին[56]։ Ինչպէս ըսինք, Յուլիանոս հազար այսպիսի նաւ ունէր, որ սակայն խեղճ նաւակներ էին, վասն զի հողմայոյզ տկար փոթորիկ մը եւ գետին յորդումը բաւական եղան ասոնց շատերն

---

54 Յատկապէս ձիեր եւ ջորիներ, հմմտ. Յուլիանոս Թղթ. 27։

55 Berliner Griech. Urkunden, I. 266, I. 17—20։

56 Տես Մասն Բ, գլ. Բ։ Գործնական այս սովորութիւնը կը սկսի Կրասոսի արշաւանքով. (Պլուտ. Կրաս. 20)։

ընկղմելու՝ իրենց ցորենի նաւաբեռով մէկ-տեղ։

Զինուորական ռոճիկը կամ հացը (annona militaris) կը բաշխէր ամէն տարի, բայց աւելի ծանր կ'ըլլար պատերազմի ատեն, ուր յաւելուածական ռոճիկ մը վրան կ'աւելնար· այս բանիս կրնան վկայել Տիմեսիթէոսի յոր-ջորջանքները՝ «գործակալ նահանգին Ասո-րական Պաղեստինի, անդ հարկապահանջ մնացելոց ռոճկաց (հացից) նուիրական արշաւանաց[57]. (procurator prouinciae Syriae Palestinae, ibi exactor reliquor(um) annon(ae) sacra expeditioni), Այս անձը շատ խիստ էր պատերազմի պարե-նաց հարկաժողովութեան մէջ։ Իւր փեսան էր երիտասարդ Գորդիանոս Գ., եւ եղաւ անձնապահապետ։ Յուլիանոս Կապիտոլինոս Գորդիանոսի բերանը կը դնէ մտացածին ներ-բողեան մ'իւր աներոջ վրայ[58]. կը դրուատէ

---

[57] Աս. Մարկեղ. ԻԴ, 1, 10։

[58] Այս պատրաստութիւնք (CIL, XIII, 1807) կը տեսանէին Սեւերոս Աղեքսանդրի արշաւանաց համար. հմմտ. Samuel Kraus, Neue Aufschlüsse über Timesitheus und die Perserkriege, (ի Rhein., Mus., անդ, էջ 627—633)։ Բայց այս նպարակմունք Ասորիքէն միայն չէին գար. պատերազմի կազմածոց դոնէ մէկ մասն Արեւմուտքէն առաքուած էր, վասն զի Մեսէնայի տորմիղին մէկ նաւարաժինը հրաման առաւ Միջերկրականի ծովահէններէն պաշտպանելու համար՝ ուղեկցել կայսերական արքունեաց եւ այն ամէն բանի, զոր արքունիքը հետը կը տանէր. Dessau, Inscr. Lat. Sel. 2767. CIG, 2509. հմմտ. Domaszewskiի մեկնութիւնը՝ ի Rhein., Mus., անդ, էջ 382—390։

այն խնամքին՝ զոր իրեն հանդէպ ունեցաւ սահմանադրելոյ քաղաքները նպարակելու, անոր հոգածութիւնը՝ զինուորաց հանդէպ: Այս մանրապատում ընծայութեանց մէջ տարաժամանակութիւններ կան. բայց Կապիտոլինոս թերեւս աւելի արժանահաւատ Դեքսիպպոսէ առած է այն կէտը, որով անձնապահապետին (պրետորապետին) կ'ընծայուի ընդհանուր Հոգաբարձութիւնը: Միւս կողմանէ կը պատմէ Զոսիմոս[59], թէ Տիմեսիկլէսի[60] մահուանէ ետքը՝ անոր տեղ յաջորդեց Փիլիպպոս Արաբացի, եւ սա մատնեց իր տէրը: Կը տեսնէր որ պարէններն առատօրէն կը ղրկուէին բանակին, որ Գորդիանոս հետ Մծբին կը գտնուէր: Արդ շեղեցուց զանոնք այն նպատակէն. զօրքն՝ որ անպարէն անօճան երկրի մը մէջ տարուած էր, սկսաւ սոզտանել ու մեղադրել Գորդիանոսը թէ զիրենք մեռցնելու բերած է, սպաննեցին զանիկա եւ ինքնակալ հռչակեցին Փիլիպպոսը[61]: Իրականին չկայ ապացոյց մը թէ Փիլիպպոս՝ իբրեւ անձնապահապետ՝ իր ազատ տրամադրութեան ներքեւ ունէր նպարակրութեանց այս կամ այն ուղղութիւն տալը. թերեւս պարզապէս բանաւոր հնարք մը գործածեց՝ իրականութեան միջոցներն

59 Lécrivain, անդ, էջ 292—294:

60 Շատոնց ճանչցուած է թէ այս Տիմեսիթէոսի անուան աղաւաղութիւնն է:

61 Զոսիմոս, Ա, 18, 2:

ձեռքն ունենալով։ Գոնէ կ՚աւանդուի մեզի թէ Աւքսոնիոս, որ Արեւելից անձնապահապետն էր Վաղէսի առեն 367—369ին, թէեւ բոլորովին մօտալուտ էր պատերազմ մը, արդարակորով գտնուեցաւ «ի հարկաժողովութեան հասից[62]»։

Պարենաւորմանց այս խնդիրն առանձնապէս կարեւորութիւն մը կը ստանար, երբ գործողութիւնները կը կատարուէին գիտէ մը քիչ մը հեռուն։ Հատրայի պաշարումը Սեպտիմոս Սեւերոսի առեն ստիպուած էր վերցուիլ՝ ոչ միայն բնակչաց քաջակորով դիմադրութեան պատճառաւ, այլ վասն զի խարաբերները, որոնք թշնամի հեծելազօրուն հարուածոց ներքեւ կ՚ընկճուէին, ապստամբութեան մղեցին ամառնային տօթերէն արդէն պարտասած ու վհատած զօրքը[63]։ Պաղմիւրայի պաշարումն եւ առումը չափազանց դժուարացուց այն պարագան, որ անհրաժեշտ կարեւոր էր Ասորիքի հետ հաղորդակցութեան գծերը պահպանել։ Ամէն բան անկէ կու գար, նոյն իսկ ջուրը՝ որ Եմեսայէն կը բերուէր. եւ հարկ էր՝ պաշարաբերութիւնքն վաչկաբնակաց յարձակումներէն ազատելու համար՝ ամբողջ ճամբուն երկայնքին զինուորական պահակերաց շարք մը կանգնել։ Թերեւս պէտք ենք քիչ շատ հաւատք ընծայել՝ յէա-

62 Անդ, Դ, 10, 4։
63 Դիոն. Կաս. ՀԵ, 10, 11։

կանին, Աւգոստեայ Պատմութեան անվաւեր յիշատակարանաց, որոնք պաշարեալ քաղաքին հետ կատարուած բանակցութիւններ կը պատմեն. եւ շատ աւելի ալ հաւանական է թէ Աւրելիանոս նախամեծար համարեցաւ վաչկարնակ Թափառականաց ձեռնթափութիւնը գնել, այնպէս որ պարենաւորմանց հոգէն ազատ մնաց [64]:

Յուլիանոս ճամբայ ելած էր խոհեմութեամբ ամէն հարկաւորներով համբարակուած. «Իմ գետնաւերս, կը գրէր [65], լեցուն են ցորենով եւ ալ աւելի չոր պաքցամատով եւ քացախով»: Բայց աստի սայլերու մեծ բազմութիւն մը կ՚ընկերանար իւր բանակին [66], եւ պատահեցաւ որ ճամբուն վրայ սլաքահար կ՚ընէին եղջերուաց հօրաններ՝ որոնք դաշտերու մէջ կը վազվզէին [67], եւ անով առօրեայ կերակրոյ բաժինը կը ճոխացնէին: Վերջապէս Պարսից բանակետղը՝ Թշնամեաց պարտութենէն

---

64 Եւ այսպէս կը մեկնուի Զոսիմոսի (Ա, 54, 2) խօսքը՝ «Մերձաւոր ազգերէն բանակին համար պարէն ճարելով...»: Վաչկատուն Թափառականները՝ փոխանակ պաշարակրութիւնք կողոպտելու, այնուհետեւ իրենք եղան նպարակիչ հայթայթողները:

65 Յուլիանոս, Թղթ. 27:

66 Լիբանիոս, Թղթ. 1186:

67 Ամ. Մարկեղ. ԻԴ, 1, 5: — Մուրիէ (Ռազմ. Ա, 9, էջ 44) կը պարսաւէ այս արտօնութիւնք, եւ կը յանձնարարէ երբեք Թոյլ չտալ պատերազմի ժամանակ վայրի անասուններն որսալու, վասն զի խռովութեան առիթ մըն է: Բայց ճիշդ է որ խորհուրդ կու տայ նաեւ (էջ 43) խնայել մշակեալ տեղերուն եւ քաղաքները չկողոպտել. (այն առենն՛երը):

եալքը կողոպտելովը Հռոմայեցւոց ձեռքն անցաւ. պաշարաց այնպիսի յորդառատ լիութիւն մը որ աւելի վախ կար զեղծական ու կարգապահութեան Վնասակար շռայլութեան մը[68]։

Յուլիանոս կը կարծէր թէ ամէն հոգէ ապահովուած ըլլայ. ուստի իր ճամբուն վրայ կ'աւերէր կ'ապականէր արմտիքն, այգիները եւ մթերանոցները։ Պարսից քաւել տալու համար փոխարէն այն ամէնուն զոր գործած էին ի Մծբին, Բզաւդէ, Սինգարա։ Բայց այս ճոխութիւնը տեւական չեղաւ եւ թշուառութիւնը սկսաւ նահանջի ատեն. Նոյն իսկ Պարսիկներն անձամբ կ'այրէին հունձքերը Հռոմայեցւոց անցնելէն առաջ[69], կամ, կը բանային Տիգրիսի սահանքները, դաշտն ողողելու համար[70]։ Մայոզամար-քայի պաշարման ատեն՝ երբ հետեւակազօրը կը յարձակէր, հեծելազօրը ստիպուած էր դաշտերը յածիլ ուտեստ գտնելու համար[71]։ Եւ բուն իրական չքաւորութիւնը զգալի դարձաւ նոյն իսկ խաղաղութեան կնքուելէն

---

68 Եւնապիոս, Հատոր. 16—17, էջ 68 (հրատ. Բոն քղք.) Պերիսաբորայի առնուելէն ետքն այն տեղ համբարուած գտան մեծաքանակ մթերքներ պարենոյ եւ գինւոյ. օգտակարն առնելէն ետքը՝ մնացեալն այրեցին. (Ամ. Մարկեղ. ԻԴ, 2, 23)։

69 Ամ. Մարկեղ. ԻԴ, 7, 7։

70 Անդ, ԻԴ 3, 10։

71 Պարսիկ յառաջամարտիկ դիտապօրաց գունդ մը Տիգրոնէն ելլելով գրաւեց խարակիր զրաստներն եւ մէկ մասը սպաննեց, որոնք անխոհեմաբար բաժնուած հեռացած էին. (անդ, ԻԴ, 5, 5)։

եալքը․ եւ ո՛չ խոտ իսկ կը գտնուէր․ անգամ մ՚երկու սպայք Ուր պարսիկ դղեկէն կրցան յափշտակել բերել քանի մ՚օրուան ուտեստ[72]։ Բայց յետոյ «երբ բախտիւ, այն ալ շատ ցանցառ անգամ, գրիւ մ՚ալիւր գտնուէր, առ նուազն տասն ոսկւոյ (aurei) կը վաճառուէր»։

Ոչ միայն բանակը նպարակել պէտք էր, այլ նաեւ անոր ետեւը պահեստի մթերքներ համբարել գլխաւոր տեղերու մէջ, որպէս զի կարենան պաշարման մ՚երկար ատեն դիմանալ, կամ անհրաժեշտ կարեւորութեան ատեն նոր միջոցներ մատակարարել՝ որոնք աւելի արագ հասաքուէին ու փոխադրուէին։ Կոստանդոս այսպէս պաշարայինդ պարենաւորած էր Ուռհան, երբ կը զինէր Շապհոյ շարժումները[73]։ Դարայի մէջ, որ սահմանագլխոյ բերդ եղած էր, Անաստաս կառոյց ցորենի շտեմարաններ եւ շինեց ջրամբարներ[74]։ Յեսուայ Սիւնակեցի ժամանակագրութեան մէջ թանկագին տեղեկութիւններ պիտի ունենայինք՝ քաղաքներու եւ անոնց բնակչաց պաշտպանողութեան կազմակերպութեան հանդէպ ունեցած պարտաւո-

---

72 Անդ, ԻԵ, 8, 6, 7, 15։

73 Անդ, ԻԱ, 7, 7։ — Նաեւ տասնհնականներն իրենց զանձերը այլեւայլ ամրոցաց մէջ ապահով կը պահէին, ուր չէին կարծեր թէ փնտռելու էլլեն։ Դառալիք փախստականներ Պարսից աքսորին ժամանցին զանոնք՝ որ Ամդայ շրջակայից բերդերուն մէջ պահուըտած էին։ (անդ, ԺԸ, 10, 1—2)։

74 Կեդրենոս, Ա, էջ 630, (հրտ. Բոն քղք.)։

րութեանց մասին, եթէ հեղինակն աւելի պայծառ գրած ըլլար[75]: Կը խօսի հարկի մը մասին, որ Եղեսիոյ ամէն տան վրայ կը ծանրանար՝ տասը լիտր երկաթ, ի գլուխ հանելու համար աշխատութիւն մ՚որ շատ երկաթ կը պահանջէր[76]: Սակայն հեղինակին տուած տեղեկութիւնքն Ամդայ կարօտութեան մասին՝ երբ Պարսիկները կարճ ժամանակ մը հոն կը տիրէին, ականատես վկայէ մը չեն բխեր, այլ մանաւանդ աւանդական զրոյցէ մը յառաջ եկած են[77]:

Փոխադրութեանց խնդրոյն նկատմամբ Պրոկոպիոս, ո՛չ թէ իբր պատմագիր, այլ իբր պարսաւագիր Յուստինիանու, աւելի ալ ստուերացուցած է ողբերը[78]: Երկար ժամանակէ ի վեր, կ՚ըսէ, հասարակաց

---

[75] Ի՞նչ պէտք է հասկնալ օրինակի համար սա խօսքը (40) «Եղեսիոյ բնակչաց Թշուառութեան հետեւութեամբ Անաստաս տնօրինեց ազատել զանոնք Հռոմայեցւոց Ջուր մատակարարելէն»: Հռոմայեցի հրամանատարը դարձեալ դաշինք գրած էր քաղաքին հետ՝ ցորեն տալու համար:

[76] Ժամանակագրութիւն 53:

[77] Էջ 77—78. Պարսք, կ՚ըսուի, չէին համարձակիր պատնէշները թողուլ. հոն զետեղած էին փոքրիկ փոսեր՝ ուր կ՚եփէին բուռ մը գարի, զոր իւրաքանչիւր անձին կը բաշխէին օրուան մը պարէնի համար. հաստատած էին դարձեալ մեծ տաշտեր հողով լեցուած՝ ուր ընդեղէններ կը սերմանէին: Յաւել՝ այն նորանշան պատմութիւնը թէ կանայք կ՚ուտէին իրենց ձեռքն ինկածները եւ թէ պարսիկ զօրավարը հրաման հանեց թոյլատրելով ուտելու միայն մեռեալները:

[78] Պրոկոպ., Ծած. Պատմ. 30, 15:

դանձը կը ցնուցանէր ուղտուց բազմաթիւ երամակներ, որոնք պատերազմի ատեն զօրաց կա՛ն ու կազմածը կը կրէին։ Գիւղացիք բնաւ բռնադատուած չէին տարապահակ բռնավաստակի՝ նոյն բանը հոգալու, եւ զինուորաց հարկաւոր բան մը չէր պակսեր։ Բայց Յուստինիանոս գրեթէ ամբողջովին ջնջած բարձած է այս երամակները, եւ զինուորները հոգացուած չեն։ Զինուորական ռոճկաց կառքին մասին շատ մութ գոյներով գծուած պատկեր մը կը ներկայացնէ։ Կալուածատէրները ստիպուած են ցնուցանել բանակն իրենց ընչից համեմատութեամբ. եթէ տեղւոյն վրայ չգտնեն պահանջուածը՝ ստիպուած են գնել զայն չափազանց բարձր գներով եւ շատ հեռուէն ալ փոխադրել՝ բանակադրութեան պատահարաց համեմատ, եւ յանձնել այն ամէնը Հոգաբարձութեան պետերուն չափարկութեան, որոնք ատոր մէջ ոչ թէ ընդհանուր օրէնքը կը կիրարկեն, այլ կը վարուին համաձայն իրենց հաճոյից։ Ահաւասիկ ռոճիկ ու հաց կոչուածը, կործանում մը թշուառաց համար՝ որոնք տանապատիկ աւելի կը վճարեն, քան որ պարտական էին, եւ ոչ թէ բանակին պէտքը միայն կը մատակարարեն, այլ ամբողջ Բիւզանդիոնի [79]։ Որչափ ալ չափազանցութիւն համարինք այս ամէնը, սակայն տարակոյս

[79] Անդ, 23, 11—16։

չկայ թէ Զ դարուն զինուորական վարչու-թիւնը շատ եղկելի էր[80]։

Մաւրիկի Ռազմագիտականը զանց ա-ռած չէ նաեւ բանակի հանդերձանաց կամ աղխի կահախումբը[81]։ Գնդապետները պար-տաւորութիւն եւ պաշտօն ունին պիտոյքն հոգալ ձմեռուան ժամանակ[82]։ Պէտք չէ շատ ստուարաբեռն աղխակրութեամբ ծան-րաբեռնուիլ[83]. սակայն նաեւ քիչ յոյս դնել այն միջոցներուն վրայ՝ զորոնք կարելի ըլ-լայ հայթայթել ճամբուն վրայ[84]։ Կահն ու կազմածը բանակետղի մէջ մնալու է. զի-նուորաց տղաքն ու ազգականներն՝ որ ա-նոնց կը հսկեն, պէտք է յապահովի եւ ի զգուշութեան դրուին, որպէս զի պատերազ-միկները ճակատամարտին մէջ հոգէն ցրուած միտք եւ ուշադրութիւն չունենան[85]։

---

80 «Ցաղագս պատերազմին Վանդալաց» քիչ մ՚աւելի տեղեկութիւններ ալ կու տայ այս մասին, բայց զայն հարկ է դուրս թողուլ խնդրէն։

81 Նոր յորջորջանօք կ՚անուանակոչէ τοῦλδον, զոր այսպէս կը սահմանէ՝ (Ա. 3, էջ 30) «կահ եւ կազմած զօրաց, այսինքն է՝ սպասաւորք եւ բեռնաբարձ գրաստք եւ մնացեալ կենդանիք»։ Տես ամբողջ Ե գիրքը։

82 Անդ, Ա, 2, էջ 25—26։

83 Անդ, Ե, 1, էջ 121։

84 Պէտք չէ ուտել, կ՚ըսէ, պատերազմի ատեն պատած գինին ու հացը՝ առանց կանխաւ գերիներուն անկէ ճաշակել տալու. նոյնպէս է նաեւ ջրհորաց ջրոյն համար։ Առանց այս նախազգուշութեանց՝ վտանգի մէջ կ՚ըլլան թունաւորուելու. (անդ, Թ, 3, էջ 220—221)։

85 Յովսեպոս, Պտ. Գ. 69, գրուատած է բա-նակին ծառայից քաջութիւնը, որոնք երկայն ժամա-

Զինութեան ուղարկուած դիտազօրքն հետեւ-նին ուտեստ առնելու են առատօրէն՝ իրենց անձնական գործածութեան համար[86]. եւ հեղինակը նոյն իսկ կը ղրկէ այն խնդրով թէ իւրաքանչիւր զինուոր ո՛րչափ բան առնելու է ամէն դիպաց համար[87]: Այս այն չնչին ու մանր իրերէն մին է, որ այս գրքին նկարագրական է. այսպիսի յանձնարարութիւն մը գոնէ քիչ մ՚անօգուտ է ի հարկէ Մաւրիկի ժամանակաց համար, այն է՝ խորշիլ ծանրաբեռնութենէ: Ամէն բան ցոյց կու տայ թէ բիւզանդական Հոգաբարձութեան թերութիւնն աւելախնդրութիւն չէ:

## § 2. Առողջապահիկ ծառայութիւնը:

Մեր ասորական աղբիւրները չեն ներեր վերստուգելու եւ լրացնելու այն ընդհանուր տեղեկութիւնները, զոր ունինք այս նիւթիս համար[88]. եւ այս թերութեան գլխաւոր պատճառն է դարձեալ արձանագրութեանց ցանցառութիւնը: Անշուշտ բժիշկներ եւ հիւանդանոցներ անհրաժեշտ հարկաւոր էին Արե-

---

նակ կը ծառային այս պաշտօնին մէջ եւ պատերազմաց փորձառութիւն կը ստանային: Զ դարուն կը տեսնենք որ Սահմանորդաց (limitanei) զօրութիւնք չարժման մէջ կը դնէր ամբողջ ընտանիքներ՝ այլեւայլ պատրուակներու ներքեւ:

86 Մաւրիկ, Ե, 2, էջ 222:

87 Անդ, Զ, 11, էջ 143: — Հմմտ. Յովսեպոս, Պտ. Գ., 95:

88 Հմմտ. Marquart, Organis. milit. p. 297 ff.

ւելքի ա՛յնպէս տաժանագին պատերազմաց համար։ Մատենագիրները շատ անգամ կը խօսին բանակին կորուստներուն եւ կրած տառապանքներուն վրայ, բայց շատ քիչ անգամ այն խնամոց մասին՝ որ կը տրուէին հիւանդաց եւ վիրաւորաց[89]։ Սակայն Կարխայի ճակատամարտին ժամանակ, Թէպէտ եւ ա՛յնպէս չարաչէտ աւարտեցաւ, կ'աւանդուի թէ կարելի եղաւ տանիլ նաեւ վիրաւորները՝ որ չէին կրնար փախչիլ[90]։ Առիանոս իր Կողքիսի մէջ ըրած այցելական շրջագայութեան ատեն կը քննէ միաժամանակ թէ զէնքերը թէ համբարները եւ ընդդերուն վիճակը եւ թէ «վաստակեալները[91]»։

Մաւրիկի Ռազմագիտականին մէջ համառօտ տրամադրութիւններ նախատեսուած են «վասն վիրահատաց» (τοὺς κάμνοντας[92])։ Գլխաւոր գաղափարն այն է թէ՝ նախարօք պէտք է սահմանել վիրաբոյժները, որպէս զի մարդիկ կռուէն չցրուին։ Հաւանական է որ պաշարմանց միջոցին վիրաւորաց խնամք տանիլը քաղաքին քահանայից ու կրօնաւո-

89 Զմեռը մօտենալուն Կարինոս Պարսկաստանէն Կիւրհեստանք կը դառնայ, «ուզելով իր բանակին հանգչիլ տալ եւ վիրաւորները դարմանել»։ (Մազաղ. XII, p. 304—305, հրտ. Բոն քըլ.)։

90 Կը հեծէին թէ լքուած են. քանի մը սպաներ նուազ հիւանդ եղողները իջուցին գրաստներու. Թիկունքէն եւ փոխարէն հեծուցին աւելի ծանրագոյն վիրաւորները. (Պղուտ. Կրաս. 26)։

91 Առիան, Շրջան. Եւքս. Զ, 2 (յԱփսարոս). Ժ, 3, (ի Դիոսկուրիաս)։

92 Մաւրիկ. Ռազմ. Բ, 8, էջ 62։

րաց կը վերաբերէր։ Այս ժամանակ տակաւին շատ մակերեւութային բան մըն էին մարդասիրական զգացումները. եւ երբ հեղինակ մը ակնարկութիւն կ'ընէ բանակի մը կորուստներուն՝ կը մտածէ զանոնք նուազագոյն ցուցնելու մասին, եւ այն տեսակէտին թէ յաջորդ ընդհարման յաջողութեան հաւանականութիւնքն ո'րչափ նուազած ըլլան։ Այս ամէն պատերազմերը բաւական ակնյայտնի վայրագութեան բնադրոշմը կը կրեն. մէկուն չէր խնայուէր՝ բայց եթէ փըրկանքով[93]։

## § 3. Սուրհանդակ եւ Տեղեկութեանց ծառայութիւնը։

Այս խնդրոյն մէկ կողման մասին արդէն անդրադարձած եմ, երբ խօսք կ'ըլլար լըրտեսներու վրայ՝ զորոնք երկու պետութիւնք

---

93 Կամ նաեւ մշակներ գտնելու համար, կամ օժանդակուար ուրիշ որեւէ թշնամւոյ մը դէմ։ Օրինակի համար Սինէքարայի ամբողջ ազգաբնակչութիւնը տարուեցաւ Գարքաստանի խորքը (Ա. Մակաբ. Ի, 6, 7), ինչպէս նաեւ Թէոդոսիուպոլսոյ հայ ժողովուրդը (Ցեւոս Սեւանեկեաց ժամեկը. 49)։ Ամբայ տանուելէն ետքը հռոմայեցի պետերու մեծագոյն մասը կոտորուեցաւ (Ա. Մակաբ. ԺԲ, 9, 2)։ Ցեւոյ Հռոմայեցիք «Տիգրիսի ափանց մօտերը կոտորեցին տասնուերկու արքեական վեր բոլոր արուները եւ գերեվարեցին մնացեալներն ու կանայքը։ Սոպարապետը հրամայած էր դիւրատել հռոմայեցիներէն ամէն անձ՝ որ երկոտասանամեայ կամ աւելի տարիքով արու մ'ազատէ» (Ցեւոս., 80). տես Գրոկոպ. ՊՊ. Բ, յաճախ, բազմաթիւ անարգորոյն դէպքեր։

ալ կը պահէին[94]։ Զինուորական վարչութիւնը զանոնք անձուկ կապած էր դեսպաններուն հետ, որոնք անոնց ձեռնարկն աւելի կը դիւրացնէին եւ որոնք իրենք իսկ թոյլ կու տային աւելի արագօրէն թղթակցիլ այն կառավարութեան հետ՝ որ զիրենք առաքած էր[95]։

Բայց չէր բաւեր տեղեկանալ միայն թշնամւոյն շարժումներն ու արտաքին գործերը։ Իւրաքանչիւր լեգէոն նախնաբար ունէր երկոտասանեակ մը սուրհանդակներ (speculatores) կամ բամբերներ, որոնց պաշտօնն էր թղթակցութիւնք փոխադրելու հոգ տանիլ[96]։ Յատուկ իմաստով թղթատարութեան — պաշտօնական կառավարական թղթատարութեան — համար Հռոմայեցիք պէտք ունէին միայն թելադրութիւն առնուլ արեւելեան հին միապետութեանց օրինա-

94. Տես Մասն Բ, գլ. Գ. § Ե։

95 Հմմտ. Ամ. Մարկեղ. ԺԸ, Ե, 17. «Ամիդ գալով, ուր հասած էին նաեւ լրտեսները, պատենի մը մէջ գտանք մագաղաթ մը, որուն վրայ տառեր կային, զորոնք մեզի ուղղած էր մեր դեսպանը Պրոկոպիոս, մթին իմաստ մը տալով դիտմամբ»։

96 Հմմտ. Վաղդինկոյն, 1881 (Հելիոպոլիս) սուրհանդակ (speculator) մը Ա (Պարթեւակա՞ն) Անտոնիանեան լեգէոնին, (ի Bull. del Istit 1884, p. 27. «Տ. Փղաւիոս Դոմիտիանոս Նիկոմեդացի, ինչ որ էր սուրհանդակ Գ. Պարթեւական Սեւերիանեան լեգէոնին ուխտեց, երբ առաջնուոր տիգաւորաց սարականաց բանակին ծ Փրետական լեգէոնին կատարեց»։ CIL, III. IH 385 b, սուրհանդակ մը Գ. Գաղղիականին։

կէն[97]։ Այս նիւթին մասին Պրոկոպիոս է յիշատակագրողը[98]։

Յառաջագոյն ինքնակալը գաւառաց վիճակին տեղեկանալու համար հաստատած էին կանոնաւոր սուրհանդակներ։ Աւուր մը հետիոտն գնաց ճանապարհի վրայ միշտ հինգէն մինչեւ ութ օթեւաններ կային՝ իրենց հրամանաւ կազմակերպուած, եւ ութ իւրաքանչիւրին մէջ իբր քառասուն ձիեր ու ձիապաններ կ'ագանէին։ Սուրհանդակները կրնային յաճախ ձին փոխել, որով օրուան մը մէջ մինչեւ տաս օրուան համագօր ճամբայ մը կը կտրէին։ Ծովէն հեռու կողմերու կալուածատէրք շատ օգուտ կը քաղէին այս հանգոյցներէն, որոնք իրենց երկրի բերքերուն ելք մը կը բանային։ Այս կազմակերպութիւնը կը դիւրացնէր վերջապէս հարկաժողովը։ Կ'երեւայ թէ Յուստինիանոս նոյնն ամէն տեղ կազմալուծեց. օթեւաններուն թիւը նուազեցուց, եւ ձիերու փոխարէն էշեր դրաւ[99]։ Միակ բացառութիւն

---

97 Համմտ. Seeck, Angaria եւ Cursus publicus (տե. Պաուլի — Վ.) — կառագնացութեան (cursus clabularis, «սայլուղին», clabulare = սայլ, կառք) Արեւելքի մէջ կը բանէր տակաւին Լեւոն ինքնակալէն ետքն ալ, թէ՛ պատերազմական ծառայութեան եւ թէ՛ պատգամաւորաց դեսպանաց փոխադրութեան համար, հողատէր կալուածատէրանց ծախքովը. (Օրէնք Թէոդոսի Գ, 29, 5, 1. Օրէնք Յուստին. ԺԲ 50, 23)։

98 Պրոկոպիոս, Ծած. Պատմ. 30, 1, 11։

99 Համեմատելու է այն համեստ անդրավարը, զոր Հերակղ ուղարկեց Պարսից նոր արքային Կաւատայ պատգամաւոր Հրեշտակին քով, անոր բերելու խաղաղութեան նախաբանութիւնը. կ'ուղարկէ Ճերկու

մ՚ըրաւ Գարսկաստանի ճամբուն նկատմամբ՝ որուն հին վիճակը պահեց, պարագայ մը՝ որ շատ անակնկալ է, նկատելով Արեւելեան գործերու հանդէպ իւր ցուցուցած անհոգութիւնը։ Այս արտուղութիւնն իսկ իրաւամբ կասկածելի կ՚ընէ այս մասին քննադատութեան արդարացիութիւնը։

Վերջապէս կրնանք խնդիր ընել թէ արդեօք Հռոմայեցիք պաշարեալ տեղերու հետ թղթակցելու համար չէ՞ն գործածած իրենց արեւելեան նահանգներու մէջ այն միջոցը, որ Հասարակապետութեան վերջերէն ի վեր իրենց քով արդէն սովորական դարձաւ[100]։ Կը պատմուի թէ Հերակղի Թագաւորութեան վերջերն Ազատ դղեակը (castellum)՝ Հալէպի ճամբուն վրայ՝ դաւով գրաւուած ըլլալով Յուկիննա ուրացեալէն, աղաւնայ մը յանձնուած տոմս մ՚իրազեկ ըրաւ տեղւոյն հրամանատարը, որ ձերբակալեց Յուկիննան։ Այս իրողութիւնը յինքեան զարմանալի չէ, սակայն անապահանագոյն է եւ միակ հեղինակէ մը կ՚աւանդուի[101]։

---

դեսպաններ, ընտիր երիտասարդաց փոքրիկ խմբով մը եւ լաւ համեստուած քաղաք էջ»։ (Զատկ. Ժմնկգր. էջ 730, հրտ. Բոն ըղբ.)։

[100] Ուղեգնաց (Թղթաբեր) աղաւնեաց մասին տես Wescher ի Bull. de la Soc. des antiq. de France, 1870, p. 162։

[101] Saint-Martin, հրատարակիչն Լըբոյի Պատմութեան (Lebeau, Hist. du Bas Empire, XI, 1830, p. 255) այս տեղեկութիւնը կը քաղէ Հալէպի Պատմութենէն, զոր գրած է Քէմալ-էդդին արաբացին ԺԳ դարու կէսին։

## § 4. Խաղաղութեան աշխատութիւնները:

Զանոնք երկու խումբի կրնանք բաժնել՝ պատրաստութիւնք պատերազմի, կամ այլ ազգ ըսելով՝ զինուորական հրահանգք եւ հասարակական աշխատութիւնք:

Ա. — Զինուորական հրահանգք. — Եթէ հաւատք ընծայել ուզենք այն ճառասացութեանց, որոնց պատմական արժէքն անհաւասար է, եւ զորոնք արդէն նկատի առինք երբ կարգապահութեան մասին կը խօսէինք, Ասորւոց աշխարհի մէջ կայան ունեցող զօրագնդերը յարատեւ ապրած ըլլալու են մեղկութեան մէջ եւ զանց ըրած զինուց ամէն մարզանք. միայն մէջ ընդ մէջ՝ ատեպօղական հարկադրութեան մը պահանջին կամ աւելի ազդեցիկ պետի մը խիստ իշխանութեան տակ՝ բանակետղերու մէջ գործունէութիւնը վերադարձած ըլլայ: Կան դէպքեր, ուր կրնանք հաւատք ընծայել այսպիսի վկայութեանց եւ վճռոց[102]: Ինչ ալ ըլլայ զօրանիստներու կեանքն՝ իւր լուրջ կողմով՝ մեզի բոլորովին անծանօթ կը մնայ: Քանի մ'ընդհանուր գնահատութիւններն ան-

---

102 Այսպէս Գէորգ Պիսիդէս (Արշաւ. Պրս. Բ, 135—166, 177—187, 191—205) եւ այն՝ յայտնապէս արդար իրաւամբ՝ Հերակղի եռանդը պատերազմի սկսելէն առաջ ամիսներով մարզելու եւ կրթելու նորակոչները, որոնք վատթարացած էին ու քիչ համազգի, եւ զորոնք հաւաքեց Անատոլիոյ ամէն կողմերէն:

զօր են այս կողմանէ[103]: Տեսանք թէ Եւնաբիոս կը յիշէր կամրջաձիգներն, որ Եփրատի վրայ անընդհատ կրթանքներ կը կատարէին. եթէ իրապէս այնչափ լաւ մարզուած էին, այս առաւելութիւնը յառաջ կու գար այն յաճախադէպ պատերազմներէն, որոնք կը ստիպէին գետն անցնիլ[104]:

Հեռաւոր անխուլ բերդիկի մը մէջ կայանաւորուած զօրքերն իրենք իրենց թողուած էին եւ իրենց անհոգութեան մէջ լքուած, եթէ արտաքոյ կարգի տեղական այցելութիւն մը, ինչպիսի էր Առիանու Կողքիսի մէջ կատարածը, չգար զանոնք վայրկեան մը սթափեցնելու[105]: Ի վերջոյ չենք կրնար բան մ'եզ-

---

103 Ինչպէս Յովսեպոսի ըսածը (ՊՀ. Գ, 72—73) թէ Հռոմայեցիք անդադար՝ նոյն իսկ լիակատար խաղաղութեան ժամանակ, կը կրթուէին զինուորական մարզանքներով, եւ այս հրահանգները ճշմարիտ ճակատներու երեւոյթն ունէին: — Ինքը զանոնք տեսած էր միայն պատերազմի ժամանակ:

104 Մեծ գետին դրացիութեամբն ալ Ասորիք չէին հրապուրուիր սորվելու լողալու արուեստը, զոր բացայայտ կը յանձնարարէ Վեգետիոս (Ա, 10) «լողալու կերպն ամառուան ամիսներուն մէջ ամէն նորակոչ զինուոր պէտք է սորվի»: Բայց իրականութեան մէջ միայն սակաւաթիւ գաղղիացի (Ամ. Մարկել. ԻԵ, 6, 13—14) կամ հայ (անդ ԻԱ, 1, 7) զինուորներ լողալ գիտէին, միւսներն բնաւ: Զինուորները յօժարակամ կը վստահէին իրենց ձիերուն գետ մ'անցնելու համար. բայց երբ ջրերը յորդած աճած էին, յաճախ կը պատահէր որ թէ՛ ձիերն եւ թէ՛ հեծեալները գետակուլ կ'ըլլային. (տես Յեսու Սիւնակեաց ժմնկգր. 67):

105 Հիւսոսի մէջ զօրահրահանգներ ընել տուաւ հետեւակաց եւ ռանգապետ նոյն իսկ ձիաւորներն՝ արդէն գործածելու. (Առիան., Շրջանաւ. Եւքս. Գ, 1).

բակացնել ո՛չ Վեգետիոսի Համառօտութեան մէջ պարունակուած բոլորովին տեսական կանոններէ եւ ո՛չ ալ Մաւրիկի Ռազմագիտականէն, որուն ճշգրիտ գործադրութիւնն ոչինչ կ'երաշխաւորէ, եւ ո՛չ ալ քանի մը հեղինակաց յիշած այն գործօն վերահսկողութիւնները, զոր կատարեցին այլեւայլ իշխաններ, ինչպէս Ադրիանոս՝ որ սակայն խաղաղասէր էր, կամ Տիբերիոս Բ:

Բ. — Հասարակական աշխատութիւններ: — Այս աւելի ընդհանուր բացատրութիւն մըն է, զոր կրնանք գործածել նշանակելու զինուորաց կողմէ շատ տարբեր զբաղումները, որոնց մէկ մասը գրեթէ կը խուսափի որեւէ ստուգութեան մ'ենթարկուելէ[106]: Զինուորները իրենց անձնական պիտոյից համար երբեմն տաժանալից վաս-

Դիոսկուրիոսի մէջ զօրահանդէս ըրաւ հեծելութեան հրահանգաց (Ժ, 3): — Ս. Սարգսի եւ Բագոսի վկայաբանութենէն (Analecta Bollandiana, XIV, 1895, p. 373 ff.) կը հետեւի հաւանօրէն թէ Եփրատականին դուքսը՝ Անտիոքոս, երբ հարցաքննել ուզեց Ս. Սարգիսը՝ տեսչական շրջագայութիւն մը կ'ընէր իր սահմանաց երկայնքը:

[106] Այսպէս Գղինիոս Բն. Գով. ԺԱ, 106 կը նշանակէ թէ Աւարիկի մէջ զինուորներ զբաղուեցան մարախները ջնջելու համար: — Ահա տարակուսական դէպք մը: Կոթող մը կը կանգնուի երկու յարակից գիւղերու սահմանները որոշելու համար Դիոկղետիանոս եւ Մաքսիմոս իշխանակալաց հրամանաւ եւ խնամով Մարկեայ Փ (*) հազարապետի: (Վադդինգտոն, 2559, եւ Clermont-Ganneau, Rev. archéolog. 1884, II. p. 262). Երկու հեղինակներուն ալ սոյն արձանագրութեան յղացման փորձերն կը ծնան խնդրական:

տակներ ունէին կատարելիք[107], եւ Ջրածա-կան այլեւայլ ձեռնարկներ կրնան յատկապէս զինուորական նպատակ ունեցած ըլլալ[108]: Նոյնն ըսելու չե՞նք արդեօք, եւ այն առանց չափազանցելու, այն բազմաթիւ ճամբանե-րու մասին, ուսկից կարաւանները ալ ան-շուշտ կ'անցնէին յառաջագոյն, բայց որոնք կը դիւրացնէին լեգէոնաց կամ վաշտերու հետեւակազօրու չուն, որոնք կը գործածէին նոյն իսկ միակերպ անապատի անտեղանիշ արահետները: Այս դիտողութիւնը միշտ իրաւացի ըլլալու է Արաբիոյ նահանգին նկատմամբ:

Թէ ճամբաներուն մեծ մասը զինուոր-ները բացած ու քարայատակած են կը վկայեն մղոնաքարերու արձանագրութիւն-ները․ անոնց գրեթէ ամէնքը լատիներէն են[109], որ բանակին պաշտօնական լեզուն

107 Կը համարիմ թէ զինուորարար, եթէ ոչ բա-ցառապէս, իրենց անձնական օգտին համար էր որ լեգէոններու երկու դրօշաւորութիւնք արդէն Հռոմ-կլայէ քիչ մը գետն ի վեր Եփրատի մէկ խուրակին վրայ՝ հաստատած են «խխունջ» մը (cochlea) որ վերաբերձ կազմած մըն էր ջուր վերհանելու համար․ (Chapot, ի BCH, XXVI, 1902, p. 206—207): Այս կողման երկիրը շատ անօսր գաղութ ունեցած ըլլալու է:

108 Հմմտ․ Վատդինկտըն, 2296—2297, 2301, 2305․ (Տրայանոսի օրով՝ Արաբիա նահանգն կազ-մուելէն ի վեր): Անոնք զինուորական պահականոցներ են՝ որոնց շուրջը ոչ-զինուորական բնակիչներու փոք-րիկ խումբ մը հաւաքուած է:

109 Մինչեւ անգամ ասոնցմէ այն եւս, որ 352 թուականէն կամ յաջորդ տարիներէն է․ (Վատդինկտըն, 2562 = CIL, III, 198):

էր[110], մինչդեռ ժողովուրդը կը խօսէր կա՛մ յունարէն եւ կա՛մ արեւելեան այլեւայլ լեզուներ։ Սակայն այս ձեռնարկութիւնը չափազանց նշանաւոր բան մը չէր. յաճախ պէտք էր միայն մեքենական դաշտերու քարերը հաւաքել կամ այլուր փոխադրել զանոնք գրաւոր։ Այն ժամանակներու ուղեյարդարութիւնը կը հաշտուէր ամէն սեպ զառիթափից եւ ամենախիստ անկեանց հետ. սայլերը կամ կառքերը գրեթէ չէին անցներ, եւ կ'երթեւեկէին միայն անքայթ գնացիւք հաստատաքայլ գրաստները, որոնք անշուշտ տողանաւ կ'ընթանային, ինչպէս այսօր։ Քիչ մը վեր յիշեցի՛ սոսը հակառակ օրինակները. բայց նոյն իսկ բանաձեւին ճառմա—

---

110 Հմմտ. Վաղդինգտըն, 1845 = CIL, III, 206) Բէյրութ)՝ Գ. Գաղղիական լեգէոնը «Գայլ գետի բարձրաբերձ լեռները կտրելով՝ ճամբան ընդարձակեց»՝ Կարակալլայի օրով։ — Վաղդինգտըն 1875, CIL, III, 201 ճամբու շինութեան առթիւ (Մարկոս Աւրելիոսի եւ Վերոսի օրով) կը յիշէ հարիւրապետ մը ԺԶ Փղաւեան Ամուր լեգէոնի, որ գործին գլուխ կանգնեցաւ։ Բայց ուրիշ արձանագրութիւն մը, որ տեղւոյն վրայ օրինակուած է (Հին Աբիղա Լիւսանիասի) կ'ըսէ թէ Մարկոս Աւրելիոս եւ Վերոս ճամբան որ գետին ընթութենէն քանդուած էր, վերանորոգեցին լեռը կտրելով «ի ձեռն Յուլ. Վերոսի, նուիրակի... նահանգին Ասորւոց եւ իւր բարեկամին ծախիւք Աբիղացւոց. (Վադդ. 1874 = CIL, III. 199)։ Այս վերջին բառերը՝ առաջին հայեցուածքին՝ այնպէս կ'երեւայ թէ կը մերժեն զինուորական ձեռագործ վաստակ մ'ըլլալու հարկելութիւնը, թէպէտ եւ հարիւրապետը ներկայ եղած է։ Թերեւս Աբիղացիք փոխարէնը հատուցում ըրած կամ վարձ վճարած են։

բան ճշգրտութիւնը կը ցուցնէ թէ այնտեղ տարօրինակ դժուարութիւններ կային:

Այս ամէնը ճիշդ է մանաւանդ Փիւնիկէի ճամբաներուն համար. հոս տեղ տեղ հարկ էր հսկայական դժուարութեանց յաղթել, բայց նաեւ կը շատանային միայն անով որ խստօրէն առեալ անհրաժեշտ կարեւորն էր. պէտք է աչքէ անցնել ինչ որ Ռընան իր զննած ճամբաներուն մասին կ՚ըսէ: Որպէս զի ծովեզերքի մերձաւոր հռոմէական այլեւայլ ճամբաներու՝ օրինակի համար «Շան-գետի» ուղւոյն արժէքը կարենանք չափով մը կշռել, պատշաճ է նոյները համեմատել՝ որչափ կարելի է, կանխագոյն բացուած ճամբաներու հետ. ասոնք «անըմբռնելի վախուտներ» են[111]: Շատ գոհացուցիչ կը համարուէր, երբ ուղիները մերձաւորապէս երթեւեկելի էին: Ռընան կը նշանակէ[112] դահավէժ զառիվայր գետիններ, ուր ճամբայ մը բանալու համար, շատացած են պարզապէս աստիճաններ փորելով: Անձամբ կատարած ուղեւորութեանցս մէջ՝ ծանօթացած եմ ամէնադիւր ուղետիպարներ: Սովորաբար ուղւոյն եզրները երկու կողմէն ալ ձեւակերտուած են աւելի մեծատարած խճաքարերով, իսկ մէջտեղն աւելի բոլորշի կոպիճներ են այլեւայլ մեծութեամբ. ուղւոյն միջին լայնութիւնը իր

111 Renan, Mission en Phénicie, p. 836:
112 Անդ, էջ 151:

հինգ մետր կը հասնի։ Իսկ միջնապիծ անկիւն մը, որուն երկու կողմէ զառիվայրութիւն մ՚ունենայ ճամբան, ինչպէս կը նշանակէ Գ. Շումախէր[113], միայն շատ ցանցառ դէպքերու մէջ կը նշմարուի։ Ցաճախ լաւայի քարահատորներ են՝ զորոնք կը կոխենք[114], եւ որոնք միայն երկարատեւ գործածութեամբ թերեւս հարթուած են։ Ամէն բան կախում ունէր տեղական միջոցներէն։

Ուղեհատութեանց հետ կը կապուին բնականապէս կամրջաշինութիւնքն գետերու վրայ՝ նաեւ եթէ ծանծաղ էին. ասոնք ալ զօրանստին աշխատութիւնքն էին[115]։ Բանակին պարտքն է աւելի մեծ իրաւամբ՝ ի գլուխ հանել զուտ ռազմագիտական կարգի գործերը, ինչպէս աշտարակներ (turres), դղեակներ (castella), պարիսպներ (muri), պատնէշներ (munitiones), փոսեր (fossae), այս բացատրութիւնները շարունակ կ՚երեւան ու կը յիշուին օրէնսդրական բնագիրներու մէջ եւ զորոնք պիտի գտնէինք յաճախ նաեւ արձանագրութեանց մէջ, եթէ Սուրիոյի քարերն աւելի յարմար ըլլային յիշա-

113 G. Schumacher, Across the Jordan, Lond. 1885, p. 19։

114 Հմմտ. Վադդինգտոն, առ թիւ 2438։

115 CIL, III, 6709, Մարկոս Վերգիլեոսուս «Նուիրակ Աւգոստեայ լեգէոնին ԺԶ Փղաւեան Ամուր Խաբինա գետին կամուրջն՝ առանձինն վերահաստատեց» ի Կիւսխոսու՝ Գոմագենիայ եւ Կապպադովկիայ սահմանագլխոց վրայ՝ իբր 200ին յ. Ք.։

տակագրութեանց[116]: Այլեւայլ աւերակոյտերու մէջ երբեմն կը նշմարուին նաեւ աղիւներ, որոնց կնքադրոշմը կը վկայէ թէ լէգէոնականաց ձեռագործն էին[117]:

Արեւելից զօրանիստներն ա՛յնչափ ալ բազմաթիւ չէին, որչափ ենթադրել պիտի տար պահպանելի աշխարհաց մեծատարած ընդարձակութիւնը: Բայց ազգաբնակչութիւնն ալ աւելի չէր անապատի սահմանաց վրայ: Զինուորները ստիպուած էին ոչ միայն անձամբ կառուցանել բոլոր դղեակները, այլ նաեւ այն քաղաքներն, որ յանկարծ գետնէն դուրս ելած երեւան կու գան: Ինչպէս Ռէսաֆա[118], այնպիսի կէտի մը վրայ՝ ուր յառաջագոյն միայն քանի մը մենակեացներ կային եւ չէին կրնար ծնանիլ իշխանի մը մէկ վճռոյն հետեւութեամբ եւ կամ ա-

---

116 Տես սակայն Ումմ-էլ-Ջէմալի արձանագրութիւնը (յամէ 371) «շինուեցաւ այս բերդիկը ի հիմանց՝ ձեռամբ հեծելոց Ը. Դալմատացւոց, ընդ խնամովք Վահաղ տրիբունին». (Վադդինգ. 2058 = CIL, III, 88):

117 Այսպէս Սամոսատի մէջ (Chapot, ի BCH, XXVI, 1902, p. 203, թիւ 56) Լեգ. ԺԶ Փղաւեան: Այս լեգէոնը մասնակից եղած ըլլալու է շրջապատին՝ եթէ ոչ միջնաբերդի՝ պարսպին շինութեան: Եւ իրօք ալ շրջապարիսպը, որուն մէջ ցանցակերտը կը տեսնուի, ամենեւին սովորական նկարագիր չունի. պէտք է Ա դարէն եղած ըլլայ եւ գլուխ հանուած զինուորներէ, որոնք ուրիշ վայրէ եկած էին եւ որմնաշինութեան ուրիշ կերպեր ունէին:

118 Հմմտ. այս աւերակաց մասին իմ ուսումնասիրութիւնս (BCH, XXVII, 1903, p. 280—291):

ռանձնականաց բարեացակամ Ջանքովը[119]։ Ստորին–Կայսրութեան սկզբնաւորութենէն ի վեր, քանի որ բանակին ընդհանուր պէտքերը կը սպառէին ամբողջ մայրաքաղաքին գանձը, Պետութեան համար ալ շահագրգիռ հասարակաց աշխատութիւնները թողուած էին քաղաքներուն խնամոց[120]։ Բայց ի՞նչ կ՚ըլլար գործնականին մէջ։

Վայրկենին անհրաժեշտ կարիքն իւրաքանչիւր տեղեաց մէջ լուծում մը տալ ստիպուած ըլլալու են[121]։ Եթէ Դարա Անաստասի ատեն վերաշինուեցաւ, պատճառն այն էր որ «բանակի զօրավարներն ինքնակալին ճանչնալ տուին այն մեծ չարիքը, որ պիտի ծագէր իրենց զօրաց համար սահմանագլխին վրայ զետեղուած քաղաքի մը պակասութենէն»։ «Զինուորներն երբ Կոստանդինայէ կամ Ամիդէ կ՚ելլէին, ամէն տեղ ուր կը

---

119 Ստրաբոն դրանկանայն կ՚ըսէ (ԺԶ, 2, 10 էջ 756 C) թէ Բիւբլոս աւերուած ըլլալով Տրիփոնէ, Հռոմայեցիք վերականգնեցին զայն երկու զօրագնդերու օգնութեամբ, զորոնք Ագրիպպաս հոն զետեղեց հաստատեց։

120 Օրէնք Թէոդ. ԺԵ, 1 (Վասն Հարկց. Գործ. գլ. 18, 32, 33). G. Humbert, Opera publica (ի Dictionn. des antiq.)։

121 Հմմտ. Վադդինգտըն, 2120 (ի Btheineէ) «Գիւղը՝ նոր բերդ կառոյց խնամովք... Աւետեաց»։ Այս յունարէն արձանագրութեանց մէջ կատարուած լրացմունք թէպէտ եւ ստոյգ չեն տակաւին՝ բայց շատ մեծ հաւանականութիւն կ՚ընծայեն, վասն զի իրարու կը համաձայնին։ Հոս ուրեմն ինքն ժողովուրդը կառուցած ըլլալու է այն երկու պաշտպանութեան բերդերը՝ զորոնք Վադդինգտըն տեսած է։

դաղարէին, կը սպանուէին աւազակներէն: Երբ հանդիպէին աւելի մեծ ուժերու եւ ճանչնային թէ պէտք է ընկրկել, դաստապարտուած էին մեծամեծ խոնջութեանց, վասն զի չկար մերձաւոր ապաւինի քաղաք մը: Անոր համար ինքնակալը հրամայեց Դիորան վերաշինել. այս նպատակաւ ամբողջ Ասորիքի մէջ քարահատներ հաւաքեցին.[122]: Շատ հաւանական է որ գործը գլուխ հանուեցաւ զինուորաց աջակցութեամբ, որոնք շահ ունէին անոր աւարտելուն մէջ. «օգնութեամբք զօրաց» (adiumentis militum)՝ ինչպէս կ՚ըսեն օրինաց բնագիրները:

Շինուածանիւթերու մատակարարութիւնքն երբեմն կը նուազէին կամ կը դիւրանային ուրիշ շինուածներ քանդելով: Արկադիոս եւ Ոնորիոս Արեւելից Աստերիոս կոմսին[123] ուղղուած հրովարտակաւ վճռեցին 397ին, թէ հեթանոսական մեհեաններ քանդելով ստացուած շինուածանիւթերը պիտի սահմանուին նորոգելու կամուրջներ, կառուղիներ, ջրմուղներ ու պարիսպներ: Տեղական միջոցներու բացայայտ անբաւականութեան պարագային՝ մեծ կամ փոքր

---

ասոնք գիւղի մը մէջն էին, որ անապատին եզրը կը գտնուէր, եւ անշուշտ շատ անշան էին, որ հոն պահակազօր պահել չէր արժեր: Տես առ հակառակ՝ Վադդինգթոնի 2194 (ի Khirbet-el-Aradji) «հնամոյք Փղ. Սալուստիանոս քաջազգի դքսին շինեցաւ ընդդս յամի ՄԽԷ». այսինքն յամի 351 յ. Ք.:

[122] Յեսու Սիւնակեաց, ժմնկգր. 91:

[123] Օրէնք Թէոդ. ԺԵ, 1, 28:

բնակավայրերը պիտի ընդունին Գանձէն վարձատրութիւններ (emolumenta): Այսպէս՝ «երանելին Սարգիս, եպիսկոպոսը Բերթա միջնաբերդին՝ որ մեր մօտ Եփրատայ եզերքը կանգնած է, սկսաւ իր քաղաքին պատուարները շինել[124]. եւ ինքնակալը ասոր համար մեծամեծ գումարներ տուաւ անոր»: Նոյն բնագիրը[125] կը շարունակէ՝ — այս պարագային Սուրբ-Կայսրութեան կանոնին գործադրութիւնը հաստատելով, — այսպէս՝ «Նոյնպէս սպարապետը Հռոմայեց Ներսապոսի բոլորտիքը պարիսպներ կառուցանել. տեղւոյն բնակիչները արիաբար ձեռք զարկին գործին»:

---

124 Այս տեղ ալ, ինչպէս պատերազմական գործողութեանց մէջ՝ երեւան կու գայ այս նորագոյն՝ դետապէս անած՝ զօրութեան նախաձեռնութիւնը, որ տկարացած նուաղած վարչութեան թերին կը լրացնէր: Հմմտ. Կերատէնի մէկ արձանագրութիւնը՝ (Lucas Oppeheim, ի Byzant. Zeitschr. XIV, 1905, թ. 47, Nr. 68) «Իմաստութեամբ պատսպարելով հայրենիքը, Յովհաննէս... այս բուրգը հայթայթեց իրր փրկութիւն սիրելեաց, Ջանիւք Պաւղոսի սարկաւագի, յամի 821 (այս է 509 յ. Ք.): Կարելի էր դուցէ յիշել նաեւ թ. 86 արձանագրութիւնը՝ (անդ էջ 54) բայց անոր լրացուցիչ սրբագրութիւնք շատ յանդուգն են: Յաւել՝ Hallier, Chronique d'Edesse, (անդ, թ. 68, էջ 114) «Չենի ամին 457—458 Նոննոս եպիսկոպոսը կանգնեց վանքեր ու աշտարակներ, շինեց կամուրջներ եւ միջոցներ ձեռք առաւ ճամբաներու ապահովութեան համար»: Զաքարիա Հռետորին համեմատ (Է, 6, էջ 115—119) տեղւոյն քահանայից, սարկաւագաց եւ ուրիշ կղերիկոսաց հսկողութեան տակ կատարուեցան ու գլուխ հանուեցան Ամդայ վերաշինութեան աշխատութիւնները:

125 Յեսու, 63:

Այս կարգի որոշումներն ըստ երեւոյթին շատ զանազան՝ երբեմն պարզապէս՝ եկեւմտական գործակալներու կը վերաբերէին։ Ս. Սաբայ կը խնդրէ ինքնակալէն հրամայել Սումմոսի Փառաւորի, հասարակաց Գանձապետութենէն շինել դղեակը եւն[126]»։ Իշխանը անոր ուղարկել տուաւ այս աշխատութեան համար 1000 ոսկի Պաղեստինի հասարակաց գանձէն առնելով եւ հրամայեց անոր տրամադրել պահապան զօրաց խումբ մ՚ալ[127]։ Բայց որեւէ պատճառ մը չկայ կարծելու թէ այս զինուորներն ալ որոշուած էին նոյնպէս շինութեան աշխատելու համար, որ ի վերջոյ գլուխ ալ չելաւ։ Կիննեսրինի[128] երկու արձանագրութիւնք յըստակօրէն կը յիշեն թէ այսպիսի շինութեանց որո՛նք գլխաւորաբար կը բերէին իրենց մասնակցութիւնը. կը գրուի՝ «Բարեպաշտ աստուածասէր... քահանայիւ... խնամով.. ստրատելատին... ձեռնարկութեամբ Իսիդորի ճարտարապետի» (բառացի «մեքենականի, մեքենագետի»)։ Վերջին բառովս կը նշանակուի գործին գլուխ կեցողը՝ աշխա-

---

126 Կիւրեղ Սկիւթոպոլսեցի, Վարք Սաբայ, 72, (տե՛ս Cotelier, անդ, էջ 343)։

127 Անդ, 73, էջ 347։

128 Oppenheim Lucas, անդ, էջ 55—57, թիւ 88, 89 (յամէ 550)։ Բնական է թէ եզրակացութիւն մը հանել չենք կրնար այն պարագայէն որ ատոնք այսօր պարզապէս ագուցուած են գիւղացւոյ մը տան պատերուն մէջ։

տութեանց պետը[129]։ Քանի որ սպարապետն ալ (մագիստրիանոս, magister militum) նախագահած է գործին[130], ամենեւին զարմանալի բան մը չէր ըլլար, եթէ բանակն ալ խառնուած ըլլար գործքին, առանց նկատելու կայսերական դրամական նպաստը, որով թերեւս կը գոցուէին փոխադրութեանց կամ զանազան մատակարարութեանց ծախքերը։

Միով բանիւ՝ հասարակաց աշխատութեանց մէջ զինուորներու մասնակցութիւնն ակներեւ կ՚երեւայ նաեւ այնպիսի դիպաց մէջ, ուր այսպիսի մասնակցութիւն մը պարտաւորիչ չէր երեւար. իսկ ուրիշ դիպաց

ծ

[129] Պրոկոպ., Շին. Ա, էջ 174, կը կոչէ զանիկայ μηχανοποιός («մեքենագործ») թերեւս որովհետեւ իւր մասնագիտութեան մասն էր նաեւ պատերազմական մեքենաներ շինելը։ — Հմմտ. Վարք Սաբայ, անդ 73, էջ 346։ Եկեղեցի մը կառուցանելու համար Ինքնակալը Երուսաղէմ ուղարկեց Թէոդորոս մեքենագէտ կամ ճարտարապետ անձ մը, զոր կը յիշատակէ Պրոկոպիոս, (ՊՊ. Բ, 13, 26)։ Տես ճարտարապետին ստորագրութիւնը երկլեզու՝ յունարէն եւ նաբատերէն՝ արձանագրութեան մը մէջ (Butter-Littmann, Rev. archéolog. 1905, I, p. 409)։

[130] Համեմատելու է Վադդինգտոն, 1882՝ յիշատակութիւն «աշխատութեան գործոց Անաստասիոսի» սպարապետի եւ հիպարքոսի, «բանակապետի եւ հիպարքոսի»։ Հրատարակիչը «բանակապետ» բառը կը թարգմանէ ստրատելատ, սպարապետ եւ կարծեմ իրաւամբ, եւ Անաստասիոսի հրամանին ներքեւ եղող զինուորներն ալ ըլլալու են իւր գործաւորները։ Իբբիգի (Հաւրանի) արձանագրութեան համեմատ՝ շինութիւնը կատարուեցաւ հասարակաց գանձէ եւ սակայն «Վերակացութեամբ հայրութենս Սատուրնինոս հազարապետի. (տես Whicher, ի Americ. Journ. of Arch. X, 1906, p. 289—293)։

մէջ ալ՝ ուր այն աշխարհագրութիւնը կարեւոր էր, կրնայինք՝ եթէ բառացի մեկնենք աղբիւրները, նոյնը շատ տարակուսական նկատել: Պաղմիւրիայի բանակետղը՝ Դիոկղետիանոսի եւ Մաքսիմինոսի ատեն՝ շինուեցաւ խնամովք նախագահին նահանգին[131], մինչդեռ հոս առաջին տեղը կը սպասէինք աւելի գտնել զօրքը: Բայց ընդհանուր կերպով խօսելով՝ զինուորաց ձեռնապահութիւնը օրինաւոր ենթադրութեանց սահմաններն մէջ կը մնայ, երբ խնդիրն է միջակ կարեւորութեամբ կղզիացեալ փոքրիկ շինութեանց վրայ. ընդհակառակ զանոնք կը տեսնենք գործի ձեռնարկած ստուար խումբերով ալ, մեծատարած ընդարձակութեամբ եւ երկարաձիգ տեւողութեամբ աշխատութեանց մէջ: Կը շատանամ յիշելով միայն օրինակ մը. Սելեւկիա Պիերեայի մեծ ջրադարձ անցքը (Ա եւ Բ դարերուն) փորուեցաւ լեգէոններու ջոկատներու ձեռքով, եւ նոյն քաղաքին նաւահանգիստը խորացուեցաւ Դ դարուն սկիզբը վաշտի մը ձեռքով՝ որուն եղերական արկածը ծանօթ է[132]:

---

131 Վադդինգտոն 2626 = CIL, III, 6661. — Հելիոպոլսոյ մեհենին կամարաց կամարակապներուն կամ պարտաքարերու վրայ երեւան հանուած են լատիներէն լեգէոնի արձանագրութիւններ, (Վադդինգ., 1884—1886 = CIL, III, 143—144. յաւել՝ էջ 2328 75). Այս մասնաւոր պարագան չի՞ ցուցներ թէ գործաւորաց մէջ զինուորներ ալ կային:

132 Այս միջադէպին մանրամասնութիւնքն՝ հաստատութեան բնագիրներով ի միասին՝ տեղեկագրած

## § 5. Կրօնական պաշտամունքը։

Մեր նպատակը չէ հոս յիշեցնել այն զանազան կրօնական արտայայտութիւնքն, որոնց ծնունդ կրնան տուած ըլլալ Արեւելքի մէջ եղած պատերազմական գործողութիւնները։ Այնպիսի արարողութիւններ, ինչպէս Գետայական զոհքն (διαβατήρια) թէպէտ եւ կատարուած են Եփրատն անցնելէ առաջ[133], որեւէ ինքնայատուկ բան մը չունին Ասորիքի համար։ Եւ աւելի ալ չենք զարմանար, երբ տեսնենք թէ Յուլիանոս պարսկական պատերազմը կը պատրաստէ Անտիոքի մէջ զոհերով[134], եւ գիտնալու համար թէ արդեօք յաջող ելք մը պիտի ունենա՞յ. իրեն ուղեկից կ'առնու Ետրուսկացի ընդերահմաներ, որոնց սակայն չանսայ[135]։ Անօգուտ է զարձեալ յիշատակել այն զոհամունքը, զոր մատոյց Գաղերիոս դէպի սահմանագլուխ մեկնելէ յառաջ[136]։ Աւելի հետաքրքրական կը համարիմ, եւ այն համեմատութեան համար, զոր կը ջանամ ամէնուրեք աչքի առջեւ ունենալ, նշանակել այն զոհահարցութիւնքը, զոր կատարեցին Պարսից, Քիոնաց-

---

եմ իմ յիշատակագրութեանս մէջ՝ Séleucie, etc. անդ, էջ 62 արտատպութեան։

133 Սալլուստիոս, Մնաց. Պատմ. 60 (հրտ. Maurenbrecher, I. p. 180։

134 Ամ. Մարկել. ԻԲ, 12, 6։

135 Անդ, ԻԴ, 5, 10, ԻԵ, 2, 7 (Ետրուսկացի ընդերահմայք, որ կ'ընկերանային։

136 Հմմտ. Սալոնիկի յաղթական կամարը՝ Kinch, Տիպ. Դ, էջ 34 եւն։

ւոց եւ Աղուանից արքայքն Անդարէի կամըրջին վրայ[137]: Անհաստատ հաւահմայ ընձութիւնքն էին, որ յորդորեցին արքայից արքայն իւր զօրքն յետս դարձնելու եւ Կոստանդնուպ հանգիստ թողլու[138]: Շապուհ իւր պատերազմին ձեռնարկելէ յառաջ, մինչ նոյն պատմագրին բանին համեմատ[139], կոչած էր ուրուականն ոգիները եւ առած էր ըղձապատում գէտերու կարծիքը. եւ վերջապէս կ'աւանդուի պարսիկ զօրապետի մը մասին, որ Զ դարուն նոյնպէս կը բանակցի իղձերու հետ՝ որոնք իրեն յաղթութիւն կը խոստանան[140]: Հետաքրքրական է դիտել այս զուգակշռութիւնը. չէր կարծուէր թէ ասոր պիտի հանդիպինք մանաւանդ կրօնական սահմանին մէջ:

Սակայն կ'ուզէի գլխաւորաբար ուշադիր ըլլալ զինուորական պաշտամանց, այսինքն անոնց, զոր կը մատուցանեն Արեւելքի սպայք կամ զինուորք:

Ափրիկեան արձանագրութիւնք յաճախ կը ցուցնեն պատերազմիկներու պաշտօնասիրութեանց հետքերը. իսկ Ասորիքի նկատմամբ հոս ալ՝ անգամ մ'աւելի, դատապարտուած ենք չափազանց աղքատութեան: Եւ նախ, կրօնական պաշտամունք մը, զոր

137 Ամ. Մարկեղ. ԺԸ, 7, 1:
138 Անդ, ԻԱ, 13, 8:
139 Անդ, ԺԸ, 4, 1:
140 Թէոփիլ. Սիմոկ. Բ, 2, 2:

միահաղոյն զինուորականաց ամբողջ խումբ մը կատարէ, իրողութիւն մըն է՝ որ կըրնանք ըսել թէ մեր աղբերաց մէջ չերեւար։

Կը յիշատակեմ միայն Տակիտոսի այն խօսքը[141] Ասորւոց այն սովորութեան մասին՝ ծագող արեգական երկրպագելու։ Այս ամենեւին անակնկալ մը չէ երկրի մը մէջ, ուր ա՛յնչափ երկարատեւ ժամանակ ներգործած է փիւնիկեան պաշտամանց ազդեցութիւնը[142]։ Կը յիշեմ դարձեալ այն ժայռաքանդակ յիշատակարանը, զոր լուսանկարած եմ Եփրատի ափանց վրայ, եւ ուր կը պատկերանայ Գետ-դիքն ընկողմանած եւ արմուկը յեցած քար սափորին վրայ, եւ որուն գոհարանութիւններ կը մատուցանէին երկու դրօշաւորութիւնք (uexillationes), ջրահան կազմած մը, որով կրնային անոր զովարար ալիքներէն ջուրը վեր հանել խարակի մը դաւիթափին միջակողէն[143]։

141 Տակիտոս, Պատմ. Գ, 2։

142 Հմմտ. Max Mayer, Kronos, առ Roscher, Lexikon der Mytholog. — Բէյրութի արձանագրութիւնը՝ ի Rev. archéolog. XXIII, 1872, p. 273. — Եթէ ուզենք շարունակել Պարսկաստանի հետ համեմատութիւնը, կը կարդանք Պրոկոպեայ քով (ՊՊ. Ա, 3, 8—22) թէ Պերոզ արքային Հեփթաղաց դէմ մղած պատերազմի մ'ընթացքին ձախողակ դըրնուեցաւ, թողլով որ իր նահանջը կարուի։ Հոնք պահանջեցին իրմէ որ գետնատարած երկրպագէ իրենց պետին։ Երբ Պերոզ կը տատանէր, մոգերը մեղմով մ'ակնարկեցին թէ իրականութեան մէջ ինքն երկրպագութիւն կ'ընէ ծագող արեւուն առջեւ, զոր մաքէ չէր անցներ թշնամին. եւ այսպէս ըրաւ Պերոզ։

143 BCH, XXVI, 1902, p. 205—206. Mém. de la Soc. des antiq. de France, LXII, 1901

Որեւէ տարակոյս չկայ թէ Արեւելքի մէջ ալ, ինչպէս ուրիշ տեղեր, հիմնուած ըլլան զինուորական ժողովներ, որոնք կազմուած էին Փոխադարձ Նպաստամատոյց Ընկերութեանց կամ Մնայողական Արկղներու նման, եւ ապահովապէս ստացուածութեան մը կամ բազմաթիւ դից հովանաւորութեան ներքեւ դրուած էին: Բայց արձանագրութիւնք այս մասին բան մը երեւան չեն բերած: Ասոնք կը ցուցնեն թէ բազմաթիւ պաշտամունք արժէք ունէին այս Ասորւոց աշխարհին մէջ, որ հրապարակ մըն էր ուր Արեւելք եւ Արեւմուտք իրարու կը հպէին, ուր կրնար առանց դժուարութեան ծնանիլ ու զարգանալ կրօնական համախառնութիւնը: Միայն դիպուածի մ'արդիւնք է որ «երկրպագականաց» համեմատաբար ստուար քանակութեան մէջ շատ սակաւաթիւ են անոնք, ուր նշանակուած ըլլայ ձօնողներուն անձնական վիճակը. եւ ասոնք ալ շատ ցանցառ անգամ զինուորականներ են[144]: Սակայն եւ այնպէս ինծի համար ակ-

---

[= 1903], p. 115—117, Տախ. Զ: — Կոմս Max v. Oppenheim գտած է նաեւ խճանկար մը, որ նոյնպէս Եփրատը կը ներկայացնէ, Էլ-Մասուտիէի մէջ (Zeitschrift der Gesellsch. für Erdk. zu Berlin, XXXVI, 1901, p. 82): Ասոր մէկ զարդածրին մէջ կար արձանագրութիւնս՝ ասորերէն եւ յոյներէն՝ «Արքայ Եփրատ Գետ»: Յաւել՝ Byz. Zeitschr. XIV, 1905, p. 58—59, Nr. 91; pl. IV, fig. 21—22:

[144] Անշուշտ այս վիճակը կրնայ քօղարկուած ըլլալ. հմմտ. Վադդինգթըն 2099՝ «Աբիբոս եւ Թոմ-ասկէ կենակից զՅաղթութիւն կանգնեցին» (այս է

ներեւ է թէ զինուորներն, ըլլային անոնք բնիկ կամ ոչ, ստիպուած էին հաղորդակից ըլլալ այլեւայլ պաշտամանց, որոնք չափազանց տարածուած էին այն երկիրներուն մէջ՝ ուր էին իրենց զօրանոցները: Այսպիսի է Աթենասի պաշտօնը[145], որուն յիշատակները կը վխտան Բատանայի մէջ. եւ Դուսարէսի պաշտօնը, որ սեպհական էր Արաբիա նահանգին[146]:

Մատնանիշ ըրած են բազմաթիւ բագիններ, ուր քանդակուած կ'երեւայ Ասկղեպեայ տեղական տիպար մը, որ հռոմէական սպայի մը կերպարանքով կը ներկայացուի. անոնք առանց տարակուսի վկայութիւններ են պաշտաման մը, զոր նոյն դիք կը վայելէր Հաւրանի, Աջլունի եւ Ջէբէլ-Ռիհայի մէջ, ուրեմն աւելի հիւսիսակողմը: Նկատելով այն նախատիպն, որ ընտրուած է ներկայացնելու համար նոյն դիքը, կը փորձուինք եզրակացնել թէ նոյնն այն տեղ կը պաշտուէր

---

ձօնեցին): Արդ չերեւար որ Նիկէ կամ Յաղթութիւն դիցուհին պաշտուէր ոչ-զինուորականներէ. սակայն թերեւս այն բանաձեւին տակ ծածկուած ըլլայ պարզապէս ուխտից ձօն մ'առ Ինքնակալս. ամէն ոք կրնար նոյնն արտայայտել:

145 Վադդինգտոն, առ թիւ 2308, յաւել 2203 b, եւն: — Այս հելլենական հին ձեւին տակ սաֆայիական բնագիրներու Ալլատ (Allât) դիցուհին է. (Dussaud, Les Arabes en Syrie avant l'Islam, p. 129):

146 Տերտուղիանոս, Ջատագով. 24. Համմ. Վադդինգտոն թիւ 2023:

դինուորներէ կամ հնօրեայ վաստակաւորներէ [147]

Սակայն այս ամէն կէտերուն մէջ չատտանալու եմ ենթադրօրէն միայն նոյները նշանակելով։ Այժմ անցնինք այն ձօներուն, որոնք առանց երկդիմութեան են, բայց ա՛յնչափ սակաւաթիւ։

Առնցմէ մին նուիրուած է Արեգական [148]. եւ այս հաւանօրէն բազմաթիւ ուրիշներէն միացած նմոյշ մըն է միայն։ Աստ անմիջապէս կը մերձեցնեմ Հելիոպոլսոյ մէկ արձանագրութիւնը [149], ուր բարեպաշտիկութեան ներգործութեան ընթացակից կ՚ըլլայ առատաձեռն տուրք մը։ Շատ դիւրին է Հեղիոսէ անցնիլ Դիոսի, որուն պէս պէս վերադիրներ շնորհուած կը գտնենք [150]։

---

[147] Այս ծայարերի հաւանական ենթադրութիւնն է. P. Jalabert ի Mélanges de la Faculté orient. de l'Univers. St.-Joseph, Beyrouth, I. (1906) p. 157—161։

[148] Վադդինգ. 2407 «Արեգ. դից. մեծի. — Յուլիանոս երկերիւրապետ լեգէոնի Դ Սկիւթացւոց՝ վասն աղօթից»։

[149] Անդ., 1180 = CIL, III. 136 յաւելուած՝ «Աւրեղ. Անտոնինոս Ղուկիանոս, ուրհանդակ լեգէոնի Ա Անտոնինեան Պարթեւական» կը ձօնէ (մեծամեծ դից Հելիոպոլսոյ կամ Արեգ-քաղաքի) «վասն երջանկութեան եւ յաղթութեան Անտոնինեայ Պետոսի եւ Յուլեայ Աւգոստայ, երկու սեանց խոյակներ պղնձեղէն՝ ոսկեով պայծառագոյն գործուած իւր ընչիւք, վասն ուխտի»։

[150] Ewin, Palest. Expl. Fund, 1895, p. 136, Nr. 62 (ի Սաւրա, Հաւրանի մէջ) ձօն մը առ Զեւս Ամմոն՝ զոր կ՚ընէ «Մ. Աւրեղ. Թէոդորոս, ի դահճաց (a quaestionariis) լեգ. Գ. Կիւր.»։ Վադդինգ. 1922՝

Այս արձանագրութեանց մէջ կան եւ այնպիսիներ, ուր կրօնական գաղափարի մ'արտադրութեան միացած է հաւատարմութեան արտայայտութիւն մը[151]։ Հարիւրապետ մը ԺԶ Փղաւեան Ամուր լեգէոնէն կը կանգնէ ինքնակալաց երջանկութեան համար Խաղաղութեան (τὴν Εἰρήνην) եւ Շինութեան դիք (τὴν Εἶσιν[152]) ։

Ուրիշ մը (Գ. Գաղղիական լեգէոնէ) Յուլիոս Գերմանոս՝ կը ձօնէ Բախտաւորին (Τυχαῖον) վասն երջանկութեան եւ յաղթութեան Կոմմոդոսի ։

Ի վերջոյ այս վերջին զգացումն է դերիշխողը. աւելորդ պիտի ըլլար մի առ մի թուել յիշատակարանաց այն խուռն բազմու—

(ի Բոստրա) «Դիոսի Տոհմականի եւ Հերայ հայրենի աստուածոց՝ Գ. Յուլիոս Մաքսիմոս զինուոր լեգէոնին Գ. Կիւրենեան»։ Անդ, 2290 (Հերրանի մէջ)՝ «Դիոսի Տեառն՝ վասն ազօթից, հաշտութեան ազա—գաւ, Դեկկիմոս Փարիանոս զինուոր լեգէոնին»։ Անդ, 2291 (Հերրանի մէջ) = CIL, III, 188 «ի ժեհենի Յովեաց (կամ Դիոսի) Կ. Յուլիոս Մաքսիմոս, հնօրեայ, որ երկուքին ներքեւ զինուորեցաւ, արար»։ Հոս զգացմունք աւելի բազմախառն են, մեծարանաց նուէրը կ'ուղղուի ամէնէն առաջ զինուորին երկուպետերուն եւ պաշտպաններուն։

151 Տես քիչ մը վերը ծան. 149։

152 Վադդինգ., 2526—2527 (Փէնէ, արդի Միսմիէ)։

153 Անդ, 2413. — Ուրիշ բնագրի մէջ արտայայտուած չէ ա՛յլեւս կայսերական հաւատարմութիւնը։ Էյթայի մէջ (Eitha) կամարակապ փոքրիկ շինութեան մը վրայ՝ (անդ, 2115) կը կարդանք՝ «Հեղիոս Մաքսիմոս եպարքոս՝ հայրենեաց կանգնեց (կառոյց)»։ Այս անձը կրնայ ըլլալ կա՛մ վաշտի մը վերակացուն, կա՛մ արաբական գաւառի մը ցեղապետը։

թիւնը, ուր կեսարներու հանդէպ մեծարանք կը յայտնուի։ Ամէն անգամ որ պատ մը կը բարձրանայ կամ կը նորոգուի, հոգ կը տարուի հոն ադուցանել քար մը Թագաւորող իշխանին անուամբ, այս դրուատեաց ձեւ մըն է[154]։ Ասոր հակառակ ցանցառ են ինքնակալաց տրուած պաշտամանմասին վկայութիւնները, վասն զի անոր մէջ բովանդակուած քրմութիւնքն կրնային յիշուիլ միայն քաղաքաբաշխական փառաշարքերու մէջ (cursus honorum)․ արդ ասոնք կը պակսին։ Ասորիքի եւ Արաբիոյ մարզիկ, եթէ համարձակինք ըսել, հակառակ Փոքուն Ասիոյ բնակչաց, աւելի համեստ տապանագիր ունին։ Ահա՝ իբր բացառութիւն ընտրեալ մը (այրընտիր զինուոր), որ բաց առի քուրմ է Անտոնինոս եւ Կոմմոդոս դից (աստուածացեալ կայսերաց[155])։ Ինքնակալաց հանդէպ այս պաշտօնասիրութիւնը աւելի դիւրաւ կը մեկնուի Ասորւոց աշխարհին մէջ քան թէ ուրիշ նահանգները։ Երկրիս զօրքը՝ դոնէ Վերին-Կայսրութեան շրջանին՝ երախտագէտ շնորհակալու էր Կեսարաց այն անուշիկ ու խաղաղ կենաց համար, որ իրեն շնորհուած

---

154 Ադրաայի յայտնանկատ օրինակը (Brünnow, ի Mitth. des Palästina Vereines, 1897, p. 40 = Clermont-Ganneau, ի Rec. d'arch. orient. II. 1898, p. 243) այսպէս կը սկսի՝ «Վասն փրկութեան տեառն մերոյ Ինքնակալին Գաղղիենոսի Սեբաստոսի նուիրեցաւ բուրգս» եւն։

155 Վադդինգ․ 2320 (Սելէմիա, արդի Sleim)։

էր․ եւ այս զօրավարները Գ դարուն՝ հպարտութիւնն ու ուրախութիւնն ունեցան քանի մ՚անգամ ինքնին Ինքնակալներ հռչակելու։ Այս վերջիններս իշխանութիւնք կարճատեւ եղան, եւ վաղանցուկ եղաւ իրենց վայելած սէրը․ բայց ամէն դէպքին այս վայրկենական մեծարանաց մէջ ալ շատ աշխոյժ կար[156]։

---

156 Կեսարներու մեծագոյն մասը, որոնք օրինաւոր սերումի կամ որդեգրութեան պայմանաւութեամբ գահ ելան՝ դիք էին եւ դից որդիք։ Ասոնք շատ փոյթ չէին ըներ բացառութեանց մասին․ երկու նորանշան արձանագրութիւններ (Վադդինգ․ 2076) կը կրեն ձօն մը Θεῷ Μαρείνῳ (դից Մարինոսի)։ Որեւէ դժուարութիւն չեն ըրած յետոյ աստուածացնելու Մարինոսը, Փիլիպպոս Արաբացւոյն հայրը, որ իրականին աւազակներու հին պետ մըն էր, եւ ո՛չ որդի (կայսերազուն) իշխանի մը։

# ՄԱՍՆ Գ.

## ԱՇԽԱՐՀԱԳԱՀ ԶՕՐԱԲՆԱԿՈՒԹԻՒՆ

*Վերջին տարիներս գինուորական ծառայութեան մասին մեր ծանօթութիւնն, ինչպէս այն կը կիրարկուէր այլեւայլ նահանգներու մէջ, շատ զարգացաւ՝ մանաւորապէս սահմանագլխոց խնդիրներու նկատմամբ: Բրիտանիոյ սահմանագլուխը, Գերմանիոյ սահմանքն* (limes) *այն՝ որ կը կարէր կ'անցնէր Աւստրիայէն ու Ռումանիայէն, ամէնքը վերջնական նկարագրութեանց գիտնական ձեւին մէջ մտած են: Արեւելքի աշխարհներն աւելի քիչ բաց են օտարին աչքեւ եւ աւելի նուազ ապահով. անոնց մասին աւելի ուշ խորհուած է: Կենդրոնական Եւրոպայի մէջ Պետութեան անկումն աւելի յեղակարծ եղաւ, եւ Հռոմայեցւոց յաջորդեցին շատ զանազան ազգեր, այնպէս որ հողի վրայ անոնց թողուցած հետքերը բոլորովին տարբեր երեւոյթ մ'ունին: Ասորիքի մէջ կայսերական իշխանութիւնն աւելի երկարատեւ պահպանած էր իւր տիրապետութիւնը, բայց վերջերը մէջընդմէջ ընդհատումով: Արաբացիք մաս մաս տիրեցին երկրին, կրկին կորսնցուցին եւ դարձեալ վերագրաւեցին. այն ատեն ընդհա-*

նոր քաղաքակրթութեան մաս կազմող ազգ մը կը համարուէր եւ որ իսլամական կրօնքի ազդեցութեամբ պատերազմասէր դարձած էր: Ասոնք ալ բերդեր կանգնած են. ասոնց զինուորական ճարտարապետութիւնը եւ բիւզանդացւոցն փոխադարձ ըրած են փոխառութիւններ. եւ յաճախ դիւրին է զանոնք իրարու հետ շփոթել, այնչափ աւելի՝ որչափ անապատախառն սահմանաց վրայ շինութեան նկարագիրն սերտիւ կապուած է ատաղձներու տեսակին հետ: Բոլոր միւս ամրացեալ Սահմանաց համար արձանագրութիւնք համեմատաբար ճոխութիւն են եւ հրահանգիչ. Արեւելքի ուսումնասիրութիւնն այս ամէնէն միայն չափաւորապէս կ'օգտուի:

— Ամէն կողմ շատ բան եղծուած աւերուած է, բայց միւս ծայրն ու կենդրոնական Եւրոպայի մէջ կանխագոյն վիճակին մասին հեղինակաւոր վկաներ եղած են: Իսկ Եփրատի, Հերմոնի եւ Յորդանանի կողմերն աւերակներն անսովոր կերպով կը կերպարափոխուին. Բեդուինները զանոնք իրենց բնակարաններ կ'ընեն կամ ոչխարաց փարախներ. պահակապանաց աշտարակ մը քանդուելէն ետքը՝ պետի մը շիրիմ կը դառնայ: Այս կողմերն ամէն բան, որ անհետ կը կորսուի անցելոյն վերաբերեալ յիշատակարան մըն է. ժամանակն է ընդօրինակելու գոնէ մնացածները, բայց այս ձեռնարկն ալ կարճ ժամանակի մէջ պէտք է աւարտի:

*Մանաւանդ որ պատմութեան նշանաւոր էջ մըն է, զոր հոս երեւան պէտք է հանել. կայսերական օրէնք ուրիշ նահանգ այնչափ կարեւորութիւն չէ ունեցած ասիական գաւառներին վրայ։ Այս այն մեծ շահաստանն էր Հնդկաց աշխարհի եւ ծայրագոյն Արեւելից հետ եղած վաճառականութեան՝ որ պաշտպանութիւն կը պահանջէր։ Վաչկարնակ եւ աւազակաբարոյ Սարակինոսք եօթ դարերու ընթացքին Հռոմայեցւոց դրացիներն էին, որոնք մշտապէս շատ աւելի վտանգաւոր էին քան Հռենոսի եւ Դանուբի ափանց բարբարոսները։ Վերջապէս Պարթեւաց՝ յետոյ Պարսից՝ Պետութիւնն ընդարձակածաւալ տէրութիւն մըն էր,* որ ի սկզբան Հռոմայ դրութենէն տարբեր քաղաքական ու զինուորական յօրինուածութեամբ մը կազմակերպուած էր, բայց Հռոմէն կը պահանջէր մեծ ճիգ մը նոյն իսկ պարզ պաշտպանութեան համար։ Կեսարաց մասին ներբողեանները գրուատած են ամէնէն աւելի անոնց Պարսից վրայ տարած յաղթութիւնները[1]։ Ամմիանոս Մարկեղինոս, աւելի նուազ աւելյարան բացատրութեամբ՝ պայծառ կերպով կը ցու-*

---

[1] *Տես օրինակի համար՝ Նազար., Ներբող Կոստանդ. Աւգ. 33. «Պարսք, որ հզօր ազգ մըն են եւ Հռոմէական մեծութենէն ետքը աշխարհաց մէջ երկրորդը, քու բարեկամութիւնդ... խնդրեցին»։ Եւ նոյն Աւգոստոսի անանուն ներբողեանը՝ «Արքայ Պարսից հզօրագոյն յոյժ»։ Հմմտ. վերը՝ Մասն Ա. գլ. Բ։*

ցնէ թէ ո՛րչափ դարհուրելի էին այս սառի-ները, զորոնք ինքը լաւ կը ճանչնար[2]:

Այն երկիրները, որոնց հաւասարապէս կը սպառնային թէ՛ Պարսից եւ թէ՛ Արաբաց վտանգը, կը պարունակէր, կրկին կը յիշեցնեմ, հողի երկայն շերտ մը, որ Վերին-կայսրութեան ատեն՝ բաժնուած էր բազմաթիւ նահանգներու, այսինքն՝ Կապպադովկիա, Ասորիք, Հրէաստան եւ Արաբիա: Ներածութեան մէջ մեկնած եմ թէ ի՛նչու վերջին երկուքս դուրս կը ձգուին ծրագրէս[3]: Ներկայ երկասիրութիւնս, ամբացեալ Սահմանաց մասին ընդհանուր քննութենէ մ՚ետքը, պիտի պարունակէ նկարագրութիւն մը զինուորական քարտէսին այս աշխարհաց՝ Հռոմէական Հայաստանի — Անդրկովկասի արեւմտեան ծայրին հետ —, Արեւելեան Կապպադովկիոյ, Միջագետաց, Ոսրոհայաստանի, եւ Հիւսի-

---

[2] Ամ. Մարկել. ԻԴ., 6, 9. «Այս ազգերը մեզի հետ ոգորեցան զինուք եւ երբեմն հաւասար ոյժերով, քանի մ՚անգամ պարտուած, եւ երբեմն յաղթող եղելով. (եւ անդ՝ 83):

[3] Հմմտ. Die Provincia Arabia, auf Grund zweier in den Jahren 1897 und 1898 unternommenen Reisen und der Berichte früherer Reisenden im Vereine mit A. v. Domaszewski, beschrieben von R. E. Brünnow. Մինչեւ հիմայ հրատարակուած են՝ Bd. I. Die Römerstraße von Mâdeba über Petra und Odruh bis El-Akaba, unter Mitwirkung von J. Euting, Straßburg 1904. (Հմմտ. Clermont-Ganneau, ի Journ. des sav. 1904, p. 668—684 եւ Rec. d'arch. or. VI, 1906, § 38). Bd. II. Der äußere Limes und die Römerstraße von El-Maan bis Basra, 1905:

սային Ասորիքի՝ մինչեւ Դամասկոսի, Բաալբէքի եւ Բէյրութի լայնութեան սահմանը․ այսինքն այն ամէն երկիրները, ուր Պարսից արշաւանքը կատարուած է՝ ոչ իբրեւ բացառութիւն ինչպէս է դէպի Երուսաղէմ եղածը:

## Գ Լ Ո Ւ Խ Ը.

## Արեւելից «Ամրասահմանքը»:

Սպարտիանու մէկ խօսքին մէջ[1], որ յաճախ վկայութեան բերուած է, բնական սահմանաց կը հակադրուին այն Սահմանքը, զոր մարդկային ձեռքը ստեղծած է: Արդ Ասորիք միայն մասամբ գետով մը սահմանափակուած էր․ ի՞նչպէս էր միւս կողմերը: Պատմական պատճառներով կը ստիպուինք նոյն հետազօտութիւնը տարածել միւս նահանգներու վրայ ալ՝ որոնք սահմանակից էին Պարսկաստանի եւ Երջանիկ Արաբիոյ:

Առաջնորդ ունինք ուրիշ Սահմանագլխոց օրինակը[2]: Բազմաթիւ երկիրներու մէջ կատարուած զննութիւնք Սահմանքի մը

[1] Սպարտիանոս, Վարք Ադրիանու, 12, «...շատ տեղեր ուր բարբարոսք ոչ թէ գետերով, այլ Սահմաններով կը բաժնուին»:

[2] Գետութեան Սահմանագլուխ-Պատերու վերաբերեալ ընդհանուր ծանօթութեանց լաւագոյն ծայրաքաղ համառօտութիւնն ըրած է գնդապետ De La Noë, ի Bull. du Comité des Traveaux. publ. par le minist. de l'Instr. publ., Section de Géographie historique, 1890, տես մանաւանդ էջ 281 ff:

(limes [3], *Ամբաստհմանք*, *Սահմանագլուխ ամրացեալ*) *իբր էական տարրներ երեւան հանուած են հետեւեալները՝* պատնէշ *մը* (uallum) *եւ փոս մը՝ հանդիպակաց թմբով* (agger), *որ կազմուած էր փոսին երկայնութեամբ անկէ պեղուած հողով: Այսպէս բարձրացուած հողաբլրոյ պատը կրկին, նոյնիսկ կրկնապատիկ կրնար ըլլալ, կամ*

---

[3] Th. Momsen (Der Begriff des Limes, *ի* Westdeutsche Zeitschrift, XIII, 1894, p. 134—143) *կը մերժեցնէ* limes (*Սահմանք*) *բառը* limus (*շեղ, խոտորնակ, ընդմիջահատ*) *բառին: Ըստ իս* limes *ո՛չ թէ գիծն է սահմանին, այլ սահմանագլխոյ հողաշերտ մը, որ նախնաբար իբր ճամբայ կը գործածուէր: Այսպիսով կայսերական Սահմանք կրկին սահմանաբաժին կը կազմէր, ներքին եւ արտաքին, մին կը ներկայանայ երբեմն իբր քարաշէն պարսպապատով մը՝ միւսը՝ փոսով մը. երկուքին միջանկեալ գետինը անջատ էր նահանգին մնացեալ հողէն եւ զինուորական ուրոյն կազմակերպութեան մ՚ենթարկուած էր: Հոս կը յիշեմ դարձեալ շատ խրթին ձեռնարկ մը՝* Eman. Seyler, Terrae limitaneae, in Fortsetzung von „Agrarien und Exkubien", eine zweite Untersuchung über römisches Heerwesen, München 1901: *Կը ջանայ հաստատել՝ Յուստինիանոս մէկ սահմանագրութեան համեմատ (Օրէնք Յուստ. Ib, 2, § 4 եւ 8) թէ թշնամեաց հռոմական ասպատակութիւններն արգիլելու սահմանուած պահականոցները սահմանագլխէն* դուրս *էին, — եւ ասոնք ըլլալու են* ամրոցք *կամ* ամուրք (clausurae, *«կղեսուրք»*) *եւ* բերդք (burges, *«բուրգանք»*). *իսկ ուրիշներն երկրորդ գծի վրայ՝ իբր պահեստ էին* Ներքին *կողմը, — եւ Սահմանագրութիւնն ասոնք կը կոչէ* դղեակք (castella) *եւ* քաղաքք (civitates): *Բայց յիշեալ բնագիրը կը վերաբերի Ափրիկէի եւ Վանդալաց, եւ գիտենք թէ ո՛րչափ վտանգաւոր է կայսրութեան ուրիշ նահանգի մը վրայ տարածել այն բանը, որ բացայայտ կերպով մէկուն համար միայն կ՚աւանդուի:*

դարձեալ զօրացուած պատով մ'որ քարաշէն էր եւ որմնաշէն։ Բայց սատ ամբողջին կերպարանքը զանազան է այլեւայլ երկիրներու մէջ. փոսն աւելի կամ նուազ խորունկ է եւ լայնարաց. պատին բարձրութիւնն ալ անփոփոխ չէր միշտ, եւ ոչ ալ անոր փոսէն ունեցած հեռաւորութիւնը. եւ վերջինս Բաւարիոյ մէջ մինչեւ անգամ կ'անհետանայ։ Եւ վերջապէս Սահմանքն իւր ամենապարզ կերպարանաց կը վերածուի Ափրիկէի մէջ, ինչպէս նաեւ Գաղղիոյ հիւսիսակողմն, ուր ապացուցուած է թէ որեւէ այսպիսի պարսպապատ չէ շինուած։

Արդ այս պատնէշը (uallum) եւ այս հողաթումբը (agger) կը գտնու՞ն Արեւելքի մէջ[4]։ Հողն այս մասին բան մ'երեւան բերած

---

4 Այո՛, այսպէս է Կ. Ցանգէնմայսթէրի համեմատ. K. Zangenmeister, Röm. Grenzwall in der Provinz Arabia (ի Mitth. und Nachrichten d. d. Paläst.-Ver. 1896, p. 49—52)։ Արձանագրութիւն մը (CIL, III, 14149²) որ գտնուած է Ում-էլ-Ջէմալ՝ Բոսրայի հարաւային-հարաւարեւելքը 25 կիլոմեդր հեռուն, կը կրէ (Մարկոս Աւրելիոսի նախարարնէն եւ տէր) «Գործ պատնէշի աւարտեցաւ... Սեւերոսի. նախ. նախ նուիրակի Աւգոստոսայ, հիւպ. սհմ.» (յամէ 176—180). Ցանկմայստէր նոյն «Գործ պատնէշի» բացատրութիւնը կրկին գտնելով Սկովտիոյ պարսպաց յիշատակարաններու եւ Վերին Գերմանիոյ Սահմանաց վրայ կը հետեւցնէ թէ այս բնագրին մէջ Արաբական Սահմանին մասին խօսք կ'ըլլայ։ Բայց ես շատ աւելի հաւանական կը համարիմ Դիւսոյի եւ Մակլէրի կարծիքը՝ (Dussaud et Macler, Mission dans les régions désertiques de la Syrie moyenne ի Nouv. Arch. des Miss. X, 1903, p. 281, Nr. 120. Համեմ. էջ 77) «Այս տեղ

չէ, եւ ուղեւորք անապատին բաւական խոր-քերը մտած են, այս ենթադրեալ հետքերը գտնելու համար: Սալլուստիանոս միեւնոյն տեղը կը պատմէ թէ Սպանիոյ մէջ եւ այլուր (et alias) Գետուլիները կը բաժնուին բարբա-րոսներէն «մեծամեծ գերաններով, (ցցերով, հնոց չերտաֆ) որոնք պատի ոճով յաճախ գե-տին վարսուած են խորունկ եւ իրարու կա-պուած»: Ի՞նչպէս կրնանք դարեր ետքը հաստատել ցանկերու կամ ցցապատնէշներու գործածութիւնը, որ անշուշտ առժամանա-կեայ էր: Յատկապէս Ասորիքի մէջ շատ քիչ հաւանական կ'երեւայ այս, քանի որ հոս փայտը միշտ շատ ցանցառ էր: Ճիշդ է որ Ամ. Մարկեղինոս կը վկայէ անոր գործա-ծուելուն, ստիպողական պարագային, միջ-նաբերդերն ամրացնելու համար[5]. բայց այս դէպքը տեղի ունեցաւ Եփրատայ ափանց վրայ, եւ գերանները դիւրաւ կրնային բե-րուիլ Հայաստանի եւ Կոմագենեայ անտառա-

միայն քաղաքին պարիսպին մասին խօսքեր կրնայ ըլ-լալ»: Արձանագրութիւնն ինկած է աւերակ եղած յաղթական դռնէն, ուր զետեղած էին նոյնը՝ վասն զի նորոգութիւնը տարածուած է ամբողջ շրջապա-րիսպին վրայ: Արձանագրութեան լատիներէն՝ եւ ո՛չ յունարէն ըլլալուն պատճառն այն է անտարա-կոյս, որ զինուորներն ալ գործակցութիւն ունեցան շինութեան մէջ, կուսակալին անմիջական հսկու-թեան ներքեւ: Քաղաքի մը պաշտպանութիւնը չէ՞ր շահագրգռեր ամբողջ նահանգը:

[5] Ամմ. Մարկեղ. ԺԸ, 7, 6, «Տրիբուններ յա-ռաջամարտիկներով միասին առաքուած՝ ցայս կոյս Եփրատայ ափանց դղեակները թէ սրածայր ցցերով եւ թէ ղակշաց ամէն տեսակով պատնէշեցին»:

շատ գաւառներէն։ Կը մնայ ուրեմն ենթադրել թէ Արեւելից Սահմանքն կազմուած չէին նիւթական խոչընդոտով մը, իբր շարունակեալ գիծ, եւ թէ սահմանագլուխը կը նշանակուէր միայն իրարմէ անջատ սահմանանիշերով եւ կամ որեւէ նշանակով մը հողի վրայ, որ քիչ բացայայտ էր։

Բայց աստի ապացուցուած չէ թէ Սահմանաց այս սահմանագլուխը զուգահեռ եղած ըլլայ քաղաքական սահմանագլխին հետ։ Արձանագրութիւն մը, որ հաւանօրէն Դոմիտիանոսի ժամանակէն է, կ'անուանէ կայսերական գործակալ մը «Սոմելոկեննիսիս երկրին անդրասահմանեանին»։ Մոմսէն՝ այս բնագիրը վերանորոգելու ատեն[6] կ'ընդունի թէ Պետութեան միւս ծայրերն ալ իրաց դրութիւնը կրնար նոյն ըլլալ. եւ արդարեւ Սոմելոկեննիսիս երկիրը մաս կը կազմէր Տասանորդական Դաշտերուն (որ տասանորդ կը վճարէին բերդերու), կեդրոնական Ներո-

[6] Մոմսէն՝ ի Jahrb. der deutsch. arch. Instit. IV, 1889, Arch. Anzeiger, p. 41 (IGRRP, III. 70)։ Անշուշտ այս վերաշարադրութիւնը բացարձակ ստոյգ չէ. Gsell (Essai sur le régne de l'empereur Domitian, Paris, 1894, p. 191) նոյն իրը կարելի կը նկատէ. նոյնը կ'ընդունի Domaszewski (ի Westd. Zeitschr. XXI, 1902, p. 205) եւ F. Köpp, Die Römer in Deutschland (Monogr. z. Welt-gesch. XXII), Bielefeld, 1905, p. 44։ — Այսու հանդերձ այս ինքնայատուկ գիրը կրնայ նշմար մ'ըլլալ սահմանագլխուն ընկրկելուն, ինչպէս կ'ենթադրէ Kornemann, ի Klio, VII. 1907, p. 93։ Ադրիանոս ասոր չէր ընդդիմանար, եթէ անով իրեն աւելի ապահովուած երեւար պաշտպանութիւնը։

պիոյ մէկ գաւառին, ուր հարիւր անգամ աւելի կը ներէին աշխարհագրական պայմաններն որեւէ տեղ դղեակներ կառուցանելու, քան թէ ամայի անապատ Արաբիոյ մէջ։

Բայց աստ Արեւելքի սահմանագլուխը յաճախ կը տեղափոխուի. արդ Սահմանադրութեանց գիծն ալ փոխուա՞ծ է անոր հետ։ Յիշելու է աշխարհակալութեան գլխաւոր հանգրուանները։

Միայն Հիւսիսային Ասորիք Պետութեան մէջ ձուլուած էին Վեսպասիանոս պատերազմէն առաջ։ Լիբանանու կողմերը, Պաղեստինի մէջ կային տակաւին իշխանութիւններ, որոնց պարտաւորութիւնն էր արշաւանքները խափանել։ Շատ հաւանական է թէ մինչեւ այն ատեն ուրեմն այս երկիրները չերտափակներով ամրափակուած չէին։ Յետոյ կը կազմուի Հրէաստանը. եւ այն ատեն Անդր-Յորդանանեան Արաբներն իրենց նախկին Հրէից դէմ ունեցած թշնամութիւնը կը փոխեն Հռոմայեցւոց դէմ։ Տրայանոս կ'որոշէ Արաբիա նահանգը համախառնել միացնել։ Մշակեալ եւ յաճախ բանուկ գաւառներէն դուրս այն կը տարածուէր դէպի ընդարձակ ամուլ հարթավայր մը, զոր պատշաճ էր անտեսել եւ շատանալ կարաւաններու հիւսիս-հարաւային մեծ պողոտաներով, որ Պաղմիւրիայէն կ'երթար մինչեւ Կարմիր Ծով[7]։ Այս

---

[7] Müller, Geogr. Gr. min. I, p. 272։

պողոտային մօտ կրնար ինքնակալն իւր Ամբառահմանը հաստատել. բայց գրաւուեցաւ փառասիրութեամբ աշխարհակալելու Պարթեւական Պետութիւնը եւ կրցաւ առնել միայն Միջագետքը, զոր Ադրիանոս անմիջապէս ի բաց թողուց: Զենք գիտեր ճշդիւ թէ իւր յաջորդներն ի՛նչ չափով խոտորեցան այս խոհեմ քաղաքագիտութենէն:

Ուռհահայաստանն՝ ապստամբելէն ետքը[8] վայրկեան մը յարքունիս գրաւուեցաւ[9], բայց երկար ժամանակ ալ պահեց անկախութեան ստուեր մ՚իւր Աբգարներու իշխանութեան ներքեւ[10], թէպէտեւ վաճառականութեան շատ կարեւոր ճանապարհակիցք մըն էր, ուսկից շքեղ վաճառականներ կը տարածուէին դէպի Հայաստան, Պարսկաստան ու Ասորիք: Բայց Հռոմայեցիք արդէն իրենց իշխանութեան ներքեւ առած էին Միջագետաց հիւսիս-արեւմտեան կէսը, որ կը սահմանագծուէր՝ կամ գրեթէ կը սահմանուէր Աբորաս գետի բնական սահմանագլխով: Գաղերիոս ասոր կցեց վերջապէս 297ին դէպի Տիգրիսի վերին բազկին կողմերը հինգ նոր նահանգներ, զորոնք սակայն Պարսք վերագրաւեցին Յուլիանու մահուանէն ետքը[11]:

---

8 Դիոն Կաս. ՀԸ, 1:

9 Անդ, ՀԸ, 2. Զոնար. Տար. ԺԲ, 12, հրտ. Բոն, էջ 561—562:

10 Գէորգ Սինկեղոս, Ժմնկգր. էջ 676, հրտ. Բոն:

11 Պետրոս Պատրիկիոս, Հմառ. վասն Նուիրակ. Հռոմ. էջ 4. հրտ. Boor:

Ասոնց յաջորդող կերպարանափոխութիւնք միայն դէպի աւելի հիւսիս եղած երկիրներու սահմանները կ'որոշէին․ այս վերջինս համար Սահմանապարկէնի (limes) խնդիրն եւ ո՛չ գոյութիւն ունի, այն իմաստով՝ որով կ'ըմբռնենք այս բառը։ Հայաստանի լեռնադաշտաթներու վրայ սահմանագլուխը պարզապէս գաղափարական էր, եւ գործադրելի եւ շահաւէտ միակ միջոցն էր հովիտներու անձուկներու մէջ արգելափակ բերդեր հաստատել։

Այսպէս ուրեմն յատուկ իմաստով՝ արուեստական պատուարի օգտակարութիւնը կրնար երեւալ միայն Եփրատէն մինչեւ Կարմիր Ծով[12]։ Այս ճանապարհագծին հարաւային մասին նկատմամբ կրնայինք ճշգրիտ բանաքննութիւն մը գտնելու յոյս ունենալ մեծ հանրագրութեանս մէջ «Արաբիա Նահանգը» (Die Provincia Arabia)։ Բայց ոչինչ կը գտնենք, թէպէտեւ Բ հատորին խորագիրն է «Արտաքին Սահմանապարկէնը եւ Հռոմէական ուղին Էլ-Մաանէ մինչեւ Բոսրա» (Der äußere Limes und die Römerstraße von El-Maan bis Bosra)։ Միեւնոյն հատորին Յառաջաբանութեան քանի մը տողերու համեմատ[13], եւ ամբողջ գրքին բո-

12 Հմմտ. արդեամբք՝ Ժմնկգր. Զատկ. էջ 504 (հրա. Բոն քղք.) «Արեւելեան Սահմանը, Արաբիայէն մինչեւ Կերկեսս բերդը»։

13 Կը գրուի՝ «Հինգերորդ Հատորին մէջ նկարագրած ենք արտաքին անապատային Սահմանապար-

վանդակութեան համաձայն՝ այն Սահմանապարկէն եղած ըլլալու է պարզապէս բերդերու գիծ մը, որ ճամբու մ'երկայնքը շարուած կ'ընթանար։ Տրայանոս նախ ուղին կառուցած ըլլալու է անձամբ[14], Մեռեալ Ծովու անմիջապէս մօտէն, եւ շինած քանի մը բերդեր, իրարմէ շատ հեռու։ Յետոյ կամաց կամաց ամրացուց ուրիշ գօտի մը յարդարուած աւելի արեւելակողմէն[15] նոր ուղիներու ընկերանալով։ Այս դէպի ներս յառաջացման բուն դրդապատճառն եղած ըլլալու է, կարծեմ, անտեսական բարւոքուած պայմանները, գաղթականութեան զարգացումը կամ Արաբաց դիմումը դէպի աւելի հաստատակայ կենաց Թըլայման մը։

Արդ ուրեմն ասոնք Սահմանապարկէնի

---

կէնը էլ-Մասնի եւ էլ-Կասատլի միջեւ. Ներքին Տրայանեանը՝ Տրայանոս մեծ պողոտայէն աւելի արեւելակողմէն ընթացած ըլլալու չէ, եթէ ընդհանրապէս այս կանխագոյն ժամանակին համար յատուկ իմաստով Սահմանապարկէնի մը մասին խօսք կրնար ըլլալ. դըժբախտաբար չէինք կրնար ասոր դէպի Հաւրան շարունակութիւնը հետազօտել, վասն զի նոյնը յամենայն դէպս փնտռելու ենք Կալաաթ-էս-Զէրկէէ մինչեւ Բոսրա Հռոմէական ուղւոյն հարաւակողմը, իսկ այդ ուղին մեզի անմատչելի մնաց։ Հաւանօրէն Կալաաթ-էս-Զէրկէէ մօտ գտնուող էլ-Հասաիան անոր կը վերաբերէր, եւ անկէ ընթացած ըլլալու է Ումմ-էլ-Ջիմալի վրայէն մինչեւ Իմթան»։

[14] Ինչպէս մղոնաքարերը բացորոշ կը ցուցնեն. (CIL, III. 14149 [39] եւ [42])։

[15] Ա. Հատորին Ժ տախտակը կը թոյլատրէ հաստատելու թէ ասոր եւ Տրայանեան Արաբական պատուարին միջեւ միջանկեալ անջրպետին հեռաւորութիւնն էր 20էն մինչեւ 30 քիլոմետր։

այն երկու մասե՞րն են՝ Մոմսէնի ընդունման համաձայն, զոր վերը բացատրեցինք[16]: Չեմ կարծեր. այդ ընդունմամբ կրկին սահմանաբաժինները միեւնոյն ժամանակ կը կազմակերպուէին եւ միջանկեալ անջրպետն ալ շատ աւելի աննշանն կ'ըլլար: Արաբիոյ Սահմանապարկէնը համեմատելու է աւելի Բրիտանիոյ սահմանին հետ, ուր Անտոնինեայ պատնէշը (uallum) գրեթէ հարիւր քիլոմետր աւելի դէպի հիւսիս էր քան Ադրիանոս պատուարը[17]. եւ այս տեղն կը հասկնանք Ամ. Մարկեղոսը երբ կը խօսի Ասսանեան Սարակինոսաց ցեղապետին աւարառու ապստամբութեանց վրայ՝ անոր մասին կ'ըսէ թէ «ամենայն սաստկութեամբ երկար ժամանակ մեր Սահմաններու վրայ կը հուղկահարէր» (omni saeuitia per nostros limites diu grassatus[18]): Բայց այս յօդուածի ձեւը շատ տատանկան ալ անձելու չէ[19]:

Ուրիշ հեղինակներ աւելի յայտնախօս են. Թէոփանէս կը պատմէ թէ Յուստինիանոս 520ին Արեւելից կոմս ըրաւ Հայաս–

16 Տես վերը այս գլխոյն թիւ 3 ծանօթ.:

17 Հմմտ. De la Noë, անդ, էջ 294—298:

18 Ամմ. Մարկեղ. ԻԳ, 1, 3:

19 Ուրիշ տեղ մը Ամմ. Մարկեղ. (ԺԴ, 8, 5) անորոշ բացատրութիւններով կ'ըսէ. «Արեւելքի Սահմանին (Orientis uero limes) երկայնութեան տարածուած եւ ուղիղ Եփրատայ ափունքներէն մինչեւ Նեղոսի եզերքները կ'երկարաձգի, ձախէն սահմանակցելով Սարակինոսաց ազգաց, աջէն՝ ծովուն ալեկոծութեանց առջեւ պարզուած...»:

տանի դուքսը, որուն մեծամեծ զումարներ տալով՝ հրամայեց «նորոգել Լիբանան — Փիւնիկէի քաղաքը, Ներքին Սահմանին վրայ, որ կը կոչուէր Պաղմիւրա, հրամայելով որ հոն նստի դուքս» եւն[20]։ Ուստի կար Ներքին Սահմանապարհէն մը, որ Պաղմիւրայէն կամ անոր մօտէն կ'անցնէր։ Ուրիշ տեղ մը կ'ըսէ. «Նոյն ժամանակ (Յուստինիանոս ատեն) Պաղեստինի դուքսը թշնամութիւն ըրաւ Հռոմայեցւոց ներքեւ եղող Սարակինոսաց ցեղապետին դէմ. եւ ցեղապետը վախնալով եկաւ Ներքին Սահմանը[21]»։ Ուրեմն այս Սարակինոս պետը, որ Պաղեստինի դքսին հետ գժտած էր, կու գայ դէպի Ներքին Սահմանապարհէնը, որմէ անդին իր իշխանութիւնն էր։

Ասորիքի, Պաղեստինի եւ Արաբիոյ ամբողջ երկայնութեամբ կար առանձին գօտի մը, որուն վաչկատուն հիւրերը Հռոմայեցւոց ներքեւ էին. ուրեմն ազդեցութեան կամ պաշտպանութեան շրջան կամ գօտի մը։ Արդ այս գօտին ալ պարփակուա՞ծ էր դարձեալ ուրիշ Սահմանապարհէնով մը՝ որ Արտաքին կը կոչուէր։ Թէոփանէսի վերոյիշեալ խօսքն որեւէ արգելք մը չի յարուցաներ ասոր դէմ, եւ Մաղաղասի բնածին համեմատ[22] երբ Ալամունդար ցեղապետը՝ որ Պարսից սորա—

---

20 Թէոփանէս Ժմնկգր. 174, 13։
21 Անդ, 179, 15։
22 Մաղաղաս, էջ 445, հրտ. Բոն։

կարգեալն էր, առաջին Սարիքը կողոպտե-լու մեկնեցաւ, հռոմէական պետերն անոր դէմ քալեցին. Սարակինոսներն ասոր առնե-լէն ետքն՝ երբ այս լուրն լսեցին, փախան «արտաքին Սահմանին մէջէն»։ Այս բնագիրը վճռական կ'ըլլար, եթէ ճիշդ այս դէպքը պատմուած չըլլար նաեւ Թէոփանէսէ. բայց վերջինս կը վկայէ թէ վրանաբնակները փա-խան ներքին Սահմանին մէջէն[23]։

Այսու հանդերձ Բիւզանդացւոց հպա-տակեալ Արաբացւոց այս երկրամասը շատ դուզնաքեայ ճշգրտութեամբ կը սահմա-նուէր, անապահով վկայութեանց համա-ձայն. ասոր վկայ է այն վէճը, որ ծագեցաւ Յուստինիանոսի ատեն Պալմիւրայի հարա-ւակողմն եղող պողոտայի (strata) համար[24]։ Դարձեալ նշանակենք որ ո՛չ Մալալաս եւ ո՛չ Թէոփանէս գործածած են այս երկու բա-ցատրութիւնները արտաքին (ἐξώτερος) եւ ներքին (ἐσώτερος). լեզուի տարբերութիւնը

---

[23] Թէոփ. Ժամկգր. 178, 15. — Միեւնոյն աղ-բիւրն աղաւաղուած ըլլալու է այս երկու հեղինակաց միոյն կողմանէ։

[24] Տես վերը Մասն Ա, Գլ. Ա § 3։ Արեթաս կ'ըսէր. անի Հռոմայեցւոյ է, նկատելով տեղւոյն անունն ու հին վկայութիւնները. իսկ Ալամունդար կ'ըսէր. Անունը բանի մը կարեւոր չէ. հովիւներն ա-նոր համար վարձք վճարած են իբր բուծ արածելու իրաւունքի։ Յուստինիանոս խնդիրը վճռել չուզեց, բայց շատ ժամանակ կորսնցուց զայն որոշելու հա-մար. (Պրոկոպ. ՊՊ. Բ, 1, 6, եւն։

կընար յառաջ եկած ըլլալ տեսակէտի տար-
բերութենէն[25]։

Համառօտիւ եզրակացնենք՝ ոչինչ կ՚ապացուցանէ Պետութեան արեւելեան սահմանագլխին վրայ շարունակեալ պատուարի մը գոյութիւնը, որ բնական սահմաններուն՝ ծովու եւ գետոց ափերու՝ տեղը բռնէ, եւ որ պարունակէ այս երկու էական տարերքը՝ պարսպապատ մը եւ փոս մը։ Հեղինակաց քով որեւէ ակնարկութիւն չկայ. հողի վրայ որեւէ նշմար՝ նաեւ կղզիացեալ՝ չէ գիտուած. եւ Արաբիոյ մէջ, որ աւելի ուսումնասիրուած է, արդիւնքը պարզապէս ժխտական է[26]։ Չկայ որեւէ նշանակ մ՚այն ժամանակաշրջանին, երբ այսպիսի ձեռնարկ մը կատարուած ըլլայ, եւ ոչ ալ այն գծին, որուն ճշգրտիւ հետեւած ըլլայ այդ ձեռնարկը. եւ երկրիս պարբերական գրաւումներն ու կորուստները չեն պարզեր այս խնդիրը։ Դիւրաւ կը հասկցուի թէ Հռոմայե-

---

25 Նոյնպէս այն հինգ շրջանակները, զորոնք Պետութեան հետ ձուլից Գադրիանոս՝ բայց ետ տուաւ Յովիանոս, եւ զորոնք Անդր-Տիգրիսեան կը կոչէ Ամմիանոս (ԻԵ, 7, 9). Հռոմայեցւո՞ց հանդէպ «Անդր-Տիգրիս» էին, թէ Պարսից։ Ճշմարտութիւնը երկու կարծեաց համադրութեան մէջ ըլլալու է, ինչպէս տեսանք վերը, Ա Մասին, Գլ. Ա, § 2ին մէջ։

26 Եղա՞ծ էր որեւէ փորձ շարունակեալ պատուարի. Թերեւս, վասն զի Մասնի քով (Provincia Arabia, II. p. 3 ff.) գտնուած են պարսպապատի երկու բեկորներ, որոնցմէ մին կը միացնէ դղեակ մը եւ բուրգ մը, միւսը՝ բուրգէն անդին անցնելով եւ յանկարծ ընդհատելով որեւէ շինուածքէ մը հեռու։ Յամենայն դէպս փորձը մէկդի թողուած էր։

ցէք կասած ըլլան կառուցանելու հրատապ երկնքի մը տակ եւ անարժէք հողի մը վրայ, 600 մղոնէ աւելի երկայն պատուար մը, կըրկինը Հռենոսի եւ Վերին-Դանուբի Սահմանապարկէնին (limes)։ Կրնան այն դադափարն ալ յղացած ըլլալ թէ իրենց Տէրութեան իրական եզրը պէտք էր փնտռել աւելի անդին եւ այս Տիգրիսն ըլլալու էր. եւ թէ սպասելով այս ճակատագրական աշխարհակալութեան՝ վարձկան առնուած Սարակինոսները բաւական էին պաշտպանելու իրենց նահանգները՝ ցիրուցան սփռուած պահակագօրաց աջակցութեամբ։

Թողունք այժմ մէկդի սահմանագլխոյ գիծն իր խիստ իմաստով. յայտնի է թէ Հռոմայեցիք շինած են Ասորիքի եւ անոր մերձակայից կողմերը բազմաթիւ զինուորական գործեր եւ ամրութիւններ. հարկ չկայ ըսելու թէ ասոնք անկանոն կերպով իրարմէ հեռու անջրպետուած էին, երկրին բնութեան եւ նոյն իսկ վայրկենին պիտոյից համեմատ[27]։

---

27 Aug. Brinkmann, Der römische Limes im Orient, (Bonner Jahrbücher, XCIX (1896, p. 252—257). յաջողակութեամբ քանի մը մանրամասնութիւններ քաղած է Ալեքսանդր Ակիւմետոս աբբային Վարքէն, որ հիմնադիրն է վանական կարգի մ'որուն անդամները գիշեր կը փոխանակէին կարգաւ գիշեր ու ցերեկ անդադար ժամերգութիւն կատարելու համար։ Այս Վարքէս, զոր իր աշակերտներէն մին խմբագրած է, լատիներէն թարգմանութիւն մը հասած է մեզի (Acta SS., Յունուար, Ա, էջ 1018)։ Հոն կը պատմուի թէ ճգնակեցն իր աշակերտներով կը թափառէր պարսկական անապատին

## ԳԼՈՒԽ Բ:

### Զինուորական քաղաքը. բաժանում նիւթոց. Աղբիւրներ: Նորագոյն հետազօտութիւնք:

*Օգտակար չեմ համարիր հռոմէական եւ բիւզանդական շինարարութեան ընդհանուր սկզբանց անդրադառնալ հոս, որմէ հետէ Կայնա*[1] *եւ Դիհլ*[2] *այն մասին վերջնական համառօտագծեր տուած են մեզի: Միեւնոյն կիրարկութիւնը կրնայինք ընել արեւելեան երկիրներու համար: Հոն կարելի պիտի չըլլար ամենախիստ խտրական զանազանութիւն ընել այն պատնիշագործութեանց միջեւ, որոնք կը նշանակուին բառերով՝ դղեակ* (castellum) *բուրգ* (*Նմուր*, burgus), *եւ աշտարակ* (turris *մահարձան եւն*)*: Նոյնպէս հոն ալ պիտի նշմարէինք թէ նախադասութիւն կը տրուէր կեդրոնական դիրքերուն հարթավայր դաշտերու մէջ քան թէ տիրող լեռնակատարներու վրայ. — Թէ շատ տարա-*

---

*մէջ (իրր* 420—425*ին) տագնապեցելով ամբողջ* Սահմանաց (limes) *երկայնութեանը: Սկսած էին սովատանջ ըլլալ, երբ հանդիպեցան հռոմէացի տիրոններու եւ զինուորներու, որոնք խնդրեցին իրենց դղեակները* (castella) *գալ. «վասն զի Հռոմայեցւոց եւ Պարսից սահմանագլխոց վրայ կան դղեակներ՝ բարբարոսաց դէմ, կ'արժէ* տասն մինչեւ քսան մղոն *հեռաւորութեամբ». (անդ, Գ, էջ* 1025)*: Այս տեղեկութիւնը կ'արժէ թերեւս միայն Պաղմիւրայէ մինչեւ Եփրատ եղած հատուածաբաժնին համար:*

[1] Cagnat, L'Armée romaine d'Afrique, p. 674 ff.

[2] Diehl, L'Afrique byzantine, Paris 1896, p. 138 ff. *Տես դարձեալ քիչ մը վարը ծան.* 30:

ծուած էր նոյնպէս խիպարով որմալիցքի գործածութիւնը՝ երեսները դրուագելով, եւ ծածկուած ու կամարակապ փողանցքեր ու պարիսպներ, որոնք պսակուած էին շրջադարձիկ ճամբով մը. — Թէ միեւնոյն սովորութիւնը կար ներքնամրոց մը կամ միջնաբերդ մը կազմելու յետին դիմադրութեան համար. — Եւ միեւնոյն հոգացողութիւնը՝ պարէնաց պահեստներու եւ ջուր շտեմարանելու ամբարներու մասին: Հազիւ թէ պէտք ունենամ աւելցնելու թէ գլխաւորաբար դեռնին ձեւերն՝ ամրութեան մը կ'ընծայէին իր սեպհական կերպարանքը. բայց երբ անոնք այսպիսի կերպաւորութիւն մը ստիպողական չէին ըներ, այն ատեն սովորաբար կ'ընտրուէին հռոմէական հին բանակատեղւոյ կանոնաւոր տրամադրութիւնները, ինչպէս կը վկայեն Ապամէա, Սուրա, Սերգիուպոլիս եւն: Պիտի տեսնենք թէ առաջին երեք դարերէն շատ ցանցառ հետքեր միայն կան, այն փոփոխութեանց եւ նորոգութեանց պատճառաւ, որ յաջորդ ժամանակաց մէջ այնչափ յաճախ կատարուած են. կրնայինք նոյն իսկ, կարծեմ, իբր կանոն մը հաստատել թէ աւերակաց մեծագոյն մասը Յուստինիանու ժամանակաշրջանէն են:

Համառօտագծեցինք նոյնպէս Արեւելքի բանակներուն գործը, այն է՝ պահպանել Արաբիա եւ իր կարաւանները նաբաթացի հուղկահարներու հինահարութիւններէն, եւ

պաշտպանել ամբողջ երկիրը Պարթեւաց կամ Պարսից դէմ: Բայց այս վերջինս յարձակումները կրնային կատարուիլ միայն ծայրագոյն հիւսիսակողմը. եւ անկէ կը հետեւի թէ հոն միայն կը պատշաճէր կանգնել նշանաւոր բերդեր, որպէս զի կարենան դիմադրել բազմաձեռն ու կազմակերպեալ բանակներուն, որոնք ամրաքանդութեան ամէն կարեւոր միջոցներն ալ ունէին: Աւելի հարաւակողմն Արաբացւոց դէմ, որոնք ուրիշ բան չէին ձեռնարկեր բաց ի անկէ, զոր այսօր հէծելազօրու հրոսում կը կոչեն, կը պահանջուէր ամէնէն աւելի պահակերաց շարայարութիւն մը եւ դիտարան-պահակներու յաջող ընտրութիւն մը[3]: Վաչկարնակները շահ մը չունէին կարեւոր քաղաքները գրաւելու, ուր չէին կրնար դիմանալ: Եւ Զ դարուն Պրոկոպիոս մինչեւ անգամ կ'ըսէ թէ ասոնք չէին գիտեր անգամ յարձակիլ քաղաքներու վրայ, որմէ պատուար մը զանոնք կը կասեցնէր[4]: Ասոնց համար կարեւորը ո'չ

---

[3] Ամ. Մարկեղ. ԺԴ, 8, 13: «Արաբիա եւս բազմութեամբ լեցուած վաճառատեղեաց, ամրագոյն բերդերու եւ դղեակներու, զորոնք դրացի ազգաց ասպատակները վանելու համար հնոց մշտարթուն հոգածութիւնը կանգնած է յարմարագոյն եւ անքոյթ կէտերու վրայ»:

[4] Պրոկոպ. վասն Շին. Բ 9, էջ 235. «Սարակինոսք ի բնէ անկարող են պարսպամարտելու. եւ եթէ այսպէս հանդիպի՝ ամենադոյզն պարիսպ մը, նոյն իսկ կաւեղէն արգելք կ'ըլլայ անոնց յարձակման»:

թէ աշխարհակալութիւնն էր, այլ կողոպուտը։

Յատուկ խնամքով Ասորիքը հիւսիսարեւելեան կողմէն կը սահմանագծուէր Եփրատով, որ մեծայաղթ գետ մըն է մանաւանդ իր գետայորդիէ յորդութեանց ժամանակ, — հինք արդէն զայն համեմատած էին Նեղոսի հետ[5] — մինչդեռ Ջրերու Նուազութեան ժամանակ շատ տեղ ծանծաղ է։ Սակայն անոր ողողումներն ալ ընդհանուր չէին կրնար ըլլալ[6], վասն զի անոր ափերն ալ փոխնիփոխ կարգաւ տափարակ են եւ սեպաքերձ։ Արշաւողի մը համար գետն անցնելու կը բաւէր ընտրել յարմար տեղն ու ժամանակը[7]։ Համառօտ ըսելու համար Եփրատ

[5] Սոլինոս, էջ 156, հրտ. Մոմզէն. «Եփրատ Միջագետքը կը պարարտացնէ իր ողողման տարեւոր յորդութեամբ, նման Եգիպտական հոսանաց, հողերը թանալով… նոյն ժամանակներն երբ Նեղոս ալ կը յորդէ»։

[6] Խոնարհագոյն ընթացքին մէջ Բաբելոնի բնակիչները խնամ տարած էին ափանց վրայ հաստատելու սահանքներ՝ որոնք հաստատուն կերպով արգելք հիւսելով էին, եւ որոնք թոյլ կու տային ողողումը կանոնաւորել, բայց եղան ալ որ տարապայման Ջրակուտակութեամբ մը պատառեցան եւ խափանեցին Յուլիանոսի չուն. (Ամմ. Մարկել. ԻԴ, 1, 11)։

[7] Յիշելու ենք այն բազմաթիւ տեղերն, ուսկից կրնար գետանցքը կատարուիլ (Ռիտտէր, Աշխ. Ժ, էջ 984—1003)՝ Կապերսանա, Սամոսատ, Զեւգմա, Նիկեփորիում, Կիրկեսիում. ապահովապէս պէտք է աւելցնել՝ Թափսակ, Կեկիլիանա։ Այս վերջին կայանքիս քիչ մ՚աւելի հիւսիսակողմէն՝ գետը կը կտրէ այն ուղեգիծը՝ զոր Ասորիքէն Բաբելոն երթալու կը նշանակէ Ստրաբոն (ԺԶ, 1, 27, էջ 748 c)։ Խոսրով գետն անցաւ Օբբանէսի մօտ, զոր Պրոկոպիոս (ՊՊ. Բ. 12,

՝կրնար քաղաքական սահմանագիծ մը ըլլալ, բայց ոչ արգելիչ պատուար մը։

Գետս նոյն իսկ զինուորական ուղի մըն է, արշաւանքի ճամբայ մը։ Երկու անապատային երկիրներուն՝ Արաբիոյ եւ Սուրիո-Միջագետաց մէջ՝ ջրոյ այս երիզը երեւան կու գայ միանգամայն թէ՛ իբր պարենաւորման միջոց մը չուող բանակի մը համար, միակերպ հարթավայրի մէջ լիահարթ բացուած ճամբայ մը եւ թէ՛ վերջապէս միշտ դիւրին անցք մը սակաւասոյզ նաւերու՝ ինչպէս էին այն ժամանակի նաւերը։

Ուստի կարեւոր էր գետափերն ամրացնել դղեակներով (castella) եւ զօրանիստերով. ափնորդ բնակիչներ հոն երբեք չէին պակսիր։ Պարթեւական հանգրուանաց ( σταθμοὶ Παρθικοί) զորոնք մի առ մի կը թուէ Իսիդորոս Քարակացի, մէկ մեծ մասը խիտ առ խիտ նստած են Եփրատայ ափանց վրայ։ Այս ամրոցաց (ὀχυρώματα) մէկ մասը մինչեւ անգամ գետին ծոցն էին, այսինքն՝ խոնարհագոյն ընթացքին մէջ գտնուած կղզիներու վրայ, ոչ շատ հեռու այն կողմէն՝ ուր գետս Տիգրիսի կը մերձենայ։ Այն կողմը հոսանքն ալ լայն ըլլալով՝ այսպիսով աւելի լաւ կը հսկուէր ամբողջին վրայ։ Կղզեակ մը շատ

4) 40 ստադ հեռու կը դնէ Բարբալիսոսէ (հիւսի՞ս թէ հարաւ. յամենայն դէպս՝ արդի Մեսկէնէ անցուց մօտերը)։ Արաբացի եւ նորագոյն ուղեւորներ ալ վերջապէս գտած են նաեւ ուրիշ հուներ կամ ծանծաղներ (հմմտ. Regling, անդ, էջ 475—476)։

կարեւոր բան մը չէր, որ արշաւող մը զայն՝ աշխարհակալէ, բայց պահպանելու համար օգտակար էր անոր ասախին, եւ տէրութեան գանձերն այն տեղ կը պահուէին[8]: Պարսիկներն ալ հետեւեցան Պարթեւաց օրինակին, եւ Ղուկիանոս կոմսը 363ին պատերազմին մէջ «աւերեց Պարսից բազմաթիւ բանակետղեր Եփրատի երկայնութեամբ, եւ անոնք ալ, որ գետին մէջ կը գտնուէին կղզիներու վրայ, եւ բնաջինջ ըրաւ պահակապանները[9]»: Ասոնք կարեւոր ամրոցներ էին, ինչպէս կը տեսնենք Ամմ. Մարկեղիանու նկարագրութենէն[10]:

Այս էր ուրեմն երկու պետութեանց միջեւ ամենահին սահմանագիծը, եւ նոյն իսկ երբ թշնամութեանց գլխաւոր ասպա-

---

8 Müller, Geogr. Graec. min. I. p. 247. — Շատ անգամ բանակցական տեսակցութիւններ տեղի ունեցան հռոմէացի զօրավարի մը եւ արեւելեան վեհապետի մը միջեւ այս կղզիներու միոյն վրայ. (այսպէս՝ Աւգոստոսի ատեն Վելլ. Պատերկլոս, Բ, 101): Ուրիշ տեսակցութիւն մ'ալ՝ որ նուազ խորհրդանշան չէ, կատարուեցաւ Տիբերիոսի ատեն՝ Արտաւանայ եւ Վիտելիոսի միջեւ, նաւակամրջի մը մէջտեղը (Յովսեպոս ՀՀ. ԺԸ, 102):

9 Մաղազաս, անդ, ըստ Մագնոսի Կարհացւոյ եւ Եւտիքիանոսի Կապադովկացւոյ:

10 Ամմ. Մարկեղ. ԻԴ, 1, 2 — «Թելութա, տեղ մը հսկայ գագաթով մը վերամբարձած եւ բնութեան զօրութեամբ կարծես մարդկային ձեռքով ցանկապատուած...»: — «Աքայիկալա, ամրութիւն մը՝ գետին շրջապատութեամբ պատնէշուած եւ սեպաբերձ բարձրամբ...»: Անդ, 9, 12, «Պերիսաբորա, ընդարձակ եւ բազմամարդ քաղաք, կղզւոյն շրջապատովը շրջապատնէշուած...»:

րեզը փոխուած էր, չդադրեցան դայն կարելւոյն չափ հզօր եւ անառիկ ընելէն։ Մանրամասնօրէն չենք գիտեր թէ այս երկրամասին մէջ ի՛նչ գործ կատարեցին Հռոմայեցիք առաջին երեք դարերուն. հեղինականերու լակոնականութեան պատճառն ա՛յն է թերեւս որ այն ատեն Ասորիքի տէրերը, բաւական հանգիստ ըլլալով Պարթեւաց կողմանէ՝ որոնք նախայարձակ չէին, շատ մեծ գործունէութիւն մը ցուցուցած չեն[11]։ Բայց այլազգ են իրերը Բիւզանդացւոց ժամանակ։

Սակայն երբ Հռոմայեցիք անցան Եփրատը, եւ ձուլեցին Ուռահայաստան եւ Միջագետաց մէկ մասը. այն ատեն հարկ էր որ պաշտպանէին այս մարզը. (զինուորական սահմանագլուխը)։ Այս նպատակիս համար կը մնար միայն որ պահէին յանձանձէին ու ապատակաւ բազմացնէին այն ամուրները, զորոնք կառուցած էին երկրին նախորդ տէրերը։ Տիգրիս Պարսից համար յաճախ թափանցման ճամբայ մ'եղաւ հռոմէական հողը մտնելու համար, շատ օգտակար ճամբայ մը, թէեւ արտաուղի շրջանաւ, ինչպէս որ

---

[11] Պաղմիւրական արձանագրութիւն մը 132 Ց. Ք. Ե. դարէն (Enno Littmann, Semitic Inscriptions, Part II of the Public. of Americ. arch. Exped. to Syria in 1900. New York, 1905, p. 170 ff.) կը զեկուցանէ թէ Պաղմիւրացիք Եփրատի երկայնքը բերդեր կամ հեծելազօրու բանակետղեր ունէին, պաշտպանելու համար իրենց կարաւանները. (ուրիշները պաղմիւրական բառն հոս այլազգ կը թարգմանեն, այսինքն դղեակ կամ զօրանիստ)։

Եփրատն էր հակառակ կողման համար։ Եթէ դէտն ի վեր ելլենք, կը գտնենք ձախակողմը՝ Նինուէէն սակաւօրեայ ճանապարհագնացէ մ'ետքը Մասիսի լեռնաշղթան, որ դէպի հիւսիս-արեւմուտք շեղելով՝ անոր ոտից ստորոտը կը թողու եւ կարծես մատնանիշ կ'ընէ կարեւոր ճամբայ մը դէպի Փոքր-Ասիա։ Արդ այս ճամբան էր, որուն երկայնքն իբր ուղենիշ կանգնած էին զինուորական ամրոցիկներ մինչեւ այն կէտը, ուր Ասորիք կը հասնի։ Ասոնք մի առ մի յառաջապահանորդներ (praetenture) էին, յառաջապահ պահակերոցներ, որոնց պահպանութիւնը կը պահանջէր կորովութիւն եւ յարատեւութիւն, բայց որոնք դէթ այն օգուտն ունէին, որ յաճախ յետսակողման երկիրը կը խնայուէր այն փորձանքներէն, զորոնք ճիշդ իրենք խափանած արգիլած են այնչափ անգամ։

Իսկ այս բուն յետսակողմեան աշխարհն ալ, առանց յատուկ իմաստով պաշտպանողական յօրինուածութեան մը մաս ըլլալու կը պարունակէր քաղաքներ, ուր անկախ մթերուած էին պաշտպանութեան միջոցներ այն պարագային համար, երբ յիշեալ կըրկնապատ պատուարը բռնաբարուէր։ Ցանկապէս գաւառ մը ռազմագիտական մեծ դեր մը խաղաց, — բայց աւելի յարձակողականի համար։ Կիւրհեստիկէ եւ Քաղդիկէ գաւառներուն մէջ, որոնք դաշտերու եւ հովիտնե-

բու յաջորդութիւն մըն են, եւ որոնց առ-դաւանդութիւնը կը դրուատէ Պղինիոս Երէց[12], դիւրին էր զօրքեր կեդրոնացնել, եւ այստեղ հրամատարութեան սքանչելի ընդհանուր բնադիր մը կը գտնուէր. դէպի հիւսիս անհրաժեշտօրէն կը համադիմէին թշնամւոյն շարժմանց մասին առնուած տեղեկութիւնք։ Ծովափն եւ Անտիոքայ մերձաւորութեամբ բանակին սպարապետը հաղորդակցութեան մէջ կը մնար նահանգին վարչական կեդրոնին հետ, եւ անով Պետութեան կեդրոնին հետ։ Եւ ինչ որ ճիշդ է ամբողջ գաւառին համար՝ աւելի ճշմարտագոյն է անոր բնական գլխաւոր կայանին՝ Հերապոլսոյ համար։ Յաճախ Կիւրհեստիկէի մէջն է որ ինքնակալք կամ անոնց զօրավարք պատրաստեցին պատերազմի մը ծրագիրն եւ անոր գործադրութեան միջոցները[13]։

Վերջապէս պիտի զբաղինք նաեւ Հայաստանով եւ Կապադովկիոյ մէկ մասով, եւ արդի Անդրկովկասի արեւմտեան մասովը, այսինքն է Կողքիս եւ Լազիկէ։ Առաջին երկու աշխարհաց համար կը շատանանք այն ափնավայրերով, որ սահմանակից են Վե-

---

[12] Բն. Պատմ. Ե, 81։

[13] Օրինակ՝ Կարինոսի առեն (Մաղաղաս, ԺԲ, 304—305, հրտ. Բոն). Գաղղոսի ժամանակ (Ամ. Մարկեղ. ԺԴ, 7, 5). եւ Յուլիանոս օրով (Յուլ. Թղթ. 27)։

ըին Եփրատի, իւր երկու ափանց վրայ ալ[14], եւ Գայլ-գետի ու Վոհի, որ անոր հիւսիսագոյն բազուկը կը յերկարաձգէ Կաւկասի ուղղութեամբ: Հոս չէր կրնար զանց առնուիլ Սեւ-Ծովու հարաւ-արեւելեան ծովափին զինուորական քարտէսը, վասն զի այս ծովափիս տիրապետութիւնն անհրաժեշտ էր անո՛ր, որ կ՚ուզէր Կողքիսի մէջ մնալ[15]:

Այս վերջին երկրիս ներքսակողման նկատմամբ Հռոմայեցւոց եւ Պարսից փառասիրական պահանջմունքներն ի վերջոյ բաւական ուշ երեւան եկած են: Երկու ծանր խնդիրներ խառնուած էին այն տեղ, Վրաստան՝ իր ամբողջութեամբ՝ կրնար նկատուիլ պատուար թումբ մը հիւսիսակողման բարբարոս ժողովուրդներու դէմ. զայն գրաւող պահողը դիւրաւ կրնար Դարիալի կարեւոր դրունքը կամ կրճանցքը փակել: Այս վերջին խնդիրը ծագած էր արդէն Ա դարէն ի վեր. եւ ժամանակի Հռոմայեցիք միջոցներ ձեռք առին այս դրունքը պահպանելու համար, կա՛մ առանձին կա՛մ

---

14 Այս է գրեթէ այն մասը, զոր Not. Dign. Or. XXXVIII կը հասկնայ Հայաստան անուան ներքեւ:

15 Սակայն պէտք է լաւ ուշադիր ըլլալ ուրիշ կողմանէ այն բազմաթիւ զօրագնդերուն, զորոնք Պոնտոսի մէջ ունէր Հայաստանի դուքսը, եւ դարձեալ ծովեզերեայ զանազան զօրակայաններուն՝ Տրապիզոն, Պիթիա, Հիւսիսպորտոյ (Not. Or. XXXVIII, 15—16, 32, 34):

հաստատակայ ծանրքով Պարթեւաց հետ[16]։ Երբ Բիւզանդիոն սովորեցաւ իր թշնամեաց ձեռքէն ազատիլ արծաթ փրկանք տալով, Կաւկասեան դրանց վրայ արթուն հսկելու նիւթական հոգը Թողուց Պարսկաստանի փոխարէն հատուցանելով դրամական նպաստ մը, զոր սակայն վճարելու մէջ ամէն անգամ ճշդապահ չէր։ Ասոր հետեւութիւնքն եղան բուռն բողոքներ։

Միւս կողմանէ Կողքիսի քրիստոնեայ դատնալովը, փոխուեցաւ այն հնաւուր ու աննախանձարեկ դերիշխանութեան նկարագիրը, զոր Հռոմայեցիք հոն կիրարկած էին։ Արեւմտեանք աւելի ստուարաթիւ մտան այդ հարուստ երկիրը, որ տակաւին շատ քիչ շահագործուած էր, հաստատեցին մենավաճառութիւններ, եւ բազմացուցին կեղեքումները, վերջապէս առաջ բերելով անով բնիկներու ապստամբութիւն մը, որոնք Սասանեանց օգնութեան դիմեցին։ Ասոնց ալ

---

[16] Սուետոնիոս, Ներոն 19, «իր պատրաստէր նաեւ արշաւանք մը դէպի Կասպից դռները, գինուորագրելով իտալացի ամէն մէկ վեց ոտքնոցներէն նոր լեգէոն մը»։ — Տակիտ., Պատմ. Ա, 6. «Բազմաթիւ զօրամասեր... զորոնք նոյն Ներոն յառաջուընէ ուղարկած էր Կասպից դռներ եւ այն պատերազմին, զոր յԱղուանս կը պատրաստէր»։ Քիչ մ՚ետքը գլխաւորաբար Պարթեւք այս կողմէն սպառնալիք կը զգային, եւ Վաղարշ Վեսպասիանոսէ օգնութիւն խնդրեց Ալանաց դէմ, որ սակայն մերժուեցաւ. ասկէ ծագեցաւ այն ցրտութիւնն այս երկու իշխանաց մէջ, որոնք յառաջ սերտագին յարաբերութեանց մէջ էին (Դիոն Կաս. 42, 11, 15. Սուետոնիոս, Դոմետ. 2)։

ուզածն արդէն միջամտելն էր, առաջնակարգ վաճառականական շահ մ'ունենալով դէպ ի Պոնտոս-Եւքսինոսի բաց ճամբայ մը ձեռք ձգելու. ի հարկաւորութեան կրնար Խոսրով անկէ տորմիղ մը ուղարկել Կ. Պոլսոյ վրայ: Ճիշդ խօսելով՝ ձեռնարկը յանդգնական էր. երկար հեռաւորութիւններ օթեւանէ օթեւան յարդարել պէտք էր՝ Իրանէ մեկնելով Կովկաս հասնելու համար, եւ լեռնոտ երկիրներու մէջէն, զորոնք կըտրել անցնիլ տաժանելի էր եւ ձմեռուան եղանակին նոյն իսկ անանցանելի: Ասոր հակառակ Բիւզանդացիք կրնային ընտրել իրենց ուզած ժամը, վասն զի ծովու ճամբան իրենց առջեւ միշտ բաց էր, եւ կրնային արագօրէն զօրավիգներ հասցնել Արեւմուտքէն, եթէ չէր բաւեր երկրին վրայ թափել այն պահակազօրքերը, որոնք շատ հեռու չէին եւ կայանաւորուած էին Վերին Եփրատի կողմերը: Ցուստինիանոս լիակատար անհոգութեանն արդիւնքն էր որ Լազիկէն կարճ ժամանակամիջոցի մը շրջանին Պարսից իշխանութեան տակ ինկաւ. բայց հոն պիտի չյաջողէին մնալ: Այս երկրիս մէջ սակաւաթիւ են բերդերը, եւ ընդհանրապէս դիւրին է անոնց դիրքը գտնել:

Զատ զատ պիտի ուսումնասիրենք արեւելեան սահմանագլխի պաշտպանողական դրութեան այս զանազան հատածները:

Սովորութիւն եղած է Վերին-կայսրու-

թեան այն դրութեան՝ որ հիմնուած էր յատուկ իմաստով պատուար կանգնելու վրայ, հակադրել Բիւզանդացւոց սովորութիւնն, որոնք կը նախընտրէին սահմանագլխոյ ետեւը բազմացնել ամրոցները։ Այս զանազանիչ խտրութիւնն իրաւացի է, եթէ չբռնազբօսուի եւ եթէ յարակից ունենայ կարեւոր լուսաբանութիւնները։

Նախ մինչեւ Գ դարու կէսը Հռոմայեցիք ընդհանրապէս նախայարձակ էին, եւ երկիւղ մը չունէին արշաւանքի մը ենթարկուելու։ Եւ միւս կողմանէ այսօր մէտ են խորհելու[17] թէ Ադրիանոսէն կամ Անտոնինոսէն ի վեր սովորական էր կրկնապատիկ Սահմանապարկէնը (limes) եւ ասի արդէն զմեզ կը մօտեցնէ Բիւզանդացւոց ոճին։ Բայց աստի այնպէս կ'երեւայ թէ Սահմանապարկէնի հին դրութիւնն երբեք չդադրեցաւ․ այն բացառութիւնը, զոր ինչպէս տեսանք, կը գործածեն անազանազոյն հեղինակները, Թէոփանէս եւ Մաղաղաս, այս իմաստով առնելու մեծապէս կը նպաստեն։ Արեւելքի համար չունինք որեւէ կերպական վկայութիւններ, որ համեմատելի ըլլայ Յուստինիանոս՝ Ափրիկէի Սահմանորդաց (limitanei) նկատմամբ ըրած ճշգրիտ տրամադրութեանց[18]։ Բայց այս կրնայ յառաջ եկած

---

[17] Հմմ. Kornemann, ի „Klio", անդ, էջ 105։

[18] Diehl, L'Afrique Byzantine, Paris, 1896, p. 126—127, 133—137։

ըլլալ, այն պարագայէն, որ Ափրիկէն Զ դա-րուն կը թօթափէր իրմէ օտար տիրապե-տութիւնը, մինչդեռ Արեւելքի մէջ կայս-րութեան տիրապետութիւնը երբեք ընդհա-տած չէր. հոն կը շարունակուէին գործա-դրուիլ հին կանոնադրութիւնները. եւ քանի որ օրինաց եղծում կամ խափանում եղած չէր՝ հարկ չկար զանոնք կրկին հաստա-տելու:

Իսկ Սահմանապարկէնէն աղբին եղած ամրութեանց մասին առաջին ժամանակա-միջոցին մէջ՝ անխոհեմութիւն կ՚ըլլար զա-նոնք ուրանալ, անո՛ր համար որ վկայութիւն-ներ չկան անոնց մասին: Ցեռնագոյն վերա-նորոգութիւնք կերպարանափոխ կը քողար-կեն նախնական վիճակը. Նոյն իսկ Արաբիոյ մէջ Տրայանոսի ստոյգ եւ երաշխաւորեալ գործը կը ծածկուի Դիոկղետիանոս ժամա-նակի վերայարդարութեանց ներքեւ, որմէ են այս Սահմանի կառուցմանց մեծագոյն մասը[19]:

Արդ այս խորհրդածութիւնները կ՚ար-դարացնեն զիս՝ որ երկրապահ զօրաբնա-կութեան ուսումնասիրութեանս մէջ ընդ-գրկած եմ այս ոճը՝ նկարագրել ընդհա-նուրը ներփակելով միահամուռ եօթն դա-րերն ալ: Եթէ ուզէինք զանազանել բազմա-թիւ շրջաններ, վտանգի մէջ կ՚իյնայինք կըրկ-

---

19 Kornemann, անդ, էջ 113:

նութիւններ ընելու ստիպուիլ, օրինակի համար տեղերու բնական դիրք վերաբերեալ իրերու մէջ. իսկ հաստատում մը, որ ի հարկէ կամայական է, պիտի քաղարկէր պաշտպանողական ճգանց միայար անընդհատութիւնը, զոր ընդհակառակն կ'ուզեմ բացայայտ երեւան հանել:

Բայց որպէս զի չափով մը ժամանակագրական կարգն ալ կարենանք պահել, կը սկսինք Եփրատայ ափունքներէն, որ ի վերջոյ այս աշխարհին ամենահին սահմանագլուխն եղած է. յետոյ կ'անցնինք Միջագետաց՝ ուր նոր Սահմանապարկէն մը կընար հաստատուիլ ամէնէն ուշ Սեպտիմոս Սեւերոսի ժամանակէն ի վեր, եւ այն միջնակաց տեղերուն, որոնք անոր հետ անձուկ կերպով կապուած էին։ Անապատային Եփրատէն մինչեւ միջին Ասորիք եղած Սահմանապարկէնի ուսումնասիրութեան հետ տրամաբանօրէն համընթանալու է նաեւ յետսակողման աշխարհին քննութիւնը: Ասկէ կ'անցնինք հիւսիսային երկրաբաժինը, ուր պայքարներն աւելի անաղան հասան իրենց սաստկութեան բարձրակէտին:

Իսկ անուանացանկի կողմանէ շատ դժուարին է ընտրել յօրինուածական կարգ մը կամ սկզբունք մը, որ զերծ ըլլայ ամէն քննադատութենէ: Գաղափարական կանոնը պիտի ըլլայ, զանոնք նկարագրելու եւ ըստ կարելւոյն նոյնացնելու համար, առնուլ

միայն այն ամէն տեղերը, որոնք զինուորական դեր կամ նպատակ մ'ունեցած են, ջանալով նշանակել ժամանակները, երբ անոնք ստեղծուեցան կամ ի վիճակի դրուեցան:

Արդ չերեւա՞ր արդէն առաջին հայեցուածքին թէ գոնէ այս վերջին պահանջը կարելի պիտի ըլլայ գոհացնել: Մեր յիշատակարանները բազմաթիւ են եւ ըստ բաղձանաց աստիճանաբար յառաջ կը բերուին։ Եթէ նախ նկատի չառնունք այն կցկցեալ տեղեկութիւնները, որ պատմագրաց համառումարին մէջ կը գտնուին, ունինք սակայն Ստրաբոն, Ա դարու սկզբնաւորութեան, եւ Պլինիոս՝ նոյն դարու կիսուն համար[20]: — Պտղոմէոս եւ աւելի ամփոփ սահմանի մէջ՝ Արիանոս, որոնք գրեցին Ադրիանոսի ատեն. — Անտոնինեայ Ուղեգրութիւնը, որ իւր ներկայ ձեւին մէջ խառնուրդ մըն է՝ հաւաստեաց Կարակալլայի ժամանակին եւ վերայարդարման Դիոկղետիանոսէ ետքը. — Յետոյ Ամմիանոս եւ Պեւտինգերեան Տախտակը (Դ դար.) — «Տեղեկ. Աստիճանաց». Մատեանը (Ե դարու սկիզբը). — Նոյն իսկ Ստեփանոս Բիւզանդացի, քիչ մ'անագանագոյն. — Հերոկղէսի Ուղեկցութիւնը (Զ դարու սկիզբը). — Պրոկոպիոս, քիչ

---

[20] Տես Quellen und Forschungen zur alten Geschichte und Geographie, hsg. v. W. Sieglin, Heft 11: A l f. K l o t z, Questiones Plinianae geographicae, Berlin 1906. զմեզ շահագրգռող երկիրներու մասին՝ անդ, էջ 159 եւն, 178 եւն, 182 եւն:

մ՛եռքը, եւ իր ժամանակակիցներն ու անմիջական շարունակողները — Գէորգ Կիպրացի (Նոյն դարու վերջը[21]) — եւ վերջապէս Ռաւեննայի անանուն աշխարհագիրը, որ Թ դարուն կը թարգմանէր Է դարու յիշատակարան մը։ Եթէ ասոնց վրայ աւելցնենք ուղեւորաց դիտողութիւնները, — աւերակաց ուսումնասիրութիւնը, — եւ այն շօշափելի կրողութիւնը թէ աշխարհագրական հին անունները տեւական կը մնան, այն ատեն կ՚ունենանք այն՝ այլուստ ճիշդ տպաւորութիւնը թէ մեր ունեցած տեղեկութիւնը շատ ճոխ է[22]։

---

[21] Բայց կը գրէր իբր 605ին, ըստ հմտալից հրատարակչին՝ Հ. Գելցէր, (Լայպցիկ 1890)։

[22] Կանխաւ զեկուցած եմ թէ երկասիրութենէս դուրս կը թողում Արաբիան եւ Պաղեստինը։ Առաջնոյն համար ընթերցողը կ՚ուղարկեմ պարզապէս Brünnowի „Provincia Arabia" երկին. եւ A. Musilի (Sitzb. d. Wiener Akad., phil. Kl. CXLIV, 1902, 7) եւ S. Vailhéի Les garnisons romaines de la province d'Arabie, ի „Echos d'Orient", II, 1898—1899, p. 89—95։ Հմմտ. դարձեալ Musil, Arabia Petrarca, I. Moab, Topographischer Reisebericht. Wien 1907։ — Մադաբայի միւսէոնը (Զ դար) գլխաւորաբար Պաղեստինի կը վերաբերի. Հմմտ. Jacoby, Das Mosaik von Madaba, Leipzig 1902. Kubitschek, ի Mitth. der Geogr. Gesellsch. zu Wien, XLIII, 1900, p. 335—380 (լիակատար մատենագրութիւն). եւ A. Schulten (ի Abhandl. der kgl. Gesellsch. der Wiss. zu Göttingen, phil.-hist. Kl. N. F. IV, 1900, 2), որ զայն համեմատած է Եւսեբեայ Անուանացուցին (Onomasticon) հետ. P. Thomson, (Palestina nach dem Onomastikon des Eusebius, ի Zeitschrift d. d. Paläst.-Ver., XXVI, 1903, p. 97—141, 145—188) այս վերջինիս մէջ կը կարծէ գտած

Դժբախտաբար այս ճախութեան մէջ կը հեղձնունք, եւ շատ ալ կղկղանք կայ հոն։ Ապշեցուցիչ բան մըն է որ քաղաքներու անունները դարեր անցած են, ուրիշ լեզուի մը մէջ իրենց դիմագիծը պահած, եւ սակայն մէկ յիշատակարանէն մինչեւ միւսը, քանի մը հարիւր տարուան անջրպետի մէջ, համանունները մեծամասնութիւն չե՛ն կազմեր։ Այո, Պտղոմիոսէն մինչեւ Պեւտինգերեան Տախտակը, ասկէ՝ մինչեւ «Տեղեկ. Աստիճանաց» եւ այս «Տեղեկութենէն» մինչեւ Հռաւէննայի աշխարհագիրը, ամէնէն աւելի աչքի զարնող պարագան է՝ համաձայնութեան պակասը[23]։ Եւ նոյն իսկ այն դիպաց

ըլլա՛լ պաշտօնական ուղեցոյցի մը հետքերը. բայց Kubitschek (ի Jahreshefte des Österr. Institut, VIII, 1905, p. 119—127) ասոր դէմ ծանր վերապահութիւններ ըրած է։ Վերջապէս Բերսաբէի ծայրատեալ հրամանագիրը առաջնակարգ կարեւորութիւն ունի տեղագրական, որով վերլուծած է զայն Clermont-Ganneau (ի Rev. bibliq. N. S. III, 1096, p. 412—432) առանձնապէս Գալիլիայի համար՝ Յովսեպոսի համեմատ, հմմտ. W. Oehler ի Zeitschrift d. d. Paläst.-Ver. XXVIII, 1905, p. 1—74։ Հաւրանի մէկ մեծ մասը՝ մանաւանդ Գ. դարէն յառաջ Արաբիոյ նահանգէն դուրս էր. սակայն ասոր վրայ ալ երկար պիտի չյամենամ, դրից նմանութեան պատճառաւ եւ որպէս զի չկրկնեմ այն ամէնը, զոր կրնանք գտնել Rindfleisch (ի Zeitschr. d. d. Paläst.-Ver. XXI, 1898, p. 1—46) համեմատական երկասիրութեան մէջ։

[23] Ապահովապէս շատ անգամ բազմակերպ ձեւեր ալ միեւնոյն տեղը կը նշանակեն. որով շատ արտաքնայարդար կ'ըլլա՛յ յաջորդ պատճառաբանութիւնը, որ յաճախ յառաջ կը բերուի, այսինքն՝ Ուղեցոյցներու նշանակած հեռաւորութեան նայելով

մէջ՝ ուր անտարակուսելի նոյնացմանց կը յանգինք, այս արդիւնքին կը հասնինք գըլխաւորաբար անո՛վ որ ձեռագրաց պէսպէս ընթերցուածոց մէջէն կ՚ընտրենք զանոնք՝ որոնք աւելի լաւագոյն կը յարմարին մերձեցուցմանց[24]:

Միւս կողմանէ ի՞նչպէս զանազանելու է հասարակ քաղաքներն ու ամրացեալ տեղերը: Հեղինակաց գործածած լեզուն աստ ամենեւին չի նպաստեր. իւրաքանչիւր մատենագիր իւր նախընտրած բանաձեւն ունի: Պլինիոսի քով յորդառատ է Oppidum (քաղաք, բայց նաեւ ամրացեալ). Պտղոմէոս, որ ուրիշ աշխարհներու համար կը գործածէ՝ շատ ցանցառօրէն՝ κώμη կամ χωρίον (գիւղ, աւան), այստեղ խնդրոյ նիւթ եղող երկիրներու մէջ միայն πόλις (քաղաք) կը ճանչնայ[25]:

---

այս կամ այն նոր գիւղը կ՚երեւայ թէ կը համապատասխանէ այս կամ այն գիւղին. բայց այն տեղ արդէն զետեղեցինք ուրիշ բերդ մը (օրինակի համար՝ անուանակցութենէն առնուած պատճառներով). ուստի անկարելի է: — Այսօր ալ յիշեալ տեղերուն շատերը բազմաթիւ անուններ ունին. այս ստուգեցի ուղեւորութեանս ժամանակ. արդ ինչո՞ւ այդպէս եղած ըլլայ հնութեան մէջ ալ:

24 Ինքնին կը հասկցուի թէ գործածած եմ միայն յոյն կամ լատին յիշատակարանները: Հիւբշման պահած ըլլալով հայկական ձեւերը (Indogerm. Forschungen, XVI, 1904, p. 197—490) չկրցայ անոր հմտալից գործէն օգտուիլ այնչափ, որչափ կը բաղձայի:

25 Նոյնը կը գործածուի նաեւ փոքրիկ ամրոցիկի մը համար կարաւանուղւոյ մը եզերքը: Ասոր հակառակ հմմտ. Վարք Սիմէոնի Սիւնակեցի, 20՝ «Մուրայի մէջ գինուոր մը կար. իսկ այն տեղը քա-

«Տեղեկ. Ասորե. գրոց մէջ միակ յորջորջանքն է castellum (դղեակ), եւ այս կը գործածուի մեծ քաղաքաց համար ալ՝ ինչպէս Տրապիզոն, Ամիդ, Պաղմիրա կամ Երուսաղէմ: Ըստ ինքեան այս ամէնը մեծ նշանակութիւն մը չունի. վասն զի կրնանք առանց երկիւղի հետեւեալ կանոնը հաստատել, թէ՝ Պարսկական սահմանագլխին մերձակայքը՝ գէթ Զ. դարէն սկսեալ՝ ամէն բնակավայր բերդաստեղի մըն է կամ իբր այդպիսի կը նկատուի[26]: Ընդհանուր կարծիքն եղած էր թէ ամէն բնակութեան տեղ պէտք է որ պարսպապատ ըլլայ: Մինչեւ անգամ վանք մը կ՚ամրանար պարսպով[27]: Գերեզման մ՚իսկ պահակերաց դիտարանի կամ ազդանշան աշտարակի ձեւն ունէր[27] եւ թեր-

---

դաքիկ մըն է Եփրատաբնակացն: Սուրա՝ փոքրիկ քաղա՛ք մը. անձամբ տեսած ըլլալով կը հաստատեմ թէ այնպէս չէ:

[26] Այս պատճառաւ ալ օգտուած են նաեւ պարզ քաղաքական յիշատակարաններէ, ինչպէս է Հերոկղէսի ցանկը, կամ զուտ եկեղեցական, ինչպէս է Գէորգ Կիպրացւոյն անուանացանկը (որ առ հասարակ կը գործածէ κάστρον (բերդ, ամուր բուռը) եւ Տեղեկութիւնք Աթոռոց Եպիսկոպոսաց:

[27] Օրինակի համար՝ Deir-el-Benatի բարձր աշտարակը՝ որուն երկու լուսանկարները հրատարակուած են ի Tour du Monde, 25 Մարտ 1905, էջ 133 եւ 144: Համայի եւ Եփրատի միջեւ Օպպէնհայմ (Oppenheim, ի Zeitschr. für Erdkunde, XXXVI, p. 76) այցելած է երկրագործերու հին գիւղերը, որոնց ամէնքն ալ չորեքկուսի աշտարակ մ՚ունին բազմաթիւ յարկերով, միակ դուռ մը, որ վերջին ապաստանարանն էր դժուարին վայրկեաններուն մէջ: Huntington (ի Zeitschr. f. Ethnolog. XXXIII,

եւս երկրորդաբար նաեւ անոր օգտակարութիւնը։ Հաւրանի մէջ շինուած մը չկայ, մինչեւ անգամ աղաւնոցները, որ անոր նմանութիւն մ՚առած չըլլան։ Եւ այնպէս է նոյն խուլ միայնակեցի մը մենարանը, ինչպէս Ս. Սաբայի ճգնարանը[28]. կրնայինք դեռ շատ պարագաներ յիշել[29]։

Սակայն ասիկա տեսական ըմբռնում մըն է։ Պայծառ բան է թէ բնակելի շատ տեղեր ալ մնացած էին առանց կարեւոր պատսպարանի մը եւ թշնամեայն հարուածոց դիմադրաւելու հարկ մը չունէին, շատ շատ երկիւղ ունէին ասպատակաւորներու անցնելէն։ Պատերազմներու պատմութիւնը գլխաւորաբար կը ցուցնէ մեզի ճշմարիտ ռազմագիտական կէտերը գտնելու արահետը, եւ նոյնպէս Պրոկոպեայ «Վասն Շինութեանց»ը, որ-

---

1901, p. 196, fig. 21) տեսած է Մուսէր-Դաղ լերան վրայ՝ Մալաթիայի դաշտին առջեւ, Եփրատէն 800 մետր բարձրութեան վրայ՝ հայկական աւերակ եկեղեցի մը, որ ճշմարիտ բերդ մըն է, չորս անկիւնները մէկ մէկ աշտարակով։

[28] Հմմտ. այն բուրգը (πύργος)՝ զոր կանգնած է հնօրեայ զինուոր մը 350ին (Վադդինկթըն, 2053)։

[29] Վարք Ս. Սաբայ, 82 (Հմմտ. Cotelier, անդ, էջ 358)։ «ի բրգան Ս. Հօրն մերոյ Սաբայի յանձաւին», ուր ջրամբար մը շինուեցաւ, որմէ գաղտնի անցքով մը յիշեալ բուրգը կ՚ելլեցուէր։ Ցաւել՝ 38 (անդ, էջ 278) «բոլորանդակ արեւելեան անապատաց (միայնարանաց) մէջ ամենաբարձր բարձունքի վրայ երանելի Եւդոկիայէ շինուած բուրգը»․ ուր յաջորդաբար բազմաթիւ վանականներ բնակեցան։

չափ ալ աւելազանցութեան միտութիւն մը ճանչցուի կամ կասկածուի:

Համառօտիւ կ'ամփոփեմ այն միջոցները, որոնք կը նպաստեն տեղերը նոյնացնելու, այսինքն՝ հողի մակերեսի վրայ մնացած աւերակաց հետազօտութիւնը, հեղինակաց նկարագրութիւնքն, ուղեցոյցներու նշանակած հեռաւորութիւնները, եւ վերջապէս հնարք մը, որ այժմ շատ սիրուած է՝ տեղանունութիւնը:

Շատ դիպաց մէջ աւերակները կը նպաստեն միայն ենթադրութիւնները կամ կարծիքներն ամրապնդելու. շատ յաճախ կը սխալուինք ցաւիլ որ հնութեան հետքերը բացարձակապէս եղծուած են. եւ դարձեալ բազմաթիւ տեղադիրներ՝ կամաւ թէ ակամայ, չափազանց հապճեպ մ'ունեցած են զանոնք ծանօթագրելու: Միօրինակ ընդարձակածաւալ հարթավայրերու մէջ, ուր բնակչութիւնն անօսր է, շինութեան ատաղձները միայն միջակ արժէք մ'ունէին, հետեւաբար շինութեան կերպն ալ շատ վարկպարագի էր, եւ չենք կրնար հնութեան թուական մ'որոշել կղզիացեալ պատի կտորի մը, աւելի եւս, քարակոյտ դէզի մը[30]: Սակայն

[30] Յիշատակարանաց վրայ շատ քիչ անգամ արձանագրութիւններ կան, ի բաց առեալ միջին Ասորիքի մատուռները. շատ քիչ են նաեւ ձեռնարկուներու նշանագրոշմներ: Տակաւին կանգուն մնացած շինուածոց համար՝ Conder (Palestine Explor. Fund, 1897, p. 145) փորձած է այլեւայլ ժամանակաշրջաններու

եւ այնպէս ամենադոյզն փլատակակոյտն անգամ օգտակար է նշանակել, երբ վարելահողի կամ բուսահողի մեծ տարածութեամբ երեսի մը վրայ կ'երեւայ, ուր որեւէ խճաքար չի ցցուիր, եւ հեռու է ամէն քարահատքէ: Այն ատեն կրնայ ըսուիլ թէ անհոգ մահմետականք զանոնք ուրիշ տեղէ մը հոն բերած չեն:

Գաւառագիրները թէ՛ նկարագրութիւններ եւ թէ՛ անուանակարգութիւններ միանգայն կու տան. այս վերջինները կը դիւրացնեն աշխարհագրական ծանօթութիւնները վերստուգելու մեկնաբանելու գործը. ուրիշներն իրենց ճշգրտութեամբը, որ յաճախ արդիւնք է տեղերն անձամբ այցելած ըլլալուն, մեր ամենակարեւոր եւ ապահովագոյն աղբիւրը կը կազմեն, առանցմէ պիտի օգտուինք ամենամեծ չափով:

Ասոր հակառակ հեռաւորութեան ան-

---

ինքնատիպ նկարագիրները համառօտագծել. կը դանազանէ որմնագրութեան սա ոճերը՝ հրէական (հին). հերովդիական, հռոմէական, բիւզանդական, արաբական եւ Խաչակրաց: Իր դիտողութիւնները թէեւ Պաղեստինի մէջ կատարուած են, կրնան հաւասարապէս գործադրուիլ նաեւ մերձակայ երկիրներու համար. բայց այն ատեն շատ աւելի բացառիկ նմոյշներու վրայ յեցած պիտի ստիպուինք գործել, եւ դարձեալ իր դրութիւնը՝ որ ի հարկէ անկայուն է՝ ինչպէս է նաեւ իրականութիւնը, դիւրաւ կրնայ քննադատուիլ մանրամասնութեանց մէջ: Ճշմարիտ է թէ ժամանակի ընթացքին որմակարգածն երթալով գծուծ կ'ըլլայ. կամարները կը յաճախեն, նեղ են, բայց ասոնք կարելի չէ դասաւորել, բայց միայն երկարատեւ ժամանակաշրջաններով:

Ջըրպետաց մասին եղած տեղեկութիւնները բոլորովին արտասովոր ծանրատաղտուկ կընճիռներ են։ Շատ յաճախ բոլորովին անկարելի փորձ մըն է միեւնոյն ճամբու մասին «Ուղեգրութեանց» տուած տեղեկութիւնքն իրարու համեմատել, երբ անոնց մէջ յիշուած անունները իրարու չեն նմանիր մէկ յիշատակարանէ մինչեւ միւսը։ Եւ երբ համեմատութիւնը ներելի է, այն ատեն թուերու տարապայման անհամաձայնութիւններ կը գտնենք։ Նման հաւաստիքներ ալ հազիւ մերձաւորագոյն հիմ մը կ'ընծայեն. երբեք պէտք չէ այս մասին տուքին կապուիլ եւ մեծապէս անվստահ ըլլալու է կարգ անջրպետներու համար[31]։ Պտղոմէոսի համար պատ-

[31] Գիտնականք աշխատած են այն հակասութեանց եւ անոնց պատճառներու խելամուտ ըլլալու. եւ այս կը յանգի այն խնդրոյն թէ ի՞նչ են իրականութեան մէջ այս ուղեգրութիւնները։ Վ. Կուբիչեկի կարծիքով (W. Kubitschek, Jahreshefte des Österr. Instit. V, 1902, p. 20—96) ասոնք համառօտուած ընդօրինակութիւններ են աւելի մանրամասն աշխարհացոյց քարտէսի մը. ամէն ընդօրինակող ալ միեւնոյն զեղչումները չէ ըրած, եւ սխալներ գործած է՝ բազմաթիւ անջրպետներ խծկելով, ըրած է կրկնութիւններ ալ՝ վախնալով թէ մոռցուած ըլլայ անուն մը զոր պահել կ'ուզէր։ Գոնէ բուն սկզբնագիրը ճըշմարիտ ուղեցոյց քարտէս մ'եղած ըլլայ։ Բայց այս կարծիքը չունի E. Schweder, (Über Ursprung und Bestimmung d. sogen. Straßennetzes des Peuting. Tafel, Philologus LXII, 1903, p. 357—387). իր կարծիքով յիշատակարանիս նախագաղափարին գըլխաւոր առարկան ո՛չ թէ ուղղութիւններն եղած ըլլան, այլ հեռաւորութեան անջրպետները. գծերը ստորադասուած են թուերուն եւ նշանակուած են միայն արգիլելու համար, որ իւրաքանչիւր անջրպետի՝ հա-

շաճ է հակառակ եղանակ մ՚ընդունիլ. վասն զի անոր աստեղագիտական ծանօթութիւնքն, որչափ ալ խեղաթիւրուած աղաւաղուած են անընդհատ ընթացքով կը պահեն միշտ յարաբերական արժէք մը, երբ երկու դրացի տեղերու վրայ է խնդիրը:

Կը մնայ վերջապէս այսօրուան աշխարհագրական անուններու մէջ՝ փնտռել նախկին անուան մը տեւական մնացած կամ այլայլած ըլլալը: Այս կէտը անտես չէ եղած. եւ այլեւայլ երկիրներու մէջ, յատկապէս Կողքիս եւ Վրաստան, կան տեղւոյ անուններ՝ որոնք դրեթէ տառացի մնացած են մինչեւ այսօր: Ուստի այս միջոցն ալ շատ

---

շուած մղոններով (հազարաքայլ), երկու ծայրի սահմանակիցներն իրարու չխառնակին: — Այս տեսութիւնը երբեք ընդունելութիւն չգտաւ. իրօք ալ մեծ նշանակութիւն մը չունի այն կէտը թէ հինք, երբ կը յիշեն իրենց ձեռքն եղած հռոմէական քարտէսներ, եւ անոնց պարունակութիւնը, կը խօսին ո՛չ թէ ուղիներու մասին, այլ քաղաքաց եւ տեղեաց դրից (positiones urbium, locorum) կամ նիստի (situs) միջոցի կամ տարածութեան (spatia) եւ անջրպետի (intervalla) մասին. չէին խորհիր այսպիսի զանազանութիւն մ՚ընել: Այսու հանդերձ ի՞նչ օգուտ կար հեռաւորութիւն մը նշանակելէն, եթէ նոյն անջրպետը կտրելու անցնելու ճամբայ մը գոյութիւն չունէր, առանց ճամբան երկարելու կամ մօտեցնելու: Եւ վերջապէս այս ամէնը չի մեկներ թէ ինչպէս «Տեղեկ. Աստիճ.» գիրքը, որ քարտէզ մը չէ բնաւ, կը նշանակէ տեղերու անուններ՝ որոնք չեն գտնուիր ուրիշ որեւէ աղբիւրի մը մէջ, որ նոյն իսկ բազմաթիւ ձեռագիրներով ծանօթ ըլլայ: Այս այն գաղտնիքներէն է, որուն թերեւս երբեք վերահասու պիտի չըլլանք: Կ՚երեւայ թէ ամէնէն առաջ սրբագրելու է խմբագիրներուն եւ օրինակողներուն անյաջողակութիւնը:

օրինաւոր է, միայն թէ չափազանցութեան տարուած է. մենք տեղանունութիւնը խոհեմաբար եւ չափաւորութեամբ պիտի գործածենք[32]:

---

32 Այս վերապահութիւնն արդարացուած ժամանակ աչքի առջեւ ունիմ գլխաւորաբար Պտղոմեայ այն շատ հմտալից հրատարակութիւնը՝ զոր ձեռնարկած է K. Müller եւ շարունակած է C. T. Fischer նոյն սկզբանց համեմատ (Փարիզ, գրվճռ. Didot) արեւելքի համար՝ I. 2 (1901) ուր այնչափ բնագիրներ ի մի հաւաքուած են որ գրեթէ խառն կը մնայ Böckingի հրատարակութիւնը Notitia գրոց: Շատ ցանցառ են այն անունները՝ զորոնք հրատարակիչք յաջողած չըլլան նոյնացնել այս կամ այն կերպով: Գիտնական նաւապ լիակատար պաշարով եւ նոյն ոճը գործածելով նոյնչափ մեծ հանճարեղութեամբ՝ ջանասէր խուզարկուները ծանր վրիպանաց վտանգի մը պիտի ենթարկուէին: Արաբերէն լեզուն ճոխ է բառերով, բայց շատ ճոխ չէ ձեւերով եւ հնչիւններով, մանաւանդ երբ անտես առնուին արտասանութեան այն մանրանրբութիւնները՝ զորոնք լաւ չեն կրնար բացատրել արեւմտեան տառադարձութիւնները: Այն ատեն ձեռագրաց պէսպէս ընթերցուածներու մէջ շատ քառ կամի ընտրութիւն մ'ընելով, եւ ենթադրելով թէ գրափոխութիւն մը տեղի ունեցած ըլլայ, եւ համարելով թէ ուղեցոյցներուն նշանակած անջրպետներու մէջ սխալ սպրդած ըլլայ, — նաեւ ուր ստուգիւ սխալ կայ, — այս կերպով շատ մեծ հաւանականութիւն կայ քիչ շատ գտնելու մեր բաղձացած ամէն նմանաձայնութիւնը, եւ այս այնչափ աւելի որ բեդուինները յաճախ միեւնոյն շատ պարզուած տառացուածները կը գործածեն նշանակելու համար թէ՛ քարակոյտ մը եւ թէ՛ ջրավայր մը, որոնք իրարմէ շատ հեռու բաներ են: — Արդէն «Տեղեկ.» գրոց մէջ միեւնոյն անունները դոյզն փոփոխութեամբ կամ բոլորովին ալ նոյն՝ կը հանդիպին շատ մը նահանգներու մէջ. այսպէս՝ Կալամոնա՝ Փիւնիկէի (XXXII, 7 եւ 22) եւ Արաբիոյ մէջ (XXXVII, 25). — Ասորիքի մէջ՝ Անաթա (XXXIII, 20) կամ Արաթա (անդ, 11):

Հռոմէական եւ բիւզանդական քարակ-ոյն այս վերայարդարման մէջ՝ Եփրատը չընդառաջող երկիրներու համար, ուրիշ չկարգալով վերջապէս որեւէ անփոփոխելի կանոնի մը, առաւելապէս գրաւելով այն տեղերով, որոնք պատերազմական իրադարձութեանց ասպարէզ կամ վկայ եղան եւ դարձեալ այն տեղերով, որոնց «Տեղեկ. Աստիճանաց» գիրքը զօրանիստներ կ'ընծայէ: Միւս կողմանէ աւելի խնամք պիտի տանիմ վերակազմելու խոր անապատի մէջ եղած պահականոցները, — վասն զի անոնք պէտք է իբր հանգրուան ծառայէին անցափոխուող զօրագունդերու, — եւ նոյնպէս այն տեղերն, ուր կարեւորագոյն ճամբաներու երկայնքն գծուեցուած էին եւ որոնք կ'ընդարէր անտարակոյս նաեւ վաճառականութեան ալ[33]: Այսպիսով կը յուսամ թէ գրութեանս գլխաւոր նիւթէն չեմ շեղիր:

Վերջապէս խօսք մ'ալ տալի աղբիւրներու մասին: Անոնք այնչափ ալ բազմաթիւ չեն որչափ բաղձալի էր:

Կենդրոնական Ասորիքի աւերակներն ունեցած են այնպիսի հետազօտիչներ՝ ինչպէս են de Sauley, Waddington եւ դերակոմս de Vogué, որոնց տեղեկա-

[33] Սակայն յընթացս ուսումնասիրութեանս պիտի չխորշիմ այլեւայլ երկրագրական՝ նորագոյն անուանակոչութիւններէն փոխ առնուած՝ համեմատութիւններ ընելու, երբ անոնք նախորդներու աչքէն վրիպած են:

գրութիւնները քաղաքանօթ են։ Հնագոյն խուզարկութեանց արդիւնքները խղճմտօրէն յիշատակած ու յառաջ բերած է Ռիտտէր[34]. զատոնք մի առ մի չեմ յիշեր։ Հիւսիսային Ասորիքի եւ Միջագետաց համար դժբախտաբար ստիպուած ենք շատանալ քիչ բանով. այսինքն Ainsworthի[35] վայրանցուկ այցելութիւնքն, որոնք այժմ արդէն հեռաւոր անցեալի կը պատկանին. Czernik[36] ճարտարագէտին ուղւոյ ծանօթագրութիւնները, եւ Ed. Sachau[37] արեւելագէտին ուղեգրու-

---

[34] Ռիտտէր, Աշխ. (Բ. տպ.) Բերլին. Արեւելքի համար՝ Հտ. Ժ եւ ԺԱ (1843—1844)։ Եփրատ եւ Տիգրիս. — Հտ. ԺԴ (1848)՝ Սինայ, — Հտ. ԺԶ (1853) Հրէաստան, Սամարիա, Գալիլէա. — Հտ. ԺԵ (1850—1851) եւ ԺԷ (1854—1855)՝ Պաղեստին եւ Ասորիք։

[35] Ainsworth, Travels and Researches in Asia Minor, Mesopotamia, Chaldea and Armenia, London, 1842։ Էյնսուորթ որ նախ աշխատակից էր „Survey"ի յետոյ հրատարակած է՝ A personal Narrative of the Euphrate Expedition, London, 1885 (Համառօտ եւ հարեւանցի (առանց պատկերի)։ Survey թերթն ալ շատ քիչ յարաբերութիւններ ունէր հնախօսութեան հետ։

[36] Ingenieur Jos. Czernik's technische Studien-Expedition durch die Gebiete des Euphrat u. Tigris, nebst Ein- u. Ausgangs-Routen durch Nord-Syrien, nach den Tagebüchern, topographischen Aufnahmen und mündlichen Mitteilungen des Expeditionsleiters, bearbeitet u. hersg. von Armand Freiherrn von Schweiger-Lerchenfeld, (Petermann's Mitth., Ergänzungshefte, 44—45, Bd. X.) 1875—1876)։

[37] Ed. Sachau, Reise in Syrien u. Mesopotamien, Leipzig 1883. Իր ամենէն նորագոյն գործը՝ Am Euphrat u. Tigris, Leipzig 1900, գլխաւորաբար հարաւային Ասորիքի կը վերաբերի.

թիւնքն։ Նոյնպէս գլխաւորաբար արաբական տեսակէտէն ընտրած է Մարտին Հարտմանն[38]։ Անկէ ետքը կատարուած կարեւորագոյն հետազօտութիւնքն են Բարոն Մաքս[39]․ Օպպէնհայմի խուզարկութիւնքն[40]։ Ամերիկեան հետախուզական արշաւանաց անդամները շըրջագայած են Անտիոքի լայնութեան սահմանէն մինչեւ Հաւրան, եւ անկէ բերած են եկեղեցիներու, տներու եւ գերեզմաններու լուսանկարներ․ իմ կարծիքովս այս երկրիս չինուածոց «քաղաքային» (ոչ-զինուորական) նկարագիրը չափազանց ստուգապացուցուած են։ Այս երկիրներուս բաւական մէկ մասին նկատմամբ տեղագրական հաւաստիքները

---

[38] Martin Hartmann, Beiträge zur Kenntnis der Syrischen Steppe. (Zeitschr. d. d. Paläst.-Ver. XXII, 1899, p. 127—149, 153—177. XXIII, 1901 p. 1—77, քարտէսով, 97—158) մեր տեսակէտին աւելի օգտակար է առաջինին յօդուածը։ — Յաւել՝ Dr. Bernhardt Moritz: Zur antiken Topographie der Palmyrene (Abh. kgl. Akad. d. Wiss. zu Berlin, 1889, I. 40 pp. եւ 2 քարտէս)։

[39] Max v. Oppenheim, „Petermann's Mitth." XLII, 1896, p. 49 ff., 73 ff. (քարտէսով՝ 2.) եւ Vom Mittelmeer zum persischen Golf durch Hauran, die syrische Wüste u. Mesopotamien, Berlin 1899։ Յաւել՝ Zeitschr. der Gesellsch. f. Erdkunde, Berlin XXXVI, 1901, p. 69—98 եւ Byz. Zeitschr. XIV, 1905, p. 1—72։

[40] Howard Crosby Butler, Part II of the publications of an American archaelogical expedition to Syria in 1899—1900 (under the patronage of Everit Macy, Clarence M. Hyde, B. Talbot, B. Hyde and I. N. Phelps Stokes). Architecture and other Arts. New York 1904։ Առանց քարտէսի։

ամփոփուած ու քննած է գզօնութեամբ Կուրտ Ռեգլինգ[41], իւր հետեւեալ երկասիրութեան մէջ «Նպաստք պատմական աշխարհագրութեան Միջագետաց զուգահեռագծին[42]»:

Հայաստանի մէջ կատարուած ուղեւորութիւնք, հին տեղագրութեան վերաբերմամբ, միայն աննշան արդիւնքներ տուած են, թերեւս վասն զի հողի երեսին վրայ տեսնելու եւ ծանօթանալու բան մը չէր մնացած[43]: Գերմանական խուզարկու արշաւանքը (Lehmann եւ Belck), որ մանրամասնութեանց լուծումներ պիտի տայ, գլխաւորաբար բանասիրական գիտութիւններ ունէր. ուրիշ մը[44] տրդագրական նպատակ մը: Եփրատի կապադովկեան սահմանագլուխն ուսումնասիրած է Վ. Վ. Եորկ[45]:

Իսկ Կուկասեան աշխարհաբաժինն ար-

---

41 Kurt Regling, Beiträge zur alten Geschichte, I, 1902, p. 443—476. Zur historischen Geographie des mesopotamischen Parallelogramms:

42 Այս բացատրութեան տարբերութեան մասին տես վարը:

43 Տես Lynchի արդէն յիշուած երկասիրութիւնը՝ Armenia, London 1901:

44 E. Huntington, Weitere Berichte über Forschungen in Armenien u. Comagene, Թրգմ. C. F. Lehmann, Zeitschr. f. Ethnologie, XXXIII, 1901, p. 173—209:

45 Vincent W. Yorke, A Journey in the Valley of the Upper Euphrates (Geographical Journal, VIII, 1896, II. pp. 317—335, 453—462. պատմական բանաքննութիւն՝ p. 462—472:

դէն վաղուց առարկայ եղած է աշխատասիրութեանց, որոնք՝ այն տեսակէտով՝ որ մեզ հոս կը շահագրգռէ, պէտք մը չունին լրացուելու[46]։

---

[46] Frédéric Dubois de Montpéreux, Voyage autour du Caucase, Paris, 1839—1843 (վեց հատոր եւ երկու քարտէս)։ — Brosset, Histoire de la Géorgie, depuis l'antiquité jusqu'au XIX siècle. Petersburg, 1849. Ծանօթութիւնքն եւ Յաւելուածքն՝ Additions et éclaircissents. — Միւլլէր-Սիմոնեան եւ Հիվէրնայի երկը (P. Müller-Simonis et Hyvernat, Du Caucase au golfe Persique, à travers le Kurdistan, l'Arménie et la Mésopotamie, Paris, 1892) արհամարհելի գործ մը չէ, բայց մեզի՝ մեր նպատակին՝ համար միայն տկար նպաստ մը կը մատուցանէ. ունի քարտէս մը, համեմատ Կիեբերտի քարտէսին, զոր այս ուղեւորք ընտիր կ'անուանեն։

## ԳԼՈՒԽ Գ.

### Եփրատի Ասորական ափունքը:

Վայրկեան մը անտես ընենք այս գետէն ակունքը Հայաստանի մէջ: Ասորիքի սահմանագլուխը Ա դարուն (յ. Ք.) վերջը՝ կը սկսէր Կոմագենեայ հիւսիսակողմէն, Նիմրութ լերան ստորոտը, ուր կանգնած են այն հսկայակազմ յիշատակարանները, որ կառուցուած են ի պատիւ հնագոյն արքայից այս երկրին[1]: Սակայն այս փոքրիկ երկիրը տեսակ մը կղզիացեալ խորշ մը կը կազմէր, որ քիչ մը դէպի հիւսիս ինկած էր՝ Արեւելքէն դէպի Արեւմուտք տանող մեծ պողոտայէն, եւ Հռոմայեցւոց եւ Պարթեւաց բնական ճակատավայրէն: Սակայն Հռոմայեցիք ամրացուցած էին անոր մերձավայրքը. Սամոսատ քաղաքը նիստն էր ԺԶ Փղաւեան Ամուր լեգէոնին, եւ գլուխն էր բազմաթիւ զինուորական ուղիներու գծին:

«Այս երկրին մէջ, կը գրէ Մոլթքէ սպարապետը[2], հնագոյն ամրութիւնները կը

---

1 Հմմտ. Humann und Puchstein, Reise in Klein-Asien und Nord-Syrien, Berlin 1890:

2 v. Moltke, գղ. թրգմ. Lettres sur l'Orient, Paris 1872, p. 213:

կայանան երկարաձեւ լեռնակէ մը, զոր մարդկային ձեռքերը բարձրացուցած էին եւ որուն գագաթը կը զետեղէին դղեակը: Հարիւրաւոր այսպիսի լեռնակներ կան հոս, եւ ամէն մին այս կերպով ամրացուած է: Այս արուեստական բլուրները յաճախ հսկայական գործեր են. Սամոսատի բլուրը իբր 100 ոտք բարձրութիւն, 300 քայլ երկայնութիւն եւ 100 քայլ լայնութիւն ունի: Զառիվայր կողերը ամրացուած են կոփածոյ քարերով կամ զրուագուած պատով մը»: Սամոսատի միջնաբերդը կանգնած էր մէջտեղը քաղաքին այն մասին, որ գետէն կը պատուէր[3]. փոս մը կը կղզիացնէր զայն վերջինէս: Քաղաքէն բան մը մնացած չէ, բայց եթէ անոր հարաւակողմը քանի մը կոտր պատեր, եւ հին շրջապատ պարսպին նշանը, որ լաւ տեսանելի է եւ որ բաւական մեծ հնութենէ մըն է (իբր Ա դարէն[4]:

Սամոսատայ քով կա՞յ արդեօք մշտական կամուրջ մը. անկարելի է որոշել: Սամոսատէն 2 ժամ, յետոյ երկուքուկէս ժամ հեռուն դէպի արեւմուտք զատ չինուածոց քանի մը որմախարիսխներ, որոնք իմ օրագրութեանս մէջ այսպէս նշանակուած են. «Կրնայինք երկու չորեքկուսի աշտարակներ ըսել՝ բայց շատ փոքրիկ, իբր երկու մետր կողմը: Մէկ մղոն անդին՝ Հայաս գիւղին

[3] Եփրատ այժմ քիչ մը հեռուէն կ'անցնի:
[4] Տես Մառն Բ, Գլ. Զ. Ծն. 117:

Չինկ գիւղէն մէկ ժամ երեք քառորդ հեռու եւ Սուպէրջուկէն 1 ժամ անդին՝ հանդիպեցայ աւերակ կամուրջի մը՝ ձգուած Արաք-սուի[6] վրայ՝ որ հիւսիս-արեւելքէն գալով դէպի հարաւ-արեւելք կը հոսի: Առաջին կամարը վերէն փլած է, ինչպէս նաեւ հինգերորդը եւ յաջորդները, երկրորդին կամարը շատ սրածայր կորուած է, երրորդը՝ քիչ մը աւելի նուազ, իսկ չորրորդը լիովին բոլորակամար է. անշուշտ միայն այս վերջինը կրնայ համեմատական ժամանակէ ըլլալ, միւսներն Արաբացիներէ նորոգուած կարկատուած ըլլալով[7]»:

---

կան, բայց այսօր պարզապէս ցանուցիր քարեր եղած են: Չինկ գիւղի (որ շատ մօտ է) բնակիչները կը հաստատեն թէ նախապէս միւս ափը՝ Բագէր գիւղէն 1 քիլոմետր արեւելք կարեւոր աւերակներ կան, յատկապէս եկեղեցիներ: Անկարելի էր գետն անցնիլ, զանոնք տեսնելու համար:

[6] Տես սոյն լուսանկարը, զոր հրատարակած են ի «Tour du Monde» 1905, p. 160:

[7] Իրօք ալ թէպէտեւ խուզարկչիս կոփածոյ քարերով սրբատաշին զրահ մ'ունի եւ պատի զանգուածը խիճաքարով որմալիցք մըն է, ամէնուն համար, ի բաց առեալ միայն այս մին, զարդարուած է բաւական փոքր քարատաշուածք մը: Այս մին միայն կրաշաղախով որմացրուած է մանր խճաքարերու յաւելումով. միւսներուն քարերն իրարու կպցուած են անխառն հողով: Շինուածքին ստորոտը կմրացածն (արտաքարկեա) քանի մը քարեր: Հարաւ-արեւելեան կամրջագլուխը ահագին քարակտորներ են, որոնց նմանն ուրիշ տեղ չի գտնուիր: Կամուրջին կամարակալները բոլորովին հաւասար կ'երեւան, որոնց լայնութիւնը (հիւսիս-արեւմուտքէն դէպի հարաւ-արեւելք) 4 մետր է. սոյն հակառակ կամարներու մեծութիւնն անհաւասար է: Անոնց միայն մէկուն բացուածքը կրցայ չափել 5 մետր 50: Երկու ուրիշներ ալ, անոա-

Կամուրջէն ետքը վէմի արեւմուտք գրեթէ անմիջապէս կը սկսի հին ուղի մը, որ աջ կողմը վէմի հարաւ կը գտնուի։ Իմ յուշատետրիս մէջ կը գտնեմ նշանակուած. «Կէս ժամ ետքը՝ խումբ մը մղոնաքարեր[8], որոնց մէջ գոնէ երկու հատ կան որ շատ մեծ են, չորեքկուսի խարսխով, 2 մետր 25 սնդմ. երկայն։ Մղոն մ'աւելի հեռուն՝ առ նուազն հինգ սիւներ[9], նոյն տիպարով, եւ մէկ դին կարծեմ թէ կը տեսնեմ փոքրիկ բոլորշի շինուածքի մը՝ որ իբր երկու մետր տրամագիծ ունի՝ որմախարիսխները։ Յետոյ յա—

---

րակոյտ, անոր հուսաստր էին, եւ կ'երեւէին գետահատանաց բուն ակզայն վրայ, այնինչ այն գետամաքին վրայ, որ շատ ցանցառ կը յամէր։ Այս երկուքին մէջտեղն էր, ինչպէս կ'երեւայ կամուրջին գագաթնակէտը։ Նկատի առնելով երկու ծայրերն ալ գտնուող աւերուած մասերը՝ կամուրջը իբր 85 մետր երկայնութիւն մ'ունենալու էր։ Լայնութիւնը 5 մետր 20։ Կամուրջն ուղղագիծ չէր, այլ վէմի արեւելք կը թիւրէր իբր քսան աստիճան։

8 Ասոնց միայն հանդիպած եմ 1901 տարւոյ Ասորիքի հետախուզիչը կատարած ուղեւորութեանս ատեն։

9 «Ասորիք, եւ մասնաւորապէս Պաղեստինի մէջ հին ուղիներու եզերքին վրայ կը գտնենք բազմաթիւ զինուորական մղոնաքարեր, որոնք շատ յաճախ անարձանագիր են, եւ միայն քանի մը նշաններ կը կրեն, որոնց մեկնութիւնը տարակուսական է։ Կը փորձուինք զանոնք անմիջապէս հռոմէական մղոնաքարեր համարելու, բայց այս թերեւս չափազանց է։ Մղոնակոթողներու շատերը բիւզանդական ըլլալու են, եւ կրնան նոյն իսկ արաբական ըլլալ. որովհետեւ Բիւզանդացիք եւ Արաբացիք պէտք ունէին միայն հին հռոմէական ճամբաները պահպանել, թերեւս երբեմն ուղղելով զանոնք»։ (Clermont-Ganneau, ի Rev. d'arch. orient. I, 1888, p. 206)։

ջորդ մղոն մը կը կորսնցնենք. բայց չորրորդ մղոնին՝ բազմաթիւ մղոնակոթողներ՝ խորտակուած. տասնը կ'երեւայ թէ զետեղուած են ճամբաներու խաչաձեւ հատման կէտին վրայ: Մղոնաքարերն անարձանագիր են, կամ՝ անշուշտ տառերն անընթեռնլի եղած են, քարերուն շատ դէշ տեսակին պատճառաւ, որոնց ամբողջ երեսը ծածկուած է այնպիսի մեծ ծակերով ու մասը բոլորովին մէջը կը մտնէ: Մեծ աշխատութեամբ կրցայ այս մղոնաքարերէն մին շըրջել տալ. կարծեցի ընթեռնուլ պարզապէս MP (= M[illia] p[assum] «հազար քայլ» կամ [I]mp[erator? «Ինքնակալ»): Այս խումբն իբր տասն վայրկեան հեռու է Ակիփ գիւղէն, ուր կը նշմարեմ ամբողջ քանակութիւն մը ջրամբարներու եւ աւազաններու՝ որոնք ապառաժ ժայռին մէջ փորուած են[10]»: Ուղեւոյ այս այլեւայլ հատուածներն անտարակոյս կը վերաբերին այն ճամբուն՝ որ Պեւտինկերեան Տախտակին համեմատ Անտիոքէ կը տանէր Սամոսատ՝ Դուլիքէի (Այնթապի մօտ) վրայէն:

Եփրատի գետափնեայ բերդերը կը սկսէին այն ծոցէն՝ զոր գետը կը կազմէ հիւ-

---

[10] Օրագիրս՝ «Ինծի ըսին այս գիւղիս մէջ թէ նոյն Արաֆ-տուն կ'անցնուի, Եփրատի բոլորովին մօտ՝ ուրիշ հին կամուրջով մը, որ անարատ մնացած է եւ որուն վրայէն կ'անցնին այսօր ալ: Բայց հոն երթալու համար միայն սոսկալի ճամբաներ կան. եւ բաց աստի այս տեղեկութիւնը կասկածելի կ'երեւայ»:

ախէն դէպի Հայոց հանելու համար, կապեր-սանայի շրջակայքը, ուր սովոր էին գետն անցնել[11]: Ամմ. Մարկեղոս կը նշանակէ կամուրջ մը՝ որ այնտեղ էր եւ որ աւերուեցաւ Կոստանդոսի եւ Յուլիանոսի օրերուն[12], բայց Թերեւս այն յիշուածը առժամանակեայ նաւակամուրջ մըն էր, ինչպէս էր Կոստանդոսի Բ միեւնոյն տեղը՝ երկու տարի ետքը՝ ձգել տուած կամուրջը, զօրքն Եդեսիա առաջնորդելու համար[13]:

Պտղոմէոս Եփրատի երկայնութեամբ կը Թուէ՝ Ասորիքի մէջ[14] տեղերս՝ Ուրիմա (Οὔρμα), Արուդիս (Ἀρουδίς), Զեւգմա (Ζεῦγμα), Եւրոպոս (Εὔρωπος), Կեկիլիա (Καικιλία), Բեթամմարիա կամ Բեթոմանիա (Βηθαμμαρία ἢ Βηθομανία), Գերրի (Γέῤῥη), Արիմարա (Ἀριμάρα), Երագիզա (Ἐραγίζα), — եւ Միջագետաց մէջ[15], ուստի գետափին միւս ափին վրայ տեղերս՝ Պորսիկա (Πορ-

---

11 Թէոդորետոս (Պատմ. Եկ. ԺԹ, էջ 1428, հրտ. Migne) այն միայն Եփրատի վրայ եղող Κώμη (աւան, գիւղ) կը կոչէ, առանց ուրիշ ճշգրիտ տեղեկութեան:

12 Ամմ. Մարկեղ. ԺԸ, 8, 1, «Զեւգմայի եւ Կապերսանայի մօտ եղած կամուրջներու կապերը կտրելով»: Այստեղ «կամուրջներու» յոգնակի ըլլալն ամենեւին չի թոյլատրեր կարծելու Streck-ի հետ (Caphrena, առ Պաուլի–Վ.) թէ Կափրենա հին Ասորիքի (անոր վարը) ուրիշ մէկ անունն ըլլայ, եւ թէ Ամմ. Մարկեղոս ուզած ըլլայ պարզապէս նշանակել մէկ կամուրջով իրարու կապուած քաղաքները:

13 Անդ, ԻԱ, 7, 7:

14 Պտղոմ. Աշխ. Ե, 14, 10:

15 Անդ, Ե, 17, 5:

σίκα), Անիանա (Ἀνιάνα), Բասմփիր (Βαι-σάμφη), Սարնուկա (Σαρνοῦκα), Բերսիբա (Βερσίβα), Մաւբէ (Μαῦβαι), Նիկեփորիոն (Νικηφόριον), Մագուդա (Μαγοῦδα), Քաբո-րա (Χαβώρα)։

Այս քաղաքներէն առաջինը Անտոնինեայ Ուղեգրութեան մէջ[16] յիշեցուած է Զեւգմայէ 32 մղոն հեռու դէպի հիւսիս[17]։ Երկրորդը՝ անկէ միայն 24 մղոն հեռու պիտի ըլլայ Պեւտենգերեան Տախտակին համեմատ, որ Արուլիս (Aroulis) կը կոչէ զայն։ Այս երկուքէն միայն մին կրնայ կատարելապէս յարմարիլ Հռոմկլայի (Թլում-կալէ) հետ՝ Մարզուանի գետին գետախառնուրդին վրայ. (Marsifan, անտարակոյս Գելենեայ Մարսիաս՝ Marsyas)։ Այս հրաշալի դիրք մ'ունի[18]. «Այս բերդին նիստ ընտրուած է սեպաբերձ հրուանդանի մը վրայ, որ երեք կողմերէն ալ կը տիրէ Մարզուանի հովտին ու Եփրատի ընթացքին վրայ։ Իբր 30 մետր խորութեամբ կտրուածք մը, որ ապառաժ ժայռի մէջ կտրուած է, կը բաժնէ զայն սարահարթէն՝ որուն հետ կը կապուէր տեղագրօրէն[19]»։

Բնական պիտի ըլլար այս տեղը զետեղել

---

[16] Ուղեգր. Անտ. 189, 7 անուամբ Vrma giganti (Հսկայից Ուրմայ)։ Այլեւայլ ձեւերուն մէջ՝ Ուրեմա, Որիմա, Վրանա, Որիմա Գէորգայ Կիպրացւոյն քով՝ տես Գելցերի հրատարակութիւնը, էջ 152։

[17] Սոկրատէս, Եկեղ. Պատմ. Գ, 25 կը յիշէ «Աբրահամ Վերմացւոց եպիսկոպոս»։

[18] Համե. Humann եւ Puchstein, pl. L, 1։

[19] C. Isambert, Itinér. de l'Orient, p. 750։

Արուդիոր կամ Վրիմոն, աւելի առաջինը հեռաւորութեան չափին համեմատ[20]. եւ աւելի երկրորդը՝ եթէ հիմունքը անուանակոչութեան վրայ, — որ ճիշդ է թէ շատ տարակուսական է, — այսինքն՝ այն հսկայակերպ (giganti) յորձորձանաց վրայ, որ այս դրեթ համազօր կ'երեւայ, եւ այն խորդութեան վրայ՝ որ քաղաքս երբեմն եպիսկոպոսանիստ եղած էր[21]: Գոնէ, եթէ նաեւ արդի Համկլայն միջնադարու բերդի մը կերպարանքն ունի, տարակուսական չէ թէ անոր հիմունքն շատ աւելի հին են:

Հիւսիսէն՝ Սամոսատէն գալով՝ այս տեղս հասնելէն առաջ վերնակողմը 1½ ժամ հեռուն պետին ափին վրայ նշմարելի աւերանագրութիւն մը[22], որուն համեմատ երկու

---

Անջրպետի 25 պիծն կը հաշուէ այսպէս. «Բիրէճիկէ մինչեւ Համկլայ 10 ժամ 30 վայրկեան» քիչ մը նոյնը «Համկլայ (7 ժամ 45 վայրկեան Բիրէճիկէ): Այս երկու տեղեկութիւնները դժուար է հաշտեցնել: Առաջինն իրր 50 քիլոմեդր կ'ենթադրէ, վերջինս իրր 35: Բնական ամբողջութիւնը մասծել կու տայ թէ առաջինն է վրիպակածը: Հին ուղեգրութեանց կը նշանակեն այն իւրաքանչիւր ուղիներու համար 36 կամ 45 քիլոմեդր: Անճամփ այդ ճամբան կարած չըլլալով՝ չեմ կրնար թիւ մ'առաջարկել:

20 Բայց այս եղծիլ արդէլք մը չէ միւսն ընդունելու համար. վասն զի րան մը չ'արգացուցանէր թէ հին ճամբան ասկէ՛ց կ'անցնէր, որ թերեւս նաեւ խոտորուն շրջան մը կ'ընէր:

21 Համկլայի մէջ բիւզանդական եկեղեցի մ'ըլլալուն՝ Միւլլէր (անդ) այնտեղ դնել կ'ուզէր Անտոնինեայ Ուղեգրութեան (186, 3) Catabanaն, որ ուրիշ կերպով անծանօթ է:

22 Հմմտ. Humann եւ Puchstein, էջ 175,

գրօշաւորութիւններ, որոնց մին տանուած էր Գ. Գաղղիական լեզէոնէն, այս տեղ բանակած էին՝ գանէ Վեսպասիանու ժամանակ, եւ խղուեջ (cochlis) հաստատուած էին ջուր հանելու համար: Վերը կոչին չորեքկուսի՝ ոչ շատ մեծ՝ շինութեան մը որմախարիսխները՝ տաշուած կոփածոյ քարերով, թերեւս աւազան մը, բայց գուցէ նաեւ աշտարակ-դիտարան մը պահակաց՝ գետին մերձավայրից վրայ հսկելու համար: Նոյն լեզէոնը Միւսիայէ Ասորիք փոխադրուած էր[24]; կարելի է թէ անոր մէկ ջոկատը հոս պետեղուած ըլլան, բայց կարելի է նաեւ որ հետաւորդը տեղ մ'այլ որեւէ բուրգ (ամրոց) մը կար: Անոր անմիջական շրջակայից մէջ որեւէ գիւղ չկայ, ոչ ալ աւերակներ կան. բայց այս իրողութիւնն իրաւունք չի տար որեւէ գրական եզրակացութիւն մը հանելու: Ամէն պարագային ջրարարձ խղուեջի մը հաստատութիւնն այլազգ չի մեկնուիր, բայց միայն անով որ մերձակայ բնակավայր մը կամ զինուորական պահականոց մը կար, եթէ երկուքն ալ միանգամայն գոյութիւն չունէին:

Արդ արձանագրութեանս առջեւէն իմ առած լուսանկարս[25] կը ցուցնէ թէ երկու

---

պատկ. 23, որ կը ներկայացնէ Հռոմկլայ ու մերձավայրեր:

[23] BCH. XXVI, 1902, p. 205—207:

[24] Փոխադրութիւնը կատարուեցաւ 70ին. (Տակիտ. Պատմ. Դ, 39):

[25] Tour du Monde, 1905. էջ 163:

ափանց մէն ցցուածք մը կը կազմէ, որ դէպի գետը կը յառաջանայ: Այս կը տեսնուի արեւելեան ափին վրայ, որ երկու ափերէն ճիշդ այն է՝ որ ամէնէն աւելի սաստիկ կորագիծ մը կը կազմէ այս տեղ եւ հետեւաբար այն, զոր գետին հոսանքն ամէնէն աւելի բռնութեամբ պիտի փորփորէր: Սակայն չէ կրցած գետն այս հրուանդանը քայքայել ու ողողախառն տանիլ: Վերջնոյս վրայ եղող փլատակները շատ ճանաչելի չեն. բայց ոչինչ արգելք կայ ենթադրելու թէ ատոնք հին կամուրջի մը կամրջաբարձքերու հիմնադրներն ըլլան: Եւ կամ այս սարքուածը շատ լաւ կրնար գործածուիլ գետին լայնութիւնը նուազցնելու համար, որ զանի դիւրին կ՚ընէր այն տեղ նաւակամուրջ մը հաստատելը: Ուստի շատ հրապուրիչ պիտի ըլլար այս տեղ Կապերսանայի անունն արտասանելը: Անշուշտ երեք դարեր սահած են Վեսպասիանոսէ մինչեւ Յուլիանոս. բայց ներելի է խորհիլ թէ այս անցքը շատոնց ծանօթ էր, եւ թանկագին կը համարուէր Ամ. Մարկեղինոսի ժամանակ, որովհետեւ Կոստանդոս փութաց նոյն կամուրջը վերահաստատել[26]:

---

[26] Տարէք՝ փոփոխելով իր առաջին կարծիքը (տես քիչ մը վերը ծան. 12) կը համարի թէ Կապերսանայ Հռոմկլայի կազմերը փնտռելու է. բայց անհրաժեշտ չէ բան Հռոմկլայն նկատի ունենալ. Վարք Սալամանի Լռակեցի» (Vita Salamani Silentiarii, ի Acta SS., 23 Յունուար, էջ 102) նոյն անուամբ գիւղ մը կը յիշէ. եւ դարձեալ cephar (կամ caphra) արամերէն կը նշանակէ «գիւղ»: Տարակոյս չկայ թէ կար

Սակայն եւ այնպէս, քանի որ Արուղիսի[27] եւ Վրիմայի անգերը նոյնութեամբ գտնուած չեն, կրնանք նոյն չափով մօտենալ անոնք ալ հոս դնելու, ինչ չափով կը խորհիմ Կապերտանայի մասին, բայց ապահով կ'երեւայ այն կէտը՝ թէ այս երեքին մէկը հոս կը գտնուէր: Կապերտանան ի բաց ձգելու էր, եթէ ինչպէս կ'ուզէ Ֆիշեր, զայն պէտք է նոյնացնել Պաղմեայ Պերսիկայի (Περσίκα) հետ (գետին ձախ ափին վրայ[28]):

---

գիւղ մը, որ նուազ կարեւոր էր, եւ բոլորովին անհետ եղած է:

[27] Ինծի ծանօթ չէ Orul, «Հին Արուլիս», անգը զոր Իգամբերի սղեցոյցը (էջ 740) Նեզիբէ (Նըզիբ) մէկ ժամ հեռու կը դնէ, Այնթապի ճամբան վրայ: Այս գետէն շատ հեռու կ'ըլլար, եւ որեւէ աւերակներ չկան: — Աւելի բան մը ծանօթ չէ ինծի նաեւ Սալուք կամ Սալիք անգւոյ մասին, զոր կը նշանակէ Մերլեր (տե Պաղմ., էջ 970):

[28] Ես կամ զայն դնելու եմ Սուբուրգուտ (Suburgut) անգը, որ ինծի անծանօթ կէտ մըն է, ուր հին ճանապարհորդ մը իբր թէ նշանակած ըլլայ կամուրջի մ'աւերակները (Ռիտտէր, Ժ. էջ 987): Իսկ Անիանա թերեւս ըլլայ Թիլլատմանա, եւ դնելու ենք զայն արդի Բեդդայ (Beddai) կամ Ղանամա (Ghanama) անգերը, (տես Sachau, Reise, p. 136, 159, 170): Այս շատ խնդրական բան մըն է. աւելի նախամեծար կը համարիմ Seeckի կարծիքը, որ Թիլլատմանա (Notit. XXXV, 32) կը համաձայնէ Թիլլապամանայի հետ, որ երկու անգամ այսպէս գրուած է (անդ, XXXV, 9 եւ 24): Ըստ նոյն «Տեղ.» գրոց Ոսրհոյաստանի մէջ չորս անգեր կան, որոնց անունները կը սկսին Թիլլա... եւ այս ձեւը թերեւս կը համապատասխանէ տէլ (tell) բառին: Հողաբլուրները (արաբ. թէլլ) շատ բազմաթիւ էին այս երկրին մէջ, ինչպէս կը գրէ Մոլթկէ (անդ): Իսկ Բէսամիսի, Սարեճուկս, Բերոսիա, Մալբէ անգերու նոյնացման մասին հմմտ. Ֆիշեր (Պաղմ., էջ 1003): Այսչափ

Գետին քիչ մ՚աւելի խոնարհակոյժը Զեւգմա ալ ռազմագիտական դիրք մը կը դրաւէր. ա՛նոր անունն իսկ կը նշանակէ կամ մը, զօդ մը երկու եզերքներու մէջ: Տակիտոս կը վկայէ թէ այս այն կէտն է, ուր ամէնէն աւելի դիւրին է գետն անցնիլը[30], առանց անդրադարձն մեկնելու թէ Սելեւկոս Նիկատորի ձգած կամուրջը տակաւին գոյութիւն ունէ՞ր Ա. դարուն: Կասիոս ալ հոս բանակելու եկաւ, Պարթեւաց դէմ իր ձեռնարկած պատերազմին ժամանակ՝ Կղաւդեայ Թագաւորութեան ատեն: Հոս ալ նոյն խնդիրը կը ծագի՝ որ Կապերանայի մասին յուղուեցաւ. այսինքն՝ արդեօք նաւակամո՞ւրջ մըն էր, զոր Ամմիանոս եւ իր ընկերակիցք իրենց փախուստին ատեն կործանուած գտան Զեւգմայի մէջ: Կրնային իրական եւ հաստատակառոյց կամուրջ մը կործել. ձիւնահալքէն առանձնապէս յորդած էր գետահոսանքը, որ առած տարած էր կամարակալինեըը[31]:

---

եղթագրութիւններու մասին մեկնութիւն մը չեմ գտներ:

29 Ζεῦγμα, երբեմն Ζεῦμα (լտ. Zeuma, որ է հայերէն «զոյգ» լծոյց). Հմմտ. Գելցեր, ծան. Գէորգայ Կիպրացւոյ, էջ 149:

30 Տակիտ., Տարեգր. ԺԲ, Հմմտ. Փիլոստրատոս, Վարք Ապողոնի, Ա, 20, «Զեւգմայի վերահըսկող մաքսաւորը»:

31 Բէնէվէնդի յաղթական կամարին մէկ խորաքանդակը (Almerico Meomartini, I monumenti e le opere d'arte della città di Benevento, 1889—1892, տախտ. ԻՁ.) կայ ունի Միջագետաց 114 տարւոյ աշխարհակալութեան հետ: Տրայանոս կանգնած կեցած երկու գետերուն՝ Եփրատի եւ Տիգրիսի՝ մէջտեղ

Խնդիրը շատ մթին է[32]։ Եթէ ճշմարիտ է թէ Աղեքսանդր Մեծ եղաւ առաջին անգամ հոս կամուրջ հաստատողը, երկբայական չէ թէ նաւակամուրջ մը գործել տուաւ[33]։ Եւ ճիշդ Սելեւկոսի մասին ալ Պլինիոս միեւնոյն բացատրութիւնները կը գործածէ՝ ponte iunxerat (կամուրջով կապեց[34]), որոնք կրնային տակաւին պատշաճիլ նաւակամուրջի մը։ Իսկ յաջորդ դարերուն նկատմամբ՝ զուրկ ենք տեղեկութիւններէ։ Բան մը չի ցուցներ պայծառ կերպով թէ Կրասոս ո՛ւր անցաւ գետն առաջին անգամ. գոնէ գետանցումն տանից դժուարութեան գլուխ հանեց[35]։ Տարբեր էր յաջորդ տարին[36] — այս

---

սպրդուած նախահանգին հաստատութեան հաստատքը կ'ընդունի։ Նկրոսս որ հռովմէական եղած է, կը կրէ կամուրջը, որ Միջագետքը Պետութեան հետ կը պարունակէ. կամուրջը ներկայացուած է դիրար խաչաձեւ կտրող գերաններու անտառ մը փայտակերտով։ Այս ոճով պատկերացումն անշուշտ միայն խորհրդանիշ նշանակութիւն ունի։

32 Հմմտ. Ոփսոմէր, Ժ, էջ 989, եւն, ուր բնագիրները քննուած են։

33 Պլինիոս, Բն. Պատմ. ԼԴ 150. «Կ'ըսանդեն թէ երկաթեայ պատուար մը կ'ըլլայ եւ կը գտնուի երկաթի շղթայ մը Եփրատի վրայ Զեւգմա կոչուած քաղաքը, որով Աղեքսանդր Մեծ այն տեղը կամուրջ կապեց, որուն օղակները՝ որ՝ նորոգուած են, ժանգահար կ'ըլլան, մինչդեռ անկէ զերծ են հնագոյնները»։

34 Պլինիոս, Ե, 86։

35 Պղուտարքոսի համեմատ (Կրաս., 17) կամուրջ մը ձգել տախպուեցաւ. ուստի յառաջուընէ կամուրջ մը չկար։ Այս կատարուեցաւ Զեւգմայի մօտերը. (տես վարը)։ Միւս կողմէ Անտոնինեայ ժամանակին համար կ'ըսուի թէ Պարթեւք սովոր էին գետն անցնիլ Զեւգմայէն. (Դիոն Կաս. ԽԹ, 19)։

անդամ ապահովապէս Զեւգմա էր անցնելու տեղը, — եւ երբ բանակը դեռ ամբողջ չէր անցած, հրաբորբոք փոթորիկ մը խորտակեց փչելով լաստակերտին մէկ մասը[37]: Ուրեմն այն ատեն որմաշէն կամուրջ մը չկար, բայց թերեւս Հռոմայեցիք այս գործը գլուխ հանեցին՝ երբ Ոսրհայաստանի մէջ վերջնականապէս հաստատեցին իրենց իշխանութիւնը:

Ո՞ւր յարմարագոյն է դնել Զեւգմա քաղաքը, ձախ ափի՞ն վրայ թէ աջ եզերքը: Այս մասին անհամաձայն կ'երեւան բնագիրներն ու տեղագրութիւնները: Մէկ կողմանէ Պտղոմէոս Ասորիքի մէջ կը դնէ քաղաքը, եւ Ստրաբոն կը հաստատէ այս տեղեկութիւնը[38]. միւս կողմանէ ապահով է որ այս կարեւոր անցավայրն արդի Բիրէճիկի առջեւն էր, որ ձախ ափին վրայ կը գտնուի[39]: Դիմացի կողմը գտնուող սարահարթը վերէն վար աննպաստաւոր է բանակատեղւոյ մը հաստատու-

---

36 Դիոն Կաս. Խ, 18: Յաւել՝ Սենեկա, nat. quaest. V, 18. «Եփրատի քով նախագուշակ շանթեր ու դեւք կը հանդիպէին»:

37 Պլուտարքոս, անդ, 19:

38 Ստրաբոն, ԺԶ, 3, էջ 749 c. «Եփրատի արդի Զեւգման Կոմագենեաց մէջ կը գտնուի, եւ ճիշդ դիմացն է Սելեւկիա բերդը, որ թէպէտեւ Միջագետաց մէջ է, ու շատ ժամանակ առաջ Կոմագենեաց տրուեցաւ Պոմպէոսի կողմէ»:

39 Czernikի գծած ծրագիրը (Տետ. Բ, էջ 2) շատ աւելի ակներեւ պիտի ընէր այս հանդիպակաց հակադրութիւնը, եթէ այնչափ փոքր աստիճանով տրուած չըլլար:

թեան համար[40]: Բաց աստի Անտոնինեայ ժամանակէն Զեւգմայի այլեւայլ դրամները[41] բնորոշ տիպար մը կը ներկայացնեն, այնինքն՝ մեհեան մը կոնի մը գագաթը թառած. կոնին վրայ պատկերացուած գնդիկները ուրուագծօրէն կը ներկայացնեն քարաժայռ մը, եւ կողերուն աստիճանաձեւերը՝ դէպի գագաթ տանող սանդուխի մը մասերն են: Մեհեանը կը բաւէր խորհրդանշելու համար քաղաքը, որ բարձունքի մը վրայ նստած ըլլալու էր:

Ճիշդ խօսելով կը կարծեմ թէ քաղաքին հայաբաժինն երկու ափունքներու վրայ ալ կը տարածուէր: Նախնաբար երկու զատ զատ քաղաքներ էին՝ Ապամէա[41] եւ Սելեւկիա[42]: Սովորութիւն եղած էր ըսել թէ այս երկուքն ալ «զեւտանգի վրայ[43]» (ζεῦγμα, զեւտանգ, կամուրջ, լուծ, նաեւ հուն) կը գտնուէին: Ա. դարէն առաջ այս երկու քաղաքները կ'ա-

---

[40] W r o t h, Greek coins of ... Syria, pl. XVI, 11—13, p. LI եւ 124 եւն: Ուոթի տուած մեկնութիւնն իմ տուածէս տարբեր է, բայց աւելի նուազ պարզ եւ աւելի քիչ բնական կ'երեւայ: Այս նոմիսմներու մէջ պայմանադրական պատկերացում կը տեսնէ մեհեանին տրփիթերակից նուիրական անտառին, եւ ինչ որ ես վիպակելի աստիճաններ կը համարիմ, ինքն մեհեանին շրջապարսպին ուղղահայեաց ճեմելին կը համարի:

[41] Պլինիոս, Բն. Պատմ. Ե, 86:

[42] Արձան. «Սելեւկիա առ Եփրատաւ» (CIG, 2548). Համա. Մարաթոն քիչ մը վերը:

[43] Պտղոմէոս, Ե, 43, «Սելեւկիա ի վերայ Զեւգմայ»: Պլինիոս, Բն. Պատմ. Ե, «Ապամէա ի Զեւգմայ»:

ներեւաւթանան. Պլինիոս ո՛չ մէկը կը յիշէ եւ ոչ միւսը եւ ոչ ալ այնուհետեւ դրամները կան անոնց անունով. ամբողջը ձուլուած եղած է մէկ Զեւգմա[44], եւ այն շատ դիւրութեամբ՝ քանի որ Պոմպէոսէ ետքն երկուքն ալ իրարու հետ անձուկ յարաբերութիւններ ունէին:

Աչքի առջեւ ունենալով այս առաջնակարգ դերը, քիչ մը զարմանալի կ'երեւայ՝ երբ Պրոկոպիոս[45] կ'ըսէ թէ անոր պարիսպները միայն տարտամ շրջապատութիւն մը կը կազմէին եւ փշացանկի մը չափ (αἱμασιᾶς τρόπον) անհաստատ էին. մուտքը գրեթէ ազատ էր, եւ շատ նեղ ըլլալով՝ պաշտպանողները չէին գիտեր թէ ո՛ւր կենան: Բայց Յուստինիանոս նորակառ պարիսպներ կանգնեց հոն, եւ պաշտպանութեան համար ամէն հարկաւոր միջոցները հոգաց[46]: Գետք ենք

44 Այս լուծումն ինծի աւելի բանաւոր կ'երեւայ քան թէ Շարլէքի տուածը (Պաուլի–Վ. Ցաւեր, անդ), որուն համեմատ Ապամէա եւ Սելեւկիա միեւնոյն բնակատեղին ըլլայ՝ որ բերդ եղած էր: Չենք կրնար զայս խառնել Պլինեայ Կափրանայի հետ, ինչպէս կ'առաջարկէ նոյն գիտնականը, եթէ վերջինս՝ ինչպէս սովորաբար կ'ընդունուի կը համապատասխանէր Կապերսանայի (Հմմտ. Պտղոմ. հրտ. Միւլլէր, էջ 968): Ամմիանոս (անդ) կը գրէ Zeugma et Capersana. Անգղիոյ Հենդըրսըն (Henderson) հիւպատոսին երբեմն Հալէպի մէջ կատարած պեղումները միայն միաւէոններ երեւան հանած են. (Հմմտ. Sachau, անդ, էջ 177—178):

45 Պրոկոպ. Վասն Շին. Բ, 9, էջ 237.

46 Ներկայ վիճակին մէջ փրանկ–արաբական ոճերու խառնուրդ մըն է:

ենթադրել թէ այս ալ այն չափազանցութիւններէն մին է, որոնք այնչափ յաճախադէպ են «Վասն Ծին.» գրքին մէջ:

«Բիրէճիկէն (դէպի հիւսիս) 1½ ժամ հեռուն, կ'ըսէ Իզամբերի ճանապարհացոյց մատեանը[47], Կալկիս հռոմէական քաղաքէ մը հնաքրքրական աւերակները կ'ընծայէ, եւ քիչ մը աւելի հեռուն՝ Բալկիս տեղւոյ գետանաւէն անդին՝ ճամբան քուաւոր ձեւով կտրուած է Եփրատը պատող խարակին մէջ: Եւ կ'երթայ կ'ելլէ նեղ ձորակ մը, որուն կողերուն վրայ հնաքրքրական պերեզմանոց մը կը գտնուի, ուր հնաքրքրաշարժ խորաքանդակներ կան՝ բլրակի մը վրայ, որ գետին կ'իշխէ, կը բարձրանայ (1 ժամ անդին) Հռոմկլայ (Oroum Kalessi գրուած) շատ աւերուած դղեակը, որ հին Վրիման է[48]»: Իմ կարծիքովս այս պնդութեանցս մէջ շատ սխալներ եւ շփոթութիւններ կան: Նախ Վրիմա շատ աւելի հիւսիսակողմը միայն կրնայ ըլլալ, ինչպէս ցուցուցի: Եւ Oroum Kalessi անուան այսանկ արտասանութիւնը չլսեցի, եւ ոչ ալ Kalkis անունը. բայց ես տեսած եմ միայն աւերակակոյտ մը՝ զոր տեղացիք Balkis կ'անուանէին. եւ այս տեղն ալ կը գտնուի իրօք Բիրէճիկէն իբր 2½ ժամ հեռուն հիւսիսակողմը: Ուղե-

---

47 Անդ, էջ 730:

48 Միւլլէր, անդ, հոս կը դնէ Կատամանտա տեղը:

ւորութեան իմ յուշատետրէս կը քաղեմ միայն քանի մը մանրամասնութիւններ[49]:

Աւերակները ցած ու ցիր են եւ ընդարձակ տարածութիւն մը կը ծածկեն. բայց որեւէ շրջապատ մը ճանաչելի չէ: Երկրորդական նշմարանքներէն միայն զանոնք կը յիշատակեմ, որոնք ժամանագրական նիշեր կ'ընծայեն:

«Եկրան մը կողին վրայ կայ սաղաւարտաւոր վեթխարի գլուխ մը. աչքին բիբն որոշ քանդակուած ըլլալով՝ թուականն մ'ունինք տար համար, Բ դարը...: Աւելի հեռուն կան դամբանաձեւներ, որոնք բազմաթիւ բոլորատապաններ (arcosolia) կը ներկայացնէին[50]: Հեղեղատի մը մէջ ճենուածքներու մնացորդներ կան, եւ փլատակներու մէջտեղը տեսակ մը բագին՝ բազմանկիւն կոթող մը կազմուած[51], սատրիկեան

[49] «Հոս հանդէպէս տեղւոյ (այսինքն ի Բալկիս, Նիզիբէ գալով) այն բազմաթիւ փոքրիկ հովիտներուն միջն ոմն, որոնք բոլորադիծ կը կորանան ու անոր ստորակայներու շարքի մը կերպարանք կու տան, կը նշմարեմ միւսէնի մը մէկ հատակագիծը եւ շիրմատապան մը: Ասոր անմիջապէս մօտը, գիւղէն հինգ վայրկեան յառաջ, կան քանի մ'աւերակներ, տեսակ մը շրջափակուած աշտարակ մը, որուն կատարը խճաքար յատակուած է, լայն ու տափարակ աղիւսներով, որոնք շաղախով իրարու կպցուած են. շինութիւն մը որ շատ մեծ չէ»: Սիմոնէ (Ժ. էջ 944) կը յիշէ նաեւ «Տէլ-Բալկիս, կունձագագուտ մը, որ շատ յարմար էր համեմատական կամ յունական մեհեանի մը նստին համար, եւ թերեւս Բէլի աւելի հնագոյն սրբարան մըն էր»:

[50] Այն ժամանակներն երբ հոս քանդակներ եւ արձանագրութիւններ կ'որոնակէի, Շարոյ քահանան (abbé Chapot) զանոնք կը հրատարակէր ի Journ.

խարխափով։ Անկէ անդին, շատ երկայն փողանցք մը, որուն ծայրը չեմ կրնար տեսնել, ապառաժ ժայռին մէջ փորուած. շատ լաւ յաջողած գործ մը։ Բարձրահասակ մարդ մը կրնայ մէջը կանգուն կենալ. լայնութիւնը 85—90 սանթիմեթր։ Արդեօք ջրմո՞ւղ մըն է։ Անկէ թերեւս ղաղանի նրբանցք մըն էր, որով կրնա՛ր բերդը դրսի հետ յարաբերութիւն ունենալ, պաշարողներէն գաղտնի։ Քիչ շատ ամէն կողմ խեցիներու եւ միւռէոններու բեկորներ։ Գետին եղերքը սեպ ափնաթմբին մէջ՝ որ վերէն վար կշիռուղղորդ կ'իջնայ, փորուած է բարձր ու լայն անցք մը, որ ափնուղւոյն շարունակութիւնն է. անկէ հեռուն՝ ուր ափնաթումբը կը հեռանայ եզերքէն, կը նշմարեմ մնացորդները, առեղծուածային շինութեան մը, որ ամբողջովին շինուած է եւ որուն սարքաները կը թանայ ջուրը»։

Ո՞ր քաղաքն էր այս տեղը։ Քանի որ մէկզի թողլու ենք Վրիմա, Ասուլիս եւ Կապերսանա [52], համեմատութեան համար միակ կարելիութիւն մը կը տեսնեմ։ Պրոկոպիոս կը թուէ Եփրատի ափանց վրայ այն քաղաքները,

asiatiq. 1900, II. p. 279 յջ.։ Հնագրութիւնը կ'երեւայ թէ Գ—Դ դարերու ժամանակէն կ'ըլլէ։

[51] Համեմատելու է Նիւբհաուի մէջ եղածին հետ, զոր յիշատակած եմ ի BCH, XXVI, 1902, p. 187։ Մերձաւորապէս միեւնոյն ժամանակէն։

[52] Տեղին չկայ կարծելու թէ Զեւգմայի ա՛յնչափ մօտ հաստատուած ըլլան երկրորդ նոյնպէս տեւական գետանցք մը։

զորոնք Յուստինիանոս նորոգեց, եւ Զեւգմայէն անմիջապէս ետքը կ'անուանէ Նէակեսարիա քաղաքը, որուն մասին ալ ճիշդ նոյն բացատրութիւններով կը խօսի[53]: Ո՞ւր պէտք է ըլլար անիկա՝ եթէ ոչ արդի Բալկիսը:

Գետին միւս աջ ափին վրայ՝ կէս օրուան ճամբայ հեռու Ջերաբուս (կամ Ջերաբիս) գիւղը ճանչցուած է արդէն թէ հին Եւրոպոսի տեղը կը բռնէ[54]: Հենտերսընի այս տեղ կատարած պեղումները քիչ լոյս միայն սփռած են. երեւան հանած են Հռոմէական հատակոտորներ, եւ բիւզանդական քաղաքի մը մնացորդներ: Այս զինուորական քաղաք մըն էր[55], նախ պարսպապատուած Անաստասի

---

[53] Պրոկոպ. Վասն Շին. Բ, 9, էջ 235: Յաւել՝ Թէոդորիտոսն, Պատմ. Եկեղ. Ա, 7, «Նիկիոյ ժողովին ներկայ էր Պօղոս, եպիսկոպոս Նէոկեսարիայ, որ Եփրատի ափանց վրայ նստած բերդ մըն էր»: Տեղեկ. գրոց մէջ (XXXIII, 26) զօրանիստ է հեծելոց: Կը յիշուի դարձեալ 553ին «Յովհաննէս... եպ. Նէոկեսարիոյ Եփրատականին» (տես Mansi, Concil. IX, 393): Քաղաքս Կեսարիա կոչուած է Գէորգայ Կիպրացւոյ քով (882): Գելցէրի հաւաքած (անդ, էջ 151) ընթերցուածներէն որեւէ նպաստ մը չեն ընծայեր տեղը նոյնացնելու համար:

[54] Ինչպէս Regling (անդ, էջ 472) իրաւամբ կ'ըսէ, այս այն ամբողջն է, որուն պատկերը կու տայ Պեւտինգերեան Տախտակը, բայց ո՛չ նաեւ անունը: Հմմտ. Պղինիոս, Բն. Պատմ. Ե, 87, Պտղոմէոս, Ե, 48, Լուկիանոս՝ Ինչպէս պատմ. գրելու է՝ 20, 24, 28, Հիերոկլ. 713, 14, Europa, Ռաւեննայի Աշխարհացոյցին քով 87, 11:

[55] Բելիսար հոն իր բանակատեղին հաստատեց ու հոն հաւաքեց իր բանակը՝ Յուստինիանու երկրորդ Պարսկական Պատերազմի ատեն. (Պրոկոպ. ՊՊ. Բ, 20, 24—25, 21, 1):

տանն[56], զոր յետոյ Յուստինիանոս ալ անտես չըրաւ[57]: Յարմարագոյն էր ամրացնել կէտ մը, ուր Եփրատի հոսանքը կը բաժնուէր երկու մեծ կղզիներով, որոնք կը դիւրացնէին հարկաւ նաւակամուրջներու միջոցաւ այս տեղ գետն անցնիլը[58]: Եւրոպոս այսօր շատ աւերած է. շրջապատի խնդրոյն մասին Ռիտտէր[59] համառօտ ամփոփած է Maundrellի եւ Pocockeի տուած հաւաստիքները: Առաջինը կը նկարագրէ զայն իբր կիսաբոլորակ մը, 2250 քայլ երկայնութեամբ, հիւսիս-արեւելակողմը վերնաբերդով մը, եւ երկու դռներով: Իսկ Pococke քաղաքին ուղղանկիւն ձեւ մը կ՚ընծայէ, իբր կէս անգղիական մղոն երկայնութեամբ եւ քառորդ մղոն լայնութեամբ: Քանի որ ես ալ անձամբ գտայ բազմաթիւ սիւներու խարիսխները, մեծ տրամագծով եւ միւս շինութեանց մնացորդները, զորոնք նշանակած է, եւ չորեքկուսի մեծ վիմաքարեր, շատ կանոնաւոր կոփուած, — չեմ կրնար ընդունիլ թէ անկէ ետքն եղած ժամանակի անջրպետին մէջ լիակատար կործանում մը կատարուած է: Արդ ես անկարող եմ հաւանիլ իր գծած յատակագծին, մինչդեռ իմ զննութիւններս ալ բաւականաչափ կը համաձայնին Maudrillի

56 Յեսու Սիւնակեաց ժամնկգր. 93:
57 Գրիգոր. Վ. Շիր. Բ, 9, էջ 235:
58 Sachau, անդ, էջ 169:
59 Ռիտտէր, Աշխ. Ժ. էջ 1009:

*պնութեանց հետ*[60]*: Շրջապարիսպն աւելի կը բարձրանայ հիւսիսակողմը, ուր լեռնակին բաց ստորի աւելի կը լայնանայ. այստեղ պէտք է որ փռուած ըլլար միջնաբերդը: Բլուրներու շրջափակը կ'ընդհատի գետին առջեւ. ընդմիջումներ կը կրէ նաեւ միայն շարունակութիւնը՝ մանաւանդ հիւսիսակողմը, ուր դրան մը հետքերը կը տեսնուին:*

Սաջուրի *գետաբերանէն եւ* Սերեսատ[61] *գիւղէն եկող* «Քառասուն Քարայրներու» *(Գըրգ-մաղարա) ձորակը կը մտնենք: Արդեամբք ալ քարայրները շատ բազմաթիւ են. խարակին կողերուն վրայ բացուած անձաւերը բոլորովին բնական այրեր չեն. շատ կարելի է որ անոնց շատերը պաշտպանութեան համար գործածուած են՝ ինչպէս Պաղեստինի քարայրները*[62]*:*

*Պեւտինգերեան Տախտակն աւանդած է մեզի տեղերու անուններս՝* Կեկիլիանա (Caeciliana), Բեթամարիս (Bethamaris), Սերրէ (Serrhae)*: Ես ալ չեմ գիտեր իմ նախորդներուս պէս*[63] *անոնց առաջինը*[64] *փոխա-*

---

60 *Հողաբլուրին մնացածին ուրուագիծ մը՝* A. H. Sayce, The Archaeology of the cuneiform inscriptions, London, 1907, p. 40:

61 «Սաջուրի *գետաբերանին եւ* Սերեսատի *միջեւ* Համսոնիա *գիւղը պատմեցին ինծի թէ մերձակայ՝ ալ կողմը գտնուող հողաբլուրին վրայ խեցեղէններ կան, ասոնց արձանագրութեանց, բնականապէս հողի թանձր խաւով մը ծածկուած». (Ուղեգրութեան օրագրէն):*

62 *Հմմտ.* Regling, *էջ* 472:

63 *Փոխեմ Καικλια, Հաւանոյի Աշխ.* Caeci-

դրեւլու Կարատա-էլ-Նէջիմ կոչուած տեղը[65]: Այն այսօր արաբական ամուր մըն է, որ կը գրաւէ կարեւոր սարահարթ մը, որ ուղղորդ կը կանգնի հովիտին վրայ: Անըմբռնելի կ'ըլլար եթէ այսչափ նպաստաւոր բնական ամրավայր մը կանխաւ ալ գործածուած չըլլար[66], եւ հին ուղեգրութեանց նշանակած հեռաւորութեանց չափերը կը հաստատեն այս նոյնացումը:

Բեմմարիս նոյնացուցած են Chesney եւ Sachau Կարա-Մէմբիջի հետ. ես նոյն տեղն այս անունը չլսեցի. բայց նոյն տեղը,

---

liana, (Բ, 15): Տեղը դեռ չէ գտնուած՝ կ'ըսէ Benzinger առ Պաւլի-Վ.: Միւլլեր աւելի հիւսիս կը դնէ, Սաջուրի գետախառնուրդին վրայ. Ainsworth (Narrative, I. p. 224) ալ աւելի հեռուն կը դետեղէ՝ ի Սերիտա:

[64] Ainsworth (անդ, էջ 229 եւն) հոս կը դետեղէ Ուղեգրութեանց Թիլատիկամը, հիմնուելով ստուգաբանութեան մը վրայ, որ ինծի մտացածին կը թուի:

[65] Պետինգերեան Տախտակը Կիկիլիանան ամրաց (castra) կ'անուանէ:

[66] Chesney (Survey of Euphrates and Tigris, London, 1850, քարտէզ Բ) առոր մօտ կը նշանակէ՝ «Կամուրջի մ'աւերակները եւ Թումբ մը»: Իրօք ալ հաստատեցի թէ քարայրին ընդարձակ մակերեսներ կան, որոնք կրնային կարծել տալ թէ ամրարկութիւն եղած ըլլայ: Բայց փորձառութենէ համոզուած եմ թէ բնական մաշումն ալ բաւական է այս պատերէն մասնաւորութիւններն յառաջ բերել: Իսկ կամուրջին գալով՝ ես հետքեր չտեսայ, բայց Թերեւս եղծուած ըլլան Chesneyի այցելութիւններէն ի վեր: Իսկ Օպպէնհայմ (Zeitschr. für Erdkunde, XXXVI, p. 80 յլ., Byz. Z. XIV, p. 7) կը նշէ որ այս ափակայրերուն մէջ նոյն իսկ երեք (՞) հին կամուրջներու հետքեր տեսած ըլլայ, որոնք Եփրատէ քիչ հեռու էին:

քարաշխներու համեմատ՝ Ճաքլէ գիւղին մօտը, եւ ալ դատայ ամբարակայ ոչ շատ մեծ դաշտ մը: Քանի որ այս կողմերը յաճախ են անուանց փոփոխութիւնները, ներելի է համաձայնեցնել վերապահութեամբ: Բեթամարիս դուցէ նոյնպէս կը գտնուէր ասկէ 1½ կամ 2 ժամ աւելի հարաւ, ուր՝ գետին եզերքին մօտ՝ նշմարած եմ քանի մը փոքրածաւալ ափեր. բայց վերջապէս կարելի է որ այս վերջին տեղը նոյն ըլլայ Սերբէի հետ[67], զոր ոչ ոք կրցած է նոյնացնել[68]:

Բոլոր այս բաժնին մէջ գետափները[69] շատ աւելի սեպաքերձ առապար են քան թէ Բիրէջիկի կողմերը[70]: Բայց քիչ մետքը Եփրատ դարձեալ կը լայնանայ, կղզիներ եւ դալարապատյա շրջաններ կը կազմէ. գետին մէջ գոզ մը կը խորանայ դէպի արեւմուտք, ատարտելով Եռ-Սերապիկայի երկայնաձեւ

---

[67] Փաղամեայ քով Գերբէ (Γέρρη), Հերկողեայ քով (713,6) Գերրէ (Πέρρη):

[68] Միւլլերի կարծեցեալ նոյնացումներն են՝ Kalaat-el-Nedjim = Բեթամարիս (տես Benzinger, ի բառին առ Պաուլի-Վ.) եւ Գերբէ = Kara-Membidj:

[69] Ուտոն հին ժամանակներն ամենեւին անայլ չէին: Յաւշատնարքս՝ «Ճաքլէէն ետքը Լիսատ հէս ժամու չափ տեղ վիմափոր այրերու շարք մը, մեծագոյն մասը՝ անդրանկիւն. շատ քիչերը կար եւ բոլորակ ձեւեր կը ներկայացնեն: Ասոնց երկուքին կամ երեքին կը հանդիպին սանդուխներ, որոնք նոյնպէս քարաժայռին մէջ փորուած են: Տեղ մը մինչեւ անգամ պարիսպներու որմախարիսխներ կը տեսնուին»:

[70] Սակայն եւ այնպէս Ainsworthի (Narrative, I. p. 248) գործածած բացատրութիւնը՝ «Երկաթի դրունք Եփրատայ» բաւական չափազանցուած է:

մարդձակով, դէպի Բերէա (Beroea, այսինքն Հալէպ) ուղղութեամբ. եւ գետին երկու ափնաշրթներուն իւրաքանչիւրը բարձրադիր ամրահարթ մը կը կազմէ: Թէ այս եւ թէ այն կողմը աւերակներ գտնուած են:

Հիւսիսակողմը, որ է արդի Աբու-Համայա (Abou-Hamâya) գետնի վրայ թափած փռուած են հսկայածաւալ բեկորք, սիւներու ահագին գլաններ, որոնք Բաալբէքի մէջ եղածները կը յիշեցնեն: Ասոնք Պեւտինգերեան Տախտակին նշանակած հեռաւորութեանց համեմատ Երազիհա[71] քաղաքին հետքերն են: Սախաուի այնպէս չեն երեւցած թէ ասոնք զինուորական նպատակի մը կնիքը կը կրեն[72], եւ միւս կողմանէ տեղւոյն պաշտպանութիւնն արդէն ապահովուած էր մերձակայ Բարբալիսոս զօրակայանովը:

Այս վերջնոյս կարեւորութիւնն ամենեւին տարակուսական չէ. հեղինակները[73] φλούριον եւ castellum (բերդ, դղեակ) բառերով ամէնէն աւելի կը նշանակեն այս քաղաքը[74]. եւ Պրոկոպիոս կը յիշատակէ՝ բայց

---

71 Erazihа. Գոզամէսոսի քով Երազիզա, Ե 111, 10:

72 Sachau, p. 135 կ'ըսէ «Հռոմէական բերդի մը համար շինութիւնն շատ մեծագործ, շատ շքեղ ու շատ մեծագին է»:

73 Միայն Մալալաս, (էջ 462, հրա. Բոն) կը գրէ՝ «Բարբալիսոս քաղաքը»:

74 Ստեփանոս Բիւզանդացի կը գրէ՝ Բարբալիսոս պարսպապատ բերդ արեւելից»: — Պրոկոպիոս (Պ. Բ, 12, 4), «Օրբանէս գիւղը, որ Բարբալիսոսի մէջ եղած բերդէն քառասուն ստադ հեռու է»: Ուրիշ ոչ

տասնոց մանրամասնելու՝ այն խնամքը, զոր ունեցաւ Յուստինիանոս անոր վերանորոգութեան համար[75]: Լ. Կահուն, որ այցելած է Բալիս տեղն՝ անբաւականօրէն կը նկարագրէ զայն[76]: Իմ օրագրէս կը քաղեմ. «Գետէն բաւական հեռուն (որուն ընթացքը տեղափոխուած ըլլալու է), շեղջակոյտ մը կայ փլատակներու, աղիւսներու, հողի ու կոպիճներու. երկաթաքարէ (բազալդէ) սիւներ՝ կորնթական խոյակներով, փոխադրուած են բոլորովին մերձաւոր արաբական փոքրիկ գերեզմանոց մը, ուր իբր գերեզմանաքար գործածուած են: Շրջապատ պարիսպը հանաչելի չէ այլ եւս, ի բաց առեալ դէպի հարաւակողմը: Իրօք ալ այս կողմէն սարահարթը կը պատուի երկայն շարուածակէաւ փոսով մը, որուն վրայ թերուցիկ կանգնած են քարակիցքով շինուած որմերու մնացորդներ,

---

ոք կը յիշէ Արրանէս տեղը, զոր Ռեզլինգ կը դնէ ի Բալիս Մեսկէնէի վերնակողմը (դեռ ի վեր): Չեմ դիտեր թէ ի՞նչ բան է տպացոյցն այս ուրիշ Բալիսին. իսկ Մեսկէնէի մասին չեմ տարակուսիր թէ պէտք է զայն համարել հին՝ «Մաւքանէ, քաղաք առ վրանաբնակ արաբացիս», զոր կը յիշատակէ Ասինիոս Կուադրատոսի Պարթեւականաց (Parthica) մէջ Հատակոսորր (FHG, III, p. 659 յշ. Հատուած. 21) եւ որուն մասին չեմ գտներ թէ մոռցուած ըլլայ, եւ որ յայտնապէս Սեւերոսի պատերազմին հետ աղերս ունի: Թերեւս հոս էր անցքը. այն ատեն Արրանէսի հետ շփոթելն անհրաժեշտ պիտի ըլլար:

75 Պրոկոպ. Վ. Շին. Բ, 9; էջ 235: — «Տեղեկ.» (XXXIII, 25, ծանօթ. 3) անոր կ'ընծայէ հեծելոց զօրանիստ մը:

76 Cahun L., Excursions, p. 160—161:

եւ որ կ՚երթայ արեւելակողմը կը սպառի չորեքկուսի շինութեան մը ստորոտը, որուն որմախարիսխները տեսանելի կը մնան։ Արեւմտեան կողմը կան առեղծուածային շինութեանց կտորներ, որոնք հորիզոնական կարգածներով շարուած աղիւսներով շինուած են, եւ բարձր պատուհաններ ունին. այս վերջիններէն ոմանք մինչեւ երեք քառորդը հիւսուած գոցուած են, կարծես իբր հրաձերպեր գործածուելու համար[77]»։

Դժբախտաբար կարելի չէ եղած տեղերը գտնելով նոյնացնել այն միւս «գիւղաքաղաքներն ու բերդերը՝ Եփրատախայի լերանց ծայրերը», որոնց մասին ալ Պրոկոպիոս կը գրուատէ նոյն ինքնակալին անխոնջ գործունէութիւնը։ Չենք գիտեր թէ ո՛րոնք էին այն հինգ աւանները՝ որոնք միանալով կազմեցին Պենդակոմիա (Հինգ գիւղ) քաղաքը. աւանք գոնէ խիտ առ խիտ կանգնած էին Եփրատի եզերաց վրայ։

Ամէնէն անլուծելի խնդիրներէն մէկն է Թափսակէսի դիրքը, որ հելլենատիրական շրջանին կը հրամայէր հունի մը վրայ[78]։ Ուիտաէր մանրակրկիտ ուսումնասիրած է այս

---

77 Տես Tour du Mondeի (Ապրիլ, 1905, p. 147) հրատարակած լուսանկարը։

78 Պղոմէոս (Ե, 18 Θάψακος) կը նուիրէ սա յիշատակութիւն մը, որ շատ քիչ կը համաձայնի Պլինեայ տեղեկութեան հետ, որ աւելի հին մատենագիր մըն է (V. 87) «Երբեմն Թափսակոս, այժմ Ամփիպոլիս»։ Ուրեմն Պտղոմէոս միայն անգործածակա՞ն անունը կը ճանչնար։

խնդրոյս Հայոց բոլոր բնագիրները եւ յայտնուած կարծիքները[79] եւ կ'եզրակացնէ թէ Թափսակոս փնտռելու է Սուրայի կողմերը՝ Էլ-Համմամ, Կալլինիկոս, եւն: Չեմ գիտեր թէ ի՛նչ տեղեկութեան վրայ հիմնուած Կիբերդ[80] նոյնացուցած է զայն Էլ-Բուրջ կոչուած տեղւոյն հետ, որ իբր 25 քիլոմետր վերի Հարաւ-արեւելք հեռու է Մեսկինէէ, եւ որուն մասին տեղւոյն վրայ ոչ մէկ խօսք լսեցի: Իսկ ես ահա թէ ի՛նչ գիտած եմ Մեսկինէ եւ Էլ-Համմամ տեղերուն միջեւ. Մեսկինէէ 3½ ժամ անդին՝ այն ուղղութեամբ, որոյ վրայ է խնդիրը, բարձունքի մը վրայ կան «բերդի մ'աւերակները, որ իւր վերջին ձեւին մէջ արաբական է, եւ որուն մօտ է զիարէթ մը կամ մահմէտական սուրբի մը գերեզմանը. պատերը շինուած են մասամբ թըրծուն աղիւսով եւ փոխն ի փոխ քարով[81], եւ մասամբ անթուրծ աղիւսներով, այնպէս որ կարծես կուէ ըլլայ: — Անկէ մէկ ժամ անդին՝ գետափէն հեռու (½ ժամ) կայ աւերակաց դաշտ մ'ալ, որուն ալ տեղացիք իրենց գիւղին անունը կու տան, իսկ գիւղը գետեզերքին վրայ է, այսինքն Դիպսի: Աւերակավայրին ընդարձակութիւնը մեծ չէ, սա-

---

79 Ռիտտէր, Աշխ. Ժ, էջ 959—984, «Երկու գլխաւոր գետանցքներու դիրքը՝ Զեւգմայի եւ Թափսակոսի մօտ:

80 Իւր այն քարտէզին մէջ, որ Ռէպլինկի գործին կցուած է:

81 Եւ այս մասնէն կու տայ թէ հռոմէական ստորին ժամանակաշրջանի շինութիւն մ'եղած ըլլայ:

կայն հոն ապահովապէս հին քաղաք մը կար։ Սարահարթին, որուն մակերեսը շատ անհաւասար է, շրթերը յօդուած գործածուած էր շրջապարիսպին համար, որուն բաւական որոշ հետքերը կը տեսնենք տեղ տեղ, կանոնաւոր կոփուած վիմաքարերով։ Հիւսիսային կողմը չորեքկուսի փոքրիկ աղիւսակերտ աշտարակ մը, որուն երեք քառորդը կործանած է, կ'երեւայ թէ արաբացւոց կողմանէ աւելցուած է [82]»։

Միեւնոյն անկարելութիւնը կայ Հեմերիումի (Hemerium) տեղն որոշելու [83]. անոր պարիսպներն անհոգաբար շինուած էին եւ կ'երեւային, անոր քարերն յաճախ կեր-

---

[82] Մորից (անդ, էջ 31) ալ միեւնոյն համեմատութիւնը կ'ընէ, բայց տեղը կ'անուանէ Դիփսէ, առանց սոր մասին մանրամասնութիւններ տալու։ Իսկ Միւլլէր (անդ, 975) Dipsին կը նոյնացնէ Պտղոմեայ Ἄθιςի հետ (Պտղ. Ե, 14, 13, Պեւտենգ. Տախ. Attas, Հռաւեննայի Աշխ. 54, 6 եւ 88, 14 Ati եւ Anthis)։ Ֆիշէր (անդ, 1013) Թափսակէն կը դնէ Էլ-Համմամի տեղը։ Ինծի կ'երեւայ թէ աւելորդ է որեւէ բանավիճութիւն. բայց կարելի էր Թափսակէ եւ Դիփսի ձեւերուն մէջ ապահով նմանութիւն մ'եզրակացնել։ — Ainsworth, (Narrative, I. p. 273 յլ.) Թափսակէն կը դնէ Սուրիէի տեղը։ Այս անուան արուիլը չեմ լսած. տարակոյս չկայ թէ Սուրայի աւերակները կը նշանակէ։

[83] Պէտք է ձեւերուս մասին Ἡμέριος, Ἱμερία, Emmarias, Ymeria եւն., տես Գելցէր՝ անդ՝ էջ 155։ Այս տեղն Եփրատայ ո՛ր ափին վրայ էր Պրոկոպեայ համեմատ, որ զայն Եփրատեսիայի մէկ քաղաքը կը դնէ։ Եկեղեցական աղբիւրներու մէջ ալ ոմանք զայն Միջագետաց մէջ կը դնեն, որ բառին վաւերական յատուկ իմաստով անճիշդ է, ուրիշները Ուռհայստանի մէջ, հետեւաբար գետին ձախ ափին վրայ։

պով կը կապուէին տղմախառն կաւով մը. Ցուստինիանոս հիմնայատակ բրաւ զանոնք եւ նորեր շինեց կարծր քարերով, որոնք լայնութեամբ եւ բարձրութեամբ պատկառելի մեծութիւն ունէին: Աւելին ալ բրաւ. Հեմերիում ջուր չունէր. արդ ամրութեան բոլորը կառոյց ջրամբարներ, անձրեւի ջուրերը հաւաքելու համար: Վերջապէս հոն զետեղեց պահակազօր մը, որ կ'երեւայ թէ մինչեւ այն ատեն կը պակսէր. զոնէ Տեղեկ. Ասորիճ. գիրքը քաղաքիս որեւէ յիշատակութիւն չ'ըներ:

Հաւանօրէն Եփրատայ նոյն տեղի մօտերը՝ Բարբալիսոսի մօտ՝ գտնուած էր Զենոդոտիա (կամ Զենոդոտիում), զոր հիմնած էին եւ ուր կը բնակէին Յոյնք եւ Մակեդոնացիք, եւ որ միայն Կրասոսի ատեն դիմադրեց Հռոմայեցւոց: Քաղաքն այս խարդախութիւնը գործեց՝ Հռոմայեցիներէն ոմանք հրաւիրելով իւր պարիսպներու մէջ, իբր թէ կ'ուզէր հպատակիլ, զանոնք անմիջապէս բանդարկեց եւ կոտորեց: Այս պատճառաւ ալ լիովին աւերուեցաւ[84]. եւ չի յիշուիր թէ վերաշինուած ըլլայ:

Պտղոմէոս այստեղ ունի[85] Ալալիս Ἄλαλις,

---

84 Դիոն Կաս. Խ, 12 եւն, Ապպիանոս, Պարթեւ. 136 (Զենոդորիա), Պղուտարքոս, Կրաս. 17: — Սթեփ-տէր, (Ժ, էջ 1136) կ'ենթադրէ թէ քաղաքս Նիկեփորիումի շրջակայքն էր, ուր Կրասոս իւր բանակը դրաւ, (Փղոտ. Պոմ. Հռ. Գ. 11):

85 Պտղոմ., Ե, 14, 19:

Սուրա Σοῦρα, Ալամաթա ᾿Αλάμαθα: Առաջ-
նոյն եւ երրորդին գիրքերն անծանօթ են[86]։
Բայց ուրիշ յաջող գիրք մ'ունեցող քաղաք
մըն էր Սուրա, այն ճամբաներու խաչաձեւ
հատման կէտին վրայ, որոնք կու գային Պաղ-
միւրայէ, Բերիայէ կամ Քաղկէսէ։ Ան բեր-
դաքաղաք մըն էր եւ Ե դարուն սկիզբը նիստն
էր ԺԶ Փղաւեան Ամուր լեգէոնին[87]։ Խոսրով
իր Ասորիքի երկրորդ պատերազմի ատեն
դէպի ի վեր ելաւ եւ բանակը հաստատեց
Սուրայի առջեւ եւ փորձեց յարձակմամբ առ-
նուլ քաղաքը։ Զօրավարը (magister mili-
tum) հայազգի Արշակ՝ առաջնորդն էր
պաշտպանութեան։ Եւ. երբ ընկճուեցաւ,
ահաբեկ բնակիչները իրենց եպիսկոպոսը բա-
նագնաց ղրկեցին Խոսրովի. բայց արքայն
զայրացած այս դիմադրութենէն, որ անչափ
ազնուատոհմ Պարսից կեանքն արժած էր,

---

[86] Աշխ. Ռաւեննայի 54 2. Suretala (= Sure, Alala կ'ըսէ Միւլլէր, էջ 985)։ Արդ «Տե-ղեկ.» գրոց մէջ Ասորիքի դուքին ներքեւ (Or. XXXIII, 32) կայ՝ Վաշտ Ա Գոթաց Հելեկա (Alalius, ըստ Har-douinի (Conc. I, p. 314) Alalorum ըստ Le Quienի (Or. ch. II, p. 848)։ Այս Ալալիսն է։ Ըստ Միւլլէրի աւելի Պտղոմեայ Ἐλέρα՝, Բաթանիայի մէջ։ Ես չեմ կարծեր. այս վերջինս ենթակայ ըլլալու էր Փիւնիկէի դքսին։ Իսկ Ալամաթա անուան համար հմմտ. Թեր-եւս «Տեղեկ. Աստիճ.» XXXIII, 35՝ Վաշտ Ա Յաղ-թաղաց Ամմաթա։ Երկու անուններն ալ՝ երբ յունա-կան գլխագրերով գրուած են, դիւրաւ իրարու հետ կը շփոթուին։

[87] Not. Or. XXXIII, 6, 38. հմմտ. Պղինիոս, Բն. Պատմ. Ե, 87 «Անկէ կ'ընթանայ մինչեւ Սուրա տեղը, ուր դէպի արեւելք դառնալով կը թողու Պաղ-միւրեան ամայութիւնները։»

հրամայեց Սուրան քանդել կործանել[88]: Սակայն դիմադրութիւնը հազիւ թէ կէս ժամ տեւած էր. քաղաքացիք վստահութիւն չունէին անոր տկար պարիսպներու վրայ: Յուստինիանոս անյապաղ շինեց հաստատուն պատուարներ, նախապարիսպով մ'ալ. այն նախապարիսպներէն մին, որոնք կը գտնուին բիւզանդական բազմաթիւ բերդերուն մէջ, որոնց ետեւը պատսպարուելու կու գար խաղաղ ժողովուրդն իր հօտերով[89]:

Սուրայի դիրքը տարակուսական չէ. այս ապահովապէս այն աւերակոյտն է, որուն հանդիպեցայ Էլ-Համմամի արդի զօրակայանէն իբր երեք քառորդ կամ իբր մէկ ժամ հեռուն[90]. անկէ յետոյ չորս ժամու մէջ հասայ Ռակկայի դիմացը, — զոր յետոյ պիտի տեսնենք, — որ ընդհանուր կերպով կը համաձայնի Պեւտինգերեան Տախտակի տուած տեղեկութեանց հետ, այսինքն Սուրայէ Կալլինիկում տասը մղոն:

Քաղաքը լիակատար քանդուած աւերուած է. փլատակներու մէջ իբր արժէք ունեցող առարկաններ՝ գտայ միայն սպիտակ

---

88 Պրոկոպ. ՊՊ. Բ, Ե, 26:

89 Նոյնը, Վասն. Շին. Բ, Թ, էջ 234:

90 Chesney առաջին անգամ ծանօթագրած է նոյնը, զանց ընելով մանրամասն քննութիւն մ'ընելը. Հմմտ. Ռիտտէր, Աշխ. Ժ, էջ 1080 եւն: Moritzի (անդ, էջ 29, ծան. 4) նկարագրութիւնն ալ ինծի շատ մեծ հաւանելով եղած ուսումնասիրութեան մ'արդիւնքն կ'երեւայ, որուն եզրակացութեանց սխալուած են բազմաթիւ կէտերուն մէջ հակառակ:

մարմոր է սիւներու քանի մը բեկորներ, խեցեաց բեկորներ՝ մանր փշրուած սփռուած են ամբողջ տարածութեան վրայ։ Սուրբ գետէն քիչ հեռու էր, այն կէտին վրայ, ուր դէպի արեւելք հոսելէ ետքը՝ յանկարծ թեթեւ անկիւն մը կը կազմէ դէպի հիւսիս։ Քաղաքը իր մեծագոյն երկայնութեան մէջ՝ ունէր ուղղութիւնն՝ հիւսիսային-արեւելեան-հիւսիսէն դէպի հարաւային-արեւմտեան-հարաւ, եւ այս դիրքին մէջ հռոմէական մղոն մը երկայնութիւն ունէր։ Գրեթէ ուղղանկիւն ձեւ մ'ունէր. սակայն հարաւակողմի լայնութիւնն ինծի աւելի մեծ երեւցաւ քան թէ հիւսիսակողմինը, եւ գրեթէ կէս մղոնի կը հասնէր։ Դարձեալ այս երկու կողմէն արտաքին փոսը (որ տակաւին պայծառ կ'երեւայ, ինչպէս նաեւ արեւելակողմը), քիչ մը կը խոտորի եւ կ'երեւայ թէ կ'երթար կը յանգէր ջրանցքի մը, որ գետին հետ կապուած էր։ Ինծի այնպէ՞ս երեւցաւ թէ Եփրատի մէկ բազուկը, որ այժմ ցամաքած է, բերդին շատ աւելի մօտէն կ'անցնէր. կարելի եղած ըլլալու էր պաշարման ատեն անոր ջուրը փոսը ողողելու գործածել։ Փոսը յանկարծ կը դադրի հիւսիսային ճակատին կէսին վրայ, որ նորանշան բան մըն է։ Ներկայ վիճակին մէջ փոսը 7էն մինչեւ 8 մետր խորութիւն ունի, եւ այն նախապարիսպը, որուն մասին Պրոկոպիոս կը խօսի, տեղ տեղ տակաւին շատ լաւ տեսանելի է։ Պա-

րիսպը կը բաղկանար, որչափ կ՚երեւայ, հողէն քիչ բարձրութեամբ կամարակապ փողանցքէ մը, 5—6 մետր լայնութեամբ, որուն ներքին ու արտաքին պատերը տակաւին հոս հոն պայծառ կը բնորոշուէին եւ մէկ մետր թանձրութիւն ունէին: Արեւելեան-հիւսիսային կողմի ամբողջ երկայնութեան կային շարք մը բոլորակ աշտարակներ, որոնց շառաւիղները մօտ վեց մետր էին եւ իրարմէ 50—55 քայլ հեռու:

Եփրատայ առջեւ եղող միջնաբերդը լիակատար քառակուսի մըն է՝ 145 մետր կողերով, որուն իւրաքանչիւր անկիւնը կլոր աշտարակ մ՚ունի: Իւրաքանչիւր կողին մէջտեղը՝ ի բաց առեալ, — ինչպէս ինծի երեւցաւ, արեւմտեան կողմը — կը կանգնէր ուղղանկիւն աշտարակ մը, որ լայնքին 20 մետր է եւ խորքին գոնէ տասն մետր մը: Հարաւայինը, որ ամէնէն նուազ կործանածն է, կարծեմ թէ նպաստեց ինծի վերահասու ըլլալու դռներուն յօրինուածին, որոնք այս եւ այն կողմէ կը բացուէին, բռնադատելով յարձակողն իր ուղղութիւնն երեք անգամ փոխելու՝ ներքնամուրին ներսը թափանցել կարենալէ առաջ. անցքը կամարակապ էր: Կոփածոյ քարերով արտաքին երեսները պատելու որեւէ հետք չկայ պարսպապատերուն վրայ՝ որոնց թանձրութիւնը 1 մ. 80 է: Ամէն բան խիճարով քարալիցք է, փոխնիփոխ թրծուն տափարակ աղիւսներով, որոնք շատ դիմացկուն

խճախառն կրաշաղախի մէջ դրուած են։ Միջնաբերդն ալ դարձեալ պատուած էր փոսով մը, որուն խորութիւնն իբր 12 մետր գնահատեցի։ Ան արեւմտեան կողմն այլեւս տեսանելի չէ, ուր ամբողջ քաղաքին շրջապատ պարսպին մնացորդներն ալ ընդհանրապէս շատ անորոշ են։ Ասոր փոխարէն հիւսիս-արեւելեան անկեան բոլորովին մօտը կը նշմարուի յառաջակաց փոքրիկ աշտարակ մը՝ 10 մետր կողերով։

Սուրայի չափ կարեւոր էր Նիկեփորիում Կալինիկում (Nicephorum Callinicum[91])։ Առաջինը կը նշանակէր Պաղմիւրայէ եկող ուղեւորներու ժամանման կէտը, երկրորդին կը յանգէր Եդեսիոյ ուղին՝ որ միջոց մը կը հետեւի Եփրատի մէկ օժանդակին՝ Բելիխ գետին[92]։ Խնդիր կը ծագի նախ թէ ա՛րդեօք այս երկու անունները՝ զորոնք իրարու կը կապենք, ճիշդ միեւնոյն քաղաքը կը ցուցնեն։ Այս իրողութիւնն ամենամեծ հաւանականութիւնն ունի, թէպէտ եւ հակառակութիւն ալ կրած է, եւ բուն անուան փոփոխութիւն մը միայն է։ Նիկեփորիում, որուն կը

[91] Nicephorium Պտղեմէոսի քով, Են. Գամ. Ե, 86, Չ, 119. Νικηφόριον Ստրաբոնի քով, ԺՉ, 1, 33, էջ 747 c. Այս արդեօք նո՞յն է այն տեղւոյն հետ, զոր Պլինիոս Փիլիսկում կ'անուանէ, իբր մակեդոնական անունէ՞ն, «Սուրայէն մօտ է Փիլիսկում՝ Պարթեւաց քաղաքն Եփրատի վրայ»։

[92] Ասոր հնագոյն անունն է Belios. Իսիդոր Քարակեցւոյ քով Բելեխա. Ապպիանոս եւ Պղուտարքոսի քով Բալիսսոս։

հանդիպինք դրամներու վրայ մինչեւ Գաղերիայ ժամանակը, Վերին-կայսրութեան օրերու անուանակոչութիւն մըն է: Յետոյ անունս անհետ կ'ըլլայ, եւ այնուհետեւ կը յիշուի միայն Կալլինիկոս կամ Կալլինիկում[93]: Ուրիշ կողմէ քաղաքս իր անունը յաճախ փոխած ըլլալու է, եթէ ստուգիւ Զ դարուն ստացած է Կոստանդիա անունը[94], եւ Ե դարուն (465/466ին) առած էր Լեւոնդոպոլիս[95] անունն, որ աւելի հիմնաւոր ալ կ'երեւայ:

Յուստինիանու ժամանակ Նիկեփորիումի համար կ'ըսուի թէ ըլլայ «հզօր ամրութիւն եւ վաճառականութեան ճոխութեամբ մեծագին[96]»: Բերդաքաղաքին բռնած մակերեսը շատ նշանաւոր եղած ըլլալու է: Ինքնակալն ու իր հզօր բանակը կրցան անոր մէջ բանակիլ վրանի տակ[97], եւ հոս հասան արաբացի

---

93 Թէոդորետոս Պատմ. Եկ., 26, «Կալլինիկոս մեծ բերդը». Լիբանիոս, Թղթ. 20՝ «Եփրատի վրայ կայան մը կայ Կալլինիկոս անունով»:

94 Ստեփան Բիւզանդացւոյ համեմատ: Տեսնել՝ FHG, IV, p. 526, Nr. 28, Կոստանդիանոսի պարզ երախտի՞քն էին. թէ վերանորոգութիւն մըն էր. չենք գիտեր:

95 Արդեամբք ալ Լեւոն վերաշինեց քաղաքը. Ժմնկգր. Եդես., Hallierի երկին մէջ՝ թիւ 70, էջ 116. Assemani, Bibl. Or. I, p. 405: Անոր դուքս մ'ալ տրուեցաւ, Արաբաց դէմ պաշտպանութեան առաջնորդ ըլլալու համար. (անդ, էջ 276): Հերոկղէս, Ուղեկց., 715, 1, «Լեւոնդուպոլիս որ եւ Կալլինիկէ»:

96 Ամմ. Մարկել. ԻԳ. 3, 7:

97 Անդ, 8, «կայանի մը մէջ բանակեցաւ զօրաց» բռնակալն՝ «մորթերու տակ կեցաւ». որով վրանները

իշխաններու մատուցած զօրավիգներն ու ընծաները: Այն երախտիքն, զորոնք քաղաքը պարտական էր Լեւոն կայսեր, թերեւս կը վերաբերէին թէ՛ քաղաքին պաշտպանութեան եւ թէ՛ գեղազարդութեան: Բայց յետոյ անխնամ թողուեցաւ, եւ Խոսրով Երրորդ պարսկական պատերազմէն վերջը՝ գրաւեց այս շատ մարդաշատ բայց անբաւականօրէն պաշտպանուած քաղաքը[98]: Հռոմայեցիք շատ մեծ անհեռատեսութեամբ՝ պարիսպները խախտած ու աւերած տեսնելով տակաւ քանդուած էին զանոնք, քարերն հետզհետէ ուրիշ պիտոյից համար գործածելով, եւ մտադիր էին զանոնք յետոյ ի հիմանց վերաշինել: Բայց Խոսրով հազիւ ժամանակ թողուց որ քաղաքին ամենահարուստ բնակիչներն իրենց գանձերը փախցնել տանիլ կարենան[99]: Յուստինիանոս աւելի լաւ հասկցաւ Պետութեան շահերը. ուստի վերանորոգեց պարիսպներն ու նախապարիսպները, եւ զանոնք՝ ինչպէս Պրոկոպիոս կ'ըսէ, անառիկ դարձուց[100]:

Այսպէս անառիկ եղած ըլլալու տպաւո-

---

կը պատէին ձմեռը: Պրոկոպ. Ծած. Պատ., 3, 31՝ «Խոսրով առաւ Կալլինիկոս բազմամարդ քաղաքը՝ առանց մէկէ մը պաշտպանուելու»:

99 Պրոկոպ. ՊՊ. Բ, 21, 31. Եւագր. Դ. 25:

100 Պրոկոպ. Վասն Շին. Բ, Գ, էջ 230: Յետոյ երբ Ոսմիզդ կը սպառնար՝ Մաւրիկ կայսրը Կալլինիկոս ապաստանեցաւ. (Թէոփիլ. Սիմոկ., Գ, 17, 8 յջ.): Ե դարուն զօրանիստ էր հեծելագունդի մը. (Notit. XXXV, 16):

րութիւն ամենեւին չեն գործեր պարիսպները՝ ի Ռակկա։ Աւերակները կիսաձուաձեւ մակերես մը կը ծածկեն, որուն ուղղութիւնն է արեւելքէ արեւմուտք։ Դիրքը շատ ամուր էր եւ Եփրատի վրայ կ'իշխէր[101]։ Նախնաբար շրջապատուած էր փոսով մը, որ շատ լաւ ճանաչելի է արեւելակողմը, ինչպէս նաեւ անոր հողապատն ու նախապարիսպը եւ շրջապատին որմախարիսխները դրեթէ ամէն կողմ պահուած են[102]։ Ասոնք չինութեան խնայողական ոճ մը կը ցուցնեն, զոր Միջագետաց բազմաթիւ աւերակավայրերու մէջ ալ կը գտնենք եւ որուն համար գիտենք որ բիւզանդական շրջանին մէջ սովորական էր. այսինքն՝ անթուրծ կաւէ խաւեր՝ փոխն ի փոխ աղիւսներու կարգածներու հետ. արտաքին երեսի դրուագն ալ կաւով կը ծեփուէր։

---

101 Գետն այսօր մէկ մղոն հեռացած ըլլալով՝ միջնաբերդէն անտեսանելի է։ Գիւղին բնակիչք ըսին ինծի թէ գետը յառաջ քաղաքին ստորոտէն կը հոսէր (ուր իրօք ալ այժմ ցամաքած գետանկողին մը կը տեսնուի), եւ թէ այս փոփոխութիւնը տեղի ունեցած է միայն 1899ին։ Սակայն արդէն տեղափոխուած էր 1883ին, երբ Սախաու անցաւ։ Իրաց հնագոյն վիճակը վերանորոգուա՞ծ էր արդեօք, եւ յետոյ դարձեալ անհետացած միջանկեալ ժամանակին մէջ։

102 Այդ տեղերն ու շրջապատը քիչ շատ բարձրութեամբ մնացած է, այնպէս երեւցաւ ինծի թէ պարիսպին ետեւը ջրուղւոյ մը հետքերն կը տեսնեմ, տեղ տեղ ալ բոլորաձեւ ծակեր կը նշմարուին, որոնք իրարմէ քիչ հեռաւորութեամբ բացուած են, ուր ագուցուած ըլլալու էին ծառի կոճղեր, որոնք որեւէ տախտակամած մը վեր կը բռնէին։ Շատ հաւանական է որ այն ատեն այս կողմերը փայտն այնչափ ցանցառ էր ինչպէս այսօր։

Ճիշդ է թէ այս ամէնը, եթէ խոր քննենք, կրնայ արտաքական նորոգութենէ մը յառաջ եկած ըլլալ, համաձայն այլ այն արձանագրութեան, որ հոն գտնուած է եւ որ կը յիշէ Սուլէյմանի մը շինութիւնները: Այն ատեն կը հասկնանք թէ ի՛նչպէս կ'ըլլայ որ շրջապատութեան այլեւայլ տեղեր, ամէն մէկ երեսուն քայլին՝ երեւցող աշտարակներուն մէջ կը տեսնուի հատ մըն ալ տարբեր տիպարով, բոլորակաձեւ, որուն խարիսխը սպիտակ մարմարէ մեծ քարակտորներով է, շրջադարձ սանդուխով մ'ալ, որ այժմ լեցուած խցուած է սիւներուն եւ խոյակներու հատակտորներով եւ յունական-հռոմէական շրջանի պէսպէս բեկորներով[103]:

Սախաու շատ մօտ տեղ մը, իբր երկու ժամ հեռու դէպի արեւմուտք, կէտի մը վրայ՝ որ այսօր Կալաատ-Հարազլա կը կոչուի, գտած է աւերակավայր մը միջակ տարածութեամբ, որ քառակողմ մը կը կազմէ եւ ուր տեսած է շատ բարձր ու ամուր պարիսպներ՝ շինուած գանձաքարի ստուար, անկանոն կտորներով, եւ որմադրուած հողի եւ մանրախճի խառնուրդով մը, որ Բիւզանդեանց սովորական շաղախն էր: Պարիսպներն իրենց ամբողջ շրջապատութեան մէջ ամրացուած են ներքնանկուղներով, եւ շատ նկուղներ դեռ մատչելի են: Թերեւս այստեղ

103 Հմմտ. Սախաու, անդ, էջ 242:

զետեղելու ենք այն Մաւբէ (Μοῦβαι) տեղը, զոր միայն Պաղոմէոս կը յիշատակէ[104], Նիկոպոլիսէն քիչ մը հեռու: Սախաու զայս դղեակ մը կը համարի, որ սահմանուած էր Եփրատի անցքը պաշտպանելու, որ այստեղ շատ դիւրին էր[105]: Այս ուրեմն յրումն էր պաշտպանութեան Սուրայի կամ Նիկեփորիոնի համար:

Բելիասի գետախառնուրդէն մինչեւ Արաբասի գետախառնուրդը Եփրատ բոլորակ աղեղ մը կը գծէ, իբր 180 քիլոմետր երկայնութեամբ: Թէ մի եւ թէ միւս կողմէն անապատն է. գետին եղերքները միայն բանակի մ'անցք կրնան տալ: Ուստի անհրաժեշտ չէր գետին ընթացքին այս մասին վրայ բազմաթիւ դղեակներ կանգնել, եւ անոր համար զարմանալի չէ որ այս կողմը շատ քիչ աւերակներ գտնուած են[106]: Պէտք էր միայն

---

104 Պտղոմ. Ե. 17, 5:

105 Սախաու, անդ, էջ 245. «Հռոմէական դղեակները յիշեցուց ինծի, զորոնք Ասորիքի մէջ տեսայ եւ որոնց շինուածոց ամրութեան կը հաւատարի, ուստի անշուշտ հռոմէական-յունական ժամանակի շինուածք մըն է եւ ո՛չ արաբական միջին դարուն»: Պէ՞տք է Haragla թարգմանել Հարակլէա. Հմմտ. Մորից, անդ, էջ 30:

106 Կ'երեւայ թէ Հռոմայեցիք անտես ըրած են Գալաբաթա, Քուբանա, Թիլլադա, Միրհադա, Բասիլիա, Շամիրամայ փոսերը, Պարթեւական կայանները, զորոնք կը յիշէ Իսիդոր Քարակեցի: Սակայն այս տեղ յառաջ կը բերեմ օրագրութեանս յաջորդ տեղեկութիւնը. «Ռակկայէ մեկնելէն ետքը հինգ ժամ չուելով հասայ Fatsa գիւղը (վրաններու պարզ գումարում մը): Ճիշդ հարաւակողմը դիմացի (աջ) ափին վրայ կը

նպաստաւորագոյն դիրքերն ընտրել, եւ այս մեծ մտատանջութիւն չէր պատճառեր։ Նիկեփորիումէ մինչեւ Կիրկեսիում գետափերը տափարակ ու ցած են. գետը հարթավայրին մէջ անհատնում մանուածապատ շրջաններու մէջ կը յածի կը մոլորի։ Միայն երկու տեղ հովիտը կ'անձկանայ եւ հոսանքի վրայ թերուղիղ կը կանգնին խարակափերը։ Արշաւող մ'անկէ ստիպուած էր անցնիլ, եթէ դարտուղի շրջաններ չէր ուզեր ընել անապատի աւազներու մէջէն, ուրեմն հոն պատշաճ էր անոր դէմ արգելք մը կանգնել։

Ճիշդ այս ճամբուն հետեւելով Խոսրով 531ին ձեռնարկեց իր արշաւանքը[107]։ Իրեն հպատակ Սարակինոսաց ցեղապետը Ալամուղար՝ յայտարեց թէ Միջագետաց եւ Ասւ-հայաստանի այն քաղաքները, որ սահմանագլխի վրայ են, շատ աւելի ամրացուած են քան որ յառաջ էին, բայց Եփրատի միւս կողմը եւ Ասորիքի մէջ ո՛չ ամրավայրեր կան եւ ոչ բազմաթիւ զօրապահակներ, քանի որ պարսկական որեւէ արշաւանք մ'այս ուղին չէ ընտրած։ Խոսրով համոզուեցաւ, յառաջացաւ գետին ուղղութեամբ՝ Կերկեսիումի եւ

---

նշմարեմ ոչ շատ մեծ տարածութեամբ աւերակներ, որոնք կը սահմանափակուին երկու մեծ աշտարակներով, ատոնք խարակափին բարձունքէն կ'իջնեն Եփրատի վրայ։ Ինծի ըսին թէ ամրոցին ադիւսով եւ քարով է։ Դիտակով զննելով ա՛յնպէս կ'երեւայ թէ այս աւերակներն արաբական շրջանէն հնագոյն են։

[107] Պրոկոպ. ՊՊ. Ա, 17, 34 եւն։

Կալլենիկումի վրայէ, առանց ծանր արգելքի մը[108]: Սակայն այն տեղ կային պաշտպանողական շինուածքներ. միայն թէ Պրոկոպեայ[109] մեկնաբանութենէն չենք կրնար ապահովաբար ըսել թէ ասոնք ի գլուխ հանուած էին պատերազմէն առա՞ջ թէ ետքը. այսու հանդերձ անկէ անագանագոյն կ՚երեւան:

Ոդենաթոսի՝ Պալմիւրայի իշխանին կինը այս ամուլ կողմերուս մէջ փոքրիկ քաղաք մը ստեղծած էր, որուն Զենոբիա անունն ալ տուած էր: Հռոմայեցւոց երկարատեւ անհոգութեամբ պարիսպները տապալեցան եւ բնակիչները ցրուեցան: Յուստինիանոս ի վերջոյ ի հիմանց վերաշինեց Զենոբիան, հոն գաղթականներ հրաւիրեց, եւ կանոնաւոր զօրաց գունդ մը հոն զետեղեց: Քաղաքին չորս կողմը բարձրացող քարաժայռերէն թըշնամին կրցած էր նետաձիգ ու քարընկեց ըլլալ պաշտպանողներու վրայ վերէն դէպի վար: Ինքնակալն ասոր դարման տանելու համար, պատնէշներուն եւ այս արտաքին մարտկոցներու միջեւ եղած նեղ անջրպետին մէջ պարիսպներու կատարին վրայ բարձրացուց լանջորմ մը — անտարակոյս ժայռաւոր, — որ կը պատսպարէր այն տեղ կեցողները:

108 Մաղաղաս, ԺԸ, էջ 461, Հրտ. Բոնն., Պրոկոպ. Վ. Շին. Բ, 8, էջ 234:

109 Յուստինիանոս այս շինութեանց համար գործածած է նոյն ժամանակի երկու մեծահռչակ ճարտարապետներ՝ Իսիդոր Մելիտացի եւ Յովհ. Բիւզանդացի:

Եփրատ արեւելեան պատնէշին ստորո-տէն կը հոսէր կ'անցնէր նեղ ու գահավէժ դարափներու մէջէն, եւ յորդելու ժամանակ կը խորխոլէր պարիսպները, խարսխորմերը խարխարելով եւ տղմաթաւ ընելով մինչեւ դագաթը: Քայքայած պարիսպները կը սպառնային կործանիլ. անոր համար հզօր երկանաւէմ քարերով ահագին թումբ մը շի-նուեցաւ, որ բովանդակ ճակատը կը ծած-կէր եւ որուն ալիքները չէին կրնար վնասել: Մեծ պարիսպին հիւսիսային մասը, որ դարե-րու ընթացքին քայքայած էր, վար առնուե-ցաւ, ինչպէս նաեւ փոքրիկ նախապարիսպը եւ վերաշինուեցաւ ուրիշ կերպով: Հիմերը փոխուեցան այն ձորէն անդին, որ շրջապատ որմածին բոլորը կը դառնար: Իշխող բլուր-ներէն մին, որ ամէնէն մերձաւորն էր՝ արեւմտեան կողմը, ներս առնուեցաւ եւ գա-գաթին վրայ պարիսպ մը կանգնուեցաւ: Միայն անկէ անդին դարձեալ սարահարթը կը սկսի՝ Արեւելքի հանդէպ:

Այս ճշգրիտ նկարագրութեամբ Զենո-բիայի տեղը կրնանք գտնել Հալեբիյէ (Hale-biyé) աւերակավայրին մէջ, ուր պարիսպնե-րու եւ աշտարակներու հետքերն եռանկիւնի բերդ մը կը ցուցնեն. ամենակարճ կողմը զուգահեռական է գետին, քաղաքին ամենա-մեծ տարածութիւնը փռուած ըլլալով արեւմտեան կողմը, դէպի բլուրը, որ ուշ ժամանակ ներս առնուեցաւ: Ամբողջը դաճա-

քարէ մեծ քարակոտորներով շինուած կ'երեւայ:

Հալեբիյէի [110] մօտ Էլ-Հիլու սարահարթը անկիւնով մը դէպի գետ կը յառաջանայ: Ձախ ափին վրայ Համմէ (Hammé) սարահարթին աւելի երկայն պատուար մը կը բարձրացնէ, որուն երկու ծայրերն ալ հին աւերակներու կը յանգին: Հիւսիսակողմինն է Գաբր'էլ-Աբու Ատիկ, ուր շատ տուներու որմախարիսխները կը գտնենք, մասամբ գաճաքարէ՝ բայց մանաւանդ երկաթաքարէ: Հարաւակողմը կան Զալեբիյէի [111] նուազ ընդարձակ աւերակները, կարծես պարզ բանակատեղ մը, տակաւին տեսանելի պարիսպներով ուղղակաց քարաժայռի մը գագաթը [112]:

Հովիտին երկրորդ անձկացումը [113] քիչ մ'աւելի խոնարհակողմն է: Հարաւէն վրան կ'իշխէ 250էն 300 ոտք բարձրութեամբ ափնախարակ մը, բնական ամրութիւն մը, որ

---

110 Սախաու (էջ 258) կու տայ Զենոբիայի եւ անոր շրջակայից յատակագիծը:

111 Շտրէք (Պաւլի-Վ. Յաւել. ի բանին Annukas) կ'առաջարկէ այս Զալէբիյէն նոյնացնել Աննուկաս տեղւոյ հետ, որուն մասին Պրոկոպ. (Շին. Բ, 6, էջ 227) կ'ըսէ պարզապէս. «Կիրկեսիոն բերդէն անդին է հինը՝ Աննուկաս անուն». աւելցնելով թէ Յուստինիանոս «շքեղութեամբ» նորոգեց անոր կէս-աւերակ պարիսպները: Աննուկասի արամերէն նշանակութիւնը («խեղդ, խեղդում») կրնար պատշաճիլ Զալեբիյէի դիրքին:

112 Սախաու, էջ 255—257:

օգտին գործածուած է։ Տաքուս կոչուած տեղը մեծայաղթ շրջապարիսպ մը կար, որուն մէջ մտնել կարելի չէր բայց եթէ դէպի արեւմուտք հայող դռնէ մը, զոր կը պաշտպանէր հզօր աշտարակ մը։ Ուրիշ աւելի փոքր աշտարակ մը, որ այժմ կործանած է, անկէ քիչ մը հեռուն՝ առջեւը կանգնած էր եւ յառաջապահ մըն էր։ Պատերն շինուած են անկանոն մեծ վիմաքարերով, իրարու որմադրուած այն բրդակաւով, որով ծեփուած է նաեւ արտաքին երեսը։ Տաքուսի ինչպէս նաեւ Տիգրիսի ու Եփրատի աւազաններուն ուրիշ մասերուն մէջ ալ կաւի առատութիւնը կը ճանչցուի նաեւ խեցիներու եւ աղիւսի բեկորներու ճեղքակոյտներէն։ Սարահարթին գագաթնակէտն արեւելակողմն է՝ գետին դիմաց յաջող դիրք մը, որուն վրայ կը հանգչէր վերնաբերդ մը։ Սախաու, որուն կը պարտինք այս տեղեկութիւնները[114], կը կարծէ թէ կրնայ այս աւերակները նոյնացնել Պտղոմեայ Դաբուսա (Δαβοῦσα) տեղւոյն հետ[115], անշուշտ անուանց պատիր նմանութեան պատճառաւ։ Սակայն Պտղոմեայ տեղեկութիւնները Դաբուսան աւելի Միջագետաց սիրտը կը դնեն[116]։

---

113 Կրկին անձկավայրերուն պատկերն ալ տուած է Սախաու (անդ)։

114 Սախաու, էջ 267 եւն։

115 Պտղոմ. Ե, 17, 7։ — Այսպէս Շարէք, առ Պաուլի-Վ. Յաւել.։

116 Երա խօսելով կ'առաջարկէ Մամբրի.

Այսչափ վարանք չենք զգար այն մեծամեծ աւերակաց հանդէպ, որոնք Արածանի եւ Եփրատի գետախառնուրդին վրայ խիտ առ խիտ կուտուած են։ Հոս առաջնորդ կ՚ըլլան այլեւայլ հեղինակներ. կը հանդիպինք Գեւտութեան ծագը, Կիրկեսիումի հռոմէական կարեւոր զօրակայանին[117]։ Այսօր ալ Եփրատ հոն տեսակ մը կիսաբոլորակ կը կազմէ, եւ Խաբուր[118] ալ դէպին աջակցելով մանուա–

---

կործանած բերդը, զոր Յուստինիանոս վերանորոգեց։ Անկէ ճամբայ ելլելով Զենոբիա կը հասնուէր հինգերորդ մղոնին (Պրոկոպ. Վ. Շին. Բ, 8, էջ 232)։ Դիրքը կը յարմարի, կը պակսի հեռաւորութեան անջրպետը։ Տարաւէն քիչ մ՚անդին կը գտնուի Դէիր չատ կարեւոր աւանը։ Ֆիշէր (էջ 1014) կը կարծէ թէ կարելի է զայն նոյնացնել Պտղոմեայ (Ե, 18) Դադիրթա տեղւոյն հետ, նշանակուած աստղագիտական դիրքին պատճառաւ, եւ Պեւտենգերեան Տախտակին Dertaի հետ՝ հեռաւորութեանց չափաթիւերուն պատճառաւ (եւ հաւանօրէն նաեւ անուանակոչութեան համար)։

[117] Ամմ. Մարկել. ԻԳ, 5, 10 «Ապահովագոյն ամրութիւն եւ ճարտարութեամբ յարդարուած, որուն պարիսպները կը պատեն Աբորա եւ Եփրատ գետերը, կղզիակերպ վայր մը ձեւացնելով»։ Նաեւ Պտղոմէոս (Ե, 17, 8) զայն Քաբորա կը կոչէ. հմմտ. Le Quien, Or. Chr. II, 1487 յլ.)։ Բայց թերեւս, կ՚ենթադրէ Ֆիշէր (էջ 1003) Քաբորա այն արուարձանն էր, որ օժանդակ գետին ձախ ափին վրայ նստած էր։ Նոյն նկարագրութիւնն է Զոսիմոսի քով ալ (Գ, 12, 3). «Այս բերդը կը շրջապատուի Աբորա եւ Եփրատ գետերէն. եւ Ասորեստանեայց լեռներն ալ իրարու կը համակցին»։

[118] Այս գետն է Քսենոփոնի Երասխ (Araxes) կոչածը. Աբուրաս ('Αβούρας) Իսիդ. Քարակեցի. Աբոռրաս ('Αβόρρας) Ստրաբոնի քով, ԺԶ, 1, 27, էջ 747 c. 'Αββορρᾶς Պտղոմէոս, ԳԳ. Բ, 5, 2. Մագնոս Կարխացի եւ Մաղաղոս (տես վարը), Յովհ. Եպիփան (FHG, IV, էջ 275, հատուա. 4). Քաբորաս (Καβώρας)

ծապատ շրջաններէն մին կ'երկարաձգէ. գետաջրերը Թերակղզի մը կը պարփակեն, որ բաւական նեղ պարանոցով մը միայն կապուած է Միջագետաց Մնացեալ մասին հետ:

Կիրկեսիոն երկար ժամանակ Պարսից կը վերաբերէր, որոնք զայն ամրացուցած էին[119]: Բայց անոնց գործն պէտք էր լրացնել. այս իմաստով մեկնելու է Պրոկոպեայ խօսքը[120]. «Դիոկղետիանոս Թագաւորը նոյնն առաջին անգամ չինեց»: Եւ նոյն հեղինակին

---

Պտղոմեայ քով, Ե, 7, 13. Բուրաս (Βούῤῥας) Էղիէնայ քով (de nat. anim. XII, 3) Աբբորա (Ἀββόρα) Թէոփիլ Սիմոկ. Գ, 10, 25. Աբորրոս (Ἄβορρος) Ստեփ. Բիւզանդացի (տես. ի բառին Ῥεσινα). Պլինիոս Բն. Պատմ. ԼԱ, 37 կը գրէ Chabura. Պեւտինգ. Տախտակին մէջ կը կարդանք Fons Scabore, որ կ'երեւայ թէ ամէնէն աւելի արեւմտակողման առաջը կը նշանակէ: Խաբուր գետը կը կազմուի բազմաթիւ օժանդակներու միանալովը, որոնք արդէն հնութեան ժամանակ անուններ ունէին, բայց առանք հազիւ թէ կարելի ըլլայ այսօրուան անուններու հետ նոյնացնել: Գլխաւոր բազուկը կ'անցնի Ռեսէնայի քովէն, ուրիշ մը կու գայ Դարայէ (Կորդէս կոչուածը Պրոկոպեայ, Շին. Բ, 2, էջ 214). չորրորդ մը Մծբինէն, (Թերեւս Saocoras կոչածը Պտղոմէոսի, Ե, 17, 3), անտարակոյս տարբեր շրջանի հեղինակներու Միւգդոնիոս անուանածը, վասն զի Մծբին նախ կը կոչուէր Միւգդոնեան Անտիոքիա, հմմտ. Յուլիանոս, ճառ Ա—Բ, 27 B, 62 B, Մնացեալներէն յիշենք այն օժանդակը, որ Սինգարայի կողմերէն կու գայ: — Հմմտ. Ռիտտեր, Աշխ. ԺԱ, 253—265. Ainsworth, Narrative, I, p. 331—345. Շտրէք՝ առ Պաւլի—Վ. Յաւել. Ա (1903) 5 եւ 280:

119 «Կիրկեսիոն զղեակ... Պարսկաստանի ծայրը»: Կապիտողինոս, Գորդ. Գ, (վերջը):

120 Պրոկոպ. Վասն Շին. Բ, 6, էջ 226. Հմմտ. ՊՊ. Բ, 5, 2, 3:

Համեմատ Դիոկղետիանոս ալ տակաւին բոլորովին որմափակած չէր Կիրկեսիոնը, կանգնած էր պարիսպ մը որ թէ՛ այս եւ թէ՛ այն ծայրէն կ'երթար ու կը յանգէր Եփրատ գետին, իւրաքանչիւր ծայրն ալ աշտարակով մը. բայց գետին կողմէ քաղաքը բոլորովին բաց թողուած էր, անշուշտ այն համոզմամբ թէ հոսանքն ինքնին բաւական պաշտպանութիւն մըն էր: Կամաց կամաց աշտարակներէն մին, որ հարաւային հովին դիմացն էր, կրծուած էր գետի ջրերէն ու կը սպառնար տապալիլ: Պատնէշներու ամբողջութիւնն ալ անխնամ թողուած էր Դիոկղետիանոսէ ետքը: Գիտենք որ այս կողմէն երբեք արշաւանք մը կատարուած չէ այն վերջին դարերուն մէջ, որոնց պատմութիւնը կրնար Պրոկոպիոսի ծանօթ ըլլալ: Յուստինիանոս աշտարակը նորոգել տուաւ մեծայաղթ վիմաքարերով եւ լրացուց շրջապարիսպը՝ Եփրատի եզերքին ալ հարկաւոր պարիսպը շինելով: Վերջապէս աւելցուց նախապարիսպ մ'ալ, եւ բնակութեան այսպիսի տխուր եւ կիզիչ կլիմայի մը խստութիւնները մեղմացնելու համար, բարեկարգեց պահակազօրաց բաղնիքի սպասարկութիւնը: Այսու հանդերձ դժուար է իմանալ թէ երբ կատարուեցան այս աշխատութիւնները, թէ՛ արդեօք Խոսրովի անցման նախընթաց էին թէ անոր յաջորդեցին, — վերջինս աւելի հաւանական լուծումն է: Պրոկոպիոս կ'ըսէ միայն թէ ար–

քայն չհամարձակեցաւ քաղաքն առնելու փորձ ընել․ այս առթիւ կը յիշէ Դիոկղետիանոսի մեծ պարիսպը, — որ Թերակղզւոյն գրեթէ եռանկիւնի ձեւ մը կու տայ։

Սախառու այցելած է այս աւերակները (El-Bousera)։ Փլատակներու հանգամանքն իրեն խորհիլ կու տայ թէ քաղաքին յատակագիծն երկայնաձեւ էր․ տասնուհինգ վայրկեան պէտք է անոր ամենամեծ երկայնքը կտրելու համար։ Այժմ ամբողջը համապանդուած մըն է հողի, աղիւսներու եւ խեցիներու․ սակայն հարաւ-արեւմտեան անկիւնը կը տեսնուի թանձր պատերով աշտարակ մը, բոլորշի ու խորամէջ, անտարակոյս այն՝ զոր Յուստինիանոս նորոգեց։ Կատարը կ'ելլեցուէր ներքին սանդուխով մը։ — Նոյն ուղեւորն ատկէ քիչ մը հեռուն, հիւսիսային ճակատը պաշտպանող պարիսպին դիմացը նշանակած է ուղղանկիւն շինուած մը, որուն բաւական բարձր պատերը տակաւին կանգուն են, գրեթէ իր ամբողջ շրջապատութեամբ։ Ասոնց թանձրութիւնը շատ մեծ է, բայց կառուցանելու համար գործածուած է միայն շաղախ ու չորեքկուսի աղիւսներ։ Փլատակներու չեղջակուտուելովը ներքին սենեակները գետնափորներ եղած էին, ուր միայն սողոսկելով մտնել կարելի էր։ Այստեղ դղեակ մը կար[121], իրօք ալ չենք կրնար

121 Անդ, էջ 286—288․ «Այս շինուածը, որուն յատակագիծը չկրցայ ճանչնալ փլատակակոյտին պատ-

*համարիլ թէ զօրանոց մ'եղած ըլլայ պահակազօրու համար, որ յաճախ շատ բազմաձեռն կ'ըլլար: Երբ Յուլիանոս Եփրատի ուղղութեամբ իջնալով Կիրկեսիոնէ անցաւ, հոն հաստատուած գտաւ 6000 զինուոր, եւ ամենեւին չուզելով իր կռնակը զօրաթափուր թողուլ երկիրը, անոնց վրայ աւելցուց 4000 հոգի ալ, երկու վեցերորդապետներու հրամանատարութեան ներքեւ*[122]: Տեղեկ. Աստիճ. *դրոց համեմատ Կիրկեսիոն կը նստէր* Դ. Պարթեւական *լեգէոնին վերակացուն (լեգէոնապետը*[123]*): Բայց նոյն ժամանակ տիրող սովորութիւնը՝ լեգէոնները չափազանց մանրաբաժանելու, չի ներեր որ կարենանք ամբողջական զօրագումարը գուշակել: Սակայն ժամանակի ընթացքին շատ նուազած ըլլալու է այն, վասն զի հարկ եղաւ որ Յուստինիանոս կրկին աճեցնէ եւ գլուխ կարգէ կարեւոր պետ մը՝ դուքս մը:*

*Այն նշանաւոր դերը, որ Կիրկեսիոնի վիճակուած էր կատարել, այնչափ մեծ չ'երեւար մատենագիրներու ընթերցումէն, որչափ այդ տեղերու այցելութենէն: Այս քաղաքն, որ մեծատարած է, տակաւին կը շրջապատուի ուրիշ աւերակներով եւ աղիւսակերտ*

---

*Եառաւ., կը համարիմ թէ քաղաքաբաժնին մէջ գտնուող հռոմէական դղեակ մըն էր»:*

122 *Մաղաղաս, էջ* 328, 20, *հրտ. Բոնն. (Մագնոս Կարխացւոյ եւ Եւտիքիանոս Կապպադովկացւոյ համեմատ.* FHG, IV, 4, 5):

123 Not. Or. XXXV, 24:

բազմաթիւ աշտարակներով: Հարաւ-արեւելեան կողմը, Կուբբէտ-էլ-Իմամ-Ալի կոչուած տեղը՝ ուրիշ աւերակավայր մը կը ցուցնէ հին ընդարձակ բնակավայրի մը տեղը[124]: Դիմացը՝ Եփրատի միւս ափը, Ռահաբա կոչուած տեղը, ուղղաբերձ քարաժայռի մը վրայ բերդ մը կայ, աւելի ճիշդ երկու բերդեր կան, երկուքն ալ շըրջափակուած: Առաջին պարիսպը զօրացուած է չորեքկուսի աշտարակներով, իսկ ներքինը կամարադործ է եւ ներքնանկուղներով ամրացուած, մասամբ գաճաքարի անկանոն քարակտորներով, մասամբ չորեքկուսի մանր աղիւսներով, որոնք շաղախի մէջ թաթաւած են[125]: Վերջապէս Աբորաս գետին հետեւելով քանի մը մղոն՝ կը նշմարուին դարձեալ քանի մը հողաբլուրներ խեցիներով ծածկուած: Հրապուրիչ է մտածել թէ այս մնացորդները Կիրկեսիոնի հարաւակողմն ու արեւելակողմը գտնուած ըլլալուն՝ յայտնապէս պարսկական կամ արաբական ամրաշինութիւններէն ծագած են, թէպէտեւ շինողութեան ոճն ա՛յնպէս է որ կրնանք սխալիլ ու Հռոմայեցւոց գործեր համարիլ:

Բաղձալի էր այս ամբողջ համախումբին մանրամասն յատակագիծն ունենալ: Կիրկեսիոն երկճղման կէտն էր վաճառականական ուղիներու: Հնդկաստանէն եկող կարաւան-

---

124 Սախաու, էջ 286:
125 Անդ, էջ 279:

ները, որ Եփրատի ընթացքին կը հետեւէին, երբեմն անկէ կը բաժնուէին՝ ուղիղ դէպի Գաղմիրա հասնելու համար։ Աբորասի վրայ ձգուած էր այն կամուրջը, զոր Յուլիանոս կտրել տուաւ։ Վերջապէս Կիրկեսիոն հռոմէական վերջին պահակերանոցն էր։

## ԳԼՈՒԽ Գ.

## Տիգրիսէն Եփրատ, Միջագետաց ուղիները եւ բերդերը։

Գրեթէ բացարձակ է մեր տգիտութիւնն այն պաշտպանողական շինութեանց մասին, որոնք թերեւս կը պատսպարէին Արաբաս գետին ափերը։ Գուցէ մտածուի թէ զուր աշխատանք մըն էր, ամբողջ երկիրն անապատ ըլլալուն[1]։ Սակայն Օպպէնհայմ[2] այս գետին վրայ Սաւար կոչուած տեղը[3] Կիրկեսիոնէ իբր 40 քիլոմետր հեռուն, գտած է աւերակներ, որոնք ուղղանկիւն տարածութիւն մը կը ծածկէին հիւսիսէն հարաւ, 150 քայլ լայնութեամբ եւ 150էն մինչեւ 200 քայլ երկայն, մէջտեղն երկայնաձիգ գոգաւորութեամբ մը։ Կը կռահենք թէ բանակատեղ մըն է. ցայժմ տեսանելի մնացած աւերակներն արաբական ժամանակէն կ'երեւան, բայց

---

[1] Միւս կողմէ ճիշդ է թէ երկրաշարժները հոս մեծ աւերներ գործած են. Ը դարու ժամանակագիր մը կը յիշէ երկրաշարժ մը, որ կործանեց Խաբուրի վրայ երեք քաղաքներ. (Assemani. BO, II, p 311)։ Հաւանական է անշուշտ գետին վերին ընթացքը կամ անոր օժանդակները։

[2] Oppenheim, Vom Mittelmeer, etc. II., p. 10—11։

[3] Սուրիացիները Feden կը գրեն անունը։

*Թերեւս ներքեւը բիւզանդական մ'ալ կայ*[4]: *Կը փորձուինք դարձեալ* Արբան *տեղը, — նոյն գետին վրայ, աւելի խոնարհակողմը — ուր քանի մը փլատակներ թաղուած են, նոյնացնել հին Արաբանայի հետ, ուսկից կը ծագէին «Տեղեկ. Աստ.» գրոց* «Հնծեյեայք աղեղնաւորք բնակք Արաբանեցիք[5]» *եւ որ կրնայ յիշեցնել Պտղոմեայ* Ակրաբա *տեղը*[6]:

*Գոնէ հարիւր մղոն ճամբայ ընելու է դարձեալ գտնելու համար հին մեծամեծ բնակավայրեր, արեւելեան եւ հիւսիս–արեւելեան ուղղութեամբ, եւ անոնք ալ գլխաւորաբար պարսկական քաղաքներն են: Ամէնէն հարաւայիններէն է* Հատրա *քաղաքը, որուն դէմ պարտասեցաւ սպառեցաւ Սեպտիմոս Սեւերոսի զօրութիւնն այն պաշարման ժամանակ, զոր այնպէս հետաքրքրաշարժ պատմած է Հերոդիանոս*[7]: *Աւերակները, որոնց երբեմն այցելած են Ռոս, Էնսուորթ*[8], *աւելի*

---

4 *Հետախոյզն այս հետքերը հանճարեղօրէն կը նոյնացնէ 'Απφαδάναյի հետ (Պտղոմ. Ե*, 17, 7): Fischer (*անդ*) *կը հակառէ տալով ընդունելի պատճառի* Seeck*ի կարծիքին, որ զայն կը շփոթէ* Ապատնայի *հետ* (*տես* Not. Or. XXXV, 25), *ուր ըլլալու էր Գ.* Պարթեւական լեգէոնը. *Հմմտ.* Streck (*ի Պաուլի–Վ., Յաւել. Ա*, 112):

5 Not. XXXVI, 25, *հմմտ.* Streck (*առ Պաուլի–Վ.*), *որուն միւս համեմատութիւնները բռնադատիչ չեն*:

6 *Պտղոմ. Ե*, 17, 7:

7 *Հերոդ. Սեպտ. Գ.* 9: — *Հմմտ. Ռիտտէր, Աշխ. ԺԱ, էջ* 461—492. *Ստեփ. Բիւզանդացի՝ 'Ατραι. Դիոն Կաս. 'Ατρηνοί*:

8 Ainsworth, Travels, II, p. 166—174:

վերջերս ալ բաւական ճշգրտութեամբ նկարագրուեցան[9], այնպէս որ կը նշմարենք — անգամ մ՚աւելի — շինողութեան կերպի այն մեծ նմանութիւնը, զոր ունին բիւզանդական մեծ ամրավայրերուն հետ: Ընթերցողին պարզապէս կը յանձնարարեմ յիշեալ ուսումնասիրութիւնը, վասն զի Հատրա միայն շատ կարճատեւ ժամանակ մը Երանեան տիրապետութենէն զերծ մնացած է:

Ուրիշ քաղաք մը կղզիացեալ դիրք մ՚ունէր, որ իբր երկու դար Հռոմայեցւոց կը պատկանէր, բայց որուն պահպանութիւնն անոնց համար դժբախտաբար շատ դժուարին էր. այսինքն Սինգարա[10]: Երկայն լեռնաշղթայի մը հարաւային դարին վրայ նստած, Աբորասի խոնարհագոյն ընթացքին մէկ երկարաձգման մէջ, Պետութեան պաշտպանողական շրջափակութենէն դուրս կը մնար եւ կերպով մը թիկունք կը դարձնէր Պետութեան: Մարկոս Աւրելիոս զայն գաղութ հռչակեց[11], եւ կ՚երեւայ թէ բազմաձեռն պահակազօր մը զետեղուած էր հոն: Երբ Շապուհ Կոստանդոսի օրով պաշարեց քաղաքը, զայն կը պաշտպանէին երկու լեգէոն-

[9] Ch. Jacquerel, Les ruines de Hatra. (ի Rev. archéolog. 1897, II, p. 343—352. (Յիշեալ թերթին մէջ տպաւորուած անուան ուղիղ ձեւն է Jacquerez):

[10] Պղին., Բն. Պտմ. Ե, 86; Դիոն. Կաս. ԿԸ. 22. Ստեփ. Բիւզանդացի τὰ Σίγγαρα:

[11] Eckhel, D. N. V. III, 519:

ներ Ա. Փղաւեան եւ Ա. Պարթեւական[12], բազմաթիւ բնիկներով եւ Սատար հեծելազօրով։ Սակայն Դ. դարուն լեգէոնները միայն նուազաթիւ զօրաքանակ մ'ունէին, եւ պահակազօրը բաւական չեղաւ քաղաքը պահպանելու, որ վերջնականապէս Պարսից ձեռքն ինկաւ։ Հռոմէական բանակին մեծագոյն մասը շատ հեռու տեղ մը՝ Մծբին՝ բանակած էր. պաշտպանողներն ընկճուեցան թշնամւոյն բազմութենէն եւ ջրոյ պակասէն, Սինգարա հիմնիվեր քանդուեցաւ[13]։

Կարելի եղած է անոր հետքերը գտնել արդի Նուագ ընդարձակ քաղաքին մէջ, որ է Սինջար կամ Բելէդ։ Հին պարիսպին, որ գրեթէ ամբողջապէս պատուած էր փոսով մը, արտաքին երեսը շինուած էր ուղիղ անկեամբ կոփուած վիմաքարերով, իսկ միացեալ մասը կը բաղկանար ամէն տեսակ քարերէ եւ հողէ։ Կ'երեւայ թէ մեծ հաստատութեան հետ ունէր նաեւ նշանաւոր բարձրութիւն մը։ Քաղաքին յատակագիծը չորեքկողմեան էր, ինչպէս սովորական էր, երբ տեղանքը չէր ստիպեր աւելի քմածին ձեւ մ'ընտրելու։

Երբ Հռոմայեցիք Պետութեան հետ ձուլեցին Ուռհայստանն ու Միջագետաց հիւ-

---

[12] Ամմ. Մարկել. Ի, 6. Քաղաքն առնուած ըլլայ՝ որովհետեւ նորաշէն աշտարակ մը, որուն շաղախը դեռ թաց էր, կործանեցաւ եւ պաշարողաց համար մեծ խրամատ մը բացաւ։

[13] Ամմ. Մարկել. Ի, 7, 1։

*սիսային մասը, վերջինս եղաւ, ինչպէս բնական էր, իրենց Պարսից դէմ մղած պայքարներու գլխաւոր ասպարէզը: Սասանեանք չէին կրնար համակերպիլ որ Հռոմայեցիք զայն հանգիստ վայելէին, եւ ամէն թագաւորի ատեն, կամ շատ քիչ բացառութեամբ, կռիւը կը վերսկսէր: Եփրատի եւ Տիգրիսի միջեւ եղած երկրի այս երկայն ու լայն շերտը կը կտրուէր երկու իրարմէ քիչ զուգախոտոր մեծ պողոտաներով, որոնց երկուքն ալ Նինուէի կողմէն (Մուսուլ) կը մեկնէին եւ կու գային կը յանգէին Զեւգմա: Ասոնցմէ մին Արարատի վերին ընթացքին կը հետեւէր, եւ ինչպէս Պեւտինգերեան Տախտակը կը ցուցնէ, կ՚անցնէր՝ տեղերէս՝* Ռեսաինա, Կարխա[14] *եւ* Բատնաս. *միւսին գլխաւոր հանգոյցներն էին՝* Մծբին, Դարա, Կոստանդիա, Ուռհա:

*Առաջինն աւելի կարճ էր, բայց աւելի անապատախառն եւ տօթակէզ*[15]*: Մուսուլէն*

---

14 *Սախաու՝ Կարխա հասնելէ քիչ մը յառաջ Եդեսիայէ գալու ատեն, հին ճամբու մը քանի մը հետքեր գտած է, որ իրեն այնպէս երեւցած է թէ ուղղուած էր դէպի Բիրեջիկ կամ Եւրոպոս (անդ. էջ* 217)*: Հաւանօրէն այս այն ճամբան է որուն վրայ կը խօսինք:*

15 *Ինչպէս ես ալ անձամբ դիտած եմ՝ Ուռհայաստան հակառակութեանց երկիրն է: Թէոդորետոս կը գրէ «հոն կան մեծամեծ ու բազմամարդ հին քաղաքներ, իսկ երկիրը թէ շատ բազմաբնակ է եւ թէ շատ անշէն ու անապատ» (Թէոդորետ. Պատմ. Եկ., Բ, էջ* 1305, *հրտ.* Migne)*: Բազմամարդ ովասիսներ ցանուցիր սփռուած են անմշակ տարածութեան մը վրայ:*

ելլելէն ետքը՝ Ջէբէլ–Սինջարի ղառիվայրներուն երկայնքին կ'ընթանար, կ'անցնէր Սինգարան, յետոյ արդի Սկենիյէ գիւղին[16] տեղւոյն վրայէն, եւ Պեւտինգերեան Տախտակի երկու կայաններուն՝ այն է Fons Scabore (Աղբիւր Սկաբորի) եւ Lacus Berberaci (Բերբերական լիճ)՝ մէջտեղէն կ'անցնէր այն կամուրջէն, զոր Օպպէնհայմ[17] վերստին գտաւ Էս–Սուֆայէ կոչուած տեղը, եւ որ ձգուած էր Դիագդիագ (Diagdiag) գետին վրայ, ասոր Խաբուր գետին միանալու կէտին շատ մօտ[18]. յետոյ կը հետեւէր այս վերջին գետիս ընթացքին դէպի Ռաս–Էլ–Այն ուղղութեամբ:

Թէ իմ անձնական դիտութիւններս թէ Օպպէնհայմի հետազօտութիւնք յոյս մը չեն ներշնչեր թէ սիրտ կարենանք երբեք քիչ մ'աւելի ճշգրիտ ծանօթութեան հասնիլ հին Թեսէնայի[18] նկատմամբ: Սեպտիմոս Սեւե–

---

Ընդհանուր առումով հիւսիսային մասն անհամեմատ լաւագոյն է քան հարաւայինը:

[16] Սախաու, էջ 324 եւն: Միւլլէր այստեղ կը դնէ Γιζάμα վայրը Պտղոմեայ (Ե, 17, 7. Պեւտինգերեանի Sizinus, Ռաւեն. Աշխ. 89, 9, Sichinus) որ բարդուած է ձեւերովս Թիլլազամանա կամ Թիլլազամարա, «Տեղեկ. Աստիճ.» գրոց (XXXV, 9 եւ 24) Ուռհայաստանի մէջ: Բայց Սկենիյէ աւելի Միջագետքի կուսակալութեան մէջն եղած ըլլալու է:

[17] Oppenheim, ի Zeitschr. f. Erdkunde XXXVI, p. 92; Byz. Z. XIV, p. 11:

[18] Նոյն իսկ գետախառնուրդին վրայ, Տէլլ-Հէսէֆէ կոչուած տեղը, անկերպարան աւերակներ կան, որոնց մէջ աւերուած թումբեր: Օպպէնհայմի համեմատ (Vom Mittelmeer etc., p. 23 յջ.) այս ըլլալու է Թաննուրիսի կամ Թաննուրիոսի տեղը (*):

րոսէն ի վեր հռոմէական գաղութ եղած[19] էր եւ Թէոդոսէ (Ա) երախտաւորուեցաւ, ինչպէս կը ցուցնէ անոր նոր յորջորջանքը՝ Թէոդոսիուպոլիս՝ զոր այն ատեն ստացաւ[20]։ Երկու քաղաքաց նոյնութիւնն երաշխաւորուած է «Տեղեկ. Աստիճ.» գրքէն, որ ժամանակաւ քիչ մ'անագանագոյն միայն ըլլալով, երկու ձեւերն ալ դեռ կը գործածէ՝ Resainae sive Theodosiopoli[21]։ Միւս կողմանէ Ռեսէնայի դերը միայն երկրորդական էր. անոր պաշտօնն էր «արգիլել Պարսից ասպատակները Միջագետաց վրայ[22]», այն շատ քիչ հաւանական պարագային, երբ Պարսից արքայն՝ Եփրատէն կամ Հաբորայէն գալով փոխանակ Տիգրիսի ափանց հետեւելու, ուզէր բռնաբար մտնել Ուռհայաստան Կարխայի եւ Դարայի մէջտեղէն։ Թէոդոսիուպոլսոյ պահակազօրը, Ե դարու սկիզբը, կը կազ-

---

[19] Ես միայն աւերակաց դաշտ մը գտայ, անկարելի է ճանչնալ միայն շրջապատը. բայց քաղաքը շատ ընդարձակածաւալ տարածութիւն մը կը բռնէր։ Տեղ տեղ երկաթաքարի հատակտորներ, գըլխաւորաբար դռներու բարաւորներ. բաց աստի մարմարեայ սիւներ ամենեւին չկան, զորոնք նշանակած էր Ռիտտէր (Աշխ. ԺԱ, էջ 379) եւ այն ի լրոյ միայն։

[20] Eckhel, D. N. V. III. 515. Mionnet, V. 630. — Պտղոմէոսէ տուած որեւէ յիշատակութիւն չկայ։

[21] Հիերոկղէս, 714, Գէորգ Կիպր. 895։ Բայց եղածը յատուկ իմաստով կառուցում չէր, Ուռհայի ժամանակագրութեան բառին հակառակ. (Halli-r, p. 102, թիւ 35, տարի 380/381. Մաղաղաս, էջ 345, հրատ. Բոնի. կ'ըսէ 383ին)։

[22] Not. Or. XXXV, 20. հմմտ. 4, Assemani, BO, I. p. 339։

[23] Պրոկոպ., Շին. Բ, 5, էջ 225։

մէին միայն «Հեծեալք յառաջացեալք Լիբիկեցիք[23]»։ Իրօք ալ քաղաքին սարոսէն կը քերէր կ'անցնէր վերին Արօրաս գետը[24], խոտորնակ կարող ճամբով մը, բայց անոր ետեւը կը դառնուէր Կոստանդիա[25], որ շատ աւելի նշանաւոր ամրավայր մըն էր եւ շատ աւելի բազմաձեռն պահակազօր ունէր։ Յուստինիանոս հանեց Թէոդոսիուպոլիսն այն անխնամ լքմանէն, որու մէջ կը ծիւրէր հնութենէն. նորոգեց շրջապարիսպին մեծ մասը, որ կը սպառնար կործանիլ[26]։

Միւս կողմէ որովհետեւ պէտք էր որ բաւական ընդարձակ գաւառի մը վրայ հրամայէր, օժանդակ տրուած էին անոր բաւական թուով արքանեակներ, զորոնք Պրոկոպիոս համառօտիւ կը կոչէ Թէոդոսիուպոլսոյ շրջակայ բերդերը[27]»։ Կը յիշէ Մագդալա-

---

[24] Այս զօրքերն էին «Միջագետաց դքսին տրամադրութեան ներքեւ», ուստի դժուարին է Rasainaի հետ նոյնացնել Rasin քաղաքը, ուր կայանաւորուած էին «Հեծեալք (աղեղնաւորք) Առաջին Ուռհայեցիք» տես Not. XXXV, 22 հմմտ. 11) «Ոսռհոյստանի դքսին տրամադրութեան ներքեւ»։ Սակայն այս կարծիքն ալ պաշտպանուած է. (տես Böcking, Adnot. ad Not. Or., p. 400, 17)։

[25] Ստեփ. Բիւզանդացի «Ռեսինա քաղաք Արօրաս գետին վրայ». հմմտ. Պրոկոպ., ՊՊ. Բ, 19, 20։

[26] Սակայն պէտք է նաեւ նշանակել թէ այս հատածին շատ կարեւոր չէր երեւցած հրամատարութեան միութիւնը։ Եթէ Ռեսէնա Միջագետաց մէջ թողունք, այս նահանգին եւ Ոսռհոյստանի միջեւ եղած սահմանագիծն այս քաղաքին բոլորովին մօտէն կ'անցնէր. եւ այս սահմանակից բերդերու շատերը Ոսռհոյստանի դքսին հրամանաց տակն էին։

[27] Պրոկոպ. Շին. Բ, 6, էջ 225։

քոն, *որ երկու յարակից մասեր ունէր, յե-տոյ* Բիսմիդէոն, Թեմերէս, Բիդամաս, Դաւսարոն[28], Թիոլլա, Փիլառ, Զամարաքաս, *կրկին* Թաննուրիոս *ամուրները, մեծ եւ փոքր*[29]: *Այս ամէն անուններէն միայն վեր-ջինը*[30] *կը գտնուի* «Տեղեկ. Աստիճ. *գրոց մէջ, իբր պահակերոց գնդին՝* «Հեծեալք աղեղնաւորք բնակք[31]» *եւ միայն տեղ մը կը նշանակէ փոխանակ երկուքի: Ուստի կրնայ մտածուիլ թէ Թաննուրիոսներէն մին Ե դա-րու նորակերտութիւն մըն է, եւ կամ գոնէ յառաջադոյն զինուորական պահակերոց մը չէր: Պրոկոպիոս կը յաւելու թէ Մեծ Թան-նուրիոս կէտ մըն է, զոր «Թշնամի» Սարա-կինոսները — այսինքն Պարսից ստորադա-սեալ եղողները, — դիւրաւ կրնային առնուլ,*

---

[28] *Արաբացի աշխարհագիրները* Dausar *կը գրեն, որով ներելի կ'ըլլայ զայն Նիկեփորիոնի ճամ-բուն վրայ դնել. (այս քաղաքս անդին վերջին կայանը)*: Fränkel, *առ Պաւլի-Վ.*:

[29] *Օպպէնհայմի տեսած աւերակները* (Byz. Z. XIV, 1905, p. 9) *այս տեղերն՝* Kasr-el)-Banât, Chou-eb-Châr, Kasr-eb-Moucherin, Serdyéchan, Tell-Koumar, *ապահովապէս առանց աղերսի չեն այս խումբին հետ. բայց հոս նոյն իսկ անուանանութիւնը չենք կրնար գործածել:*

[30] *Սակայն* Seeck *Զամարթասի համար համե-մատութեան կը բերէ «Վաշտ Ա. Եփրատական Սա-րաթաց»* (Not. Or. XXXV, 33) *Ոսրհոյենի մէջ: Պարզ ենթադրութիւն մը:*

[31] *Անդ.* XXXVI (*Միջագետք*) 28, *հմմտ.* 17: *Նշանակենք թէ «Թեւ առաջին նոր Դիոկղետեան ի մէջ Թաննուրեաց եւ Հորոբայ» (Որոբա*, 8, *Որաբա*, 20) *արդէն Ոսրհոյենի մէջ էր*, (XXXV, 34):

երբ անգամ մ՚անցնէին Արորաս գետը[32], ուսկից այնուհետեւ դիւրին էր լեռները (Տէկտէկ-դաղ) պատող թանձր անտառներու մէջ ցրուելով, անդադար նեղել բոլոր շրջակայից հռոմայեցիները։ Յուստինիանոս հոս հոյակերտ աշտարակ մը կանգնել տուաւ եւ հոն զետեղեց պահակագունդ մը։ Սակայն եւ այնպէս 578ին «Պարսիկները գրաւեցին Թաննուրիոս բերդը, — նոյնութիւնը տարակուսի տակ չէ, — ուր պահակազօր չկար[33]»։ Թէոդոսիուպոլիսը շրջապատող բոլոր այս կայեաններն անպարիսպ էին, կամ պարզ շրջափակ մ՚ունէին, որ ցանկապատի նման անզօր էր։ Յուստինիանոս զանոնք ահարկու դարձուց եւ բացի Պրոկոպիոսի յանուանէ յիշատակածներէն՝ ամրացուց նաեւ «Միացեալները, կրնանք ըսել ամէնքը[34]»։

Ոսեքենայի անունը պահուած է բառախաղով մը Ոսա-էլ-Այն արդի անուան մէջ· մեզի կ՚աւանդուի թէ այս քաղաքը ԺԴ դարուն վերջը Լէնկթիմուրէն աւարի առնուե-

---

32 Ահէ Օպպէնհայմի խիզախ նոյնացումը. (տես վերը)։

33 Մենանդ, 26, ի գիրս de Boor, Excerpt. de legat. gent. p. 469. (= Migne, PGL, CXIII, p. 836 D) Զաքարիա Հռետոր, Թ. 2, էջ 169—170։

34 Ասոնց թուէն կրնան եղած ըլլալ այն երեք տեղերը, զորոնք միայն Գէորգ Կիպրացի կը յիշատակէ (900—902ին), այսինքն՝ Մոնիթիա, Թերիմաքոն, Մոնիաւզա։ Գէորգ Հոֆման կը թելադրէ թէ «Թերիմաքոն» գրուածը թերեւս սրբագրելու է Թէլիմաքրոն եւ համեմատելու է Tell-Mahreի հետ. (Հմմտ. Հրտ. Գէլցէր, 154—155)։

ցաւ[35]. չենք գիտեր թէ կանխաւ ալ կրած էր պատերազմէն:

Հին ուղեգիրները Ռեսէնայի եւ Կոստանդինայի միջեւ ուղի մը չեն յիշատակեր. սակայն բնական է որ ուղի մը շինուած ըլլար, եւ անոր երկայնութեան մէկ մեծ մասը կրցած են նշանակել[36]:

Եթէ դէպի արեւմուտք հետեւինք Սինգարայէն Զեւգմա տանող ճամբուն, կ'անցնինք Հարրանէ, հին Կարխա: Ակնյայտնի է

---

[35] D'Herbelot, Bibl. Orient. III. p. 112:

[36] Ուղեւորութեան յուշատետրէս կը քաղեմ. «Կը մեկնինք Հիւսիսային արեւմտեան–Հիւսիս ուղղութեամբ. քառորդ ժամ ետքը կը նշմարեմ պատի մնացորդ մը լաւ կերպով կոփուած չորեքկուսի քարերով. յետոյ բաւական շուտով կը հասնինք հռոմէական ճամբու մը վրայ, զոր դիւրին է ճանչնալ քարերու անընդհատ գծէ մը (շրջակայ վայրերն այսպիսի բան չկայ). ասոնք միջին մեծութեամբ խճաքարեր են, որ քարայատակի գործածուած են: Եզերքի վրայ խիտ առ խիտ կեցած են աւերակները, բայց երբեմն անհաւասար անջրպետով հեռու բաժնուած: Ras-el-Aïnէ մէկ ժամ անդին՝ Էլ-Կրէսա բաւական բարձր հողաբլուրը (tell), որու մասին ինչպէս նաեւ յաջորդաց մասին՝ բեդուին առաջնորդս որեւէ տեղեկութիւն մը չէր տուած), ծածկուած է քարակոյտով, որուն վարի սահմանը կը յարի բլրագագաթին շրջածրին: Ձախ կողմը 3½ ժամ ետքը Kharab-el-Kaher տեղը կան անկերպարան աւերակներ, որոնց կը համապատասխանեն՝ տասը վայրկեան հեռուն՝ աջ կողմի վրայ ուրիշ աւերակներ, որոնց հետ կան խորունկ ջրամբարներ: Իսկ 4 ժամ երեք քառորդ ետքն աւելի նշանաւոր աւերակաց խումբ մը կայ, զոր հովիւները տակաւ քանդած են իրենց ոչխարներու փարախներ շինելու համար. սակայն եւ այնպէս անկիւն մը կը տեսնուի չորեքկուսի աշտարակի մը խարսխորմերը եւ բոլորտիքը զոնէ տասնուերկու հատ շատ ընդարձակ ջրամբարներ: Առաջնորդս կ'աւելցնէ թէ ճամբէս 2 ժամ անդին աջ թեւին վրայ լաւ պահուած դղեակ մը

անոր զինուորական կարեւորութիւնը հնութեան ժամանակ[37] ամբողջ այս կողմը յաճախ պատերազմի ճակատավայր եղած ըլլալով, ի մասնաւորի այն պատերազմին, որու մէջ Կրասոս զարանի մէջ իյնալով կոտորուեցաւ[38]։ Զ դարուն Յուստինիանոս վերանորոգեց աստ պարիսպները ու նախապարիսպները[39]։ Խոսրով երբ քաղաքէն կ'անցնէր՝ մերժեց ընդունիլ բնակիչներու նուիրաբերած արծաթը, եւ այս ի փոխարէն այն իրողութեան որ անոնցմէ մեծագոյն մասը քրիստոնէական կրօնը չէր ընդգըրկած[40]. եւ այս է քաղաքիս մասին մեր ամբողջ գիտցածը։ Սախաու այցելած է հոս[41]

---

կայ, զոր Kasr-el-Bordj կ'անուանէ. հոն երթալ անկարելի է, ճամբան ապահով չէ։ Ամբողջ ճամբան 8 ժամ ետքը՝ նոր աւերակադաշտ մը, որ Serk կը կոչուի, բայց այնպէս մութ գիշեր է, որ գրեթէ բան մը չի զանազանուիր։ Դարձեալ մէկ ժամ ետքը նոր քարակոյտ մը՝ Tell-Hannêի մօտ. եւ վերջապէս Վերանշէերէ (Ouerancher) 20 վայրկեան յառաջ ցանուցիր քարերու վերջին փոքրիկ կուտակութիւն մը, անտարակոյս քաղաքին մօտ յառաջապահակերցի մ'աւերակները»։

37 Նաեւ Մակեդոնացիք կանուխէն հոն գաղութ հաստատած էին (Դիոն Կաս. ԼԷ, 5)։

38 Դիոն Կաս. Խ, 27—28. Պղինիոս. Բն. Պատ. Ե, 86, «Կարխա՝ նշանաւոր Կրասոսի պարտութեամբ»։ Ամմ. Մարկեղ. ԻԳ, 3, 1, «Կարխա՝ Կրասոսեանց եւ հռոմէական բանակի պարտութեամբ նշանաւոր»։

39 Պրոկոպ., Շին. Բ, 7, էջ 230։

40 Նոյն, ՊՊ. Բ, 13, 17։

41 Սախաու, անդ, էջ 218, հմմտ. յատակագիծը՝ էջ 223։

42 Հմմտ. Ռէզլինգի, (էջ 450) հաւաքած բնա-

եւ հնութեան նշխարներ այլեւս չէ գտած։ Կարմիր աղիւսներով շինուած բերդն ու շրջապատի պատերն իրեն այնպէս երեւցած են թէ արաբական միջնադարէն ըլլան։ Նշանակելի է միայն հիւսիս-արեւմտեան կողմի վերնաբերդը, 80էն մինչեւ 100 ոտք բարձունք մը, որ անտարակոյս գոյութիւն ունէր նաեւ այն շրջանին որով կը զբաղինք եւ ուսկից ամբողջ միապաղաղ դաշտավայրը կը տեսնուէր։

Ճամբան վերջապէս կ'անցնէր Բատնայէ[42], որ չի նշանակուիր յատուկ կերպով իբր զինուորական բերդաքաղաք մը, բայց որուն տարեկան տօնավաճառները զայն խիստ պաշտպանութեան մ'արժանի կ'ընէին։ Ուր էր միջնաբերդ մը[43], որուն պաշտպանութեան անփոյթ գտնուած էին դժբախտաբար, մինչեւ որ Յուստինիանոս պատուարներու հզօր գօտի մը տուաւ քաղաքին։ Այլեւայլ ժամանակներու մէջ այս երկրէն անցնող ուղեւորներն իրարու համաձայն չեն հին Բատնայի տեղւոյն նկատմամբ[44]. բայց արա-

---

գիրները։ Իսիդոր Քարակացի Բաթնաէ նահանգ մը կ'անուանէ։ Տես՝ Ռիտտէր, ԺԱ, էջ 279 եւն։

[43] «Բերդն որ ի Բատնա էր» Պրոկոպ. Շին. Բ, 7, էջ 230)։ Այս իմաստով թերեւս մեկնելու է Պղինիոս ալ (Բն. Պատմ. Զ, 30) երբ կը խօսի Զեւգմայի արեւելակողմն եղող քաղաքի մը մասին, որուն անունը չի տար, որ երբեմն ամրացեալ մեծ քաղաք մըն էր, բայց իր ժամանակը պարզ դղեակ մ'եղած էր։

[44] Արդեամբ ալ 990էն կործանեցաւ երկրաշար-

*բայց իր աղբիւրները նպաստած են Ռէնդլինգի որոշ կերպով նոյնացնելու զայն արդի* (էսկի)–Սերուջի *հետ*[45], *որ կեդրոնն է հռչակաւոր ոստանի մը՝ ընդարձակ ցորենաշատ շտեմարանի մը. քանի մ'ուրիշ հեղինակաց*[46] Անթեմուսիաս *կամ* Անթեմուսիա *նոյն քաղաքն է*[47] *անոր մակեդոնական գաղութին անունով։*

*Ուղեգրութեանց նշանակած հեռաւորութիւնները միայն մերձաւոր թիւեր են եւ զանոնք համաձայնցնելու աշխատանքը ի զուր պիտի ըլլայ։ Պարթեւական* Կորէա *կայանն արդի* Դէմիզ *եւ* Կուլույուկ *գիւղերու միջեւ ըլլալու է*[48]։

*Բաղնա իր արձակավայրերով մէկտեղ*

---

*ժով մը (Միք. Ասորի, ժմնկգր., Թրգմ.* Chabot, II, p. 437)։

[45] *Ցեսու Սիւնակեայ, ժմնկգր.* 90՝ *«Բատնանի (այսպէս) պարիսպները, որ ամուր բերդ մըն է* Սարուջի *շրջակայքը, որոնք կործանած ու ճեղքուած էին, վերաշինութեան եւ վերանորոգութեան ենթադրոսի (Ուռհայի կուսակալին) ձեռքով»։ Բատնայէ կ'անցնէր նաեւ Հելիոպոլսէն Եդեսիա տանող նուազ բանուկ ճամբան։ Ըստ Ցիչէրի՝ Բատնա ըլլայ Պտղոմեայ* (Ե, 17, 7) *Βαθιάς դրածը։*

[46] *Իսիտոր.*, Ա, 245, *Պլին. Բն. Պատմ.* Ե, 86, Զ, 118 (Anthemus *այսպէս Ստեփ. Բիւզ.). Տակիտ., Տար.* Զ, 41 *(զոր Ռէնդլինգ յիշած է էջ* 453)։ — *Ցաւել՝ Կարակալլայի դրամները* (Eckhel, D. N. V., III, 506. Mionnet, V, p. 592, Suppl. VIII, p. 389)։

[47] *Ռէնդլինգ, անդ, էջ* 454, *եւն։*

[48] *Անդ, էջ* 456։ — *Իսկ Դալարա* (Dalara, *Իսիտ. Պեւտինգ.) կամ Թիար,* (Thiar, *Աշխ.) կայանին տեղը՝ Բատնայի արեւմտեան կողմը կը մնայ անորոշ եւ կ'երեւայ թէ զինուորական նշանակութիւն ունեցած չէր. (Հմմտ. Ռէնդլինգ, էջ* 449)։

պարփակուած է հսկայածաւալ քառակուսւոյ մը մէջ, — Ռէգլինգի **զուգահեռագիծ** կոչածը, որուն երկար կողմերը կը կազմէր Եփրատ, Եղեսիայէ Զեւգմա տանող գիծը՝ երրորդ կողը, իսկ չորրորդը կը ներկայացնէր Բելիխ՝ Եփրատի օժանդակը, որուն ընթացքին վրայ Պարթեւք կարգաւ կանգնած էին կայաններու շարք մը:

Հռոմայեցիք ալ անոնց հետեւեցան. այս հովտին կը հետեւէր ուղեգիծ մը[49], որ Ուռհայէն կը սկսէր. Սախաու շատ անգամ նշմարած է այս քաղաքիս եւ Կարխայի միջեւ[50] այն ուղւոյն քարայատակը կոփածոյ մեծամեծ քարերով[51]: Զոսիմոսէ կ՚իմանանք թէ Յուլիանոս երբ Պարսկաստանի դէմ իւր արշաւանքը կը պատրաստէր եւ Կարխայէ մեկնեցաւ՝ անցաւ այն ամէն պահակերոցներէն, որոնք անկէ սկսեալ

---

49 Ամմ. Մարկեղ. ԻԳ, 3, 1, «Ուռհից (Կարխայէ) Պարսկաստան տանող երկու արքունի պողոտաներ կը բաժնուէին ձախակողմինը Ադիաբենէէն ու Տիգրիսէն, աջակողմեանը Ասորեստանէն ու Եփրատէն»: Զոսիմոս, Գ. 12, 3, «Անկից երկու ճամբաներ կը յառաջէին, մին Տիգրիսէ ու Մծբին քաղաքէն կ՚անցնի դուրս կը հանէ Ադիաբենեայ սատրապութենէն, միւսը Եփրատէն ու Կերկեսիոնէն»:

50 Կարաակալլա անցաւ ուղւոյն այս հատածը (Վարք, 6. Հերոդիանոս, Դ, 3. Դիոն. Կաս. ՀԸ, 5. Զոնար. ԺԲ, 12, էջ 113, հրատ. Բոնն) նոյնպէս ալ՝ Խոսրով:

51 Սախաու, էջ 217: — Ես ալ 1901ին այս ճամբան կ՚ուզէի բռնել՝ Ռակկայէ մեկնելով. բայց ստիպուեցայ հրաժարիլ, ուղեգծին վրայ գտնուող ցանցառ ջրամբարները լեցուած էին սատկած մարախներով:

հաստատուած էին մինչեւ Կալլինիկում[52]։ Ամմիանոս[53] այս պահակամուր-ճերէն (castra praesidiaria) միայն մին կը յիշէ, այն է՝ Դաւանա[54], աւելցնելով թէ Բելիասի աղբերակաց վրայ էր[55]. բայց ո՞ւր էին եւ ո՞ւր են տասնուհինգ դարերէ ի վեր՝ անապատի ծործորի (արաբ. վէտ, վատի) աղբիւրները։ Թերեւս այս դղեակին մնա-ցորդներն են, զոր Սախաու գտած է Կա-րայէր կոչուած տեղը, Կարխայի եւ Նիկե-փորիումի գրեթէ կէս ճամբան[56]։ Հողի մէջ խորասուզուած ենթաշինուածներ են ասոնք կոփածոյ մեծ քարերով, մինչդեռ շրջակայքը շինութեան ուրիշ որեւէ նիւթ չի տեսնուիր. բովանդակը միջակ մակերեսով ամբողջու-

---

52 Զոսիմոս, Գ, 13, 1, «Կարրայէ զուրս ելլե-լով եւ միջանկեալ բերդերէն անցնելով մինչեւ Կալ-լինիկոն»։

53 Ամմ. Մարկեղ. ԻԳ, 2, 6։

54 Շատ հաւանօրէն այս Dauana պէտք չէ շփո-թել Պրոկոպեայ Դարանասի հետ. (Շին. Բ, 4, էջ 222) որովհետեւ վերջինս խնդրոյ ներքեւ եղած տեղը կը դնէ Դարայի եւ Ամիդայ մէջտեղ. (Fränckel, առ Պաուլի–Վ., երկուքը կը զանազանէ իրարմէ)։ Ճիշդ է անշուշտ թէ Ամմիանոս սովորաբար Պրոկո-պիոսէ աւելի ճշգրտաբան է։ Ուստի Ամմիանու յիշած դղեակին մէջ բնակած ըլլալու են «Տեղեկ.» գրոյ (XXXV, 5, Դարանա. 17՝ Դանարա) «Հեծեալք Մաւրիտանեան Լիւրեկեցիք» Ուռհայատանի մէջ։

55 Ամմ. Մարկեղ. ԻԴ, 3, 7՝ «Ուսկից ծագելով Բելիաս գետը Եփրատ կը թափուի»։ Աստի եւ արաբ աղբիւրները կը հաստատեն այս տեղեկութիւնը (Ռէզ-լինգ., էջ 461)։

56 Սախաու, 235՝ Gara-Yer (Սեւ Երկիր, Հող) ...որ հին ժամանակի տեղ մը (բե՞րդ մը) կ'երեւայ կը նշանակէ։

թիւն մը կը կազմէր։ Քանի որ յատակագիծ չկայ, դժուար է եզրակացութիւն մ՚ընել։ Ռէգլինգ այն տեղն աւելի հիւսիս դնել կ՚ուզէր, իբր 30 քիլոմետր Հարրանի հարաւ-արեւելքը, դէպի Ռաս-էլ-Այն-էլ-Խալիլ, ուր Մորից եւ Օպպէնհայմ աւերակներ գտած են, յատկապէս ջերմուկներ եւ ջրմուղ մը։ Բնականաբար այս ամէնը շատ տարակուսական կը մնան։

Ուրիշ աւերակներ ալ նշանակուած են այլեւայլ կէտերու վրայ, որոնք չեն կրնար, նկատելով հեռաւորութեանց չափերը, համաձայնիլ Իսիդորի յիշատակած կայաններու (mansiones, օթեւան) եւ ոչ մէկուն հետ. այսինքն Մաննուրհա Աւրէթ, Կոմմիսիմբէլա, Ալագմա, Իքնէ[57]։ Միայն այս վերջինս անտարակոյս փնտռելու ենք արդի Քնէզ (Chnez) տեղը, Կարամուքի գետախառնուրդի մօտերը, որ գրեթէ միշտ ցամքող գետ մըն է։ Միւս կողմէ Կրասոսի պատերազմին մասին Պղուտարքոսի պատմածը կը միաբանի տեղանունութեան հետ[58]։

Ռէգլինգի «զուգահեռագիծ» կոչածին հարաւային կէսը իբր լքեալ ամայի տափաստան մը կը նկարագրէ Սախաու[59], ընդհակառակն Մորից եւ Օպպէնհայմ[60] կը հաս-

---

57 Պղուտ. Կրաս. 25։
58 Հմմտ. Ռիտտէր, Ժ, 1121 եւն։
59 Սախաու, 227—241։
60 Zeitschr. f. Erdk. 1901, p. 80։

տատեն թէ երկիրն բերրի է եւ բազմամարդ, եւ թէ բազմաթիւ աւերակներու հանդիպած են։ Ես այս երկրի մասին ուղղակի անձնական ծանօթութիւն չունիմ. սակայն կրնամ ըսել թէ աւելի առաջին կարծիքն է որ ինծի նուազ զարմանք կը պատճառէ։ Իսկ աւերակներն կը միան առեղծուածային, վասն զի ոչ մէկ հեղինակ կամ ուղեգիր այս գետափանց վրայ ամենադոյզն բնակավայր մը կը յիշէ[61]։

Այժմ կու գանք երկրորդ մեծ պողոտային, որ Մասիոս լերան հարաւային դարերուն կը հետեւէր։

Եփրատէն սկսեալ առաջին նշանակելի քաղաքն է Ուռհա կամ Եդեսիա (Ուրֆա[62])։ Զեւգմայէ հոս կը հասնուէր երկու ճամբով. մին՝ որ աւելի հարաւային էր, այն ուղին ըլլալու է, զոր Անտոնինեայ Ուղեգրութիւնը կը յիշէ[63]. ճամբուն կէսին մօտերը կ՚անցնուէր Կանաքա տեղէն (այժմ Միզհաջա՞ր)։ Այս անունը կը յիշեցնէ փերեզակաց այն կրպակները, որոնք միշտ կը հաստատուէին բանակետղներու մերձակայքը[64]։ Այն տեղ կայանաւորող զօրագունդը (Հեծեալք Դադ-

---

61 Հմմտ. Թէզլէնգ, 469, ծն. 2։

62 Տես Rubens Duval, Hist. politiq., relig. et littér. d'Edesse, (արտատպ. Journ. Asiat. թերթէ), Paris, 1892, այս երկը կ'երեւայ թէ ծանօթ չէ Թէզլէնգի, (459 եւն)։

63 Ուղեգր. Անտ. 191, 2—5, = 65 մղոն։

64 «Տեղեկ. Աստիճ.» գրոց մէջ կը գտնուի Ganaba կամ Gallaba ձեւով (XXXV, 15 եւ 2)։

մատ Լիւբիկեցիք) կրնար նաեւ իւր աջակցութիւնը շնորհել հիւսիսային ուղւոյն Նպարակրութեանց, որ շատ մօտ էր[65] եւ որ կը միանար առաջին ուղւոյն Bathnae mari կոչուած տեղւոյն քով. այս տեղւոյն հետ կրնայ նոյնացուիլ Սախաուի հաւաստած մէկ աւերակավայրը[66]: Իսկ Ուղեգրութեան մէջ նշանակուած միւս կայանը Bammari Canna յորջորջուած, արդի Զարմելիկ[67], տեղւոյն հետ նոյնացնելու թոյլ չեն տար հոն նշանակուած չափերը: Միւս կողմէ Ուռհայէն կարելի է Հերապոլիս երթալ առանց Զեւգմայէ անցնելու[68] եւ վերջապէս ասկէ Կարխա կ'երթցուէր, դէպի Սամոսատ ալ երկրորդական ճամբով մը[69], եւ նոյն իսկ դէպի Ամիդ՝ Սեւերեկի վրայէն: Չէրնիկ որ վերջին ճամբան բռնած է, Ուռհայէն իբր տաս ժամ հեռուն նշանակած է աշտարակի մը մեծայաղթ աւերակը[70]: Ուստի այս քաղաքին բոլոր-

---

65 Ուղեգր. Անտ. 190, 2—5 × 58 մղոն:

66 Սախաու, 189:

67 Ռէգլինգ, 447—448:

68 Տես վարը:

69 Այս ուղւոյն հետքերը գտած նշանակած եմ, երկարաձիգ տարածութեամբ, մանաւանդ Ուռհայէն 2 կամ 3 ժամ ետքը սկսելով. ճամբուն աջ ու ձախ կողմը մեծամեծ քարերու ուղղագիծ շարք մը պայծառ կերպով կը սահմանագծէ զայն. ասոնք երկաթաքարի խճեր են քովէ քով դրուած առանց շաղախի: Ճամբէն դուրս հին շինութեան մը դոյզն հետքն անգամ չկայ:

70 Թէրեւս Կոստանդեայէ Սամոսատ տանող ճամբուն խաչաձեւ համաման կէտին վրայ. (Czernik, II. p. 22՝ Իւչքէօյ կամ Իւչկալէ տեղը):

տիքն ուղիներու ճշմարիտ ցանցակերպ մը ճառագայթաձեւ կը բաժնուէր :

Նկատելով հողաբաժինը, պէտք ենք լքանել այն ակնկալութիւնը թէ կարող պիտի ըլլանք լիակատար գաղափար մը կազմել հռոմէական ու բիւզանդական Ուռհայի մասին : Անշուշտ տակաւին կը գտնուին խոյակներ եւ սիւներ, որոնք յունական հռոմէական նկարագիր մ'ունին, բայց ասոնք ամէնքն ալ գործածուած են անաղանագոյն շինութեանց համար, եւ միջնաբերդն իր ներկայ վիճակին մէջ, ուր արեւելեան արձանագրութիւններ՝ առանց պատահական ըլլալու երեւոյթի մը՝ ագուցուած են պատերու մէջ, զմեզ արաբական միջին դարուն կը տանի[71] : Եդեսիա միշտ մեծ դեր խաղացած է. մակեդոնական գաղութ մ'ըլլալով, ժամանակ մ'առած է անունն՝ Անտիոքիա Կալլիրոյի վրայ[72] : Գ դարուն՝ թերեւս աւելի առաջ ալ՝ հռոմէական գաղութ մ'եղած էր եւ

---

71 Սախաու, անդ, էջ 198 : — Յատակագիծը տես Ch. Texier եւ R. Popplewel Pulan L'Architecture byzantine, London, 1864, p. 204 : Մեծութեան չափերն են՝ 100 մետր լայնք, 400 երկայնք. փոսը 3 մ. լայն եւ 20 խորունկ, փորուած ապառաժին մէջ : Իսկ բուն քաղաքին նկատմամբ Texier կը կարծէր թէ միայն շրջափակն աւերուած ըլլայ միջին դարու մէջ : Յատուկ մոք շրջապատ պարիսպը ճշմարիտ բիւզանդական ըլլայ, որովհետեւ աշտարակները շատ մօտ են իրարու. Հմմտ. էջ 199 եւն, բայց այս յայտանիշը ստուգութեան հաւաստիք չի ընծայեր :

72 Գղինիոս, Բն. Պատմ. Ե, 86. Սանփ. Բիւզ., Eckhel, D. N. V. III. p. 305. Mionnet, V, p. 37, թիւ 326 յլ., Suppl. p. 30, թիւ 157 :

Ուռհայաստանի մայրաքաղաքը[73]: Ե դարուն սկիզբը հոս կը գտնուէր Արեւելից բանակաթեմին հինգ զինագործարաններէն մին եւ զինանոց մը[74]: Նորանշան կէտ մըն է որ «Տեղեկ. Ասոր.» գիրքն ասոր որեւէ պահակազօր կամ զօրանիստ մը չի վերագրեր: Տեղական ժամանակագրութեան համեմատ[75] պարիսպները չորս անգամ կործանած են, 201, 303, 413 եւ 523 տարիներուն: Յուստինոսի ատեն երկրաշարժ մը քանդեց քաղաքը. Յուստինոս վերաշինեց զայն եւ անոր իր անունը տուաւ[76]:

Քիչ մ'հեռուն այն սակաւաջուր գետն, որ քաղաքէն կ'անցնի, աճեցաւ այնչափ որ քաղաքն ողողեց եւ ծանր վնասներ պատճառեց[77]: Սկիրտոսի ջուրերը կը հաւաքուէին խնամքով եւ կ'անցնէին բուն քաղաքէն, հին ջրանցք մը ջուրերն կը բերէր եւ յետոյ դուրս

---

[73] Eckhel, III, p. 510. Mionnet, Suppl. VIII, 399, 1:

[74] Տես վերը՝ Մասն Բ, գլ. Զ, յօդ. 1:

[75] Hallier, էջ 84, Թ. 1. (հմմտ. էջ 122, Թ. 88) էջ 93, Թ. 11, էջ 108, Թ. 52, էջ 128, Թ. 90 (հմմտ. էջ 138, Թ. 106): Անաստասի օրով կատարուած շինութիւններու մասին տես Յեսու Սիւնակեաց Ժմնկգր. 53 եւ 88:

[76] Այսինքն՝ Յուստինուպոլիս. Հմմտ. Եւագր. Պատմ. Եկեղ. Դ, 8: — Արեւելեան աղբիւրները պայծառ կը ցուցնեն քաղաքիս կարեւորութիւնը Դ—Զ դարերու մէջ. շինարարական գործունէութիւնը հոն հսկայական էր, բայց գետնին անհաստատութիւնը այս ամէն ճիգերն ապարդիւն ըրաւ. Հմմտ. Anton Baumstark, Vorjustinianische kirchliche Bauten in Edessa (ի Oriens Christanus 1904, p. 164—183):

[77] Պրոկոպ. Շինծ. Պատմ. 18, 56:

կը հանէր, պատնէշներու մէջէն անցնելէ ետքը: Անձրեւներէն ուղխին յանկարծական յորդալից զեղումը՝ մտից եւ ելից տեղերը՝ խորտակեց Նախապարիսպն ու յատուկ խմատով շրջապարիսպը: Յուստինիանոս պարիսպին առաջն անոր նոր գետափոս մը փորել տուաւ: Ուղխը ուղղակի քաղաք կը մտնէր զահավէժ քարաժայռէ մը, որուն կու գար կը բախէր. այս քարաժայռը կտրեցին խորունկ փորած մը բանալու համար. եւ միւս կողմէ դաշտավայրին վրայ բարձրացուցին թումբ մը մեծամեծ քարերով: Այսպիսով գետին սովորական ընթացքը շարունակեց անցնիլ քաղաքէն առանց վնասելու եւ այնուհետեւ ունէր խոտորանցք մ'ալ սաստիկ գետայարացքի համար: Սախաու ուշադիր չէ եղած այս տեղեկութեանց, զորոնք Պրոկոպիոս կու տայ[78], երբ կ'ուսումնասիրէր Ուռհան իր ջրերու առատութեան տեսակէտով[79]:

Կրկին շրջապարիսպը պատամած էր, Յուստինիանոս լիովին վերաշինեց զայն եւ աւելի ահարկու ըրաւ: Վերջապէս ըրաւ կարգադրութիւն մը որ բիւզանդական ամրաշինութեան մէջ շատ սովորական է: Միջնաբերդին մակերեսը չէր հանէր դուրսի բլուրի մը գագաթին, բնիկներն ալ կանխաւ երբեմն այս բարձունքը ներս առած էին շըրջապատին մէջ. բայց անոնց տկար պարիսպը

78 Պրոկոպ. Շին. Բ, 7, էջ 129:
79 Սախաու, էջ 195:

չէր փակեր իրապէս քաղաքին մուտքը․ ինքնակալը քանդեց զայն եւ նոր կառոյց, որ բլուրին գագաթէն կը սկսէր եւ յետոյ կ՚իջնար զառիվայրէն ու կու գար կը կցուէր քաղաքին պարիսպներուն։ Ուռհա այսպէս վերանորոգուելով՝ յաղթականօրէն դիմադրեց 543ի պարհուրելի պաշարման․ Նախապարիսպը կը պաշտպանէր հօտերն ու նախիրը, զորոնք հովիւները, երկրին սովորութեան համեմատ, անոր ետեւը պատսպարած էին[80]։

Իբր 50 մղոն դէպի արեւելք[81] երթալով կը հասնուէր Կաստանդիա կամ աւելի Կոս-

80 Պրոկոպ. ՊՊ. Բ, 26—27։

81 Այս ճամբան բռած եմ ես ալ՝ բայց հակադարձաբար․ այժմէական հին ուղեգիծն է՝ որ այսօր ալ կը գործածուի, ի բաց առեալ քանի մը անշան խոտորումներ, որոնք կրնան անտեսուիլ։ Ճանապարհի միջոցը 18 ժամ է․ աւերակները սփռուած են անկանոն անջրպետներով։ Ուշադրութեան՝ «Մէկուկէս ժամ ետքը կու գայ քրդաբնակ Սալոոյ գիւղը, մասամբ խրճիթներով՝ որոնք շինուած են երկաթաքարի սալերով, ասոնք կործանած կամ քանդուած բիւզանդական տներէ փոխադրուած․ կ՚երեւան։ Վերանշէհրէն 3 ժամ ետքը Ձիրաջիր կոչուած տեղը ցամքած ջրամբար մը կայ, ճեշդ պետական մը մօտը, որ հռոմէական շրջանին անտարակոյս պահութիւն չունէր կամ ուրիշ տեղէ կ՚անցնէր։ Իսկ ½ ժամ աւելի հեռուն, աջ ափէն 20 կամ 30 վայրկեան անդին, բլուրի մը գագաթին վրայ շինուածքներ, դղեակի մ՚աւերակներ կան՝ ինչպէս բոլոր քրդերը․ բայց պէտք է կ՚ըլլայ եւ կարելի չէ ազանիլ, ուստի անհրաժեշտ հարկ է ճամբան շարունակել։ Տակաւին աջ ափին վրայ՝ 7 ժամու ճամբէն ետքը՝ նոր աւերակավայր մը, Gaour-Houré կը կոչուի։ Երկու ժամ աւելի հեռուն (ուրեմն 9 ժամ ետքը) երկայն նեղ կոճի մը ծայրը, ուր մտած էր ճամբան անբաւ սարահարթ մը կարելէ անցնելէ ետքը, ուրիշ աւերակակոյտ մը կայ (Khapakli անուն), որ կը պարունակէ ուղղանկիւն շինութեան

տանդիա[82]: *Անուան այս տարբերութիւնն առիթ տուած է հակաճառութեանց. անօգուտ է զանոնք երկրորդել*[83]: *Կոստանդիան զետեղած են իրաւամբ հոն, ուր բնութիւնն իսկ ցուցուցած էր ամրաքաղաքի մը կարեւորութիւնը, արդի* Վերանշէհիր *գիւղաքաղաքին տեղը: Մասիոս, որուն ստորոտէն կ'անցնի Նինուէէն եկող ճամբան, հոս գաղաթնայրին լեռնազանգուած մը կը դառնայ, այժմ Կարաճա-դաղ կոչուած. ճամբան բոլորովին ուղիղ կը շարունակուի դէպի Ուռհա, բայց այն կէտին վրայ, որու մասին է խօսքը, անկէ կ'անջատուի ճիւղաւորութիւն մը, որ Սամոսատի ուղղութեամբ շիտակ Եփրատ կը*

---

*մը որմախարիսխները, եւ մէկ կողմը մեծ ջրամբար մը, որ կանոնաւորապէս փորուած է ապառաժին մէջ եւ ծածկուած մեծ սալաքարերով: Մօտ* 15 *մետր երկայնութիւն ունի այն,* 4 *մ. բարձրութիւն եւ* 3 *մ. վերակողման լայնութիւն՝ որ աւելի նուազ ծաւալով է քան յատակը, մէկ ծայրերէն սանդուխ մը, որ շատ լաւ փորուած է ապառաժին մէջ, կ'իջեցնէ մինչեւ յատակը, հաւանօրէն մաքրելու համար: Ինծի ուղեկցող քուրդերն ըսին թէ կան ուրիշներ ալ, որ աւելի մեծատարած են, մօտակայ բլուրներու վրայ: Կէս ժամ աւելի հեռուն խարակին մէջ՝ ճամբուն եզերքը, կը սկսի անձաւներու շարք մը, որոնց մուտքն ուղղանկիւն է կամ աղեղնաձեւ: Ուռհայէ* 2½ *ժամ հեռուն, ճամբէն քիչ մ'անդին՝ աջակողմը, աւերակ աշտարակ մը բլուրին գագաթին վրայ»:*

[82] Այսպէս *Գէորգ Կիպր.* 894, *Հերոկղ,* 714, 2. *Ամմիանոս Մարկեղ. ԺԸ,* 9, 1. *Սուիդաս, Պրոկոպիոս երկու ձեւերն ալ կը գործածէ: Լաւագոյնն ըլլալու է* Կոստանդիա, *թէպէտ եւ միւս ձեւն ալ շատ գործածական է. (Գելցեր, անդ, էջ* 153):

[83] *Անոնք կը գտնուին ի գիրս* Böcking, Adnot. ad Not. Or. p. 400—411:

տանի[84] Կոստանդիա ուղեւոյ այս խաչաձեւ հատման վրայ իշխելու էր: Ուրիշ երկրորդական ճամբայ մը Ռեսէնա կը տանէր[85]:

Հոս նախնաբար ուրիշ քաղաք մը կար Մաքսիմիանոպոլիս կոչուած. երկրաշարժէ մը կործանեցաւ այն, եւ Կոստանդոս Բ վերաշինեց[86], ուսկից անոր անունը: Ն դարու սկիզբը քաղաքս բազմաձեռն պահակազօրք ունէր: Հոս կը նստէր Ա Պարթեւական լեգէոնին վերակացուն եւ հոս զետեղած են բացի զինչէս Հեծեալք Փելիքս-Ռոմեան Լիբիկեցիք, նաեւ ուրիշ զօրագունդ մը, որու յիշատակութիւնը «Տեղեկ.» գրոց ձեռագրաց մէջ կորսուած է[87]: Պրոկոպիոս կը տեղեկացնէ[88] թէ Կոստանդիա նախ Միջագետաց դքսին նիստն էր, եւ յետոյ ինքնակալը նոյն զօրավարը հաստատեց Դարայի մէջ, — որովհետեւ անոր ներկայութիւնը սահմանագլխին մօտ աւելի կարեւոր էր, — եւ թէ երբ Խոսրովի հետ խաղաղութիւն կնքուեցաւ, զօրավարը կրկին Կոստանդիա կանչուեցաւ:

Յուստինիանու կառավարութեան սկիզբը քաղաքիս պարիսպներն այնչափ ցած էին, որ

---

84 Ամմ. Մարկել. ԺԸ, 7, 9:

85 Տես վերը ծան. 9:

86 Մաղաղաս, ԺԳ, էջ 323, հրտ. Բոնն: Ուռհայի ժամանակագրութեան մէջ (Hallier, էջ 97, թիւ 20) հին անունն է Անթիպոլիս (*) նորը՝ Թելլա, նորոգութեան թուականը 348—349 յ. Ք.:

87 Not. Or. XXXVI, 22, 24. հմմտ. 7 եւ 9:

88 Պրոկոպ. ՊՊ. Ա, 22, 3:

սանդուխներով կարելի էր անոնց վրայէն անցնիլ, եւ դէշ ալ չինուած էին. «չինութեան նախագիծ մը»․ աշտարակները, որ իրարմէ շատ հեռու էին, կը սպառնային կործանիլ. հազիւ երեք ոտք թանձրութեամբ նախապարիսպին միայն խոնարհագոյն կարգագիծերը չինուած էին երկանաքարով, մնացեալը աղմով եւ կակուղ քարով էր։ Յուստինիանոս խախուտ պարիսպները, աշտարակներու թիւը եւ բարձրութիւնը կրկնապատկեց․ խրամաքանչիւրն երեք յարկ եւ գաղտնի սանդուխներ ունեցաւ, Կոստանդիա, որուն գետինը զառիվայր է, ջուր չունէր․ մէկ մղոն հեռու եղող աղբիւր մը քաղաք բերուեցաւ ջրմուղով[89]։

Պրոկոպիոսի այս նկարագրութիւնը կը ստուգեն՝ գոնէ Յուստինիանու կատարած գործին նկատմամբ[90], տակաւին կանգուն չորեքկուսի կոփածոյ լաւ երկաթաքարով հաստատուն պարիսպներուն խարիսխները։ Բերդին յատակագիծը կանոնաւոր քառակուսի մըն է, երեք կողմն ալ կը բացուի դուռ մը՝ պատսպարուած երկու կողմէն՝ կիսաբոլորակ երկու աշտարակներով․ պարիսպին գծին վրայ գտնուող միւս աշտարակները նեցուկ մոյթեր ունին եւ թերեւս Զ դարէն են․ ասոնք ալ չորեքկուսի են, նման անկեանց աշտա-

---

89 Պրոկոպ. Շին. Բ, 5, էջ 224—225։

90 Նախընթաց ժամանակաց համար պէտք է անոր վստահիլ։

րակներուն, որոնք մեծագոյն ծաւալով են եւ պարիսպներու համեմատութեամբ առ ի չեղ կանգնած են[91]:

Իւր աշխարհագրական պայմաններով զինուորական հող մ'ըլլալու նուազ սահմանուած չէր տափարակագետնի այն եռանկիւնը, որ կը տարածուէր Մասիոսի հարաւարեւելեան կողմը, այն հովտին սեամքը, որ թոյլ կու տայ այն լեռնազանգուածը կտրելով Ամիդ հասնելու: Ազգաբնակութեան կեդրոն մըն էր եւ խիտ առ խիտ կանգնած քաղաքներն ամրացուած էին, ինչպէս կը պահանջէր անոնց Սահմանաց մօտ ունեցած դերը[92]: Կրճին մուտքին վրայ թառած էր Մարիդա կամ Մարդ, արդի Մարտինը, որուն միջնաբերդը բոլորովին աւերակ դարձած է[93]: Կը յիշուի իբր սահմանապահ

---

[91] Humann եւ Puchstein, Nordsyrien, p. 402 յջ.: — Ես անոնց տուած նկարագրութիւնը միայն հաստատել կրնամ:

[92] Դժբախտաբար այս գաւառը քիչ ծանօթ է եւ այսօր ալ ճշմարտութեամբ կրնանք ըսել ինչ որ Ռիտտէր 1843ին գրած էր (Աշխ. ԺԱ, 279) թէ բոլոր ուղեւորներն ասկէ արագօրէն կ'անցնին. ամենավտանգաւոր գաւառներէն մին է: Երբ ես ալ 1901ին Կոստանդլիայէ կ'անցնէի, ամբողջ երկիրը մեծատարած ապստամբութեան մը մատնուած էր:

[93] Սախաու, էջ 405՝ «Մարդինի դիրքը սքանչելապէս յարմար է մենակաց ժայռաբերդի մը համար». տես իրօք ալ Զէրնիկի ծրագիրը (Բ մասն, տխտ. Բ): Դղեակին ծովէն ունեցած բարձրութիւնն է 1190 մեթր, քաղաքինը 1057 մ.: Ջրաշատ է, մինչդեռ շրջակայքն անջրդի են (անդ, էջ 17): Թէոփիլ. Սիմոկատտա կ'անուանէ զայն τὸ Μάρδες (Ե, 3, 1): Հին ուղեւորաց բաւական կասկածելի կամ անճշգրիտ տե–

դղեակ կամ ամրոց Կոստանդնոսի առեն, ինչպէս նաեւ կը յիշուի Լոռի, զոր աւելի դժուարին է նոյնացնել, որ Մարդիայի մօտերն էր[94]: Վարը պիտի վերադառնանք այս հովտին:

Շատ աւելի զարմանալի պիտի երեւար Դարայի տեղւոյն համար եղած ընտրութիւնը[95], եթէ միայն տեղագրութիւնն աչքի առջեւ ունենանք: Երկայնաձիգ՝ բայց նեղ անցքի մը մէջ, որուն ուղղութեան գիծն է հիւսիսային հիւսիս-արեւելքէն դէպի հարաւային հարաւ-արեւմուտք, եւ որուն մէջէն կ՚անցնի փոսակ մը, կը կանգնին երեք բարձունքներ, որոնց երկուքը բոլորովին կըզզիացեալ են, իսկ երրորդը լերան հետ կապուած է: Ասոնց մին, որ ամենաբարձրն է, իբր 60 մետր, եւ որ բաւական ամուր դիրք մ՚ունէր, անտարակոյս միջնաբերդը կը կրէր, թէեւ ճիշդ է թէ սարահարթին փոքր ծաւալին պատճառաւ աւելի նուազ արժէք մ՚ունէր: Երրորդ բլուրը, որուն բարձրութիւնը միւս երկուքին բարձրութեան միջինն էր (40—50 մետր) անկախ չէր եւ հարկ պիտի ըլլար անոր կատարին վրայէն անցնել շըրջապատի պարիսպը, վասն զի կարելի չէր զայն ամբողջովին ներս առնել: Դարա առով

դեկութեանց մասին տես Ռիտտէր, Աշխ. ԺԱ, էջ 385—386, 392:

94 Հմմ. Մարկոս. ԺԹ, 9, 4:

95 Սախաու կու տայ Դարայի յատակագիծը (էջ 398):

հրկէն վտանգի մ'ենթարկուած էր․ բոլոր շրջակայ եւ մօտաւոր բարձունքներն կ'իշխէին անոր վրայ, եւ եթէ անգամ մը բանութեամբ առնուէր արեւելեան դուռը, ուր լիաքայլ կարելի էր դիմել, Թշնամին քաղաքին մեծագոյն մասին տէրն եղած կ'ըլլար[96]։

Պատմական հանգամանքները[97] կը մեկնեն այսպիսի ընտրութիւն մը։ Մծբին, որուն պիտի հասնինք, Հռոմայեցւոց վերաբերած էր միայն երկու դար, որ ժամանակամիջոցին Պետութեան ճշմարիտ պատնէշն եղած էր այս սահմանագլխին վրայ։ Երբ Յովիանոս զայն Պարսից յանձնեց, պէտք էր որ անոր տեղը փոխարինուէր ուրիշով մը՝ հռոմէական հողին վրայ։ Թէոդոսի օրով կնքուած դժբախտ դաշինք մը սահմանած էր որ երկու ազգերէն եւ ո՛չ մին նոր բերդեր կառուցանէ հաստատակայ սահմաններուն առջեւ։ Բայց Պարսիկք պաշտպանուած էին Մծբինով․ իսկ իրենց ոսոխներն անպատսպար էին։ Վերջապէս Անաստաս ըմբռնեց այս կէտը, եւ եօթը տարուան զինադադար կըն-

[96] Սախաու, 395 եւն։ Ուստի Յուստինոս տեղագրական տպաւոր հայեցուածք մը չէր ցուցնէր երբ կը գրէր (Թ․Ա․, 5) «Արշակ հիմնեց Դարան․ այս տեղն, որ ամէն կողմէ զահավէժ քարաժայռերով շրջապատուած է, պաշտպաններու պէտք չունի․ զինքն շրջապատող հողը բաւական բերրի է՝ այնպէս որ առանձինն կրնայ բաւել իր պիտոյից․ վերջապէս բազմաթիւ աղբիւրներ զայն կ'ոռոգեն»։

[97] Հմմտ․ Fränkelի (Պաուլի-Վ․) հաւաքած բոլոր բնագիրները։

քելէն եաքը, օգտուեցաւ այն պարագայէն որ իւր հակառակորդներն ուրիշ կողմ զբաղած էին Հոնաց դէմ պատերազմելով, եւ չպահելով իր տուած խօսքը, — որ այն ժամանակ առօրեայ սովորութիւն մըն էր, — ընտրեց[98] անկարեւոր աւան մը, որ սակայն միայն 28 ստադ (կամ 3 մղոն) հեռու էր սահմանագլխէն[99], եւ կ'իշխէր իւր բարձրութեամբ Մծբնայ վրայ ալ, որմէ 400—500 մ. աւելի բարձր էր[100]: Անկէ քաղաք մը շինեց իր անունով եւ աճապարեց շրջապատել պարիսպներով (504ին): Սասանեանք անդադար բողոքեցին պայմանադրութեանց այս բռնաբարման դէմ[101], սակայն Հռոմայեցիք ալ միշտ վախ ունենալով վրիժական փոխարինութիւններէ՝ հապճեպով փութացուցին գործը, քարերը գէշ դասաւորեցին, շաղախը փութով զանգեցին՝ առանց պատշաճ համեմատական չափով կիր խառնելու: Բայց այդ ամբողջ երկիրն ազատ ենթակայ էր ձմեռը՝

---

98 Իւր զօրաց խնդրանօքով եւ Ամդայ եպիսկոպոսին խորհրդովը, ինչպէս կ'ըսէ ասորի աղբիւր մը. (Assemani, BO. II. p. 58):

99 Պրոկոպ. ՊՊ. Ա, 10, 13 եւն. Հմմտ. Ա, 26, 5 եւն. Կեդրենոս Ա, էջ 130, հրտ. Բոնն:

100 Տես Լիւդոսի Դրուատականը (De magistr. III, 47, հրտ. Wünsch) «Անաստաս շատ բան ըրաւ Պետութեան համար, կը բաւէ յիշել իր կառուցած քաղաքը. Դարա կ'ըսեն բնիկները, մենք՝ Անաստասիուպոլիս: Եթէ Աստուած Պարսից կոկորդը դրած չըլլար զայն, պիտի անմատչէին Հռոմայեցւոց բոլոր սահմանագլուխ երկիրները գրաւելու:

101 Յեսու Ստիլիտ. Ժմնկգր. էջ 91:

ձիւնաբերաց՝ բարձրութեանը պատճառաւ, իսկ ամառը կիզիչ արեւու. սառնամանիք եւ տօթը քայքայեցին աշտարակները. Հազիւ երեսուն տարի վերջը բերդն ի վիճակի չէր դիմանալու այն յարձակման, զոր Ցուստինիանոս ըմբռնեց թէ վճռական պիտի ըլլար. եթէ Դարա առնուէր, Ուռհայաստան կորսուած էր: Ուստի ձեռնարկեց բազմախուռն շինութեանց, զորոնք կը պատմէ Պրոկոպիոս, մանրամասնութեանց անսովոր ստատութեամբ մը[102], ամբարշինական աշխատութիւններ եւ ջրաբաշխական ձեռնարկներ:

Նախապարիսպը բաւական էր հոն, ուր կ՚ընթանար անհարթ զառիթափներուն վրայէն, արգիլելով այն կողմերը մանգղիոններ հաստատելը. բայց հարաւային կողմը դաշտավայրին վրայ՝ աճեցուեցաւ անոր բարձրութիւնը եւ առջեւը փորուեցաւ լայն ու խորունկ կիսաբոլորակ փոս մը, որուն երկու ծայրերը կու գային կը յենուին նախապարիսպին: Փոսին ներքին զառիվայրին վրայ շինուեցաւ դարձեալ լանջարմ մըն ալ, որուն ետեւը պաշարման պարագային Հռոմայեցիք կրնային պահպանութիւն ընել: Երկու շրջապատ պարիսպներուն մէջ դռներու միայն մօտը միայն հողակոյտ մը կար, որ կրնար ըստ դիպաց թշնամւոյն ապաստանարան ըլլալ, ուստի զայն վերցուցին:

---

102 Պրոկոպ. Շին. Բ, 1, էջ 209 յջ.:

Ներքին մեծ պարիսպը զինուորական կատարելագործեալ շինողութեան մը տիպարն եղաւ. Յուստինիանոս զայն 30 ոտք աւելի բարձրացուց պահելով որմախարիսխները, եւ որովհետեւ կարելի չէր զանոնք չափէն աւելի ծանրաբեռնել, նուազեցուց այս յարակից մասին թանձրութիւնը, եւ այսպէսով ազատ մնացած մասին վրայ՝ ճակատի երեսին ետեւը՝ բոլորել տուաւ կամարակապ մը, որ շրջապարձ ճամբու տեղ կը ծառայէր. եւ զոր կամարածածկ շինեցին, պաշտպանողները լանջորմին վրայէն անցնող ամբաշաւղէն վար անքոյթ պահելու համար[103]: Պարիսպն այսպէս երկու յարկ ունէր եւ պատերազմողաց կրկին շարք. միայն վերին շարքն ենթակայ էր հարուածներու: Ներքին յարկի հին ժայռիքները նեղցուցին. ճիշդ այնչափ միայն բացուածք թողուեցաւ, որ թոյլ կու տար ձեռք մը մտցնելու նետ արձակելու համար: Քանի որ ժամանակ չկար՝ Յուստինիանոս հրամայեց աշտարակները կործանել ու ի հիմանց վերաշինել, շատացաւ զանոնք ուղղանկիւն որմայեց մոյթերով հաստատել, եւ այս ոճը գործածեց նաեւ կքած պարիսպին խարիսխն ամրացնելու համար: Աշտարակներն երեք յարկ էին եւ զինեալ երեք շարք մարտիկներ կը կրէին[104]: Պրո-

---

103 Եւ այս եղաւ անոր վրայ թերուղիղ կանգնած գրացի բլուրներուն առթած անապահովութեան առջեւն առնելու համար, որչափ կարելի էր:

104 Պարիսպը 60 ոտք կը բարձրանար եւ աշտա-

կոպեայ նկարագրութիւնը կարելի եղաւ ստուգել ամենափոքր մանրամասնութեանց մէջ ալ. Սախաու յաջողեցաւ գտնել պարիսպներն ու աշտարակները համեմատաբար լաւ պահուած[105]։ Ինչպէս ուրիշ տեղեր՝ հոս ալ արտաքին երեսի զրուագը կրաքարային մեծամեծ կոփածոյ վէմերով էր. իսկ պատի բուն մարմինը՝ խիպարով քարաւիցք։ Շրջապարիսպին տեսքը շատ ճշգրտութեամբ գծագրած է Texier[106]։

Ցեսոյ ինքնակալն ամէն խնամք տարաւ ջուրեր բերելու քաղաքը, աղեքսանդրացի մասնագէտի մը վարչութեան տակ՝ երկու մեծ ընդունարաններ փորուեցան, որոնց մին՝ շրջապատին եւ նախապարիսպին մէջտեղը։ Գետը որ յառաջ քաղաքէն դուրս էր եւ ասով շատ անգամ թշնամեաց հոն բանակետղ մը հաստատելու նպաստած էր, դէպի Դարա դարձուեցաւ խորունկ ջրանցքով մը, որ բացուած էր այնպիսի զահավէժ քարաժայռերու մէջէն որ անկարելի էր հասանքն

---

բակներուն իւրաքանչիւրը մինչեւ 100 սաժէն կը հասնէր (Պրոկոպ. ՊՊ. Բ, 13; 17)։ Շրջապատ երկու պարիսպներու մէջտեղ իբր յիսուն ոտք անջրպետ մը կար. պաշարման ատեն հօտերու փարախ մ'ըլլալու համար։

[105] Հին տեղագրութեանց մասին հմմտ. Ռիտտէր, Աշխ. ԺԱ, 406. գլխաւորաբար Macdonald Kinneirի (412) զննութեանց համեմատ։ Շրջապատն իբր չորս քիլոմեթրի կը հասնէր։

[106] Texier եւ Pullan, անդ, էջ 55—57։ — Պատկերին մէջ առջեւը տեսնուածը նախապարիսպն է՝ իր փոքր աշտարակներով։

*ուրիշ կողմ խոտորեցնել, յաւելուածոյ պատ-նէշի մը հսկայ պարիսպը կը պատսպարէր դետայարդյց յորդմանց ժամանակ։ Այս վեր-ջին շինութիւնք անտեսանելի չեն, բայց շատ ժա-մանակ չկայ որ տակաւին կը նշմարուէին մեծ աղիւսներով հիւսուած ջրամբարները։ Վեր-ջապէս միջնաբերդին ներսը շինուեցան զի-նուորանոցներ ազատելով բնակչութիւնը զօ-րաց օթեւան տալու տաղտուկէն։*

*Դարս ունեցաւ իր յառաջապահկերոց-ները, իւր յաւելուածական յարակից բեր-դերը։ Սախտու դրուած է 3½ մղոն հեռուն, դէպի արեւմուտք*[107]*, եւ քիչ մը հեռուն դէպի հարաւ-արեւելք՝ երկու ուղղանկիւն ահաւոր* դղեակներ։ *Երկրորդն*[108] *իբր* 200 *մետր եր-կայնութեամբ, որ բուն ճակատին առջեւի բերդն ըլլալու է. եւ որ տասնուերկու հաս-տաբեստ բոլորշի աշտարակներ ունէր, ա-նոնց երկուքը քիչ յառաջ տակաւին կանգուն կը կենային։*

---

[107] *Այս ուղղութեան մէջ կը փնտռէ Գէլցէր Բե-րասը, որ Կոստանդնուպոլսէ* 100 *մղոն հեռու էր (Ամմ. Մարկեղ. ԺԸ,* 7, 9), *Թէոփիլ. Սիմոկ., Բ,* 15, 5. *Գէորգ Կիպր.* 935։ *Բայց կը կարծեմ թէ այս կար-ծիքի հիմն է Ամմ. Մարկեղինեայ խօսքին անճիշդ մեկնութիւն մը։ Տես վարը։*

[108] *Սախտու,* (*էջ* 393—394) *Սէրճէ-խան կը կոչէ զայս. միեւնոյն տեղն է զոր Չէրնիկ (Բ մասն, էջ* 16) *Բերդեւիլ-Խասր կը կոչէ եւ* Texier *կասրս կ'անուանէ (էջ* 56)։ *Այս միեւնոյն տեղը Գէլցէրի՝ Գէորգայ Կիպրացւոյ հրատարակութեան կցած Դ քարտէսը՝ կը նշանակէ* Idriphton *անունը, չեմ գի-տեր ի՞նչ պատճառով։ Տես վարը, ծն.* 132։

Զնայելով ուրեմն՝ իր քննադատելի դիրքին, այս յօրինուածական շինութեանց զօրութեամբ Դարա իր դերին բարձրութեան վրայ կանգնած կ'երեւայ Յուստինիանոսի երկրորդ պարսկական պատերազմի ատեն: Խոսրով հրաժարեցաւ անոր պաշարումն աւելի երկարաձգելու. բայց ճշմարիտ է թէ բնակիչներէն անոր ստացած 1000 լիտր արծաթն այս որոշման վրայ աւելի ազդած պիտի ըլլայ քան թէ փորձ դիմադրութիւնը[109]: Ինքնակալը այս քաղաքին համար միշտ վառ հոգածութիւն մը ցուցուցած են. հոմէրական արտայայտութեան վերջին շըրջաններուն, Փոկասի օրով՝ կարեւոր թուով պահակազօրք մը հոն կայանաւորուած էր եւ հիւպատական մը հրամանատար ունէր[110]:

Քանի մը խօսք ըսելու է Մծբնայ մասին ալ[111], թէպէտ եւ շատ կանուխէն կորզուեցաւ Բիւզանդացւոց ձեռքէն[112]: Շատ մօտ էր Դարայի, բայց շատ աւելի բազմափոփոխ պատմութիւն մ'ունեցաւ[113]. բաց աստի բա-

---

109 Պրոկոպ. ՊՊ. անդ:

110 Թէոփիլ. Սիմոկ. Գ. 6, 1, Գ, 10, 3:

111 Սեմական ձեւով նախնաբար Νισίβις, յետոյ Հռոմայեցիք արտասանած ու գրած են Νίσιβις (Համմ. E. Nestle, ի Berliner philol. Wochenschrift, 1905, 399—400):

112 Յեսու Սիւնակեաց (Ժինկգր. 8) միայն արձագանգ կ'ըլլայ բոլորովին կասկածելի աւանդութեան մը, որուն համեմատ Յովիանոս 363ին դաշինքով Մծբինը Պարսից թողուց միայն 120 տարուան համար. բայց երբ այս ժամանակը լրացաւ՝ Պարսք չեն ուզած վերադարձնել:

113 Տես Ռիտտէր, Աշխ. ԺԱ, 413—438:

ւական հին է Միւգդոնական Անտիոքի հիմնարկութիւնը, — այս անունը կը կրէր Սելեւկեանց ատեն[114]: Բազմաթիւ դարերու ընթացքին իր ստացիչ տէրերը միայն կը փոխէր. Հայք գրաւեցին նոյնը հիմնարկողաց ձեռքէն. Լուկուլլոս Տիգրանէն աշխարհակալեց նոյնն երկարատեւ պաշարումով մը[115]: Կրասոսի պարտութենէն ետքը Պարթեւք խլեցին նոյնը Հռոմայեցիներէն. Տրայանոս եւ գրաւեց, բայց ծանօթ է անոր Եփրատէն անդին կատարած ամէն աշխարհակալութեանց բախտը: Սակայն յետոյ դարձեալ հռոմէական եղաւ եւ գաղութի տիտղոս առաւ Սեպտիմոս Սեւերոսի ատեն: Շապուհ տիրացաւ անոր 242ին, Գորդիանոս Գ դրեթէ անմիջապէս վերստացաւ, Դիոկղետիանոս ու Մաքսիմիանոս տեսնելով թէ ապահովապէս սահմանուած էր թշնամւոյն առաջին յարձակումները կրելու, անոր յառաջապահութեան դերին հարկաւոր աշխատանքներն ի գլուխ հանեցին[116]: Բայց չենք գիտեր թէ ի՛նչ էին այս աշխատանքները: Յուլիանոս

114 Փոլիբիոս, Ե, 51, յաւել Ստրաբոն, ԺԶ, 1, 23, էջ 747 C. Պլին. Բն. Պատ. Զ, 42:

115 Այն ատեն արդէն հզօրագոյն բերդերէն մին էր, իր աղիւսակերտ կրկին պարիսպներով, որոնք ահագին թանձրութիւն մ'ունէին, եւ շրջապատուած էին խորունկ փոսով մը. (հմմտ. Դիոն. Կաս. ԼԵ, 6):

116 Assemani, BO. I. p. 262 «Յամի Յունաց 609 (= 298 յ. Ք.) Հռոմայեցիք նորոգեցին Մըծբինը»:

պատմելով այն պաշարումները, զոր Մծբին կրեց, բացի այնչափ ուրիշներէ[117], նաեւ Կոստանդոսի օրով, չի թողուր այս մասին որեւէ կասկած մը։ Ամմ. Մարկեղինոսի կը պարտինք պարզ ակնարկութիւն մը ահարկու պարիսպներուն Մծբնայ, «առանց որոյ անկարելի էր տիրել Արեւելքի մէջ[118]»։ Իսկ արաբացի աշխարհագիրներն ու պատմաբաններն աւելի զայն շրջապատող անհամար մշակեալ պարտէզներու մասին խօսելով՝ արեւելեան երեւակայութեան սովորական առատելագանցութեան մէջ կ'իյնան[119]։ Օպպերտ այս պարիսպներուն որեւէ հետք չէր գտած. Սախաու հազիւ կրցած է նշմարել՝ սիւներու բեկորներու եւ քարակոյտներու, աղիւսներու շրջակուտմանց եւ ամէն տեսակ փլածներու մէջ, որոնք կիսով չափ աւազով ծածկուած էին, քանի մը կոփածոյ քարեր, որոնք հին շրջապարիսպին կղզիացեալ մէկ կտորը կը ցուցնէին[120]։

---

117 Յուլիանոս, ճառ Ա, 27 եւն. (յամի 338, 346, 350) Հմմտ. Սեքստ. Ռուփ. Հմռ. 27՝ «Մծբին երիցս Պարսիկներէ պաշարուեցաւ. բայց թշնամին պաշարած ատեն աւելի մեծ վնաս կրեց»։

118 Ամմ. Մարկեղ. ԻԵ, 7, 9։

119 J. Oppert, Expéd. scient. en Mésopotamie, Paris, 1863, I, p. 61։

120 Անդ, էջ 392. Oppenheim, (Vom Mittelmeer, II, p. 31 յլ.)։ Այժմ կան միայն անկերպարան աւերակներ, եւ արդի տներուն մէջ սիւներու եւ խոյակներու մնացորդներ։ Մծբին այրացաւեր եղաւ Մաւրիկէ՝ (Տիբերիոսի Բ օրով. (Թէոփ. Սիմոկ. Գ, 16, 1)։ Դէպի արեւելք գացող ճամբան կ'անցնէր Diagdiagէ կամուրջով մը, որուն կամարը կե–

Կը մնայ այժմ անցնիլ Մատրաի պատնէշը եւ հետեւիլ Տիգրիսի հովտին: Այն տեղ եղած պահակերոցները մեզի համար յատուկ հետաքրքրութիւն մ'ունին, վասն զի երկայնածիգ տարածութեան մը վրայ երկու կողմի ափերը Հռոմայեցւոց իշխանութեան տակ եղան միայն 66 տարի — Գաղերիոսէ մինչեւ Յովիանոս: Դժբախտաբար դեռին մօտը միայն ըստ դիպաց կրնանք տեղ մ'որոշել այն գոյութիւն ունեցող զինուորական բազմաթիւ կայաններուն: Օրինակի համար, ո՞ւր էր տեղւոյն այն «Մաւրաց դղեակը, (castrum Maurorum) զոր Ամմիանոս[121] կը յիշատակէ Մծբնայ, Սինգարայի եւ հիգետաւան ամրոցաց հետ, որոնք Յուլիանու աշխարհէլի արշաւանքին հետեւութեամբ կորսուեցան: Այս հովտին ուշադրութեամբ հետազօտելու է· անուանակոչութեան տուեալները միայն քանի մը նոյնացումներու առաջնորդած են[122]:

Սակայն եւ այնպէս անո՛վ ալ յաճախ տարակոյսի տեղիք կը մնայ: Ամմիանոս կը

---

ցած էր տակաւին Զէրինկի ուղեւորութեան ժամանակ (1873ին), բայց արդէն շատ մեծ վտանգի մէջ էր յորդութեանց առեն. (Բ մաս, էջ 15):

[121] Ամմ. Մարկել. Ի, 7, 1—13, «յարմարագոյն ամրութիւն»: Կոստանդոս զուր աշխատեցաւ զայն գրաւելու, անդ, 11, 6 եւն:

[122] Այս դղեակներէն ոմանք կը յիշէ Գէորգ Կիպրացի եւ որոնց հետքը չենք գտներ ուրիշ յոյն կամ արեւելեան հեղինակներու քով. բայց անանց կարգի կը յիշատակէ, որով անկարելի կ'ըլլայ անոնց տեղ մը նշանակել:

պատմէ թէ Շապուհ 360ին խոհեմութեամբ խուսափեց Մծբինէն՝ յիշելով իր հոն կրածները, եւ դէպի աջ խոտորելով՝ դիմեց Բզաւդէի վրայ, որ Փենիկէ ալ կը կոչուի. «հզօրագոյն ամրութիւն մը միջին բարձրութեամբ բլուրի մը վրայ կեցած եւ Տիգրիսի եզերքին կանգնած, եւ ուր տեղը կասկածելի եւ ցած է՝ երկնապատ պարիսպով պատնէշուած, որուն պաշտպանութեան համար երեք լեգէոններ սահմանուած են, Բ Փղաւեան, Բ Հայկական եւ նոյնպէս Բ Պարթեւական՝ բազմաթիւ Զաւդեան աղեղնաւորներու հետ» են[123]։ Նոյն հարուած մ'այնչափ սարսեց պարիսպներն որ աշտարակ մը կործանեցաւ եւ Պարսիկներն մտան այս խրամատէն։ Օպպերտ[124] այս Բզաւդէն կը դնէր արդի Ջեզիրէ տեղը, որ ասորի հեղինակներու քով Գոզարդա-Զաբդի կը կոչուի[125]։ Իրօք ալ հոն հին քաղաք մը կար. այսօր ալ կը տեսնուին դուռ մը եւ պարիսպներ, որոնք ցայժմ նկարագրուած քաղաքներու նման շինուած են միանգամայն թէ կոփածոյ քարերով եւ թէ՝ քարակիցքով։ Միայն թէ Ջեզիրէ կղզւոյ մը հարթավայրին վրայ է. եւ այս չէ այն վերը

123 Ամմ. Մարկեղ. անդ։

124 Օպպերտ, անդ, էջ 64. այսպէս՝ Fränkel առ Պաւլի-Վ.։

125 Նոյն արմատը կը գտնենք ամբողջ գաւառին Զաւդէ կամ Ծաւդէ («Զաբդիկէնէ») անուան մէջ, որուն գլխաւոր տեղն ըլլալու է Բզաւդէ (Բզաբդէ)։ Համմ. Մարկեղ. ԻԶ, 7, 9. Զոսիմ. Գ. 31, 1. Սոզոմեն. Պատմ. Եկեղ. Բ. 13։

յիշուած «բարձր բլրոյ վրայ ամրութիւնը» եւ Թերեւս, ինչպէս Օպպերտ ալ ի հարկին կ՚ընդունէր, աւելի լաւագոյն պիտի ըլլայ Բզաւդէն զետեղել քիչ մ՚աւելի խոնարհակողմը, այն կէտին վրայ, ուր Սախաու[126] Կասր-Դէլլա կը կոչէ, եթէ սակայն այս ճիշին վիճը կրնայ յանել այն բերդին տեղը, որ այսպիսի կարեւոր ուժով պահակազօրք մ՚ընդունեցաւ: Գերմանացի արեւելագէտն աւելի Ֆիթիկ տեղն, որ աւելի վերնակողմն է, կը համարի թէ հին Փենիկէն ըլլայ[127]:

Հռոմայեցւոց թողած էր 363ի դաշինքն այն ամէն երկիրները, որ Դարայէն սկսեալ դէպի հիւսիս ձգուող գծի մը արեւելակողմը կ՚իյնային: Հռոմայեցիք պահեցին նաեւ Դարայէ Ամիդ տանող ճամբան՝ նեղ, դժուարին ու անհարթ հովիտի մը մէջէն, որուն վրայ նոյնպէս կանգնած էին դղեակներու շարք մը:

---

[126] Սախաու, էջ 377:

[127] Այսպէս՝ Ռիտտէր, ԺԱ, էջ 121· Ainsworth (Travels, II, p. 345—357) գիտած է դղեակի մ՚աւերակները, որուն կողերուն վրայ կանգնած էին չորեքկուսի աշտարակներ, եւ իբր 600 քայլ լայն էր եւ 1100 երկայն: Դրացի բլուրներուն վրայ երկու ուրիշ փոքրագոյններ կան, որոնք սակայն աւելի լաւագոյն դիրք ունին: Ռիտտէր կ՚ըսէ թէ Ամմիանոս գործած նմանեցումը սխալ է. աչքի առջեւ ունի Բզաւդէն եւ այն վրիպական ենթադրութիւնը կ՚ընէ թէ այն երբեմն Փենիկէ կը կոչուէր: Հիւբշման եւ Միւլլէր-Սիմոնիս ալ (անդ, 35—37) կը զանազանեն Բզաւդէն ու Փենիկէն: Շտրեք (Պաուլի-Վ. յաւել.) կ՚առաջարկէ Բզաւդէն նոյնացնել Զարպիի հետ, զոր կը յիշէ Պղուտարքոս, Ղուկուղ. 22 (Զապփի Պտղոմեայ քով, Ե, 17, 6), այսպէս Միւլլէր:

*Պրոկոպիոս այս միջնակաց բերդերու քանի մը հատը կ'երկրորդէ։*

*Նախ* Կեփաս. *այս շատոնց կարեւոր կայան մըն էր, եւ անշուշտ ատոր կը հայի «Տեղեկ.» գրոց մէկ յիշատակութիւնը*[128]*։ Ասորի աղբիւրի մը համեմատ՝ այս ամրավայրը շինած էր Կոստանդիանոս*[129]*։*

***Յետոյ* — *ի միջի այլոց* —** Սաւրաս[130], Սմարգդիս[131], Լոռն, Հերիփթոն[132], Ասսաքաս[133], Սիփրիոս[134], Ոխպալթաս, Բաննա—

---

[128] Not. Or. XXXVI, 30՝ *«Վերակացու Բ Պարթեւական լեգէոնին ի* Կեփաս»։ *Նոյն լեգէոնը յառաջ Բզաւդէ կը գտնուէր. բայց թերեւս* Բզաւդէ = *Կեփա, (տես նախընթաց ծան.)։*

[129] Socin, *ի* ZDMG, 1881, p. 239։ *Ասորերէն կը նշանակէ «վէմ», (քար, ժայռամբոց)։ Ժամանակ մը Պարսից պետական բանդն էր, ուստի է Պրոկոպիոսի տակաւին տուած յորջորջանքը* (*ՊՊ. Ա*, 5, 7). *հմմտ. Թէոփիլ Սիմոկ.* (*Գ*, 5, 12) *որ կ'անուանէ նաեւ Գիլիկերտ բերդ. Գէորգայ Կիպր. քով* (933)՝ ж. *Σιμέων Κίφας անեղծուածային բանաձեւ մըն է.* (*հմմտ. Գէլցէր, էջ* 163)*։ Ռիտտէր ԺԱ*, 81 *եւն*) *զայն Հասանկէֆի մօտ կը դնէ* (*հաւանօրէն անուան* Kef *վերջաւորութեան պատճառաւ։*

[130] *Գէորգ. Կիպր.* 919 ж. *Τζαδρας* (*յաւել.* 936). *զայս* Սաւր *տեղւոյ հետ նոյնացնելու մասին տես* Socin, *անդ, էջ* 265։

[131] *Ռիտտէր, ԺԱ*, 82, *զայն կը միացնէ Մարդինի* (*Մարդին*) *հետ, գաղափարս ընդունելի է։*

[132] *Ուղղելու է Ἰδριφθόν ըստ Գ. Հոֆմանի, ասորական* Idribt *ձեւին համար. հմմտ. Գէլցէրի*, 159՝ *հաստատականութիւն Գէորգայ Կիպրացւոյ, որ կը գրէ Ῥίφθον* (917)։ *Տես վերը ծան.* 108։

[133] *Յաւել՝ Պրոկոպ. ՊՊ. Ա*, 21, 9. *Գ. Կիպր.* 938 (*Գէլցէր* 164). *այսօր* Ասսակ, *ձախ ափին վրայ։ Նիմփէոս գետի վրայ եղած* Մարտիրոպոլ–Խարփերդ (*Պրոկ. ՊՊ. Ա*, 21, 5—6) *իբր* 100 *ստադ հեռու էր, ուստի Տիգրիսի շատ մօտ։*

[134] *Գ. Կիպրացւոյ քով* (918) *Ἴσφριον։ Սիփրիոս*

սիմէոն[135], Սինաս, Հռասխս, Դարանաս[136] եւ այն ամէնքն որ հոն կը գտնուէին ի հնուց[137]»: Ամբողջական անջրպետը հազիւ 100 մղոն է. ուստի այս դղեակները կարգաւ շարուած ըլլալու էին իրարմէ ութական մղոն հեռու, կամ գուցէ աւելի նուազ հեռաւորութեամբ: Բայց ասոնք նախ բերդերու միայն երեւոյթն ունէին, մինչեւ որ Յուստինիանոս անոնց պատկառելի պարիսպներ տուաւ: Նոյն հեղինակը կ'աւելցնէ թէ լեռան ստորոտը տարածուող դաշտը բերրի է, լի փոքրիկ գիւղերով, բայց ենթակայ աւարումներու. Ինքնակալը մերձակայ լեռնագագաթին վրայ շինեց «Արքայից բերդը[138]», ուր գիւղացիք իրենց ամէնէն թանկագին ինչքը կրնային պահել եւ հոն ապաւինիլ՝ երբ թշնամին մերձենար:

Միւս կողմանէ կ'երեւայ թէ իրապէս այս դղեակներէ ոմանք Տիգրիսի մօտ էին, միւս մասն ալ՝ Մասիոսի վրան: Թէոփիլոս Սիմոկատտա[139] կը նշանակէ Իզալաս լերան կարեւորութիւնը, որ դէպի արեւելք Տիգ-

---

Ամիդէ իբր 9 մղոն հեռու էր, այստեղ Կաւատ Պատրիկոսի եւ Հիւպատիոսի բիւզանդական զօրագունդը ջախջախեց. (Պրոկոպ. ՊՊ. Ա, 8, 10:

135 Seeck կը համեմատէ «Տեղեկ.» գրոց Banasam գրածը (XXXV, 6, 18, գունդը՝ «Հեծեալք յառաջացեալք բնիկք»). բայց այս վերջինս Ուռհայատանի մէջ էր, ո՛չ թէ Միջագետաց:

136 Տես վերը. ծան. 54:

137 Պրոկոպ. Շին. Բ, 4, էջ 222:

138 Գ. Կիպրացւոյ՝ «Արքունի ամրոց»:

139 Թէոփ. Սիմոկ. Ա, 13, Բ, 1 եւ 10:

բլրի վրայ կը նայէր եւ որուն վրայ կ'իշխէր բերդ մը (անտարակոյս Բզաւդէ): Ամմիանոս կ'երեւայ թէ այս անունը կու տայ Մասիոսի արեւելեան մասին, Մարդինի եւ գետին միջեւ[140]: Համայեցիք 359ին յառաջացան Մծբինի ուղղութեամբ, ուզելով ամրացնել այս քաղաքը եւ տէր մնալ Իզալայի, բայց տեսնելով թշնամույն խարոյկները, որ «Մաւրաց դղեակէն», Սիսարայէ եւ սահմանագլխոյ ուրիշ տեղերէ անցնելով՝ մերձեցած էին նոյնպէս Մծբինի, փախան Ամիդի կողմէն Մայակարիրէի (Meiacarire) վրայէն: Ամմիանոս՝ փախստականաց մէջն էր, կըրցաւ անձամբ ճանչնալ այս երկիրը: Պարսիկ բանակը հետապնդեց «Բեբասէն տեղն ճամբան դէպի աջ խոտորելով... Հորրէ եւ Մայակարիրէ եւ Քարքա անցնելով իբր թէ դէպի Ամիդ երթալու համար, երբ հռոմէական դղեակներու մօտ եկաւ, որոնց մին Ռեման, իսկ միւսը Բուսան կը կոչուէին[141]»: Կը յաջորդէ յարակից միջադէպ մը:

Այս պատմութենէն կը հետեւցնենք թէ Բեբասը[142], ինչպէս նաեւ «Մաւրաց-բերդը» եւ Սիսարա[143] Տիգրիսի եւ Մծբնայ միջեւ կը

140 Ամմ. Մարկեղ. ԺԸ, 6, 12: — Հոս էր (անդ, 13) Ամսեդիս բերդը, կամ Ամմոդիան բերդը (Պրոկոպ. Բ, 1, էջ 213) Ամմոդիոս (Թէոփ. Սիմոկ. Ե, 4, 4) Amande (Աշխ. Հռաւ. 81, 20) Fränkel, Պաուլի-Վ.:

141 Ամմ. Մարկեղ. ԺԸ, 10, 1:

142 Տես վերը ծան. 107:

143 Տես վարը:

*պտնուէին, եւ աւելի վերջնոյն մօտը․ Հորբէ, Մայակարիրէ*[144] *եւ Քարքա*[145] *կը գտնուէին դէպի Ամիդ տանող ամենակարճ ճամբուն վրայ, հետեւաբար դեռ հեռու։ Միայն Թեմանն եւ Թուսան այս ճամբէն դուրս կը մնային*[146]*, վասն զի միայն խոտորնակ շրջանով մը անոնց կը հասնուէր։*

*Պարսիկ Կարդարիգան զօրավարը* 584*ին կը խաղար գուպարելու համար Յովհաննէս Արեւելից զօրավարին հետ։ Վերջինս իւր բանակը դրաւ* Մոծոկարտում *տեղը* Այսումա (Aisuma) *լերան վրայ, որ Իզալայի պա-պաթնակէտն էր*[147]*․ անկէ բազմաթիւ դղեակ-ներու մէջէն անցնելով՝ եկաւ Քարքարո-*

---

[144] *Ամմ. Մարկել.՝* (*ԺԸ*, 6, 16) *«Որուն ա-նունը տուած են սառնաջուր աղբիւրներ» կը համա-պատասխանէ Պեւտինգ. Տախտակի «Պաղ Ջրեր* (Aquae frigidae) *կոչածին։ Թէոփ. Սիմ. Ա*, 13, 4․ *«Տեղեկ.» գրոց մէջ* Maiocariri, *ուր կը կենար «Վաշտ ԺԳ. Վալերեան Զաւղէից»։*

[145] *Այս նոյնացուցած են* Mefana Chartha *տեղ-ւոյն հետ, ուր «Տեղեկ.»* (XXXVI, 25), *կը դնէ «*Հեծեալք աղեղնաւորք բնիկք Արաբացիք*»․ այսչափս կա-րելի է՝ բայց ոչ աւելին։ Նոյն տարակոյսը կը յառնէ միւս համեմատութեան համար, զոր մոդեռնիս կը բերէ հետեւեալ յիշատակութենէն «Թեւ Բ* Եօր Եգիպ-տացւոց ի Կարբթա*»* (*անդ՝* 32)*։ Յաւել վարը Ծա-նօթ.* 148։

[146] *Այսպէսով կը մեկնուի թէ պարէնը պա-հուած թաքցուած էր հոն «իբր յարմարագոյն եւ ապա-հով ամրութեանց մէջ»․ (Ամմ. Մարկել. անդ)։*

[147] *Թէոփ. Սիմոկ. Ա*, 14, 6։ *Մոնոկարտոնն այն ատեն* Տիբերիուպոլիս *կը կոչուէր, անտարակոյս Տիբերիոսի Բ. կատարած մէկ նորոգութեան պատ-ճառով։*

ման[148] եւ լսելով թէ Կարդարիգան կ'ուզէ Իտալիա ելլել «Մայակարիրէի ամբոխեանց մէջէն», իր բուն բանակը Մծբին դարձուց, անկէ այլեւայլ ասպատակներ սփռեց, եւ վերադարձաւ պատսպարուելու Իտալիայի բարձունքներուն մէջ[149]: Սիմոկատայի այս տեղեկութիւններու չափազանց խառնաշփոթ են եւ չենք կրնար անով նոյնիսկ մերձաւորապէս զետեղել այն կայանները եւ ոչ մին՝ զորոնք կը յիշատակէ: Բայց այնպէս կ'երեւայ թէ ամէնքն ալ Մասիոսի վրայ էին, եւ մեծագոյն մասը նոյն լեռնաշղթային հարաւային եւ արեւելեան բաժնին մէջ:

Միւս կողմանէ կը յիշէ տակաւին ուրիշ տեղեր ալ մեկտ անորոշ բացատրութիւններով. Հերակղ Իտալիա երթալու ճամբուն վրայ դտաւ ղղեակներ, յանուանէ Թումանոն. եւ պահակազօր դրաւ ուրիշ երկու ղղեակներու մէջ՝ Փառաքոն եւ Ալալիսոս[150]: Ամրացեալ այս բանակատեղերը՝ պատերազմի բախտին համաձայն՝ փոխնի-

148 Թիստէր (ԺԱ, 152) այս տեղը կը միացնէ Պրոկոպիոսի Հռոմբիսի հետ. եւ Ծորէք (Պալլի-Վ., Ցամէլ. Ա, 283) կ'ենթադրէ թէ Քարքարոման անունը կը նշանակէ միայն «ամրացեալ քաղաք Բուման» (Ամմիանոսի Բիմանը) որ գործ մը չունէր Քարքայի հետ, զոր կը յիշեն նոյնպէս Ամմիանոս, Եւագր Զ, 21, նոյն ինքն Թէոփ. Սիմոկ. (Ե, 1, 10, Ե, 13, 1) եւ «Տեղեկ.» գիրքը. (տես ծան. 145): Այս կարծիքը հաւանական կ'երեւայ, բայց ո՛չ Թիստէրինը:

149 Թէոփ. Սիմ. Ա, 13, 3 եւն:

150 Անդ, Բ, 9, 17:

փոխն երկու պատերազմողներու ալ կը վերադարձէին: Լոռնի մասին գիտենք միայն որ Մարդլինի մօտն էր. վասն զի Ամիդէն մեկնող բանբեր մը Մծբին հասաւ Իզալայը կտրելով, յիշեալ երկու տեղերուն մէջտեղէն անցնելով[151]:

Սահմանագլխոյ վրայ, — բայց չենք գիտեր ո՛ր կէտին վրայ — կը գտնուէր Հռաբդիում դղեակը[152]: Միայն ուշ ժամանակ Հռոմայեցւոց վերադարձեցաւ. զայն՝ ինչպէս նաեւ հոն տանող ճամբան ինքնակալ մը՝ որուն անունը Պրոկոպիոս չի տար, փախստական ըլլալով Հայաստանի այգեշատ մէկ գաւառին հետ, զոր Պարսից տուաւ: Միայն մերձաւորապէս կրնանք անոր տեղն որոշել, գիտնալով որ երկու օրուան ճամբայ հեռու էր Դարայէն դէպի Պարսից երկիրը գացողին

---

151 Աշխ. Մարկեզ. «Գաղափար ուղարկեց Միջագետաց բնակչաց ծանօթական մը, որ Մծբին պէտք մնայ էր Իզալոս լեռնէն՝ Մարդէ եւ Լոռնէ, երկու սահմանապահ դղեակներու մէջտեղէն»: Իզալոսի ամբողջ այս կողմի մասին հմմտ. Ռիտտեր, Աշխ. ԺԱ, 150 եւն: — Սիմոկատտայի յիշած ուրիշ ամրութիւններն — որոնց ամէնքը Տիգրիսի վերին հովտին շրջակայքն են — հետեւեալներն են՝ Ափումոն, բիւզանդական (Ա, 1, 12, 13. Բ, 9, 4, 9. Գ, 15, 4) Ակբաս եւ Մատզարոն, երկուքն ալ պարսկական (Ա, 12, 1. Բ, 18, 7), Քլոմարոն (Բ, 7, 6. 8, 12) եւ Բէյուդայէս (Բ, 18, 7). հմմտ. Գէորգայ Կիպր. (930) «գիւղ Հրէից»: Նոյնը կարելի է համեմատել «Տեղեկ.» վրայ Sina Judaeorum տեղւոյն հետ (XXXV, 19. հմմտ. 7 «Հեծելոյք յասպազացելոյք բնիկք» ցուցակը):

152 Գ. Կիպր. 914: Այս դղեակը որ տարբեր է Rhabdiumէ (Rappün) կրնայ Տուր-Աբդին ըլլալ: — Պրոկոպ. Շին. Բ, 4, էջ 220:

համար եւ թէ Սիսաւրանա կամ Սիսաւրա[153], զոր Յուստինիանոս գրաւած էր եւ 3 մղոն հեռու էր Հաարդիւմէ, մէկ օրուան ճամբայ հեռու կը գտնուէր Մծբինէն[154]: Այս երկիրը թէեւ արգաւանդ էր՝ մինչեւ այն ատեն անպատսպար մնացած էր. եւ սակայն Հաարդիւմ գերազանցօրէն նպաստաւոր դիրք մը կը գրաւէր՝ պահակէժ քարաժայռերու վրայ: Առաջին անգամ Յուստինիանոս այս տեղը պարսպապատ ըրաւ, եւ ապառաժը շատ տեղ փորեց՝ անձրեւի ջուրերը պահելու համար:

Սակայն Յովիանոսի դաշինքէն ետքը Վերին-Տիգրիսի կողմը միակ ճշմարիտ քաղաք մը կար՝ Ամիդ[155]: Չի յիշատակուիր թէ ամրացուած ըլլայ Կոստանդոս Բ. (337—361) կայսերէն առաջ[156], որ այս քաղաքն «որ յառաջ բոլորովին փոքր» էր ճոխացուց աշտարակներով եւ թանձր պարիսպներով եւ զինանոց մը կարգեց հոն: Մշտատեւ հոն կը գտնուէր Ե Պարթեւական լեգէոնը՝

---

153 Սիսաւրա՝ Ամմիանոսի քով, տես վերը. Պրոկոպ. անդ.:

154 Պրոկոպ. ՊՊ. Բ, 19, 2: Հմմտ. Ռիտտէր, Աշխ. ԺԱ, 400—401:

155 Հերցֆելտ, Ուղեկց. «Կուսակալութիւն Միջագետաց... քաղաք Ա, Ամիդ»: Հմմտ. Ռիտտէր, Աշխ. ԺԱ, 20—23:

156 Եդեսիոյ ժամանակագրութիւնը կը պատմէ 349ի դէպքը. Hallier, էջ 96, թիւ 19: Assemani. BO. I. p. 26, յաւել.՝ 196: Շինութիւնն երկու կամ երեք տարի տեւեց, ըստ Զաք. Հռետորի, Է, 6, էջ 117. Հմմտ. Ahrens եւ Krüger, ծանօթ. էջ 343:

բայց զգալապէս աւելցուեցաւ պահակազօրքը շատ բազմաձեռն բնիկ հեծելազօրու մը հետ, Շապհոյ 359ի պատերազմին ատեն[157]: Ամմիանոս երկար նկարագրած է այն պաշարումը, զոր այն ատեն կրեց քաղաքը, եւ անոր նկարագրութիւնը շատ լաւ կը յարմարի արդի Դիարբեկիր քաղաքին[158]: Ուրիշ պաշարում մը, որ աւելի ահաւոր էր, տեղի ունեցաւ Անաստասի ատեն 503ին. պաշարողները քաղաքն առին ստորերկրեայ ականով մը. բայց Անաստաս յետոյ Ամիդ վերագրաւեց[159]: Պրոկոպիոս համառօտիւ կ՚աւանդէ թէ Յուստինիանոս նորոգեց պարիսպն ու նախապարիսպը, որոնք կը սպառնային կործանիլ[160]: Մանրամասնութիւն մը, որ հնագոյն ժամանակի մը համար կ՚աւանդուի, չէր կրնար չհետաքրքրել նաեւ Յուստինիանոսի ատենը. ա՛յս տեսակ մը ջրհոր էր, որ սասանց

---

[157] Ամմ. Մարկել. ԺԸ, 9, ԺԹ, 1: Թէեւ յետոյ «Տեղեկ.» գիրքը քաղաքին իբր պահակազօր կու տայ միայն (XXXVI, 19—20) այս գունդերը՝ «Հեծեալք Վահանաւորք Լիբիկեցիք» եւ «Հեծեալք Առաջնորդք Լիբիկեցիք Առաջինք»: Գիրքս խմբագրուած է միջոցի մը, երբ այս սահմանագլուխէն Պետութեան մեծ սպառնալիք մը չկար:

[158] Ուրուագիծ մը կու տայ Ջէրնիկ (անդ, Տախտ. Բ) որ զարմանալիօրէն կը լուսաբանէ Ամմիանոսի գրածը (ԺԸ, 8, 1) «Արտեւանի վրայ նստած, միակ նեղ վերելքով մը մատչելի, զոր բլուրները կեղեւնեն նմլելու համար շինուած աղօրիքներէ խառագոյն կը սեղմէին:

[159] Պրոկոպ. ՊՊ. Ա, 7—9: Հմմտ. նաեւ Յեշ. Սիւնակեացի Ժմնկգր.ը եւ Ուռհայի Տարեգիրքը (Hallier, p. 120, թիւ 80):

[160] Պրոկոպ. Շին., Բ; 3, էջ 120:

ընդհատման ջուր կը մատակարարէր պահակազօրուն եւ բնակչաց[161]. այն մինչեւ գետին երեսը շինուած էր: Եւ բնագիրը թոյլ կու տայ հետեւցնելու թէ պաշարաւորման նման դրութիւն մը գոյութիւն ունէր գետի մօտ գտնուող ամէն ամրավայրերու մէջ:

Եթէ Ամդայ միջնաբերդն այժմ միայն փլատակներու կոյտ մըն է, գոնէ հին շըրջապատի պարիսպները, աշտարակներն ու դռները տակաւին կանգուն կը կենան[162], եւ աւելի կը ցաւինք որ չկայ յատակագիծ մը, զո՛ր տալ փորձելու էին ուղեւորք, որոնք միայն անցած են քաղաքէն կամ այցելած անոր այլեւայլ անկարեւոր յիշատակարանները[163]:

Այս քաղաքը, որ առաւելութիւնն ունէր Տիգրիսի վրայ գտնուելու եւ Եփրատէն հա-

---

161 Ամմ. Մարկել. ԺԹ, 5, 4. «Քարայայ հարաւային մասին բարձրագոյն կէտին վրայ, որ գետին վրայ կը նայի կար բարձր աշտարակ մը, որուն ներքեւ կը բացուէին սեպ կտրուած ժայռաժերպեր, այնպէս որ անհնար էր վար նայիլ առանց գլխու պտոյտի. ուսկից ստորերկրեայ փորուած կամարներու մէջէն աստիճաններով լերան ստորոտէն վեր կ'ելլեցուի մինչեւ քաղաքին գետնի երեսը, ուսկից գետէն ջուր կ'առնէին գաղտնաբար, ինչպէս այս կողմերու գետին մօտ կանգնած բոլոր ամրութիւններու մէջ նոյները կը տեսնենք ճարտարութեամբ շինուած»: Քաղաքին պարունակածներուն, եւ յատկապէս ջրմուղին մասին տես Զաք. Հռետոր էջ 118, եւ Մարկեղինոս Կոմէս, 518:

162 Սախաու, անդ, 437:

163 Oppert, Expéd. en Mesopot. I. p. 50—57:

գիւ երկու օրուան ճամբայ հեռու ըլլալու[164], սահմանուած էր Հայաստանի եւ Միջագետքի հռոմէական երկրաբաժիններն միահաղոյն պաշտպանելու: Տեսանք թէ Դարայի հետ կապուած էր բերդերու շարքով մը. բայց ինքն ալ շրջապատուած էր դղեակներով, որոնք արշաւանաց դէմ առաջին դիմադրութիւնը կ'ընէին եւ անով ժամանակ կու տային գլխաւոր ամրավայրին կազմակերպուելու: Պրոկոպիոս, որ յայտնապէս այս կողման վրայ լաւատեղեակ չէր, կը յայտարարէ թէ չի կրնար այս ամէնուն վրայ ճշգրտութեամբ խօսիլ[165]. միայն ընդհանուր եւ տարտամ կերպով գիտէ թէ Յուստինիանոս յանկարծական արշաւանքէ մ'ապահովեց անոնց ամէնքը, որ նոյն վտանգին ենթակայ էին, անոնց պարիսպները շինուած ըլլալով միայն տեսակ մը կաւախառն տիղմով: Երկու հատը միայն կը յիշէ, Ապադեա եւ Բիւրթոն (Byrthum): Առաջինը շինուած

---

164 Երկուքին միջեւ կը գտնուէր Գէորգ Կիպրացւոյ (921) Արարմիս կամ Արարեիս, — որու ջերմուկներուն մասին կը խօսի Ամմիանոս (ԺԸ, 9, 2) — արդի Ջերմուկ անգւոյ մօտը: Հմմտ. Ֆորէք, Պաւլի-Վ.-, Յաւելուած:

165 Պրոկոպ. Շին. Բ, 4, էջ 223՝ «Դիւրին չէ ամէնքը յանուանէ տուղադիգոյն նշանակել»: Ամմ. Մարկել. ԺԹ, 6, 1. կ'ակնարկէ ասոնց շատերը՝ Շապուհի Ամիդը պաշարելուն առթիւ երբ կը գրէ՝ «նոյն օրերն ուրիշ ամրութիւններ ալ առնուեցան եւ այրուեցան». եւ այս դղեակներէն՝ ուր անտարակոյս ապաստանած էր ժողովրդեան մէկ մասը, հազարաւորներ գերի տարուեցան:

ըլլալու էր իբր Ամդայ շինութեան ժամանակները, վասն զի այն բերդերու շարքին մէջ կեցած է, որոնց պատկերը կը տեսնուի «Տեղեկ. Աստիճ.» դրոց գլուխներուն սկիզբը: Միայն տարօրինակ է որ երկու անգամ կ'երեւայ հոն, Ուռհայաստանի ամրավայրերու եւ Միջագետաց ամուրներու մէջ[166], ուղղագրական թեթեւ պէսպէսութեամբ, որ ինքնին աննշան է: Երկու Ապադնա վայրեր եղած ըլլալու են. մին որ Միջագետքի մէջ էր, կը գտնուէր Ամդայ հիւսիսակողմը Հայկական Տաւրոսի մէջ[168]: Իսկ Բիւրթան այժմ անգտանելի է[169]:

---

166 Not. Or. XXXV, 15 եւ XXXVI, 8:

167 Ուռհայաստանի մէջ եղածին մասին տես վերը Ծան. 4:

168 Հմմտ. Ruge առ Փաուլի–Վ., Տարբէք, անդ, Յաւել. Ա, էջ 98—99:

169 Չենք կրնար ասոր հետ համեմատել Եփրատի եզերքէն եղած Բիրթա (Birtha) տեղը, զոր Պտղոմէոս (Ե, 18) կը յիշէ եւ զոր Ծիւէր կ'ուզէ Սոզյա կղզիէն քիչ մը խոնարհագոյն զետեղել, ուր Chesney քանի մ'աւերակներ տեսած էր (Թակկայի եւ Հալէբիէի մէջտեղ): Հմմտ. Յեշ. Սիւնակեաց. Ժմնկգր. 93՝ «Երանելին Սարգիս, եպիսկոպոս Բիրթայ՝ միջնաբերդին, որ մեր երկրին մէջ Եփրատայ եզերքը կանգնած է, սկսաւ շինել նաեւ իւր քաղաքին պատնէշները»: D. H. Müller (Birtha, Փաուլի–Վ.) — երկու Բիրթա անունով տեղ կը նշանակէ Եփրատի վրայ. մին Ուռհայաստանի մէջ (Հերոկղ. 715, 2)՝ որ նոյն ըլլալու է Բիրթա բերդին հետ, (յիշուած Գ. Կիպրացւոյ կողմէ (891). հմմտ. Թերեւս Թեւ առաջին վիկարիայ Տավիա (այսպէս) ընդդէմ Բիճրա. Not. XXXV, 28: Միւսը կը գտնուէր անապատ Արաբիոյ մէջ, որ Deir ըլլալու է. բառս կը նշանակէ բերդ, ուստի շատ անգամ կրնար գործածուիլ:

Ամիդը պաշտպանող ուրիշ բերդ մը կը յիշատակէ Ամմիանոս, երբ կը պատմէ թէ 359ին պաշարման ատեն անթիւ բազմութիւն մը՝ Զիադա բերդին առնուելէն ետքը թշնամեաց երկիրը կը տարուէր. հոն՝ Զիադա, որ ընդարձակ ամրագոյն տեղ մըն էր, տասը ստադ շրջապատի ընդարձակութեամբ[171] իբր փախստական խուռներամ դիմած էր ամբոխը: Բայց այս արդէն Մեծաց Հայոց երկրին մէջ էր:

Վերջապէս այս բաւական խառնակ թուարկութեան մէջ գինուորական շինուածներու, որոնք պարսկական սահմանագլուխը պաշտպանելու կ'աջակցէին, կը յիշէ Պրոկոպիոս դեռ Բարաւ գղեակը[172] Ամդայ յարակիցներու շարքին մէջ: Ի զուր պիտի ըլլար ասոր ճիշդ դիրքը փնտռել՝ միայն այն տեղեկութեամբ թէ սեպաքերձ լերան մը գագաթը կը գտնուէր եւ թէ Յուստինիանոս անոր ջուր բերաւ, որ յառաջ կը պակսէր, պարիսպներու ներսէն փորել տալով ջրանցք մը՝ մինչեւ մերձակայ աղբիւր մը, որուն ջուրն հոն սկսաւ թափուիլ:

---

170 Իբր 1800 մեթր:

171 Ամմ. Մարկել. ԺԹ, 61:

172 Հաուքենայի Աշխարհագիրը (79, 10) կը յիշէ ուրիշ Բարա մ'ալ (Bara) Մծբնայ եւ Ռասհայի միջեւ:

## ԳԼՈՒԽ Ե.

### Ասորիք եւ անոր երկրորդ գծի պաշտպանողական միջոցները

Նախընթաց էջերու մէջ ուսումնասիրեցինք սահմանագլխի բիւզանդական կայանները եւ հին Սահմանաց համեմատութեամբ՝ Եփրատի կողմերը յառաջացած շինուածքները : Կը մնայ այժմ տեսնել յետսակողմեան աշխարհի կայանները, եւ թէ ինչպէս ասոնք կը կապուէին անոնց հետ : Տիգրիսէն անդին եղած երկիրներու նկատմամբ Պարսից փառասիրական նպատակները չէին ձգտեր այնչափ ստանալու այդ երկիրները, որոնք մեծ մասով ամուլ էին, որչափ բառնալու այն միջանկեալ գօտին, որ կը յապաղեցնէր ամէն ձեռնարկ շատ աւելի տենչացուած երկրամասի մը՝ յատուկ մոքով Ասորիքի դէմ : Սասանեանց ծրագիրներն ուղղուած էին գլխաւորաբար Անտիոքի եւ անոր արձակավայրերու վրայ, եւ անկէ՝ Լիբանանի եւ հին Փիւնիկէի բարգաւաճ — կամ բարեգիր — երկիրներուն :

Ասորիք իր ապահովութեան համար կամակար փոխանցած էր Միջագետաց, որ աւելի դրացի էր Պարսկաստանի: Նախնաբար երբ Ոսռհոյաստան տակաւին բոլորովին օտար էր Պետութենէն, զօրագունդերն աւելի յաճախ կ'անցնէին ծովէն մինչեւ Եփրատ ձգուող նահանգէն, եւ աւելի մեծ թուով հոն կը կայանաւորուէին[1]: Ասորիքի մէջ նոյն իսկ զօրավարներ կը մեղկանային, ի մասնաւորի վայելքներու քաղաքին՝ Անտիոքի մէջ: Երբ արեւելակողմը նոր մարզ մը կցուեցաւ, վիճակն աւելի վատթարացաւ. զօրագունդերը հետզհետէ հալեցան: «Տեղեկ. Ասո.» գրոց ատեն բուն Ասորիքի մէջ կան տակաւին երկու լեգէոններ, բայց մին գրեթէ Ոսռհոյաստանի մէջն է, ի Սուրա, միւսը՝ անապատին խորքը՝ Պալմիւրայի մօտ՝ Որիսայի մէջ: Հիւսիսային կողմը՝ պատերազմի ժամանակներէն դուրս, ուրիշ զօրագունդ չկայ այլ եւս, բայց եթէ քանի մը հեծելախմբեր՝ ընդհանրապէս բնիկներ[2]. եւ այս աւանդութիւնը պահուեցաւ[3]: Կ'երեւայ

1 Կիւրհոս ձմեռուան զօրանիստն էր Ժ Փրիտանակաթից Տիբերիոսի ատեն, կամ շատ հազարաւոր մարդկան. ասկէ միայն քանի մը փոքրիկ զօրահատոյց կ'ընէին վայրկենական պէտքերու համար. CIL, III, 6697 (Կիւրոս) Վաստինգոյն, 2717 (Սելեւկիա). C. R. Acad. d. Inscr. 1894, p. 261 (Սամարիա):

2 «Տեղեկ.» գրոց ատենց յիշատակուած բանակետղերուն տեղը՝ ինչպէս արդէն գիտենք, շատ յաճախ այժմ անկարելի է գտնել:

3 Ալամունդար Սարակինոսը կրնար Խոսրովի ըսել «Եփրատէն անդին եւ Ասորիքի մէջ ո'չ ամրացեալ քաղաքներ կան, ո'չ բազմաթիւ զօրագնդեր.

թէ Ստորին — Ասորիքի (Կեղեսուրի) քաղաքները ամենեւին պաշտօն ունեցած չեն թշնամին արգիլելու. կը թուէ որ լաւ պարփակուած ըլլան յելուզակներէն աւարի չառնուելու համար:

Այս երկրամասին զինուորական քարտէսը յօրինուածօրէն ուսումնասիրելու լաւագոյն ոճն է հետեւիլ այն ուղիներուն, որոնք այլ եւ այլ բնակավայրերէ կ'անցնէին:

Ամէնէն ուղղագոյն հաղորդակցութիւնը Ռուհայաստանի եւ միւս կողմէ Արաբիոյ եւ Պաղեստինի միջեւ կը կատարուէր ճամբով մը, որ Պաղմիւրայէն կ'անցնէր[4] եւ որուն երկու աւարտակէտերն էին Դամասկոս եւ Սուրա[5]: Մեր աղբիւրներն այս գծին վրայ

---

Անտիոք անպաշտպան է. եւ պահակազօր չունի (Պրոկոպ. ՊՊ. Ա. 17, 22):

[4] Պաղմիւրայի արձանագրութիւնները կը յիշեն կարաւաններ, որ այս ճամբան կը բռնէին. (Dittenberger, OrGrIS, 1905, p. 341, թիւ 632 եւ 633. Համմտ. ծն. 2, յաւել՝ էջ 345, թիւ 638, էջ 352, թիւ 646:

[5] Այս այսօր միայն կարաւաններու ուղեգիծն է. Տաղմուրէ (Պաղմիւրա) երկու օրագնացէ ետքը ճամբան կը շարունակուի դէպի արեւելեան–հիւսիս՝ Deir հասնելու համար: Այս ճամբան ըրած է Oppenheim (Vom Mittelmeer, I. p. 279 յջ., բայց այս կողմն աւերակներ չի յիշեր: Մորից ալ նոյն ճամբէն անցած է (անդ, էջ 35—40) եւ ահա իր բոլոր նշանակածը՝ ճամբուն կէսերը Kabâkib տեղն աղիւսակերտ հին աղբիւր մը, եւ անկէ մէկ քիլոմեթր հեռուն դէպի արեւմուտք Chabra կոչուած տեղը (որ վանք կը նշանակէ) ջրմուղի մնացորդներ, զոր ինքը հռոմէական կը համարի, որ անձրեւաջուրերը մեծ աւազանի մը մէջ կը հաւաքէ: Այս ամրութեանց մէջ առանձնացած մենաստան մը՝ այս միայն կրնար այս ճամբուն վրայ գոյութիւն ունենալ:

կարգով կանգնած կայաններու շարք մը կը թուէն: Անոնց կարեւորագոյններէն մին է՝ Ռեսաֆա: Այս անունն արաբերէն կը նշանակէ «խճուղի», քարայատակ կամ սալարկուած ճամբայ[6], եւ զարմանալի է որ այսպիսի անուն մը տրուած է քաղաքի մը: Սակայն եւ այնպէս անտես ընելու չէ այս ստուգաբանութիւնը, վասն զի Ստերիատի[7] հաւաքած մղոնաքարերէն մին կ'ընթեռնու D. N. Constantino nob. C(ae)s(ari), Strata Diocletiana, a Palmyra Aracha VIII, Strata (Տ. Մ. Կոստանդիանու ազ. Կեսարու, Պողոտայ Դիոկղետեան, Պաղմիւրայէ Արաքա Ը. Պողոտայ.), որ իրապէս ալ ճշդիւ այն իմաստն ունի, եւ վերջապէս Պրոկոպիոս[8] կը խօսի երկրի մը մասին որ Strata (բուն սալարկեալ պողոտայ) կը կոչուի եւ այս կողմը կը գտնուի: Արդ ամէն ինչ կը միաբանի զմեզ համոզելու թէ ամենալաւ շինուած ճամբաներէն մին գոյութիւն ունէր Պաղմիւրայի եւ Սուրայի միջեւ եւ թէ առոր ձեռնարկուեցաւ Դիոկղետիանոսի հրամանաւ[9]: Նորանշան

[6] Հմմտ. Clermont-Ganneau, La voie romaine de Palmyre à Resapha. (ի Rec. d'arch. orient. IV, 1901, p. 69—74). Resapha et la Strada Diocletiana (անդ, p. 112—113):

[7] CIL, III, 6719. Հմմտ. 6717 մինչեւ 6721:

[8] Պրոկոպ. ՊՊ. Բ. 1, 6:

[9] Հմմտ. Not. Or. XXXII, 43՝ Վաշտ Բ Եգիպտացւոց ի Զօրին Դիոկղետիանոսու, Փիւնիկէի մէջ: Այս վայրը կուցէ յիշեալ ուղւոյն վրայ տեղ մը գտնուի, քանի որ ճամբուն հարաւային մասը Լիբանանեան Փիւնիկէէ կ'անցնէր:

բան մըն է, որ այս ուղղւոյն որեւէ հետք մը այժմ տեսանելի չըլլայ. երկիրս այնչափ քիչ բանուկ է եւ այնպէս լքեալ ու ամայի, որ չենք կրնար յօրինուածօրէն եւ լիակատար քանդուած ըլլալու մասին խորհիլ: Իրապէս ալ ուղեւորներէն եւ ոչ մին ամենագոյզն մնացորդ մը նշմարած է այս ուղիէն. Ես ալ բան մը չկրցայ գտնել Համմամի եւ Ռեսաֆայի միջեւ: Եւ մինչդեռ ժամանակը գրեթէ խնայած է այս վերջին քաղաքին, անըմբռնելի է որ սովորական քարերն ամբողջովին անհետացած ըլլան[10]:

Ինչպէս ալ ըլլայ, անապատի մէջէն այս ուղին, Պալմիւրայի վրայէն, ապահովապէս հռոմէական գործ մըն է[11]: Ասոր առաջին յիշատակութիւնը կ'երեւայ թէ կը հասնի մինչեւ 41 տարին Ն. Ք.[12] եթէ ոչ նաեւ 51, Ն. Ք.[13] տարին: Պալմիւրայէ ելլելէն ետքը սկզբնական կայանն էր Արաքա, զոր վերո-

---

[10] Ներկայիս եւ ոչ ալ աւանք կը գտնուին հարթավայրին վրայ. ուղեւորը նոյն իսկ ամենադոյզն խճաքար մը պիտի չգտնէ՝ իր վրանի ցիցերը վարսելու համար:

[11] Հմմտ. Bevan, The House of Seleucus, London 1902, I, p. 55, ծն. 2:

[12] Ապպիանոս, Քաղ. Պատերազմ. Ե, 9:

[13] Կիկերոն, ad fam. XV, 1, 2՝ «Բակուր՝ Պարթից Որոդի արքային որդին՝ բազմաձեան պարթեւական հեծելազօրով Եփրատն անցած է եւ դրուած Տիւբա բերդը, եւ մեծ շփոթութիւն ծագած է Սուրիոյ նահանգին զօրաց մէջ»: Արգելք մը չկայ ենթադրելու թէ այս Տիւբա կը համապատասխանէ արդի Tayibé տեղւոյն (տես վարը). բայց խնդիրն տարակուսական կը մնայ:

յիշեալ մղոնաքարը կը նշանակէ եւ որ շատ դիւրաւ կը ճանչցուի արդի Էրէկ տեղւոյ մէջ[14]: Մորից հոն գտած է միայն բնակութեան հետքեր, որոնք ապահովապէս հին ըլլալու չեն: — Յետոյ կու գայ Որուբա[15] Պեւտանգերեան Տախտակի, այսօր Տայիբէ. հոս ընդարձակ աւերակներ կային Պաղմիւրայի անգղիացի հետազօտիչներուն առեն[10] եւ այս կայանը նիստն էր Դ. Սկիւթական լեգէոնի վերակացուին՝ Ե դարու սկիզբը: Դարձեալ դէպի հարաւ — արեւելք, երկու կամ երեք ժամ անդին՝ Պ. տը Լա Վալ[17] ուղեւորին համեմատ՝ կային երկու ուղղանկիւն շինուածքներ, որոնց մին 100, եւ միւսը 200 քայլ երկայն էր 3·50 մեթր թանձրութեամբ եւ 12 մեթր բարձրութեամբ պատերով: Մին 12 աշտարակ ունէր, միւսը՝ 24: Թերեւս յիշեալ պահակակօրն այս տեղ երկու դրօշաւորութիւն (uexillationes) կը

---

[14] Պեւտենգ. Տախտակին մէջ Harae (= Harac). Պտղոմեայ քով (Ե, 14, 19, Ἀδαχά (զոր ուղղելու է Ἀραχά), բայց նոյն է՞ նաեւ՝ ինչպէս Մորից կ'ընդունի, «Տեղեկ.» գրոց Anatha տեղը. (XXXIII, 11, 20:

[15] Անտարակոյս պէտք է կարդալ Որուտա կամ Որուզա՝ վասն զի կը գտնենք Ὀρίζα Պտղոմեայ քով՝ Ե, 14, 19, Oresa՝ «Տեղեկ.» գրոց մէջ (XXXIII, 23), Orissa Հռու. Աշխ. — Ստեփ. Բիւզանդացւոյ քով՝ Ադրիանուպոլիս:

[16] Հմմտ. Վատտինգտըն, 2631, յաւել.՝ կրօնական ձօն մը Ադրիանոսի առեն, 4501 = Dittenberger, OrGrIS, II, p. 339, թիւ 631:

[17] Տես՝ Ռիտտէր, Աշխ. Ժ, էջ 1103. եւ Journ. of the Geogr. Soc. XXX (1860) p. 207:

Թողուր[18]։ Բուն ճամբուն վրայ Էրէկի եւ Տայիբէի մէջեւ տեսնուած են միայն դիտապահ աշտարակի մ'աւերակները[19]։ — Իսկ Colle զոր Պեւտ. Տախտակը Որուբայէ 22 մղոն հեռաւորութիւն կը դնէ եւ Ռէսաֆայէ 20 մղոն, չափազանց դժուար է տեղ մը տեղաւորել[20]։ Որչափ ալ Տախտակին տեղեկութիւնները միայն մերձաւոր ըլլան, անկարելի է մտածել արդի Souchneի մասին, զոր Ռիտտէր կ'առաջարկէ[21]։

Սուրայէ առաջ կը հասար վերջապէս Ռէսաֆա — Սերգիուպոլիս։ Ս. Սարգիսի նուիրուած մեծայարգ եկեղեցի մը՛ ուխտաւորներու խուռն բազմութիւն մ'իրեն կը ձգէր։ Յուստինիանո՞ս հոն նուիրաբերուած գանձերն ապահովելու համար, հաստատուն պարիսպներով շրջապատեց զայն։ Անկէ ի վեր հոն ճշմարիտ քաղաք մը ծնաւ։ Ջուրը կը հոգացուէր ընդունարաններէ, որոնք նոյն ժամանակ փորուած էին, եւ պահակազօր մը կը հսկէր անոր ապահովութեան վրայ[22]։

---

18 Թերեւս ինչպէս Մորից կը թելադրէ՝ այս ըլլայ Պտղոմեայ, Ե, 14, 19 Αδαδα գրածը։ Արդի Aheir անունը, որ շրջափակ կը նշանակէ, չի նպաստեր որեւէ նոյնացում մ'ընելու։

19 Lady Blunt, Beduin Tribes of the Euphrates. London 1879, II, p. 37։

20 Հմմտ. Clermont-Ganneau (անդ, էջ 73), որ խնդիրներու դժուարութիւնները կը համառօտագծէ։

21 Ռիտտէր, անդ, էջ 1441։

22 Պրոկոպ. Շին. Բ, 9, էջ 235։ Խոսրով պաշարեց զայն, բայց չյամառեցաւ առնելու. 1200 գերի դարձուց 200 լիտր ոսկւոյ փրկանքով. Պրոկ. ՊՊ. Բ, 5, 20։

ժամանակագրական պարզ պատճառներով տեղս Resafa կը կոչուի Պտղոմեայ քով եւ «Տեղեկ». գրոց մէջ[23]: Ուստի պէտք չէ Պրոկոպեայ ոչ շատ յստակ խօսքն այնպէս մեկնել թէ Սերգէոպոլիսն՝ իբր բնակավայր միայն Յուստինիանոսի ստեղծուած ըլլայ, առաջին անգամ անկէ ստանալով պաշտպանողական միջոցները, մարդիկ ու պատնէշներ: Պարիսպները տակաւին կանգուն են եւ ես յաջողեցայ ի վեր հանել անոր ձեւն ու տարածութիւնը[24]: Քաղաքը կատարեալ քառակողմանի էր, 500 մետրէ աւելի երկայնութեամբ եւ 300 մետրէ աւելի լայնութեամբ[25]: Ծրջապատը գրեթէ 3 մետր թանձրութիւն ունէր, մէջն առնելով նաեւ ներքին կամարակապը, որ մէկ մետր լայն էր եւ ամբողջ շրջապատին բոլորը փորուած էր[26]: Ամէն գրեթէ 25 մե-

---

[23] Պտղոմ. Ե, 15, Not. Or. XXXIII, 5, 27: Անուանս այլեւայլ ձեւերու մասին տես Գելցեր էջ 151. Գէորգ Կիպր. 883 կը գրէ՝ «Սերգիուպոլիս, որ եւ Անաստասիուպոլիս, այսօր Ռասաֆա, ուր վկայեց Ս. Սարգիս»: Ուստի քաղաքն Անաստասէ ալ իրաւունքներ ստացած էր: Զարմանալի է որ քաղաքը մոռցած է զանոնք, ինչպէս նաեւ այն փայլը, զոր պարտական էր Ս. Սարգիսի յիշատակին, եւ վերադարձած էր իր հին անուան. Սակայն եւ այնպէս՝ եթէ Գէորգ Կիպրացւոյ քով անճշտութիւն մը չկայ, այն փոփոխութիւնը նոր տեղի ունեցած ըլլալու էր, վասն զի կը յիշուի Աբրահամ եպ. Սերգիուպոլսոյ, 553ին (Mansi, Concil. IX, 390):

[24] Իմ գծած յատակագծիս նկարագրութիւնն ըրած եմ ի BCH, XVII, 1903, p. 280—291:

[25] «Ծրջապարիսպին բոլորածիրը 2 քիլոմետրէն պակաս չէ» կ'ըսէ Cahun, որ կը չափազանցէ:

[26] Այս յօրինուածակերպն ունէր Աւրեղիանու շրջապատը Հռոմի մէջ: Homo, որ ուսումնասիրած

որին իրար կը յաջորդէին աշտարակներ՝ բոլորշի կամ չորեքկուսի։ Աւերակներու վիճակէն դատելով, քաղաքին բնակչութիւնը շատ բազմաթիւ եղած ըլլալու չէ եւ զօրանիստին սահմանակից էր, կրօնական մէկ կամ աւելի հաստատութիւններով։ Որմաշինութեան մէջ որեւէ քարակիցք չկայ, գործածուած է միայն սպիտակ եւ փայլուն քար մը առնուած քարահանքէ մը՝ դէպի Համամ ուղղութեան կէս ճամբուն վրայ։ Այս վերջին տեղս գտնուելու էր միջակաց դղեակ մը Տետրապիւրգիա (=Քառաբուրգ, չորս աշտարակներ) անուն, որ անտարակոյս շատ անշան կայան մըն էր եւ կը յիշուի միայն Ս. Սարգիսի եւ Բագոսի Վարուց մէջ[27]։ Սուրայէ 9 մղոն հեռու էր, եւ նոյնչափ ալ Ռեսաֆայէ. երկու ծայրերու մէջ եղած անջրպետին այս 18 մղոն ամբողջական գումարն աւելի լաւ կը համաձայնի՝ քան Պեւտին. Տախտակի 21 մղոնը՝ Պրոկոպիոսի[28] 126 ստադիներուն եւ իմ անձնական գննութեանցս հետ։

---

է զայն տեսոր միայն մէկ ուրիշ օրինակը կը գտնէ (անդ, էջ 289) ի Կիլուրնում (Բրիտանիա) Ադրիանու շինած պարիսպին մէկ մասին մէջ. Շինութեան այս ոճը թերեւս արեւելեան ծագում ունի. թէ՛ Ադրիանոս եւ թէ՛ Աւրելիանոս Ասորիք եղած էին։

[27] Տես Analecta Bollandiana, XIV, 1895, p. 373 եւն. հմմտ. p. 391, 10 եւ 392, 25։ (Հայ թրգմ. «Վկյք. Ս. Սարգսի եւ Բագոսի» ի Վարք եւ Վկայաբանութիւն, Վենետիկ, 1874, էջ 272 եւ 275)։

[28] Պրոկոպ. ՊՊ. անդ։

Պալմիրա[29] ճանապարհակիցի մը վրայ էր․ անկէ բազմաթիւ ճամբաներ կը մեկնէին դէպի արեւմուտք։ Ամէնէն հարաւայինը, որ կ՚երեւայ թէ Դիոկղետեան Պողոտայ անունը կը կրէր[30] եւ որուն հատածները գտած է Cyril Graham[31], կ՚երկարաձգուէր դէպի Բոսրա, նախ կտրելով անապատը եւ յետոյ գրեթէ հետեւելով Սաֆայի հրաբխային սարահարթին եզերքին։ Հարիւր մղոն մը ճամբայ կտրելէն ետքը, որուն հանգրուանները մեզի անծանօթ են, կը հասնէր Ջէպէլ-Սէս[32], որուն առջեւ կը գտնուի այն մանրակերտ բանակատեղը, զոր նկարագրած է de Vogué մարգիզը[33]․ յետոյ ի հարաւ կը շարունակէր դէպի Սալխադ (որուն

---

[29] Պալմիրիայի մասին այնչափ գրուած է, որ աւելորդ է քաղաքին նկարագրութիւն մը ստուերագրել․ եւ նոյն իսկ այս նիւթի մասին խօսող երկերու թուումն ընել։

[30] CIL, III, 6726․ այս տեղ այնպէս թէ կը կարդացուին յիշեալ երկու բառերը։

[31] Ի Journ. of the Roy. Geogr. Soc. XXVIII, 1858, p. 239։

[32] Հին անունն անծանօթ է․ թերեւս Անուքա (Not. Or. XXXII, 7, 22։

[33] De Vogué, Syrie centr., Arch. civile et rélig., de Ier au VIIe s., Paris, 1865—1877, p. 74, fig. 26—27, շատ կանոնաւոր քառակուսի մը՝ կողը 34·20 մետր․ իւրաքանչիւր անկիւն՝ բոլորշի աշտարակ մը․ եւ հատ մ՚ալ ամէն կողի մէջտեղը․ միակ դուռ մը։ Ճիշդ քովը՝ զօրանոցին ջերմուկները (պատկ. 28)։ Օպպէնհայմ ալ իր կարգին եկած է Սէս (Vom Mittelmeer, I, p. 245 եւն)։ Համաձայն է Voguéի նկարագրութեան մէջ, բայց ոչ ամէն անգամ չափերու մասին։ Ըստ իր տեղեկութեան Ջէբէլի աւերակները շատ բազմաթիւ են։ Տես նաեւ Dussaud, Les Arabes en Syrie avant l'Islam, p. 29 ff։

տեղը կը ճշդէ Նեմուրայի արձանագրութիւն մը), ուր էին «Հեծեալք յառաջաւորք բնիկք՝ գրել Լիւբիկեցիք» Փիւնիկիոյ[34] եւ անմիջապէս կը մտնէր Արաբիա նահանգը, բայց յայտնի չէ ո՛ր գծին հետեւելով:

Երկրորդ ուղի մը Դամասկոս կը տանէր[35] եւ նոյնը կը գործածեն այսօր ալ կարաւանները: Այս գծին վրայ կը տեսնուին այսօր՝ Համէական Կասր-էլ-Հար[36], յետոյ Կարիէտէին (Kariéteïn)[37]: Այս տեղ ճամբան կ'երկճղէր. ուղիղ ճիւղաւորումը, որ անջրդի էր, կ'անցնէր Գերոդայէ (Geroda, այժմ Ջերուդ[38] եւ Թելսէէ, այժմ Կուտայֆեհ (Kudaïfeh?)[39], քիչ մը հեռուն Խան-էլ-Մալձուպիէ տեղւոյն աշտարակին աւերակներէն՝ որուն ժամանակն անորոշ է: Աւելի երկայն ուղւոյ ճիւղը, որ աւելի նուազ ամայանոց է, կը խոտորէր դէպի հիւսիս — արեւմուտք, Հաւարինի կողմէն, ուր կը գտնուէին այն դղեակին աւերակները, զոր կը պահէին «Հեծեալք վահանաւորք

---

[34] Not. XXXII, 5, 20:

[35] Moritz, անդ, էջ 12—25:

[36] Անդ, էջ 12, Սախաու, էջ 49:

[37] Ըստ հեռաւորութեանց = Նազալա Nazala՝ «Հեծեալք յառաջացեալք բնիկք» Not. XXXII, 23). — Պեւտինգերեան՝ Nazala. Պտղոմ. Ե 14, 15 Νάζαμα: Տես Միւլլերի համեմատական տախտակը, էջ 983:

[38] Ուղեգր. Անտոնինեայ, 196, 1:

[39] «Հեծեալք Սարակինոսք Թեւայք» ի Not. XXXII, 28. Համմտ. 13:

Լիւբիկեցիք» Եւհարացի[40], յետոյ Սադադէն (Դանաբա)՝ ուր էր Գաղղիական լեգէոնի մե-րակացութիւնը[41]. աստ քանդուած բանա-կատեղը կը գտնուի գիւղին հարաւ — արե-ւելեան կողմը, ուր կան դեռ չորեքկուսի աշ-տարակ մը 20 մետր բարձր եւ 8 մետր լայն: Ճամբան յետոյ դէպի հարաւ դառնալով՝ կ'անցնի Նեբկ[42], ուր կը համարուի թէ ըլլայ հին Կալամոնա[43], եւ շատ ետքը կը հասնի Դամասկոս, ուր յունա-հռոմէական տաճարը բոլորովին կլանուած էր արաբական յորձան-քէն: Այս շատ կարեւոր դէպք մըն էր[44], որ արբանեակներ ալ ունէր գլխաւորաբար Խիր-բէտ - իլ - Մակսուրայի հայակերտ դղեակը՝ արեւելեան կողմը, Դումէիրի մօտ, որ Վե-րին պետութեան ատեն կ'երեւայ թէ դեր մը ունեցած է[45], ինչպէս նաեւ Փենէ (այժմ

---

40 Not. XXXII, 19, հմմտ. 4՝ Euhara, Ռա-վեննայ. Անան.՝ 195, 9՝ Eumari. Պտղոմ. Ե, 4, 19՝ Αὐέρα. Not. episc. I, 991՝ Εὐαρίος:

41 Not. XXXII, 31. հմմտ. Պտղոմ. Ե, 14, 19 Δάναβα. Պեւտինկ. Danoua. Le Quin, Or. Chr. II, p. 847 castri Danabeni. CIL, III, 755 Danauae.

42 Ըստ Միւլլէրի նաեւ Deir-Atiyé. բայց լայ-նութեան աստիճանին պատճառաւ այս տեղ կը դնէ Պտղոմեայ, 3, 14, 19 Ἀτῆρα գրածը, որուն հետ կը նոյնացնէ Պեւտինգերեանի Adaringը եւ «Տեղեկ.» գրոց Ottharaն (XXXII, 3, 18): Բայց այս չափա-զանց ազատութիւն է:

43 «Հեծեալք աղեղնաւորք բնիկք» Not. XXXII, 26, հմմտ. 11:

44 Յուլիանոս կայսրը կ'ըսէր. «ամբողջ արեւե-լից աչքը». Թղթ. 24:

45 Վասինգտըն, առ. թիւ 2562 d:

Մուտիկ) հարաւային կողմը, որուն պրետորի շէնքը — ուր կը նմանէր լեգէոնական ջոկատներուն պետը[46] — շուտով փոխուեցաւ բիւզանդական կաթողիկէի[47]:

Պաղմիւրայէն, որ ինքնին պաշտպանուած էր անապատով, կը մեկնէին երկու զուգահեռական ճամբաներ: Առաջինը[48], որ 80 մղոն էր[49] կը տանէր Եմեսա (Հոմս) քիչ բանուկ ըլլալով իր երաշտութեան պատճառով՝ կ'երեւայ թէ սալարկուած չէր. ճամբուս երեք քառորդին մօտերը Ֆորկլուս տեղն է, զոր ուզած են համարել հին Բեթպրոկլիսը[50]. բայց ո՛չ աւերակներ կան եւ ո՛չ ալ արձանագրութիւնք:

Երկրորդ ճամբան, զոր Անտոնինոս Պիոս բացաւ, եւ Սեպտիմոս Սեւերոս շարունակեց ու նորոգեց[51], նպատակ ունէր Ապամէա (Kalaat – el – Moudik)[52]: Անոր ընթացքին

---

[46] Դրօշաւորութիւնք Գ. Գաղղիականին եւ ԺԶ Փղաւեան Ամբոյ՝ Մարկոս Աւրելիանու եւ Կոմմոդոսի օրով. (Վատինկտըն 2524—2537):

[47] De Vogüé, անդ, Տխտ. 7, էջ 45 եւն:

[48] Մորից կ'ըսէ (անդ, էջ 9 եւն) թէ անապատնացոյն ուղի մըն է, վասն զի Պեւտինգերեանը զայն չի գիտեր. սակայն եւ այնպէս Պաղմիւրայէ 5½ ժամ հեռուն գտնուեցաւ մղոնաքար մը (CIL, III, 6727) Դիոկղետիանոսի անունով:

[49] Le Quin, Or. Chr. II, p. 840 (Պալլատիոս, Վարք Ս. Յովհ. Ոսկեր.) «Տէրունի է Եմեսիայ դէպի Ներքսակողմը ութսուն մղոնաց ուղին մինչեւ Պալմիրա, Պարսից բերդը»:

[50] Not. XXXII, 27՝ «Հեծեալք Սարակինոսք բնիկք». Հմմտ. 12:

[51] CIL, III, 6722, 6723:

[52] Մորից, էջ 5 եւն:

սկիզբն գնելու ենք Պեւտինգ. Տախտակի Centum putea (Հարիւր հորեր)[53], Aboul-Faouaris կամ Kottar տեղը[54]: Յետոյ կու գայ Ոկկարիբա[55], Թէլէդա[56], քանի մ'աւերակներով. եւ Կիւրհոսէ (Կարխայէ) Եմեսա տանող ճամբան կտրելէ ետքը՝ ուղին խորամուխ կ'ըլլայ կապանի մը մէջ, ուր գտնուած են բաւական քարայատակի մը մնացորդներ[57] եւ կը հասնէր Ապամէա, որ ահարկու բերդ մըն էր՝ հոյակապ դիրքի մը մէջ[58], բայց զոր Խոսրով Բ լիովին կործանեց, եւ անկէ ետքն ալ երկրաշարժով աւերուած է: Սախաու տուած է անոր յատակագիծը, որու երկայ—

---

[53] Պտղոմ. Ե, 14, 19՝ Ποῦτεα:

[54] Վուստենֆելդ, 2632՝ հոն պարեկապան զունդ մը կար, եւ կային աւազաններ:

[55] Not. XXXIII, 8, 17՝ «Հեծեալք յառաջաւորք Լիւրիկեցիք». Պեւտինգ.՝ Occaraba. Պտղոմ. Ե, 14, 13՝ Ἀκοράβα:

[56] Պղին. Բն. Պատմ. V, 89 Telendena regio. Միւլլէր Պտղոմեայ (Ե, 14, 13) θέμα գրուածը կ'ուզէ ուղղել θέλδα: Նոյնպէս կարելի է ուրիշ համեմատութիւն մը՝ «Թեւ Ա Արեւելեան ի Թամա» (Not. XXXII, 14) Փիւնիկէի մէջ:

[57] Այս տեղի Kalaat-Sedjarը՝ ներկայ վիճակին մէջ Խալիֆայից ժամանակէն է. բայց ներսը դասական ճարտարապետութեան մնացորդներ կը գտնուին. (Րիտտէր, ԺԷ, 2, էջ 1089—1090):

[58] Ստրաբոն սքանչելապէս կ'ամփոփէ այսպէս (ԺԶ, 2, 10, էջ 752 C) «Ապամէա կատարելապէս պարփակուած է. բլուր մըն է որ ցած հարթավայրէն վեր կը բարձրանայ, եւ զոր Որոնդէս կը բոլորապատէ, այնպէս որ թերակղզի մը պէս կ'ընէ... ընդարձակ արձակավայր մը թոյլ կու տայ բազմաթիւ զօրքեր եւ պարէններ զետեղելու»...:

նութիւնն անգղիական մղոնէ մը քիչ մը պակաս կը դնահատէ[59]:

Ծովուն աւելի մօտ եղող ուղիները ռազմագիտական քիչ նշանակութիւն ունէին եւ գլխաւորաբար վաճառականութեան կը ծառայէին: Այս ի մասնաւորի ուղիղ է խոտորնակի կարող ճամբաներուն համար. ինչպէս այն՝ որ Դամասկոսէ Բերիւտ կը տանէր Հելիոպոլսոյ (Բաալբէք) վրայէն[60]. ուրիշ մը Անտարադոսէ (Տորտոզ) կ՚երթար դէպի Ռափանէ եւ Եմեսիա կամ Եպիփանիա, չենք գիտեր ճշդիւ թէ երկուքէն ո՛րը. իրականին Ռափանէի ճշգրիտ ո՛ւր ըլլալը ծանօթ չէ. սովորաբար զայն Մասիադի հարաւը կը դնեն, երկու միճական քաղաքներու մէջտեղ, արեւմտեան կողմը:

---

59 Յուլիանոս, անդ, էջ 76: Մնացեալներուն համար ընթերցողին՝ ուշադրութեան կը յանձնեմ նորագոյն հնագրութիւն մը, զոր կը պարտինք Ամերիկեան Հնտազօտական Արշաւանքին. Butler, Part II of the public... Architecture... 1904, p. 52: Այս քաղաքիս վաղեմի մեծութիւնը կը յայտնուի արձանագրութեան մը մէջ (CIL, III, 6687) որ կը յիշատակէ անձնաւորութիւն մը, որ հրամանաւ Նուիրակի մարդահամար ըրաւ Ապամէա քաղաքի քաղաքացի մարդկան ՃԺԷ հազարի: Բերջաւածը հաւանօրէն Կուիրինոսի առեն կատարուած մարդահամարն է: Եթէ ասոր վրայ աւելցնենք ծառայական բնակչութիւնը՝ ազգաբնակութեան շատ բարձր թիւ մը կ՚ունենանք:

60 Լիւսանիասի Աբիլայի մօտ գտնուած են մղոնաքարեր Ադրիանու, Մարկոս Աւրեղիանոսի եւ Լ. Վերոսի անուններով (Վատտինգթըն, 1874—1875): Վերջնոյս ժամանակ նորոգութիւն մը կատարուեցաւ, որ նոր ուղեգիծ մ՚ընտրեց. հին ուղին խրամատուած էր գետին ողողումէն. (Clermont-Ganneau, ի Rec. d'arch. orient. II, 1898, p. 35):

Այս տեղւոյ մօտերը, ի Mariamin[61], ուստի կ'իշխուի Որոնդէսի հովիտին վրայ, անտարակոյս զօրանիստ գոյութիւն ունեցած է. վասն զի Դիւսոյ հոն գտած է կոթողներ՝ որոնք խորաքանդակներով հռոմէացի զինուորներ կը ներկայացնեն։ Ասոնց մին ունի գրուածքս. An[ti]ochianus... Maximus speculator (Անտիոքացի... Մաքսիմոս Լրտես)[62], բայց հոս եղածն էր թերեւս Գ. Գաղղիական լեգէոնի միայն յառաջապահ փոքրիկ մէկ ջոկատը։

Ասոր հակառակ Որոնդէսի հովիտն արշաւանքի ճամբայ մըն էր Դամասկոսէ եկողներու համար, եւ աւելի եւս հակադարձ ուղղութեամբ։ Այս գծով Պարսից բանակը ապականեց բովանդակ Ասորիքը, Հերակղի փոխադարձ վրէժխնդրութենէ առաջ։ Եւ ճիշդ այս դէպքը պատճառ եղած է հռոմէական զինուորական աշխարհակալութեան հետքերը բոլորովին ջնջելու։ Աւելցնենք որ այս ուղեգիծն այսօր ալ բաւական բանուկ է, որ հնութեանց պահպանման համար շատ աննպաստ է։ Ուղիէն միայն հետքեր տակա-

---

[61] Այս անունը կը յիշեցնէ Պղինեայ (Բն. Պատմ. Ե, 81) Mariammitani։ «Տեղեկ.» գրոց մէջ (XXXIII, 34) «Թեւ Գ Վաղերեան Մարմանդաց = (Marmantarum). Böckling կ'ուզէ ուղղել անունս Mariammarum։

[62] Dussaud, Voyage en Syrie. (Rev. archéol, 1897, I. p. 314։

ւին լաւ տեսանելի են, մանաւանդ Ապամէա-յի հիւսիսակողմը[63]:

Ուրիշ ուղի մը[64] հովիտը թողլով՝ աւե-լի ուղղակի դէպի Բերիա (Հալէպ) կը ձգուէր եւ անկէ դէպի Կիւրհոս: Այս կ'անցնի երկրէ մը որ աւերակներով ծածկուած է, բայց որոնք միայն եկեղեցական ճարտարա-պետութիւնն ուսումնասիրելու ծառայած են, Գոնէ գիւղերը դիտապահ աշտարակներու անբաւ թիւ մը կը ներկայացնեն, որոնք ա-ւելի կամ նուազ կործանուած են, ոմանք ցած, ոմանք երկյարկ, ինչպէս է Khirbet—Hassի աշտարակը[65]. ուրիշները շատ աւելի բարձր, ինչպէս Ջերադէհինը, զոր ամերիկեան հե-տազօտիչները նշանակած են[66]: Այս նմոյշ-ներէն դուրս յիշենք ամբոց մըն ալ, որ հռոմէական կը համարուի. Արրա (Arra) տեղը, Քաղկիսի (այժմ Կիննեսերին) հարա-ւակողմը 20 մղոն հեռու[67]: Բայց ասափ Համ-բուն երկճղման մօտակայքը դէպի Համա, աղիւսակերտ դղեակներ Սարին—Կայսրու-

---

[63] Հմմտ. Վատտինկթըն, թիւ 2643: Նորո-գուած ըլլալու է Դիոկղետիանոսի ատեն. քառապե-տութիւնը կը ներկայանայ մղոնաքարի մը արձանա-գրին մէջ, զոր Perdrizet եւ Fossey օրինակած են Էմեսիայ եւ Հեղիոպոլսոյ միջեւ տեղ մը. (CIL, III, 14, 397):

[64] Ուղեգր. Անտ. 193—194:

[65] De Vogué, էջ 58, 1, կողը՝ 4·20 մ. բարձ-րութիւն՝ 7 մետր. կատարը՝ դրան վրայ դէպի վար բացուած որմածերպ մը:

[66] Butler, էջ 129, վեց յարկ, իր 28 մետր բարձրութեամբ:

[67] Ռիտտէր, ԺԷ, 2, էջ 1087:

թեան ժամանակէն դատած ու հաստատուած է Օպպէնհայմ[68]: Այս ճամբան կ'անցնէր Սերիանէ, որ կոչուած էր «Հեծեալք կահանաւորք լիւրիկեցիք» գնդին[69]: Cahun կ'ենթադրէ թէ Սերիան ըլլայ արդի Kasr-ibn – Ouardun տեղը[70]. այս բանին ցուցանիշ չկայ:

Վերջապէս Եղիպտոսէն եկող ծովեզերեայ մեծ պողոտան Կեսարիա — Պաղեստինոյ քաղաքէն անդին կ'երկարաձգէր հետեւեալներէն՝ Պտղոմայիս. Ակէ, Տիւրոս, Սիդոն, Բերիտ, Բիբղոս, Բոտրիւս, Տրիպոլիս, Որթոսիա, Անտարադոս, Բաղնէա, Լաւոդիկէ, Սելեւկիա–Պիերայ, Հռոսոս[71] եւ Աղեքսանդրիա առ Իսոսիւ[72]: Կը շատանամ այս թուարկութեամբ: Ծովեզերեայ քաղաքներէն

---

68 Byzant. Zeitschr. 1905, p .5՝ Kasr-ibn-Ouardan, Kasr-Andarin (Ուղեցր. Անտ. Androna): Միայն այնպէս կը համարիմ թէ անոր „Kastell" (ղղեակ) կոչածները՝ իրականութեան մէջ պարսպապատ վանքեր են. Համմտ. արձանագր. 52, էջ 42 «Այս դուռն Տեառն... Աստուծոյ ակիզբ ըրինք հիմանց ղղեակին» — տարին 557: Kasr-ibn-Ouardanի մասին համմտ. Strzygowski, Kleinasien, Leipzig, 1903, p. 121, պատկ. 91 եւն: Oestrup հոն միայն վանական աւերակներ կը տեսնէր: Hartmann (ի Zeitschr. d. d. Paläst. Ver. XXIII, 1901, p. 97 f.) կը նշանակէ իրաւամբ որ Զ դարուն եկեղեցական եւ զինուորական տարրերն իրարու խառնուած էին:

69 Not. XXXIII, 7, 16:

70 Cahun, Excursiones, p. 213:

71 Թէոդորիտոս, Պատմ. եկ. Ժ, էջ 1388 Migne:

72 Այս ճամբան նորոգեցին Սեպտիմոս Սեւերոս եւ Կարակալլա (Վատտինգտոն, 1838, 1844) եւ վարձեալ նորոգուեցաւ Աւրելիանոս կամ Կլաւդեայ Բ տակն (անդ, էջ 604):

միայն Սելեւկիա էր, որ հռոմէական ժամանակաշրջանին բաւական երկարատեւ գնահատելի դեր մ'ունեցաւ զինուորական կազմակերպութեանց մէջ. սակայն այն ալ երբ Պարսիկներն Ասորիք աշխարհակալեցին բոլորովին ինկած էր[73]: Այսու հանդերձ յիշեալ կայաններու մէջ ալ կատարուած այլեւայլ աշխատանքներ կան, նոյն իսկ Ստորին կայսրութեան ժամանակէն: Բիբլոսի շատ ծայրատուած մէկ արձանագրութիւնն ակնարկութիւն կ'ընէ այս նաւահանգստին Ադրիանոսի ատեն կատարուած մէկ նորոգութեան[74]: Կ'երեւայ թէ գլխաւորաբար Բերիտ եւ Անտարադոս նմանցուցին իրենց միւս դրացիները: Ասոնց վերջինը վերաշինուեցաւ Կոստանդինի ատեն, որմէ առաւ Կոստանդիա անունը[75]: Միւսը որ նախ նորոգուած էր Օգոստոսի ատեն[76], թերեւս Զ դարուն յաւելուածական ամրութիւններ ստացաւ[77]: Տիւրոս գոնէ ժամանակ մը հռչակուած անուն մը ունեց[78]:

---

73 Հմմտ. իմ յիշատակագիրս այս քաղաքին մասին: Բիւզանդիոնի զօրագունդերը փոխանակ առոր նաւահանգիստը գործածելու՝ կը կոչէին Փոքր Ասիան:

74 CIL, III, 6696:

75 Թէոփանէս, ժամնկգր. 38, Տ: Այս քաղաքին մասին տես Renan, Mission en Phénicie, p. 33 f.:

76 Ստրաբ. ԺԶ, 2, 19, էջ 756 c:

77 Տես Colonna Ceccaldi, ի Rev. archéol. 1872, I, p. 225. CIL, III, 6687 «ի դղեակս դեցախտոն Աւգոստեայ»:

78 Տես Եփեսոսի հետաքրքրաշարժ մէկ արձանագրութիւնը. «Ա. պատուիրակին ինքնակալի եւ փո-

Սակայն գրեթէ բոլոր հռոմէական յիշատակներն այս ծովափին վրայ դոյզն մնացորդներով միայն հասած են մեզի, այն երկըրաշարժներու հետեւանքով, որոնք Յուստինիանու ատեն սասանեցուցած են այս կողմերս։

Համեմատաբար քիչ մ'աւելի հանկաքաղ ընել պիտի կարենանք Սարիքի ծայրագոյն հիւսիսակողմը մանելով։ Այս երկրաբաժինը հնութեան ժամանակ շատ բազմամարդ էր[79], եւ մշտատեւ բանուկ էր երթեւեկութեան, նաեւ պատերազմական սպասարկութեան համար։ Բացի այն մեծ պողոտայէն որ Եփրատի կը հետեւէր, Սամոսատէն դէպի Բարբալիսոս եւ դէպի Սուրա, Պեւտինգ. Տախտակը կը նշանակէ յաւելուածական ուղեճիւղ մ'ալ, որ փոխանակ ա-

---

խոտոտկի—զօրավարին ինքնակալին Ներուայ Տրայանու... կուսակալութեան Աւորեայ Փիւնիկեայ Կոմագեննեայ Տիւրոսի»։ Տես F. Cumont, ի Bull. de l'Académie royale de Belgique, Cl. de lettr. 1905, p. 204, ծն. 1։

79 «Հիւսիսային—ասորական կողմերու երբեմն եւ արդի վիճակին մասին գաղափար մը կազմելու համար՝ անշուշտ բաւական պիտի ըլլայ յիշելը թէ նորագոյն վիճակագրական քննութիւնները ազգաբնակութեան այնպիսի խտութեան աստիճան մը ցուցուցին, որ ճիշդ միմիայն անձ մը կը հաշուուէր աւերակ հին քաղաքի մը տեղը։ Չէրնիկի այս խորհրդածութեան վրայ (անդ, էջ 26) կ'աւելցնեմ այն՝ զոր ուրիշ տեղ մը արդէն յառաջ բերած եմ. այն է՝ Սելաւք հովիտին մէջ պատահած է որ թուով աւելի գերեզմանոցներու հանդիպած եմ քան անցորդներու. բայց իմ այս ըսածս մահմէտական գերեզմանոցներու համար է։ Ուստի այս անմարդաբնակ ըլլալը շատ հին ժամանակներէն ըլլալու չէ։

մէն տեղ գետին մանուածապատ երկայնութեան ընթանալու, ուղիղ գծով Զեւգմայէն Երապիզա կ'երթար, անցնելով Ցերապոլիսէ[80]: Վերին — Կայսրութեան շրջանին այս քաղաքը յաճախ այն դերն ունեցաւ, զոր մատնանիշ ըրինք[81]. երբ կեդրոնացման կէտ ծառայեց բանակներուն պատերազմի մեկնելէ առաջ: Պարսկական վերջին պատերազմներու ժամանակ ալ Հռոմայեցի զօրավարը տակաւին հոս կը մնար. բայց նկատելով տեղւոյն լքեալ ըլլալը՝ մատնանիշ կ'ընէր անոր պարիսպներուն տկարութիւնը եւ պարենաւորմանց պակասութիւնը[82]: Պատուարներու մէջ նոյն իսկ մեծ պարապ անջրպետ մը բաց էր. Յուստինիանոս զայն նուազեցուց՝ բայց զօրացուց: Պատերազմի ատեն հայթաւոր ջուրը հոգալու համար, մեծ հոր մը փորել տուաւ, զոր սակայն բնակիչները անհոգդատուեցան յանձանձելու[83]:

Սախաու կ'ըսէ[84] թէ հին պարիսպները

---

[80] Bambyce կոչուած Պղինիոսի քով՝ Բն. Պատմ. Ե, 81, Ստրաբ. ԺԶ, 1, 27, էջ 748 c՝ երկու անուններն ալ կը ճանչնայ:

[81] Տես վերը Մասն Գ., Գլ. Բ. — Ամմ. Մարկել. (ԻԳ, 26, 6) «ընդարձակագոյն քաղաք». ընդհանուր բանակադիրն եղաւ Կոստանդեան Բ. 361ին (անդ, ԻԱ, 13, 8) եւ Յուստինիանոսի ատեն բանակի զօրավարին, (Պրոկոպ, ՊՊ. Բ, 6, 2. Մալալաս, էջ 441, Հրտ. Բոնն), եւ նաեւ Մաւրիկի ժամանակ (Թէոփիլ. Դ, 12, 8):

[82] Պրոկոպ. ՊՊ. Բ, 6, 4—6:

[83] Պրոկոպ. Շին. Բ, 9, էջ 236:

[84] Սախաու, անդ, էջ 147:

մեծ մասով գետ պահուած են[85]. առաջին երեսը կրաքարի մեծամեծ չորեքկուսի վիմաքարերով էր, իսկ միացեալն աւելի փոքր քարերու եւ կաւի խառնուրդներով. փոս մը կը շրջապատէր: Կանգուն կեցած են քանի մը շատ հզօր աշտարակներ, որոնք ծածկուած նետաձերպեր ունին: Անոնց ձեւը կարծել պիտի տար թէ բիւզանդական շրջանէն կանխագոյն ըլլալու են, եթէ չգիտնայինք թէ Յուստինիանոս վերաշինեց շրջապարիսպը՝ որպէս զի շրջապատի տարածութիւնը նուազեցնէ: Երկայնաձեւ է, եւ ժամ մը պէտք է շուրջը դառնալու համար[86]:

Յերապոլսոյ կարեւորութիւնը իբրեւ զօրաշարժի կեդրոնի ա՛յնչափ մեծ է որ անհրաժեշտ էր ամենակարճ գծով Ուռհայ հասնելու մասին խնամ տանիլ, այսինքն առանց անցնելու Զեւգմայէ: Իրօք ալ Անտոնինեայ Ուղեգրութիւնն երկու անգամ կը յիշատակէ

---

[85] Ainsworth (Narrative, I, p. 238) կը համարի թէ Սարակինոսաց կողմէ կատարուած նորոգութեանց բազմաթիւ եւ ակներեւ փաստեր կան:

[86] Հնագոյն՝ աւելի լիակատար զննութեանց մասին (Maundrell, 1699, Pococke, 1737) հմմտ. Ռիտտէր, Ժ, էջ 1041 եւն: — Վերջինս շրջապատութեան երկայնութիւնն իբր երկու անգղ. մղոն (3220 մեթր) կը հաշուէ կարծեօք. գտած է 9 ոտք թանձրութեամբ պարիսպներ՝ որոնց վրայ ճեմելիք կար: Աշտարակներն իրարու կը յաջորդէին 15 քայլ անջրպետներով. քաղաքին չորս դռներու իւրաքանչիւրին երկու կողմը երկու կիսաբոլորակ աշտարակներ կային: Յերապոլսոյ ամենանշանաւոր յատկանիշներէն մին էր ջրմուղներու սքանչելի կազմակերպութիւնը:

իբր ուղղակի ճամբայ, նախ՝ (էջ 191—192)՝ Ցերապոլիս — 10 Թիլատիկոմոն — 15 Բաքճաս — 15 — Եդեսիա, եւ երկրորդ (էջ 192 — 193) Կարիս — 30 — Բաքճաս — 22 — Թիլատիկոմոն — 31 — Ցերապոլիս[87]: Միայն վերջին անուանացանկը ճշգրտութեամբ կը նշանակէ հեռաւորութիւնները, ապահով ըլլալով թէ երկու ծայրեզրներու մասին որեւէ տարակոյս չկայ: Ուստի կը խորհինք Ռիգլինգի հետ թէ գետը կ՚անցնէր Կենկիլիանա տեղէն, եւ թէ Թիլատիկոմոնը[88] փնտռելու է գետին արեւելեան ափին մօտերը, քիչ մը հեռուն:

Աստրական ծայրագոյն–հիւսիսի ճամբան գրեթէ ուղղագիծ էր Անտիոքէն մինչեւ Զեւգմայ. Կիլլիս (Քիլիս) եւ Նիզիպի[89] միջեւ տեղ բազմաթիւ քիլոմետրներու ընթացքին նշմարած եմ անոր հետքերը: Ուղին 4 — 5 մետր լայն էր. սալարկ չկար, այլ խոշոր խճաքարերու կուտակում մը, իւրաքանչիւր ափնաշրթին վրայ աւելի մեծ ծաւալով քարեր[90]: Թերեւս այս ճամբուն երթեւեկին կը ծառայէր Նահր — Աֆրին գետի վրայ ձգուած

---

[87] Զայս յառաջ բերած է Ռէգլինգ, էջ 472:

[88] Տես վերը Մասն Գ. գլ. Գ.: Այս անունն անտարակոյս նոյնացնելու է «Տեղեկ.» գրոց Thillacama անուան հետ (Or. XXXV, 27):

[89] Աւելի ճշգրիտ նշանակելու համար՝ Բէգլէր–բէգ եւ Բար–Լիմուն փոքր գիւղերուն միջնտեղը:

[90] Այսօր անկարելի է ճանչնալ թէ արդեօք այս ալ, նման զինուորական շատ հին ճամբաներու, կըր–կին զառիվայր երես ունէ՞ր:

կամուրջը Կիւրհոսէ 1½ — 2 ժամ հեռու, — Զէյթանակ (Zeitanak) գիւղէն քիչ մ'անդին, — զոր ես հեռուէն նշմարեցի՝ առանց մօտենալ կարենալու՝ այլեւայլ պատճառներով, յատկապէս օրը տարաժամած ըլլալուն, եւ անոր մօտ հանդրուան մ'ընելն անկարելի ըլլալով: Բայց գոնէ առանց դժուարութեան կրցայ կողմնագիծը (կորածը) ստուերագծել: Երկու կողմերն ալ բաւական զառիվեր դարերով կ'ելլեցուի կատարը, որ երեք լիաբոլոր կամարներով է, կամարներու իւրաքանչիւրին ծաւալն երթալով կ'աճի արեւելքէն արեւմուտք[91]:

Եփրատի կողմնակի եղող ուղին Սամոսատի կողմէ երեք ճիւղաւորում մ'ունէր դէպի Հալպ — արեւմուտք, որ կ'անցնէր Դոլիքէ, Կիւրհոս, Գինդարոս, Գիփուրա (այժմ Չիսր — էլ — Աֆրին) եւ կ'երթար կը յան-

---

[91] Տեղացիք ինծի ըսին թէ այս կողմերն երեք հատ իրարու նման կամուրջ կայ, — որոնց մին բաւական աւերուած, — բայց չկրցան աւելի բացատրել: Բայց միւս կողմանէ Checkléի Տրապիստներու Մեծաւորէն՝ Հ. Ստեփանոսէ՝ կը ստանամ հետեւեալ տեղեկութիւնները. «Սապուրի-սուի կամ Սաֆի-սուի վրայ՝ Շէյխ Խորոս (Cheikh Khoros, դժուարին չէ ասոր մէջ ճանչնալ Kyrrhos կամ Cyrrhus անունը) կոչուած կէտի մը վրայ կայ հին կամուրջ մը 6 կամարներով, որոնց կամարակալները բաւական մօտ են իրարու եւ հոսանքի դէմ ցռուկ մը կը կազմեն մինչեւ կամարի աղեղնաձեւի բարձրութիւնը: Կամուրջը հորիզոնական չէ, այլ թեթեւ շարունակեալ կորագիծ մը կը յօրինէ, որուն դագաթն մէջտեղն է: Քարայատակն ամբողջովին կոփածոյ քարերով է. քարալիցքը չի տեսնուիր. իսկ կամուրջէն անցնող ճամբան մեծ սալերով սալարկուած է»:

դէր նախ Անտիոք, եւ ապա Սելեւկիա: Այս կայաններուն առաջինը Տէլլ — Դուլուկ տեղը (դէպի արդի Այնթապ) շատ փոքր քաղաք մըն էր[92], Կիւրհոս[93]՝ որուն Ա դարուն մէջ ունեցած ռազմական կարեւորութիւնը տեսանք, յետոյ բոլորովին լքուած էր. անոր բնակչութեան թիւը շատ նուազած էր[94] եւ պարիսպները կը կործանէին: Եթէ կարելի է հաւատալ այսքան չնչին պատճառի մը՝ Յուստինիանոս զայն նորէն կենդանացուց միայն առ ի սէր Կոզմասի եւ Դամիանոսի, որոնց մարմինները կը հանգչէին Կիւրհոսի մէջ[95]: Հոս զետեղեց զօրաւոր պահակազօրք մը եւ ջրոյ հայթայթումն ապահովեց մերձակայ աղբիւր մը զետնածածկ ջրմուղով քաղաք բերելով[96]:

Ես ալ Կիւրհոս եղած եմ (այսօր՝ Հէրուպ — Պշիմբէր) եւ եթէ այլեւայլ պարագաներ, օդի տապադին ջերմութիւնը, տե-

---

92 «Դոլիքէ... փոքրիկ քաղաք մը» կը գրէ Թէոդորիտոս Ե դարուն (Պատմ. Եկեղ. Ե, 4, էջ 1204 Migne) Թէոփանէս՝ 422, 12 Δουλίχία. Գեւորգեան՝ Dolica. Ուղեցր. Անտ. (184, 4) զայն Գերմանիկիայէ (Germanicia) 30 մղոն հեռու կը դնէ: — Հմմտ. Humann եւ Puchstein, p. 168, fig. 20, եւ Benzinger, առ Պաուլի-Վ.: Միայն արաբական աւերակներ մնացած են:

93 Անուանս յունական զանազան ուղղագրութիւններու մասին, հմմտ. Հ. Գէլցէր, ծան. Գէորգ Կիպր. էջ 148:

94 Թէոդորիտոս, Թղթ. 32:

95 Ասկէ է իր երկրորդ անունը Զ դարուն Հագիոպոլիս (տես Mansi, Concil. V, 912. Le Quin, Or. Chr. II, 930:

96 Պրոկոպ. Շին. Բ, 11, էջ 242:

ղագրութեան շատ խառնակ նկարագիրը թոյլ չտուին որ քաղաքին մնացորդ հետքերուն ճշմարիտ յատակագիծ մ'ուրուագծեմ, կըրցայ գոնէ նշանակել այլեւայլ դիտողութիւններ զոր համառօտիւ կ'ամփոփեմ։ Չեմ կըրնար երաշխաւորել ըստ բախտի հոս առաջ բերուած չափերէն եւ ոչ մին[97]։ Գոնէ աւերակներու մէջ իմ անցուցած ժամանակս ինծի կուահել տուաւ թէ հին քաղաքին բռնած տեղը նշանակելի ընդարձակութիւն մ'ունէր․ կար Վերին եւ Ստորին Քաղաք մը․ վերջինս[98] կը պարունակէր շուկան՝ իբր 150 մետր երկայն եւ 100 մետր լայն հրապարակ տեղ մը, շրջապատուած կրպակներով, որոնց ոմանք տակաւին տեսանելի են, քարակերտ վեհաշուք թիկնաւոր նստարաններով։ Սալարկն անզարդ մնացած է։ Վերին քաղաքն, որ արեւմտակողմն է՝ իրեն յատուկ շրջապարիսպն ունէր միջին թուով 2 մետր թանձրութեամբ, մուտքը հիւսիսային կողմէն էր, եւ որուն Վարի քաղաքին վրայ բոլորակի մ'աղեղի ձեւով բացուած ճակատը (իբր 400 մետր երկայն) հինգ քառակուսի աշտարակներու շարք մը կ'ընծայէր։ Արեւմտեան յետին ծայրը՝ քիչ մ'աւելի բարձր մակերեսով՝ կը ծրանար յատուկ խմատով միջնա-

---

97 Ստուերագծած եմ այս առթիւ յատակագիծ մը։

98 Թէեւ այս ալ նմանապէս զառիվայրի վրայ է, բայց միւս քաղաքամասէն բաժնուած է շատ որոշ սարաւանդով մը։

բերդը, որ չորեքկուսի էր, իւրաքանչիւր կողը մօտ 50 մետր երկայնութեամբ՝ զարդարուած չորս յառաջակարկառ աշտարակներով, որոնց մին բոլորշի՝ հարաւ — արեւմըտեան կողմը:

Ինծի ի մասնաւորի զարմանալի երեւցաւ այն պարագան, որ Կիւրհոս պաշտպանութեան այս երեւոյթին հակառակ՝ իբր ռազմավայր շատ միջակ պայմաններու մէջ կը գտնուէր: Հարաւակողմը հաւանաբար 50 մետրի չափ բարձր բլուր մը կ'իշխէր նոյն իսկ միջնաբերդին վրայ, ուր կարելի էր իջնալ մեղմ զառիվայրէ մը:

Կիւրհոսի մասին միայն Ստրաբոն կը խօսի[99] իբր քանալի Կիւրեստիկէ գաւառին, եւ իբր յեղուզակաց շատ յարմար որջ մը: Առաջին անգամ Թէոդոս Մեծի օրով շրջապատուեցաւ պարիսպով[100]: Անկէ ուրիշ ճամբայ մը կը տանէր դէպի Եփրատ, դէպի Կեկիլիանա, Բատնէի վրայէն[101], որ նոյն անունով երկրորդ քաղաք մըն էր[102] — եւ Յերապոլիս:

Բատնէէն ուրիշ ճամբով մը Անտիոք կ'երթըցուէր ուղղակի գծով, որ կ'անցնէր

---

99 Ստրաբ. ԺՁ, 2, 8, էջ 751 c:

100 Մագաղաս, ԺԳ, էջ 346, հրտ. Բոնն: Յաջորդ ժամանակներու մէջ միայն մեծ աւան մըն էր, որ Անտիոքէ կախում ունէր. Թէոդորիտ, Պատմ. Եկ. Բ, էջ 1313 Migne:

101 Հեռաւորութեան չափերուն համեմատ՝ այսօր Բաբ (Bab):

102 Այն զոր Յուլիանոս կը նկարագրէ (Թղթ. 27) իբր հաճոյից տեղ մը՝ նման Դափնէի:

Բերիայէ եւ Քաղկիսէ։ Բերիա[103] Ա դարուն բոլորովին փոքր քաղաք մըն էր[104]։ Երբ Խոսրովի իրմէ պահանջած գումար վճարելը մերժեց՝ առնուեցաւ եւ կործանուեցաւ[105]։ Անոր կարեւորութիւնը կը սկսի մահմէտական տիրապետութենէն։

Քաղկիսի մօտ Ամերիկեան Հետազօտիչ արշաւանքը[106] գտած է այս ճամբէն կտոր-ներ, որ անտարակոյս Բ դարէն էր, 6 մետրէ աւելի լայնութեամբ եւ սալարկուած հաս-տաբեստ վիմաքարերով։ Բերիայէ քիչ մը դէ-պի հարաւ՝ կը հանդիպէր Քաղկիս (արդի Կին-նեսրին), որ փոքրաթիւ պահակազօր մ'ու-նէր, եւ հոս բանակեցաւ Բելիսար[107]։ Անոր պարիսպները Զ դարուն անբաւական եղած էին. Յուստինիանոս զօրացուց զանոնք՝ պարփակելով նախապարիսպով մը։ Նախ փրկանաւորեց ինք զինք աւարառութենէ, բայց յետոյ աւարի առնուեցաւ, անոր անկեր-պարան աւերակներն այժմ միայն պարիսպ-ներու բեկորներ եւ չորեքկուսի աշտարակի մը մնացորդները պահած են։ Ճիշդ մօտը բլուրի մը վրայ կայ աւերակ դղեակ մը[108]։

---

103 Նիկետ. Քոնիատ. Ցուցակ Յովհաննու Կոմն. 7։ — Նիկեփ. Կալիստ ԺԴ, 39՝ «Եւստաթիոս Բե-րիացի, որ է այն ինքն Հալէպ»։ Յուլիանոս (Թղ. 27) կը յիշէ անոր ակրան, որուն տեղը բռնած է ապահովապէս մահմետական միջնաբերդը։

104 Սոզոմ. ԺԶ, 2, 7, էջ 751 c «քաղաքիկ»։

105 Պրոկոպ., ՊՊ. Բ, 7, 10—11։

106 Butler, անդ, էջ 57—59։

107 Պրոկոպ., ՊՊ. Ա, 18, 8։

108 Այսկէ է հաւանօրէն Կիննեսրին (Kinnesrin)

Անկէ դէպի արեւմուտք երթալով՝ կ'անցնինք դեռբուկ երկրաբաժնէ մը, ուր այսօր աւերակները կը վխտան. առնցմէ մէկը, որ հոյակերտ է, կը տիրէ այն նեղ կիրճին վրայ, ուր կը մտնէ ճամբան հարթավայրի ելքին, որ է արդի Դանա գիւղը: Այս տեղացիներէն Դէիր - էլ - Բենաթ կոչուած վանքն էր, որ երբեմն նաեւ Կասր - էլ - Բենաթ (castrum puellarum = աղջկանց բերդ) կը կոչուի, ամուր դղեակին այն երեւոյթին պատճառաւ, զոր կու տայ անոր ուղղանկիւն մեծ աշտարակ մը, որ վեց յարկանի է եւ 30 մետրէն աւելի բարձրութիւն ունի[100]: Երբեք վերահասու պիտի չըլլանք թէ արդեօք ինքը վանական հաստատութիւնը կը հոգար իր պաշտպանութիւնը, թէ կայսերական վարչութիւնն այս աշտարակն անընթերադրած էր վանքին եւ հոն զօրք զետեղած: Գրեթէ քովը՝ կողմնակի, կրճին ամէնէն անձկագոյն կէտին վրայ, ստուգեցի որ փլատակներ կան, որոնք բաւական ընդարձակ տարածութիւն մը կը ծածկեն: Ասոնք անտարակոյս ոչ թէ մատուան մը փլածքն են, ինչպէս են շրջակայից բարձունքները, այլ մանաւանդ պահակագունդի մը կայանին մնացորդքն են: Բիւզանդական՞ն դղեակ մըն էր այն՝ թէ արաբական: Ներկայ վիճակն

արծուի բոյն) անունը: Հմմտ. Օպպէնհայմի լուսանկարը ի Zeitschr. f. Erdk. 1911, p. 78:

[100] Տես այն նմանատիպերը, զորս դրած եմ ի Tour du Monde, 1905, էջ 133 եւ 144:

այնպէս աւերուած է որ չենք կրնար բան մը եզրակացնել։ Անկէ քանի մը վայրկեան անդին հին ուղին նեղ է, փորուած էր նոյն իսկ ապառաժին մէջ. բայց ե՞րբ։ Անտարակոյս կանուխ ժամանակ. ժայռին կողին վրայ երկու զարդածիրերու մէջ անպանագոյն ժամանակի արձանագրութիւններ կան, բայց տառք հողաբաժիններու սահմանագծումի մասին են[110]։

Բուն Անտիոքի մօտ էր Իմմա բանակատեղը[111]. պիտի ուզէի զայն համարել «Անտիոքեան Զմերոցք»ը, որ Ցուլիանոս կայսեր շատ ծայրատուած մէկ թուղթին մէջ կը

---

110 Chapot, ի BCH, XXVI, 1902, p. 173—174, Ouspensky, ի Bu'l. de l'Instit. archéol. russe de Constantinople, VII, 1902. p. 201, Տիտ. 45՝ «Ի յաւիտենական իշխանութիւն Տեառն... Ըստ հրամանի Աւգուստեայ փառաւորեալ կոմսին Արեւելից ի ձեռն Ցովհաննու պայծառագոյն դիւանագպրի կայսրավարագեայ կանգնեցաւ սահմանադրութիւնս... Ենդիկացուոց յենդիկոս է, յամին Ո (կամ Ց) Լէ»։ Բնագրին ապահովապէս Զ դարէն է, բայց աւելի ճշդել չենք կրնար՝ թուականն անորոշ ըլլալով։

111 Հմմտ. արձանագրութիւնը, որուն ընթերցուածը թէեւ քիչ մը տարակուսական, զոր օրինակած եմ Եէնի–շէհիր տեղը, Անտիոքիայէ 7 ժամ հեռուն. (BCH, անդ, էջ 171) «Բնակիչք քաղաքին Իմմինեցի»։ Հեռաւորութեան այս 7 ժամը ճշդիւ չի համաձայնիր Պեւտինգ. Տախտակի 33 մղոններուն հետ, որ Իմմայէ (Emma) մինչեւ Բերիա 20 մղոն կը նշանակէ, որ շատ աներաւական թիւ մըն է։ Սակայն եւ այնպէս նոյնացումն ինծի հաւանական կ'երեւայ։ Արդեօք Աւրելիանոս իբրպէս այս տեղւոյ մօ՞տ յաղթեց Զենոբիայի. L. Homo, (Essai sur Aurélien, p. 93), կը կարծէ թէ շփոթութիւն մ'եղած է Իմմա եւ Եմեսա տեղերու մէջ. իսկ Groag (Պաւլի–Վ. Ե, 1, էջ 1383) կ'ընդունի թէ Աւրելիանոս՝ հաւանօրէն Պաղմիւրացւոց Որոնդէսի երկայնութեամբ նահանջի

նկարագրուի[112]: Այս նկարագրութենէն կը հետեւի թէ պարիսպներն անտաշ քարերով շինուած էին, շաղախով իրարու զօդուած[113]:

Պեւտինգեան Տախտակը որեւէ ուղի մը չի նշանակեր Քաղկիսէ կամ Բերիայէ դէպի Բարբալիսոս եւ կամ Սուրա. եւ սակայն ճամբայ մը կար, վասն զի անոր գլխաւոր կայանները գտնուած են: Նախ Գաբբուլա, ուր Կաւատ իւր հետեւորդ սարակինոսներով բանակած էր, եւ զոր Պրոկոպիոս Քաղկիսէ 10 ստադ. հեռու կը դնէ, որ է 12 կամ 13 մղոն[114]: Յետոյ հին քաղաք մը կայ, երկաթաքարէ ամուր պարիսպներով, որ իւր միջնաբերդն ունէր[115] եւ այսօր կը կոչուի Խինասարա: Վերջապէս երկու շատ մօտաւոր դղեակներ կան, մին ի Ռէամ — Էրրուամ եւ միւսն ի Ձերէդ[116]: Ուստի այս ուղեգիծը

գիծը կարելու համար՝ իւր հեծելազօրով դէպի արեւելք զօրացոյց մ'ըրաւ: Ainsworth (Narrative, I, p. 23—35) կը կարծէ թէ Անտիոքայ դաշտին el-Oumk անունն Իմմա անուան աղաւաղութիւնն ըլլայ: Եւ այս անունը հաւասարապէս թէ՛ Amk եւ թէ՛ Amouk արտասանութեամբ լսած եմ: Ainsworth բացի իր խիզախ ենթադրութիւններէն՝ վրիպակներ ալ գործած է. այսպէ՛ս Շէյխ-Բարակատը շփոթած է Ս. Սիմէոն լերան հետ (էջ 31):

112 Յուլիանոս, Թղթ. 27:

113 Իմմայի մասին տես նաեւ Պտղոմ. Ե, 14, 11. Սեքս. Ռուփ. Հմտո. 24, Պրոսպեր Ագուիտան. ժմնկգր., յամի 272:

114 Պրոկոպ. ՊՊ. Բ, 18, 8. Մաղալաս, ԺԸ, էջ 461, հրտ. Բոնն:

115 Սախաու, անդ, էջ 116—117:

116 Անդ, էջ 123—126: Առաջին անունը կը նշանակէ «Հռոմայոց աւերակք» կամ «Զինուորաց աւ-

*զոր կ'ենթադրենք, արեւելքէն դէպի արեւմուտք ուղղութիւն ունէր:*

*Այս ուղեցանցն այնպէս խիտ էր որ երբ Անտիոք մէկ կողմէ ուղղակի հաղորդակցութիւն ունէր Սամոսատի հետ, ուրիշ ուղեգիծ մ'ալ, զոր Պեւտինգ. Տախտակը կը նշանակէ, վերջին քաղաքս կը հասնէր մեկնելով Աղեքսանդրիա առ Իսոսիւ (արդի Աղեքսանդրեակի մօտերը) քաղաքէն եւ անցնելով* Պագարիսէ, *որ կ'ըսուի նաեւ* Պագրէ, *որ Ստրաբոնի համաձայն*[117] *շատ ամրացեալ տեղ մըն էր, Գինդարոսի մերձաւոր, Ամանոսի լեռնանցքին բերանը (ուստի արդի* Բէյլանէն *քիչ մ'անդին) եւ որ Անտիոքի ամբողջ դաշտին վրայ կ'իշխէր:*

*Միւս կողմէ Անտիոք կապուած էր Կիլիկիոյ եւ Կապպադովկիոյ հետ հիւսիսէն հարաւ ձգուող ճամբով մը, որ կը կտրէր Մելասի (այսօր Կարա — Սու) հովիտը: Անոր ընթացքին հարաւային մասին մէջ հանդիպած առաջին քաղաքն էր* Նիկոպոլիս *(այժմ* Իսլահիէ[118]: *Այս ուղին Ամանոսի ստորին*

---

*բակք»: Կը նշմարուին դեռ չորեքանկիւնի որմնախարիսխ մը եւ պարիսպներու մէկ մասը:*

[117] *Ստրաբոն, ԺԶ,* 2, 8, *էջ* 751 C:

[118] *Գէլցէր, ծնթ. Գէորգայ Կիպր. էջ* 150: *Արձանագրութիւն մը* 19 *յ. Ք. տարւոյ* (CIL, III, 6703) *կը յիշատակէ կուսակալին խնամքով քաղաքը ջուր բերուիլը եւ կը ցուցնէ թէ քաղաքն այն ատեն Ասորիքի մէջ էր: Պտղոմէոս (Ե,* 7, 7) *Կիլիկիոյ մէջ կը դնէ՝ Ամանոսի Դրանց հետ: Նոյնպէս Մաղաղաս, էջ* 297, *հրտ. Բոնն:*

երկայնութեան կ՚երթար եւ ես գրեթէ ժամ մը հետեւած եմ անոր հետքին, որ տեղ տեղ շատ որոշ է՝ Ճէֆլէի եւ Կարա — Մուղարայի միջեւ, իբր կէս ճամբան[119]:

Ուղւոյն պաշտպանութիւնը ապահովուած էր յատկապէս տեւական բանակետղով մը, որուն շրջապատը շատ որոշ տեսանելի էր՝ երբ անկէ անցայ, եւ որուն յատակագիծը հանելու համար ինծի մեծ բարեացակամութեամբ օգնեց Հ. Փիլիպպոս: Ասոր անկանոն ձեւը քիչ մը կը շուարեցնէ. անոր այլեւայլ դռները տարօրինակ կերպով զետեղուած են: Պարիսպը, որմէ հարաւ-արեւելեան կողմը քանի մ՚ողորմելի կտորներ մնացած են, երկու մետր թանձրութիւն ունէր: Այժմ ոչ մէկ տեղ մնացածները չորս մետրէն աւելի բարձր են: Որմերու բուն մարմինը որ քարալիցքով էր, պարփակուած էր երկու կողմէն ալ երկաթաքարէ արտաքին երեսով, այս քարերն անկանոն կոփուած են եւ շատ մեծածաւալ չեն: Այս բանակետղը կը ծառայէր, նաեւ պաշտպանելու այն մարդիկը, որ բազալտի շատ մերձա-

---

119 Blanckenhornի քարտէսը կը յիշատակէ ուրիշ ուղեհատուած մ՚ալ Խալահիէ տեղւոյն անմիջապէս հարաւակողմը: Հ. Սեբաստիանոսի, Ճէքլէի Տրապիստներէն, կարծիքով սխալ է այդ, եւ կը համարի թէ խառնուած են փոսի մը պատճառով, որ քանի տարի առաջ բացուած էր եւ յետոյ լեցուած: Դուրս պեղուած հողը դիզուելով առ ի չեղ երկու կողմէ՝ յատակ բերած է այդ պատրանքը: — Ինչ որ է, ուղին տակէ անցնելու էր:

ւոր մէկ քարահատքը շահագործելու կը դործածուէին[120]։ Հաստատուած էր Մելասի գետին միւս կողմը, մինչ ուղին այս կողմն էր, ձախ ափէն իբր 2 քիլոմեթր անդին՝ Մէյտան բարձրաւանդակին ոտքը։ Այսօր փոքր ակնաղբիւր մը կը բղխի հարաւ — արեւելեան անկիւնը. Թերեւս հնութեան ժամանակ ալ անկէ կ՚օգտուէին. շրջապատին կեդրոնը լեռնակ մը կը բարձրանայ, ուրկէ կրնայ տեսնուիլ շրջակայքը. այլեւայլ կողմեր՝ մանաւանդ արեւմտակողմը՝ ներքին սենեակներէն ոմանք հազիւ կը զանազանուին։ Այստեղի պահակագունդն առնուած ըլլալու էր Կիւրհոսի պահակազօրէն, որ միայն քանի մը ժամ հեռու է։

Մելասի կողմնական ուղին անտարակոյս կը միացնէր Նիկոպոլիսն ու Գերմանիկիան։ Ո՞ւր էր այս վերջինը։ Զայն ուզած են դըտեղել արդի Մարաշի տեղը. բայց այլեւայլ աղբիւրներու[121] տուած տեղեկութիւններն այնպէս անմիաբան են իրարու, որ կարելի չէ բան մ՚եզրակացնել, միւս կողմէ Մարաշի մէջ միայն արաբական աւերակներ կան[122]։ Ամէն պարագային Նիկոպոլիս եւ Գերմանի-

---

120 Ասոր վրայ խօսած եմ ի BCH, XXVI, 1902, p. 188, ծն. 2։

121 Միւլլէր զանոնք հաւաքած եւ ուսումնասիրած է Պտղոմէայ իւր հրատարակութեան մէջ. էջ 965։

122 Տես քաղաքին յատակագիծը եւ միջնաբերդին հատածապատկերը՝ Humann եւ Puchstein, անդ, էջ 98—99. պատկ. 32, 33։

կէ իրարու շատ մօտ չէին, վասն զի Անտոնինեայ Ուղեգրութիւնը[123] այս երկուքն ալ Եդեսիա պացող երկու տարբեր ճամբաներու ուղեգլուխ կը նշանակէ :

Նոյնը կը տեսնուի քարտէսն ուսումնասիրելով : Պաշտպանողական այս դրութեան մէջ ամէն ինչ դէպի Անտիոք կը ծառայամիտի : Այս քաղաքին մէջ ալ ամրացման նշանաւոր աշխատութիւններ կատարուեցան այլեւայլ անգամներ, Տիբերիոսի ատեն, երկու Թէոդոսներու ժամանակ եւ վերջապէս Պարսից աւերումէն ետքը՝ Յուստինիանոսի օրով, որ շրջապատի չափը նուազեցուց : Նախամեծար կը համարիմ այսպիսի կարեւորագոյն մայրաքաղաքի մը մասին բան մ'աւելի չըսել, որ ինքնին մասնաւոր երկայնաձիգ պարզաբանութիւններ պիտի պահանջէր, եւ որ նիւթ եղած է նորագոյն հրատարակութեանց, որոնք կը յանձնարարեմ ընթերցողներուս ուշադրութեան[124] :

---

[123] Ուղեգր. Անտ. 184—191 :

[124] R. Förster, Antiochia am Orontes, (Jahrb. d. d. Instit. XII, 1897, p. 103—149) : — Partsch, անդ, XIII, 1898. Arch. Anz. p. 223 յջ. : Հոն յառաջ բերուած յատակագիծները եւ երեւագիծերը առնուած են Dom H. Leclercqէ, Antiochia, ի Diction. d'arch. chrét. et de liturg., Fasc. VIII, 1905, col. 235 :

## ԳԼՈՒԽ Զ.

## Վերին Եփրատ եւ Փոքր Հայք

*Անտիոքէն կարելի էր նաեւ Հայաստան երթալ, բայց երկիրն մտնելու երկրորդ ուղի մըն ալ կայ հիւսիսէն. եւ այժմ հիւսիսային այս երկրամասով պիտի զբաղինք: Այս մասին մէջ մեր ընելիք ուսումնասիրութիւնը դոյզն ծաւալի մէջ կ'ամփոփուի ի բաց առեալ այն մասը, որ Փոքր – Հայաստան կը կոչուի, այսինքն այն երկրաբաժինը, որ Վերին Եփրատի — ասով կը հասկնամ հիւսիսայոյն բազուկը, — արեւմտեան կողմը կ'իյնայ, եւ որ ի վերջոյ իւր անուանակոչութեան ալ համաձայն՝ շատ աւելի քիչ կախում ունի Անատոլեան Տաւրոսէ քան Հայկական Տաւրոսէն: Այս է ամբողջը, զոր հռոմայեցիք իբր երկուքուկէս դար ստացած կը պահէին* Հայաստան *անուան ներքեւ: Պիտի տեսնուի թէ ներկայ գլուխս ամբողջ երկասիրութեան ամէնէն անգոհացուցիչն է. հիմնուած է ամբողջովին միայն հին աշխարհագիրներու եւ ուղեցոյցներու, ինչպէս նաեւ*

«Տեղեկ. Աստիճ.» *գրոց տուած տեղեկութեանց ծայրաքաղութեան վրայ։ Պատմագիրները բան մը չեն ըսեր այս տեղերուս մասին՝ որոնց գրեթէ միշտ խնայած էին պատերազմները։ Ասոր հակառակ նորագոյն քանդիչները հոս շատ աւելի մոլեգին եղած կ՚երեւան։*

*Ասորիքի եւ* Փոքր Հայոց (Armenia Minor) *իրարու կցումը տեղի կ՚ունենար այն միջանկեալ անկիւնին մէջ, զոր կը կցէ Եփրատ գետը Սամոսատի եւ Մելիտինայի միջեւ։ Վերջին քաղաքս ուրեմն, որ հաւասարապէս հեռու — եւ շատ հեռու — էր թէ՛ Անտիոքէ եւ թէ՛ Տրապիզոնէ, առաջնակարգ դիրք մը կը գրաւէր։ Աշխարհագրական գաւառն, որուն մասն էր, աւելի Կոմագենէն կը յիշեցնէ քան թէ բոլորովին մերձաւոր Կապադովկիան, որ աւելի ջերմին է եւ շատ աւելի քիչ անտառապատ*[1]*։ Սամոսատէն ելլելէ վերջն երկու ճամբայ կար ընտրելու. մին կը հետեւէր՝ մեծ դժուարութեամբ գետին ամէն ծամածուռ դարձուածքներուն, միւսը դէպի արեւմուտք խոտորնակի շրջան՝ մ՚ընելէ ետքը՝ շիտակ կը կտրէր երկիրները։*

*Առաջինը մեզի ծանօթ է Պեւտինգ. Տախտակէն*[2]*. եւ միայն անոր նշանակած հեռաւորութեանց չափերուն վրայ յենլով կրնանք իւրաքանչիւր կայանի համար առժա-*

---

1 *Ստրաբոն*, *ԺԲ*, 2, 1, *էջ* 535 c։
2 *Պեւտինգ. ԺԱ*, 2—3։

մանակեայ նոյնացում մ՚առաջարկել եւ այն՝ վերապահութիւններով: Առաջին պաւառի մը մէջ[3] նախ կ՚անցնուէր Քոլմադարա (Քորէ՞ս), Բարշալոյ կամ Բարսադիոն[4], եւ Յուլիոպոլիս (դէպի արդի Բիթոլ) տեղերէն. Եփրատ արեւմուտքէն արեւելք դառնալէն ետքը՝ նոր երկիր մը կը մտնէր այնուհետեւ[5], Կղաւդիաս (արդի Alichin?)[6], Մետիտա[7] (արդի՝ Իզոլի՞), Կորնէ (արդի՝ Քուրնաճա՞) տեղերով: Այս զանազան անուններէն երկուքը կը յիշէ Ամմիանոս իբր գետին դիւրանցանելի հուները կամ ծանծաղները (գոնէ ջուրերու նուազութեան միջոցին[8]):

Միւս ճանապարհէն[9] այսօր ամենադոյզն հետք մը մնացած չէ, ի բաց առեալ այն կամուրջը, որ Կիախդայի շրջակայքը շինուած է, զոր նորոգած է Ալփինիոս Սենեկիոս Նուիրակը Սեպտիմոս Սեւերոսի, Կարակալլայի

---

[3] Գաղոմ. Ե, 6, 25. «Կողմնապետութիւն Արաւենայ առ Եփրատ գետով»:

[4] Ratsalium՝ Աշխ. Հռաւեն. 95, 13. Համտ. Ruge, առ Պաուլի–Վ., արդի Կէրկէրի շրջակայքը, բայց ոչ բուն Կէրկէրի տեղը՝ որ Արշամէիա կը կոչուէր արձանագրութեան մը համաձայն:

[5] Գաղոմ. Ե, 6, 24՝ «Կողմնապետութիւն Լաւինիանէնէ Եփրատ գետի առջեւ»:

[6] Ruge, Պաուլի–Վ., բացարձակ անստոյգ:

[7] Հմմտ. Not. XXXVIII, 27, «Վաշտ Գ Ուղփեան հազարաւոր Պետրէացւոց, ի Մետիտա»:

[8] Ամմ. Մարկել. ԺԸ, 7, 10. «Բարգալա եւ Կղաւդիաս... ուր գետը իւր ակնաղբիւրին մօտ դեռ դոյզն է եւ նեղ, եւ օժանդակ եկած ջուրերով դեռ աճած չէ, դիւրաւ կրնայ անցնուիլ իբր ծանծաղ»:

[9] Ուղեգր. Անտ. 210, 215:

եւ Գեռայի օրերուն[10]: Մտադիր ըլլալու է որ այս աշխատութիւններուն առաջնորդած է ԺԶ լեգէոնի նուիրակը, որ Սամոսատի մէջ էր, եւ ո՛չ թէ Մելիտինէի մէջ: Ուղեցոյցներու համեմատ ուղին յառաջագոյն կ՚անցնէր Պէրհէ (Perrhe) տեղէն, ուր այժմ բացի վիմափոր դերեզմաններէն բան մը չի նշմարուիր, եւ բացի անազանագոյն հնութեամբ կամուրջէ մը, որ թերեւս նոյն իսկ միջին դարէն է եւ բազմաթիւ նորոգութեանց նշանները կը կրէ[11]: Յիշեալ տեղը դնելու է արդի Ադիյամանի մօտերը, ուր անունն ալ գրեթէ պահուած է (Պիրուն): Իսկ Կիախտա չենք գիտեր թէ որ տեղւոյ փոխանակած է[12]: Յետոյ կու գան Մենսնէ եւ Մելիտենէ (այժմ Մալաթիա):

Վերջինս երկար ժամանակ նոյն լեգէոնին՝ ԺԲ Շանթահարի (XII Fulminata) նիստը եղաւ[13]: Եւ Պրոկոպեայ համեմատ[14] տակաւին այս զօրագունդն էր որ ուղղանկիւն բերդի մը մէջ ներփակուած առաջին բնակ-

---

[10] Eph. epigr. V, 25, 26, CIL, III, 6709, 6710: Humann եւ Puchstein, անդ, էջ 393, Տխտ. 41—43, եւ Yorke, ի Geogr. Journ. 1896, II, p. 323:

[11] Puchstein, էջ 401, տխտ. 51, 2 եւ պատկ. 59. Գ. Հոֆման, տռ. Գելցեր, ծն. Գէորգայ Կիպր. էջ 149:

[12] Թերեւս Locotene կամ Ζιξόατρα (որուն համար կ՚ըսուի «Եփրատայ քաղաքաց մէջ») Պտղոմեայ Ե, 6, 24. հմմտ. Միւլլեր Ծանօթութիւնք՝ էջ 893:

[13] Not. XXXVIII, 14, հմմտ. 8:

[14] Պրոկոպ. Շին. Գ, 4, էջ 254:

չութիւնը կազմեց: Տրայանոս ատեն բանակետղը քաղաք եղաւ եւ կամաց կամաց մայրաքաղաք մը, որ սակայն անեցաւ անրութիւններէն դուրս. մեհեանները, շուկան, բաղնիքներն ու թատրոնները տեսակ մը արուարձան կը կազմէին: Անաստաս մեռաւ շրջապատ պարիսպը դեռ չաւարտած. եւ Յուստինիանոս այդ գործը գլուխ հանեց: Ասով սակայն քաղաքը զերծ չմնաց աղէտներէ. Խոսրով երբ 579ին «առաւ Մելիտինէն, որ այն ատեն ո՛չ պահակազօր ունէր եւ ո՛չ ալ բնակիչ, եւ կրակի տուաւ»[15]: Հին քաղաքը (Էսկի-Շէհիր) արդի Մալաթիայէն 8 քիլոմեթր հեռու էր դէպի հիւսիս, գետէն իբր 5 քիլոմեթր անդին: Կը մնան անկէ հին պարիսպներու կտորներ եւ գլխիվայր շրջած բիւզանդական սիւներ[16]:

Մելիտինէ հովիտներու ճանապարհակցաց վրայ կ'իշխէ, դէպի արեւելք՝ Տօխմա-սու[17], դէպի հարաւ՝ Եփրատ եւ այն երկու գետառաջքներն, որ միանալով այս գետը կը կազմեն, այս է Մուրատ-սու (Արածանի) դէպի արեւելք եւ Կարա-սու (Սեւ-Ջուր) դէպի հիւ-

---

15 Եւագր., Ե, 14:

16 Yorke, անդ, էջ 327:

17 Անոր գետախառնուրդի ճիշդ մօտը՝ Գըրք-Կէօզ (Քառասուն ակունք) կոչուած տեղը՝ Yorke նշմարած է հին կամուրջ մը, որ բոլորովին նման է Կիախտայի կամուրջին, հոս ալ նոյն ոճով կրկին դարեր կան, երկու սիւներով, որոնք մուտքը կը շրջանակեն:

սխս[18]։ Եթէ պետափառնունքէն անդին գետն ի վեր ելլենք այս վերջնոյս ուղղութեամբ[19], աւելի վերնակողմը, կը հասնինք ուրիշ ճանապարհակիցք մը։ Մելիտինէէ ետքը կը գտնենք Կիակա (Ciaca)[20] Դաւկուսա[21], զոր անուանանմանութենէ մղեալ — քանի հեռաւորութեանց որոշ չափեր չկան, անոնց իրարու հակասելուն պատճառաւ — կրնայինք զետեղել Ակեալ (Էկիճ) հարաւակողմը, Աշիկայի մօտ։ Պտղոմէոս բացի այս անուանէն[22], քիչ մը հեռուն կու տայ Δάγουσα անունը[23]։ Yorke կ'առաջարկէ իրարմէ զանազանել եր-

---

18 Yorke, (էջ 332, ծն. 1) կ'ըսէ թէ Կարա-սու անունը միայն աշխարհագիրներուն ծանօթ կ'երեւայ, եւ ոչ բնաւ տեղացիներուն, որոնք կ'երեւայ թէ հաւասարապէս Մուրատ-սու կը կոչեն այն երկու բազուկները, որոնք միանալով կը կազմեն Եփրատը։ Սակայն մենք կը գործածենք նոյն բացատրութիւնը, վասն զի անով կարելի կ'ըլլայ սովորական քարտէսի մը վրայ ալ մեր ներկայ պարզաբանութեանց հետեւիլ։ (— Yorkeի ըսածը բոլորովին ուղիղ չէ. «Կարա-սու», հայ. Սեւջուր ստուգիւ կը գործածուի ժողովրդեան գոնէ մէկ մասէն եւ գոնէ գետին մէկ մասին համար, օրինակի համար՝ Նորածին գետը Կարնոյ դաշտէն սկսեալ։ Ծան. Թրգմ.)

19 Ուղեգր. Անտ. 208 եւն։

20 Գեւտինգ.—Craca, Պտղոմ. Ե, 6, 21, սխալմամբ կը զանազանէ երկու Κιάνικα եւ Κιακίς. Ուր գտնուած ըլլալն անծանօթ է. Թերեւս արդի Չերմուկ (Ruge, Պաուլի–Վ.)։

21 Փոխն. Ըն. Գոմ. Զ, 27. Not. XXXVIII, 22՝ «Թեւ Աւբեանի Դաւկուսա»։

22 Պտղոմ. Ե, 6, 21։

23 Պտղոմ. Ե, 6, 21. Պտղոմէոսի այս գլուխներուն մէջ, ուր Կապադովկիոյ եւ Հայաստանի վրայ կը խօսի, սխալները կը վխտան։

կուքը, Դասկուսա, արդի Գիճկետճի դիմացն ըլլայ, միւս ափին վրայ, իսկ Դակուսա դէպի արդի Կերաճ-Մաղէճ, Մուրատ եւ Կարա-սու բաղուկներու կցման տեղը: Իրօք ալ այս տեղը երկու դետանցք կային՝ ուսկից դիւրին էր անցնիլ եւ յարմարագոյն հսկելու համար: Խնդիրը շատ տարակուսական է, եւ չկայ բան մը որ վճռէ թէ զանազանելո՞ւ ենք երկու քաղաք թէ ոչ[24]: Սակայն գոնէ Գինկեանի դիմաց կը կենան դղեակի մ՚աւերակները, ուր լատիներէն արձանագրութիւն մը գտնուած է[25]: Սակայն Զիմարայի եւ Դաս-կուսայի միջեւ հեռաւորութեան անճրպետը շատ դոյզն եղած կ՚ըլլայ՝ համեմատութեամբ այն անճրպետներուն, զորոնք կը նշանակեն ուղեցոյցերը: Ցետոյ կու գար Սարու, զոր համեմատելու ենք Գեւտինգ. Տախտակի Սաբա եւ «Տեղեկ. Աստիճ.» գրոց Սալբու անուններուն հետ[26], կարեւոր դղեակ մը, ուր կը բնակէին «Հնծեալք Աղեղնաւորք», բայց զոր նոյնացնելու որեւէ փաստ մը չունինք: Ապա՝ Տեւկիլա, Զիմարա[27], որուն անուն ա-

---

[24] Ruge, Պաուլի-Վ. — Dagusa:

[25] CIL, III, 6743:

[26] Not. XXXVIII, 3, 11:

[27] Պտղոմ. Ե, 6, 21, Ἐδσιμάρα, որ անտարակոյս նոյն է Σίσμαρα ի (կամ ձեռագրաց համեմատ Ζίμαρα) հետ. Պտղոմ. Ե, 6, 19, եւ Գդին. Բն. Գամ. Ե, 83:

[28] Բուն Zimarra տեղն աւերակներ չկան, այլ քիչ մը հեռուն դէպի արեւելք՝ բոլորշի հին դղեակի մը մնացորդները (իբր 30 մետր բարձրութեամբ եւ մօտ 200 մետր շրջապատութեամբ), զոր Թերեւս Հա-

նաղարտ մնացած է ցայսօր, Կարա–սուի ծո-ցանկեան առջեւ[28]. այսպ՝ Անալիբլա[29], Սի-նիբրա (կամ Զինեբուա), Կարսագա[30] (ար-դի Գիրսո՞ւն), Արաուրակա եւ Սուիսա, որոնց պահակազօրքը կը յիշէ «Տեղեկ.» գիրքը[31], եւ վերջապէս Սատաղ։

Սատաղայի տեղը որոշ է արդի համա-նուն գիւղի աւերակավայրովը, ուր գտնուած են աղիւսներ ԺԵ լեգէոնի անուամբ[32] եւ Աւ-րեղիանու նուիրուած ձօն մը[33]։ Տրայանոս այցելեց հոս[34] որ թերեւս ինքնին հաստատեց

---

մայեցիք նորոգած ու զօրացուցած են. (Yorke, p. 335, 455)։ — Ուրիշ Զիմարա մը՝ զոր Պղինիոսի ընագիրը կը յիշատակէ, կը գտնուէր Սատաղէն Ար-տաշատ երթալու ճամբուն վրայ՝ Կարինոյ արեւելա-կողմը. (= Sinara, Պեւտինգերեանի)։

[29] Պտղոմ. Ե, 6, 20. Պեւտինգ. եւ «Տեղեկ.» Analiba. Not. XXXVIII. 28՝ «Վաշտ Դ Հռետաց-ւոց յԱնալիբա»։ Ըստ Yorke-ի (467) Զիմարայէ քիչ մը դէպի արեւելք, Կարարուղակի վրայ ձգուած կա-մուրջին մօտ։

[30] Պտղոմ. Ե, 6, 20, Χαρσαβία. Yorke (465) կ'առաջարկէ դնել Elegarsina տեղը։ Տարակուսա-կան է. Հմմտ. Ruge, Պաուլի–Վ. Ցանկ. ի բառին „Casargis“, — իսկ Cumont եղբարք (Studia Pon-tica, II, 1906, p. 325 էջ. Carsaga կը զետեղէն արդի Ալաջակ տեղը, որ չէն մըն է Զիպտրէ երկե-քիլոմետր հեռու, ուր գտած են հռոմէական զինու-որական հաստատութեան մը հետքերը։

[31] Not. XXXVIII, 29՝ «Վաշտ հազարաւոր Բոսպորեան յԱրաւրակա»։ — 23՝ «Վաշտ Ա Ուլփեան Դակաց ի Սուիսա»։ Այս երկու կայաններու տեղը տակաւին փնտռելու է. Cumont, անդ, էջ 328։

[32] CIL, III, 13647 = 14187[1]։

[33] Անդ, 14184[3]։

[34] Դիոն. Կասս. ԿԸ, 18, տես մեր ընագիրները, զորոնք յառաջ կը բերէ Միւլլեր, ծն. Պտղոմ. էջ 884—885։

հոն ԺԵ Ապողինարեան լեգէոնը[35], զոր Արրիանոս կը յիշէ եւ որ հոս իր զօրանիստն ունէր տակաւին Ե դարուն սկիզբը[36]:

Յուստինիանոս նորոգեց Սատաղի պարիսպները, որոնք շատ թեթեւ շինուած էին, եւ զանոնք բաւական մեծ բարձրութեան մը հասցուց, որպէս զի կարենան իշխել Սատաղի չորս դին դաշտին մէջ ցրուած բլուրներու վրայ: Վերջապէս աւելցուց նախապարիսպ մը եւ յառաջապահ ամրոցիկ մը մերձաւոր տեղ մը[37]: Արդի գիւղին քով կը մնան պարիսպներու քանի մը կտորներ. դիրքն ընդհանրապէս Պրոկոպոսի նկարագրածն է. այսինքն՝ գոգած տափարակ բլուրներու միջեւ: Որմնաշինութեան կերպը բիւզանդական պարզ կոշտ որմ մըն է, (կոշտ որմնադրութիւն տաշտաքարերով՝ խոշոր կոպիճներով). արտաքին երեսները կոփածոյ քարերով դրուագուած: Աւերակներն այնպէս կը ցուցնեն թէ երկու սեղանակերպեր (trapèzes) մին միւսին մէջ ագուցուած են, որոնց պարիսպները բաւական ցած բլուրի մ'եզերքին կը հետեւէին: Բանակատեղին առատ ջուր հայթայթուած էր, եւ բոլորտիքը կրցաւ աճիլ քաղաք մը: Սակայն միշտ զինուորական

---

35 Անշուշտ սխալմամբ է որ «Տեղեկ.» գիրքը Հայաստանի Գիւղից մէջ կը դասէ՝ Մելիտինէէ յառաջ՝ եւ փոխանակ Սատաղի, որուն կը սպառնէր, Ապողինարիսը (XXXVIII, 5), բայց այս Ապողինարիսի պահակագունդ մը գոնէ չի վերագրեր:

36 Not. XXXVIII, 13:

37 Պրոկոպ. Շին. Գ, 4, էջ 252—253:

տարրն անոր կորիզն կը կազմէր, եւ բազմաթիւ դարեր միշտ զուտ լատինական կենդրոն մը մնաց[38]:

Նշանակենք որ այս տեղերուն շատերը Պտղոմէոսէ չեն յիշատակուիր. ուստի անկէ ետքը հիմնարկուած ըլլալու են. եւ ապահովապէս նախ զինուորական նկարագիր, եւ նպատակ ունէին: Կը յօժարիմ Yorkeի հետ[39] կարծելու թէ բազմաթիւ դարերով այս սահմանագլխին վրայ ռազմագիտական բաւական քիչ շինութիւններ կատարուեցան, վասն զի Հայաստան թշնամի երկիր մը չէր նկատուեր, այլ պաշտպանաւոր տէրութիւն մը՝ գրեթէ նահանգ մը: Իրերը փոխուեցան միայն Դ դարուն, եւ այս փոփոխութեան պատճառ եղաւ Սասանեանց իշխանութեան հասնիլը[40]:

York այս ամբողջ ճամբուն վրայ գտած է, Զերմուկէն 3 ժամ դէպի հիւսիս (եւ մէկ ժամու տեւողութեամբ տեղ մը) ուղեմաս մը, որ 16 ոտքէ աւելի լայն քարայատակ մը կը ներկայացնէ եւ ուղւոյն մէջտեղի

---

38 Yorke, p. 400, Cumont, p. 343—351, տես յատակագիծը Տախտ. Իէ:

39 Անդ, էջ 472:

40 Հմմտ. երկու մղոնաքարեր՝ նորերս Պոնտոս գտնուած (Cumont, ի C.-R. Acad. des Inscr. 1905, p. 347—351) տարեթիւ ունենալով 231 տարին: Կապպադովկիոյ կուսակալն աճապարանքով կը յարդարէ դէպի սահմանագլուխ տանող ճամբաները, ուր կը սպառնար, նոր Հարստութեան առաջին արքային՝ Արտաշիրի ասպատակը:

գիծն ալ բարձրացած ծայրով կը շարունակուի[41]: Ինքը չի համարիր թէ այս հռոմէական ուղի մ'ըլլայ. Կապպադովկիոյ ուղիներն անձամբ չեմ ճանչնար, բայց իր նկարագրածը բոլորովին համանման է այս ժամանակի սորական ուղիներու շատերուն: Յետոյ Անգոն-չայի վրայ՝ որ Եփրատ կը թափուի Կեփան-Մաղէնի հիւսիսակողմը, կան երկու կամուրջներ, որոնց մին նման է Կիախտայի եւ Կըրկ-գէօզի կամուրջներուն[42] Այս գետնախառնունքին ճիշդ մօտը՝ Կորպացիկ, որ տիրող դիրքի մը վրայ նստած է, հռոմէական զինուորական պահակադօրի մը տեղը փոխարինած ըլլալու է[43]: Յետոյ ուղին հարկադրաբար կը հեռանար գետափէն, ուրուն հետեւիլ մինչեւ Զիմարա շատ դժուար է[44]: Անդին Հասան-օվա տեղը կան բիւզանդական քանի մը սիւներու բոլորշի բնամասեր, կամուրջի մը հետքեր, եւ արձանագրութիւն մը, ուր կ'առնեղծուի Դեկոսի անունը[45]:

---

41 Անդ, էջ 329:

42 Yorke, 330: Այս նմանութիւնը կը ցուցնէ թէ միեւնոյն ժամանակաշրջանէն են, կա՛մ Տրայեանու օրերէն, կա՛մ Բ դարու վերջէն, երբ Սեւերոս եւ իր որդիները նորոգել տուին Կիախտայի կամուրջը:

43 Yorke, էջ 331:

44 Անդ, էջ 467:

45 էջ 455: Ի Կամուսխ, կ'ըսէ (457) կայ դղեակ մը, որ յետ-բիւզանդեան կ'երեւայ. հոս թերեւս որեւէ Թէոդոսիոպոլիս մը կը կանգնէր: Ես չեմ գիտեր թէ ո՛րը:

Ըսի թէ ուրիշ ճանապարհակիցք մըն ալ կայ. իրօք ալ Սատաղա կարելի էր երթալ — կամ անկէ դառնալ — անհրաժեշտաբար չորս ուղղութեամբ :

ա. Այն գիծը, զոր կը գծէր նոյն ինքն Սեւ-ջուրը, որուն հանգրուանները թուեցինք:

բ. Արեւելեան ճամբան, զոր կը ցուցնեն նոյն գետին բուն իսկ աղբերակունքը, որուն հովիտը կը շարունակուէր Եփրատի հովիտով մինչեւ անոր ակունքը: Այս ուղեգծին վրայ, որուն օթեւանները մի առ մի չենք նկատեր, վասն զի անոր գծին մեծագոյն մասը Պետութեան հողաբաժնէն դուրս կը մնար, կը գտնուէին գլխաւորաբար Եղեգիա (Elegia)[46], երկրորդ Ձիմարա, Կողքիոն, եւ վերջապէս Արտաշատ:

գ. Հիւսիսային կողմը՝ Սատաղայէ կ'երթցուէր Կողքիս, հետեւելով Գայլ գետի եւ Վոհի (Boas) հովիտէն[47]. կամ դէպի Տրապիզոն՝ ուրիշ ճամբով մը, որ աւելի առապար էր՝ բայց դիւրագնաց. Yorke հետեւած է այս վերջին ճամբուն. եւ արդէ

---

[46] Պտղոմ. Ե, 12, 5. այսպէս՝ Դիոն. Կաս. ԿԸ, 18. Ստեփ. Բիւզանդացի, Փեւտինգերեան՝ Argea Աշխ. Հռաւ. 74, 13 Egea: Այսօր՝ Իլիճա, Կարնոյ մօտ:

[47] Որուն վրայ Յուստինիանոս շինեց Բարերդացւոց դղեակը, այսօր Բաբերդ (տճ. Փայպուրդ). տես Պրոկոպ. Շին. Գ, 4, էջ 253. Παίπερτε Կետրենոսի քով, Բ, էջ 302, հրատ. Բոնն:

ինճուղին ալ արդէն անկէ կը խոտորի։ Մէկուկէս ժամ եւքը աջակողմը իբր 3 քիլոմեթր անդին ձգելով բերդ մը, որ անտարակոյս հռոմէական է, կը սկսի զգալապէս լեռն ի վեր բարձրանալ. գագաթին մօտ[48] կը գըտնուի Արտասա-խանը (Արադասի, 'Αραδασση) եւ Տրապիզոնէ 10 ժամ յառաջ իջեւաններու խումբ մը՝ որ հաւաքական անունով կը կոչուի Զիղանա-խան կամ Զիգանա[49], որ կատարելապէս կը համապատասխանէ Ուղեգրաց Ziganaին[50]։

Փ. Կիւմոն, որ նոյնպէս հետեւած է այս ուղեգծին[51], դիտել կու տայ թէ թերեւս բազմաթիւ ուղիներ կային դէպի ծով. վասն զի Անտոնեան Ուղեգրութիւնն եւ Պեւտինգ. Տախտակն իրարմէ շատ տարբեր անուններու երկու շարքեր յառաջ կը բերեն. այսօր ալ կարաւանները այլեւայլ կապաններէ անցնելու սովոր են։ Սակայն միայն մէկ ուղեգծի մը վրայ խաղաղիկ հաղորդակցութիւնք ա-

---

[48] Ճամբուն կիսուն մօտ, Սատաղէ 18 մղոն հեռուն, կեցած էր Դոմանա, (Պտղոմ. Ե, 6, 20. Ուղեգր. Անտ. 217, 3. Պեւտինգ. Ժ, 5. Աշխ. Հռաւ. 74, 15. «Տեղեկ. Աստիճ.» XXXVIII, 4) որուն համար արդի անուններն որեւէ շաւիղ մը չեն ցուցներ, եւ ուր կը բանակէին «Հեծելոյք աղեղնաւորք» («Տեղեկ.» անդ, էջ 12)։ Կիպերտ (տես քարտէզը եւ Կիւմոն (էջ 354) կը նոյնացնեն զայն՝ վերապահութեամբ՝ արդի Քէօսէ տեղւոյն հետ։

[49] Not. XXXVIII, 37՝ «Վաշտ Բ Վաղենտեան ի Զիգանայ»։

[50] Yorke, էջ 462։ Հին ամրոցէն կը մնան կլոր աշտարակի մը հիմերը. (Կիւմոն, էջ 361)։

[51] Էջ 351 եւն. քարտէզ ԻԶ։

պահուած էին զինուորական կայաններու գծով մը, որոնք անհրաժեշտ էին այս երկրին մէջ, ուր միայն աւազակաբարոյ ցեղեր կը բնակէին: Կիւմոն լուսանկարած է աւերակներ, որոնց ժամանակը կարելի չէ որոշել՝ գրեթէ տասը դարու անջրպետի մը մէջ:

դ. Վերջապէս դէպի արեւմուտք կը բաժնուէին երկու երկարաձիգ հովիտներու մէջէն՝ թէ Սեբաստիոյ եւ Կեսարիոյ ուղեգիծը[52] եւ թէ՛ Ամասիոյ ուղեգիծը, որոնց Սատաղայէ առաջ եղած վերջին կայաններն էին՝ Նիկոպոլիս[53], Կլոտէդարիկա (Clotoedariga) կամ Ոլեդարիզա (Oloedariza)[54], Դրակոնէս (Վիշապք) եւ Ազա[55]: Ուղեգիծն իր ընթացքին արեւելեան մասին մէջ կը կրկնուէր ուրիշ ուղեճիւղով մ'ալ, որ կ'երթար Կարսագայի մէջ կը միանար այն ուղւոյն, որ Եփրատի սահմանագլխոյ քովէն քերելով կ'ընթանար: Պրոկոպիոս նոյն գաւառին մէջ կը դնէ՝ տառից աւելի ճշտելու փոյթը, Լուսիորմոն (Λυσιορμόν) ղղեակը, զոր Յուստինիանոս

---

[52] Փեւտինգ. Ժ, 3, 4. Ուղեգր. Անտ. 179, 214:

[53] Կիւմոն, էջ 305 եւն:

[54] Հմմտ. Not. XXXVIII, 17 „Թեւ Ոիզացւոց յԱլադալէարիզա»: Seeck կը համեմատէ Ἀνταραἰζων՝ հետ (Պրոկոպ. Շին. Գ, 4, էջ 253): Յուստինիանոսի ղղեակէն («այնպէս կ'երեւայ թէ հողի երեսը բան մը մնացած չէ» (Կիւմոն, էջ 322):

[55] Այս է Պղինիոսի (Բն. Պատմ. Զ, 26) եւ (Ե, 6, 10) Aza կոչածը. Haza՝ Ուղեգր. Անտ., 'Αρέων՝ Պրոկոպ. անդ., «Սեբաստիոյ եւ Նիկոպոլսոյ պարիսպները վերանորոգուեցան»: Dracones եւ Haza տեղերը նոյնացնելու մասին՝ հմմտ. Կիւմոն, էջ 321 յջ.:

նորոգեց. ուրիշ մ'ալ որ շինուած էր «Գերմանոսի փոսին» մօտ, որուն մասին աւելի բան մը չենք գիտեր եւ Կողոնիա[56] շատ հին բերդը, զոր Պոմպէոս այսպէս յորջորջեց (տարակուսական աւանդութեան մը համաձայն, որուն արձագանգ եղած է Պրոկոպիոս) եւ որ Յուստինիանոսէ ետքն ալ իւր անունը պիտի տար տեղւոյն բանակաթեմին:

Կիւմոն՝ Ռամզէէ ետքը, անոր տեղն որոշած է արդի Կարա–Հիսարը, ուր ընդարձակ շինութեանց աւերակներ կը տեսնուին, որոնք այլեւայլ շրջաններու մէջ բազմաթիւ փոփոխութիւններու հետքեր կը կրեն[57]:

Յարմար չէ մանրամասն խօսիլ Կապպադովկիոյ ամրութեանց եւ ուղեյարդարութեան մասին. Արեւելեան Փոքր Ասիոյ մէջ ի վերջոյ Եփրատն էր որ Պետութեան մեծ պատուարը կը կազմէր: Իսկ գետէն մինչեւ Պոնտոս – Եւքսինոս Հռոմայեցիք ընտրեցին ու պահեցին՝ մինչեւ անարդանակոյն ձուլումները, իբրեւ սահմանագլուխ «Լեռնաշղթայ մը, որուն նոյն իսկ նուազ բարձր լեռնանցքները՝ գրեթէ ամբողջ տարին անանցանելի էին որեւէ բանակի համար»[58]: Վերջացնելու

---

[56] Միւլլէր, տալով իրաւունքի, զայս կը համեմատէ Պտղոմեայ (Ե, 6, 2) Σινίσκολον ի հետ (ուրիշ ձեռագիրներու մէջ Σινὶς κολωνία = «Սինիս» գաղութ, զոր փնտռելու ենք Արգավանի մօտերը Մալաթիայէ իբր 30 քիլոմեթր հեռու դէպի հիւսիս:

[57] Անդ, էջ 296—302:

[58] Կիւմոն, էջ 341: Ակնարկուածն է Սիպիկորի լեռնաշղթայն:

համար նշանակենք Մելիտինէի գլխաւորագոյն դիրքը, ուր բոլոր ուղիները հողմահարաձեւ ծայրամիտութեամբ կու գային ու կը հաւաքուէին[59]: Բացի Սատաղայի եւ Սամոսատի գծերէն, զորոնք նշանակեցինք, հոն կը յանդէին երկու ուրիշ առաջնակարգ ուղիներ ալ. այն է՝ Կեսարիոյ գիծը արեւմուտքէն, Կոմանայինը հիւսիս-արեւմուտքէն: Այս վերջնոյն վրայ բազմաթիւ մղոնաքարեր հաւաքուած են[60]: Վերջինը կը կրկնուէր այն ճամ-

---

[59] Այս խնդիրն ուղղակի ուսումնասիրած են Hogarth եւ Munro, Modern and ancient Roads in Eastern Asia Minor (ի Suppl. Papers of the R. Geogr. Soc. of London, III, 1893), զոր ընթերցողին ուշադրութեան յանձնելով կը բաւականանամ. հմմտ. նաեւ Ramsay, Historical Geography of Asia Minor, London, 1890:

[60] CIL III, 12162 մինչեւ 12211. այս տեղերը կը կարդանք Սեպտիմոս Սեւերոսի եւ անոր որդւոյն Հեղիոգաբաղոսի, Աղեքսանդր Սեւերոսի, Մաքսիմինոսի, Պուպիանոսի, Բալբինոսի եւ Գորդիանոսի, Փիլիպպոսի, Դեկոսի, Գաղղոսի ու Վաղերիանոսի անունները եւ վերջապէս Դիոկղետիանոսի քառապետութիւնը: Միւս ճամբաներու համար տես՝ թիւ 14184[12] եւն: Սեբաստիոյ եւ Մելիտինեայ միջեւ ճամբուն վերջընթեր կայանը, զոր Ուղեցոյցները Ad praetorium (Պրետորեանի մօտ) կը կոչեն եւ զոր կ'երեւայ թէ՝ հեռաւորութեանց նայելով, դնելու ենք արդի Հէքիմ-խան տեղը (*) կրնար համաձայնիլ այն դիրքին հետ, զոր Պտղոմէոս (Ե, 6, 21) կ'ընծայէ Զոպարիսոս տեղւոյ: Միւլլէր (անդ, էջ 886) կ'ենթադրէ թէ այս տեղն էր «Թեւ Ա Պրետորական նորոգ (այսպէս) հաստատեալ (Ala prima praetoria nuper constituta, Not. XXXVIII 20: Միւլլէր կը կարծէ թէ այս տեղիքին մէջ nuper աղաւաղութիւն մ'ըլլայ Zopar անուան, որ ինքնին համառօտութիւն մըն էր Zoparissosի:

*քով որ կ'երթար դէպի* Արաքիսոս (*արդի* Եաքքուզ) *եւ անկէ դէպի Կիլիկիա*[61]։

## Գ Լ Ո Ւ Խ Է․

## Մեծ Հայոց աշխարհի հռոմէական բերդերը

*Մեծ Հայաստանի մէջ Հռոմայեցւոց գործն ափյափոյութեան նկարագիր մ'ունի․ այն տեղ յաճախ որոշ կշռուած ծրագրի մը համաձայն չգործեցին։ Հոս կ'ուզենք հայկական այն շատ քաղաքներուն մէջէն, զորոնք մեր աղբիւրները մեզի կը ծանօթացնեն, նշանակել գլխաւորաբար զանոնք միայն, որոնցմէ օգուտ մը քաղած են իրենք Հռոմայեցիք։ Բայց անկէ աւելի դժուարին բան չկայ․ մեծ դժուարութիւն ունինք նոյն իսկ քարտէսի մը վրայ նշանակելու նոյն իսկ մերձաւորապէս սահմանագլուխը, զոր կ'որոշէր խաղաղութեան իւրաքանչիւր դաշինք։* Անդրտիգրիսեան *այս հինգ նահանգներն անորոշութեան մէջ կը մնան։ Հայաստանի բաժանման առեն Թէոդոսի՝ վերապահուած երկրի բաժինը չորս անգամ աւելի նուազ էր քան*

---

[61] *Ուղեգր․ Անտ․* 210, 11, 215, 2․ *Պեւտինգ․ Ժ․* 4, —*ԺԱ*, 2։ *Մելիտինէէ յառաջ վերջին կայանն էր* Արկաս, *Պտղոմեայ քով* Մարկալա (*Ե*, 6, 21)․ *իսկ Հիերոկղէս, Ուղեկց․* 703՝ Արկա։ *Եպիսկոպոսական Ցանկերու մէջ ὁ Ἄρκης․ այսօր* Arga։ *Ասոր հետ համեմատելու է՝* «Արգոս, բարձրագոյն ամրութիւն առաջի Տաւրոսի» *Սոփերք․ ԺԲ*, 2, 5, *էջ* 537 c։ *Այս գիրքն իր առաւելութիւնն կորսնցուց, երբ քիչ մ'ետքը Մելիտինէ բարձրացաւ ու մեծցաւ։*

թէ պարսից արքայի ինկած բաժինը. վասն զի Արշակ աւելի նուազ մաս ընդունած էր քան թէ Տիգրան[1], սակայն այս սահմանագծումը չի ճշգրտուիր: Ընդհանուր կերպով մը՝ կ'երեւայ թէ սահմանագիծը կ'ընթանար Ամդայ եւ «միւս Թէոդուսիուպոլսոյ»՝ այս ինքն արդի Տիգրանակերտի եւ Կարնոյ միջեւ (καὶ τὴν Θεοδοσιούπολιν τὴν ἑτέραν): Նաեւ 591ին Մաւրիկի եւ Խոսրով Բ միջեւ խաղաղութեան դաշինքով նշանակուած սահմանագլուխը նոյնպէս բոլորովին ճշգրիտ ծանօթ չէ[2]:

Հռոմայեցւոց առաջին պատերազմները յաճախ քաղաքներու լիակատար կործանումի պատճառ կ'ըլլային: Ղուկուլլոս ոչնչացուց Տիգրանակերտը՝ որ կիսով չափ արդէն աւերուած էր[3]: Կեսարի նուիրակները հիմնայատակ ըրին Արտագերսի (Artagira)[4] պարիսպները, վասն զի հռոմէական իշխանութենէն ազատանալ կ'ուզէր[5]: Վերջապէս Կորբուղոն հրոյ ճարակ տուաւ Արտաշատ մայրաքաղաքը[6], որովհետեւ հարկ պիտի ըլլար

---

1 Պրոկոպ., Շին. Գ. 1, էջ 245—246, որ վրի-պակներ կը ծանուցանէ:

2 Տես վերը՝ Մասն Ա, Գլ. Ա, յօդ. 2:

3 Ստրաբ. ԺԱ, 14, 15, էջ 532 C:

4 Որուն դիրքն ապահովապէս որոշ չէ. Հմմտ. Baumgartner առ Պաուլի–Վ. նոյն անունը:

5 Ստրաբ. ԺԱ, 14, 6, էջ 528 c:

6 Տակիտ., Տար. ԺԳ, 41, յաւել Ստրաբ. անդ. Հմմտ. Dubois de Montpéreux, Voyage aut. du Caucase, III. p. 404, Ալիշան Ա տխ. ԺԹ, 3:

հոն շատ բազմաձեռն պահակազօրք մը պահել։ Այսպէս այս առաջին ժամանակները պայծառ երեւան չի գար վերջնական կերպով այն տեղ հաստատուելու գաղափարը, որովհետեւ երկրին միջոցները չեն յանձնաձուէր ու խնամուէր. կամ գոնէ շատ մեծածախս երկրապահութիւն մը չի դիտուէր[7]. բնական բան մըն էր որ Ներոնի պատերազմին ընթացքին Հռոմայեցիները կը գտնենք բերդի մը մէջ ի Զիատա (Ziata) արդի Խարբերդի մօտ[8], այսինքն Արշամաշատի մօտերը, որ հայկական ուրիշ մայրաքաղաք մըն էր[9], եւ հռոմէական պահակազօրք մը՝ որ կը բնակի ի Գառնի (գրուած Gorneae)՝ Արտաշատի մօտ[10]։ Աւելի պիտի զարմանանք երբ նոյն իսկ ԺԲ Ապողինարեան Լեգէոնի մէկ դրօշակութիւնը (uexillatio) գտնենք Նոր–

---

[7] Կորբուլոն իւր արշաւանքին սկզբնաւորութենէն արդէն սկսած էր ամրութիւններ բարձրացնել Հայաստանի մէջ բայց ստիպուեցաւ փլուցանել զանոնք՝ Վաղարշի հրամայողական ազդարարութեան վրայ. (Տակիտ., Տար. ԺԵ, 17)։

[8] CIL, III, 6741—2։

[9] Հմմտ. B. W. Henderson, Rhandeia and the river Arsanias. (ի Journ. of Philology, XXVIII, 1901, p. 271։

[10] Տակիտ. Տար. ԺԲ, 45, 3։ Միւլլէր, (անդ, էջ 943) կը կարծէ թէ այս Gorneae (= Garneae) անունը կը գտնուի արդի Գառնի–Ջալ անուան մէջ, որ փոքրիկ վտակ մըն է Դուինի՝ բիւզանդեանց Δούβιος ի՝ մօտը. Արտաշատի հիւսիս–արեւելքը, Թէոդոսիուպոլսէն 8 օրուան ճամբայ հեռու (Պրոկոպ. ՊՊ. Բ, 25, 1 եւն. յաւել՝ Բ, 30, 33)։ Հմմտ. Baumgartner, Dubios (առ Պաուլի–Վ.)։

Քաղաքի *մէջ* (Caenopolis, *Վաղարշապատ*)՝ *արդի Էջմիածնի մօտերը*[11]:

*Այն ժամանակ կործանուած քաղաքներէն Արտաշատը պատմութեան մէջ չերեւար այլ եւս. Արտաշատ վերաշինուեցաւ Տրդատէ. Տիգրանակերտ աւելի մեծ խնդիր մը կը յարուցանէ, որու մասին յաճախ վիճուած է, այն է թէ ո՞ւր էր այս հռչակաւոր քաղաքը: Թէպէտ եւ կանուխէն անհետ կ'ըլլայ, օգտակար պիտի ըլլար անոր տեղը ճշդել: Աւաղ կարելի պիտի ըլլար ուրիշ շատ մը տեղեր ալ նոյնացնել, վասն զի հեղինակներն անոնց տեղերը Տիգրանակերտէ ունեցած հեռաւորութեամբ կը նշանակեն:*

*Սախաու*[12] *կ'առաջարկէ* Տէլ–Էրմէնը, Մարդինի *հարաւ–արեւմտեան կողմը*[13]*. բայց պէտք է հրաժարիլ զայս Տիգրիսի հարաւակողմը փնտռելէ: Նորագոյն հետազօտութիւնները*[14] *կ'առաջնորդեն այն նոյնացման, որ Մոլտկէի պարտական ենք. այսինքն՝ Նփրկերտի հետ* (Maiafarkin) *նոյն համա-*

---

[11] CIL, III, 6052:

[12] *Սախաու, անդ, էջ* 401 *եւն. հմմտ.* Abh. d. Berliner Akad., 8 *Նոյ.* 1880. *յաւել՝* Th. Mommsen, Gesammelte Schriften, IV (= Histor. Schr., I.) Berlin 1906, p. 323—333:

[13] Այսպէս՝ B. W. Henderson, The Site of Tigranocerte, (*ի* Journ. of Philology, *անդ, էջ* 99 *յլ.*:

[14] C. F. Lehmann, Von der deutschen armenischen Expedition (WZKM, XIV, 1900, *էջ յլ.*) *Գարփայներու վերնամասը իսլամական ստորին ժամանակաշրջանէն է*:

ըեղու, Ֆարկին–Սուի վրայ, որ Տիգրիսի փոքրիկ մէկ օժանդակն է եւ որ շատ լաւ կրնայ համապատասխանել Տակիտոսի[15] Նիկե–փորիոսի (Nicephorius) եւ որ շատ մերձա–ւոր է Բաղման–Չայի: Այս վերջինս կը ներկայացնէ Պրոկոպիոսի[16] Նիմփիոս գետը, որ սահմանագիծը կը ցուցնէր: Միւլլէր[17] Տիգրանակերտի մնացորդները կ'ուզէր տեսնել Արզնի[18] աւերակաց մէջ, որ Նփրկերտէն քիչ մ'աւելի արեւելք է, ուր կը դնէր Ռիտ–տէրի հետ[19] Մարտիրոսաց քաղաքը (Մար–տիրոսուպոլիս): Փաւստոս Բիւզանդ[20] կ'ըսէ թէ Եպիփան «եկեղեցի մը հիմնեց ի պատիւ մարտիրոսաց Տիգրանակերտ քաղաքին մէջ»[21]: Անոր մտքի մէջ մէկ տեղւոյ անունը

---

15 Տակիտ. Տար. ԺԵ, 4:

16 Պրոկոպ., Շին. Գ, 2, էջ 248:

17 Միւլլէր, Ծն. Պատ. էջ 949 եւն:

18 Կրնայինք մտածել քարտէսի վրայ այս տեղ դրոշմել Պարսից Acbas (Թէոփիլ. Սիմոկ. Ա, 12, 1 եւն) կամ Ocbas (Յուագր. Զ, 15) բերդը: Երկու հեղինակներս կը միաբանին երբ կը պատմեն թէ բերդը նստած էր քարաժայռի մը կատարին վրայ, որ պատուած էր անդունդներով եւ միւս կողմէն՝ գետով (այսինքն Նիմփիոս): Դարձեալ Արզնի աւերակները դէպի արեւմուտք կանգնած են, որ շատ լաւ կը յարմարի բերդի մը, որ Արեւմուտքի Թշնամւոյ դէմ ուղղուած էր:

19 Ռիտտէր, Աշխ. ԺԱ, էջ 67—80:

20 Fragm. hist. V, p. 292. (Հայ բնագիրը՝ Բուզ. Ե, ԻԵ, տես ստոր. ծան. 22:

21 Ակնարկուած են պարսկական հալածանք–ներու ատեն վկայած մարտիրոսները. Մարտիրոսուպո–լիս այնչափ մօտ էր սահմանագլուխներուն, որ կրա–կապաշտներն իրենց հալածանաց ձեռնարկները կրը–նային մինչեւ հոն հասցնել:

պարզապէս միւսին փոխանակած էր[22]։ Միւլլէր դայն անճիշդ կը հաշակէ. բայց ինքն ալ տեսած է անձամբ թէ Պրոկոպիոս անհրաժեշտաբար ասոր չէր հակասեր[23]։

Եթէ Մարտիրոսաց-քաղաքն ու Նփըրկերտը (Maiafarkin) նոյնացնելը սխալ մըն է, կը հետեւցնէ Թիւտէր, այս սխալը շատ հին է, նոյն իսկ Ժ դարուն յոյն եւ արաբացի հեղինակներէն է։ Բայց շատ անհաւանական է սխալ մ՚ըլլալը։ Լէման Մայաֆարգէնի հիւսիսային դրան վրայէն օրինակած է յունարէն ծայրատեալ արձանագրութիւն մը, ուր կը յիշատակուի պատերազմ մը, որուն

---

22 [Մեր կարծիքով Բուզանդայ խօսքէն անհրաժեշտ չէ որեւէ այնպիսի կամ նման եզրակացութիւններ հանել, ինչպէս նախորդ ծանօթութեան ակնարկածը։ Հայ բնագիրն պարզապէս է՝ Բուզ. Ե, ԻԷ, էջ 221՝ Եպիփան «չինէր վկայանոց մի յաւանին ի քաղաքին Տիգրանակերտի»։ Խօսքը պարզապէս Տիգրանակերտի՛ մէկ աւանին մասին վրայ է. որմէ որեւէ հիմ չունինք թէ Բուզանդ անով ակնարկած ըլլայ ճիշդ Մարտիրոսաց-քաղաքն՝ Տիգրանակերտի հետ նոյն։ Բուզանդ յաճախ կը յիշէ «Վկայանոցներ» Հայաստանի շատ տեղեր։ Այսպէս ըմբռնելու առիթ դիւրաւ կու տայ Բուզանդայ գաղիերէն թարգմանութիւնը՝ յիշեալ խօսքը փոխադրելով pour les fondaments d'une église en l'honneur des martyrs dans la ville de Tigranocerte։ Տեղւոյս չէ այս խնդրով աւելի զբաղիլ։ Ծան. թարգմանչին։]

23 Պրոկոպ., ՊՊ. Ա, 8, 22՝ «այս գետը քաղաքին շատ մօտ էր»։ Շին., Գ, 2, էջ 248՝ «Նոյն Նիմփիոս գետի մօտը»։ Միւլլէր այս մասին կ՚ըսէ (էջ 949) թէ minus accurate (նուազ ճշգրիտ ըլլայ. բայց այսպէս չէ. այս խօսքին մէջ παρὰ պարզապէս մերձաւորութիւն կը ցուցնէ, եւ Պրոկոպիոս ուզած է դիտաւորաբար նշանակել թէ Մարտիրոպոլիս շատ մերձաւոր էր Թշնամւոյն։

դիմադրել սափրուեցան Հռոմայեցիք (Ῥωμαῖοι). Ճիշդ Մաւրիկիոսի առջեւ մղուեցան պատերազմները:

Միւս կողմէ զարմանալի պիտի ըլլար, եթէ յողուտ չգործածուէր տեղւոյն ընտրելագոյն դիրքը, որ շրջապատուած էր «ոչ խոտելի լայնութեամբ»[24] գետով մը բարձունքի մը վրայ դաշտավայրի մ'առջեւ[25]: Սակայն եւ այնպէս երկար ժամանակ անփոյթ գտնուած էին պայն ամրացնելու. պարիսպի թանձրութիւնը հազիւ միայն 4 ոտք էր, բարձրութիւնը 20՝ երբ Անաստասի օրով Կաւաս Մաւրիկիոսին հպատակութիւնն ընդունեցաւ[26]: Յուստինիանոս ուրիշ պարիսպ մը շինեց նոյն թանձրութեամբ հնոյն առջեւ, եւ միջանկեալ ամբողջ միջոցը լեցուց քարերով եւ կրով, — որով համագումար 12 ոտք թանձրութիւն եղաւ, — եւ յետոյ ամբողջին ի միասին բարձրացուց[27]:

Անգամ մ'որ հակառակ այս ամէն նախազգուշութիւններու[28] Մաւրիկիոսին ան-

---

24 Տակիտ. Տար. ԺԵ, 4:

25 Սարաք. ԺԱ, 12, 4, էջ 522 c:

26 Յետոյ պաշարման ուրիշ փորձ մ'ալ եղաւ (Պրոկոպ. ՊՊ, Ա. 21, 5, եւն) եւ քաղաքն ընկճուելու վրայ էր, երբ Պարսից արքայն մեռաւ:

27 Պրոկոպ. Շին., անդ, էջ 248—250:

28 Իրօք ալ յետագայ ժամանակ առնուեցաւ մատնութեամբ՝ երբ 588ին Փիլիպպիկոս ջանաց զայն վերստին նուաճել, բայց չյաջողեցաւ պաշարման մանգղիոններու պակասութեան պատճառով: Այն ատեն, կ'ըսէ Եւագր (Զ, 14) շրջապաշարում ընել

նուէր, կրնար հրապոյր մը ծագել այն գաղափարէն՝ փորձ մ'ընելու Կապպադովկիա իսկ միջամուխ ըլլալու խորշելով Ամիդէն։ Ետեւը կարճ օրուան ճամբայ մը միայն հեռու կը գտնուէր Փիսոն (Phison, այժմ Fiz) ամուր բերդը։ Ալ աւելի հեռուն՝ 8 մղոն անցնելէ ետքը՝ կը մտցուէր երկու անձկագոյն կիրճերու մէջ, որոնք սեպաբերձ ու անմատչելի լեռներու մէջ կը բացուէին, եւ կը կոչուէին Կապաններ (κλεισοῦραι Կղեսուրք[29])։ Անոնց մերձավայրերը բազմաթիւ զանկեշներով ամրացուած էին, բայց անբաւական էին պարեկապան զօրագունդերու համար. ուստի Յուստինիանոս ընդարձակեց ու աճեցուց։

Կապաններու կամ կղեսուրներու (clisurae) մուտքը բաց էր նաեւ Հաշտենից գաւառէն եկողին, որ Մարտիրոսաց քաղաքին հիւսիսակողմն էր։ Յուստինիանոս ատոր առջեւ խոչընդոտ արգելք մը կանգնեց շինելով բարձունքի մը վրայ Կթռիճի (Κιθαρίζων) «երկնաթռիչ ու անխմանալի անառիկ» բերդը[30], ուր չորս դարձուց առատահոս

---

սկսաւ, մերձակայ պահականոցները զօրացնելով եւ նոր քաղաք մը շինեցին 7 ստադ հեռու, որպէս զի Մարտիրոպոլիսն անհանգիստ ընեն անընդհատ ասպատակներով։ Սակայն Սկրասի առումով միայն վհատեցաւ Թշնամին։

29 Ուրիշ կապաններ կամ Կղեսուրներ կային Վանայ լճին հարաւակողմը, այն տեղ՝ ուսկից կ'անցնէր սահմանագիծը Մաւրիկի 591ի դաշինքէն ետքը. (Հմմտ. Գ. Կիպրացի 945)։

30 Թէոտէր, (անդ, էջ 78) զայս կը դնէ արդի

ջուր մը, համբարեց պարէններ, եւ հոն դրաւ Հայաստանի երկրորդ դուքսը՝ անոր հրամանին տակ հզօր պահակազօրքով մը[31]: Այս կարգադրութիւնն իր արդիւնքն ունեցաւ. Խօսրով այնուհետեւ այս կողմերէն իր յարձակումները չկրկնեց, բայց եթէ աւելի ուշ՝ Յուստինիանոսի մահէն ետքը եւ այն ատեն իսկ երկար ժամանակ չշարունակեց[32]:

Պրոկոպիոս Մարտիրոսաց–քաղաքի եւ Կթարիճի միջեւ ուրիշ բերդ մը չի նշանակեր: Ուստի անտարակոյս իրմէ ետքը շինուած է Ափումոն (Aphoumon) բերդը, զոր Գէորգ Կիպրացի[33] Աղձնեաց նահանգի (κλίμα Ἀρζανήνης) մէջ կը դնէ, եւ Թէոփիլակտոս Սիմոկատտա Ակբասի շրջակայքը[34]: Այս Նիմփիոսի շատ մօտ ըլլալու է, բայց աւելին ի՞նչ կրնանք ըսել: Բերդին շինութիւնը թերեւս Մաւրիկ կոմսի ժամանակէն է, որ յետոյ ինքնակալ եղաւ, եւ որ նոյն գաւառամասին մէջ բարձրացուց «Սամոկարտաց» (Σαμοκάρτων) բերդը[35], իսկ Քղիմար (Քլո–

---

Բալու քաղաքին անդը Եփրատի վրայ. բայց Բալու-քիչ մը շատ դէպի արեւմուտք է: Բալու իրականին էր Գէորգայ Կիպրացւոյ (955) Βαΐουλοῦος (= Βαλοῦος):

[31] Պրոկոպ., Շին., Գ. 3, էջ 250:

[32] Թէոփիլ. Սիմոկ. Գ, 13, 12:

[33] Գ. Կիպր. 938—939: Տես վերը՝ Մասն Գ. Գլ. Դ:

[34] Թէոփիլ Սիմ. Ա, 12, 1, 3, 4, 9. Գ, 15, 4:

[35] Գ. Կիպր. 944: Հմմտ. Գէլցէրի ծանօթութիւնք:

մարոն, Chlomaron) Նախապէս պարսից կը վերաբերէր[36]։

Պրոկոպիոս[37] կը բացատրէ թէ Կթուճէ մինչեւ Թէոդոսիուպոլիս սահմանագլուխը կ'անցնէր Խորձեան[38], զոր կը կարէին գրեթէ երեք օրուան ճամբայ ընելով հարաւէն դէպի հիւսիս[39]։ Բայց բան մը չէր ցուցներ հոս սահմանագլուխ մ'ըլլալը, երկու կողմի բնակիչք իրարու հետ իբր թշնամի չէին վարուիր փոխադարձաբար, ընդհակառակն ամուսնութեամբ իրարու կը միանային։ Ուստի այս կողմէն եղած ամէն յարձակում հակառակորդն անպատրաստ կը գտնէր. ամրութիւններ չկային հոս մինչեւ այն օրն, երբ Յուստինիանոս «Արտալէզ» գիւղը (Ἀρταλέσων) որ միջանկեալ դիրք մ'ունէր, հիմնեց բանակետղ մը շրջապատուած ամուր պարիսպներով, զօրագունդով մ'ալ, որուն կը հրամայէր դուքս մը։ Տեղս նոյնացնելու ամէն փորձ կամայական բան մը պիտի ըլլար։

Արդի Կարինն այն հակախիաւին զագաթը

---

[36] Թէոփիլ. Սիմ. Բ, 7, Գ. 8, 12։ Մենանդր Պշտ., 28, առ de Boor, Excerpt. leg. gent. p. 470 (= Migne 838 A)։ Միեւնոյնը կրնայ դարձեալ ըլլալ այն, զոր Գ. Կիպր. (941) կու տայ ապաւաղ ձեւովս Φλωριανῶν («Փղորիանոն»)։

[37] Պրոկոպ. Շին., անդ։

[38] Χορζιανηνή՝ Պրոկոպ. ՊՊ. Բ, 24, 14. Ὀρζιανινή Գ. Կիպրացւոյ քով 963։

[39] Ուրիշ տեղիքի մը (անդ, Բ, 24, 13) համեմատ Կթառիճ չորս օրուան ճամբայ հեռու էր Թէոդոսիոպոլսէ։

կը ցուցնէ, որ Երասխը Արածանիէն կը բաժնէ: Երբ Թէոդոս (իբր 387ին) ստացաւ Արշակի թագաւորութեան երկիրները, այս կէտին վրայ հաստատեց բերդաքաղաք մը, որ յետոյ Թէոդոսիուպոլիս եղաւ[40]: Կաւատ գրաւեց քաղաքս երբ Ամդայ վրայ կը քալէր (502ին): Յետոյ Անաստաս կրկին ձեռք բերաւ, ընդարձակեց ամբողջ բլուրը, ուր կը գտնուէր գիւղակը, ամուր պարիսպներով, որոնք սակայն շատ քիչ թանձրութիւն ունէին համեմատութեամբ իրենց ահագին (30 ոտք) բարձրութեան. ո՛չ նախապարիսպ կար եւ ո՛չ փոս, դրացի բլուր մ'ալ քաղաքին վրայ կ'իշխէր: Յուստինիանոս փոս մը փորել տուաւ, գետի մ'անկողնոյ չափ խորունկ. կտրեց լեռնակը եւ մեծ պոզ մը բանալ տուաւ, որով կ'արգիլուէր այն տեղ մօտենալը, եւ շրջապատութեան պարիսպները կերպարանափոխեց Դարայի ամրութեանց օրինակին համեմատ: Պահակազօրը զօրացուեցաւ եւ քաղաքը նիստ եղաւ նոր «Մակիստրիանոսի զօրաց ի Հայս» (magister militum per Armeniam[41]):

Ներքնակողմեան բերդաքաղաքներու մէջ կրնամ յիշել միայն «Արդոն» բերդը (Ἀρδών)[42], որ իւր անուան պատճառաւ՝ դիւրաւ

---

40 Մովսէս Խորենացի, Գ. ԾԷ. Համեմ. Lynch, Armenia, I, p. 221 յջ.: Քաղաքն իւր հին նկարագիրը բոլորովին մերկացած է:

41 Պրոկոպ., Շին. Գ, 15, էջ 255—256:

42 Գ. Կիպր. 957 (= Ἀρλών?) Արդն:

կը համապատասխանէ Արղնի, արդի Արղանա (Դիարպեքիրի եւ Խարբերդի մէջ տեղը) եւ Բիժան կամ Վիժան՝ (Bizana) զոր կ'առաջարկեն՝ առանց մեծ ստուգութեան՝ զետեղել իբր երկու օրուան ճամբայ հեռու Երզնկայէ դէպի արեւելք[43]: Յուստինիանոս անտես ըրաւ այս տեղը, որ դաշտավայրի մը մէջ կը գտնուէր, շատ ազատ ենթարկուած թշնամիներուն յարձակումներուն, նոյն իսկ հեծելազօրուն, իսկ բնակիչներու համար իր ժանտ օդով՝ վտանգաւոր: Ուրիշ տեղ մը, որ երեք մղոն հեռու էր (չենք գիտեր ի՛նչ ուղղութեամբ) բարձր եւ առողջ դիրքի վրայ՝ «Ծումանա» գիւղը (Τζουμενᾶ) շինեց քաղաք մը, որուն տուաւ իր անունը[44]:

Բայց ասով արդէն Վրաստանի կը մօտենանք, ուստի հոն միջամուխ ըլլանք լիովին:

## ԳԼՈՒԽ Ը.

### Պոնտոս Եւքսինոսի ծայրամասը եւ Կաւկասեան աշխարհները

Պրոկոպիոս շատ քիչ բացայայտ կը նշանակէ երեք ուղիները այն հանդիպման կէտը, որով կը բաժնուէին Հռոմայեցիք, Պարսկական բաժնի Հայք եւ Ծանարք: Այն

[43] Հմմտ. Tomaschek, ի Պաւլի–Վ. եւ Streck, անդ, Ցաւել.:
[44] Պրոկոպ., Շին., անդ, է 256:

տեղ Յուստինիանոս բերդաքաղաք մը շինեց՝ Որոնաց բերդ (᾽Ορονῶν[1]) ուր դուքս մ'ալ կը նստէր: Այս տեղէն երկու օրուան ճամբայ հեռու, Ակենացւոց սահմաններուն վրայ, որոնք Ծան ազգին մէկ ճիւղն էին, նորոգեց Քարտաց բերդը՝ (Charton) որ երկար ժամանակ մոռացութեան մատնուած էր, եւ կրկնապատիկ ըրաւ զայն Բարքաց բերդով (Barchos): Յետոյ, կը շարունակէ Պրոկոպիոս, դաշտին մէջ կը գտնուի «Կենա» դղեակը, եւ արեւմտեան կողմը՝ Սիսիլիսեանց բերդը, (Σισιλισσῶν) որ յառաջ լքուած էր[2] եւ զոր Ինքնակալը վերայարդարեց: Անկէ անդին ձախ կողմը՝ դէպի հիւսիս՝ կայ ուրիշ տեղ մ'ալ, զոր տեղացիք «Լոնգինոսի-փոս» (φοσσᾶτον Λογγίνου) կը կոչեն, որովհետեւ հռոմայեցի Լոնգինոս զօրավարը՝ երբ Ծանարայ դէմ կը պատերազմէր, այն տեղ բանակ դրաւ. այս մէկ օրուան ճամբայ հեռու է Սիսի-

[1] Աշխարհագրական անուններու այն մասին յունական ձեւերը կը պահենք, որոնց մասին չենք գիտեր թէ հեղինակներու քով ուղղական հոլովի ձեւո՞վ կը ներկայանան թէ ուրիշ հոլովաձեւերով: [Քանի որ մեր համոզումն այն է թէ կաւկասեան լեռուներու համեմատ չէ ստուգիւ այն, այս է վերջաւորութիւնները, մենք զայն յունական համարելով՝ միշտ միայն արմատականը կ'առնունք: Դժբախտաբար քանի որ յաճախ բնիկ ձեւերն անծանօթ կը մնան՝ ստիպուած ենք, գրեթէ միշտ, յունական պլպլած անուանաձեւերը պահել: Ծան. թարգմ.:]

[2] Բայց ո՛չ տակաւին Ե դարու սկիզբը. հմմտ. Not. XXXVIII, 30՝ «Վաշտ հազարաւոր Գերմանացւոց ի Սիսիլիա»:

լիսեանց-բերդէն։ Յուստինիանոս այս տեղ չինել տուաւ «Նոր-բուրգ» (Βούργους νόης)[3] կոչուած բերդը։ Շատ մօտ անոնց Կոկիւղինեան Ծանարաց սահմաններու վրայ՝ չինեց երկու հատ ալ, Սկիմալինիքայ-բերդը (Σχιμαλινίχων) եւ Ծաւկակայ-բերդը (Τζαυκάκων) նեղուցին վրայ հրամանատարութիւն մ'ալ հաստատելով[5]։ Այս թուարկութեանց մէջ Յուստինիանու ներբողագիրը կ'երեւայ թէ քիչ մը մանուածապատ ճամբով կ'ընթանայ․ սակայն եւ այնպէս բաւական կանոնաւոր կերպով կը խաղայ դէպի արեւմուտք ուղղութեամբ։ Նոր - բուրգը (Burgus nouus) կ'երեւայ թէ Տրապիզոնի յետսակողմը դնելու ենք։ Բերդերու այս շարքը[6]

---

[3] Այս Βούργους νόης անյայտ տառադարձութիւն մըն է, թէեւ բացորոշ լատինականն Burgus nouus, որուն հետ կրնանք համեմատել անոր հակադարձ ձեւը, — լատինացեալ յունարէնով, — «Տեղեկ.» գրոց մէջ (XXXVIII, 35)՝ «Վաշտ Ա Լեգիոնս ի Կինէ — Պարեմբոլէ (καινή = նոր բանակ)։ Միւլլեր (էջ 923) երկբայութեամբ կ'առաջարկէ այս վերջինս նոյն համարել Պտղոմեայ (Ե, 9, 2) Նոր-Քաղաքի կամ Նէապոլսոյ հետ (Νεάπολις), որ Կողքիսի ծովափի վրան էր, Փասիսի հիւսիսակողմը։ Ես կը նախընտրեմ միւս կարծիքը, որովհետեւ համեմատութիւնն աւելի ստոյգ է։

[4] Հմմտ. Պրոկոպ. Շին. էջ 258 Σχαμαλινίχων։

[5] Պրոկոպ. Շին. Գ. 6, էջ 259—260։

[6] Մէկդի կը թողում, բնական է, պարսկական բաժնի Հայաստանի բերդերն, որոնց վայրկենապէս տիրացան Բիւզանդացիք պատերազմի մ'ընթացքին. այսպէս՝ Բոլոն (Bolon) եւ Փարանգ (Pharangion, Պրոկոպ. ՊՊ. Ա. 15, 18, 29, 32) բերդերը. ասոնք ճիշդ Ծանարաց սահմանագլխոյ վրան էին, Ծանարք զանոնք թշնամոյն ձեռքը տուին։

կերպով մը կրկին նպատակ ունէր. նախ՝ արգելք կ'ըլլար Թշնամւոյն յառաջխաղացութեան թէ՛ երբ արեւելքէն կու գար՝ ցամաքի վրայէն, եւ թէ՛ արեւմուտքէն ծովեզերեայ դիրքերը գրաւելէ ետքը:

Վերջինքս առանձին ուսումնասիրել պէտք է: Ասոնք իրենց յետսակողմեան աշխարհին համար միայն կարեւոր չէին, որովհետեւ անհրաժեշտաբար ընդհանուր դեր մ'ունեցան այն ատենէն ի վեր, երբ Հռոմայեցիք սկսան Պոնտոս Եւքսինոսի խորքը վաճառականական հրապարակներ փնտռել, եւ յետոյ Բիւզանդացիք սկսան զինուորական դիրքեր գրաւել Լազիկէի մէջ: Այս ճշմարիտ է մասնաւորապէս Տրապիզոնի համար, ուստի Կապպադովկեան Պոնտոսի մեր ուսումնասիրութիւնն այս քաղաքէն անդին դէպի արեւմուտք պիտի չերկարաձգենք: Այս քաղաքէն մեկնեցաւ նաեւ՝ եթէ ոչ Արիանոս «Շրջանառութիւնը Սեւա-Ծովու», գոնէ իր անձնական ուղեւորական շրջագայութիւնը[7]:

Տրապիզոն իր հնութեան երեւոյթէն բան մը պահած չէ[8], նոյնը կրնանք վերակազմել միայն մասամբ եւ անորոշաբար ա-

---

[7] Այն վաւերականութեան մասին, որուն արժանի է Արիանոս, տես C. Patschի պատասխանը՝ Brandisի քննութիւններու դէմ (ի Beiträge zur alt. Gesch. IV, 1904, p. 68—75):

[8] Տես այն յատակագիծը, զոր ժամանակին հանած էին Texier եւ Pullan, անդ, Տախ. 49:

նո՛վ միայն կար գիտենք Ադրիանոսի այն տեղ պեղել տուած նաւահանգստին եւ նոյն տեղը հաստատուած զօրագունդերու մասին[9]։ Ինչպէս կրնանք գիտնալ ընդունիլ՝ երկար ժամանակ ուրիշ պահակազոր չունէր՝ բացի նաւակներէ, որ անոր մօտ կը բնակէին երկու յածափայլերու մէջտեղը. «Տեղեկ.» գրոց[10] նշանակած Ա Պոնտական լեգէոնը Թերեւս հոն էր Դ դարէն առաջ[11]. բայց նախ որեւէ փաստ մը չկայ ատոր համար, եւ այդ մասին խորհելէ կրնայ ետ կեցնել այն պարագան, որ Տրապիզոն գտնուած են արձանագրութիւններ[12], որոնք կը յիշատակեն Սատաղի եւ Մելիտինեայ լեգէոնները. ասոնք՝ անտարակոյս մասնական ջոկատներ հոն կը ղրկէին։ Վերջին ծանօթ բարեկարգութեան եղաւ ջրմուղը՝ զոր Յուստինիանոս հրամայեց շինել՝ քաղաքը ջուր բերելու համար եւ բնակչութեան նաւաղումի առջեւն առնելու համար[13]։

Ծովափին տեղերու անուանացանկը, որ Առիանու քով բաւական համառօտ է, վասն զի անոր ժամանակ պարեկայան գրուած կէտերը շատ սակաւաթիւ էին, կը լրացուի շահաւէտ կերպով Պտղոմեայ[14] եւ

---

9 Առիանոս, Շրջան. ԺԶ, 5. Patsch. անդ, էջ 71—73։

10 Not. Or. XXXVIII, 16։

11 Հմմտ. CIL, III. 306, 6743։

12 Անդ, 6745, 6747։

13 Պրոկոպ. Շին. Գ. 7, էջ 260։

14 Պտղոմ. Ե, 6, 6։

Պեւտինգերեան Տախտակին[15] օգնութեամբ, — թէեւ մանր սխալներ գտնուին:

Տրապիզոնէն ետքը առաջին հանդիպող կայանն էր Հիւսոս-նաւահանգիստը (Ὕσσου λιμήν) ուր Ադրիանոսի օրով կը բնակէր հետեւակաց գունդ մը եւ քանի չափ հեծեալներ, «որ անհրաժեշտ է զինուորական պաշտպանութեան համար» կը յաւելու Արիանոս[16] առանց աւելի բացատրելու: Ստորին — կայսրութեան ատեն այս պահակազօրը զօրացուեցաւ[17]: Յետոյ կու գար Օփիոս (Ophis, արդի Օֆի կամ Օֆ) զոր կը ճանչնանք ուրիշ քիչ մը տարբեր ձեւերու տակ[18]: Յետոյ Ռիզայի նաւահանգիստը (Ռիզա) կամ Երիզացիք (Ռիզացիք, Rizari[19]) Ռիզոս — այժմ Ռիզէ — գետին բերանը: Յետոյ դարձեալ — մէկդի թողլով այն կէտերը՝ որոնք ռազմագիտական կարեւորութիւն ունեցած չեն երեւար, — Աթենաց-բերդը (Ἀθηνῶν ἄκρον) որ խարսխելու լաւ պատսպարուած տեղ մըն էր, «որ ամառը կրնար քանի մը նաւ առնուլ» եւ որ

---

15 Պեւտինգ. Ժ, 2—3:

16 Արիանոս, Շրջան. Գ. 1:

17 Not. Or. XXXVIII, 34. «Վաշտ ճագաճացեաց Հռոմայեցւոց ի Հիւսի նաւահանգստի (Yssiporto):

18 Պեւտինգերեանի քով՝ Opiunte. Հաւ. Աշխ. մէջ՝ Offeunte եւ Officiunte. Հաւ. 101, 12; 366, 12:

19 Ռիզէ ամրացուեցաւ Յուստինիանոսէ (Պրոկոպ. Շին. Գ. 7, էջ 260:

Առիանու ատեն[20] տակաւին լքուած դղեակ» մ'ունէր, որ անշուշտ յունական գաղթականութեանց անկախութեան ժամանակէն էր։ Անկէ ետքը Արքաբիս, աւան եւ ծովախորշ։ եւ մանաւանդ Ապսարոս[21], որ այժմ Գոնիէ (Gonié) եղած է եւ որուն մօտ ծով կը թափուի Վոհ գետը (Bóas) կամ Ակամբսիս (Ἄκαμψις) արդի Ճորոխը։ Առիանոս այս տեղ այցելեց ու քննեց հինգ վաշտեր, բայց անտարակոյս այս ըստ դիպաց պատահական գունդ մըն էր, որ բացառաբար այնչափ բազմաձեռն էր, «Տեղեկ.» գիրքն այս տեղւոյ համար պահակագունդ մը չի նշանակէր[22], թերեւս անոր համար որ տեղւոյն անունն աղաւաղուած է եւ կա՛մ որովհետեւ Հայաստանի դքսութիւնն անկէ քիչ առաջ կը դադրէր, եւ Ապսարոսով հասած կ'ըլլանք Կողքիսի ծովեզերքը։ Իսկ ծովափնեայ գետերու շարքը կը շարունակուէր այսպէս՝ Խսիս, Նիգեր, Փասիս, Քարիս (Charieis), Քոբոս, Սինգամէս, Կիանէս. իւրաքանչիւրն ընդհանրապէս աւազակոյտէ կազմուած փոքրիկ նաւահանգրուանով։ Այս ամէնուն մէջ առանձին կերպով մեր ուշադրութիւնը կը դարձնենք Փասիսի գետաբերանին, եւ վերջապէս Դիոսկուրիադի, «որ բանակավայ-

---

[20] Առիան. Շրջան. Դ. 1—2։

[21] Առիան. Շրջան. Զ. 1—2։

[22] Տես միայն Ժիմկըր. Զատկ. Ա, էջ 61, Բ, էջ 435, «Աբսարոս բանակավայրը»։

րով կ՚ուարտէր Հռոմայեցւոց տիրապետութիւնը[23]»:

Առաջնոյն մասին կ՚արժէ կարդալ Արիանու մեկնաբանութիւնը, միշտ աչքի առջեւ ունենալով Դիւբուայի փոքրիկ ստուերագիծը[24]: Փասիս մտնելու ատեն «բերդն, ուր կայանաւորուած էին 400 այրընտիր զինուորներ, ինծի լաւ պատնիշուած երեւցաւ եւ բարեյաջող դիրքով՝ նաւարկութիւնը պաշտպանելու համար: Երկու լայն փոսեր կը շրջապատէին պարիսպը. վերջինը նախապէս հողաշէն էր եւ անոր վրայ բարձրացող աշտարակները՝ փայտակերտ. այժմ ամենայն ինչ թրծուն աղիւսով է եւ հաստատուն հիմերու վրայ յեցած: Մեքենաներ կանգուեցան պատուարներու վրայ. համառօտի ըսելով՝ ամէն բան հոգացուած է: Բայց նաւահանգիստն եւ հնօրեայ զինուորաց ու վաճառականաց

---

[23] Արիան. անդ, ԺԷ, 2: Սակայն նոյն ինքն Արիանոս (ԺԸ, 1) ինչպէս նաեւ Ստրաբոն (ԺԱ, 2, 14, էջ 496 c) Դիոսկուրիասի հիւսիսակողմը կը դնէ Պիտիուս (Pityus): Այս տեղը «Տեղեկ.» գրոց Պիթի (Pithiae) անուանածն է, զոր կը պաշտպանէին «թեւ Ա Փելիքս» (երջանիկ) Թէոդոսեան (Ala prima Felix Theodosiana, անդ, XXXVIII, 32). զոր հոն կայանաւորած էր հաւանօրէն Թէոդոս Մեծ, կակասեան կիրճին պատճառած դժուարութեանց առեն: Զորս զօրագունդեր կային «Թէոդոսեան» անունով Կապպադովկիոյ մէջ. (Not. XXXVIII, 18, 19, 32, 33. տես քիչ մը յետոյ):

[24] Dubois de Montpéreux, Voyage autour du Caucase. Ատլաս Ա, տախտ. ԺԸ, 2 եւ 3. Հմմտ. Հատ. Բ, էջ 66 եւն:

վզեակէն դուրս բնակութիւնն աւելի ապահով ընելու համար, հարկ համարուեցաւ՝ շրջապատի կրկնապատիկ փոսէն սկսեալ՝ պեղել երրորդ փոս մ՚ալ, որ մինչեւ գետը կը տարածուի եւ կը պատսպարէ ծովախորշը, ինչպէս նաեւ պարիսպէն դուրս գտնուող բոլոր տուները[25]»: Երկար ժամանակէ ի վեր փոսերն անորոշելի են, այն ջրատական սկակազմութեանց պատճառաւ, որոնք Փասիս քաղաքէն (արդի Փօթի) բան մը կանգուն թողուցած չեն[26]: Բայց Դիւբուա տեսած է աղիւսակերտ դղեակը, որուն աղիւսներն իրարու զօդուած էին կարմրկեկ շաղախով մը: Չորեքկուսի մըն է 140 քայլ կողք երկայնութեամբ, ծովուն կողմէ միջակաց մուտքով մը, եւ իւրաքանչիւր անկիւն՝ քառակուսի աշտարակ մը, որուն մէկ մի երեսը 40 քայլ է: Հարաւակողմն է այն լիճն, որուն վրայ կը խօսին հին հեղինակները:

Իսկ Դիոսկիւրիասի մասին, որ Սեբաստապոլիս կը կոչուէր, կը պատմէ Առիանոս թէ այցելած է անոր հեծելազունդ պահակազօրաց, քննած է պարէնաւորմունքը, շրջագայած է պարիսպներն ու փոսերը[27]:

---

25 Առիան. Շրջան. Թ. 3—5:

26 Այսու հանդերձ Ագաթիաս (Գ. 9, 2) կը հաստատէ թէ փայտաշէն էր, բայց շրջապատուած լայն փոսով, ուր կրնար դարձուիլ մօտակայ եղող լճի մը ջուրը:

27 Առիան. Շրջան. Ժ, 3:

Այսօր չենք գտներ արդէ Իսկուրիասի մէջ այն պարիսպներէն, զոր աչքի առջեւ ունէր անտարակոյս, որեւէ բան մը մնացած, բայց ուղեւորները նշմարած են հետքեր պարիսպի մը, որ տեղ տեղ աշտարակներով ամրացուած էր, եւ բաւական ալ ընդարձակ. որոնցմով իրենք զիրենք շրջապատած էին կանխագոյն յոյն գաղթականները, պատսպարուելու համար իրենց պատերազմասէր դրացիներէն՝ Կորաքսներէն ( Κόραξοι [28]): Ի՞նչ եղաւ պահակազօրը Բ դարն անցնելէ ետքը: «Տեղեկ.» գիրքը[29] կը յիշատակէ անշուշտ «Վաշտ Ա. Կղաւդեան հեծեալ ի Սեբաստոպոլիս». սակայն այս վերջին քաղաքս չ'երեւար թէ ըլլայ Դիոսկորիասը, այլ այն նոյն ըլլալու է Պտղոմեայ այն Միւս-Սեբաստապոլիս քաղաքին հետ, որ ծովափէն քիչ մը հեռուն էր Գաղատիոյ Պոնտոսի մէջ[30]:

Կաւկասի երկրին խորքերը քանի մ'անգամ յառաջացած են Հռոմայեցիք: Պոմպէոս՝ Ասիոյ իր շանթահարիչ պատերազմի ատեն հասաւ մինչեւ Աղուանից աշխարհը: Կասպից ծովու մօտերը, հարաւածեց բնակիչները Արասի (արդի Սամուր) ափերու վրայ. բայց անոր դէպի Վրկանաց աշխարհը սկսած արշաւանքը խափանուե-

---

28 Dubois de Montpéreux, I, p. 306 յջ.:
29 Not. XXXVIII, 36:
30 Պտղոմ. Ե. 6, 8:

ցաւ, ինչպէս կ'ըսուէր՝ Թունաւոր օձերէն[31]։ Հին Զուղայի քով՝ Երասխայ վրայ, Ուրմիոյ լճին հիւսիսակողմը, կանգուն կեցած է տակաւին կամուրջ մը, որուն շինութիւնը ժողովրդական աւանդութիւնն Աւգոստոսի կ'ընծայէ[32]։ Պոմպէոս դարձած էր դարձեալ Վրաստանի մէջ, դէպի Սաւսամարս եւ Հարմոզիկա[33]։ Վերջին քաղաքիս մէջ[34] հաւանօրէն հռոմէական պահակազօր մը կար Վեսպասիանոսի ատեն 75ին[35], Տփղիսի մօտ էր, այսինքն Դարիալի կիրճէն քիչ մը հեռու[36], այս կիրճն ստիպած պիտի ըլլայ զօրութեան այնչափ հեռաւոր ծաւալում մ'ընել։

---

31 Պղուտ. Պոմպ. 35, 36։ Դիոն Կաս. ԼԸ, 3. Հմմտ. Լուկան. Փարս. Ը, 133։

32 Հմմտ. Մեյլեր–Միմոնիս եւ Հիվերնիա, անդ, էջ 84։ — Այսպէս կը մեկնուին պոետաց դրուատեաց մէջ եղած քանի մ'ակնարկութիւնները՝ Incedunt uictae longo ordine gentes... Indomitique Dahae et pontem indignatus Araxes («Մտանին երկայն շարքով պարտուած ազգերը... Անձուած Դահք եւ կամրջակոտոր Երասխ». Վիրգիլիոս, Ենէական, Ը, 722, 729)։ — Potabis galea fessus Araxis aquam («Խոնջ պիտի խմես կաշեայ սաղաւարտովդ Երասխի ջուրը». Պրոպերտ., Գ, 12, 8)։

33 Ստրաբոն, ԺԱ, 3, 5, էջ 501 c՝ «Այս արշաւանքները կատարեց նախ Պոմպէոս՝ Հայաստանէն յարձակելով, եւ անկէ ետքը Կանիդիոս»։

34 Harmastus կոչուած առ Պլին. Բն. Պատմ. Զ, 29 եւ ʽΑρμάκτικα Պտղոմեայ քով, Ե. 10, 2։

35 CIL, III. ծն. թիւ 6052. Ինքնակալն ու իւր որդին «ամրացուցին պարիսպները», եւ անտարակոյս հոն դրին զօրագունդ մը։

36 Երոսէ կը մեկնէ Dariel անունը յորջորջանքէս՝ Dar-i-Alan, «Դուռն Ալանաց»։

*Այս երկրի մասին Պլինիոս քիչ մը վիպասանական նկարագրութիւն մը կ'ընէ. Կովկասեան այս Դրունք «բնութեան ահագին մէկ գործն են, որ ուժգնակի կ'ընդհատէ լեռանց շղթան: Հոն են դռները, որ երկաթապատ գերաններով ամրացուած են*[37]*. վարէն կ'անցնի գետ մը, որ ժանտ հոտ կը բուրէ. ասդին՝ քարաժայռի վրայ Կումանիա բերդը կանգնուած է արգիլելու համար անթիւ անհամար վաչկատուն բազմութիւններու անցքը. այսպէս՝ մինչեւ Հորմաստոսի դիմացը՝ դուռ մը կը փակէ աշխարհի մուտքը»:*

*Չենք գիտեր ի վերջոյ թէ Հռոմայեցիք ինչպէս վարուեցան Պարթեւաց ժամանակ այս պատնէշներն առջեւն առնելու համար. բայց Արիանու* «Ճակամարտութիւն ընդդէմ Ալանաց» *գրոց նման յիշատակարանները կը ցուցնեն թէ ուրիշ մը չէին թողուր իրենց հողարածիններու եւ պաշտպանեալ տէրութիւններու պաշտպանութեան հոգը: Սասանեանց ժամանակի համար Լիւդոս*[38] *կը տեղեկացնէ ինչ որ «կ'ըսուէր» իր ժամանակ. Յովիանու խաղաղութենէ ետքը Հռոմայեցիք ետ քաշուած ըլլալով՝ այնուհետեւ չէին կրնար այնչափ հսկել Կովկասի*

---

[37] Fores additae ferratis trabibus, (*Պլին. Բն. Պատմ. Զ*, 30):

[38] *Լիւդոս*, De magistris III, 52—53, *հրտ.* Wünsch:

կրծին վրայ[39]։ Իսկ Պարսիկներն ալ շատ հեռու էին։ Ուստի Սալուստոս անձնապահապետը (պրետորապետը) եւ Պարսից ազնուականք միաբանեցան դաշինքով, (յետոյ Յազկերտ հաստատեց այս դաշնագրութիւնը) որ երկու Պետութեանց հասարակաց ծախքով՝ ամուր բերդ մը շինուի վտանգաւոր տեղւոյն վրայ եւ հոն պահակային գունդ պահուի։ Հռոմայեցիք ուրիշ տեղ զբաղած ըլլալով Թողուցին որ Պարսիկներն առանձինն շինեն Biraparach[40] դղեակը եւ հոն պահակագունդ մը հաստատեն։ Բայց Պարսիկները բողոքեցին այս բացառիկ ծանրաբեռնութեան դէմ եւ չդադրեցան պահանջելու Կայսրէն Դրանց համար ծախքը[41]։

---

39 Իրականութեան մէջ այս եղաւ անոր համար որ շատոնց լքած էին իրենց գերապահ իշխանութիւնը Վիրաստանի վրայ՝ զոր վայելած էին Տրայանոսէն ի վեր։ Լիւզոս կը յաւելու թէ Առիանոս խօսած է այս նիւթին վրայ իր Պարթեւականաց (Παρθικά) Ը. գրքին մէջ, որ կորսուած է։

40 Այլեւ այլ ընթերցուածներ՝ Ἰουρο-ειπαάχ՝ Գրիսկոսի քով, տե՛ս de Boor, Excerpt. de legat. gent. 15, էջ 586. (յաւել՝ 19, էջ 588 «Կասպից Դրանց վրայ կեցած բերդը»։ Բառս հայերէնի մէջ, ըստ Tomaschekի (Biraparach ի Պաւլի—Վ.) կը նշանակէ՝ Վրաց պաշտպանութիւն։ — [Տոմաշէկի մեկնութիւնն է ուրեմն թէ այն անունն ըլլայ Վիրոյ-պահակ, «Վրաց պահակ»։ Հայոց քով այս անունը ծանօթ չէ, եւ ոչ ալ «Իւրոյ պահակ», թէեւ Ագաթանգեղեայ մէջ մէկ անգամ կը յիշուի «գիւրոյ պահակին (էջ 26) որ է Ճորայ-պահակ։ Սակայն նաեւ Մարքուարտ կ'ընդունի յիշեալ անուններու նախնական գոյութիւնը. տես Marquart, Eranšahr, էջ 101—106։ Ծան. թարգմ.։]

41 Լիւզոս, անդ, 51 ցվերջ։

Եւ այս սկզբնապատճառն եղաւ երկու պետութիւններու միջեւ յաճախադէպ պատերազմներու: Արեւմտեանք կը ձգձգէին. ատժամանակեայ պարգեւներ կամ ուրիշ շնորհումներ կ'ընէին[42]: Համառօտիւ ըսելով՝ Լիւզոս ստիպուած էր հասկցնել թէ Հռոմայեցիք էին որ խօսքը կամ դաշինքը չպահեցին:

Վերջապէս 561ի խաղաղութեան դաշինքի մէջ[43] Յուստինիանոս եւ Խոսրով միաբանեցան որ Պարսիկները — որոնց ուրիշ յօդուածներով հատուցում տրուեցաւ — միայն առանձինն հոգ պիտի տանէին արգիլելու Հոնաց կամ Ալանաց անցնիլը Կասպից Դռներէն կամ «Քորուծոն (Χώρουτζόν) կիրճէն[44]»: Հռոմայեցիք հաստատապէս կը մեր-

---

[42] Պրոկոպիոս (ՊՊ., Ա, 10, 9—12) մէջ կը կարդանք քիչ մը կասկածելի պատմութիւն մը. Կաւատ դրան միջնաբերդը չինած ըլլայ Աղեքսանդր: Անաստասի օրով բերդը Հոն պետի մ'իշխանութեան ներքեւ էր, որ առաջարկեց ինքնակալին զայն անոր ծախել: Բայց ինքնակալը մերժեց, օգտուելու չդատելով այսպիսի հեռաւոր կէտի մը վրայ՝ պահակազօր մը լքեալ թողուլը: Հոնին մահէն ետքը՝ Կաւատ մերժեց վանեց անոր որդիները եւ տէր դարձաւ այն Դրանց:

[43] Մենանդր Պրոտ. Excerpt. de legad. Rom., de Boor, էջ 180, 1, 6 (= էջ 865, Migne):

[44] Այս միւս անցքը մեզի ծանօթ չէ, առաջինէն աւելի դէպի արեւելք բացուելու էր. (de Boor, կ'առաջարկէ ուղղել Χώρου Τζόν, Պրոկոպիայ, ՊԳ. Դ. 3, 4: Τζούρ գրելուն պատճառաւ = Ճոր: Այսպիսով կը հասկցուի թէ ինչո՛ւ Պղինիոս (անդ) կը զանազանէ Կասպից Դրունքը (Portae Caspiae) եւ Կովկասեան Դրունքը (Portae Caucasiae), զորոնք յաճախ կը շփոթեն «մեծաւ վրիպանքով» (magno

ժէին հանգանակելու այդ նպատակին, եւ այս այնչափ աւելի կը զարմացնէ, որչափ որ նոյն բանակցութեանց ընթացքին, ըստ Մենանդրի Պրոտեկտորի, շատ անգամ — թէեւ առանց յաջողութեան — Սուրէնայ առջեւ պնդեցին Սուանիա աշխարհը (Սուանէթը) ձեռք բերելու համար[45], որ Լազիկէի յետսամասն էր, եւ որ բաւական մօտ էր Դարիալի կիրճին[46]: Բայց թերեւս Ալաններն ու Հոններն ընկերկելէ աւելի կը նախընտրէին զանոնք իրենց բանակներուն մէջ խառնել:

Կանուխէն արդէն Հռոմայեցւոց սիրած մէկ գաղափարն էր թէ կրնար օգտակար ըլլալ Պարսիկներուն վրայ Լազիկէէն յարձակիլ[47]. սակայն այն՛ տեղ պատերազմական գործողութիւնները կը սկսին միայն Զ դարուն: Հարկ մը չեմ տեսներ զանոնք պատմելու. կը բաւականանամ համառօտիւ երկրին տեղագրական նկարագրութեամբ: «Լազերը,

---

errore, յաւել՝ Ե, 40): Ամէնուրն վրիպակ չկայ՝ կը պատասխանէ Միւլլէր (էջ 911): Ես կը կարծեմ թէ՝ կայ:

[45] Այս երկիրը կը կորէր կ՚անցնէր Քորսու գետը (Պղինիոս. Բն. Պատմ. Զ, 14): Սուանացիք ոսկւոյ հանքեր հետախուզելու կը պարապէին (անդ, Զ. 30): Հռոմէական լուծէ զանոնք ազատ պահելու համար, Սուրէն յառաջ կը բերէր անոնց ինքզինքն ըլլալը. Պղինիոս կ՚ըսէ «աննուաճ ազգ» (indomitae gentes):

[46] Ա. De Boor, էջ 861 յջ., Հոկար. 6 եւ 12:

[47] Լիւղոս (անդ, 31) կորովակից կը բացատրէ երկրին դժուարակոխութիւնը՝ «ձիարշաւող Պարսիկներու համար դժուարամատչելի» կ՚ըսէ եւ իբր օրինակ կը բերէ Կորրուզանի դէպքը:

իրաւամբ կ՚ըսէ Պրոկոպիոս[48], ամբողջովին Փասիսի եւրոպական կողմն են՝ հիւսիսակողմը, միւս կողմը ո՛չ աւաններ կան եւ ո՛չ նշանաւոր քաղաքներ՝ բայց Պետրայէ»: Անո՛վ իսկ որ Պետրա լեռներու միւս դաշտավայրին վրայ կղզիացեալ կանգնած էր, կըրնար մեծամեծ ծառայութիւններ մատուցանել, բայց պէտք էր զայն մեծապէս ամրացնել: Այս մասին Պրոկոպիոս շատ յակոնաբան է. «Պետրա, յատուկ անանուն գիւղ մը, Պոնտոս-Եւքսինոսի ծովափին վրայ (— միայն մերձաւոր ճշդութեամբ —) այժմ Կողքիսի նշանաւոր քաղաք մը, զոր ամրացուց ու մեծցուց Յուստինիանոս...: Անմատոյց է ծովի եւ քարաժայռերու կողմանէ. նեղ ճամբայ մը հոն կը տանի երկու լեռներու մէջէն, որոնք մեծ պարիսպով մ՚իրարմէ կը բաժնուին, երկու ծայրերն երկու աշտարակներ ունենալով, որոնք կարծր քարէ շինուած են եւ կրնան խոյի մը դէմ դիմանալ[49]»: Ուրիշ կողմէ՝ Վեհաշուք քաղաք մը, զոր Լազերն անխոհեմաբար Պարսիկներու յանձնեցին. Հռոմայեցիք շուտով եկան, յաղթող եղան եւ հիմնայատակ ըրին

---

48 Պրոկոպ., ՊՊ. Դ.՝ 2, 29: Անոնց անունը կը գտնենք արդէ Լազիստանի մէջ, որ սակայն իրականին աւելի հարաւային է քան թէ անոնց նախկին բնակավայրը:

49 Պրոկոպ. ՊՊ. Բ. 17, 3 եւն:

քաղաքը[50]: Այս շատ միջակ բախտին հետեւութեամբ բաւական դժուար եղած է նոր քննիչներու. Գեորգայի տեղը գտնելը: Դիւբուա կը կարծէ թէ գտած ըլլայ զայն արդի Ուջենար տեղը, Փասիսի գետաբերանէն իբր 25 քիլոմետր դէպի հարաւ-արեւելք, եւ 20 քիլոմետր հեռու Սեւ Ծովէն: Այն տեղ տեսակ մը վերնաբերդ կայ զուգահեռագծաձեւ 120 քայլ լայնութեամբ եւ 200 քայլ երկայնութեամբ, որ ներփակուած է եօթ կամ ութ աշտարակներու մնացորդներով, եւ բասալդի ու պորփիւրի քարերով շինուած ամուր պարիսպով մը շաղախի հետքերով[51]:

Քանի որ Փասիս միայն մէկ ափին վրայ խիտ բնակչութիւն մը կը նստէր, դժուարութիւն կը զգանք Ստրաբոնի եւ Պլինիոսի հաւատք ընծայելու՝ երբ կը պատմեն թէ այս գետին վրայ 120 կամուրջներ ձգուած էին — արդէ՜ն իսկ Ա դարուն[52]: Սակայն եւ այնպէս կ'երեւայ թէ Դիւբուայի հետ պէտք ենք նոյն գետի հարաւային ափին վրայ, բայց գետին աւելի մօտ դնել Ագաթիասի յիշած Տելեփիս բերդը, «դժուարամատոյց տեղ մը, ուր կը տանէր միայն նեղ

---

[50] Պրոկոպ. Ծրն. Գ. 7, էջ 261. Հմմտ. Brosset, Add. et Eclairciss. էջ 102: Այսպիսով այս քաղաքին պատմութիւնը կը տեւէ քանի մը տարի, այն է 539/45—550:

[51] Dubois de Monpéreux, Voyage autour du Caucase, III, էջ 86 յլ., Ատլաս Ա, տախտ. ԺԹ, 1:

[52] Ստրաբոն, ԺԱ, 3, 4, էջ 500 C. Պլին. Բն. Պատմ. Զ, 13՝ pontibus CXX peruius. Եւ այս այն-

ճամբայ մը, երկրի մը մէջ որ լի էր ճախ-ճախուտներով, անտառներով եւ թուփերով[53]», եւ նոյն իսկ Փասիսի դիմաց՝ Հռոդոպոլիսը[54] արձակ դաշտավայրի վրայ, եւ զոր Լազերը կործանեցին պատերազմի ընթացքին[55]:

Մինչ Փասիսն է որ կա՛մ ինքնին կա՛մ իր բազմաթիւ օժանդակներով գլխաւոր ճամբաները կը բանար դէպի երկրին խորքերը եւ բնակեալ գլխաւոր կեդրոններու քովէն կը քերէր կ'անցնէր: Այս կանոնէն բացառութիւն կ'ընէր միայն Բուկլուն (Bucloon) կղզիացեալ բերդը[56] Հիւսիսակողմը, դէպի Սկանիա եւ Արքէոպոլիս մայրաքաղաքը: Այլեւայլ հեղինակներու տեղեկութիւններէն կրցած է Դիւբուա[57] զայն զետեղել Քորոսի վրայ, ծովէն իբր 20 քիլո-

---

չափ աւելի նորանշան է՝ որչափ Պլինիոս կը յիշատակէ «Կողքիսի ամայութիւնք» (Զ, 29) եւ թէ ծանծաղ տեղեր կային նոյն իսկ գետին խոնարհագոյն ընթացքին մէջ. Հմմտ. Պրոկոպ. ՊՊ. Բ, 30, 37, ՊԳ. Դ, 13, 3:

[53] Ագաթիաս, Բ, 9, 5—7: Տեղը մերձաւորապէս կրնանք հաստեցնել այս անդրադարձ տեղեկութենէն. Բիւզանդացիք Պարսիկներէ յանկարծակի յարձակում կրելով, ժամանակ չունեցան ամրանալու կղզւոյ մը մէջ, զոր կը կազմէին Փասիս եւ Դոկոնէ՝ իրենց գետախառնուրդի տեղը, Տելեփիսէ 150 ստադ հեռու (իբր 30 քիլոմետր):

[54] Մինչ հարաւային կողմը՝ Դիւբուայի քարտէսին համեմատ (Ատլաս, Ա, տախտ. ԺԴ), սակայն Պրոկոպիոս (ՊՊ. Բ, 29, 18) միւս կողմը կը դնէ:

[55] Պրոկոպ. ՊԳ. Դ, 13, 21—22:

[56] Ագաթիաս, Գ. 7, 2:

[57] Dubois de Montpéreux, անդ, Գ. էջ 51—58:

մետր հեռու[58], այն կէտին վրայ՝ որ այժմ կը կոչուի Նակոլակեւի։ Կեցած է շրջապատը, զոր կը կազմէ աղիւսակերտ պարիսպ մը, որ մեծագոյն մասով դեռ լաւ պահուած է, տեղ տեղ կան չորեքկուսի աշտարակներ։ Ամբողջին վրայ կը տիրէ բլուր մը, որ գետին կողմանէ շատ սեպաբերձ է. գագաթին վրայ ուղղանկիւնի բերդ մը, 460 քայլ երկայնութեամբ։ Աւիկա, կ'երեւայ թէ, լաւ կը պատշաճի Պրոկոպիոսի նկարագրութեան[59]։

Վերջինս[60] կը թուարկէ այն տեղերը, որոնք կը հանդիպէին աջ ափին վրայ. Սեբաստոպոլիս[61], Ռոդոպոլիս, Մոխերիսիս[62], եւ բերդերը Փիտիոս[63], Սկանդա եւ Սարապանիս։ Աւելցնելու էր՝ Ոնոգու-

---

58 Այսահոմապէս սխալ են Ստեփ. Բիւզանդացւոյ 500 ստադները, թերեւս պէտք է կարդալ 50, որ մերձաւոր թիւ մըն է։

59 Պրոկոպ. ՊՊ. Դ, 14, 1. Արքէոպոլիս անմշակ բլուրի մը վրայ է, որուն քովէն կ'անցնի գետ մը՝ որ մերձակայ լեռներէն կ'իջնայ։ Վարի դռները բլուրին ստորոտին կը համապատասխանեն եւ վերին ճամբայ ունին՝ մեղմ զառիվայրով. վերինները կը բացուին միայն քարաժայռերու եւ դահավէժ անդունդներու վրայ։ Բնակիչներն ուրիշ ջուր չունենալով գետի ջրէն զատ, անոր երկու կողմը պարիսպներ շինած էին, որպէս զի նուազ վտանգով ջուր առնուլ կարենային։

60 Պրոկոպ. ՊՊ. Բ, 29, 18։

61 Հաւանօրէն Դիոսկուրիաս, թէեւ յետոյ Արքէոպոլիս կ'անուանէ։

62 Տարբերակներ՝ Mochiresis, Mouchirisis։

63 Տես այս Գլխոյ սկիզբները։

յիս[64], Ուքիմերէոս[65] եւ Կոտատիսիոն. վերջապէս Լոսորիոն, որուն համար ինքն իսկ կ'ըսէ ուրիշ տեղ մը[66] թէ Յուստինիանոսի գործն ըլլայ: Այս այլեւայլ տեղերէն ոմանք կրնան նոյնացուիլ ամենայն ստուգութեամբ, այն պատճառաւ որ անուններն տեւական մնացած են՝ հազիւ թէ եղանակաւորուած: Այսպէս են Սկանդա եւ Սարապանիս[67], որոնցմէ կ'երեւայ թէ այլեւս բան մը մնացած չէ[68], եւ նոյնպէս Կոտատիսիոն[69]: Այս զանազան տեղերը կարճ ժամանակամիջոցի մը մէջ յաճախ յարձակում կրած ու քանդուած, շատ անգամ աճապարանքով նորոգուեցան. այսպէս՝ Սկանդա եւ Սարապանիս[70]:

Կոտատիսիոնի անունն անաղարտ մնացած է արդի Քութայիսի անունով[71]: Դաշտավայրի քաղաքս պերանկչին կարեւորութիւն մը ստացած է. ընդհակառակն Զ դա-

---

[64] Ագաթիաս, Բ, 10, 1. Գ. 3, 3:

[65] Տարբեր ընթերցուածներ՝ Ouchimereos, Oucheimereos:

[66] Պրոկոպ. Շին. Գ. 7, էջ 261:

[67] Այսօր Sarapan. Արդէն Ստրաբոնի քով կայ՝ *Σαραπαναί* (ԺԱ, 2, 17, էջ 498 C) կամ *τὰ Σαραπανά* (ԺԱ. 3, 4 էջ 500 C) Հմմտ. Աշխ. Sarapama 74, 6. եւ Պրոկոպ. ՊՊ. Դ, 13, 15՝ *Σαραπανίς*. Մենանդր Պրոտեկտոր (de Boor, Excerpt. legat. էջ 186, 1. 23 *Σάραπα. Σκάνδεις.*

[68] Dubois de Montpéreux, Բ. էջ 361, Գ. էջ 160:

[69] Լազերու լեզուաւ. յունարէն Cotiaïon (Պրոկոպ. ՊՊ. Դ, 14, 48:

[70] Պրոկոպ. ՊՊ. Դ, 13, 15; 16, 17:

բուն իր պահպանութիւնը պարտական էր իր միջնաբերդին, որ Փասիսի միւս կողմն էր եւ 250 ոտք բարձր գետէն վեր, բայց նաեւ խոնարհագոյն քաղաքը պարսպապատ էր՝ դրուագուած կրաքարային ապառաժի հսկայ քարահատորներով. ստորերկրեայ ճամբայ մը՝ աղիւսակերտ կամարակապ՝ կը տանէր՝ քարաժայռին ոտքը՝ աղբիւր մը: Ութիմերէոս բերդը շրջապատուած էր չորեքկուսի հզօր աշտարակներով՝ գեղեցիկ կերտուած: Միհրմահրով միջոց մը հոն 3000 հոգի պահապան դրաւ[72]: Իսկ Մոքերիսիսի մասին գիտենք միայն[73] թէ այս անունն ունէր նաեւ փոքրիկ գաւառ մը, ուր բնակութեան բազմաթիւ կեդրոններ կային, զոր կ'ոռոգէր Ռէոն գետը, որ այն ատեն Փասիսի մէկ օժանդակը կը համարուէր. գաւառը կը տարածուէր մինչեւ իբր մէկ օրուան ճամբայ հեռու Արքէոպոլիսէն[74], ուսկից համանուն բերդէն բաւական հեռու[75]:

Չենք գիտեր ճշդիւ թէ ո՛ւր գտնուելու

---

71 Dubois de Montpéreux, Ա. էջ 398 յջ. Ագաթիաս Ա, տխտ. ԺԸ, 1:

72 Պրոկոպ. ՊՊ. Դ, 16, 16:

73 Անդ, 14, 46:

74 Միւլլէր (Պտղոմ. էջ 924) խնդիր կ'ընէ թէ Mochérisisի մէջ գտնուելու չէ՞նք արդեօք «Տեղեկ.» գրոց (XXXVIII, 38) Mochoraն (Ուղեցոյցներու Mogora) ուր կը բնակէր Վաշտ մ'առանց թուոյ եւ ուրիշ յորջորջանաց: Այս պահականոցը՝ իբր 425ին՝ բոլորովին անըմբռնելի պիտի ըլլար, եթէ ներքնակողմի մէկ գաւառին մէջ գտնուէր:

75 Ագաթիաս, Բ, 9, 4:

է Ծիբիլէ բերդիկը, որ կը փակէր «նեղ ու անդնդապատ անցք մը» Միհրմահրովի առջեւ, երբ Ապխազաց երկիրը կ'անցնէր[76]: Փասիսի միւս կողմը՝ Միսիմիացւոց քով՝ բերդերու շարք մը կար, զորոնք այրեցին Հռոմայեցիք երբ մտեցան, ի բաց առեալ ամէնէն ամուրը՝ Ծակար, արտակարգ սեպաբերձ երկրամասի մը մէջ[77]:

Հարեւանցի կամ պատահական այս տեղեկագրութիւնը նկարագրական է ամբողջ Կողքիսի համար. Փասիս չափէն աւելի ծառայութիւններ կ'ընէր, մատչելի ըլլալով մեծ նաւերու մինչեւ Վրաստանի կիրճերը[78]: Անկէ անդին կը սկսէին նոր կապաններ (կղեսուրք), որ այն երկիրը կը տանէին եւ զորոնք Յուստինիանոս ամրացուց՝ արեւելքէն եկող յարձակման մ'առջեւ առնելու համար[79]: Փորձով գիտէր թէ թշնամին անգամ մ'որ Լազիկէ մտած ըլլար, այլեւս դիւրին չէր զայն անկէ արտաքսել: Կամակոր հովիտներու շարք մը կար հոն, դարալից բլուրներ, ամէն տեսակ ծուղակներ, որով պատերազմողները կը բռնադատուէին կեդրոնանալ բազմաթիւ բերդերէն միոյն մէջ եւ հոն համբերատար դիմագրաւել չրջափակ պաշարան մը: Լազիկէի պատերազմնե-

76 Պրոկոպ. ՊԳ. Դ, 17, 16:
77 Ագաթիաս, Բ, 4, 4—5:
78 Պրոկոպ. ՊԳ. Բ, 29, 16. Հմմտ. Ստրաբ. ԺԱ, 2, 17, էջ 498 C:
79 Պրոկոպ. Շին. Գ. 7, էջ 261:

*րուն մանրամասնութիւնները կարդալով՝ սքանչելապէս կը տեսնուի թէ պաշարուածներու, յառաջամարտներու — պիտի համարձակէի յաւելուլ՝ թաքչելուկ-խաղերու — այս ռազմագիտութիւնն ո՛րչափ յարմար էր երկու պատերազմողներու ճաշակին ալ:*

---

# ԵԶՐԱԿԱՑՈՒԹԻՒՆ

*Եփրատի պաշտպանութիւնն ի վերջոյ ապահովուած էր երկար դարերով, աւելի երկար ժամանակ քան Պետութեան շատ մը ուրիշ սահմանագլուխները։ Եթէ աչքի առջեւ բերենք այս մասին շահագրգռող երկիրներուն ընդարձակածաւալ մակերեսը, պիտի կարենանք ըսել թէ այս պաշտպանութիւնը ձեռք բերուած է դիւրագնի ալ։ Զօրագունդերու երկար անուանացանկը, որոնք այլեւայլ ժամանակներու մէջ նշանակուած են իբր Ասորիքի պահակագունդեր, կրնան պատրանք մը պատճառել. բայց պէտք չէ անտեսել այն պարագան թէ զինուորական ուժերն անսահմանելի կերպով կը մանրաբաժանուէին. իւրաքանչիւր* գումար (numerus)՝ *եթէ նաեւ լիաթիւ ըլլար, միակ զօրաքանակ մը կը ներկայացնէր։*

*Ամրավայրերու ընդարձակ եւ խելահասօրէն ըմբռնուած դրութիւնն անբաւ ծառայութիւններ մատուցած է։ Պրոկոպիոս՝ «Յաղագս Շինութեանց» գիրքը, լուելեայն*

բայց ամենադրդալի կերպով կը պարզէ թէ ի՛նչ էր լուծուելիք խնդիրը, որ այն կողմերու համար կը ծագէր։ Անշուշտ ներբողագիրն ուզած է Յուստինիանոսէ առաջ այս մասին ձեռք առնուած միջոցներու անբաւականութիւնը մատնանիշ ընել, անտարակոյս նաեւ չափազանցած է։ Յիշեալ ինքնակալին գործն, ինչ որ ալ ըսուի, ո՛չ այնչափ նորստեղծում էր՝ որչափ վերականգնում, բայց այն երկիրներէն՝ ինչպէս Լազիկէ, ուր ինքը նախ պայքարը դրդած էր եւ հետեւաբար նոր պահանջներու ծնունդ տուած։ Իրմէ առաջ ալ այն արհամարհուած «տղմէ պարիսպները, այն գէշ ծրագրուած շրջապատքերը, այն ջրէ զուրկ բերդերը հաւասարապէս իրենց պաշտօնը կատարած են։ Ճանչնանք միայն որ Զ դարուն միեւնոյն արդիւնքը ձեռք բերելու համար շատ աւելի կորովալից ճիգերու պէտք կար, քանի որ թշնամւոյն գլուխն էր այն ժամանակ արքայ մը, որ մանաւորապէս յանդգնագործ էր եւ որոշ չափով հանճար մը։ Համառօտ ըսելու համար՝ Ասորիքի պաշտպանողական գործողութիւններն արժանի են ամէն յարգանքի։

Ինքնին կը ծագի հոս դիտողութիւն մը. նախ Հռոմայեցիք, եւ ապա Բիւզանդացիք, Ասիոյ իրենց նահանգներուն՝ եթէ ոչ ապահովութիւնը, գէթ փրկութիւնը ձեռք բերած են իրենց յատուկ (պետական) միջոցներու օժանդակութեամբ։ Ծանօթ է թէ բարբարոս

տարրը շուտով խուժեց լեցուց բանակները· բայց նոյն տարրը հռոմէական զօրագասերու մէջ կը դասակարգուէր· Պետութիւնը կ'առնէր մէկէ աւելի կարգապահ եւ ընդհանուր դրոշմ մը: Կ'ուզեմ մանաւանդ յիշեցնել թէ ի՛նչ դոյզնաքեայ օգնականութիւն մ'էին՝ Ադրիանոսէ ետքը՝ Պաշտպանաւորներն եւ Դաշնակիցները: Հայք[1] արդէն Հասարակապետութեան ժամանակ՝ իրենց վրայ դրուած ամէն յոյսերն ի դերեւ հանեցին: Արաբացիք աւելի խոչընդոտ արգելք մըն էին քան թէ օգնութիւն· ամենադոյզն պատրուակաւ պակսելով որեւէ օգտակարութիւն մը չէին ներկայացնէր, բայց եթէ պարզապէս զինուորագրուելով եւ հռոմէական զօրագունդի մը մէջ (վաշտ կամ թեւ) խառնուելով:

Բայց Սահմանադլխոց նահանգներու բուն իսկ ժողովրդեան մէջ Պետութիւնն անդին օգնականութիւն մը գտաւ: Պատմա-

---

1 Պէ՞տք է հաւատք ընծայել այն պատմուածին, զոր կ'աւանդէ Փաւստոս Բիւզանդացւոյ հայերէն բնագիրը: Վարազդատ արքայի ատեն (374—376) առաջարկութիւն մ'եղած է յունական Պետութեան, որ անոր ծախքով իւրաքանչիւր գաւառի մէջ պահպանուէին ամրութիւններ, եւ հայ նախարարագունդը զինեալ մնար, այնպէս որ ամբողջ երկիրը Սասանեանց դէմ տեսակ մը շատ ամուր ապահովութիւն մ'ըլլար: Առաջարկութեան առաջին բանակցութիւնները լաւ ընդունելութիւն մը գտան· բայց ծրագիրն ի դերեւ ելաւ թէ՛ նոյն իսկ Հայաստանի մէջ նիւթուած մեքենայութիւններով եւ թէ՛ այն վերահաս դժուարութիւններով, որով պաշարուեցաւ Պետութիւնն ուրիշ երկիրներու մէջ. (տես S. Weber, Die Katholische Kirche in Armenien, p. 267):

բաները այս մասին վճռականօրէն բացայայտ վկայութիւն մը բնաւ չեն տար. եւ այս անտրամաբանութիւն մըն է։ Բայց տողերու մէջէն կը կարդանք այս խռովութիւնը. պատմութեան դիւցազնական էջերը կը նկարագրեն պաշարումներ, ուր զօրաց փոքրիկ կորիզը շուտով պիտի ընկճուէր, եթէ թեւ ու թիկունք չըլլային բնակիչները, որոնք յանպատրաստից աղեղնաւորներ եւ զնդընկեցներ կը դառնային, ճեպով կը կարգադրէին պարիսպներու խրամները, արիաբար կը տանէին նուազութեան եւ սովի։ Քաղաքացի տարրին այս կենսունակութիւնն եթէ մեր ուզածին չափ ալ ընդարձակ ենթադրենք, միայն չափաւոր կրնար ըլլալ, համեմատութեամբ այն լրացուցիչ զումարութեան, զոր ընդունած էր։

Ուրեմն սահմանագլուխն, ամէն բան հաշուի առնելով, լաւ պաշտպանուած էր. բայց յաճախ յարձակումներ կրեց։ Ինչո՞ւ արդեօք։ Հաշուի առնենք այժմ պարսկական փառասիրութիւնը։ Ստո՞յգ է թէ այս կը հրապուրէր, թէ Պետութիւնը զայն որեւէ կերպով կը գրգռէր, նաեւ առանց նախայարձակ ըլլալու, անյարմարօրէն սահմանագծելով իր ստացուածքները, համախառնելով երկրաբաժիններ, որոնց դժուար էր տէր կանգնիլ. եւ կամ ընդհակառակն կասիլ բնական պաշտպանութեան զօտւոյ մը սեմերու վրայ, մինչդեռ յարմարագոյն էր զայն

միացնել ձուլել: Այս խնդիրը հետեւեալ հարցի առջեւ կը դնէ զմեզ. Ռոհեմութիւնը ո՞ւր խորհուրդ կու տար կանգնել Պետութեան սահմանաքարերը:

Հոս պէտք ենք խորշիլ համեմատելու Միջագետաց գետերը Հռենոսի եւ Դանուբի հետ. համեմատութիւն մը թէեւ հրապուրիչ է, բայց նաեւ վտանգաւոր: Վերջին երկու գետերս, կերպով մը ծայր ծայրի միացած, պարփակ տարածութեան անջրպետ մը կը ներփակեն, գրեթէ յիսուն հազար քայլ. եւ եթէ Դիոկղետիանոսի ժամանակի «Հռոմէական աշխարհի» (orbis Romanorum) քարտէս մը զննենք՝ կը տեսնենք թէ այն գիծը կատարեալ կերպով կը սահմանագծէր Եւրոպական ցամաքի վրայ Հռոմի հպատակ եղած երկիրները[2]: Բաց աստի երկուքն ալ կը հոսէին հարթավայրի վրայ կամ այնպիսի բլուրներու մէջէն, որոնք դիւրամատչելի էին. անոնց աւազանի տեղագրութիւնը պարզ է:

Առաջին հայեցուածքին Եփրատի մէկ բազուկն ալ Սեւ Ջուրը (Կարա—սու) կը կցուի Եփրատի վերին ընթացքին հետ: Բայց այս երկուքին ալ առանձնայատկութիւնը կը ցախջախուի ու կը բարձուի ուրիշ շատ աւելի բնորոշ ինքնայատկութեամբ մը՝ հայկական

2 Նոյն իսկ Հռենոս, որովհետեւ իր ընթացքին Հելուետիոյ մէջ եղած մասն այս խնդրէն դուրս կը մնայ:

լեռնաշխարհով։ Վերջինս ընդարձակօրէն կը ծաւալի նոյն իսկ անոնց ընթացքին. Հայաստան կը շրջափակէ Վերին–Եփրատն ու Վերին – Երասխը. փոխանակ անոնցմէ պաշտպանուելու։

Դանուբէն ու Հռենոսէն անդին գտնուող բոլոր երկիրներն արժանի էին գրաւուելու։ Ասոնց մէկ մեծ մասը հարուստ ու բարգաւաճ երկիրներ էին, բացուած քաղաքակրթութեան առջեւ, որուն մասնակից էր նաեւ Հռոմ, եւ համեմատաբար շատ հեռու չէին Պետութեան Մայրաքաղաքէն։ Եփրատ իր ալիքները կը թաւալէր շատ մեծ հեռաւորութեամբ՝ նոյնիսկ Կոստանդնուպոլսէն, եւ հազիւ թէ նաւարկելի դարձած՝ անմիջապէս խորամուխ կ'ըլլար ամայի տափատաններու մէջ, անցնելով անանցանելի անապատէ մը։ Ի՞նչ ընելու էր այս անմշակ գօտին, որ որջ մըն էր յելուզակաց, որոնք ցանուցիր սփռուած էին ցանցառ ովասիսներու մէջ եւ միշտ հինահարական ասպատակութիւններով կ'արշաւէին։ Բայց արդէն Եփրատ չի բոլորեր մեծ ճառագայթով մը Իտալիոյ կամ Բոսպորի շուրջը. վերջնական դարձուածք մ'ընելէ ետքը՝ կը հեռանայ ուղիղ գծով եւ կ'երթայ իր ընթացքը կ'աւարտէ ընդարձակածաւալ Տէրութեան մը բուն իսկ սիրտը, որ հզօրապէս կազմակերպուած էր եւ ահեղ կեդրոնացում մ'ունէր։ Գետին արեւելեան կողմ՝ յետասկողմեան

աշխարհը միաձոյլ զանգուած մը կը կազմէր սկսելով Զագրոսի առաջին դարերէն եւ Ծօ-չաստանի հովիտներէն. արեւմտեան կողմը՝ մարդկան ու մշակութեան անբաւ դատարկութիւն մըն էր:

Եթէ Եփրատն իր ակնաղբիւրներէն մինչեւ ծով՝ երկու պետութիւններու իբր սահմանագլուխ կազմուէր, արեւմտեան պետութեան համար շատ դժնդակ ընծայ մ՚եղած պիտի ըլլար: Ասոր համար չէ ուզած զայն: Այս գետափին վրայ հսկողութիւնն ալ ծանր բեռ մըն էր. անոր համար ալ այս սահմանն ընդունած է միայն մասամբ, նախ մինչեւ անորոշ եզր մը, յետոյ՝ Միջագետաց մէկ մասը ցմիշտ միացուեալ, մինչեւ Արաբաց գետախառնուրդը:

Ինչ որ ալ ըլլար՝ Եփրատ իրեն համար միշտ սպառնալից կը մնար: Քարտէսի մը վրայ հայեցուածք մ՚արձակելը կը բաւէ նըշմարելու թէ այս գետն այնչափ աւելի նուազ օգտակար է աշխարհակալի մը, որ գետն ի վար կ՚իջնայ, քան թէ անոր որ գետն ի վեր կ՚ելլէ եւ տէր է արեւելեան ափէն անդին եղած բոլոր երկիրներուն: Առաջինը բաց կը թողու իր նահանջի գիծը եւ նմանապէս իր հաղորդակցութիւնները. իսկ Ասորեստանէ մինչեւ Եփրատ քանի մ՚օրուան չուի ճամբայ է միայն, եւ կարելի է կտրել անցնիլ նաեւ ամէնէն ամայի գօտիներէն: Քառապատիկ անջրպետ մը կը բաժնէ Ցորդանանը Բաբե-

լինէ. միայն հեռաւորութիւնը յինքեան դեռ յառեղոյն բանը չէ: Երբ Գարսիկ զօրավարը՝ Ալամունդարի խորհրդով՝ կը խաղար դէպի Եփրատացւոց աշխարհը՝ յեցած գետին վրայ՝ միայն ճակատէն յարձակում կրելու վախ կրնար ունենալ: Բայց երբ Յուլիանոս՝ հակադարձ ուղղութեամբ նոյն ճամբէն կը խաղար Տիգրոնի վրայ, պէտք է որ զգուշանար թ'է ճամբէն, թէ' կողերէն եւ թէ թիկունքէն:

Այն ատեն, թերեւս մտածուի, պէտք էր աշխարհակալել Միջագետքը: Զուր յոյս: Ինչ առաւելութիւն որ կ'ընծայէր այս մեծ կղզին Արեւելքի Տէրութեան, նոյնը չէր վերապահէր Արեւմուտքի Պետութեան: Կրկին քննենք քարտէսը. Միջագետաց անապատները մեծ բան մը չեն համեմատութեամբ այն անսահման տարածութեան՝ զոր կը կոչեն «Անապատ Արաբիա» (Ἔρημος Ἀραβία). բայց Միջագետաց այդ անապատներն իրենց չարաչուք դերը կը սկսին այն վայրկեանէն, երբ անոնց տիրապետութիւնը կապուած չըլլայ այլեւս Իրանեան աշխարհներու ստացումին հետ: Ենթադրենք թէ ամբողջ Միջագետքը հռոմէական նահանգ մ'ըլլայ. բանակ մը՝ որ Տիգրիսի երկայնութեամբ կը յառաջանայ՝ մշտատեւ սպառնալիքներու ներքեւ է յեղակարծ յարձակում մը կրելու պարսիկ հակառակորդէն, որ կրնայ՝ ընտրել բախումի յարմար ժամն ու տեղը, շրջանիկ

չարժումով Թշնամւոյն կողէն անդին անցնիլ, արգիլել անոր պարենաւորումի սպառարկութիւնները, ամէն ինչ անոր չորս դին ամայի դարձնել. եւ բռնադատել զայն որ շատանայ միայն իր ունեցած կահուկազմով՝ այնպիսի երկրի մը մէջ, ուր միջոցները չափազանց սահմանափակ են: Պիտի ըսուի թէ այս ենթադրութեամբ կ'երեւայ թէ Եփրատ աւելի յարմար էր իբր արշաւանքի գիծ մը. բայց այդ պարագային պէտք պիտի ըլլար հակել Տիգրիսի ամբողջ երկայնութեան վրայ. անթիւ անհամար զօրաքանակներ պէտք է որ անշարժութեան դատապարտուէին այսպիսի ձեռնարկութեամբ մը, եւ տակաւին Պարսից բանակն իր բոլոր ուժերն միացնելով՝ պիտի յաջողէր կտրել այս զօրաշղթայի պարանպահը: Բայց անկէ գործողութիւնները աւելի կամ նուազ մեծ յապաղում պիտի կրէին, գրութիւնը պիտի դառնար ու ըլլար այն ինչ որ էր նախընթաց դէպքին:

Սակայն կարելի չէ՞ր արդեօք որ Պետութիւնը՝ Միջագետաց անգամ մը տիրանալէն վերջը, այն տեղ դադրեցնէր իւր փառասիրական ձգտումները: Բայց նախ պէտք էր պահել այն նահանգը. եւ պիտի չյաջողէր: Այս նեղ աշխարհալեզուն սրածայր կը յառաջանայ Ասորեստանի՝ որ զինքը կը գիտէ, եւ Անապատի միջեւ որ իրեն որեւէ թիկունք մը չի ներկայացներ:

Կը մնար միակ միջոցը՝ նոյն իսկ Տիգրիսն անցնիլ եւ իր կալուածներէն դարձեալ գրկել հանել արքայից արքային[3]։ Այս ալ մտքէ անցուցած են։ Մակեդոնական դիւցազներգութիւնը երազել կու տար ընդունայն անուրջներ, արքունեաց երգիչներ զուր տեղ չէին յիշեցնէր Աղեքսանդրի քաջագործութիւնները։ Սակայն այսպիսի փորձ մը անգործադրելի էր Հասարակապետութեան վերջերը· եւ պարագաները շատ քիչ կը յարմարէին ասոր, եւ Պարթեւաց կալուածը ձուլել տալ՝ պէտք էր հաստատահիմ

[3] Կը գուշակեմ այն առարկութիւնը, զոր կը թելադրէ իրաց ներկայ վիճակը։ Արդի Պարսկաստանի եւ Թիւրքիոյ մէջ սահմանը կամայական գիծ մը կը հետեւի, որ երկու հովիտներն ալ միեւնոյն տէրութեան կը թողու։ Սակայն բոլորովին ակնյայտնի է որ ընդհանուր դրութիւնը միեւնոյն չէ։ Արդի Պարսիկներն աշխարհակալներ չեն, եւ ո՛չ ալ սուլտանն այժմ աշխարհակալ մըն է։ Քրիստոնէութեան առաջին դարերու երկու ոստաններն երկու տարբեր աշխարհներ կը ներկայացնէին, որոնք անկարող էին իրարու հետ ձուլուելու։ Արդէն երկու դրացիներու մէջ չի նշմարուիր բարուց եւ հաւատքի բացարձակ հակադրութիւն. երկուքին համար ալ՝ միւսը հերետիկոս մըն է, բայց ոչ անհաւատ մը։ Երկուքին մէջ ալ հասարակաց է քաղաքական կառավարութիւնը, նկատելով ընդհանուր լայն գծով. հասարակաց են բազմաթիւ առանձնական սովորութիւններ, վարչականութեան զանազան ունակութիւններ։ — Սակայն այս օրս ալ որ կը գրեմ (1906)՝ ծագած են ճշդիւ նոյն իսկ սահմանագլուխներու դժուարութիւններ, որոնց միայն անորոշ արձագանգները մինչեւ Եւրոպա կը հասնին։ Բայց ինչ որ ալ պատահի՝ Պարսկաստանի համար վտանգն այս տեղէն չէ։ Ուրիշ նախաձեռնութիւններ շատ աւելի կը ծանրանան իր վրայ։ Հնդկաստանի տէրերը կը հսկեն իր ծովափներու վրայ եւ իր մեծ քաղաքները կը բռնեն, մինչ-

ամրանալ Ասորիքի մէջ[4]։ Աւգոստոս սյսպլինի հսկայակերպ ձեռնարկութեան մը համար սահմանուած կ'երեւար, բայց օգուտ մը չունէր յանդգնալից խիզախութիւն մը. նա այս համուզումն ունէր թէ աշխարհակալութիւն մը յաջորդելու էր նախընթաց աշխարհապետութեան մը։ Յոյն մը, որ Պարսից Ծոցին եզերքները ծնած էր, Իսիտոր Քարակացի, պաշտօն ստացաւ կանխաւ ուսումնասիրել՝ իր երկասիրութեան մէջ նկարագրելու համար, այն ամէն կարեւոր կէտերը, ուր պիտի հանդիպէր Կեսարու թոռը՝ Գայոս՝ իր ուղեւորութեան մէջ ի Պարթեւաստան, Արաբիա եւ Հայաստան[5]։ Երիտասարդ իշխանին դժբախտ վախճանը՝ կէս ճամբուն, ժամանակ մը կարճեց այս փառասիրութիւնները։ Յետոյ կրկին երեւան եկան. այն մեծ եւ միակ օրինակը՝ որ միշտ կը յիշեցուէր, համարձակօրէն խիզախելու դրդեց Տրայանոսն ու մերձակայքը, եւ ալ աւելի Աղեք-

դեռ Ռուսիոյ տէրը՝ Հոնաց եւ Ալանաց յաջորդը, ցամաքի ճամբով դէպի արեւելք կը մղէ իր վաճառականներն ու գաղթականները։

4 Դարձեալ քաղաքային պատերազմներու ատեն ոսոխական նախանձաբեկութիւնները կը զարթնուին եւ կը բորբոքէին ա՛յնչափ որ զօրավարներէ շատերը չէին համարձակիր մինչեւ ծայրը շարունակել իրենց յաջողութիւնը։ Վենդիդիոս յիշելով այն քննակալութիւնը, զոր այն մասին պիտի տածէր Անտոնիոս, չհամարձակեցաւ հետապնդել մերձակայ Բակուրի բանակը, որ յաղթուած էր եւ որուն գլուխն ալ ինկած (Պղուտ., Անտ. 34)։

5 Պլին. Բ. Պ. Զ, 141։ Սխալմամբ Դիոնիսիոս կ'անուանէ փոխանակ Իսիտորի։

սանդր Սեւերոսն ու շատ ուրիշներն ատոնցմէ ետքը: Սակայն ըղձութիւնը, գոնէ անգամ մը՝ ճշմարտիւ մարգարէական լեզուով խօսելու: Կ'աւանդուի թէ Դ դարու վերջը խաբուսիկ պատգամ մը, որ յայտնի չէ թէ ուսկից եկած էր [6], եւ որ Կարոսի զօրաց մէջ կը կրկնուէր, կը հաստատէր թէ որեւիցէ Հռոմայեցի ինքնակալ մը երբեք Տիգրոնը պիտի չանցնի:

Երբ անգամ մը այս համոզումը գոյացուած էր, — կամ երբ անգամ մը պարագաները բռնադատեցին անկէ հրաժարելու, — լաւագոյն պիտի երեւար անտարբեր ու անշահագրգիռ մնալ Եփրատի նկատմամբ, սկսեալ այն մասէն ուր գետն անապատային գօտին կը մտնէր. որ սակայն արգելք մը չէր ըլլար գետին վերին մասն իբր սահմանագլուխ առնելու: Բայց ո՛չ. խնդրոյն այսպիսի լուծում մ'այնպիսի անյարմարութիւններ ունէր, որոնք ակնբախ էին: Ասով հակառակորդին պիտի թողուէր ամբողջ հիւսիսային Միջագետքը, որ՝ իր ամբողջութեան մէջ թէեւ դրախտ մը (παράδεισος) չէր, եւ սակայն ասդին անդին բարեբեր եւ ատակ մեծաթիւ բնակչութիւն մ'ընդունելու: Անով թոյլ պիտի տրուէր որ իր դրան առջեւ

---

[6] Դժբախտաբար այս մեզի ծանօթ է միայն Վոպիսկոսէ (Կարոս, 9, 1) եւ Աւրելիոս Վիկտորէ (վասն Կես., 38). այս երկու աղբիւրները, որոնք առանց երաշխաւորութեան են, գրեթէ կը վերածուին մէկ աղբիւրի:

տեղաւորուէր տիրապետող ոսոխը. Թողլով անոր Տիգրիսի հետ հաղորդակցութեան թանկագին գիծ մը, որուն երկայնքը շարուած էին բնակութեան կեդրոններ։ Անտարակոյս այս գիծը քիչ մը երկար էր, բայց տակաւին աւելի կարճ քան Ասորիքի ծովափնեայ մասը, ուր մինչեւ դէպի հարաւ պահելու էր զօրաքանակներու կարեւոր մէկ մասը՝ Հրէական վտանգին դէմ, որ բազմաթիւ զարկեր տուեց, եւ արաբական վտանգին դէմ, որ երբեք ալ չդադրեցաւ։

Դիւրին էր այս ամէն իրողութիւններու հասու ըլլալ. ատկէ մինչեւ հիւսիսային Միջագետքն իրեն վերապահել ուղիղ քայլ մը միայն էր, այս քայլն առին ժամանակաւ Հռոմայեցիք։ Բայց այն երկրամասին բախտը կախում չունէր միայն արեւելքէն եւ արեւմուտքէն. այլ լայն չափով մը կը կախուէր նաեւ Հայաստանի պայմանէն եւ դերէն։ Ո՛չ Հռոմ եւ ո՛չ Բիւզանդիոն կրնային անտես ընել այս տեսակէտը։

Երկար ժամանակ էր որ Հայաստանի պայմանի խնդիրը — Երկրորդ Լեհաստան մը, — երեւան եկած էր, եւ ի վերջոյ բաժանումն անխուսափելի նկատուած է։ Բաւականանանք հետազօտելու հռոմէական շահը[7]։

---

7 Այս նիւթիս մասին, քիչ մը կարճառօտ ժամանակաշրջանի համար, բաւական արդարացի խորհրդածութիւններ կը գտնուին երկասիրութեանս մէջ՝ B. W. Henderson, The Life and Principate of the Emperor Nero. Lond. 1903, p. 153 ff.

Այն ժամանակի Հայերն ամենեւին չէին նմանիր արդի Հայերուն. ըսի թէ պատերազմողաց ցեղ մըն էին: Ուստի իրենց տկարութիւնը չէր պատճառը, որով սահմանուած էին որս մ՚ըլլալու. եւ իրենց քաղաքական միութիւն մ՚ունենալը դիւրմբռնելի էր: Հետեւաբար հոն կարելի էր պէսպէս կառավարութիւններ, այսինքն՝ բացարձակ ինքնօրէնութիւն այս ժողովրդեան, պարզապէս ձուլուած Հռոմի կողմէ, կամ լիովին լքանել թողուլ կայն Պարթեւաց թագաւորութեան. դարձեալ՝ անուանական գերիշխանութիւն, թագաւորով մը՝ զոր իւր հպատակներն ընտրէին կամ ընդունէին հաւանելով, բայց որ իր կարգին հպատակութեան մեծարանք յայտնէր Պարթեւաց արքային կամ Հռոմէական Ինքնակալին. կամ դարձեալ՝ իրական գերիշխանութիւն, մինչեւ թագաւորն իրականութեան մէջ պարզ գործակատար մ՚ըլլալով երկու ախոյեանակից պետութեանց միջն, եւ վերջապէս բաժանում հողի կամ ազդեցութեան[8]:

Բացարձակ ինքնօրէնութիւն երազ մը

(chap. V: The Eastern Frontier; Problems and Policies): Մասամբ անկէ կը քաղեմ այն խորհրդածութիւնները:

[8] Սկզբունքով կրնայ նաեւ մտածուիլ վեհապետ մը, զոր նշանակեն միանգամայն Հռոմայեցիք եւ Պարթեւները, որոնք նախապէս միաբանէին անոր անձին վրայ: Անկէ կը տեսնուի թէ Henderson, երբ կը խօսի չորս տեսակ քաղաքականութիւններու մասին (էջ 157), որոնք հնարաւոր էին, մոռցած է շատ մ՚ուրիշներ ալ:

եղած էր, զոր նոյն իսկ Հայք այլեւս չէին փայփայէր. Տաւրոսի խորշխորշուն ծալքերը չափազանց ընական կերպով իրարու կը կապէին Փոքր–Ասիան ու Ատրպատական–Մարաստանը: Արդ ի՞նչպէս այս նախանձելի՞ երկիրը տեսակ մը «արգելակ–տէրութիւն» (état-tampon) ըլլալ, երբ աւելի հարաւա-կողմն եղող նոյն իսկ անապատը շատ դիւրին չէզոք գօտի մը կը կազմէր: Պարթեւները, որ իրենց նպատակներուն մէջ գրեթէ միշտ աս-տիճան մը չափաւոր էին, մէկդի թողած էին Հայաստանն ամբողջովին գրաւելու գա-ղափարը. միայն կը պահանջէին, եւ այն Միհրդատէ ետքը, թէ Հայաստանի գահն յիրաւանց կը պատկանի Տիգրանի վեհա-պետին կրտսեր որդւոյն: Այս յաւակնութեան պահանջքը անհրաժեշտօրէն չէր պարունա-կէր նաեւ ճշմարիտ թեւարկութիւն մը: Բայց նոյն իսկ նման յաւակնութիւն մը շատ էր Հռոմի հանդէպ, որ իր կողմէ միայն կը տատամսէր թէ իրական գերիշխանութի՞ւնն ընտրէ թէ նոյն իսկ Պետութեան հետ ձու-լումը[10]:

---

9 Գոնէ Հռոմայեցւոց այս երկրին մէջ առաջին ժամանակներն մղած պատերազմները շատ շահաւէտ կը համարուէին անոնց կողմէ. հմմտ. Պլինիոսի ակ-նարկութիւնը՝ Բն. Պատ., Է, 120:

10 Կորբուլոն ուղիղ կը տեսնէր, երբ Կապիդո-դայի կ'առաջարկէր պարթեւ իշխան մ'ընտրել Հայաս-տանը կառավարելու համար: Այս նոր խառն լուծում մըն էր, որ աւելի չափաւոր էր քան զոր կը նախըն-տրէին խորհիլ: Հմմտ. H. Willrich, Beiträge zur

Այս երկու քաղաքականութիւններէն առաջինը, զոր հռչակած էին Աւգոստոս եւ Կղաւդիոս, լաւագոյնը կ՚երեւար, բայց Հայերն էին որ անոր գործադրութիւնը դժուարին ըրին: Ժողովուրդն ու ազատք չէին հաշտուեր Հռոմէ գահ բարձրացուած իշխանի մը հետ, որուն գաղափարները բոլորովին տարբեր էին Պարթեւներու գաղափարներէն՝ որոնց հետ համաձայն էին իրենց ունեցածներն ալ, եւ որոնք դրացիութեան իրական գիտակցութիւնը կը պահէին[11]: Իսկ յատուկ

---

alten Geschichte, III, 1903, p. 207—304 (Der Orient unter Gaius):

[11] A. Abruzzese, Relazioni fra l'Impero Romano e l'Armenia a tempo di Augusto. (ի Riv. di stor. antic. N. S. VII, 1903, p. 505—521, 722—734; VIII, 1904, p. 32—61) հաստատելէն ետքը հայ նախարարաց այս թշնամութիւնը Հռոմայ հանդէպ, այսպէս կը շարունակէ. (էջ 60) «Բնական էր որ Աւգոստոս հնձեց, ինչ որ սերմանած էր. ամէնը... բնական հետեւութիւն էր իր արեւելեան քաղաքականութեան, որ անորոշ էր եւ հիմնուած գլխաւորաբար միջոցներու (risorse) վրայ՝ զոր իրեն կրնային ընծայել զաւհակալական մեքենայութիւնները. ասոնցմով կը յուսար ձեռք բերել աւելի դիւրաւ այն ամէնը, որոնց պիտի չկարենար հասնիլ զէն ի ձեռին յայտնի պատերազմով եւ կամ մնայուն յաջողակութեամբ մղուած վաճառականական պայքարով»: Կը խոստովանիմ թէ լաւ չեմ հասկցած այս համառօտ պարզաբանութենէն թէ ի՛նչ կերպով կը մտածէ այս վաճառականական պայքարը: — Ուրիշ տեղ մը (էջ 517) կ՚ըսէ. «Հռոմ իրօք ալ շատ պէտք ունէր ապաստանարանի մը, որ յարմար ըլլար իր Արեւելքի մէջ ունեցած վաճառականական շահերուն, ուսկից ներմուծումներն օրէ օր երթալով կ՚աճէին. այս տեղը կրնար դառնալ Հայաստանը: Հայերն ալ իրենց կողմէ պէտք ունէին մէկուն, որ ազատէր զիրենք Պարթեւաստանի հզօրագոյն եւ անձնական միջնորդութե-

մաքով ձուլումի փորձ մ՚ընել ուզեց Ներոն, բայց ստիպուեցաւ հրաժարիլ անկէ: Տրայանոս իրագործեց ալ, բայց այն ալ ձախողեցաւ. Իր աշխարհակալութենէն մնաց միայն սերտագոյն կապ մը Հռոմի եւ Հայաստանի միջեւ, որ այն ժամանակէն ի վեր իր յատուկ Արշակունիներով կը կառավարուէր: Ասոր կը յաջորդէ մթին երկարաձիգ շրջան մը, երբ Հայաստան փոփոխակի աջ կամ ձախ կը ձգձգուէր[12]:

Այս միջոցին Միջագետքի խնդիրը նոր լուծում մը գտած էր: Այս երկրին ամբողջութիւնը խախտեցաւ, եւ զայն երկուքի կարեցին երկրին մեծ գետերու հանդէպ ուղղահայեաց գծով մը, որուն ուղղութիւնը այնպէս էր որ կարծես յառաջուընէ հռոմէական Պետութեան կը վերապահուէր հայկա-

---

նէն»: Բայց «միջնորդութեան» դէմ օգտուիլ կարելի էր միայն Հռոմայ «միջնորդութեամբ», զոր սակայն Հայերն չէին ուզեր. եւ չեմ հաւանիր թէ ինչ «վաճառականական պայքար», կրնար առ այդ բաւական ըլլալ: — Կրօնքի, մատենագրութեան եւ քաղաքակրթական ձգտումներու. կողմէ, կը շարունակէ նոյն հեղինակը, Հայք աւելի աղերս ունէին Յոյնին հետ քան թէ յատուկ իմաստով Ասիականին հետ (էջ 515). Բայց կը չփոթէ Ե դարու Հայաստանը Ա դարու եղածին հետ, զոր Տակիտոս (Տար. ԺԳ, 34) կատարելապէս բնորոշած է գրելով՝ «Աշխարհին դիրք, նմանութեամբ բարոյից մերձաւորագոյնք Պարթեւաց, եւ նմանութեամբ գութ անկեալ եւ զաւակ խառնեալ, եւ անտեղեակ եւս ազատութեան լեալ, անդր իմն մանաւանդ ի ծառայութիւն հակէին»: Ե դարուն Հայաստանը կ՚ընդունէր անշուշտ արեւմտեան դրաւում մը. բայց Սասանեանք այսպիսի բան մ՚աւելի նուազ կը թոյլատրէին քան յառաջագոյն Պարթեւները:

12 Համմ. H. Hübschmann, անդ, p. 218 ff.

կան լեռնաշխարհի ամբողջութիւնը։ Բայց այն լեռնազանգուածին առանցքն սար արգելք էր, եւ աւելի Նպաստաւոր Սասանեանց։ Իրերու ընթացքն ալ լեռնագրութեան տուած ցուցմունքներուն համակերպեցաւ։ Յովիանոս ետ տուաւ Մծբինը եւ Տիգրիսէ եւ Նիմփիոսէն անդին եղող երկիրները։ Հաստատուն կայունութիւն գտնուեցաւ Միջագետաց բաժանումով. այն ատեն Հայաստանի բաժանումն ալ կարելի դարձաւ եւ կը պատրաստուէր անոր յաջորդելու։ Բայց ի՞նչ սկզբունքի համեմատ։ Կ'երեւայ թէ բախտը զայն որոշեց աւանդուած պատմութեան համաձայն[13]։ Արշակ մ'իր թագաւորութիւնն երկու շատ անհաւասար մասերու բաժնեց. անոր որդիներէն մին հայրենի ժառանգութեան քառորդը ստացաւ, եւ դիմեց Հռոմայ օգնականութեան. միւսն ալ Պարսից օժանդակութիւնը խնդրեց. իսկ երկու դատավարներու կռնակին ետեւ իրարու հետ միաբանեցան դատաւորները։ Սակայն ծեր Արշակայ այս սահմանագծումը ա՛յնպէս լաւ կշռուած էր, որ միայն իր յղացած գաղափարն ըլլալու չէր, զայն քիչ շատ թելադրած կրնան ըլլալ Տիզբոն եւ Բիւզանդիոն[14]։

---

13 Պրոկոպ. Շին. Գ, 1, էջ 245 եւն։

14. Այս շրջանը, որ 400ի մօտերը կ'իյնայ, երկու Պետութիւններու մէջ քաղաքավարութեան եւ փաղաքշանքի ժամանակամիջոց մը կը յայտարարէ, եթէ ճշմարիտ է թէ Արկադիոս Կրտսեր Թէոդոսի խնամակալութիւնը յանձնած ըլլայ Յազկերտի եւ այն ալ ընդունած ըլլայ։ Իրողութիւնս այնչափ նորանշան

Իրօք ալ անով կը հաւասարակշռուէին երկու Պետութիւններն ալ· Պարսից արքային պահեց ամէնէն մեծ եւ հաստատուն պատուար, զոր տեղագրութիւնն ալ իրեն սահմանած էր: Իսկ միւսը ձեռք բերու «յետսակողմեան աշխարհ մը» (Hinterland)[1] որ թանկագին էր Կապպադովկեան Պոնտոսի համար, եւ յենակէտ մը, որ կըրնար արգիլել Կովկասի հպատակութեան բռնադատուիլը հակառակորդի մը կողմէ, որ մինչ հետամուտ էր դէպի Արեւելից ծովերն ազատ ճամբայ ունենալու: Սալլուստի կապանները (clisurae), որոնք նոր սահմանագլուխին վրայ կը գտնուէին, զայն կատարելապէս կը պատսպարէին հի-

---

է որ ուզած են զայն տատանելայ կարգ դասել· (P. Sauerbrei, ի գիրս Festschrift Albert von Bamberg zum 1. Okt. 1905, gewidmet vom Lehrerkollegium des Gymnasium Ernestinum zu Gotha, 1905, p. 90—108)· բայց այս միջադէպիս վաւերականութեան ալ ծանրակշիռ կողմնակիցներ կան մինչ· (Հմմտ. J. Haury, ի Byz. Zeitschr. XV, 1906, p. 291—294)· Գիւտերբոք (Güterbock, Byzanz und Persien, p. 28) կ'ընդունի այսչափ միայն թէ Արկադիոս իւր կտակին մէջ կամ ուրիշ որեւէ կերպով մը, ընդհանուր եւ անորոշ ձեւով մը իւր որդին յանձնարարած է Պարսից արքային: — [Պրոկոպիոսի պատմածը թէ «Արշակ» իւր ձեռքով իր թագաւորութիւնն որդւոց բաժնելով տէրը տուած ըլլայ Հայաստանի բաժանումին, շատ խնդրական է: Վերջին «Արշակ» բաժանումէ առաջ բոլորովին ուրիշ ընթացք մ'ունէր, տարիներով մաքառեցաւ Շապհոյ դէմ, եւ Հռոմայեցիներէն լքուած՝ Պարսից ձեռքն իյնալով՝ բանդի մէջ մեռաւ աքսորուի: Շատ շատ Պարսիկները կրնային հնարած ըլլալ կտակէ եւ բաժանումի երեւոյթ մը, պատրուակ մ'ունենալու համար, բայց այս ալ լոկ ենթադրութիւն մըն է: Նման

սխալին կողմէն: Պատերազմի համար Իրան արտօնեալ դիրք մը կը վայելէր, բայց վաճառականութեան համար իր թեւերն երբեք ազատ չէին: Իրմէ կ՚անցնէին Հնդաստանի եւ Չինաստանի արտադրութիւնները, բայց միայն կը կտրէին ու կ՚անցնէին եւ ուրիշ ազգեր զանոնք աւելի հեռուն կը փոխադրէին: Արդ Սասանեանք յամառութեամբ կը ջանային այս ծառայութենէն ազատիլ. եւ երկու անգամ կարծեցին թէ իրենց նպատակին հասած էին: Լազիկէն իրենց ձեռքն էր քանի մը տարի, բայց կորսնցուցին զայն տակաւին իրապէս հոն չհաստատուած[15]: Փոկասի օրով աշխատեցան աւելի հարաւէն պատել Թուրքը դէպի

---

րան մը չենք տեսներ անոր յաջորդ Պապի ատեն, եւ Վարազդատի տարիներուն է որ Ներքին ապստամբութեան հետ կը ծագի այն բաժանումի գաղափարը եւ կը գործադրուի քիչ մ'ետքը: Պաշտօնական բաժանումն ըլլալէն առաջ է, որ երկու կողմն ալ կը շարունակէին տակաւին իշխել արքայք՝ գերիշխանութեան Ներքեւ եւ ճիշդ «Արշակ» մըն էր որ անորդի մեռնելով (իրր 386) պատրուակ տուաւ Հռոմայեցւոց իրենց բաժինը նահանգի վերածելու: Տեղւոյս չեն այս պատմութեան մանրամասնութիւնները. բայց յայտնի է թէ բաժանման գաղափարը ծագած է միայն եւ միայն երկու Պետութիւններու մէջ, եւ ամէն հաւանականութեամբ նախաձեռնութեամբ Պարսից, որոնց դէմ այնչափ թոյլ կը վարուէին Հռոմայեցիք Յովիանոսէն ի վեր: Երկու կողմն ալ իրենց աջակիցներն ու կողմնակիցներն ունէին, ինչպէս է նաեւ հայ նախարարներու մէջ, որոնք յաճախ գործիք էին ուրիշներու ձեռքը: Ծանօթ. Թրգմնչին:]

15 Միայն ծովի տէր դառնալով կրնար ապահովել Լազիկէի եւ Կովկասի տիրապետութիւնը:

Միջերկրական, եւ անկից զիրենք վերջնականապէս վտարեց Հերակղ։

Միջանկեալ ժամանակամիջոցին մեքենայութիւններ նիւթուած էին ո՛չ միայն սահմանափակելու անոնց վաճառականութիւնը, այլ նոյն իսկ ջնջելու զայն։ Յուստինիանոսի ատեն՝ 568ին Թուրքերը, որոնք յաղթած էին Հեփթաղներու եւ նուաճած էին Սոգդիանէն, Պարսից արքայէն արտօնութիւն խնդրեցին մետաքս վաճառելու Մարաց քով։ Իբր պատասխան՝ պարզապէս այրեցին անոնց ամբողջ բեռները։ Այն ատեն պատուիրակութիւն մը պատգամագնաց եղաւ Բիւզանդիոնի արքունիքը, որ պաշտօն ունէր ուղղակի յարաբերութիւններ կապել Հռոմոց հետ, եւ Թուրքերու համար այս արտաքին վաճառման մենաշնորհն ընդունիլ՝ այնպիսի ճամբով մը, որ Պարսկաստանէ դուրս ըլլար[16]։ Դժբախտաբար շատ ծանօթ չեն մեզի այս բանակցութիւններն ու այն մասին Բիւզանդիոնի բռնած դիրքը։ Տարակոյս չկայ թէ բանակցութիւններն ի դերեւ ելած են։

Արդ. Դ դարուն վերջը հաստատուած այս սահմանագլուխը հազիւ թէ փոփոխութիւն մը կրեց յաջորդող դարերու մէջ։ Միայն 591ին ստանձնական ծառայութիւն պատճառ տանելով Մաւրիկ պահանջեց Խոսրով Բ արքայից արքայէն հռոմէական

[16] Lion Cahun, Introduction à l'Histoire de l'Asie, Paris, 1896, p. 43.

երկրաբաժնին ընդարձակումը Հայաստանի մէջ: Մատնանիշ ընենք որ այս ընդարձակումը տեղի ունեցաւ գլխաւորապէս Սեւ-Ջրոյ (Կարա-սու) եւ Տիգրիսի մէջտեղ, այնպիսի հողաբաժնի մը մէջ, որ սեպաբերձ էր ու դժուարամատչելի: Իրաց ընթացքն անով չէր կրնար փոխուիլ: Թողունք որ արաբական աշխարհակալութիւնը շուտով պիտի ոչնչացնէր այս ամէն պայմանադրութիւնները:

Այսպէս սահմանագլուխը, զոր չէին գիտեր թէ ո՛ւր գծեն, երկար պայքարներէ ետքն ինքն իրմէ սահմանուեցաւ. հետ զհետէ անհրաժեշտ դարձա՜ւ այն գիծն երկու հակառակորդ պատերազմողաց ալ: Եթէ ամբողջութեամբ նկատենք՝ ուղիղ գիծ մըն է, որ Կաւկասէ կ՚իջնայ Ակաբայի ծոցը: Առաջին հայեցուածքով՝ անոր հիւսիսային կէսն անմեկնելի կը թուի, այնպէս որ կարծես թէ կապ մը չունենայ երկրին անհարթութեանց հետ: Կը յուսամ թէ ապացուցի որ իրողութիւնն այնպէս ալ անմեկնելի չէ, եւ թէ աշխարհագրական չարաբաստիկ ճակատագիր մը ծանրացած է Արեւելքի մէջ հռոմէական բախտի վիճակներուն վրայ: Այս որոշած է, դոյզն բացառութեամբ, այն գօտին, որմէ անդին ոչ մէկը՝ Հռոմայեցին կամ Պարսիկը կրնային անցնիլ տեւական կերպով մը:

Ուրիշ ազդակ մ՚ալ նպաստած է տեւականապէս մին միւսին ձեռքով խափանելու

շարժելէն։ Այն անփոփոխ կամքն էր որ կը տիրէր երկու բանակներու մէջ ու խուսափելու հակառակորդին գործած սխալներէն եւ հետեւելու անձամբ անոր յառաջադիմութիւններուն։ Երկու ազգերուն մէջ վէհ մը կայ, ի բաց առեալ այն ամէնը, որ ռազմական հաստատութիւններու կը հայի. այս կէտին մէջ փոխառութիւնը հաստատուն սահմանուած դրութիւն մ'եղած է. ընդօրինակութիւնը հեզհետէ երթալով հաւասարմադոյն կ'ըլլայ։ Վկաներու, մանաւանդ ժամանակակիցներու, պատմածներն այս իրողութիւնն ամէն տարակոյսէ զերծ կ'ընեն։ Զ դարուն վերջը՝ Բիւզանդական բանակ մը եւ Պարսկական բանակ մը կրնային իրարու հետ փոխանակուիլ փոխադարձաբար։ Երկրորդին մէջ ազգային կորիզը թերեւս քիչ մ'աւելի զօրաւոր ըլլայ, բայց միեւնոյն բարբարոս տարրերը զայն կը շրջապատէին ու կը մատնէի։ Կ'աւելցուի թէ անոր մէջ կարգապահութիւնն աւելի լաւ պահուած էր. բայց նոյն սպառազինութիւնն էր, նոյն՝ ռազմագիտութիւնը, նոյն՝ քաջութիւնը, նոյն՝ տկարութիւնները։ Միեւնոյն կերպն էր միջնաբերդերն բանի դրաւելու կամ հոն ամրանալու. երկու կողմն ալ նոյն խորամանկ հնարքները կը փորձէին, միեւնոյն դարանները կը լարէին։ Երբ Պրոկոպիոս կամ Սիմոկատտա կը կարդանք, այն տպաւորութիւնը կ'ունենանք թէ երկու հաւասար զօրութիւններ ըլլան,

որոնք ամէն ընդհարմանէ ետքը ի վերջոյ գիրար կը չէզոքացնէին[17]։

Մեծամեծ արշաւանքներու արդեանց մէջ անձուկ զուգակշիռ համեմատութիւն մը կայ. Պարսիկները կը դրաւեն Լազիկէն, որ բնականէն իրենց չի պատկանիր. յաջորդ տարիներու մէջ անկէ կը վտարուին։ Խոսրով մը մինչեւ Պաղեստին կ'երթայ եւ կը գերէ ճշմարիտ խաչը. սակայն անմիջապէս կը ստիպուի վերադարձնել, եւ աւերն ու ապականութիւնը կը տարուի նախորդ աշխարհակալի հողին վրայ։ Բայց սովորաբար ճիգերը գիրար կ'ոչնչացնէին միեւնոյն պատերազմի ընթացքին։ Այս երկու ընդդիմամարտներէն այն որ կրնար յեղակարծ միւսին վրայ խոյանալ՝ կը խախտէր պարիսպ մը, գետին կը կործանէր աշտարակ մը. առաջին բախումն ազդեցիկ էր, երկրորդը կամ երրորդն աւելի նուազ զօրութիւն ունէր քան հակահարուածը։ Ամրավայրերու ահագին ցանցն է որ ընդունայն դարձուցած է աշխարհա-

---

17 Կերպով մ'իրաւունք ունէր պարսիկ այն դեսպանը, որ յաղթական Գաղերիոսի կ'ըսէր՝ զայն չարժելու համար՝ թէ Հռոմէական Պետութիւնը եւ Սասանեան Միապետութիւնը կը համեմատուէին երկու փարոսներու, որ աշխարհս կը լուսաւորեն, եւ թէ երկու Տէրութիւնք, փոխանակ իրարու վնասելու, լաւագոյն կ'ընէին ձեռնտուութեամբ գիրար պաշտպանել։ (Պետր. Պատրիկոս, առ de Boer, Excerp. de legat., Հատոր 12, էջ 393)։ Եւ Խոսրով Բ կը գրէր Մաւրիկի՝ իրենք աշխարհի համար այն են՝ ինչ որ աչքերն են մարդուս համար. (Թէոփ. Սիմոկ. Դ, 11, 2)։

կայմերու ցանկութիւնները, զէնքեր աւելի նուազ դեր մ'ունէին՝ քան քարակերտ պատուարները, պատերազմիկները նուազ քան որմնաշէնները: Ամառն արդէն անցած կ'ըլլար, երբ յարձակողին յառաջդիմութիւնները դեռ անզգալի կը մնային. ա՛յնչափ պարիսպներ կային, որոնք պէտք էր կործանել կամ սանդուխով վերելակելով առնել[18]:

Եւ այսպէս Զ դարուն սկիզբն երկու տէրութիւններն ալ միեւնոյն կերպով ուժասպառ ծիւրած էին, առանց կարենալու մին միւսէն անձնատուր պրծելու: Ժամանակներն հասուն էին աւազակի մը համար, որ դանոնք իրարու համախոհ պիտի ընէր՝ երկուքն ալ ծայրատելով:

Այժմ կը հասկնանք թէ ինչո՛ւ Արեւելից Սահմանաց (limes) վրայ նախայարձակումը շատ աւելի միջակ էր. անտարակոյս շատ յաճախ անոր ձեռնարկուեցաւ տկարաթիւ զօրաքանակով. իսկ երբ մարդկային մեծաքանակ զանգուածներ զօրաշարժութեան վիճակի մէջ դրուած էին, կորուստները նոյն համեմատութեամբ կ'աճէին, առանց ուրիշ արդիւնքի մը[19]: Ի՛նչ երջանիկ բախտ էր

---

18 Լիբանիոս այս պատերազմներու ճշմարիտ նկարագիրն տուած է (Թղթ. 47):

19 Այսպէս եղաւ Սեւերոս Աղեքսանդրի ատեն. իր Պարսկական արշաւանքի միջոցին բանակին կրած կորուստներն այնքան մեծ էին, որ հարկ եղաւ Գերմանացւոց դէմ պատերազմելու վայրկեանին, նորակոչներու ահագին թիւ մը զօրահան ընել, որոնք զինուորական մարզանքներու համար, բացառաբար

երկու Պետութիւններէն մէկուն, որ վերջնականապէս վճռած էր պարզապէս դիմադրել միւսին յարձակումներուն դէմ, փոխանակ դրացւոյն սահմանները յափշտակելու[20]։ Հռոմայեցւոց համար դժբախտութիւն մըն էր այն յեղափոխութիւնը որ դահ հանեց Սասանեանք։ Այս ըսելով չեմ հասկնար միայն թէ՝ բարի դիւղական ու անխառն Պարթեւաց յաջորդեցին աշխարհակալականութեամբ բորբոքեալ մարդիկ։ Զմոռնանք որ այս ամէն երկիրներու մէջ կրօնքն էր որ կը բորբոքէր,

---

միացուցած մէկ կազմութեան։ Այսպիսով կը մեկնուի այն տիտղոսը, որուն ուրիշ օրինակ մը չկայ, praefectus tironibus (վերակացու նորակոչներու), որ կը տրուի Մաքսիմիանոսի 234ին (CIL, XI, 6011). Հերոդիանոս, Զ, 8, 2. Վարք Աղեքս. Սեւերոսի 59). հմմտ. M. Bang, ի „Hermes", XLI, 1906, p. 303. — Աւիտոս Կասիոս Տիգրոնէն ետ դառնալու ատեն ճամբան անհամար մարդ կորսնցուց սովէն ու հիւանդութիւններէ. (Դիոն. Կաս. ՀԱ, 2)։ Ծանօթ է Յովիանոս նահանջը։

20 Նշանակելու ենք հետաքրքրաշարժ փորձ մը, որ երեւան կու գայ 526ի խաղաղութեան դաշինքին մէջ։ Գիւտերբոք (Byzanz und Persien, p. 89—90) խնամով վերլուծած է Մենանդրի այդ մասին հայող վկայութիւնը։ Հաստատակաց սահմանագլուխին երկու կողմերու ժողովրդեան դժուարութիւնները հարթելու համար խորհուած էր միջազգային իրաւատական ատեան մը, որ կը կազմուէր երկու ազգերուն ալ պաշտօնատարներէն ու իրաւընտիրներէն։ Համաձայնութեան մը հանգելու համար, անոր կը մասնակցէին կա՛մ քաղաքաւարչական դատաւորը կա՛մ նահանգային գործակատարները։ Եթէ չյաջողէր համաձայնութիւնը, խնդիրը՝ Հռոմայեցւոց կողմէ՝ կ'ենթարկուէր մագիստրիանոսի զօրաց Արեւելս (mag. mil. per Orientem, Արեւելեան սպարապետին)։ Եթէ ան ալ անկարող ըլլար, կը մնար երկու վեհապետներու միջամտութիւնը։

կ'արծարծէր ու կը դայրացնէր պատերազմը։ Ասորիք եւ Միջագետք աստուածաշնչեան երկիրներ էին. անոնց հողէն կը բխէր մաքառասէր նահատակութեան ջերմ եռանդն ու նորադարձ զոհելու ոգեշահութեան խանդը։ Պարթեւներն ապահովապէս պիտի չփութացնէին իրենց փափաքներով դարձերն իրենց թագաւորութեան մէջ, բայց պատճառ մ'ալ չունինք կարծելու թէ քրիստոնէից եռանդին դէմ պիտի հակադրէին նաեւ իրենց յատուկ մոլեռանդութիւնը՝ ինչպէս ըրին Նոր-Պարսիկները։ Անոնք պիտի չբաղձային Հայաստանի վրայ Արեւմուտքի կատարած բարոյական աշխարհակալութենէն ետքը՝ փոխադարձ հատուցում մ'ընել, մօգերու նման ուզելով կրակի պաշտամունքի բռնադատել Հայերը։ Անհրաժեշտ հարկաւոր պատերազմի, այնպէս՝ ինչպէս կը դատէին Ասորիներէն շատերը, յայտնապէս առիթ պիտի չտային Պարթեւները։ Պատմութեան մէկ քմահաճոյքը, գահակալութեան կամ կայսրութեան փոփոխութիւն մը իրագործեց քրմերու եւ մարտիկներու համաշունչ միաբանութիւնը, երկարաձգեց պայքարներն եւ նոյն իսկ նպաստեց վերջնական լուծումին, որ գլուխ հանեց մահմետական աշխարհակալութիւնը։

• Բաղձալի էր որ կարենայինք Կեսարներու մէջ նշանակել արեւելեան պաշտպանութեան գլխաւոր գործիչները։ Աւելորդ է մատ-

նանիչ ընել Դիոկղետիանոսի ու Յուստինիանոսը. այն ինքնայայտ է: Բազմաթիւ վկայութիւններ աւանդուած են մեզի Աղեքսանդր Սեւերոսի[21] եւ Կոստանդոսի Բ[22] մասին. բոլոր ծխացեալներու համար կրնանք միայն մակաբերութիւն կամ ներողութիւն ընել[23]:

Պր. M. Cagnat «Ափրիկէի Հռոմէական բանակին» մասին իր երկն աւարտելու առեն ուրուագրած է նախագիծ մը զաղթարարութեան կայաններուն, որ այնուհետեւ աւելի լրացուած է: Այն երկիրներուն մէջ, որոնցմով զբաղեցայ, խնդիրը քիչ մը տարբեր կերպարանքով մեր առջեւ կը ներկայանայ. եւ հոս՝ ուրիշ հետազօտութիւն մը պատշաճ է որ կանխէր այդ հարցին առաջ, որմէ մեծապէս պիտի օգտուէր այն խնդիրն ալ. կ՝ուզեմ ըսել ստատարանումի կայաններու քննութիւնը: Բայց այս նիւթը շատ մասնագիտական է, եւ կը պահանջէ քրիստոնէական

---

[21] Հերոդիանոս, Զ, 7, 5:

[22] Ամմ. Մարկել. ԺԸ, 7, 6. Ի Տ, 1 «մեծապէս խնամքով պատերազմաց ամենայն կազմութեամբ օժտեց Սահմանը»: Յաւել՝ Յուլիանոս, ճառ Ա, 21 c:

[23] Հեղինակաբանագրի, որ այս երկրին զաւակն էր, Թագաւորութիւն [illegible] նահանգներու համար մեծ բարեգործութեան [illegible] կը նշանակէ, որ յերեւան կու գայ [illegible] նոր թագաւորութեան առեն տեղական [illegible] դրամահատութեան արտակարգ տրատութեններ. (E. Babelon, [illegible] Rev. numism. 1890, p. 274—277): Բայց ինչ կրնանք հետեւցնել ասկէ մեր [illegible] կազմակերպ[illegible] զօրքին նկատմամբ: — Տեսանք [illegible] կամ Անաստասի ամբարացուցած կամ վերաշինած են բազմաթիւ բազաքներ:

աղբիւրներու ծանօթութիւն մը, ուստի իմ սահմանէս դուրս կը մնայ այս ուսումնասիրութիւնը: Միայն թէ ուրախութեամբ պիտի տեսնէի, եթէ ուրիշ մը անոր ձեռնարկէր:

---



## ՑՐՈՒԵԼԻՔ ԵՒ ՔԱՂԵԼԻՔ

*Գրքիս տպագրութեան ժամանակ Պր. Փ. Կիւմոն* (Fr. Cumont *ի Բրիւքսէլ*) *կ'աւարտէր իւր ուղեւորութիւնը ի Կոմագինէ եւ Եփրատեսիա: Բարեացակամ ազնուութեամբ մը, զոր իւրաքանչիւր ոք կը ճանչնայ, առանց այս մասին իմ կողմէս պնդելու, ինքնաբերաբար ուղարկած է ինծի իւր այս գիւտերու մասին առաջին տեղեկագրութեան մը փորձերը, որ իմ նիւթիս կը հայի եւ որ լոյս կը տեսնէ ի* „Bulletin de l'Acad. r. de Belgique cl. des Lettres", 1907 *Օգոստոս:*

Էնէշ (Enesh) *տեղը՝* Հռոմկլայէ *երեք ժամ գետն ի վար, գտած է բազմաթիւ յունական արձանագրութիւններ, զորոնք քանդակած են միեւնոյն Դ.* Սկիւթական *լեգէոնին դրօշաւորութիւնները* (uexillationes), *որոնք տեղւոյն քարահանքը կը պահպանէին եւ անոր շահագործումը կը վարէին, եւ որուն արդիւնքներն անտառաբակոյս Եփրատի նաւակներով կը փոխադրուէին: Բազմաթիւ ուրիշ-*

ներուն մէջ կան ձօներ առ Jupiter Optimus Maximus եւ առ Siluanus: Մէկ կողմէ հռոմէական հաւատարմութեան արտայայտութիւն, եւ միւս կողմէ պաշտօնատէրութիւն քարահանքներու պաշտպանին ու անտառներու աստուծոյն (Կոմագինէ շատ անտառախիտ էր): Այս թանկագին տեղեկութիւնները կը լրացնեն իմ պարզաբանութիւններս խաղաղութեան ժամանակ կատարուած գործերու եւ զինուորական պաշտամունքներու նկատմամբ. (Հմմտ. էջ 477 յլ. եւ 491):

Եթէ Հռոմկլայն հին Ուրմիա է, Եճէշ տեղն ալ հին Արուլիս ըլլալու է:

Տեսած է նաեւ անոր մօտ հին ճամբայ մը, շատ ընդարձակ քարայատակներով, որ բացառիկ ծաւալ ունի. (Տես էջ 482): Այս առթիւ այն ամէնուն վրայ, զոր ըսած եմ ուղեցոյցներու ներկայացուցած անմիաբանութիւններու մասին՝ կ՚աւելցնեմ դիտողութիւն մը, զոր ըրած ենք երկուքս ալ (տես էջ 534): Այսինքն՝ Հին ուղեգրութիւններն ու աշխարհագրական յիշատակարանները շատ հեռու են ամէն դիւրութիւն ունեցող ճամբաները յիշատակելէ: Հետեւաբար՝ անուանացանկերու տարբերութիւններն այլեւայլ ուղիներու համար, որոնք մեկնումի եւ հասնելու միեւնոյն կէտերն ունին, կը մեկնուին թերեւս զանազան տեղերու մէջ տարբեր ուղեգծերով:

Զ Կղաւդեան *լեգէոնին համար նոր վկայութիւն մըն է յունարէն այն արձանագրութիւնը, շատ ապաւաղ ձեւով, որ ընդօրինակուած է Այնթապի շրջակայքը։ Այս լեգէոնը ժամանակաւորապէս Արեւելք էր, թերեւս Տրայանոսի Պարթեւական պատերազմին համար։*

*Գր. Կիւմոնի Փոքր – Հայաստանի մէջ իր կատարած նախընթաց ուղեւորութենէն՝ իր թղթածրարի մէջ մնացած էր ձօն մը առ Սեպտիմոս Սեւերոս, գործ վաշտիս* [Coh. I. L] ep[idiana] c. R. equitata bis torquata (*վաշտ Ա. Լեպետեան քաղաքացեաց Հռոմայեցւոց հեծեալ երկիցս պսակեալ*), *որ օրինակուած է արդի* Մէլիք-Շէրիֆ *տեղը՝ հին Կարաագայի մօտ։ Այս վաշտը մասնակցած ըլլալու է Սեւերոսի Պարթեւական պատերազմին եւ երկրորդ անգամ իւր քաջութեան համար պսակուելէն նորէն եկած է Կարաագա հոն կայանաւորուելու։ Հայոց Նիկոպոլիսը գտնուած հատակոտոր մը կը հաստատէ թէ Տրայանոսի՝ Ասորեստանի արշաւանքին մասնակից էր նաեւ* «թեւ Ա Փղաւեան Աւգոստեան Բրիտանական» Ala I Flavia Augusta Britanica։

Imroulqais. *Այս սեմական ձեւը՝ զոր ընդունած է* Dussaud *ալ, գործածած եմ՝ առանց անդրադառնալու թէ այդ անունը*

քօղուած է յունական Ամորկիսոս ձեւին տակ:

F. Rühl (ի Rhein. Mus. LXII, 1907, թ. 6). նոյնպէս Աղեքսանդրեակ (Alexandrette) կը մեկնէ այն Աղեքսանդրիան՝ որ կը յիշուի Հրէական Եղիայի Յայտնութեան (Apocalypse) մէջ:

Մօտալուտ արշաւանքի մ՚առթիւ հապճեպով զօրահան եղած նորակոչներու մասին յարմար էր յառաջ բերել նաեւ «վտարեալքն» (διωγμῖται). Ըլլայի՛ն անոնք ազատագրեալներ կամ թէ գերիներ, որոնք հաւանօրէն հեծեալ չէին, եւ զինուած էին դանակներով եւ բրերով, եւ որոնք կը յիշատակուին արձանագրութեան մը մէջ (CIG, 3831 a = Վատտինգտըն, 999): Անոնք Պարթեւական պատերազմին համար զինուորագրեց Լ. Վերոս, այն շատ հաւանական մեկնութեան համաձայն, զոր այս բնագրի կու տայ N. Vulic (ի Riv. di stor. antic., N. S. IX, 1905, թ. 636):

# ՑԱՆԿ ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԱՆՈՒՆՆԵՐՈՒ

## Ա

## Բ

## Գ



## Դ

## Ե



## Զ

## Է



## Թ



## Ի

## Լ



## Խ



## Ծ



## Կ

## Ձ



## Ղ



## Ճ



## Մ

## Յ



## Ն



## Ճ

## Ջ



## Ռ



## Ս

Վ

## Տ



## Փ

---

